





Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հրատարակչությունը, չհետապնդելով որևէ եկամուտ, ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտի համացանցային կայքերում ներկայացնում է իր հայագիտական հրատարակությունները: Գիրքը այլ համացանցային կայքերում տեղադրելու համար պետք է ստանալ հրատարակչության համապատասխան թույլտվությունը և նշել անհրաժեշտ տվյալները:

ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԵՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Գ

## ՀԱՅԵՐԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ – 2008

ՀՏԴ 809.198.1
ԳՄԴ 81.2Հ
Ա 205




**Առոնց Ն. Գ.**
Ա 205 Երկեր. հատ. Գ., Հայերենագիտական ուսումնասիրություններ / Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. - Եր.: Երևանի պետ. համալս. հրատ., 2008. - CXCII + 496 էջ + 1 ներդիր:

*Նիկողայոս Առոնցի երկերի երրորդ հատորն ընդգրկում է հայոց լեզվի քերականության և ընդհանրապես հայերենին նվիրված ուսումնասիրությունները: «Դիոնիսիոս Թրակացին և հայ մեկնիչները» աշխատությունը հայերեն լույս է տեսնում առաջին անգամ, մյուսները տպագրված լինելով սփյուռքի մամուլի էջերում, քիչ են հայտնի ընթերցողներին:*

*Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:*

ԳՄԴ 81.2Հ

ISBN 978-5-8084-0931-6

© Հովհաննիսյան Պ. Հ., 2008 թ.
© Վարդազարյան Օ. Ս., 2008 թ.
© ԵՊՀ հրատարակչություն, 2008 թ.

*Խմբագրական հանձնաժողով*

**Հովհաննիսյան Պ. Հ.**
**Մադոյան Ա. Գ.**
**Ստեփանյան Պ. Գ.**

*Հատորը հրատարակության պատրաստեց*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ**

# ԱՇԽԱՏԱՍԻՐՈՂԻ ԿՈՂՄԻՑ

Նիկողայոս Ադոնցի Երկերի սույն Գ հատորն ընդգրկում է նրա քերականագիտական, լեզվագիտական, ավելի լայն առումով՝ հայերենագիտության վերաբերող ուսումնասիրությունները: Իր կրթությամբ և նախասիրություններով Ադոնցը առավելապես հայագետ-պատմաբան էր: Սակայն չպետք է մոռանալ, որ նա բազմակողմանի կրթության, հետաքրքրասիրությունների ու պատրաստության տեր մտավորական էր: Էջմիածնի Գևորգյան ճեմարանում ուսանելու տարիներին նա ստացել էր փայլուն կրթություն: Ճեմարանում գերակշռում էին հայագիտական առարկաները և մասնավորապես հայոց լեզվի գիտակարգի ուսումնառությունը, որ դասավանդում էին ժամանակի ամենափայլուն մասնագետները: Ադոնցի և իր սերնդակիցների վրա մեծ ազդեցություն են գործել ճեմարանի ուսումնասեր միջավայրը և հայոց լեզվի ուսումնասիրության դրվածքը: Հայոց լեզվի ուսումնասիրության բնագավառում այստեղ ստացած հիմնարար գիտելիքները ավելի խորացվեցին ու համակարգվեցին Ս. Պետերբուրգի կայսերական համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետի՝ գրականության և արևելյան լեզուների բաժանմունքի սանսկրիտ-պարսկերեն-հայերեն մասնագիտացված դասընթացներին հետևելիս: Համալսարանում նա ունկնդրել է Ն. Մառին (հայոց լեզու), Ս. Ֆ. Օլդենբուրգին (սանսկրիտ), Վ. Կ. Երնշտեդին (պարսկերեն) և այլոց: Այստեղ նա մեծ ջանասիրությամբ ուսումնասիրել է ինչպես դասական, այնպես էլ ժամանակակից լեզուներ: Ադոնցն ազատորեն տիրապետում էր բազմաթիվ լեզուների՝ հունարեն (հին և նոր), լատիներեն, սանսկրիտ, պարսկերեն, թուրքերեն, վրացերեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն, իտալերեն և ռուսերեն: Ամենայն նրբություններով տիրապետում էր հին (գրաբար) և միջին հայերենի գաղտնիքներին:

Սակայն, հակառակ ուսուցչապետ Ն. Մառի սպասելիքների, Ադոնցը հենց սկզբից չմտավ լեզվաբանության ասպարեզ: Մառը հատկապես խրախուսում էր իր այն սաներին, որոնք մասնավորապես զբաղվում էին բնագրագիտական, լայն առումով՝ բանասիրության և լեզվաբանության հարցերով: Սակայն այդ ժամանակ Ադոնցին առավելապես հետաքրքրում էին պատմագիտության խնդիրները, և պատահական չէ, որ նրա մագիստրոսական թեզը՝ «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» (պաշտպանել է 1909 թ. ապրիլի 5-ին), նվիրված էր զուտ պատմագիտական նյութի, թեև՝

առլեցուն ուղեկցող լեզվաբանական պրպտումների արդյունքներով: 1909 թ. մարտին պրոֆ. Գր. Խալաթյանցին ուղղված նամակում Ադոնցը հարկադրված էր խոստովանել, որ «Մառը այսպիսի հարցերով (այսինքն՝ պատմագիտության – Պ. Հ.) պարապելը վաղաժամ է համարում և գովեստներ նրանից սպասել չէ կարելի»[1]: Սակայն հանուն ճշմարտության, պետք է նկատել, որ Մառի հարցում Ադոնցը այնքան էլ իրավացի չէր: Որպես պաշտոնական ընդդիմախոս Մառը շատ բարձր է գնահատել իր սանի մագիստրոսական թեզը որպես «հայագիտության հույժ նշանակալից երևույթների մեկը»[2]:

Մագիստրոսական թեզի պաշտպանությունից հետո Մառի պնդմամբ Ադոնցը ձեռնամուխ եղավ հայ և հույն բովանդակ քերականագիտական մտքի նշանակալից արդյունքներից մեկի՝ Դիոնիսիոս Թրակացու և նրա հայ մեկնիչների քերականագիտական գործերի մանրակրկիտ ուսումնասիրությանը: Այդ նպատակով նա պարբերաբար այցելում է Էջմիածին, Վիեննա ու Վենետիկ և պարապում տեղի ձեռագրապահոցներում, քերթում բազմաթիվ բնագրեր և երկարատև ու տքնաջան աշխատանքից հետո պաշտպանության ներկայացնում իր դոկտորական ատենախոսությունը, որի պաշտոնական ընդդիմախոսներն էին Ն. Մառը և Ս. Ն. Ժեբելևը: Թե նրանք որքան բարձր են արժեվորել իրենց ընթերակայի թեզը, ակներև է դառնում ընդդիմախոսականների հետ թռուցիկ ծանոթությունից[3], միայն բավարարվենք Մառի հետևյալ եզրակացությամբ՝ «Հայկական բանասիրության յուրաքանչյուր ուսումնասիրողի համար «Դիոնիսիոս Թրակացին և հայ մեկնիչները», անկասկած, պետք է դառնա սեղանի գիրք»[4]:

Եվ իրոք, Ն. Ադոնցի այս աշխատությունը կարևոր դեր խաղաց հայ քերականագիտական մտքի, հունաբան դպրոցի և հարակից խնդիրների հետագա ուսումնասիրության բնագավառում[5]: Ահա թե ինչու անհրաժեշտություն էր դարձել սույն երկասիրության նաև հայերեն թարգմանությունը: Այդ

---

[1] Պ. Հ. Հովհաննիսյան, Նիկողայոս Ադոնցի անտիպ նամակներից, տե՛ս «Բանբեր Երևանի համալսարանի», 1988, № 3, էջ 91-92:

[2] Տե՛ս Н. Я. Марр, Выступление на защите диссертации Н. Г. Адонца "Армения в эпоху Юстиниана" - текст выступления и материалы к нему, 1908 г., Архив Н. Я. Марра, А-996, л. 262, հմմտ. В. А. Миханкова, Николай Яковлевич Марр, М.-Л., 1949, стр. 165.

[3] Զույգ ընդդիմախոսականներն էլ, որպես գրախոսություններ լույս են տեսել "Христианский Восток" պարբերականում, տե՛ս Н. Я. Марр, Дионисий Фракийский и армянские толкователи, ХВ, 1916, т. 5, вып. 1, стр. 52-66. С. Н. Жебелев, նույն տեղում, էջ 67-72. Տե՛ս նաև Ն. Մառի գրախոսականի երկրորդ հրատարակությունը՝ Н. Я. Марр, Кавказский культурный мир и Армения, Ереван, 1996, стр. 309-323.

[4] Տե՛ս Н. Марр, նշվ. աշխ., էջ 66:

[5] Անկասկած, սույն իրողությամբ է բացատրվում աշխատության ֆրանսերեն թարգմանությունը (Լուվեն, 1970):



ուղղությամբ մի անհաջող փորձ կատարվել էր դեռևս 1926 թ.՝ Վիեննայի Մխիթարյանների նախաձեռնությամբ: ՀՀ Ազգային արխիվի Հայկ Բերբերյանի թղթնում է պահվում այդ թարգմանության սևագիր օրինակը, որն իրականացրել է Գ. Ա. անվանատառերով մեկը: Ցավոք, մեզ չհաջողվեց պարզել թարգմանչի անձը: Ակներև է միայն, որ նա ռուսահայ է: Ադոնցը ծանոթ է եղել թարգմանության այս փորձին, և մնացել է խիստ դժգոհ: Հարցի պարզաբանման տեսանկյունից արժեքավոր են հատկապես 1928 թ. հունվարի 12-ին «Հանդես ամսօրյա»-ի խմբագրությանն ուղղված Ադոնցի նամակի հետևյալ տողերը. «Երեկ միայն ստացա պ[արոն] Բերբերյանից[1] վերջին քարտը, ուր ... կհարցնեք Դիոնիսիոսի թարգմանության մասին:

Դիոնիսիոսի սույն բնագիրը չկար հոս (**այսինքն՝ Փարիզում** - Պ. Հ.) և պետք կար ապսպրել Պետերբուրգից: Հազիվ նորերս ստացվեց շնորհիվ Մառի: Պ[արոն] Բերբերյանը, կարծեմ պ[արոն] Փաշայանի[2] հետ նախապես պիտի ուղղեն թարգմանությունը, հետո զույցե պետք լինի աչքի անցնելու»[3]: Անկասկած է, որ Դիոնիսիոսի հայերեն թարգմանությունը չի գոհացրել Ադոնցին և հրատարակության համար նա չի տվել իր համաձայնությունը:

Այսու ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում Ն. Ադոնցի այդ գլուխգործոցի հայերեն նոր թարգմանությունը, որի արժանիքների և վրիպումների մասին իր անաչառ խոսքը կասի ներհուն ընթերցողը: Սակայն մի բան հստակ է և շատ որոշակի՝ Ադոնցի այս երկասիրության հայացումը ժամանակավրեպ չէ և համոզված ենք, որ այն դեռ երկար ժամանակ կծառայի որպես ուղեցույց՝ հայ քերականագիտական մտքի համակողմանի ուսումնասիրության համար:

Բացի «Դիոնիսիոս Թրակացին և հայ մեկնիչները» երկասիրությունից, այս հատորում տեղ են գտել նաև հայոց լեզվի ուղղագրությանը նվիրված Ն. Ադոնցի «Գրական նշմարներ. լեզվական ուղղագրական» (1904), «Ուղղագրական և տառերի բարեփոխության հանձնաժողովին» (1927) ծրագրային հոդվածները, քերականագիտական մի քանի աշխատությունների վերաբերյալ լույս տեսած գրախոսությունները և ստուգաբանական աշխատություններից երեքը:

Նկատի ունենալով հատորի ծավալի անհարկի ընդարձակումը, ինչպես նաև տպագրական, տեխնիկական և այլ կարգի բարդություններ, սույն Գ հատորից դուրս թողեցինք Ն. Ադոնցի ստուգաբանական ընդարձակա-

---

[1] Խոսքը բանասեր, պատմաբան, խմբագիր, ֆրանսահայ հասարակական աչքի ընկնող գործիչ Հայկ Պերպերյանի մասին է:

[2] Ակնարկում է գրող, թարգմանիչ, ազգային պատվիրակության խորհրդական Լևոն Բաշալյանին (1868-1943):

[3] Վիեննայի Մխիթարյանների դիվան, Ն. Ադոնցի ֆոնդ (նամակը մեզ է տրամադրել վաշինգտոնաբնակ ադոնցագետ Ռ. Ադալյանը, որին հայտնում ենք մեր երախտագիտությունը):

ծավալ աշխատությունը՝ «Հայերեն ստուգաբանական բառարան»-ը (ստուգաբանել է 92 բառ)[1], «Հայ-վրացերեն բառարան»-ը (32 էջ)[2], «Հայոց լեզվի փոխհարաբերությունները իրանական և հաբեթական լեզուների հետ» (ֆրանսերեն, ձեռագիր, 20 էջ)[3], «Մուշի բարբառը» (20 էջ)[4] և այլն[5]: Թվարկված աշխատությունները կարիք ունեն լուրջ ուսումնասիրության, դրանցից շատերի էջերը թափված են կամ ցրված թղթի այլ թղթապանակներում: Անհրաժեշտ է հոգածու մի ձեռք՝ դրանք կարգի բերելու և ապա նոր միայն հրատարակության պատրաստելու:

Այսպիսով առկա նյութը փաստում է, որ հայերենագիտությունը Ն. Ադոնցի համար չի եղել պատահական հրապուրանքի առարկա: Այս բնագավառում նրա կատարած ներդրումը հաստատցրել է հայոց լեզվի քերականության ուսումնասիրությունը բազմաթիվ արժեքներով, որոնք իրավամբ նրան դասել են հայոց լեզվաբանության մեծերի առաջին շարքում: Նշելի է նաև, որ երկերի սույն հատորում զետեղված 14 ուսումնասիրություններից 13-ը Մայր Հայրենիքում լույս է տեսնում առաջին անգամ:

Ինչպես նախորդ հատորները, այս հատորը ևս ունի աշխատասիրողների ծանոթությունների բաժին: Ծանոթությունների համարները դրվում են ծանոթագրվող հատվածի կամ բառի կողքին՝ կլոր փակագծերի մեջ, արաբական թվանշաններով: Բնագրային կրճատ գրված բառերը, կիսատ կամ բաց թողնված արտահայտությունները և բացատրության կարոտ տեղիները վերականգնել ենք՝ դրանք դնելով ուղիղ [ ] փակագծերի մեջ: Տեքստային առանձին վրիպակներ և ակնհայտ, հիմնականում տպագրական բնույթի, սխալները ուղղել ենք առանց որևէ ծանոթության:

Հատորում զետեղված նյութերը հրատարակվում են նույնությամբ՝ միայն որոշ ուղղագրական ու կետադրական միջամտություններով և մասնակի խմբագրական շտկումներով: Ճշգրտել և լրացրել ենք հղված սկզբնաղբյուրների անվանումները, հեղինակների անվանատառերը և այլն:

***Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ***

---

[1] Տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան Թ/Ա-8: Բառարանի մասին մոտավոր գաղափար կարող է տալ ծանոթությունների բաժնում դրանից բերված մի քանի բառերի ստուգաբանությունը (տե՛ս աստ, էջ 460-461):

[2] Անդ, Պահարան, I, գզրոց Բ, թղթածրար 5:

[3] Անդ, Պահարան I, գզրոց Բ, թղթածրար 2:

[4] Անդ, Պահարան Է/Ա-8:

[5] Թողոնում առկա է նաև անավարտ, բազում էջերի ակնհայտ կորստով մի մեծածավալ «Հայերեն արմատական բառարան» (անդ, Թ/Ա-8):



# ՀԱՅԵՐԵՆԱԳԻՏԱԿԱՆ

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

# ARS DIONYSII GRAMMATICI

ET

# ARMENIACA IN EAM SCHOLIA

DAVIDIS PHILOSOPHI, ANONYMI AUCTORIS,

MOYSIS QERDOLI, STEPHANI SIUNIENSIS,

HAMAMI ORIENTALIS ET

CREGORII MAGISTRI

# ԱՐՈՒԵՍՏ ԴԻՈՆԻՍԵԱՅ ՔԵՐԱԿԱՆԻ

ԵՒ

# ՀԱՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ՆՈՐԻՆ

ԴԱՒԹԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ, ԱՆԱՆՈՒՆ ՄԵԿՆՉԻ

ՄՈՎՍԵՍԻ ՔԵՐԴՈՂԻ, ՍՏԵՓԱՆՈՍԻ ՍԻՒՆԵՑՒՈՅ,

ՀԱՄԱՄԻ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ ԵՒ

ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

## ՆԱԽԱԲԱՆ

*Սույն աշխատությունը նվիրված է քերականական այն գրականությանը, որ ծաղկել էր հայոց մեջ Դիոնիսիոս Թրակացու* **«Քերականական արվեստ»**-*ի կապակցությամբ: Դիոնիսիոսի ոչ ծավալուն աշխատանքը հնում մեծ համբավ էր վայելում: Թարգմանված լինելով քաղաքակիրթ գրեթե բոլոր լեզուներով, այն հայտնվել էր նաև հայերենով և սկիզբ դրել համապատասխան մեկնողական գրականության: Այժմ առաջին անգամ հրատարակվող բնագրերը հայ բանասիրության առջև ծառացած ընթացիկ խնդիրների տեսանկյունից շահեկան են ոչ այնքան որպես այդպիսիք, որքան այն դերով, որ դրանք կատարել են հայ դպրության պատմության կարևորագույն մատենագրական հոսանքներից մեկի ձևավորման մեջ: Ի նկատի ունենք Հունաբան դպրոցը, որն այժմ գայթաքար է մեր գիտության համար:*

*Հին հայկական կյանքին առնչվող բազմաթիվ հարցերի ուսումնասիրությունն անհնար է դառնում առանց նախապես հետազոտելու և բացահայտելու նշված դպրոցի դիմագիծը: Դա պարզ է բոլոր նրանց, ովքեր աշխատում են մեր բնագավառում: Գիտակցելով այն վճռական դերը, որ խաղացել են քերականները հիշյալ դպրոցի սկզբնավորման և զարգացման գործում, մենք ձեռնամուխ եղանք հաճախ հիշատակվող, սակայն ոչ ոքի կողմից չուսումնասիրված քերականական երկերի հետազոտությանը: Այս նպատակով 1911 թ. մեր խնդրանքով Կայսերական գիտությունների ակադեմիան պատվիրեց Էջմիածնից բերել քերականական բովանդակությամբ երեք ձեռագիր մատյան: Սակայն մեզ հետաքրքրող հեղինակների անունները կրող այս մատյանները չարդարացրին մեր ակնկալությունները: Ստիպված եղանք նույն 1911 թ. ամռանը մեկնել Վենետիկ և Վիեննա, խնդրո առարկա երկերը փնտրելու, իսկ հաջորդ՝ 1912 թվականին՝ Էջմիածին, այնտեղ պահպանվող ձեռագիր նյութերին անձամբ ծանոթանալու նպատակով: Աշխատանքի ընթացքում մեկ անգամ ևս, 1913 թ. ամռանը, հարկադրված եղանք ուղևորվել Վենետիկ:*

*Պրպտումները մեզ հանգեցրին այն եզրակացության, որ առաջին քերականների՝ Դավթի, Մովսեսի և Ստեփանոսի բուն՝ հեղինակային երկերը,* **որպես առանձին գործեր,** *մեզ չեն հասել (1): Այն նյութերը, որ ձեռագրերում կրում են նրանց անունները, ոչ այլ ինչ են, եթե ոչ Մովսեսի «Քերականության» Ստեփանոս Սյունեցու աստվածաբանական մեկնությունները (2):*

*Մեզ հաջողվեց պարզել, որ փնտրվող երկերը պահպանվել են Գրիգոր Մագիստրոսի, Հովհաննես Երզնկացու և Եսայի Նչեցու հետնագույն քերականական բանաքաղների կազմում: Հաջորդ խնդիրն էր՝ համեմատելով նշված բանաքաղները, առանձնացնել դրանց մեջ ներառված ավելի վաղ հեղինակների գործերը: Ահա այս աշխատանքն է կատարված ներկա հետազոտության մեջ:*

*Ստացված արդյունքները ստուգելու և վերականգնված բնագրերի վավերականությունը կամ ընդունելիության աստիճանը որոշելու համար անհրաժեշտ համարեցինք համեմատել դրանք հույն մատենագրության մեջ առկա նմանատիպ լուծմունք-մեկնությունների (scholia) հետ (3): Մենք չէ, որ դատելու ենք, թե ստացված արդյունքները որքանով են արդարացնում մեր նախաձեռնած՝ կարծես անշնորհակալ գործը՝ ինչպես մեթոդաբանական դրվածքի, նույնպես և իրականացման առումով:*

**Ն[իկողայոս] Ա[դոնց]**



# I. ՉԵՌԱԳԻՐ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

*Քերականական գրականությունը և դրա նշանակությունը հին հայկական մատենագրության համար: Սույն աշխատանքում օգտագործված ձեռագիր հուշարձանները: Դրանց տեսությունն ըստ Էջմիածնի վանքի, ինչպես նաև Վենետիկի և Վիեննայի Մխիթարյան միաբանությունների մատենադարաններում պահված ձեռագրերի:*

Հին հայ մատենագրության նշանակալից ոլորտներից մեկը քերականական գրականությունն է: Այն, ինչպես և հոգևոր կյանքի ցանկացած այլ ոլորտ, ունի սեփական խնդիրներ, որոնց ուսումնասիրությունը զուրկ չէ գիտական հետաքրքրությունից: Թեև քերականական գիտությունը վաղուց առանձնացել է և դարձել ինքնուրույն առարկա, սակայն հնում այն ուսումնասիրվում էր ճարտասանության և փիլիսոփայության հետ միասին, համարվելով ընդհանրապես մտահայեցողական գիտակարգի անհրաժեշտ օղակ: Այս հանգամանքը առավել ընդգծում էր քերականական գիտելիքների նշանակությունը, դրանց հաղորդում առանձին կշիռ:

Առաջին քերականի համբավը (4) ձեռք է բերել Դիոնիսիոս Թրակացին, որն ապրում էր Ք.ա. II դարում, Պտղոմեոս Փիլոմետորի օրոք (180-145): Հռչակավոր Արիստարքոսի աշակերտը լինելով, նա առաջինը համակարգեց իրենից առաջ գոյություն ունեցող նյութերը մի այնպիսի շարադրանքով, որ այն մինչ օրս չի կորցրել իր նշանակությունը: Նրա երկը կրում է «Քերականական արվեստ»՝ Τέχνη γραμματική [1] խորագիրը (5): Դիոնիսիոսի «Արվեստը» ավելի ուշ, Կոստանդին Մեծի ժամանակները տեղափոխելու փորձերն այժմ վերջնականապես համարվում են անհիմն: Մեզ հասած տեսքով այն արդեն ծանոթ է եղել կայսերական ժամանակների հայտնի քերականներին՝ Ապոլոնիոսին և Հերոդիանոսին, ինչպես և Ներոնի ժամանակակից՝ հռոմեացի քերական Ռեմմիոս Պալայմոնին (6):

Դիոնիսիոսի երկը բացառապես վերաբերում է ստուգաբանությանը (7) և չի արծարծում շարահյուսության խնդիրներ: Քերականության այդ մասը զարգացրել էր վերոհիշյալ Ապոլոնիոսը՝ Դիսկոլոս մականվամբ (8), որն ապրել է Դիոնիսիոսից երկու դար հետո, Անտոնինոս Պիոս կայսեր օրոք:

[1] Dionysii Thracis Ars Grammatica, Գ. Ուլիգի (G. Uhlig) նոր քննական հրատարակություն, Լայպցիգ, 1883 (9):

Ապոլլոնիոսի «Շարահյուսության մասին» (*Περὶ συντάξεως*) աշխատությունը մեզ է հասել չորս գրքով, թեև ոչ ամբողջական տեսքով: Նրա որդին ու աշակերտը՝ Հերոդիանոսը, իր հորից ոչ պակաս հռչակվել է որպես հունարենի առոգանության տեսաբան[1]:

Դավիթ Հայի՝ Դիոնիսիոսի քերականության լուծմունքում Հերոդիանոսի վերաբերյալ պահպանել է մի հետաքրքիր, սակայն, ըստ երևույթին առասպելական տեղեկություն. իբր Հերոդիանոսն այրել է բոլոր այլ քերականների գործերը՝ բացի իր հոր գրքից: Դրանով նա ցանկացել է հավերժացնել միայն իր հոր՝ Ապոլլոնիոսի հիշատակը, և կամ խնայել է իր հոր աշխատանքը՝ բովանդակալից լինելու պատճառով: Դիոնիսիոսի աշխատությունը այս տխուր ճակատագրից խուսափել է երևի Հերոդիանոսի ձեռքը չընկնելու պատճառով, կամ թերևս վերջինս այն պահել էր երեխաներին կրթելու համար:

Հույն մտավոր աշխարհում Դիոնիսիոսի ոչ մեծ երկին վիճակվել է աննախադեպ մեծ հռչակ և լայն ճանաչում: Հնում այն ջանասիրաբար մեկնվել է բազմաթիվ վերլուծագրողների կողմից[2], թարգմանվել շատ լեզուներով (10), այդ թվում նաև հայերեն:

Ինչպես հույների, այնպես էլ հայերի մոտ Դիոնիսիոսը դարձավ քերականական մշակույթի կենտրոն. նրանից էին մեկնում և նրան էին հանգում հետագա դարերի բոլոր հեղինակները: Ե՞րբ է առաջացել հայերեն թարգմանությունը, ո՞վ էր դրա հեղինակը, ինչպիսի՞ մեկնություններ է ունեցել, ո՞ր դարին են դրանք պատկանում և ինչպե՞ս են հարաբերակցվում միմյանց՝ այս հարցերը թեև արծարծվել են, սակայն տակավին լուծված չեն:

Այս և մի շարք այլ հարցերի ուսումնասիրությունը պահանջվում է ոչ միայն հանուն քերականական հուշարձանների, այլև այն նշանակության համար, որ քերականական գրականությունն ունի հին հայկական կրթության մեջ եղած գրական դպրոցների հույժ կարևոր խնդրում: Դպրոցների խնդիրը՝ հայ բանասիրության ամենակնճռոտ հիմնահարցերից մեկն է: Դրանց առկայությունը վաղուց է նկատվել և հաստատվել: Դրանք երկու ուղղություն են, մտքի և ոճի երկու հոսանք, որ անցնում են ամբողջ հին գրականությամբ, ավելի ճիշտ՝ դրա սկզբնական շրջանով: Այդ հոսանքները ժամանակագրական առումով հստակ չեն տարանջատվում. ընթանում էին դրանք զուգահեռաբա՞ր, թե՞ հաջորդում էին մեկը մյուսին, այսինքն՝ արդյո՞ք դրանք գոյատևում էին կողք-կողքի, թե՞ մեկը մյուսին էր փոխարինում,

¹ Grammatici Graeci, I, III, p. 129; W. Von Christ, Geschichte der Griechischen Literatur, III Aufl., §§ 564-565.

² Դիոնիսիոսին վերաբերող լուծմունքները հավաքել և հրատարակել է Ա. Հիլգարդը՝ «Հույն քերականներ» մատենաշարում. Scholia in Dionysii Thracis Artem Grammaticam, Grammatici Graeci, v. I, pars III, Lipsiae, 1901.



թե՞ երբեմն հատվում էին՝ այս ամենը պարզ չէ, և մնում է տակավին չհետազոտված և իր բարդությամբ՝ դժվար լուծելի:

Հոսանքների երկու հուները նշմարվում են ամենայն պարզությամբ. դրանցից մեկին արտաքինից բնորոշ է հունաբանությունների հանդեպ մեծ հակում, ուստի և կարող է կոչվել «հունաբան» (11): Բանն, իհարկե, միայն լեզուն չէ: Խոսքի ուրույնությունն այստեղ զուգադրվում է մտքի յուրահատկությամբ: Ինչպիսիք էլ լինեն դպրոցի ծագման մերձավոր դրդապատճառները, դրանց ընդհանուր հիմքն է ակնածությունը հելլեն կրթության առջև[1]: Քերականական գրականության՝ նշված դպրոցին պատկանելն ակներև է: Իսկ դրա ազգակցությունը սույն դպրոցի ամենագլխավոր և, թերևս, ամենավաղ գործերի, այն է՝ Փիլոն Եբրայեցու երկերի թարգմանությունների հետ (12), դրան առաջնակարգ կարևորություն է հաղորդում:

Հունաբան դպրոցը ընդարձակ է և ընդգրկում է զանազան երկերի շրջանակ: Այստեղ կան ոչ միայն զուտ փիլիսոփայական գրվածքներ, այլև բոլոր այն դավանաբանական և ջատագովական երկասիրությունները, որոնց մեջ նկատվում է ծանոթություն փիլիսոփայական ուսմունքներին: Այս դպրոցի ոգով են տոգորված նաև ազգային պատմագրության որոշ հուշարձաններ, թեև ավանդաբար դրանք վերագրվում են այլ դպրոցի և այլ միջավայրի (13): Հունաբան դպրոցի կամ հոսանքի հուշարձանների հետազոտումը, դրանց փոխադարձ կապերի պարզաբանումը՝ առաջին հերթին ժամանակի առումով՝ մի խնդիր է, որի լուծումը պետք է նախորդի հին հայ մատենագրության գանձարանի համակարգման ավելի ընդհանուր փորձերին:

Այդպիսի համակարգման նպատակը հայերի հոգևոր կյանքի զարգացման փուլերի բացահայտումն է: Այս կյանքի բազում արդյունքների կորստի պատճառով այժմ մեզանից սպրդում է նույնիսկ գրական կյանքի հաջորդական զարգացման գիծը: Մենք անկարող ենք դասավորել մեզ հասած գրական գանձերն իրենց ծագման բուն հերթականությամբ, չենք կարող դրանցից յուրաքանչյուրին իր սեփական տեղը հատկացնել ժամանակագրական շղթայում: Բայց այն, ինչ չի հաջողվում անել առանձին հուշարձանների նկատմամբ, թերևս հնարավոր կդառնա, եթե դրանք քննենք ըստ առանձին խմբերի: Հայ դպրության սկզբնական փուլի մատենագրական ժառանգության ցրված լինելու պարագայում կարելի է, այնուամենայնիվ, առանձին հուշարձանների միջև նկատել որոշակի փոխադարձ ձգողություն: Այն երբեմն հասնում է որակների և հատկությունների ընդհանրության՝ ընդհանրություն, որ շաղկապում է հուշարձանների տվյալ դասը միասնական խմբի կամ դպրոցի կապերով: Առանձին խմբերով հուշարձաններն ուսումնասիրե-

¹ Հմմտ. Մովսես Խորենացու՝ հույն գիտության մասին հիացական խոսքը. «մայր կամ դայեակ իմաստից» ([«Պատմութիւն Հայոց»], Ա, 2)՝:

լը կարող է արդյունավետ լինել և հենակետ ընձեռել առհասարակ վիճահարույց երկերի թվագրման համար:

Քերականական գրականությունը վառ շերտ է Հունաբան դպրոցի մեջ: Հնարավոր է նույնիսկ, որ առաջին քերականներն են եղել նշված դպրոցի հիմնադիրները: Ուստի պետք է քերականական գրականությանը մեծ նշանակություն վերագրել ինչպես դպրոցի բնութագրի, նույնպես և հայ իրականության մեջ դրա առաջացման ժամանակը և այլ հանգամանքներ ճշգրտելու գործում: Ցավոք, քերականության ոլորտը ևս կիսում է մեր հուշարձանների ընդհանուր ճակատագիրը. առավել վաղ հեղինակների բուն երկերը մեզ չեն հասել:

Ներկա աշխատասիրության նպատակն է պարզել և որոշել, թե մեզ հետաքրքրող խնդրի առնչությամբ ի՞նչ է պահպանվել ձեռագիր գանձարաններում, ի՞նչ է կորել անդարձ և ի՞նչ կարելի է վերականգնել՝ վերլուծելով հետագա ժամանակների բանաքաղությունները, որ ընդգրկում էին [խնդրո առարկա] մեկնությունները:

Շարադրանքում մենք կցանկանայինք հետևել այն հաջորդականությանը, որով ընթացել է մեր միտքն ու աշխատանքը. ուստի նախ և առաջ մենք առաջարկում ենք տալ մեր աշխատանքի հիմքում ընկած կամ որևէ իմաստով օգտագործված ձեռագրային նյութի տեսությունը:

## I

Ձեռ. 2297 (= 2253 ըստ տպագրված ձեռագրացուցակի), Էջմիածնի վանքի մատենադարանի. փոքրածավալ մատյան (14), որ գրվել է հայտնի Գրիգոր Տաթևացու ձեռքով իր ոչ պակաս հայտնի ուսուցչի՝ Հովհան Որոտնեցու պատվերով, հայոց տոմարի 852 թվականին (=1403) և ունի հետևյալ բովանդակություն.

1. *Յաղագս քերականութեան*, թթ. 1-42, Դիոնիսիոսի բնագիրը:
2. *Մովսեսի քերդողի յաղագս քերականութեանց*. թթ. 43-120:
3. *Մովսիսի քերդողահօր մեկնութիւն քերականի: Գրականութիւն ստուգաբանի քերականութիւնդ*. թթ. 121-126:
4. *Վերլուծութիւնք բացերեւապէս բազմազան բառից եւ բայից յոքնախումբ շարադրութեամբ արարեալ զսա Առիստակիսի գրչի ի խնդրոյ բազմաց յարհեստ գրչութեան: Աստուածազանից արանց առաջի*. թթ. 130-219:
5. *Գէորգեայ վարդապետի արարեալ ի խնդրոյ Ստեփանոսի մականուն Գոյներ Երիցանց Կայծառաւն: Անպարապ անձամբ ձեռնարկեցի ի գրել զսա*. թթ. 219-260:
6. *Առստակէսի բառագրոցն քաղեալ և այս վասն լծորդութեան: Եւ այս են առաջին լծորդութիւնք*. թթ. 260-270:
7. *Յաղագս հաւաքաբանութեան Արիստոտէլի: Գիտելն է ճանաչելն զպատճառ իրին*. թթ. 273-289:
8. *Յաղագս պատրանաց գրոցն: Եւ արդ զի դիտաւորութիւն մեր է յառաջիկայ յիրողութեան խօսիլ ի սոֆիստիքա տրամաբանութենէն*. թթ. 290-337:
9. *Յաղագս տրամաբանական տեղեացն: Եւ արդ վասն զի յաղագս տրամաբանական տեղեաց հանդերձեալ եմք ասել*. թթ. 337-368:
10. *Յաղագս հնգից ընթհանրից*. թթ. 369-387 (բնագրի վերջում կարդում ենք. *այսպէս իմացաւ եւ Դաւիթ փիլիսոփոսն հայկազեան*, 387):
11. *Գիրք վեց սկզբանց*. թթ. 388-400:
12. *Համառօտ հաւաքումն վերլուծութեան վեցից սկզբանց գրոց*. թթ. 401-453:

Գլխավոր հիշատակարանը գտնվում է վերջում և հայտարարում է. *Զստացող սորին զտիեզերալոյս մեծ վարդապետն հայոց Յովհաննէ<ս> Որոտնցի եւ զիս սակաւ աշխատողս Գրիգոր սպասաւոր նմին աղաչեմք զձեզ յիշել ի տէր ամէն. թվ ՊԾԲ գրեցաւ վերջին գիծս ընդ հովանեաւ սուրբ առաքելալոյս միաբանից ուխտիս Տաթևոյ*.

Հինգերորդ բնագրից հետո կարդացվում է. *Փառք փրկչին Յիսուսի և յիշատակ գրչիս Գրիգորի պիտականուն վարժապետի. ամէն*. թ.260բ:

Առկա է նաև մատյանի վերջին տերերից մեկի հիշատակագիրը: *Սր Կարապետ, Սարգիս եպիսկոպոս գինեցի զքրականս իշատակին ձեւ ծնաւղաց իմոց* և այլն, 271բ:

Ազատ թերթերը լրացված են ուշ բոլորագրով. *Բառք քերականին*՝ երրորդ դրվագի վերջում, թթ. 126-129. *Հոլովք անուանց*, 272: Վերջին էջի վրա զետեղվել է հետևյալ չափածոն.

*Եւ այսաւր եղեւ պայծառ զարուն,*<br>
*զան եւ թռչունքն պար առնուն*<br>
*քաղցր եղանակն հաւերուն,*<br>
*դիլբար բլբուլ հետ ծաղկընուն*<br>
*շատլըխ կենէ ի վերայ վարդուն:*<br>
*Ա՜խ, ա՜խ, ինչ եմ, խիստ մեղաւոր եմ ես, վայ է ինձ, վայ է ինձ:*

## II

Ձեռ. 2359 (= 2316 ըստ տպագիր ձեռագրացուցակի), Էջմիածնի վանքի (15): Մատյանի մի մասը գրված է Եսայի վանականի՝ 1636 թ., մյուսը՝ Վարդերես Լեհացու կողմից, և ունի հետևյալ բովանդակությունը.

1. *Քերականութիւն*, թթ. 1-14, Դիոնիսիոսի բնագիրը:
2. *Մեկնութիւն բառից քերականին՝ ի յառաջն գիտ ի բառգիրքն* (տե՛ս բնագիր 4), *բայց տեղ էր այս (է) ստուգիւ: Մովսեսի Խորենացւոյ բան իմաստութեան*, թ. 15:
3. *Յառոգանութեան պատառիկս զոր գտի*, թ. 18:
4. *Բառք քերականի*, 19-21. երկրորդ անգամ՝ թ. 23-25:
5. *Նախադրութիւն բանի ի ցոյցս պատճառի հաւաքման մեկնութեան քերականին եւ աղերս խնդրոյ աշխատողիս Յովհաննիսի առ սպասաւորդ բանի*. թ. 25-28: *Ի խնդրոյ տեառն Յակոբայ հայոց Կաթողիկոսի եւ վարդապետաց մերոյ եղբարց արարեալ զհաւաքումն քերականին մեկնութեան* **Յովհաննիսի Երզնկացւոյ** *ուսումնականի գրոց*. թ. 29-158:

Հեղինակի հիշատակարանը գրքի վերջում պակասավոր է (տե՛ս ստորև):

6. *Քերականութիւն է հմտութիւն ստոյգ վերծանութեան եւ անթերի գրչութեան: Հարցումն. քանի են մասունք քերականութեան: Պխ. վեց*. թթ. 158-215:
7. *Քերականութիւն է ը̅ մասանց բանի: Զի՞նչ է բան: Պխ. բան է հետեւակ բանի շարադրութիւն*. թթ. 215-234:
8. *Նուաստ Յոհաննէս վարդապետի* **Եզնկացոյ**, *որ եւ* **Ծործորեցի**, *արարեալ համառօտ տեսութիւն քերականին*. թթ. 236-314:
9. *Հարց. զի՞նչ է քերականութիւն: Պխ. հմտութիւն է*. թթ. 315-385: Ոմն Դավիթ Ամդեցու գործ է, որը Հովհաննեսի քերականության վերամշակումն է հարց ու պատասխանի ձևով և հիշատակարանով. *Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր եւ զյետնեաս յԱմ<քա>ցւոցն զԴաւիթս, որ աշխատեցայ հետ բանական արհեստիս, այսինքն քերականիս, զայնս, որ յառաջին քերթողաց ասացեալ էր եւ մեկնեալ պարզ, զնա յերկուս գծեցի, այսինքն ի հարցումն եւ ի պատասխանիս, ի վարժումն մանկանց նորազունից, զի ի հարցանել միոյն հարկ լինիցի միւսոյն տալ պատասխանի, որ վասն այնորիկ յաւժարեսցին ուսանել եւ մի՛ հեղգասցին: Իսկ ի տեղիս տեղիս զերկարն, որ ծանծրացուցանէր զընթերցօղն, զնա կարճացուցի, եւ զկարճսն, որ զմիտս բանին պարզ ոչ յայտնէր, զայն երկարացուցի չափաւոր*: Այս նույն երկը գտնվում է, ըստ Հ. Տաշյանի ձեռագրացուցակի, նաև Վիեննայի մատենադարանի թիվ 84 (թ. 2) և թիվ 95 (թ. 1) մատյաններում:
10. *Յաղագս քերականութեան համառօտ լուծմունք ի տէր Առաքելէ Սիւնեաց եպիսկոպոսէ ի մեկնութիւն քերականութեանս պէսպէս յատկութեամբ պարզեալ վասն դիւրալուր հասկանալոյ զխորութիւն բանին քերականին եւ յաղագս նախերգանի քերականութեանս առաջին, որ ասէ յաղագս քերականութեան*, թթ. 386-442:

Եսայիի հիշատակարանը չորրորդ՝ *Բառք քերականին* բնագրի վերջում ասում է. «*զԵսայի վարդապետ գծող քերականի բնաբանին եւ բառին յիշել աղաչեմ թվին ՌՁԴ* (= 1636 թ.) *մայիսի ի̅է̅: Նաեւ Առաքել Սիւնեցւոյ լուծմունքս, որ ի վերջ գրքիս, գրեցի իմով ձեռամբ ի դուռն ս. Էջմիածնայ տօնի ս̅ր̅ Յովհաննու եւ Աթանագնա, աւուր ե̅-շաբթի եղեւ աւարտ: Աւաղ կենացս սաք հազար ալֆ, վայ զիս ո՜հ ո՜հ*»:

## III

Ձեռ. 2372 (=2239 տպ. ձեռագրացուցակի) Էջմիածնի մատենադարանի 1621 թ. (16) հետևյալ բովանդակությամբ.

1. *Մեկնութիւն բառից քերականութեան*. թթ. 1-4 (=ձեռ. 2359, բնագիր 4):
2. *Յաղագս մեկնութեան քերականին, զոր արարեալ է մեծ վարդապետին Վարդանայ ի խնդրոյ թագաւորին Հայոց Հեթմոյ*. թթ. 5-63:
3. *Առոգանութեան պատառիկս զոր գտի*. 63 (= ձեռ. 2359, բնագիր 3):
4. **Մովսեսի Խորենացւոյ** *բան իմաստութեան*: Թթ. 64-65 (= ձեռ. 2359, բնագիր 2):
5. *Նշանագիրք*. թթ. 65-67:
6. *Վերլուծութիւն բացերեւապէս բազմազան բառից եւ բայից յոքնախումբ շարագրութեամբ արարեալ զսա Առիստակիսի գրչի ի խնդրոյ բազմաց յարհեստ գրչութեան*. թթ. 68-107 (=ձեռ. 2297, բնագիր 4):
7. **Գէորգեայ** *վարդապետի արարեալ ի խնդրոյ Ստեփաննոսի մականուն Գոյներիցանց Կայթառաւնցոյ մեղսաներկ անձին*. թթ. 108-124 (= ձեռ. 2297, բնագիր 5):
*Խրատք գրչութեան զոր արարեալ էր զսա յառաջագոյն ի խնդրոյ ումեմն*. թթ. 124-132:
8. *Այս բառք բաղաձայնք հոմանունանց բազձաձեալ զամենայն որ ինչ միանգամ են անուանք հեբրայեցի յարէնս եւ ի մարգարէս եւ ի նոր*

*կտակարանս, թարգմանեալ եւ մեկնեալ յերրայեցւոյն ի յոյնն եւ ի յունէն ի հայ կարգաւ ըստ նշանագրաց ալֆաբեթիցն եբրայեցւոց թէ զինչ միաբանութիւն անուանց ունիցին.* pp. 133-152:
9. *Այս բառք են քերթողականք վասն չափոյ հոմերական տառիցն.* pp. 152-226:
10. *Հանդէս բանաստեղծաց փաղանունաբար ստորոգիլ նորավարժիցն սակս բառ է գեղջուկ.* pp. 226-235:
11. *Թարգմանութիւն պարսիկ բառից ի Վարդան գրոց.* p. 236:
12. *Շաղկապ է:*
13. *Հոլովք անուանց. ա̃ծ:*
14. *Արդ թուին եբրայեցիք զգիրս զայս ձեւ աւրինակի,* p. 237՝ աստվածաշնչյան գրքերի թվարկում:
15. *Բառք Գալիանոսի բժշկի Մխիթարա վաղամեռուկ.* pp. 238-247:
16. *Թարգմանութիւն դեղոց, զոր ընտրեալ են իմաստունք.* pp. 240-242:
17. *Յիշատակարան գրոցս.* pp. 247-253:
18. *Վասն ը̃ժ-ն պարգեւաց մարդոյն.* p. 258:
19. *Գալիանոսի. արար ա̃ծ զգլուխն գ̃ մասն.* pp. 259-263:
20. **Հարց.** *զի՞նչ է իմաստասիրութիւն.* pp. 263:
21. **Մովսէսի** *քերդողի յաղագս քերականութեանց.* pp. 264-303 (= ձեռ. 2297, p.2):
22. **Մովսիսի** *քերդողի հաւր մեկնութիւն քերականի.* pp. 303-304, պակասավոր է (= ձեռ. 2297, բնագիր 3):
23. *Հց. Պղատոն զԱրիստոտէլ որպէս ընդունէր.* p. 305:
24. *Նորին* **Գրիգորի** *աշակերտի Յոհաննու Որոտնեցւոյ լուծումն համառաւտ դժուարիմաց բանից ի գիրս գրչութեան, որ(ո) յԱռիստակիսէ հռետորէ.* pp. 306-312:
25. *Նորին* **Գրիգորի** *լուծումն համառաւտ ի խրատ գրչութեան Գէորգեա վարդապետի, զոր նախ խնդրեալ էր Կոստանդեա գրչի եւ ապա Գոյներիցանց Ստեփաննոսի.* pp. 313-319:
26. *Դարձեալ խրատ նոյն* **Գէորգ** *վարդապետի առ Ստեփաննոս Գոյներիցանց գրեալ.* pp. 319-321:
27. *Յաշխարհացն լուծմունք.* pp. 322-325:
28. **Դաւիթ** *փիլիսոփայն է ի Հա<ր>ք գաւառէ ի Հերեթն գեղջէ, աշակերտ Սահակայ եւ Մեսրովբայ, քուերորդի Մովս<ի>սի քերդողի հաւրն ի կ̃-ից, որք ընտրեցան ուշեղք, փափկաձայնք եւ երկարոգիք ամենայն առաքինութեամբ զարդարեալ, որ յետ ճ̃ժ ամի սրբոյն Գրիգորի ի գտանել գրոյն ազգիս ընտրեցան եւ յետ ի̃ը ամի գտանել գրոյն եւ կոտորումն սրբոց Վարդանանց, ի բաժանումն հայրապետաց յեր-*

*կուս Յոհան Մանդակունի ի Պարսից կողմն կա կաթողիկոս եւ Գիւտ ի Յունաց կողմնս, յաշակերտաց սրբոց քահանայիցն:* Թ. 321p:
29. *Նախ ասի գօտի կուսութեան. p. 22:*

Գլխավոր հիշատակարանը զետեղված է 243-րդ թերթում.

*Փառք եւ պատիւ հաւր անեղին*
*Անպար, անհաս եւ անմահին:*
*Արդ ես տկար անձն անարժան*
*Գծաւղ տառիս իմաստութեան*
*Հասեալ ի կէտն ավարտման*
*Հնչեմ ձայնիւ բան գոհութեան:*
*Եթէ կամիս ըզթվականն*
*Կալ եւ հաշուեա զքսան յոթելեան*
*Երկեռակի տասն թեր յայն*
*Ի դոսն թիւ ընդ երկոտասան:*

(*Ի դոսն*, ըստ երևույթին, աղավաղված «Բ դ-սն» է, այսինքն՝ «2×4»= 8: Թվականն է . 50×20+2×3×10+2×4+12=1080):

*Յուսով անմահին աստուծոյ ի թվիս շրջագայութեան հայկազեան մեծ տաւմարի հազար եւ ութսուն գծագրեցաւ եւ յանկ ելեալ կատարեցաւ տառս իմաստասիրական զամենիմաստ հանճարով ճոխացեալ գիրքս այս, որ ունի կաճառեալ բովանդակ ի յինքեան* **զմեկնութիւն քերականին** *բացայայտեալ ի տրամաբան եւ իմաստախոհ մեծին* **Վարդանա***: Այլ եւ խրատ եւ սահման գրչութեան արհեստի վերլուծեալ բազմազան ճոխութեամբ վեհագոյն մակածութիւնն* **Առիստագիսի** *գրչի: Եւ զբերին նորա լցեալ յաւելուածով մեծ վարդապետին* **Գէորգեայ***: Այլ եւ զքառգիրքն շարագրեալ զհետ միմեանց: Ընդ նմին եւ* **զՊաւրֆիւրն** *եւ զվերլուծութիւնք նորին արտադրեալ ներհուն հռետորին* **Դաւիթ Ներգինացոյ** *անյաղթ փիլիսոփայի: Եւ զաշխարհաց գիրքն մեծ իմաստասերին Արիստոտէլի եւ այլ սուղ ինչ, զոր տեսանէք: Ընդ որս եւ զմեկնութիւն քերականին աշխոյժ ախոյանին* **Մովսէսի** *քերթողահաւրն:*

*Եւ արդ եղեւ սկիզբն եւ կատարումն այսմ գծագրութեանս ի յերկիրս Արարատեան ի յոտն Արագածու ի սահմանս գիւղաքաղաքին Կարփու ի հրեշտակաբնակ մենաստանս ս̃ր Կարապետի ընդ հովանեաւ բարձրաբերձ երկնահանգէտ ս̃ր Ածածնի տաճարիս, որ մակադրեալ յորջորջի Յոհանավանք, որ է այժմ դպրոց եւ ժողովեալ կան յոլով համբակատիպ մանկունք ի յուսումն եւ ի վերծանութիւն ա̃ծաշունչ գրոց հրամանաւ եւ ծախիւք տ̃ն Մովսէսի սրբազան կաթողիկոսի ընդհանուր հայկազեան սեռի կրկին լուսաւորչի:*

*Եւ արդ աստանաւր կամիմ հակիրճ եւ համառաւտ բանիւ վիպել ի տառիս զկենցաղավարութիւն սորա* (հաջորդում է Մովսես կաթողիկոսի կյանքի և գործունեության շարադրությունը, որն ավարտվում է հետևյալ գրություններով).

*Արդ տարփողք իմաստութեան եւ վայելողք այսմ քերթողական արհեստիւ ճոխացեալ տառիս, յիշեցէք յաւժար կամաւք ի մաքուր յաղօթս ձեր զամէններջանիկ եւ զպատուական հայրապետս մեր, յորոյ սակս յայսմ վայրի բանս ճառեցաւ, որոյ վեհ հրամանաւն գծագրեցաւ գիրքս այս իմաստասիրական, զտենչալի խաղալիկս աշակերտեալ ուսման սիրող մանկանց:*

*Նաեւ ընդ բազմավաստակ ո̅ր հօրս յիշեցէք զբազկակից եղբարքն եւ զաշակերտեալ մանկունքն իւր զյոգնահանճար եւ զբազմարուեստ զԽաչատուր վարդապետն Կեսարացի եւ զմաքրասնունդ եւ զշահողն ամենայնի զՓիլիպպոս վարդապետն, որ յոլով եւ բազմադիմի երկ եւ աշխատանք ունին ընդ անարժանութիւնս մեր ուսմամբ եւ ոգէշահ խրատով, զոր տէրն Քրիստոս հատուցանէ վարձս բարեաց ընդ տրիտուրն աշխատանաց աստ եւ կրկնակի գալստեանն ամէն:*

*Այլ եւ յիշեցէք ի ո̅ր սրտի ձերում զաշակերտակից սոցա եւ զհամշիրաք վարդապետքն, զխարազնազգեացն զԹումայ վարդապետն եւ զԱրիստակէս վարդապետն եւ զքաջ տեղեակն զՄելքիսէթ վարդապետն <եւ> Զաքարիա վարդապետն եւ զմիւս Խաչատուր վարդապետն եւ զՅակոբ վարդապետն եւ զկայծակնամաքուրն զտէրն (յ)Եսային, որ յոլով աշխատի ի վերա միաբանից եղբարցս, եւ զաղօթասէր եւ զբաղձալին բնաւից զհամշիրաքն իմ զտէր Ղազարն եւ զտէր Յակոբն եւ զտէր Գրիգորն եւ զտէր Սիմոնն եւ զայլ համաշունչ եւ զմիախորհուրդ եղբարքս եւ զաշակերտեալ մանկունքս, որ կան կաճառեալ եւ ժողովեալ ի համալսարանի կաթուղիկոսարանիս, զոր ամենազօրն աստուած* և այլն:

*Այլ ես անարժանս եւ տարտրոշեալս բացորոշաբար ի յոքունց բազմավէր գոլով յոգի եւ ի մարմին խոցեալ եւ վիրաւորեալ ի թունալից ժանեաց բանսարկուին, որ կամակար մտօք հետեւիմ դրժանաց նորին: Զոր եւ թախանձեմ զհանդի<պ>ողք տառիս յիշել ի մաքրափայլ յաղօթս ձեր զիս զտառապեալ մեղօք մեռեալ Ղուկասս, որ կամ ի կաճառ վերոյգրեալ հարցս եւ եղբարցս իբրեւ սկի լայն ի ջուլիրս խաշանց եւ որպէս զթխատեսակ զագռաւս ի պարս աղաւնեաց: Քանզի եւ ես տրուպս եղէ խուն ինչ պատճառ գրութեան քերթողական տառիս այս հրամանաւ սրբազան հայրապետիս մերոյ, վասն որոյ հայցեմ ի սուրբ հարցդ եւ եղբարցդ, յորժամ վայելէք եւ զմայլիք յայսմ իմաստութենէ գինոյ, յիշման արժան առնէք առաջի զենման անմահ գառինն Յիսուսի* և այլն:

*Եւ դարձեալ կրկին անգամ աղաչեմ զձեզ, ով ո̅ր ընթերցողք, զի յիշման արժանի առնէք առաջի Քրիստոսի ո̅ր եւ մաքուր աղաւթիւք ձեր զմիաբանք ո̅ր ուխտից Յոհանավանից, որ է այժմ դպրանոց, որպէս կանխաւ ճառեցաք. քանզի աստ առ դրան ո̅ր Կարապետիս գրեցաւ եւ սրբագրեցաւ եւ ծաղկեցաւ եւ կազմեցաւ իմաստապատում տառս այս ի մէջ բազմահոյլ եղբարցս: Եւ արդ յիշեցէք զծերունի տէր Բարսեղն, որ է հայր եւ խնամածու մանկանցս եւ զտէր Պետրոսն համախոհ նմին եւ զՍիմէոն զաւազ սարկաւագն, զծաղկօղ գրոցս եւ զՍտեփանոս քահանայն, որ մեծաւ աշխատութեամբ գրեաց զսայ ի վայելումն ուսումնասէր մանկանց, եւ զՄարտիրոս ջահընկալն, որ աշխատեցաւ ի սրբագրելն եւ ի վերջ գրոցս է̃ տետր գրեաց. այլ եւ զմիւս Մարտիրոսն ընթերցօղ, որ կոկեաց զթուղթն եւ զայլ համախոհ եղբարքս արժանի առնէք յիշման* և այլն:

Անդ, ազատ մնացած տեղում ստացողներից մեկի հիշատակարանն է. *Զվերստին ըստացօղ քերականութեան եւ գրչութեան արհեստիս Յոհան վարդապետ մակ անուն եւ տեղեաւ Կարճեւանցի կոչեցեալ յիշեսջիք աղաչեմ, ով ընթերցօղք*:

Ուշ սեփականատիրոջ հիշատակարանը. *Յիշատակ է այս բառք գիրքս Սըրայտուրեցի Թաթէոսի, որդի ո̅ր Ղուկասին, մօրն Մայրեանին եւ որդոյն իւրոյ Սըմբաթին, խնդրեմ* և այլն, թ. 246: Կրկնվում է թ.132, ինչպես նաև գլխավոր հիշատակարանից առաջ, թ. 246:

Երկրորդ գրչի՝ Վարդերեսի հիշատակագիրը գտնվում է չորրորդ բնագրի վերջում, թ. 157. *Զմեղաւոր գրիչս սուտ անուն Վարդերյես Լեհըցիս յիշեցէք ի Քրիստոս աղաչեմ զձեզ,* ինչպես և 215-րդ թերթում. *զմեղապարտ գրիչս զՎարդերեսըս Լեհըցիս յիշեցէք ի տէր. ա̅ գրիչով ՜ տետր իմ գրեր, օրն ա̅ տետր.*

225-րդ թերթում XXI տետրը նշանակված է հայկական և լեհական թվերով. *իա Zj*, որոնց ներքո ծանոթագրվում է. *Հային. այլ լեհի գիր է, գրել իմ, որ խալատես ոչ հսապումն*:

Վարդերեսի գրությանը հանդիպում ենք ևս մեկ անգամ թ. 314. *Աղաչեմ զձեզ, սիրելիք, վասն աստուծոյ համար, որ եթէ կարդալով, եթէ օրինակելով, թէ ա̅ ա̅ սղալ գտանէք եւ գրիս նուաստութեան համար չի լինի թէ ներանայք, որ իմ կարողութիւնս այսչափ էր. մեղապարտ գծողս սուտանուն գ̆. ժ̆. ե̆. խ̆. ծ̆. շ̆. բ̅գ -սըս յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր եւ յիշողն յիշեալ լիցի ի միւս անգամ գալուստն քրիստոսի ամէն*: Հեղինակի մտահղացմամբ նշված թվերի ներքո թաքնված է նրա անունը. գ̆. ժ̆. ե̆. խ̆. ծ̆. շ̆. բ̅գ տառերի թվային արժեքները [=3.10. 5. 40. 50. 500. (2+3)] մի կողմից, և «վ-ա-ր-դ-ե-ր-ե» [3000.1.5000.4.5.5000.5] առանց «ս» տառի պետք է համապատասխանեն միմյանց:

Գլխավոր հիշատակարանի համաձայն, ձեռագիրը պարունակում էր

նաև Պորփյուրի երկը, որը նրա մեջ չենք գտնում: Թերևս դրանով է պայմանավորված տետրերի համարակալման անհետևողականությունը. մինչև *իա* համարը (թ. 240) հաշիվը ճիշտ է ընթանում, սակայն հաջորդ տետրը նշված է *իբ* տառերով, որոնք ջնջված են և փոխարինված իթ թվով, լուսանցքում տրված նշումով. *օրինակն հէնց էր:* Հին համարակալման թվերը ջնջված են և հաջորդ տետրերում ընդհուպ մինչև վերջինը, որը նշված էր *լը* թվով և շտկված է *իը*: Նշումից երևում է, որ մեր ձեռագիրն ընդօրինակվել է վնասված օրինակից իր մեջ եղած բոլոր շտկումներով հանդերձ:

## IV

Ձեռ. *Գ.գ.* 1273, Վենետիկի մատենադարանի (17). Վարդանի քերականական աշխատության ընդօրինակությունն է, որ կատարել է 1614 թ. գրիչ Առաքելը, Դիոնիսիոսի բառգրքով և Մովսեսին վերագրվող «Բան իմաստութեան» երկով հանդերձ.

1. *Մեկնութիւն բառից քերականին.* թթ. 1-8.
2. *Քերականութիւն է հմտութիւն* (Վարդանի աշխատությունը).
3. *Մովսէսի Խորենացւոյ Բան իմաստութեան:*

Հիշատակարանն ասում է.

*Աստանօր յանգ ելեալ կատարեցաւ տառս այս իմաստապատում, որ կոչի* քերական, *արարեալ եւ մեկնեալ զսա մեծ վարդապետին հայոց Վարդանայ Կիղիկեցւոյ ի խնդրոյ բարեպաշտ թագաւորին Հեթմոյ: Ի թուիս հայոց ՌԿԳ* (=1614 թ.), *ամիս հայոց ահկի ծգ, աւարտումն եղեւ ձեռամբ մեղապարտ եւ յետին գրչի ի մայրաքաղաքս Կոստանդնուպոլիս ի դուռն սուրբ Նիկողայոսս Զմիռնացւոյ հայրապետին եւ այդ սրբոցն, որ աստ կան հաւաքեալ, ի պատրիարգութեան Յովհաննէս վարդապետին ի խնդրոյ բարեսէր եւ հեզահոգի եւ ընթերցասէր Թորոս սրբասուն կրօնաւորի: Առաքել՝ գրիչ. վարպետն՝ Հիզանցի տէր Մարտիրոս քաջ փիլիսոփայն եւ երաժիշտն:*

## V

Ձեռ. *Ը.գ.* 1104, [Վենետիկի մատենադրանի] (18), ժողովածու, առանց հիշատակարանի եւ տարեթվի, հետևյալ բովանդակությամբ.

1. *Յաղագս <քերականութեան>*, թթ. 1-16, Դիոնիսիոսի բնագիրը, գրված հին բոլորգրով.
2. *Հիմնարկէք եկեղեցւոյ: Ժողովէ աստուածային քահանայապետն ի տեղին նուիրեալ*, թթ. 27-43, բոլորագիր.
3. *Սուրբ հաւրն մերոյ Մովսէս: Քերթող է, որ զմասունս գիտէ բանին*, թթ. 45-101: Մինչև թ. 57-րդը գրչությունը երկաթագիր է, այնուհետև գալիս է հին բոլորգիր, որով գրված է և առաջին բնագիրը՝ Դիոնիսիոսի քերականությունը, սակայն տեղ-տեղ փոխարինվում է սովորական՝ երկրորդ հոդվածի բոլորգրով.
4. *Պիսիդեայ է պատառիկս: Ով մշտաշարժ երկնի բնութեան զնդաձեւ իմաստագործ ձեղուանցն.* թթ. 101-105.
5. *Գլուխք երկրորդ աւրինաց.* թթ. 105-115: *Երկրորդումն աւրինաց: Այս են պատգամք.* թթ. 115-259:
6. *Ժողովումն մեկնութեան աւետարանին Մատթէի: Սիրոյ զաւրութիւն գեղազանց է.* թթ. 263-441, Ներսես Շնորհալու մեկնությունը:
7. *Յաղագս խնդրոյ ընթերցուածին մր վարդապետաց*, ներածություն հաջորդ հոդվածի. *Ամենայն տաւնից տէրունականաց.* թթ. 445-482:

## VI

Ձեռ. *Ա.դ.* 875, [Վենետիկի մատենադարանի] (19), նույնպես ժողովածու: Առկա է հետագա ստացողի և նորոգողի՝ Վարդան Բաղիշեցու հիշատակագիրը՝ ՌՃԻ թվականից (= 1671 թ.):

1. *Քերականութիւն.* թթ.1-24, Դիոնիսիոսի բնագիրը, սկզբի 8 թերթերը ավելի հին են, քան մատյանի մնացած մասը:
2. Գրիգորի Մագիստրոսի *եւ կիտաւնտի որդոյ Վասակա մարտիրոսի մեկնութիւն քերականի.* թթ. 25-141:
3. *Մասունք մարմնոյն.* թ. 141:
4. *Յաղագս ծ ստորոգութեանց մասանցն Արիստոտելի.* թթ. 142-146:
5. *Բառք եբրայեցւոց*, թ. 146:
6. *Բառք յունարէն*, թ. 164:

7. *Բառք քերդողաց*, ք. 165:
8. *Բառք որ ինչ ի խորանն եւ այլոց անյայտից*, ք. 223:
9. *Բառք Վարդան գրոց*, ք. 229:
10. *Մեկնութիւն նշանագրաց ալֆաբէնից եբրայեցոց*, ք. 230:
11. *Անուանք խեցեմորթացն*, ք. 230:
12. *Հանդէսք բանաստեղծաց փաղանունարար*, ք. 231:
13. *Նշանագիրս այբութենից*, ք. 243:
14. *Բառք Գաղիանոսի բժշկապետի*, ք. 248:
15. *Բառք զովասանականք ոգեալ*, ք. 255:
16. **Դաւթի** *փիլիսոփայի Ներգինացւոյ յառաջաբանութիւն* **Սահմանաց իմաստասիրութեան**. ք. 268:
17. *Դաւթի փիլիսոփայի ընդդէմ առարկութեանց չորիցն Պիհռոնի*, ք. 367:
18. *Մեկնութիւն բանից* **Դաւթի** *փիլիսոփայի, որ է կատարումն նորին տառի, որով վասն սահմանացն իմաստասիրութեան, ասացեալ Ներսիսի, եղբաւր կաթողիկոսի հայոց Գրիգորիսի, ուրումն սիրողի իմաստութեան:*
19. *Գիր փիլիսոփայական:*
20. *ՅԱրարածոց մեկնչէն:*
21. *Պատճառ* **սահմանաց գրոց***: Մեծն Դաւիթ եւ Եզնակ Կողբացին գնացին յԱթէնս եւ լուան եւ տեսին բիծս ի վերա վարդապետացն եւ զայրացեալ մեղադրեցին: Եւ սոքա զչարեալ ասեն զհայս կարճոգիս եւ չարճճիս եւ հակառակս եւ փորձողս, զոր յիշէ աստուածարան, եւ խորհել չքաղոլ զոք անդ ի հայոց ուսանիլ եւ չգոյր պատճառ այլ, բայց աւելի իմանալն քան զայլս ազգաց. եւ զի էր ի նոսա շատ ինչ հակառակութիւն: Պիհռոնացիք եւ սքեպտացիք, որք ակադիմեանք կոչին, այս է հակառակ կալ, որք սովորեցին բազում բանս ի սուրբ գրոց հենգնել, որպէս զաէրունիսն եւ զԴաւթի զբանս թէ «հաւատացի զոր եւ խօսե<ցայ>»: Նոյնպէս եւ զիմաստասիրութիւն անգոյ ասացին եւ անէ եւ պատահմունք եւ անսահման: Առնէ զայս գիրք թէ կարող են հայք զայս եւ ք<է> դուք ընդէր զայս անտես արարեալ զհայս ամբաստանէք: Ոմանք ասեն թէ ի տեղն գրեաց եւ զօրինակն ի հետ եբեր եւ կէսք թէ յերկիրս գրեաց եւ առաքեաց, որպէս Ստեփաննոս զիւր բուխբն: Բայց յոյնք ասեն է գիրք ունել զԴաւթի եւ յիւրեանց ազգէ ասեն զնա. այլ յայտնի է ազգական եւ աշակերտ է Մովսէսի քերթողի եւ առ մեզ են սորա գիրք ՟Դ. ա. բարձրացու<ցէք>, բ. սահմ<անաց>, գ. պէտքն, դ. մեկնութիւն քերականին. են եւ այլ ճառք առանձնականք եւ մեկնութիւն վերնագրաց սաղմոսին: Կարող էր եւ բազմաց աստուածատուր իմաստիցն, զի զընական եւ զշնորհականն քաջ ունէր զատ յուսմանէն: Այլ վասն անիշխանութեան եւ ազգիս անընդելութեանն խափան եղեւ: Զայս գիրքս ի նոցունց գրոց հաստատէ զկարն յայտնել. ք. 391: Գրված է նոր թերթի վրա, ուրիշ ձեռքով, կոնաձև, թերթի երկու երեսը լցնելու համար: Արդյո՞ք դա հին բնագրի համառոտումը չէ:
22. *Պատճառք գրութեան քերականի*. ք. 393, քաղվածք Հովհաննես Երզնկացու առաջաբանից:
23. *Հարցմունք եւ պատասխանիք իմաստասիրաց*. ք. 408:
24. *Դաւթի փիլիսոփայի յաղագս արուեստաւոր իմաստասիրաց*՝ հույն փիլիսոփաների թվարկում:

VII

Ձեռ. 38 Տաթևի, այժմ՝ Էջմիածնի վանքի (20): Գրիգոր Մագիստրոսի Քերականության ընդօրինակությունն է, կատարված, ինչպես երևում է Եմավոն վարդապետի հիշատակագրից, մինչև 1469 թվականը, երբ ձեռագիրը, որ դրանից առաջ տարվել էր վանքից, վերադարձվել է ըստ պատկանելույն:

**Գրիգորի** *մաժիշտռոսի եւ կիտաւնտի, որդւոյ Վասակայ մարտիրոսի: Մեկնութիւն քերականի, զոր եղեալ է զայլոց եւ զիւրոց յաւելուածոց միտս.* քք. 22-124:

Գրիչ՝ Լևոն. *Եւ յիշատակ գրչիս Լեւոնի ամէն:*

Եմավոնի հիշատակագիրն ասում է. *<զ>Եմաւոն վ͞րդս յիշեցէք որ զքերական գիրքս ի <Ա>րկաւագանց վանիցն բերաք ի <վանս> Եւստաթէի <վ͞ս>ր առաքելոյս: Գիրքս այլ ի Տաթեւ վանիցս է եղել <տարա>ծ. վ͞րդ Գրիգոր Յովաննէս վ͞րին էր տուել մականուն Կարմիր. մեք այլ վերստին բերաք ի վանքս: Յիշեցէք սրտի մտաւք զմեղաւք զառածեալս զԵմաւոն վ͞րդս եւ ա͞ծ զյիշողքդ յիշէ ի կեանսն ամէն: Ի թվ. ՋԸ էր, երբ բերաք զգիրքս:*

VIII

Ձեռ. *Գ.ք.* 871, Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի (21), Գրիգոր Մագիստրոսի քերականության ընդօրինակում, փոքրադիր, առանց հիշատակարանի և տարեթվի, նոտրգիր.

**Գրիգորի մաքիստրոսի** *եւ կինտօնտի, որդոյ Վասակա մարտիրոսի: Մեկնութիւն քերականի, զոր եղեալ է զայլոց եւ այլ եւս յաւելեալ յիւրոց իմաստիցն:*

## IX

Ձեռ. *Է.գ.* 306, Վենետիկի մատենադարանի (22), Հովհաննես Երզնկացու քերականական աշխատության ընդարձակ խմբագրության (23) հոյակապ ընդօրինակությունն է: Ձեռագիրն ընդօրինակվել է նրա աշակերտ Թորոսի կողմից, ըստ երևույթին, հեղինակի կենդանության օրոք և ունի բնօրինակի արժեք: Սկզբում, թերևս ինքն իսկ Հովհաննեսը զետեղել է Դիոնիսիոսի քերականությունը: *Քերականութիւն է հմտութիւն*, pp.1-21 (հավելվածում տեղադրված է բառգիրք՝ *Բառք քերականին*, որին հաջորդում է *ստուած* բառի հոլովումը): 22-րդ թերթից սկսվում է Հովհաննեսի երկը՝ հանգամանալից նախաբանով, որը մենք վերլուծելու ենք վարը: Ընդարձակ ավարտական հիշատակարանը նույնպես պատկանում է հեղինակին և հայտնում է հետևյալը.

### *Յիշատակարան գրոցս*

*Մեծասքանչ եւ զարմանահրաշ բանաւոր կենդանիս այս մարդ միեւնոյն կազմած եռակի տարորոշմամբ զանազանի, միտք գոլով իմանալի եւ եռամասնեա հոգի եւ մարմին զգալի. վասն որոյ եւ բարեացն սորա փարթամութիւն յերիս զանազանի հոգեկան եւ մարմնական եւ որ շուրջ զմարմնովն: Եւ հոգեկանք են իմաստութիւն եւ հանճար, աստուածային ուսմանցն գիտութիւն, առաքինութիւնք անկեղծ եւ հաւատք ուղիղ: Իսկ մարմնականք են քաջազգացութիւն եւ առողջութիւն, գեղեցկութիւն եւ զաւրութիւն: Իսկ որ շուրջ զմարմնովն իշխանական ճոխութիւն, բարետոհմութիւն ազգի, ստացուածոց փարթամութիւն եւ տոհմաւոր սիրելիք: Արդ որ զկարգ կազմածին իւր տեսանէ, անտի եւ զիմաստագործ կարգ արարչութեանն աստուծոյ ծանիցէ եւ զվերնոցն ազգակից միտս սկզբնատիպին բարութեամբն կերպարեսցէ: Իսկ որք զվերինն առ ներքինն դարձուցանեն, նոքա զհոգւոյ անմարմնութիւն ի մարմնոյ թանձրութիւն յեղափոխեալ շրջեն: Իսկ որք զվերինն խորհին ըստ Պաւղոսի եւ ելս ի սրտի դնեն ըստ Դաւթի եւ յոտն կան եւ գնան աստի ըստ Միքեա եւ ա՛ռն յարուցեալ երթիցին ընդ Յիսուսի, կատարելոյն բաղձայն բարութեան եւ զմարմին եւ զմարմնական բարիսն եւ որ շուրջ զմարմնովն են պանծալիք յանմարմին հոգւոյն փոխեն յազնուականութիւն եւ զմարմնոյ ծանրութիւն հոգիացուցեալ, զարարչականն ճշմարտեն պատկերագործութեանն նմանութիւն:*

*Արդ վերնական աստուածային բարեացն ի կերպ կազմածին ստուգապէս պատկերագրողն բարեպաշտութեան եւ իմաստութեան տիրապէս տարփաւորն, աստուածասէր թագաւորն հայոց Հեթում, որդի Լեւոնի բարեպաշտի, որդւոյ իմաստուն արքային Հեթմոյ հաւր եւ մաւր Զապելի սրբոյ թագուհւոյ, դստեր առաջին պսակաւորին Լեւոնի, որդւոյ Ստեփանեա, որդւոյ Լեւոնի, որդւոյ Կոստանդեա, որդւոյ Ռուբէնի մեծ<ի> իշխանին, յերկուց թագաւորական ցեղիցն սերեալ զարմի ի Բագրատունեաց եւ յԱրծրունեաց. յայտնապէս թագընկալաց եւ յիշխանաց բարձրագահից բողբոջ բարեպաշտութեան բուսեալ եւ ծաղիկ գարնանային ի ձմեռնացեալ ժամանակիս երեւեալ, սաղարթաւոր եւ բազմոստեան արքայական տնկոյն պտուղ քաղցրաճաշակ ի համս եւ ի հոտս հասեալ, հայկական սեռին եւ Արամեանս ազգին բեկելոց եւ խոցոտելոց յայլալեզու ազանց սպեղանի եւ դեղ դիւրացուցիչ բարեզարդութեան կարգաց եւ կրաւնից եկեղեցւոյ եւ մանկանց նորին դասաւորութեան պայծառացուցիչ, վարժ աստուածային գրոց սրբոց եւ պատուող ուսումնականաց եւ գիտութեան հմտականաց, բարեգութ առ ամենեսեան եւ խնամածու:*

*Յորմէ եւ ես նուաստ Յոհաննէս Երզնկայեցի բազում խնամ սիրոյ եւ առատութիւն գթոյ վայելեցի. եւ զի յոյժ գթասէր եւ ուսումնասէր ունէր բարս բարեմիտ թագաւորն, որ եւ ի դ<ա>ռն ժամանակիս, յորում աշխարհ ամենայն իբրեւ զծով անդնդական խոռովք խռովեալ եւ ամբոխեալ ծփէր* (24) *եւ աւազանման որդիք Աբրահամու անաւրէն ազգն Իսմայէլի եւ աղախնածին որդիք Հագարու ծանրացեալ ի վայր քարշեալ ծածկէին զաստեղացեալ որդիս հաւրն հաւատոյ վասն պայծառ լուսոյ առաքինութեան ի նոսա նուազելոյ եւ բռնացեալ նեղէին մաշել սրով եւ գերութեամբ: Իսկ բարեսէր թագաւորն Հեթում իբրեւ զաստղ լուսանշոյլ փայլէր եւ զաղքատութիւն եկեղեցւոյ մաւր զարդարեալ ծածկէր եւ ոչ դադարէր ի գիրս ստանալոյ եւ յեկեղեցւոյ զանձս յաւելուած առնելոյ: Վասն որոյ եւ ես նուաստ Յոհաննէս Երզնկայեցի, բիւր բարեաց պարտական խոհեմամիտ եւ իմաստութեան պատուող արքայի, ընծայեցի զփոքր զայս գրքուկս, որ կոչի քերական, առ ի քերել եւ սրբել, պարզել եւ զտել զամենայն բանախաւսութիւն եւ իրագործութիւն վեցեակ կատարելաթիւ սորին մասամբքն կատարելագործել զբանաւորութիւն ի վեցերեկի աւուր ստեղծեալ մարդոյն, զվերծանութիւնսն առոգանութեանցն ընթեռնուլ արուեստիւ, զզրուցատրութիւնն իմաստապէս եւ ոչ ռամկականացն սովորութեամբ լեզուաց գաւառաց եւ պատմութեանց ազանց համառաւտ համեղախաւսութեամբ, համեմատութեանցն լծակաւք զբայիցն եւ զբանիցն ուղղել մէտս կշռոց, զդատումն քննողութեան առնել ի տաղիցն չափողութիւն եւ ի ճառիցն ուղղամիտ հարազատութիւն. տեղեկանալ եւ տառիցն զանազանութեան եւ բառիցն ի բանսն շինողութեան, վերահասու լինել վանգիցն եւ փաղարութեանցն փոխայեղութեանց, բանալի ունել բանին զուգնեակ մասունս քերթողութեանն, առնուլ զիմաստս անուանցն հասարակաց եւ մասնականաց եւ ընդ նոքումբք անկեալ տեսակացն եւ ի խոնարհմունս բայիցն, յաւդելոյ եւ շաղկապելոյ եւ այլոց մասանցն արուեստիւ անդամոց մարմնոյ:*

Արդ ի յայսմ ժամանակի, որ էր բուականիս հայկազնեան տումարի ՉԽԲ, գրեցաւ գրքունքս. որ եւ յայսոսիկ աւուրս ժամանակաց բազում եղեւ աղէտս ողորմանաց եւ զգայական սուգ եւ կսկիծ ազդողական քրիստոնէից ազգի յանաւրէն սուլտանացն Եգիպտոսի, զորս պարտ է յիշել կարճառաւտ բանիւ: Զի ՉԼԸ բուականին սուլտանն Եգիպտոսի Ալֆի անուն առ զՏրապօլիս զերեքպարսպեան ամրութեամբ պատեալն գեղեցկաշէն քաղաք, անցեալ զաւրաւքն ընդ մուտս ծովուն, յաւարի առեալ զանչափ գանձսն, որ ամբարեալ կայր առ փարթամացեալ բնակիչսն, աւերեալ յատակեցին զպարիսպ քաղաքին եւ քակեցին զհրաշազարդ եկեղեցիսն:

Իսկ ՉԽ բուին որդին Ալֆէ, Մելիք-Աշրաֆ անուն, խակամիտ եւ գազանաբարոյ առ զմեծահռչակ եւ բազմամբոխ քաղաքն զԱքայ, զոր ունէին ազգ ֆռերացն, տունն Դամբլուն եւ Ոսպեթալին (25). անարի եւ թոյլ գտեալ ազգն արիական առաջի անաւրինացն, մատնեցաւ քաղաքն ի պաշարումն եւ առաւ եւ սպառեցան սպանմամբ սրոյ եւ գերութեամբ, զի տուրք անաւրինացն զաւազանածին տունկսն բանաւոր թաւթափէին զգլուխսն ի մարմնոց իւրեանց զտերեւս ծառոց եւ այլքն վարեցան ի գերութիւն իւրեանց զձագս հաւուց ի բունոյ բնակութեանցն իւրեանց եւ ազնուականքն եւ ազատածինք, ճոխքն եւ փառաւորք գնացին ի ստրկութիւն, եւ մնաց քաղաքն բազմորդի իւրեւ զմայր սեւազգեստ ի վերայ մանկանց իւրոց:

Իսկ ի բուականին ՉԽԱ յաւելաւ ահ եւ երկեղ դղրդումն եւ սասանութիւն յերկիրն հայոց ի Կիլիկիայ, զի վիշապազլուխն այն, որ առ զԱքայ, դիմեաց ի դարանէ <իւրմէ> (26) ահագին շնչմամբ եւ դղորդելով անհուն զաւրաւք, հեծելաւք եւ հետեւակաւք, ըստ Երեմիայի գուժմանն բօթի. «Ել առիւծն ի մորոյ իւրմէ սատակել զազգս, խաղաց եւ ել ի տեղւոջէ իւրմէ առնել զերկիր զաւերակ եւ քաղաքք քակտեսցին առ ի չգոյէ բնակչաց ի նոսա, վասն որոյ ասէր, ի վերայ այդորիկ քրձազ<գած .................... մար- >[1] դասէր թագաւորին. կա<յ>աք եւ մնայաք մինչեւ ի թիւ բուականին ՉԽԲ եւ վ<ս>տահանայաք յողորմութիւնն աստուծոյ պարգեւ լինել շինութիւն աշխարհիս յ<ոււ>ոյ եւ սիրոյ թագաւորին , որ յաստուած եւ ի սուրբս նորա: Իսկ աստուած, որ ոչ ամաչեցուցանէ <զ>յուսացեալսն իւր ըստ հայցմանն Դաւթի եւ երաշխաւորութեանն Պաւղոսի եւ որպէս փորձի ի բովս ոսկի եւ արծաթ, նոյնպէս ընտրէ զսիրտս աստուած ըստ Սողոմոնի, հայեցեալ ի համբերատար ժուժկալութիւն թագաւորին մերոյ եւ ի նեղութիւնս, զոր կրէր

[1] Երեմիա Մարգարեի խոսքերը (Դ, 7), որ ընդհատվում են մեկ թերթի պակաս լինելու պատճառով: Սույն հիշատակարանի մի մասը, աղբյուրը չնշելով, հրատարակել է Ղ. Ալիշանը «*Յիշատակագիր ժամանակակից*» խորագրով («Հայապատում», էջ 500): Ալիշանի ընդօրինակության մեջ առկա է [բնագրի] այն մասը, որը չկա մեզ մոտ, ինչի համար և նրան ենք եղում հետաքրքրվող ընթերցողին: Այդ հիշատակարանի մեկ այլ հատված Ալիշանը զետեղել է նույն տեղում, էջ 511, «*Յիշատակարանք Յովհաննու Երզնկացւոյ*» շարքում:



երկիրս հայոց. եւ որ ի ձեռինն ունի զսիրտս թագաւորաց, որպէս սահմանս ջուրց, եւ ընդ որ կոյս կամի նայեցուցանել, դարձուցանէ զնա եւ որ մինչեւ ցայս վայր թոյլ ետ գոռոզաբարոյ սուլթանին սրտմտական բարկութեամբ իւրեւ զհոսանս գետոց գոռալ հեղեղաբար յարձակմամբ գերել եւ գերփել եւ գազանային ցասմամբ ցսպառումն սպառանալ ըստ Նաբուգոդոնոսորայն ի վերա Երուսաղէմի, դարձոյց զսահմանս սրտմտութեան նորա եւ նայեցոյց խոհականին վարել ընտրու<թեամբ> եւ գթալ որպէս Կիւրոս առ գերեալսն յԵրուսաղէմ<է ի> Բաբելոն:

Զի ի նոյն բուիս ՉԽԲ ի մուտ<ս> <յու>նիս ամսոյ եկին դեսպանք պատուաւորք ի <սուլ>տանէն եւ բերին աւժիտս մեծագին եւ <պատու>ական զգեստուց, դալաթ <եւ> դիլայ, ան<ձին> թագաւորին եւ ^զ^ եղբաւր նորա: Բերին եւ թուղթս երդման զսուլտանին եւ զմեծամեծ <ամի>րայոց նորա եւ հաստատեցին դաշինս <սիրոյ> եւ խաղաղութեան ընդ թագաւորն Հեթում: Առին ի նմանէ երդումն հաստատութեան, ընկալան եւ պատմուճանս զարդուց ամենայն եկեալքն ի սուլտանէն: Առաքեաց <եւ> առատամիտ թագաւորն մեր բազում բեռինս արծաթուց եւ զանազան կտաւս ոսկենկար մետաքսից եւ բազմութիւն ձիոց եւ ջորոց եւ այլ իրս նորագիւտս աղերս եւ հարկ սուլտան: Եւ եղեւ այս սիրոյ եւ խաղաղութեան հաստատութիւն խնդութիւն մեծ երկրին հայոց: Էր եւ աղերս գթութեանն աստուծոյ ի մեզ բարեբարելոյ յոյս եւ հաւատ եւ սէր եւ ողորմածութիւն թագաւորին, զի որ զդառն ջուրն Մեռայի արար ըմպելի անուշահամ <հնոյն Իսրայէլի, զդառնութիւն> բարոյ սուլթանին քաղցրացոյց ընդդէմ թագաւորին մերոյ եւ եկեղեցւոյ Քրիստոսի:

Արդ որք ընթեռնոյք զայսքան յիշատակի եւ աւգտիք յարուեստական գրոյս իմաստութենէ, յիշեսջիք բարի յիշմամբ զբարեպաշտ թագաւորն Հեթում, հայցել ի Քրիստոսէ թողութիւն մեղաց եւ խնդրել արքայութիւն անմահական կենաց. յիշել ընդ նմին եւ զսրբասնունդ եւ զբարեբարոյ եղբարս նորա, զորս սնուցանէր երկիւղիւ տեառն եւ ուսմամբ իմաստութեան եւ զբարի արմատ ծնաւղք աւրհնութեան զաւակացս, զի եւ դուք գթութեամբ յիշեալ լիջիք յամենաւրհնեալ յիշումն աստուծոյ, ամէն ամէն:

Այնուհետև գալիս է մատյանի վերջին ստացողի հիշատակարանը. *զվերջին ստացող սորա զՎարդան վարդապետն յիշեցէք յետ մահուն ի սուրբ ուխտ Ակներոյ:*

Թ. 135. *Որք հմուտ եւ տեղեակ իսկ էք առաջնոյ աւրինակին որ յաղագս անուանս ճառի, եւ այժմ տեսանէք միայար եւ ըստ կարգի, զորս երեք եւ չորք կրկին էր եղեալ, կարծեմ եւ յուսամ թէ դիւրութեամբ եւ հեշտաբար յընթեռնուլն եւ յաւարտելն յիշէք զսակաւ աշխատանս մեր:*

*Ո՛հ աղաչեմ զգրող սորին յիշեա. աւրինակողք գրոյս, գրեցէք զչորս տողս բանի* - այս վերջին խնդրանքը, թեև վերաբերում է Հովհաննեսի դրվագին, սակայն ոչ թե նրանից է, այլ իր իսկ գրչի, Հովհաննեսի աշակերտի կողմից. վերջինիս անձը որոշվում է թ. 162-րդի վրա գտնվող հեղինակային մի այլ գրությանը հավելող՝ գրչի նշումից. *Դերանունս խիստ անյայտ եւ խառնակ էր ի մեկնչացն, այլ եւ զոր հնար էր, ըստ կարի մերում պարզեալ եղեւ: Ի հմտանալն քում իմաստից, ո՛վ ուսումնասէրդ, աղաչեմ յիշել զսակաւ աշխատաւորս ի սմա զՅոհաննէս վարդապետ: Ընդ նմին եւ զմեղաւք զառածեալ անձնս, զգրող սորին, զԹորոս Կլայ<եցի> եւ զաշակերտ վարդապետիս Յոհաննիսի: Եւ որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ* :

X

Ձեռ. *Բ.դ.* 990, Վենետիկի մատենադարանի (27) նույնպես Հովհաննես Երզնկացու ընդարձակ քերականության ընդօրինակությունն է: Ձեռագիրը սկզբնապես պարունակել է տոմար և քերականություն: Տոմարն այժմ պակասում է. թերևս այն պոկվել է և գտնվում է այլուր: Առկա է Հակոբ գրչի հիշատակարանը, որում նշվում է տարեթիվը, սակայն, ցավոք, այս ցուցումն այնքան խառնաշփոթ և անհասկանալի է, որ թվագրումը մնում է շատ կասկածելի: Հիշատակարանում ասվում է հետևյալը.

էջ յի ը. *Փառք քեզ կօնի քօղ արեգսազոյն կիսայգնդի եւ Դէմետրի արարիչ...*

*Յամի երեսներորդի երկրորդ երրորդի* (sic) *յոբելեանի միոյ բիսեքիստոնի մին դիմպիադի թուաբերութեան ժամանակի մարդեղութենէ փրկչի. նայ եւ ըստ համարոյ յաբեթազին տումարի հարիւր քսան եւ ութ* (վերևից շտկված է՝ *երեսուն եւ երկու*) *ինդոսի երկրորդին ամի եղեւ սկիզբն եւ յաւարտումն գրի, որ է տումար եւ քերական հետ երկոքին ի մի տեղեւ մի կապ, յամսեանն հայոց Ահեկի, տզոնի միոյ նոնոսի, յեբրայեցոց յամսին թամուզի, ինդոսի միոյ ողոմպիադի հռոմայեցոց յամսեանն յուլին առաջնումն աւուր շբթ ի ժամն ի՛:*

*Արդ սայ գրեցաւ ձեռամբ յոգնամեղ եւ անպիտան ռսկանուն Յակոբ սգաւորին, արքուն անուամբ կոչեցեալ եւ գործովք ի քուն մահու ընկլուզեալ: Այլ եւ անմեղադիր լերուք ոչ թէ հմուտ գոլով գրչութեան արուեստի, որպէս եւ <յ>այտ է ի գործ<ի>ս: Արդ երեսանկեալ մոխրայթաւալ դիմաւք աղաչեմ եւ մաղթեմ զդասս լուսերամ կրաւնաւորաց եւ աշխատասէր բանասիրաց, որք աւգտիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեցէք զտարակուսեալս մեղաւք եւ զմոլորեալս մտաւք, զգրաւղս զայս. եւ որք սրտի մտաւք յիշէք զմեզ եւ դուք յիշեալ լիջիք առ տէր յաւուրն ահեղ ատենին ամէն:*



XI

Ձեռ. *Ա.է.* 1736, Վենետիկի մատենադարանի (28), Երզնկացու քերականության ընդարձակ խմբագրության ընդօրինակությունն է, որը թվագրվում է Հայոց տոմարի ռճե տարով, այսինքն՝ մեր թվարկությամբ 1656 թվականով:

XII

Ձեռ. *Բ.գ.* 957, Վենետիկի մատենադարանի (29), Հովհաննեսի նույն աշխատության նոտրգիր ընդօրինակությունն է, հավանաբար՝ XIX դ. սկզբի: Գրիչ՝ Ստեփանոս քահանա:

XIII

Ձեռ. *Ը.բ.* 174, Վենետիկի մատենադարանի, 1332 թ. (30), Հովհաննես Երզնկացու քերականության համառոտ խմբագրություն:

1. *Յաղագս քերականութեան*, էջ 1-45, Դիոնիսիոսի բնագիրն է, հավելումով. *Արծարծմունք խոնարհմանց բայից. յաղագս աղաւթից. աղաւթական ներգործական ներքսակա ամանակի միաւորական.* թթ. 45-48:
2. *Այլ ուստեք ճարտասան յաղագս բնութեան: Բան եւ սահման եւ բնութիւն զմիջոցէ ասին եւ ստուգաբանի բնութիւնդ բանութիւն, որ է այս, որ ինչ ասին զումեքէ.* թթ. 48-50:
3. *Յաղագս շրջագայութեան երկնից թէ որպէս իմաստասիրացն թուեցաւ.* թթ. 51-54:
4. *Յաղագս անձրեւաց թէ զինչ է*, թթ. 54-56. *յաղագս բոլո*, 56. *յաղագս որոտման*, թ. 57. *յաղագս անուանց հողմոց*, թ. 60. *յաղագս փոքորիկ հողմո, զոր ի բաջաղանս եւ յառասպելս վիշապ հանել ասեն*, թ. 61. *յաղագս որ յաւդ նշան լինի պէսպէս*, թթ. 61-62 (հրատ. «*Արարատ*», 1896, *փետ., մարտ*):
5. *Միշտ բաղձանք բանին բնաւորեալ է.* թթ. 65-373:
6. *Այլուստ բան է: Լծորդութիւն է.* թթ. 373-392 (այս դրվագը առկա է սույն ձեռագրում նաև վերը, թ. 271):
7. *Բան այլուստ: Եւ զի սահման եւ բնութիւն խաւսիցէ գիր եւ ամենայն ինչ սահմանաւ ճանաչի.* թթ. 393-403:

373-րդ թերթում գտնվում է մի հիշատակարան, որում ասվում է. *Գրեցաւ*

*քերականաց տառս ձեռամբ սուտանուն աբեղայ Ներսէս գրագրի ի թուականիս հայոց ՉՁԱ* (=1332 թ.) *յանապատին սրբոյն Կիրակոսի ի խնդիր սրբամաքուր եւ արդիւնարան վարդապետի Յովաննէսի, որոյ տէր աստուած վայելեալ տացէ ընդ երկայն աւուրս ամէն*:

## XIV

Ձեռ. *Ե.ա.* 289, Վենետիկի մատենադարանի (31), Գրիգոր գրչից կատարված նույն աշխատության ընդօրինակություն:

*Նուաստ վրդպտի Յոհ<ա>ն<ե>սի Եզընկեցոյ, որ եւ Ծործորեցի, արարեալ համառաւտ տեսութիւն քերականի. թ. 3. Յոհաննու Ծործորեցոյ արարեալ համառաւտ մեկնութիւն քերականին, որ Երզնկացի կոչեցեալ:*

## XV

Ձեռ. *Թ.գ.* 1317, Վենետիկի մատենադարանի (32), Հովհաննեսի նույն աշխատության շատ ավելի ուշ ընդօրինակություն, որ բացի Դիոնիսիոսի բնագրից զուգորդվում է նաև Պորփյուրի «Ներածությամբ»: Առկա է մատյանի ստացողի հիշատակագիրը. *Ես անպիտան Յակոբ երէցս ստացա զսա ի վայելումն մեղապարտ անձին իմոյ եւ ի յիշատակ ծնողաց իմոց ի թվին հայոց ՌԾԴ* (= 1605 թ.):

## XVI

Ձեռ. թիվ 336, Վիեննայի մատենադարանի (33), Եսայի Նչեցու քերականական աշխատությունը:

*Մեկնութիւն քերականի, արարեալ Եսայեա վարդապետի*, հաջորդում է Դիոնիսիոսի բնագրին: Ընդօրինակությունը 1360 թվականի է, նկարագրությունը տե՛ս Հ. **Տաշյան**, Ձեռագրացուցակ, թիվ 336:

## XVII

Ձեռ. *Ա.գ.* 994, Վենետիկի մատենադարանի (34), Եսայիի նույն աշխատության օրինակն է: Ինչպես և նախորդ ձեռագրում, այստեղ առկա է նախ Դիոնիսիոսի քերականությունը, թթ. 3-38. *յաղագս ոտից* գլխի վերջում, թ. 37, կարդում ենք. *Եսայի յիշեցիր*: Բայերի խոնարհումը՝ *խոնարհմունք բայից* գրավում է ընդամենը մեկ էջ՝ մինչև *յարակայի բազմաւորական, էկոփեայք*.



թ. 38. Այնուհետև գալիս է Եսայիի երկը հետևյալ վերտառությամբ.

*Քերականութեանն վերլուծութիւն բան առ բան, ձեռամբ Եսայեա հաւաքեալ*. թթ. 39-263:

Ընդօրինակման տարեթիվը անհայտ է. Մխիթարյան հայրերը կարծում են, որ սա ինքնագիր է, հիշատակարանի Եսայիին համարելով հեղինակ: Թերևս այդպես է, թեև Դիոնիսիոսի բնագիրը, որում գտնվում է հիշատակարանը, գրված է այլ ձեռքով, քան Եսայիի աշխատությունը: Բացի այդ, Եսայիի երկի առաջին էջերի ընդօրինակումը թերի է, ունի բացեր, որոնք լրացված են տողի վերևում կամ լուսանցքում: Մի գուցե իրավացի է հ. Ղ. Ալիշանը, երբ ենթադրում է, որ սա՝ քերականության նախնական սևագիծ է՝ շտկված իր իսկ Եսայիի կողմից: Նրա ձեռքով են գրվել Դիոնիսիոսի բնագիրն ու քերականության վերնագիրը[1]:

## XVIII

Ձեռ. *Ե.ա.* 671, Վենետիկի մատենադարանի (35), նույնպես Եսայիի երկի՝ Հովհաննեսի ընդօրինակությունն է (*Յովհաննէս սպասաւոր*), ՊԿԴ (1415 թ.):

## XIX

Ձեռ. *Դ.գ.* 46, Վենետիկի մատենադարանի (36), նույնպես Եսայիի երկի ընդօրինակությունն է: Առաջին էջն ընկած է, օրինակը վատ է պահպանվել: Պակասում է նաև Դիոնիսիոսի քերականությունը:

## XX

Ձեռ. *Բ.գ.* 442, Վենետիկի մատենադարանի (37), ժողովածու բովանդակությամբ, փոքրադիր մատյան, որը պարունակում է.

1. *Յաղագս գոյի էութեան եւ պատահման սրբոյն Յոհաննու Դամասկացւոյն ասացեալ եւ թարգմանեալ ի հայ լեզու ի յունարէն գրոյ Բագարատա Սամիկոնեան: Ներածութիւն իմաստասիրութեան, որ է*

---

[1] Առաջին էջը վերարտադրված է [Ղ.] Ալիշանի կողմից, *«Այրարատ»*, էջ 132. գիրը հմմտ. Հ[այր] Գարեգին [Հովսեփյան], *Քարտեզ հայ հնագրության*, տախտ. ՁԲ, № 130:

*խաղոյիկի, զկնի այսր եւ զամենայն իմաստասիրութեան գործարան, որ է զանունն ըստ հելլենացւոց բարբառի*, բբ. 1-44:
2. *Դաւթի փիլիսոփայի էակաց գիրք*, բբ. 83-96:
3. *<Մովսեսի քերդողի յաղագս քերականութեանց: Քերդող է, որ զմաստունս – ծովական բանին> եւ ոչ անընդական խորոցն գիտակ*. Սկիզբը պակասում է: Վերջում գտնվում է .
4. *Մովսեսի քերդողի հաւր մեկնութիւն քերականին: Գրականութիւն ստուգաբանի* մինչև *ստուգաբանութիւն* (վերջինիս բացառությամբ): Սրանից հետո գալիս է *կրթական բան* Մամբրէի դրվագից. *Հարցմես այս իրք – ի բայէ* (= ձեռ. 2297, Էջմիածնի մատենադարան, բնագիր 2):

## XXI

Ձեռ. *Ս.Ե.* 822, Վենետիկի մատենադարանի (38), պծա (=1402 թ.), բազմաբովանդակ մատյան, որը, ի թիվս այլոց, պարունակում է.

1. *Ժամանակացոյցք Մովսիսի քերթողահաւրն*:

Ստեփանոս [գրչի] հիշատակարանը. *Արդ ի վերջին ժամանակիս ի պծա թուականիս ձեռիգրելոյ յիշատակիս ձեռամբ անարհեստ գրչիս տխմար եւ ծոյլ Ստեփանիս եւ սուտանուն աբեղայիս …*

2. *Հարցումն Դաւթի իմաստասիրի: Փրկչական կիրընգալութիւնք միապէս*. բբ. 31բ-33:
3. *Խնդիր մն Մուշեղի ընդդէմ Արիանոսի, Եւտիքէ<ի> եւ Նեստորի եւ Քաղկեդովնի: Ճշմարտութիւն ամենայն ուսեք յայտնի*. բբ. 59բ-85բ:
4. *Երանելոյն Թէոդորոսի ընդդէմ Մայրագոմացոյն* (հրատ. Հովհաննու Օձնեցու երկերում) (39):

## XXII

Ձեռ. 47, Վիեննայի մատենադարանի, liber causarum [Գիրք պատճառաց] ռճկդ (= 1725 թ.) (40): Նկարագրված է Հ. Տաշյան, Ցուցակ ձեռագրաց: Ի թիվս այլոց պարունակում է հետևյալ բնագրերը (41).

*1. Սկիզբն եւ պատճառ բարձրացուցե<ք>ն ճառի տեսութ<եա>ն*

*Հրաշագործողն արարածոց աստուած, որ ի սկզբանէ գոյացոյց զամե-*



*նայն, յետոյ հոգացեալ վասն մարդոյն, որ ի պատկեր իւր արար եւ տէր եւ թագաւոր այլոց արարածոցն կացոյց ի դրախտին վայելչութեան: Իսկ յանկանել նորա յարազուարճ կենացն, մահ թագաւորեաց ի մարդիկ, մինչ յերեւիլ (42) երկրորդն Ադամայ ի կերպարանս նախահօրն, որով փրկեցաք ի մահուանէ եւ լցան տիեզերք փառօք նորա եւ շնորհօք ամենասուրբ հոգւոյն, որ հեղաւ ի դասս (43) եւ նոքօք յամենայն ազգս եւ թագաւորութիւնս. որ եւ ի ձեռն Գրիգորի Պարթեւի, որ յետ Թադէոսի առաքելոյ մեծաւ նեղութեամբ լուսաւորեաց զՀայաստան աշխարհս (44). եւ ի նմին հաւատոյ հաստատութիւն անշարժ կացին մինչեւ ի ժամանակս մեծին Սահակայ եւ Մեսրոպայ: Եւ մինչև ցայն ժամանակ նշանագրօք ասորոց եւ յունաց վարէին հայք, զի թէպէտ եւ ունէին գիր, այլ ոչ գոլով ի նոսա ձայնաւոր, յաղագս այնորիկ ոչ կատարէր բան, այլ խեցբեկելով իմն անկատար մնացեալ լինէր: Իսկ ի ժամանակս Սահակայ եւ Մեսրոպայ եւ Վռամշապհոյ թագաւորի հայոց խնդիր արարեալ մեծաւ ջանիւ սրբոյն Սահակայ եւ Մեսրոպայ, գնացեալ Մեսրոպ (45) առ ասորիս եւ առ յունականսն ոչինչ օգտեցան: Յայնժամ <յ>աստուած ապաւինեալ, աղօթից պարապէին անդադար, մինչեւ ի հոգւոյն սրբոյ որպէս առաքելոցն հրով նոյնպէս եւ սոտ, իբր թաթ ձեռին երեւէր գրելով ի վերայ եւ հաստատելով ի սրտին իբր ի ձեան: Եւ այնչափ մեծագոյն էր պարգեւն, մինչ ոչ միայն հայոց, այլ եւ վրաց եւ աղուանից արար գիրս հաստատունս:*

*Բայց մարթ է գիտել ըստ կար<ի> թէ ուստի տուաւ այս շնորհ ազգի մարդկան, զի անշունչ մելանաւ իբր կենդանի բանականաւ խօսին: Յետ ելիցն Ադամայ ի դրախտին վայելչութ<ե>նէ ասի թէ ունէին ամենայն ազգն, որ աճեաց ի Սեթայ եւ ի տանէն Կայենի, զմի գիր, ոմանք թէ զեբրայեցին եւ այլք թէ զարաբացի գիրն: Իսկ յորժամ լեզուքն բաժանեցան յաշտարակին քակիլն, որով եւ քակեցաւ ի միմեանց բնութիւն* (46) *ամենայն ազգաց, յետ այնորիկ եւ առանձին ամենեցուն գիր տուաւ: Կիսոց (եւ) ազգաց լի եւ պատարուն, որպէս եբրայեցին եւ յոյնն եւ արաբն, որ կոչի պարսիկ, իսկ կիսոցն այնպիսի* (47) *իբրեւ զմերն, որ ոչ յօղաւորէր* (48) *բան կատարուն:*

*Իսկ ահա յետ առնելոյն* (49) *սրբոյն Մեսրոպայ* (50) *զաստուածատուր ձիրն սկսան ժողովել* (51) *զմանկունս փափկաձայնս եւ երկարոգիս եւ քաջամիտս հրամանաւ Թէոդոսի կայսեր եւ Վռամշապհոյ թագաւորի հայոց:*

*Եւ արդ այսպիսի խնդրոյ դնէին* (52) *վարդապետք եկեղեցւոյ սկիզբն եւ պատճառ այսպէս: Յոլովս եւ զանազանս գտաք գրեալ պատճառս ներբողեանս անհաւաստիս թէ ուր եւ էր աղագաւ եւ յումէ հարկաւորեալ գրեաց զսա մեծիմաստն Դաւիթ փիլիսոփայ: Զի ոմանք յԱթէնս ասացին ատենաբանել զսա եւ այլք ի Կոստանդնուպոլիս եւ կէսք Յերուսաղէմ ի Գողգոթային յա-*

տուր խաչվերաց տօնին: Այլ ի ճշմարտապէս արանց եւ <ի> քննող պատմութենէ զժամանակն եւ զպատճառն այսպէս գտաք գրեալ եթէ հոգեկիր թարգմանիչք հայրերէն ընթերցմանց եւ գտիչք աստուածապարգեւ գրոյն նրն Սահակ եւ Մեսրոպ (53) ստացան աշակերտանոցս ալֆափետաց մանկունս ուշեղս, փափկաձայնս եւ երկարոգիս եւ կարգեցին դպրոցս հրամանաւ մեծի կայսեր Թէոդոսի եւ Վռամշապհոյ արքային հայոց յամենայն տեղիս: Եւ ապա զկատարելագոյնսն ի նոցանէ արս կորովամիտս եւ առաքինիս առաքեցին յիմաստասիրութեան մայրաքաղաքն ի Բիւզանդիոն եւ յԱթէնս եւ յԱղէքսանդրիա(յ) այլ եւ ի կողմանս աստոց ուսանել զգիր եւ զլեզու յունարէն, եբրայեցւոց եւ ասորերէն: Իսկ նոցա կրթեալք յայսոսիկ ի մանկական հասակի, անդրէն դարձեալք թարգմանէին զաստուածեղէն կտակարանս (54), յեղաշրջեցին ի հայ լեզու եւ զվարդապետութիւնս մեկնողականս աստուածաշունչ մատենից, յորոց էր մի եւ առաջին Դաւիթ փիլիսոփայ, համալծորդ Մովս<ի>սի Խորենացւոյ եւ (55) Գառնըկայ եւ Եզնիկանն (56), Մամբրէի եւ Կորեան եւ այլոց յոլովից: Եւ ի ծերութեան հասեալ ժամանակ հարկաւորին (57) ի սուրբ հայրապետէն հայոց Գիւտայ եւ ի պատուաւորաց ժամանակին ներբողել, այսինքն գովել, զխորհուրդ խաչին որ այժմ կատարի նովաւ մեծամեծ սքանչելիք: Եւ յայլոց ասի թէ էր սա ի ժամանակս հայրապետին հայոց Յովհաննու Մանդակունւոյ եւ Վահանայ, որդւոյ Մանգնոսի, որդւոյ Վարդանայ: Այլ մեզ ստուգելի թուի Գիւտայ հայրապետութեամբ եղեալ խնդիրս: Եւ առեալ սուրբս այս ցուցանէ թէ որպէս հին օրինակօքն հաւաստի նոր ճշմարտութիւնս եւ թէ աստ (58) ի միւս անգամ յայտնութեան որդւոյն աստուծոյ, նա է յոյս ապաստանի հաւատացելոց: Իսկ թէ զինչ էր պատճառ հարկելոյն զնա յայսպիսի մեծ խնդիր ասասցուք: Էր ի ժամանակին յայնմիկ տարածեալ աղանդն Նեստորի, որք ոչ աստուածածին զՄարիամ ասէին եւ ոչ զխաչն աստուածընկալ եւ աստուծոյ խաչ: Քանզի յանդգնէին սոսկ մարդ ասել զբարձրացեալն ի վերայ խաչին (59): Այսպէս եւ զՄարիամ մարդածին ու ոչ աստուածածին համարէին: Յայսպիսի խնդրոյ հարկաւորեալ սուրբն այն եւ (60) սքանչելի այրն Դաւիթ ի բազմախուռն վկայութեանց եւ օրինակաց, ի հնոցն եւ ի նորոցն, առնու յԱդամայ եւ ի դրախտէն մինչեւ (61) ի միւսանգամ գալուստն եւ համեմատէ զօրինակսն ընդ ճշմարտութեանս որ ի Քրիստոսէ եւ ցուցանէ զՄարիամ աստուծոյ ծնող եւ զխաչն աստուծոյ խաչ եւ հալածէ զաղանդն զայն ի Հայաստան երկրէս: Եւ զի ի խնդրոյ Գիւտայ եւ առաջնորդաց ժամանակին էր, գտաք ի գիրս թարգմանչացն ի սկիզբն այսր ճառի ընդդէմ խնդրողացն պատասխանի (62) այսմիկ յասելն. «Զառ ի աստուածուստ (63) պատուեալ զերիցս երջանկի զմեծի հայրապետիդ եւ զաքռակալի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ եւ վերա(յ)դիտողի զաստուածահրաման



խնդիր հարկապահանջ հոգեւորական հարկին եկեղեցական գործառութեան (64), զոր հրամայեցէր մերում կրտսերութեանս գրով դրոշմել ի քարտիսի ի մատենագրութեան, զի կացցէ մնացէ յարձանագիր անջնջելի յիշատակ յազգաց յազգս զկնի մեր եկելոցն, զոր ոչ այլ ազգ ինչ ինձ զմտաւ ածել, քան թէ իշխանականդ քո ըստ գերազանցութեան պատիւդ նկարել զհարկեցուցիչ եւ զանհնարին հրամանաց ծանրութիւնդ, յաղագս <որո>յ սարսափել սարսիմ (65) եւ երկիւղ ոչ դուզնաքեայ թերեմ յիս[1]:

Եւ էր մեծն Դաւիթ փիլիսոփայ ազգաւ ի Հարքայ ի Հերթն (66) գեղջէ, աշակերտ Մովս<ի>սի (67) քերթողի, ի ժամանակս Վահանայ, որդւոյ Մագնոսի, որդւոյ Վարդանայ եւ ի ժամանակս Յովհաննու Մանդակունւոյ: Եւ սկիզբն առնէ ասելն (68) այսպէս. «Բարձրացուցէք զտէր աստուած մեր, մարգարէն ձայնէ, երկրպագեցէք պատուանդանի սրբոյ ոտից նորա(յ)[2]»: Ասի յոմանց թէ վասն գերակատար իմաստութեան կամեցաւ ինքնախօսութեամբ դնել սկիզբն եւ ոչ ուստեք առնուլ վկայութիւն: Եւ մինչ զայս ած զմտաւ, արգելաւ իմաստութիւն (69) եւ ոչ կարաց խօսել: Այլ ոչ է կարծել ի դէպ այս նմա, զի որպէս յայլ ամենայն կեանսն իւր խոնարհութեամբն էր պայծառ, առաւել այսու: Այլ այսպէս իմասցուք, զի որպէս աստուածաբան (70) Գրիգոր ի մարգարէէն սկսանի ի ծննդեան ճառին յասելն. «Ուրախ լիցին երկինք եւ ցնծասցէ երկիր», նոյնպէս եւ սա առնէ յասելն՝ «Բարձրացուցէք զտէր աստուած մեր», եւտես դարձեալ զի նոր կտակարանք (71) հիմնեցեալք են ի մարգարէից, զնոյն եւ սա ախորժելով եդ: Եւ թէ այսպէս (72) նոցա հրամայեցաւ ի մարգարէէն բարձրացուցանել զտէր աստուած, մեզ զիարդ այնպէս հրամայիցի նոցա երկրպագութեամբ եւ պատարագօք փառաւորել եւ պատուիրանին պահպանութեամբ եւ յիշատակաւ երախտեացն: Իսկ մեք փառաւորիմք հաւատով եւ սրբութեամբ, խոնարհութեամբ, ողորմութեամբ եւ չարչարակցութեամբ փրկութեան մերոյ կատարողի ըստ այնմ թէ «փառաւոր արարէք զաստուած (73) ի մարմինս ձեր»[3]. եւ չարչարանացն կցորդութեամբ փառացն հաղորդիցիք[4]: Յաւելու զտէրն եւ զաստուած անուն ի վերայ Քրիստոսի, զի արարիչ եւ խնամիչ է ընդ հօր, տիրական իշխանութեամբ փրկեաց զմեզ եւ տանջէ զթշնամին մեր: Մարգարէն ձայնէ ի հնոաստանէ, գոչեաց զայսոսիկ Դաւիթ այլովքն հանդերձ: Թր. 325-328:

[1] Հմմտ. Դաւիթ Անյաղթ, Վենետիկ, [1883], էջ 102:
[2] Անդ, էջ 103:
[3] Ա Կոր. Զ, 20:
[4] Հռոմ. Ը, 17:

2. *Սկիզբն եւ պատճառ Սահմանացն գրոցն, Դաւթի վարդապետի զուգեալ ի տեսութիւն դիւրաւոր գիտ:*

*Այսպէս պարտ է իմանալ զպատճառ գրոցս, որ Սահմանաց կոչի: Յորժամ գնաց մեծ եւ կատարեալ փիլիսոփայն Դաւիթ ի մայրաքաղաքն իմաստութեան յԱթէնս եւ վարժեալ եղեւ ամենայն իմաստութեամբ, մինչեւ ընդ առաջին իմաստունսն համարել զնա: Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ բազում հակառակութիւն ի մէջ իմաստասիրացն վասն իմաստութեան, ոմանք անգոյ ասելով եւ այլք օրինակ ի մէջ բերելով թէ որպէս էքս ի ծովման եւ ի հոսման են եւ ոչ ունին դադարումն, այսպէս եւ իմաստասիրութիւն գոյութիւն ունի, բայց ոչ դադարէ: Եւ ոչ միաբանէին ասացեալքն նոցա առ միմեանս եւ սակս այսորիկ բազում վրդով էր ի մէջ նոցա, զոր մի ըստ միոջէ ցուցանէ մեծս Դաւիթ. յինքն առեալ զամենայն հոգս իւրին, եդ զամենայն հակառակութիւնս նոցա եւ եցոյց գոյաւոր զիմաստութիւն եւ ասեալ զբանս նոցա եւ եցոյց միմեանց հակառակ գոլ: Նախ սկիզբն դնէ եւ լուծանէ զնոցա ասացեալսն եւ ապա հաստատէ զիւրսն, որպէս յառաջ մատուցեալ ասէ առ Ներհակսն. երկու յեղանակօք պատահեր ձեզ՝ ընդդիմութեամբ եւ ընդդիմայարա(յ)կայութեամբ: Եւ զոր ասէն այսպիսի է. ընդդիմութեամբ առ տեղեաւ կալ ընդդէմ նոցայն բանից, իսկ ընդդիմայարակայութեամբն այն է, զնոցայն եղծանել եւ զիւրն հաստատել: Եւ այսպէս ի բազում ճառս տրամատելով տեղեակ առնէ զնոսա խնդրոյն եւ ցուցանէ զ̃ գոլ սահման իմաստութեան, զորս առաջիկայ գիրսդ զտանես եւ զամենայն բանս գրոց այսպէս գրելով եւ տալով նոցա պատասխանէ:*

*Եւ յոմանց ասի դարձեալ, թէ ոչ յԱթէնս, այլ յորժամ եհաս համբաւս այս ի լսելիս նորա, գալով ոմանց անտի յուսումնականացն եւ պատմելով զանհաշտ խռովութիւն որ ի մէջ իմաստասիրացն էր: Եւ յայնժամ ասեն արար զգիրս զայս եւ առաքեաց առ նոսա, զի բարձցէ ի նոցանէ խռովութիւն: Եւ արարեալ օրինակ զայն թողու ի հայոց աշխարհիս, որ է այս գիրք ի պէտս բանի սպասաւորաց:*

*Եւ թէ ոք հարցանէ թէ ի վերնագիրն զիւր անունն ընդէր ոչ է եդեալ, թէ նորա արարած է այս գիրք: Վասն զի ոչ ունէին հպարտ ազգս հայոց զիմաստս վարդապետաց իւրեանց, ոչ եդ զանունն, զի մի՛ կորուսցեն եւ կամ մի՛ առաւել պատուեսցեն այլք: Իսկ ի Բարձրացուցեացն սկիզբն յետոյ եդին զնորա անունն եւ Սահմանաց գիրս ոչ գտեալ եղեւ յայնժամ եւ այլ յետոյ չարարին փոյթ դնել զանուն նորա: Ասաց սա չորս գիրքն. առաջին՝ զԲարձրացուցէքն, երկրորդ՝ զՍահմանացն, երրորդ՝ զՔերականին մեկնիչն, չորրորդ՝ զՊէտքն, զոն եւ առանձինն այլ ճառեր. արար հինգերորդ՝ եւ սաղմոսին պատճառ, եւ զի ոչ գոյր փափագանօք խնդրող, վասն այն եւ նա ոչ արար գիրք այլ, զի մի՛ նախատեսցի, որպէս յառաջդ ասացաք: Ապա թէ ոչ իմաստուն էր առաւել քան զառաւել:* Թ. 328-329:



3. *Սկիզբն եւ պատճառ քերականին Դաւթի փիլիսոփայի*

*Քերականութեան արուեստ յարտաքնոցն է. զի նոքա մեծաւ ջանիւ ինքնին առին զընտրութիւն ձայնից եւ բառից եւ կոկորդիւ խօսից եւ թէ ոյք են աւետեաց ձայնք եւ ոյք ողբականք: Եւ սկիզբն է սորա այսպէս. քերականութիւն է հմտութիւն ի բուն իմաստնոցն յայտնեալ եւ շարագրեալ. եւ սորա մասունք են զ̃: Առաջին վերծանութիւնն է, արուեստ թէ որպէս ներկուռ, այսինքն յիւր մտաց ընտրեալ զարուեստն: Երկրորդ՝ զրուցատրութիւն ներգոյս, այսինքն յստակ եւ բերեալ զկարգ յեղանակին: Երրորդ՝ թէ որպէս լեզուաց թարգմանութեամբ մարթ է զհին պատմութիւն կամ զնոր իմանալ զմեկնութիւն, զոր բացատրութիւն կոչէ: Չորրորդ՝ թէ որպէս զստուգաբանութիւն իմացուք ճշգրտիւ: Հինգերորդ՝ թէ որպէս զհամեմատութիւն իրաց զինչ եւ է մարթասցուք ճանաչել: Վեցերորդ՝ թէ որպէս մարթ է քննել զիմաստնոցն քերդածս, զի եւ որք յիմաստասիրութեան են, առաւել սա(յ) է յատուկ:*

*Արդ զի զ̃ ասասցուք զսահման իմաստութեան, ցուցցուք թէ ոյք էին ասացողքն: Առաջին՝ Պիթագորաս ասաց թէ իմաստասիրութիւն է գիտութիւն գոյիցս, ըստ որում գոյք են: Երկրորդ՝ Պիւթաս իմաստասէր ասաց թէ իմաստութիւն է աստուածայնոց եւ մարդկայնոց իրաց: Երրորդ՝ Պղատոն ասաց թէ իմաստութիւն խոկումն մահու է: Չորրորդ՝ իմաստասիրութիւն է աստուծոյ նմանիլ ըստ կարի, նոյն Պղատոն ասաց աստուծոցն եւ սուրբքն աստուծոյ դարձուցին: Հինգերորդ՝ իմաստասիրութիւն Արիստոտէլ ասաց արհեստ արուեստից եւ մակացութիւն մակացութեան: Վեցերորդ՝ իմաստասիրութիւն Պիթագորաս ասաց թէ (իմաստ ասի թէ) իմաստասիրութեան սիրելութիւն է իմաստութիւն կատարեալ:* Թ. 329-330:

## XXIII

Ձեռ. *Ը.բ.* 632, Վենետիկի մատենադարանի (74), փոքրադիր մատյան, բազմազան բովանդակությամբ, առանց տարեթվի և հիշատակարանի, XV դարից ոչ վաղ: Ուշագրավ են հետևյալ բնագրերը.

1. *Բարսղի Կեսարու՞: <Գ>րագիտութիւն է վարժ կրթական հմտութիւն. համանգամանք եր<կ>ակի բանական, գործական վասն գեղեցկասութեան. հայերէն ուղղախաւսութիւն բազմափորձ ըստ տաղից եւ ըստ կարգաց գիտութիւն. եւ մասունք են նորա զ̃. կարդացողականն, բացումն մեկնութեան, դատողական կշռումն իւրաքանչիւր գրոց: Ի կարդացողութենէն ուղղէ զկուռ շաւիղ գրածանութեան հայկեկելով ըստ առաջնորդ ասից նշանին զպարունակեալ միտսն կալեալ նշանին: Իսկ ի մեկնութենէն բանա զմիտս լեզուացն եւ հնագէտ պատմու-*

*թեանցն բացատրել զստուգաբանութիւն համեմատ նմանել միմեանց զատումն: Իսկ ղատողականաւն կշռել, զառաւելն հանել եւ զթերին լնուլ, գիտել զիւրաքանչիւր գրոցն զբաժանական: Եւ զիծ ասի գիրն եւ զգծեալն եւ դրոշմեալն, իսկ քերել ապականել եւ ջնջել ասէ. եւ գիծ որպէս թիթղանն եւ ականցն գիծ եւ ի սոցանէ ինքնաձայն են ը, է. եւ բուն երկար ա, է, ո:* Թ. 8.

2. *Յաղագս թեւոց ըժ -ից.* թթ. 8-9:
3. *Մովսեսի Խորենացւոյ բան իմաստութեան.* թթ. 12-14:
4. *Հ̃րց եւ պ̃ատ.* թթ. 44-147 – քերականության մեկնություն հարց ու պատասխանի ձևով. սկիզբը պակասում է: Կան հետաքրքիր տեղիներ. օրինակ, Դավթի տաղի մեկնություն[1], որ բերում է Անանունն իր քերականության մեկնության մեջ, թ. 129:
5. *Մովսեսի քերթողի յաղագս քերականութեանց: Քերթող է որ զմասունս գիտէ.* թթ. 147-229:
6. *Յաղագս գոյի էութեան եւ պատահման սրբոյն Յոհաննու Դամասկացւոյն.* թթ. 248-287 (= ձեռ. Բ.գ. 442, բնագիր 1):
7. *Մովսէսի թարգմանչի եւ քերթողի մեկնութիւն քերականի: Քերականութիւնդ անուն իսկ գրականութիւն ստուգաբանի.* թթ. 281-305:

## XXIV

Ձեռ. *Է.գ.* 1244, Վենետիկի մատենադարանի, *չծզ* (1307 թ.) (75), ինչպես վկայում է Եզեկիել գրիչը, թ. 497: Բովանդակությունը բազմազան է, այլոց մեջ առկա է.

1. *Յաղագս քերականին պատճառ Դաւթի փիլիսոփայի ասացեալ: Քերականութիւն արուեստ յարտաքնոցն է* (հրատարակված է Դավթի երկերի մեջ, էջ 599): Այնուհետև գալիս են.
2. *Բանք ի Սահմանաց գրոց յԱրիստոտելէ: Բառք գիրքողականք: Բառք Փիլոնի: Մեկնութիւն բառից քերականի* և այլ բառարանային նյութեր:
3. Վարդանի «Պատմութիւն»-ը:
4. *Հարցումն Վաչագանա իշխանի եւ պատասխանի Պետրոսի Սիւնեաց դիտողի*, թ. 620 և հաջորդը:

[1] Այն մեջբերում է հ[այր] Ղ. Ալիշանը՝ «Հայապատում», մասն Ա, էջ 42. *Դաւիթ փիլիսոփայն տաղ եւ պատմութիւն է արարեալ ի վերայ Տիգրանայ* և այլն:



## XXV

Ձեռ. *Թ.դ.* 8, Վենետիկի մատենադարանի, *ո̃կր* (=1413 թ.) (76), պարունակում է.

1. *Լուծմունք Պարապմանց Տաթեւացւոյ.*
2. *Ն Դաւթի փիլիսոփայի ի խնդրոյ Աշոտոյ պատրկի: Բան զոր հարցէք*, թթ. 176-180:
3. *Նորին աշակերտի Թէոդորոսի Դակոն կոչեցեալ առ երկարնական ընդդիմադրութիւն: Անստացական բանն աստուած*, թթ. 180-183:

## XXVI

Ձեռ. *Ծ.գ.* 1232, Վենետիկի մատենադարանի (77), առանց տարեթվի, պարունակում է զանազան մանր բնագրեր, այդ թվում նաև հետևյալները.

1. *Վասն պատճառի քերականիս որպէս եւ գրեալ էր յոմանց եւ արդ պարզաբար ասացից ի մասունս եւթն թվոցս:*

*ա. Առաջին օրինակն այս, որպէս անխաւս եւ խաւսուն կենդանիք ամենայնք առանց գիտելո գրի ծանուցանեն միմեանց զթարս վասն սիրո եւ կռուոյ. եւ ոչ այսչափ միայն, այլեւ ի նոցանէ նախագէտ ազդմամբ աւգտեալ լինին եւ իմաստուն մարդիկ:*

*բ. Սոյնպէս եւ որք զկնի Ադամա որդիք նորա մինչ յԵնովս եւ ի սմանէ մինչ յաւեր աշտարակին առանց գրի վարեցան նշանաւոր բանիւք եւ բառովք, որպէս զայն նշան ի բ̃է եւ այսր է փքին եւ նոցա նշանքն ունեին չափ որպէս կանկուն եւ քայլ ոտին որ է թվեալ զարէհատի:*

*<գ.> Եւ չափք նշանացն եին թուով ինն, որպէս եւ գլխաւոր մասունք քերականիս:*

*դ. Ապա վասն փոփոխման մարդկութեանս եւ մահկանացու բնութեանս ոչ կամեցան կորուսանել զարուեստ խաւսից զ<ուգ>ապէս եւ անմարմին նշանաւորս:*

*ե. Նոքա որպէս եին բազմակեցիկք եւ ի լեզուս միախաւսիկք, ուժով եւ լի մեծ հանճարովք զվերո<ւ>ստ առեալ զիմաստս աստուածայինս զանտեսն ածին ի տես եւ զգեցուցին բանին մարմին, որ կայեցաւ գծիւ ի նամակի որպէս մարգարէութիւն եղեալ սա բանին, որ մարմնացաւ առ սուրբ մարմին:*

*զ. Գտաւ գիրս ոչ միայն յԵնովսա եւ որ զկնի զոր կորուսին յաշտարակին, այլ եւ ազինք երեք վերստին ի շնորհացն աստուծոյ գտան զգիրս*

*նախ քան զդասն մատեանն Մովսեսի:*

*է. Լատինք եւ պաղեստինք եւ արապիկք հաստատեցին գիրս բուով իղ, զոր քէպէտ <աւ>ելի ունին եւ այլ ազինք, ի նոցանէ են որոշմամբ շնչով ճեղեալ եւ աճեցուցեալ, որպէս զբազում բանսն, որ են շաղկապի միացուցեալ:*

*Այս են պատճառք վասն սոսկ թւոց գրիտ, զոր ծանուցի եւ արդ վասն ի դոցանէ ծնելոցս գրեցից սակս քերականիս թէ զինչ է անուն սորա, զոր են բուով նախկի երիս անուամբ կառուցեալ. նախ գրականութիւն, երկրորդ քերթողութիւն, երրորդ քերականութիւն: Եւ որպէս յանառիկ ամրոց գրակա-նութեանս դրամ<ր>ք մտանեն ի քերթողութիւն եւ սովաւ բացեալ ժառանգեն զամենայն տաճար քերականութեանն:*

*Եւ արդ քննեսցուք զնախկի ասացեալ գրականութիւնս, զոր հմտութիւն կոչեցին վասն տառից հնոցն իղ թւոյն ալփափետաց, զոր ի մերոց թարգմանչացն պատճառաւ բանձր լեզուիս վեցիցս վեց մերոց տառից լզ շարել գրիս: Նախ պարտ է հմտանալ վասն նոցա եւ ձայնիցն որ ի նոսա, զոր առոգանութեամբքն հեք եւ բանն բաղկանա եւ բանիւս սորին մասունքն գոյանա, զոր Դիոնեսիոս զսոսա ասաց հմտութիւն:* Թբ. 1-4: Այսպես շարունակվում է մինչև բ. 6, հաջորդ թերթերը վնասված են և խառնված: Այստեղ շարադրվում է «*Ծօթնագրեանք*»-ի նման մի բան (78): Էջ 12-ում զետեղված է աղյուսակ, և, իբրև դրա մեկնություն, հետևյալը. *Պատճէն եւթնագրենից աղիւսակիդ, զոր ի դիմիդ է. գիր լզ յա<յ>թէ մինչեւ ի քէ: Քերականս ի բազում տեղիս գրած է թէ առասպելաբանութեամբ պատմի որ է այլաբանութիւն: Բայց ըստ արուեստիս սորա այլ իմն ունին իմացմունս, որպէս եւ գրեալ է թէ որպէս քաղաքք եւ պարիսպք, որպէս նոքա եւ սոքա են: Եւ ասացին քերթողքն թէ չէր պարտ ի հասարակաց աւրինակի զսա լուծանել, այլ կնքեցին եւ զչափ սմին եւ ըստ յունականին վասն չափոյն խոնարհմունք ասացին եւ ի հայք հոլովք անուանեցին զչափն, որպէս աւր եւ արեգակն արեգական: Եւ աղիւսակս այս ունի զամենայն արուեստ գիտութեան առ իւր, որպէս եւ ցուցից ի հին գրոց զայս. արարչական գիրքն այս* ա̈ ա̈ ա̈ *եւ անձայնք են այս* ր̈ ր̈ ծ(ը̈) ք̈ և այլն մինչև բ. 30: Վերջանում է հետևյալ նշումով. *Աստ հաստատեցաւ ցանկալի արհեստս բ, նախ գրականութիւնն համառաւտ եւ ապա(յ) քերթողական արուեստս, որ վասն տառից եւթանցն, զոր մերոց սրբոց վարդապետացն ի սրբոյն* Դաւթայ *եւ* Մովսիսէ *եւ* յԱնանիայէ Շիրակացոյ *համարողէ էին ի բազում գիրս տողեալ արհեստս այս, զոր ի բազմացն գրեցի եւ լուծի ըստ արուեստին եւ ոչ ի մտացս սուտ ինչ կամ յաւտար գրոց աստ գծեցի, այլ զարժան մերոց հարցն հաւատացեալ եւ ի ջանասէր յաշատակերտացն ոչ թագուցի եւ զմեզ եւ զհարկողսն այս մատենիս ձեր աղաւթիցտ յանձն արարի զտէր Բարսեղ եւ զհարազատ*



*նորին զարքայն հայոց զՀեթում եւ զԼեւոն որդի նորին, աշակերտ այս մատենիս, յիշեսջիք առ Քրիստոս պահել պսակ նր եւ թագ ամենայն հայոց աւծմամբ ամն եւ այ Յի:*

2. *Վասն բառի եւ վասն բանի: Այս են մուտք քերականիս, որ ի Դիոնեսիոսէ սորին զտողէ են եղեալ գլուխս թւով ութ, որ ի բանէ.* բ. 31 և հաջորդը: Թ. 66-ում, *ի բազում գիրս քերականս գտանի թէ սերմանի նախ քան հնձի եւ իմացեալ յետոյ ազդի բանիւ, զոր եւ վասն այսր աւէ քերթողն* **Մովսէս**, *ոչ կամեցաք (ը)զսա(յ) լուծանել յայտնի, զի մի հասարակաց մանկունք մտցին յարուեստս, զոր (ը)զսա տուաք բարձրագունիցն եւ* ***կատարելոցն գիտել եւ ոչ ի տկարագունիցն ի լսելիսն արկանել, զի զիմանալիսս նախկի դասէ քան զտեսանելիսս***[1]. *եւ արուեստս բարժանի յերիս՝* ***ի բարի եւ ի միջակ եւ ի չար***[2], *որպէս էր տունկն նախա(յ)հաւրն ի մէջ ծառոցն վասն գիտելոյ զբարի եւ զչար. եւ առ լծորդս ունի կցորդութիւն ընդունելութիւնս. ասաց քերթողն թէ պարտ էր զլծորդս եւ* ***զլեզուաց խաւսութիւնս*** *քան զվերծանութիւնն նախդասել եւ այսու հմտանալ եւ յայսն մտանել դիւրաւ*[3]:

3. *Վասն անուանն ե մասանցն զորմէ խաւսեցաւ Պորփիւր եւ այլաբանեաց զանունն.* բ. 77 և հաջորդը:

4. *Վասն տառի եւ վասն բառի, որ ի գրոց Արիստոտէլի մեկնութիւն քերականիս.* բ. 90 և հաջորդը:

5. *Յաղագս քերականութեան.* բ. 125, Դիոնիսիոսի բնագիրն է. վերջին թերթերը վնասված են:

## XXVII

Ձեռ. Թ.գ. 39, Վենետիկի մատենադարանի (79), Արիստակեսի բառգիրքը, հավելված Դիոնիսիոսի բնագրով, թթ. 323-351: Առկա է նաև *Խորհնացւոյ Բան իմաստութեան*, բ. 355: Գրությունը նոտրգիր է, գրիչ՝ Մարկոս. *զմեղօք լցեալ Մարկոս յիշեցէք*, բ. 135:

## XXVIII

Ձեռ. *Դ.դ.* 968, Վենետիկի մատենադարանի (80), երկու ձեռագրից ի մի տուփի: Առաջինը պարունակում է զանազան բնագրեր՝ *տոմար, վասն կազմութեան մարդոյ, աշխարհագրութիւն Վարդանի*. գրությունը՝ նոր ժամանա-

[1] Հմմտ. **Մովսէս**, Մեկնութիւն, էջ 161-165:
[2] Հմմտ. **Դաւիթ**, Մեկնութիւն, էջ $79_{10}$:
[3] Հմմտ. անդ, էջ $84_{23-24}$, $85_{12-14}$:

կի շեղագիր, թթ. 1-245: Երկրորդ մատյանը ավելի լավ որակի է, առաջինից շատ ավելի հին, գրությունը բոլորգիր է, պարունակում է.

1. *Անանիայի Շիրակունոյ երիցս երանեալ վարդապետին, վասն որպիտութեան կենացն*[1], թթ. 247-254:
2. *Քերականութիւնս, որ կոչի է ազրեանք, զուգեալ ի* **Դաւիթ** *յանյաղթ փիլիսոփայէ եւ ի հռոմայ վարդապետէ, որ կոչի անունն* **Փինիկ**:

*ա, ե, է, ը, ի, ո, ւ*

*Եւ են այսորիկ է, զո<ւ>գին այսպէս. բանայ զմիտս, զոր կամիս ճանաչել: յԱդամայ մինչեւ ի Մովսէս եւ ի Մովսիսայ մինչեւ ի Դաւիթ, ի Դաւթայ մինչեւ ի Քրիստոս, ի Քրիստոսէ մինչեւ ի միւս անգամ գալուստն կարէ գիտել այս է գրով:*

*Այրն երրորդութիւն է, որ է անբաւ հաշիւ ՅԿԵ եւ գնալն պարտ է է է, որ մնա, դիր ի վերայ վեցին, որ է զաւրութիւն իմաստութեան եւ բան ստեղծէ կամ ժամուց եւ Զ մասամբ:*

*Կալ զգլուխ զաւրաւորացն եւ խաչակերպ բազմեւ եւ Զ տառիւք ի խոնարհ զանց արա(յ) եւ տուր է-երորդին եւ այնու բովանդակի, եւ այն է անուն որդւոյն աստուածոյ*, թ. 255:

Աժնռ *մի զործ ունին.* բիմս *միախորհուրդ են.* գյլխ *համախորհիք են.* դլխնտ *միացեալ են.* եծշր *միազն են.* զկից , էհզւ , ըծպփ , թղջք , թ. 257:

*Սոքաւք զմիմեանս հարցանեն, զմիմեանս քննեն եւ պատասխանեն յիրեաց, զի թագաւոր է այրն, հրամայէ ճորտերուն:*

*Արդ տուր զգիրն գրոց եւ բաժանեա(յ) ի Դ մասունս. Թ գիր արուականք են, Թ գիր լերկական, Թ գիր իգական, Թ գիր թվական* (36 տառից բաղկացած ամբողջ այբուբենը բաժանվում է չորս խմբի, յուրաքանչյուրը՝ իննական [նշան]):

*Այս արուեստս Զռեկին, զոր գովեցան Անանիա Շիրակուանցին եւ ասաց. զանձ ծածկեալ է յերկիրն հայոց եւ ակն թաքուցեալ է ի տունն Թորքոմայ, զի մայր է սա(յ) ամենայն իմաստութեան: Այս է եւ բուոց աղբիւրն ամենայն իմաստութիւն հանդերձ ամենայն բաժանմամբ: Եւ թէ տեսին զսա(յ) ճարտարք յունաց ի մերում նախանձիս եւ զարմացան, զի մի գիրն ծրո ճառս խաւսի.* թ. 261:

*Եւ եթէ կամեցիս, ուսիր զցանկն եւ զվկայութիւնն եւ զբովանդակն ի բերան եւ զխորագրերն զամենայն գլխոյ եւ նա(յ) քեզ պատճառ ցո<ւ>ցանէ: զՀռմիանոսի իմաստասիրացն այլ առ ի այս բերեալ զճառն հոգեպատում տեստղացն բան զոր Փինիկ վարդապետն եւ Մովսէս հռոմայեցին առ փիլիսոփայութեան իւրեանց եղանակեցին է գիր եւ յետոյ Մեսրոբ վարդապետն մին չափաւորելով ի զուգագրութիւն մտացն, եւ են սոքա բուով ԺԷ գիր. եւ առեալ յայտնապէս ի նոցանէ (Զը եւ) Զէ բանալիս բոնելով ԺԷ գրին.* թ. 271:

Բնագրին թ. 254-ում կցված է շրջանակ 36 շառավիղներով, որոնց միջև շրջանակով զետեղված է *ա* տառը այբուբենի յուրաքանչյուր հաջորդ տառի հետ միասին. *ա, աբ, ագ* և այլն մինչև *աք*: Կենտրոնում գտնվում է մի շրջանակ *այս է դուռն Զռեկին, զոր կոչի արհեստ համարողական* բառերով: Կան տառերի և այլ շարքեր:

## XXIX

Ձեռ. *Ա.է.* 1736, Վենետիկի մատենադարանի (81), ՌՂԵ (=1646 թ.), պարունակում է, ի միջի այլոց.

1. *Յովհաննու Որոտնեցւոյ մեկնութիւն Ստորոգութեանց* (կազմված է հեղինակի կողմից ՊԿԵ=1416 թ.):
2. <Դ>աւթայ *հայոց փիլիսոփայի եւ* Փիլիկա *հռովմայեցոց վարդապետի եւ* Հոմերայ *արուեստաւորի եւ* Մովսեսի *քերթողի խնդիր փափագման մասանց սիրոյ յաղագս վարժողական ուսմանց:*

## XXX

Տաթևի վանքի ձեռագրերի մեջ մենք, դեռ ուսանող եղած ժամանակ, նկատել էինք նույն այս աշխատության ևս մի օրինակ (82), ինչպես նշված է մեր օրագրում.

*Քերականութիւն կոչի էազրէնք, զուգեալ ի* ***Դաւթա*** *փիլիսոփայէ, ի Հռովմայ վարդապետէ, կոչեցեալ անուն <Փ>իւնիկ,* թթ. 1-17: Այժմ ձեռագիրը պետք է որ գտնվի Էջմիածնում:

[1] Տե՛ս Ք. Պատկանյանի հրատարակած **Անանիայի Շիրակունւոյ** *Մնացորդք բանից*, ՍՊբ., 1877, նաև «*Հայապատում*», էջ 232:

## II. ՆԿԱՐԱԳՐՎԱԾ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹՅՈՒՆ

*Քերականական նյութերի համապատկերը: Դիոնիսիոսի [երկի] գրչագրերը և դրանց փոխհարաբերությունը: MS, Գրիգորի, Վարդանի, Հովհաննեսի, Եսայիի քերականական երկասիրությունները և դրանց ձեռագրերը: Մովսեսի և Դավթի անունները կրող կամ նրանց վերաբերող բնագրերը: Բառարանագրական նյութեր: Ուղղագրություն:*

Վերը նկարագրված ձեռագիր մատյաններն այն մասում, որն էական է մեր խնդրի համար, պարունակում են քերականական բովանդակություն ունեցող հետևյալ հուշարձանները.

I. Դիոնիսիոսի երկը պահպանվել է բազմաթիվ գրչագրերով, որոնք գտնվում են 2297, 2359, Ը.գ. 1104, Ա.դ. 875, Է.գ. 306, Թ.գ. 1317, Ը.բ. 174, Ա.գ. 294, 336, Թ.գ. 39, Ե.գ. 1232 (ինչպես նաև 2372 (=337), Բ.գ. 1273) ժողովածուներում:

Դիոնիսիոսի աշխատության գրչագրերը սովորաբար հանդիպում են իբրև վերը թվարկված հեղինակների քերականական գործերի նախաբան: Դրանց միջև էական տարբերություն չկա, համենայնդեպս, չկան այն բնորոշ տարբերությունները, որոնք կարող էին հիմք ծառայել դրանց խմբավորման համար: Դա հարկադրում է տարբերակել գրչագրերն ըստ իրենց տեղադրության, այսինքն՝ նշել այն հեղինակների անունները, որոնց գործերին նախադրված է [Դիոնիսիոսի երկը]: Գրչագրերի դասդասման այս՝ զուտ արտաքին հատկանիշի [ընտրությունը] հիմնավորվում է նաև ներքին բնույթի որոշ տվյալներով:

Ուստի մենք տարբերակում ենք Դրիոնիսիոսի աշխատության Գրիգոր Մագիստրոսի, Հովհաննես Երզնկացու, Եսայի Նչեցու օրինակները, ընդորում նշում ենք նրանց անունների համապատասխան տառերով այն գրչագրերը, որոնք օգտագործում ենք մեր՝ Դիոնիսիոսի երկի հրատարակման քննական տողատակում. M – Մագիստրոսի գրչագրերը, E - Երզնկացու, իսկ J և N՝ Եսայի Նչեցու (J – Վենետիկի ձեռագրում և N – Վիեննայի):

Դիոնիսիոսի երկը գտնվում է նաև քերականական մի աշխատության կից, որը ձեռագրերում կրում է Մովսեսի անունը, սակայն իրականում, ինչպես կտեսնենք, ոչ այլ ինչ է, եթե ոչ Մովսեսի գործի կապակցությամբ Ստեփանոսի կազմած մեկնությունը: Ինչպես աշխատությունը, այնպես էլ դրան



կցված Դիոնիսիոսի բնագիրը նշում ենք MS (վենետիկյան ձեռագիր) և T (Էջմիածնի, նախկին Տաքևի ձեռագիր) տառերով: Այս գրչագիրը՝ բնագրի որոշ հատկություններով, իսկ Վենետիկինը՝ նաև ընդօրինակման ժամանակով, թվում է, ավելի հին են, քան մնացած գրչագրերը:

Վարդանի քերականությունը, որքան մենք կարող ենք դատել, ելնելով մեր տրամադրության ներքո եղած գրչագրերից, օժտված չէր Դիոնիսիոսի բնագրով: Սակայն այն պարբերություն առ պարբերություն համարյա ամբողջությամբ բերվում է բուն մեկնության մեջ. այս նյութից մենք երբեմն քաղում էինք որոշ տեղեկություններ. արդյունքները նշված են մեր համեմատություններում $V^c$ տառով:

Նման քաղվածքներ Դիոնիսիոսից հանդիպում են նաև մեր կողմից վերականգնված Դավթի, Անանունի, Մովսեսի, Ստեփանոսի և Համամի մեկնություններում. դրանք նշվում են համապատասխան սկզբնատառերով՝ $D^c$, $A^c$, $M^c$, $S^c$, $H^c$:

Հովհաննես Երզնկացու աշխատության մեջ հանդիպում են ընթերցվածներ, որոնք չեն համընկնում Դիոնիսիոսի երկի՝ իր գործածած օրինակին: Պարզ է, որ նման դեպքերում նա կախված է կողմնակի աղբյուրներից. այդպիսիները նշում ենք $E^c$ տառանիշով:

Նմանատիպ դեպքերը Եսայիի մեկնության մեջ նշվում են $J^c$ տառանիշով:

$E_2$ տառանիշով մատնանշվում է Դիոնիսիոսի երկի այն գրչագիրը, որը կցված է նույն Հովհաննես Երզնկացու համառոտ քերականությանը (83):

Արիստակեսի բառամթերքին կցված՝ Դիոնիսիոսի «Քերականության» գրչագրին հղումները նշում ենք A տառով:

Դիոնիսիոսի երկի առկա գրչագրերը խոր հնությամբ չեն առանձնանում: Դրանք բոլորն էլ սկիզբ են առնում հետմագիստրոսյան († 1058 թ.) ժամանակներից: Մասամբ, թերևս, այս պարագայով է բացատրվում դրանց վատ վիճակը: Կան բնագրային թերություններ, որոնք ընդհանուր են բոլոր օրինակների համար՝ հանգամանք, որը դրանց շաղկապում է մեկ ընդհանուր ժառանգական գծով: Եթե բնագիրը միանգամայն անթերի է և գրչագրերը միանման են, ապա անշուշտ դրանց ծագման խնդիրը վերանում է կամ կորցնում է նշանակությունը: Բայց եթե բնագիրը աղճատված է, և դրա թերություններին մասնակից են բոլոր գրչագրերը, ապա բնական կլինի դրանք բխեցնել մեկ վնասված նախազաղափարից:

Դիոնիսիոսի ներկա բնագրի դրսևորած թերություններն ակնհայտ են և տարակույսի տեղիք չեն տալիս: Քանի որ հայերեն թարգմանությունը բառացի է, այսպես ասած «նյութական», և տառ առ տառ համապատասխանում է հունարեն բնօրինակին, ուստի և վերջինիս օգնությամբ դժվար չէ դի-

տել և հստակ որոշել հայերեն բնագրի և բնօրինակի տարաձայնող կետերը: Երբեմն բնօրինակի անբավարար փոխադրությունը վերագրելի է թարգմանչին: Ներկա գրչագրերի ուշադրավ քերությունները հետևյալներն են.

ա. Բոլոր գրչագրերում բացակայում է հեղինակի անունը. և ոչ մեկում չի պահպանվել Դիոնիսիոսի անունը պարունակող խորագիրը: Իսկ մեկնիչներից միայն Դավիթն է, որ գիտե, թե իր կողմից մեկնվող երկը պատկանում է Դիոնիսիոս Թրակացուն[1]: Անանունից և Մովսեսից, ցավոք, պակասում է ներածությունը. դժվար է ասել՝ նրանք ծանոթ են եղել Դիոնիսիոսի [անվան] թե ոչ: Ստեփանոսն, ամենայն հավանականությամբ, ձեռքի տակ է ունեցել մի օրինակ, որում հեղինակի անունը բացակայում էր: Համամն, որ ապրում էր IX դ. կեսերին, ոչ միայն չի ճանաչում Դիոնիսիոսին, այլև նրա աշխատանքը վերագրում է Հոմերոսին[2]: Անշուշտ նա ևս իր տրամադրության ներքո ունեցել է անանուն օրինակ և մոլորվել է այնու, ինչ ասվում է Հոմերոսի մասին Դիոնիսիոսի 6-րդ գլխում:

բ. Բոլոր օրինակներում կարդացվում է *գրեալ*, էջ $4_{18}$, փոխանակ ակնկալվող *մակագրեալ*-ի, որը կհամապատասխաներ հունարեն բնագրի *ἐπιγράψας* բառին: Որ դրանում մեղավոր չէ թարգմանիչը և կամ այն հունարեն օրինակը, որից կատարվել էր թարգմանությունը, երևում է նրանից, որ ճիշտ ընթերցվածը պահպանել է Անանունի մեկնությունը[3]:

գ. Նայ բաղաձայնների մասին ասածը, էջ $8_{20}$, չի համընկնում հունարեն բնագրի ամբողջ ծավալին. հայերեն բնագրում սկզբից եղել էր մի արտահայտություն, որ համապատասխանում էր հունարենի *καὶ ὑγρὰ καλεῖται*, ինչը պարզվում է նույն Անանունից. *նայք - այսինքն խոնաւք*[4]:

դ. Հոմերոսից վերցված տողը, էջ $11_{14-16}$, աղճատված է. դրա աղավաղված լինելը վկայում է բնօրինակով չհաստատվող *արեւ* բառը: Թեև Դավթի [մեկնությունում] այս տողը մեջ է բերվում նույն՝ խաթարված ձևով, պետք է խոստովանել, որ այն վնասված է: Դավթի երկը, ինչպես կտեսնենք, պահպանվել է ուշ հեղինակների քաղաքաղերում, այնպիսի պարագաներում, որոնք չէին կարող այն փրկել աղավաղումներից կամ շտկումներից: Ավելորդ չէ

[1] Տե՛ս էջ $83_{2-15}$: Մխիթար Այրիվանեցու հայտնի ձեռագրում (84) նույնպես կա Դիոնիսիոսի բնագիրը, որի լուսանցքում, ինչպես հայտնում է հ. Գարեգինը, նշված է հեղինակի անունը. *Յաղագս քերականութեան Դիոնեսիոսի ասացեալ*:

[2] Տե՛ս էջ $269_{34}$-$270_{1}$, $280_{13,17}$, $283_{6,13}$: Ուշագրավ է, որ Հոմերոսի անունն է կրում Դիոնիսիոսի երկասիրությունը նաև Մուշի սբ. Կարապետի վանքի ձեռագրերից մեկում, ինչպես երևում է հանգուցյալ [Գ.] Սրվանձտյանցի տեղեկությունից: 1083 (=1634) թվականի այս մատյանն ունի խորագիր. *«Այս ինչ գիրքս խուն գտանի, էակք Դաւթի և Մովսիսի: (Որ ունի) զբնաբանն Պորփիւրի, եւ զքերականն Հոմերոսին եւ զմեկնութիւնն Մաժիստրոսին ֆիլիսոֆայ Գրիգորին»*, Հնոց եւ նորոց, Կ.Պոլիս, 1874, էջ 36: Հոմերոսի Քերականություն ասելով, հասկացվում է Դիոնիսիոսի բնագիրը:

[3] Էջ $132_{5}$:

[4] Տե՛ս էջ $134_{9}$, հմմտ. **Դաւիթ**, էջ $96_{8}$:



նկատել, որ մի քանի գրչագրերում ընթերցվում է *պատճառ*, իսկ մյուսներում՝ *պատճառք*. առաջին ընթերցվածը թարգմանություն է տողի առաջին կեսում գտնվող հունարեն *αἰτίη*, իսկ երկրորդը՝ ըստ երևույթին, երկրորդ կեսի *αἰτίαι* բառի, մի հանգամանք, որում չի կարելի չտեսնել անուղղակի ապացույց այն բանի, որ հայերենում առկա էր նաև տան երկրորդ կեսը. *այլ աստուածք են ինձ պատճառք*:

ե. 14-րդ գլխում, էջ 24-25, հայերեն բնագրում զանազանվում է ութ խոնարհում, մինչդեռ հունարենում՝ վեց, սակայն հետագայում թվարկվում է ոչ թե ութ, այլ տասը խոնարհում: Թվում է, որ երկու դաս, այն է՝ 8 և 9-րդը հավելվածներ են, որոնք խորթ են սկզբնական թարգմանությանը: Այս դասերը առկա են արդեն Համամի մեկնությունում՝ մի հանգամանք, որ չի կարող օգտագործվել մեր դեմ, այլ ցույց է տալիս միայն հավելվածների խոր հնությունը:

զ. 17-րդ գլխում, էջ $27_{3-4}$, ներկա հայերեն բնագրից պակասում է *եւ ստորադասեալ* [արտահայտությունը], սակայն սկզբնապես այն ընթերցվում էր՝ ինչը երևում է նույն հայերեն բնագրից, որում մի փոքր վարը բերվում է որպես օրինակ. *եւ ստորադասական է այս, որգան որ*:

է. Նույն գլխում, էջ $27_{13}$, *զայսով* սխալ ընթերցվածը անցնում է բոլոր օրինակների միջով, մինչդեռ հարկավոր է կարդալ *զայս, ով*, համապատասխան հունարենի *τὴν (85) ὦ (86)*, որտեղ *ὦ* [բացականչությունը] պարզապես փոխադրված է *ով* ընդունված հնչունային համարժեքով:

ը. «Յաղագս նախադրութեան» գլուխը, էջ 30, նույնպես տեղիք է տալիս որոշ տարակույսների: Դավթի գործում, էջ $118_{15}$, կա ցուցում, որի համաձայն հունարեն լեզուն ունի 18 նախդիր՝ 6 պարզ և 12 բարդ: Այս տեղեկությունները առկա են նաև Դիոնիսիոսի [հունարեն] բնագրում, սակայն դրանք բացակայում են ներկա հայերեն թարգմանությունից: Թերևս այստեղ Դավիթը կախված է հունարեն մեկնությունից, որը, ինչպես կտեսնենք, եղել է իր տրամադրության ներքո՝ իր մեկնությունը կազմելու ժամանակ: Սակայն ավելի հավանական է, որ դա հիշատակվում էր նաև հայերեն թարգմանության մեջ, և այդ պատճառով նա հարկ է համարել կանգ առնել այս հանգամանքի վրա:

թ. 20-րդ գլխում, էջ $31_{23-24}$, գտնվում է բոլոր գրչագրերի համար ընդհանուր *ծղացի* բառը, որը, հավանաբար, սովորական միջտողային բացատրություն է, հավասարազոր [բնագրի] *մուրցացի* [բառին], դրանց դիմաց հունարենում առկա է ընդամենը մեկ բառ:

ժ. Առոգանության մասին գլուխը նույնպես ոչ լրիվ է համընկնում բնօրինակի հետ: Բացի այդ, *Դիկղիկոն* աղավաղված բառը ընթերցվում է բոլոր օրինակներում. միայն մի մեկնության մեջ հանդիպում է *Դիկլիտոն*: Առոգա-

նությանը վերաբերող երկրորդ հատվածը որոշ մասերով ավելի մոտ է հունարենին: Երկու տարբերակի առկայությունն արդեն իսկ բնագրի վնասված լինելու նշան է: Կարելի էր կարծել, որ երկրորդ հատվածի թարգմանությունը կատարել է Մագիստրոսը, սակայն նրա քերականության մեջ դրա հետքերը չեն նշմարվում:

ի. Արվեստի սահմանումը, էջ 42, առկա օրինակում բացակայում է: Այն մեջբերվում է Դավթի երկում, նրա՝ քերականության ներածությունում: Դրա մասին խոսում են նաև հույն վերլուծագիրները, Դիոնիսիոսին [վերաբերող] իրենց լուծմունքների ներածություններում: Խնդիրը նույն է, ինչ և նախդիրների մասին գլխում, և դրա վերաբերյալ մեր նկատառումը կիրառելի է նաև տվյալ դեպքում:

լ. Ոտքերին նվիրված գլխում, էջ 43-44, ոտքերի [տեսակների] հերթականությունը չի համընկնում [հունարեն] բնօրինակի հետ: Թեև այս դեպքը կարելի է բացատրել և հունարեն բնօրինակով, որն օգտագործել էր հայ թարգմանիչը: Նմանապես և այն հանգամանքը, որ բառի սահմանումը, էջ 12, հայերենում կազմում է առանձին գլուխ, մինչդեռ հունարեն բնագրում այն միացված է հաջորդ՝ խոսքին վերաբերող գլխին, ինչպես և այն, որ բայերի հարացույցներում պակասում են դերբայական ձևերը, թեև առկա է դերբային վերաբերող գլուխը՝ [մի խոսքով,] տարաձայնության այս և նման այլ դեպքեր նույնպես կարող են բացատրվել հայերեն թարգմանության համար նախագաղափար ծառայած հունարեն օրինակի պատահական հատկություններով:

Զանց առնելով առավել կամ պակաս վիճահարույց տեղիները և հիմնվելով ակնառու այն օրինակների վրա, որոնք հավաքված և զետեղված են Դիոնիսիոսի բնագրի մեր ծանոթագրություններում Armenius discrepans՝ [«տարաձայնող հայերենը»] խորագրի ներքո, հանգում ենք այն եզրակացության, որ մեզ հասած Դիոնիսիոսի [թարգմանության] գրչագրերը ծագում են մի ընդհանուր, նշված իմաստով աղավաղված մայր-գրչագրից:

Քանի որ այս աղճատումներից մի քանիսը հանդիպում են [դեռևս] Համամի երկում, դրանով որոշվում է և մայր-ձեռագրի վաղնջական հասակը, որն, այսպիսով, բարձրանում է ընդհուպ մինչև IX դարին նախորդող ժամանակները, այսինքն՝ հայոց դպրության նախաբագրատունյաց դարաշրջանը:

Առկա գրչագրերի տարբերությունները ձեռագրախմբերը զատորոշող բնույթի չեն, այլ բացառապես տարընթերցումային են: Օրինակները միմյանցից սահմանազատել հնարավոր չէ՝ տարընթերցումները թույլ են տալիս որոշել միայն դրանց զարգացման ընդհանուր գիծը: E՝ այսինքն Երզնկացու օրինակը, անշուշտ սերում է M (Մագիստրոսի) օրինակից. E-ից կախված են



$E_2$, J և N, այսինքն՝ օրինակներ, որոնք կցված են Երզնկացու համառոտ քերականությանը և Եսայի Նչեցու երկին: MS և T, այսինքն՝ Մովսես-Ստեփանոսի քերականությանը հարող բնագրերը, միևնույն գրչագրի տարբեր օրինակներ են: Մագիստրոսի գրչագիրը, թվում է, նույն կարգի է, միայն MS և T-ն մեզ են հասել, որոշ չափով սրբագրված ըստ E օրինակների: Մեր T գրչագրում այդպիսի շտկումների հետքեր նույնիսկ պահպանվել են լուսանցքներում: Ճիշտ նույն կերպ $E_2$ սրբագրվել էր ըստ MS կամ T-ի, ինչպես դա երևում է մեր գրչագրի լուսանցքների նշումներից: Վարդանի գրչագիրն առավել մոտ է MS [օրինակին]: Ինչպես կտեսնենք, նրա ընկերակից՝ Կիրակոս [Գանձակեցուն] քաջ հայտնի էր MS երկը. շատ հավանական է, որ այն ծանոթ է եղել նաև Վարդանին:

Ասածս լուսաբանելու համար բերենք հետևյալ օրինակները.

էջ $2_{28}$, *առգայն – խտրութեան* MS M $D^c$ (=$E^c$).
*առգայն - խտրութեանց* T.
*առգայն - խտրութեանց* E $E_2$ J N.
էջ $3_{1-3}$, *տապալեն – յարկացոցեն* MS $E_2$ J.
*տապալեն – յարկացուցանեն* T V (*-ուցանեն* սրբագրված է).
*տապալէ - յարկացոցէ* M.
*տապալէ - յարկացուցանէ* E (*-ուցանէ* սրբագրված է).

$3_1$ *գոյնս* MS T V.
*գնոյնս* M.
*գյոյնս* E $E_2$ N J.
(*գայն* Հովհաննես Կաթողիկոսի մեջբերմամբ՝ Պատմութիւն, էջ 1).

$6_{22}$, *եւ են միջակքն] եւ են բարակքն* M E. այս ընթերցվածը բացատրվում է արևմտյան բարբառի ազդեցությամբ, որն անցել էր Մագիստրոսից Անանունի բնագիրն ևս, էջ $133_{15}$:

$7_{21}$, *զձայնաւորսն* M E N J.
*զձայնորդսն* MS T, *զձայնաւորսն* մյուսները:

$8_{18}$, *մի մի* MS T, *մու մու* այլ օրինակները. *շարակցեալ* MS T, *շարակցեալ* այլ օրինակները:

$9_2$, *ի հնգիցս յայսցանէ* M $E_2$ E J=N.

$11_{21-22}$, *եզ անձայն] եզաձայն* M E $E_2$ N= J.

$14_{12}$, *որգոն] որպիսի* M E $E_2$ J=N.

$14_{19}$, *ստացիւքն] ստացչիւքն* T V, *ստացչաւքն* MS.

$15_{12-13}$, *մակսաստութիւն] մակսաստկութիւն* E $E_2$ J (T-ն սրբագրված է ըստ E-ի).

$15_{21}$, *անրաղդատակի* T MS, *ընրաղդատակի* M, *անրաղդատականին* E $E_2$ J=N.

$17_{18}$, *ենրանկեալ*] *ենրակաւ* M E.

$19_{13}$, *նրան*] *նրէն* MS T.

$19_{20}$, *Աւարան* T MS, *Աւարրեան* M, *Աւարեան* E $E_2$ J.

$10_{22}$, *որեւ* / Ψ M, *ամենայն որ եւ* E.

$20_{24-25}$, *տոհմ, պար, ամբոխ, հոյլ* MS.
*տոհմ, պար, հոյլ, գեհ* T.
*տոհմ, պար, գեհ, հոյլ, շեղջ* M E $E_2$ J.

$21_{18}$, *ծիքենի*] *խղենի* MS (T գրչագրում թերթը պոկված է).

$23_{14-15}$, *վարդապետեմ, սահմանարանեմ*] *վարդապետեմ կամ հակարանեմ* MS T.

$23_{21}$, *նորմէ* MS, *յորմէ* M E $E_2$ J T (սրբագրված է ըստ E-ի).

$24_{13}$, *բենիւ, որգոն ջամբեմ* և այլն T MS ($E_2$-ն սրբագրված է ըստ T-ի).

$25_{12}$, *կահեմ*] *պահեմ* T ($E_2$-ում *կ*-ն սրբագրված է *պ* ըստ T-ի).

$25_{24}$, *եւ երկրորդն ոյիւ* MS V T (սրբագրված է *-ումն* ըստ E-ի).
*եւ երկրորդումն նոյիւ եւ* M.
*եւ երկրորդումն ոյիւ* E $E_2$ J.

$26_{26}$, *յարեւին* T MS] *յարին* M E $E_2$ J.

$27_9$ *յարեւին* MS] *յարին* մյուս գրչագրերը.

$33_{5-6}$, *հրաշական, իւ եւ բաքասական* } *հրաշական բաքասական* MS $H^c$ M (ավելացված է *իւ*).

$33_{19}$, *մատարկաց* MS.
*մաւտարաց* M T (T-ի լուսանցքում *մարտակցաց*).
*մարտակաց* E $E_2$ J.
*մարտարկաց* V.
*մարտկացն* $H^c$.

$34_{10}$, *մատհրամանոյն* MS T J (= լուսանցքում *մար*).
*մուքհրամանոյն* M.
*մ. քհրամանոյն* E V.

$35_{19-20}$, *արտաքերեալ ջոկամանեն* MS T.
*արտաքերեն ջոկամանեալ* M E $E_2$ J.

$35_{25}$, *զայսն* MS M, *զայլսն* մյուս գրչագրերը.

$36_{24}$, *բաղկապել* MS, *շաղկապել* մյուսները (J-ում սրբագրված է *բաղ*-).

$38_9$, *չորք* T $E_2$, *երեք* MS M E J.

$64_8$, *երկին*] *եսքին* M E.



Առաջարկած օրինակները բավականաչափ են պահպանված գրչագրերի հարաբերությանը վերաբերող մեր տեսակետը լուսաբանելու համար: Դրանց հարաբերությունն ավելի ցցուն է երևում *կոփեմ* բայի հարացույցների տարընթերցումներում, ուր տառերի մտահնար և անիմաստ զուգակցությունները վերարտադրվում են միանման ձևով միևնույն խմբի գրչագրերում:

II. Ձեռագրերում Մովսեսին վերագրվող քերականական աշխատությունը իրականում Ստեփանոսի՝ Մովսեսի երկի աստվածաբանական մեկնությունն է: Յուրաքանչյուր գլխում նախ մեջ են բերվում Մովսեսի խոսքերը, ապա օժտվում են Ստեփանոսի մեկնությունով, ընդորում լուսանցքում ամեն անգամ նշվում է համապատասխան հոդվածի հեղինակի՝ Մովսեսի կամ Ստեփանոսի անունը, որոշ գրչագրերում այս անունները դրվում են միասին համապատասխան էջերի ստորին լուսանցքում: Երբեմն ընդօրինակողների մեղքով անունները բաց են թողնվում, երբեմն էլ ճիշտ չի նշվում, թե երկու հեղինակներից ում ինչ է պատկանում: Ավելի հանգամանորեն այս երկի մասին կխոսվի դրա հրատարակության առիթով (87): Առայժմ բավարարվենք նշելով, որ այս աշխատությունը հանրածանոթ էր: Կիրակոս պատմիչը Սուրբ Հոգու ծագման վերաբերող լատինների հետ բանավեճում հղում է դրան և երկու անգամ մեջբերում կատարում, ընդորում առաջին մեջբերումը սխալմամբ վերագրում է Մովսեսին, թեև երկուսն էլ պատկանում են Ստեփանոսին[1]:

Այս աշխատությունը ծանոթ էր նաև Հովհաննես Երզնկացուն, ինչպես կարելի է դատել նրա ակնարկություններից[2]: Դրա մասին գիտեր և Գրիգոր Մագիստրոսը, և, հավանաբար, այնտեղից է վերցրել այն ամենը, ինչ կա նրա քերականության մեջ Մովսեսի քերականությունից: Դրա հռչակը վկայվում է մեզ հասած գրչագրերի բավականին մեծ քանակով: Մենք օգտագործել ենք մեզ մատչելի վերը նկարագրված հինգ գրչագրերը.

Ձեռ. *Ը.գ.* 1104, էջ 45-101:
Ձեռ. 2297, էջ 43-120:

---

[1] **Կիրակոս [Գանձակեցի]**, Պատմութիւն, գլ. 48, էջ 188. *Եւ **Մովսէս Խորենացին** ասէ ի մեկնութեան քերականին. սուրբ հոգին առինչունակ է* և այլն. *եւ Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոսն ասէ. քանզի բղխէ ի հօրէ իբր յական է* և այլն:

[2] Հովհաննեսն իր քերականության վերջին գլխում ոտքերի մասին նշում է. *այլ եւ ոմանք յառաջին մեկնողացն ոչ տալով ընդարձակութիւն ըստ տեղւոյն մեկնութեանց. եւ **կէսք ըստ այլաբանութեան բանս շարադրեցին**,* բ. 204:

Ձեռ. 2372, էջ 264-303:
Ձեռ. *Ը.բ.* 632, էջ 147-229:
Ձեռ. *Բ.գ.* 422, էջ 97-163:

Բացի առաջինից, մնացած գրչագրերը կազմում են միևնույն տարբերակի խումբը: Առաջին գրչագիրը, չնայած իր բոլոր թերություններին, մնացածներից անհամեմատ բարվոք վիճակում է: Մնացած չորս օրինակները սերում են միևնույն նախատիպից, որում ինչ-որ պատճառով թերթերը խիստ խառնված են եղել: Թերևս սկզբնօրինակը հնամաշ և պատառոտված էր, և տգետ դպիրը ընդօրինակում էր ինչպես պատահի, անկարող լինելով հաղթահարել դժվարըմբռնելի բնագիրը:

«Ընդհանուր (երկակի) վանկերի մասին Դավթի փիլիսոփայի» հոդվածից հետո (որի պատկանելությունը Դավթին մենք վիճարկում ենք[1]) գալիս է մի հատված. «*Արդ զերկավանգսն կատարեաց եւ յեռավանգն փոխեցաւ եւ ընէ զԱբրաամ*» և այլն` այսինքն «արդ, նա ավարտել է երկվանկ ոտքերի [մասին դրվագը], և անցել է եռավանկերին և Աբրահամ [բառը] բերել է [որպես օրինակ]» և այլն:

Այստեղ խոսքը ոտքերի մասին է. հետագայում խոսվում է *վերջատանց, քաղաքորբ, քաղաղաւտ, աւարտեղ, ներգեւ, սռնք*, այսինքն` անապեստոս, ամփիբրաքիոս, ամփիմակրոս և այլ ոտքերի մասին:

Այս հատվածին անմիջապես հարում է մի ոչ մեծ դրվագ առոգանության մասին` *առոգանութիւնք են Ժ* և այլն, որի վերջում կարդում ենք հետաքրքիր հիշատակարան. *Ստեփ. սարկ. յեռն եւ ի քառն*, այն է` «Ստեփանոս սարկավագ. երեքի և չորսի մասին»[2]: Հիշատակարանը ցույց է տալիս, ի դեպ, որ Ստեփանոսն իր մեկնությունը գրել էր երիտասարդ տարիներին, երբ նա դեռ սարկավագ էր: Դա կարևոր է պարզելու համար, թե ինչպես են հարաբերվում Ստեփանոսի և Մովսեսի մեկնությունները, ինչպես և Ստեփանոսի մյուս երկը` Դիոնիսիոսի [քերականության] մեկնությունը:

Ոտքերին և առոգանությանը վերաբերող հատվածները հայտնվել են ոչ իրենց տեղում` թերթերի հետևառաջ ընկնելու պատճառով: Այս անկարգությունն ընդհանուր է բոլոր գրչագրերի համար, ներառյալ առաջինը, որն այլ

[1] Տե՛ս էջ 44:
[2] Մխիթարյան հ. Գաբրիել (Ավետիքյանի) խոսքերով` «Կայ Յովհաննէս Սարկաւագի անունով գրուածք մի որ կըսվի *յեռն եւ ի քառն*, բայց թէ արդեօք անուանի Սարկաւագ վարդապետն ծա դարուն, կամ թէ ուրիշ մը` չի գիտցուիր. բանն ալ անյայտ է», տե՛ս «Քերականութիւն հայկական», Վենետիկ, 1815, էջ 160, § 413: Մեզ չհաջողվեց ստուգել հ. Գաբրիելի տեղեկության հավաստիությունը Վենետիկի մատենադարանի տվյալներով, բայց հակված ենք մտածելու, որ նա ի նկատի է ունեցել մեզ հետաքրքրող դրվագը, սակայն շփոթել է հեղինակի անունը:



առումով շատ ավելի բարվոք վիճակում է:

Նշված չորս գրչագրերում այստեղից սկսած էջերը նույնպես խառնված են, այնպես որ գլուխների հաջորդականությունը ևս խախտված է: Դրա մասին պատկերացում տալու համար առաջարկում ենք հոդվածների գլխակարգությունը ըստ առաջին գրչագրի, իսկ կողքից հռոմեական թվանշաններով նշում ենք դրանց հաջորդականությունն ըստ չորս աղավաղված գրչագրերի:

III { <ԺԱ> ՅԱՂԱԳՍ ԲԱՌԻ
<ԺԲ> ՅԱՂԱԳՍ ԲԱՆԻ
<ԺԳ> ՀՈԼՈՎՔ ՎԵՑ
II { <ԺԴ> ԽՈՆԱՐՀՈՒԹԻՒՆ ԲԱՅԻ
<ԺԵ> ՅԱՂԱԳՍ ԼԾՈՐԴՈՒԹԵԱՆ
<ԺԶ> ՅԱՂԱԳՍ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ
V { <ԺԸ> ՅԱՂԱԳՍ ՅԻՐԴԻ
<ԺԷ> ԴԵՐԱՆՈՒՆ
VII <ԺԹ> ՅԱՂԱԳՍ ՆԱԽԱԴՐՈՒԹԵԱՆ
I <Ի> a. ՅԱՂԱԳՍ ՄԱԿԲԱՅԻ
VI { b. ԴԱ[Ր]ՁԵԱԼ ՄԱԿԲԱՅ
<ԻԱ> (a.) ՅԱՂԱԳՍ ՇԱՂԿԱՊԻ
VIII b. … բաղմատք
<ԻԲ ՅԱՂԱԳՍ ԱՌՈԳԱՆՈՒԹԵԱՆՑ>
IV <ԻԴ> ՅԱՂԱԳՍ ՈՏԻՑ

Պատկերը պարզ է. բոլոր գրչագրերն ունեն ընդհանուր աղճատում 22-րդ` «Առոգանության մասին» և որոշ չափով 24-րդ` «Ոտքերի մասին» գլխում: «Առոգանության մասին» գլուխն իր տեղում չէ դրանցից և ոչ մեկում. դրա մնացորդները, ինչպես տեսանք, պահպանվել են վերը` 10-րդ գլխի վերջում: Ինչ վերաբերում է մնացած գլուխներին, ապա միայն առաջին օրինակն է պահպանում ճիշտ հաջորդականությունը` մնացած չորսը ներկայացնում են ավերածության պատկերը: Դրանցում ոչ միայն առանձին գլուխներ, այլև միևնույն գլխի տարբեր մասերը ցրված են ինչպես պատահի: Կան և այլ թերություններ, որոնց չենք անդրադառնա, նամանավանդ որ դա տվյալ աշխատանքի պահանջներից դուրս է:

MS աշխատությունից օգտվեցինք Մովսեսի բնագիրը վերականգնելու համար: Թաղդատություններում այն նշվում է երկու հեղինակների անունների սկզբնատառերով միասին` MS, ընդորում գրչագրերի տարաձայնությունների դեպքում դրանցից առաջինը նշում ենք որպես $MS_1$, երկրորդը` $MS_2$, երրորդը` $MS_3$: Մնացած օրինակները չեն օգտագործվել, քանի որ համընկնում են $MS_2$ և $MS_3$ հետ:

**III. Գրիգոր Մագիստրոսի «Քերականութեան մեկնութիւն»**: Սա այն աշխատությունն է, որ Գրիգոր [Մագիստրոսը] գրել էր իր որդու, հռչակավոր Գրիգոր Վկայասերի խնդրանքով[1]: Գրիգորի՝ մեծ հեղինակություն վայելող քերականական երկասիրությունը հետագայում դուրս է մղվել դպրոցից և առհասարակ գործածությունից Հովհաննեսի ավելի հանգամանալից բանաքաղով, որը լույս է ընծայվել 1293 թ.: Դրանով է բացատրվում Մագիստրոսի գործի գրչագրերի համեմատաբար հազվադեպ լինելը: Առայժմ այն հայտնի է միայն երեք վերը նկարագրված գրչագրերով.

Ձեռ. *Թ.գ.* 875:
Ձեռ. 38:
Ձեռ. *Գ.բ.* 871:

Մագիստրոսի երկը բաղդատություններում նշում ենք M տառով, իսկ դրա գրչագրերը հերթով՝ $M_1$, $M_2$, $M_3$: Մագիստրոսի քերականությունն ամբողջ ծավալով ներառվել է Հովհաննեսի բանաքաղի մեջ. դրանից բազմիցս օգտվել էր նաև Եսայի Նչեցին: Համադրություններում մեր կողմից ներգրավված են Հովհաննեսի, մասամբ նաև Եսայիի գործերը, E և J տառանիշերի ներքո:

Ամենահինը և բնագրի բարվոքության տեսակետից լավագույնը պետք է համարել առաջին գրչագիրը, այսինքն՝ *Թ.գ.* 875 ձեռագրինը: Սակայն դա ևս անթերի չէ. կա էական պակասություն՝ ընդհանուր բոլոր գրչագրերին: Մագիստրոսի աշխատությունը, ինչպես կտեսնենք, բանաքաղի բնույթ ունի և իր մեջ ամփոփում է ավելի հին հեղինակների մեկնությունները: «Յաղագս անուան» գրվածքն այն մասում, որը փոխառված է Ստեփանոսի երկից, ընդհատվում է ընդմիջարկությամբ, որը չի համապատասխանում շարադրանքի ընթացքին: Այն զբաղեցնում է ձեռագրի 98-99-րդ թերթերը և բերվում մեր 204-205-րդ էջերի ծանոթագրության մեջ: Մենք ենթադրում ենք, որ այդ ամբողջ ընդմիջարկությունը, ամբողջ հատվածը պատկանում է Ստեփանոսին, սակայն ինչ-ինչ պատճառներով հայտնվել է ոչ իր տեղում:

Նմանապես դերանունների մասին գլխում, ձեռագրի 125-126-րդ թերթերում հանդիպում ենք մի փոքրիկ հատվածի, որը վերաբերում է «ստուգաբանութիւն», «համեմատութիւն» և «դատումն քերդածաց» [հասկացություններին], այն է՝ Դիոնիսիոսի առաջին գլխին: Այն զետեղված է մեր՝ 216-րդ էջի ծանոթագրությունում:

[1] **Սամուէլ Անեցի**, *Հաւաքմունք*, էջ 113: *«Եւ սա (Վկայասէր) խնդրեաց ի հաւրէ իւրմէ զմեկնութիւն քերականին.»*, հմմտ. **Կիրակոս Գանձակեցի**, *Պատմութիւն*, էջ 54. *«սա խնդրեաց յիւրմէ մեկնել զարուեստն քերականի. զի էր նա իմաստասէր եւ մեկնեաց զնա արուեստաւոր բանիւ»*:



Վերջապես, ձեռագրի 137-րդ էջում՝ «Յաղագս ոտից» գլխում հայտնվել են տողեր, որոնք, ինչպես նշվում է մեզ մոտ, էջ 124, վերաբերում են նախորդ՝ «Յաղագս առոգանութեանց» գլխին: Ոտքի մասին գլուխը, իրեն խորք հավելումով հանդերձ, գտնում ենք նաև Հովհաննեսի մոտ, որն ընդօրինակել էր այն Մագիստրոսի [երկից]: Ուրեմն այս աղճատմամբ վնասված էր արդեն այն օրինակը, որը գտնվում էր վերջինիս ձեռքին: Այն, հավանաբար, զերծ չէր նաև վերոհիշյալ երկու ընդմիջարկություններից:

Մագիստրոսի գործի առկա գրչագրերը, համենայնդեպս, տառապում են նույն աղճատումից. ուրեմն, դրանք սերում են միևնույն վնասված օրինակից: Մնացած հանգամանքներում գրչագրերն ունեն ինչ-ինչ տարբերություններ, որոնցից մի քանիսը շատ էական են: Դրանք մեզ թույլ են տալիս կապել $M_2$ և $M_3$ ավելի մերձավոր ազգակցությամբ:

Գրիգոր Մագիստրոսը, չհամաձայնելով այն բացատրության, որ Դավիթն է տալիս Հոմերոսի՝ Նեստորին վերաբերող տողի առնչությամբ, փոխարինել էր այն սեփական մեկնությամբ: Այն, ինչպես և սպասելի էր, առկա է $M_1$ գրչագրում, նույն մեկնության մասին խոսում է նաև Հովհաննես Երզնկացին: Սակայն $M_2$ և $M_3$ գրչագրերում Մագիստրոսի բառերի փոխարեն զարմանքով գտնում ենք Դավթի մեկնությունը: Այս՝ ձեռագրախմբերը զատորոշող տարբերությունը բավական զորեղ է $M_2$ և $M_3$ գրչագրերը հարազատացնելու համար: $M_3$ գրչի խոսքերից գիտենք, որ նրան նախազաղափար ծառայած օրինակում պակասում էր մի թերթ, որում զետեղված էր «Կապի մասին» գլխի բնագիրը՝ սկսած *զի ահա հարցեր* մինչև *յառնէր որ. ապա* էջ $122_8$-$113_{10}$ և $154_{13}$-$155_{11}$. այդ պատճառով նույն հատվածը պակասում է նաև $M_3$-ի մեջ. իրեն արդարացնելու համար գրիչը լուսանցքում նշում է. *յարինակն թուխթ անկել է*: Քանի որ $M_2$-ում այս, ինչպես և $M_3$-ի այլ բացթողած տեղիները առկա են, ինչպես երևում է ստորև բերվող համադրությունից, $M_3$-ը չէր կարող ընդօրինակված լինել $M_2$-ից, սակայն երկուսն էլ ունեցել են մոտակա ընդհանուր նախնի:

Ինչ վերաբերում է դրանց հարաբերակցությանը $M_1$-ի հետ, ապա վերջինը կարելի է ընդունել որպես բնօրինակ երկուսի համար այն պարագայում, եթե միևնույն ժամանակ ենթադրենք, որ դրանց կապակցող միջանկյալ գրչագիրը որոշ չափով սրբագրված է եղել Եսայի Նչեցու դպրոցի սաներից մեկի կողմից Տաթևի վանքում: Գրչագրերի տարընթերցումներից ուշագրավ են հատկապես հետևյալները.

էջ $223_1$, *մայկիստրոսի* $M_1$, *մաքիստրոսի* $M_3$, *մաժիշտռոսի* $M_2$, *մագիստրոսի* E J:

$223_{4}$, *եւ յիւրոց յաւելեալ յիմաստից* $M_1$.
*եւ այլ եւս յաւելեալ յիւրոցն իմաստիցն* $M_3$.
*եւ զիւրոց յաւելուածոց միտս* $M_2$:
$225_{23}$, *զլինելոցն զուշակել* $M_1$ E.
*զեղելոցն »* $M_2$
*զհանդերձելոցն »* $M_3$:
$83_{1}$, *խափանի* $M_1$, *բառնի* $M_2$ $M_3$ E, *բառնա* J:
$185_{4}$, *յառաջարկութեամբ* $M_1$.
*յառաջբերութեամբ* $M_2$ $M_3$ E:
$189_{2}$, *յաւելեալ* $M_1$ E J, *փոխանակեալ* $M_2$, *փոխան եղեալ* $M_3$ (մեր ծանոթագրություններում նշված չէ):
$191_{18}$, *զաւճառն* $M_1$ $M_3$ E, *զպաճառն* $M_2$:
83, *ըստ զտիչ* $M_1$, *զզտիչ* $M_2$, *ստուգիչ* $M_3$:
$184_{3-4}$, *եւ արդ զտեալ գիր նախ քաղդեացիք եւ ապա հելլենացիք եւ զկնի նոցա այլք մի ըստ միոջէ* M $M_2$ E, *նախ փիւնիկեցիք, բ. եգիպտացիք, գ. եբրայեցիք, դ. արգիացիք, ե. քաղդեացիք, զ. հելլենացիք, է. հայք եւ ապա այլք* $M_2$ (ծանոթագրություններում նշված չէ): Բացի դրանից, $M_3$-ի լուսանցքում կարդացվում է *վասն գրագիտի*: Սա, երևի, դրվագի խորագիր է՝ դրվագ, որից փոխառվել են $M_3$-ում թվարկված անունները:
$83_{19}$-$84_{1}$, *ի սմանէ - սկիզբն արուեստիս*] բացթողման պատճառով $M_2$-ում կարդացվում է որպես *ի բնարուեստիս* (*ի ...բն արուեստիս* ընթերցվածից):
$185_{8}$, *մեզ արուեստաւորս զորչափութիւն տորա, զոր ճառեացն եւ յայտնել* պակասում է M գրչագրում, ի տարբերություն E-ի:
$160_{7-8}$, *մասնական ծովացնաց է բանին եւ ոչ անդնդական խորոցն գիտակ*, չկա M և E-ում, ի տարբերություն MS գրչագրի:
$186_{21-22}$, *եւ կամ ճային - աղուեսուն* չկա $M_1$-ում, ի տարբերություն $M_2$ $M_3$ E:
$192_{2-10}$, վերծանման տեսակների թվարկման մեջ տարաձայնում են միմյանց բոլոր գրչագրերը:
$198_{2-3}$, *այլ այլ եւս - անցեցելոյ*, չունի $M_2$:
$137_{4-5}$, Անանունի օրինակը $M_2$-ում փոխարինված է Դիոնիսիոսի բերած օրինակով, ի տարբերություն $M_1$ $M_3$ E գրչագրերի:
$150_{11}$-$151_{22}$ ˹ *եւայս – իմս*, բաց է թողնված $M_3$-ում:



IV. **Հովհաննես Երզնկացին** քերականությունը (88) կազմել է բարեկամների՝ հայոց դպրության նախանձախնդիրների առաջարկությամբ և խնդրանքով: Դրա լույս ընծայելու ժամանակից՝ 1293 թվականից ի վեր այն դարերով սպասարկում էր հայոց դպրոցները որպես համընդհանուր ճանաչում ստացած դասագիրք: Այս պատճառով պահպանվել են դրա բավական մեծ քանակությամբ օրինակներ: Մեզ մատչելի և վերը նկարագրված ձեռագրերում ներկայացված գրչագրերը հետևյալներն են.

Ձեռ. *Է.գ.* 306, թթ. 22-210:
Ձեռ. *Բ.դ.* 990, թթ. *ա-յիբ*:
Ձեռ. 2359, թթ. 29-158:
Ձեռ. *Ա.ե.* 1736:
Ձեռ. *Բ.գ.* 957:

Առաջին՝ հեղինակին ժամանակակից օրինակը գրվել է նրա աշակերտ Թորոսի ձեռքով և ամեն ինչով գերազանցում է մնացածներին: Այն մեզ թվացել էր այնչափ վստահելի, որպեսզի զանց առնենք դրա ստուգումը՝ այլ գրչագրերի հետ համեմատելով: Ամբողջապես ապավինելով Թորոսի ձեռագրին, մենք միայն դիպվածաբար էինք դիմում մյուս գրչագրերին առանձին տեղեկությունների համար: Հաճախակի դիմում էինք *Ա.է.* 1736 գրչագրին, իսկ երբեմն՝ *Բ.դ.* 990-ին, գլխավորապես հեղինակի՝ աղբյուրներին վերաբերող լուսանցանիշները ստուգելու համար:

Աշխատանքի ընթացքում, սակայն, մեր մեջ կասկածներ ծագեցին ձեռագրի ենթադրյալ թվականի, և, գուցե, նույնիսկ դրա՝ Թորոսին, Հովհաննեսի աշակերտին, պատկանելության առթիվ: Մխիթարյան մատենադարանների ցուցակներում ձեռագիրը թվագրվում է 1293 թվականով, ամենայն հավանությամբ, վերը բերված գլխավոր հիշատակարանի հիման վրա: Սակայն դա ճիշտ չէ. հիշատակարանը պատկանում է հեղինակին, և դրանում ցուցված 1293 թվականով նշվում է գիրքը կազմելու, կամ, ավելի ճիշտ, դրա լույս ընծայման, և ոչ թե ձեռագրի ընդօրինակման ժամանակը: Հեղինակի հիշատակարանը երկասիրության անկապտելի մասն է, և որպես այդպիսին այն ընդօրինակվում է գրիչների կողմից: Այսպես, այն ամբողջությամբ առկա է *Բ.դ.* 990 գրչագրում, և ոչ լրիվ՝ թիվ 2359 ձեռագրում, ինչից, անշուշտ, չի բխում, թե այս գրչագրերը նույնպես վերաբերում են 1293 թվականին:

Թվականը որոշելիս մխիթարյան հայրերը, ելնում էին, հավանաբար, և մեկ հիշատակագրությունից, ուր հեղինակի անունից հետո՝ *զսակաւ աշխատաւորս ի սմա զՅոհաննէս վրդ*, նշված է նաև Թորոս գրչի անունը՝ *եւ զգրող սորին Թորոս Կլայ[եցի] եւ զաշակերտ վարդապետիս Յոհաննիսի*[1]: Բայց,

[1] Տե՛ս վերը, էջ XXXIV:

ճիշտն ասած, այս նշումը նույնպես վճռական չէ. քանի որ այն նույնպես կրկնվում է այլ ձեռագրերում, ուստի հարցն այն մասին, թե արդյո՞ք այս օրինակը Թորոսի ինքնագիրն է, թե՞ դրա հասարակ պատճենը՝ իր հիշատակարանի վերարտադրությամբ հանդերձ, մնում է բաց:

Կա հեղինակային երրորդ հիշատակագրությունից ևս՝ իր գործերը հիշելու խնդրանքով՝ *զսակաւ աշխատանս մեր*. գրիչն ավելացրել էր դրան նաև իր կողմից՝ *զգրող տողին յիշեա*: Չնայած ընդօրինակողներին ուղղված նրա աղաչանքին՝ *գրեցէք զչորս տողս բանի*, օրինակներում դրանք միշտ չէ, որ պահպանվում են. այսպես, Ա.է. 1736 մատյանում գրչի խոսքերը փոխարինված են *զՄիքայէլ յիշեա* գրությամբ: Եթե 1293 թվականը ոչ միայն աշխատության ավարտման, այլև մեր գրչագրի ընդօրինակման տարեթիվն է, ապա վերջինս պետք է ընդունել իբրև բնօրինակ կամ դրան համազոր օրինակ, քանի որ այն գալիս է հեղինակի աշակերտից: Թերևս ձեռագիրը պատկանում է իրեն իսկ՝ Թորոսին, սակայն գրվել էր ոչ թե 1293 թվին, այլ մի փոքր ուշ, ընդորում հեղինակի հիշատակարանին նա ավելացրել է նաև իր սեփականը:

Հաշվի առնելով այն, որ Թորոսի գրությունից բացի չկա և ոչ մի այլ նշում, ընդսմին ձեռագիրն ընտիր է և գրիչը, լինելով այդքան փորձառու և հմուտ, չէր թողնի այն առանց ընդունված հիշատակարանի, պետք է համաձայնել, որ այն Թորոսի գրչի արդյունքն է[1]:

Ինչ վերաբերում է տարեթվին, ապա լինի դա բուն աշխատության լույսընծայման տարին, թե ավելի ուշ, երբ, թերևս, հեղինակը տակավին ապրում էր, ապա այն չի նսեմացնում ձեռագրի, որպես հեղինակային բնօրինակին համազոր օրինակի արժեքը: Ձեռագրատներում մեր ուսումնասիրությունների ժամանակ դեռևս չունեինք այն կասկածները, որ հետագայում առաջացան: Միանգամայն վստահելով ձեռագրին որպես Թորոսի գրչագրի, որ կազմվել էր 1293 թվականին, մենք չէինք տեսնում որևէ անհրաժեշտություն ձեռագիրը՝ այլ օրինակների հետ համեմատելու, առավել ևս այն պատճառով, որ աչքի անցկացնելուց և առանձին տեղեկություններ քաղելուց հետո մենք համոզվեցինք մեր գրչագրի՝ մյուսներից անհամեմատ լավը լինելու մեջ: Թորոսի գրչագիրը նախազգուշացման է ծառայել բազմաթիվ ընդօրինակությունների, ինչպես կարելի է դատել որոշ զուտ արտաքին նշաններից. օրինակ, որոշ ձեռագրերում դատարկ են թողնվում հենց այն էջերը, որոնք Թորոսի գրչագրում նույնպես բաց են մնացել:

[1] Շատ հավանական է, որ Թորոսն այն անձնավորությունն է, որ ապրում էր Հեթում թագավորի եղբոր՝ Հովհաննես եպիսկոպոսի օրոք (1279-1293) և նրա համար է ընդօրինակել էջմիածնի մատենադարանի հայտնի մատյանը, որն, ի դեպ, պարունակում է Իրենեոսի աշխատությունը (89), տե՛ս *«Քարտեզ հայ հնագրության»*, էջ 204, № 93, 94:



V. **Հովհաննես Երզնկացին ունի ևս մի քերականական աշխատություն (90)՝ ավելի համառոտ խմբագրությամբ**, իր մատենագրական և պատմական արժեքով շատ ավելի նվազ, քան ընդարձակ քերականությունը: Այն ներկայացված է վերը նկարագրված մատյաններում հետևյալ գրչագրերում.

Ձեռ. *Ը.ր.* 174:
Ձեռ. *Թ.գ.* 1317:
Ձեռ. *Ե.ա.* 289:
Ձեռ. 2359:

Այս երկի մատենագրական շահեկանությունը կայանում է դրա՝ Եսայի Նչեցու նմանատիպ գործի և նույն հեղինակի ընդարձակ քերականության հետ ունեցած առնչությունը պարզելու մեջ: Մեր աշխատության մեջ այս խնդիրը չի արծարծվում՝ Հովհաննեսի համառոտ քերականությունը մենք օգտագործել ենք որպես օժանդակ միջոց ինչ-ինչ տեղեկություններ քաղելու համար:

VI. **Եսայի Նչեցու** ***Քերականությունը*** շատ բաներում նման է Հովհաննես [Երզնկացու] նախորդ երկասիրությանը: Եսային, Գլաձորի վանքի առաջնորդը, ականավոր մանկավարժը, հիմնել էր Գլաձորում մի դպրոց (91), որից դուրս են եկել հարյուրավոր վարդապետներ: Նա Հովհաննեսի երեց ժամանակակիցն է. վերջինս եղել է նրա վանքում և նույնիսկ ունկնդրել է նրա դասախոսությունները: Դրանով են, հավանաբար, բացատրվում երկու աշխատությունների միջև եղած ընդհանրությունները: Եսայիի քերականության գրչագրերը հետևյալն են.

Ձեռ. 336:
Ձեռ. *Ա.գ.* 994:
Ձեռ. *Ե.ա.* 671:
Ձեռ. *Դ.գ.* 46:

Առաջին՝ 1360 թվականի օրինակը, որը պահվում է Վիեննայի Մխիթարյանների մոտ, հեղինակին գրեթե ժամանակակից է: Մենք օգտվել ենք դրանից և՛ Մխիթարյանների մատենադարանում, և՛, հետագայում, այդ ձեռագրի պատճենից, որը հատուկ մեզ տրամադրել են Մխիթարյան հայրերը, ինչի համար և հայտնում ենք նրանց մեր երախտագիտությունը: Եսայիի աշխատությունից մեր քաղած տվյալներն, ինչպես արդեն ասացինք, ծանոթագրություններում նշվում են իր անվան սկզբնատառով՝ Յ:

Երկրորդ, վենետիկյան ձեռագիրը՝ Ա.գ. 994, գրեթե հասակակից է Վիեննայի գրչագրին: Դեռևս պարզ չէ, արդյոք այն կարելի է համարել հեղինա-

5-9

կային սևագրություն, բայց շատ հավանական է, որ այն կրում է Եսայիի ձեռքի հետքերը:

Մենք օգտվել ենք երկու գրչագրերից էլ, սակայն՝ տարաժամանակ, ինչը բացառում էր դրանց բաղդատության հնարավորությունը: Թեպետ նման բաղդատությունը մեր ներկա աշխատանքի խնդիրներից դուրս էր: Ընդհանուր դիտարկումները խոսում են գրչագրերի լիովին նույնը լինելու օգտին, նույնանում են նաև դրանց նախորդող Դիոնիսիոսի բնագրերը: Եվ դա հասկանալի է գրչագրերը հեղինակից առանձնացնող ժամանակամիջոցի կարճությունից: Թեև մենք տարընթերցումները նշում ենք մերթ առաջին գրչագրով, մերթ՝ երկրորդով, երբեմն էլ՝ ըստ երկուսի, ընդհանուր առմամբ մեկի ցուցումները հարիր են և երկրորդին, ուստի պետք է ընդունել, որ J և N օրինակները համազոր են և փոխարինում են միմյանց:

VII. **Վարդանի** *քերականությունը* նկարագրված ձեռագրերում ներկայացված է երկու գրչագրով.

**Ձեռ.** 2372, բնագիր 2:
**Ձեռ.** Բ.գ. 1273, բնագիր 2:

Սա Դիոնիսիոսի բնագրի մեկնությունն է: Այն գրվել է Հայոց Հեթում I (1226-1269) թագավորի խնդրանքով՝ նրա սեփական կարիքների համար: Այս հանգամանքը հիշատակվում է աշխատության բուն խորագրում, ինչպես և նույն հեղինակի՝ թագավորին ուղղված խրատներից մեկում. *Եւ ապա երեսօք յԱնդրյն հրամայեցիք, որ գրէաք ձեզ ժղլանք (92) ի* ***մեկնութենէն քերականին***[1]:

Համանման աշխատություններից Վարդանի մեկնությունը տարբերվում է իր մատչելիությամբ: Ակներև է, որ հեղինակը հարմարվել է դեռևս երիտասարդ՝ *աղայահասակ*[2], իր կրթությունը լրացնելու կարիք ունեցող թագավորի պահանջմունքին և պատրաստվածությանը: Դյուրամատչելիության [ձգտումը] երևում է և՛ շարադրանքից, և՛ բովանդակությունից, որը զերծ է [ավելորդ] գիտականությունից: Մեր նպատակների համար Վարդանի մեկնությունը օգտակար չէր կարող լինել. դրանից մենք օգտվել ենք առավելապես այն մասերում, որոնք փոխառված են Դիոնիսիոսից: Բաղդատություններում Վարդանը նշված է V տառով, տարընթերցումների դեպքում առաջին գրչագիրը՝ $V_1$, իսկ երկրորդը՝ $V_2$:

Վարդանի մեկնությունում հանդիպում են հետաքրքրական տեղեկություններ: Շատ բարձր արժեք ունի նրա մի դիտողությունը «Խոնարհման մասին» գլխի վերջին պարբերության վերաբերյալ, որն ավելորդ չենք համարում մեջբերել. *զեչն եւ զայրն դասէ ի միում հէգի եւ զԿորճէիցն յայտնէ մեզ զթանձր եւ զթառթարիկոն*[1] *բառն, զի նոցայցն է այս բառս գեամ, զոր մեք գամ ասենք, զի զայս Բարգուշատեցին ասէ եւ Գորոզացին: Եւ զյղարկեմ-ն եւ զյղեմ-ն յղոմ եւ զլոյսն լոյս ասեն ոմանք եւ զգայլն՝ գոյլ եւ զգառն՝ գոռն: Բայց ասեն թէ կայ առ մեզ եւս գեղեցկաբանութիւն, զոր այլք չունին յազգաց՝ սոցա, դոցա, նոցա*[2]*. որք առ իս կան սոցա ասեմ, եւ զոր առ քեզ՝ դոցա, եւ որ յիսնէ եւ ի քենէ հեռի են, նոցա ասեմ: Բայց յետոյ գտաւ այս արուեստաւոր բառս.*

Մտադիր չլինելով ըստ էության քննարկելու Վարդանի խոսքերը, նկատենք ի միջի այլոց, որ դրանք տեղ չեն թողնում կասկածելու, որ հայերենի որոշ գավառաբարբառների համար այդքան բնորոշ առանձնահատկությունը, այն է՝ ետնալեզվայինների փափկացում կամ «յոտացիա» (= *կյա, գյա՝ կ[ա], գ[ա]*-ի փոխարեն), գնում է դարերի խորքը, ընդհուպ մինչև Վարդանի ժամանակները և ամենևին էլ վերջին դարերի արդյունք չէ, որ ինչպես ընդունված է համարել, ձևավորվել է թյուրք-թաթարական բարբառների ազդեցությամբ:

VIII. **Եւթնագրեանք** (բառացի «յոթնատառ» կամ «յոթ տառի մասին») գրվածքը ձեռագրերում հաճախ է հանդիպում: Մեզ հասանելի են եղել հետևյալ գրչագրերը.

**Ձեռ.** Դ.դ 968:
**Ձեռ.** Ա.է. 1736:
**Ձեռ.** Ե.գ. 1232:
**Տաթևի վանքի ձեռագիրը:**

Այս աշխատությունը ոչ այնքան քերականական, որքան կաբալական բնույթի է: «Յոթ տառ»-ը հասկացվում է որպես յոթ ձայնավոր, որոնք անվանվում են մնացած տառերի բանալիներ: Ըստ հեղինակի, ձայնավորները ծառայում են ոչ միայն բառերի կազմության, այլև գաղտնիքները բացահայտելու և լուծելու համար: Ընդորում ներկայացվում են տառերի աղյուսակներ և զուգակցություններ, որտեղ հաշվի է առնվում նաև դրանց թվային արժեքը: Օրինակ՝ *աժճռ* (=1.10.100.1000), հեղինակողի դատողությամբ նշանակում է միևնույն գործի մասնակիցներ, *բիմս* (=2.20.200.2000)՝ համախոհներ և այլն:

Գրվածքը վերագրվում է մերթ Դավիթ Հռոմեացուն, Փյունիկ մականու-

---

[1] **Ղ. Ալիշան**, Հայապատում, էջ 470: *Ժղլանք* բառն անծանոթ է, հավանաբար, կիլիկյան բարբառից է:
[2] Անդ:

[1] Հմմտ. **Դավիթ**, Մեկնութիւն, էջ $93_{13-14}$:
[2] Հմմտ. **Անանուն**, Մեկնութիւն, էջ $149_{7-8}$:

նով, մերթ նմանապես հռոմեացի Մովսեսին, կամ դրանց երկուսին միասին, հռչակավոր մաթեմատիկոս Անանիայի համահեղինակությամբ: Անշուշտ, չի էլ կարելի մտածել, որ այսքան պատկառելի մատենագիրներ հաղորդ են եղել նման բարբաջանքի: Բայց դրա հորինողին պետք են եղել մեծահռչակ անուններ, որպեսզի այս անհեթեթությունը հավաստի երևար դյուրահավատ մարդկանց աչքերին: Բնականաբար, նա կանգ է առել քերականական և մաթեմատիկական գրականության մեջ ճանաչում ստացած հեղինակությունների՝ Դավիթ, Մովսես, Անանիա և նույնիսկ Հոմերոսի վրա: Սկզբից, ըստ երևույթին, խոսքը վերաբերում էր միայն Դավթին՝ Փյունիկ մականունով: Այս մականունը, որ նշանակում է «փյունիկեցի», պետք է ամրագրեր Դավթի համբավը իբրև մաթեմատիկոսի. խարդախողին ակներևաբար հայտնի էր ձեռքի տակ եղած գրականությունից՝ «*եթէ զթուականն փիւնիկեցիք գտին*»[1]:

Դժվար է ասել, թե ինչ միջավայրում է առաջացել այս «Յաւթնագրեանք»-ը և անմիջապես ինչ նպատակների էր այն ծառայում: Այն ունի պատկառելի հնություն և վայելում էր անտեղի լայն ճանաչում՝ դատելով այն հանգամանքից, որ այն հայտնի էր դեռևս XIII դ. և հետաքրքրության առարկա էր նույնիսկ Կիլիկիայի արքունիքում, ինչը երևում է հետևյալ ձեռագիր հուշարձանից:

IX. Վենետիկյան մատենադարանի վերը նկարագրված ձեռագիրը՝ *Ե.գ.* 1332 կազմված է երկու մասից. առաջինը վերաբերում է քերականությանը, երկրորդը՝ «Եւթնագրեանք»-ն է: Առաջին մասում խոսվում է քերականության ծագման մասին, ընդորում բերվում են բացատրություններ, որոնք, ընդհանուր առմամբ, նմանվում են Մագիստրոսի, կամ նրա աղբյուր՝ Ստեփանոսի [դատողություններին]: Դրանց հետ ծանոթ լինելու հետքեր դիտվում են Հովհաննես Երզնկացու երկում՝ Մագիստրոսից անկախ:

Քերականության այս հպանցիկ տեսությունը յուրօրինակ նախաբան է յոթ տառի մասին կշռադատության համար: Գլխավոր հիշատակարանում ասվում է (93).

*Աստ կատարեցաւ ցանկալի արհեստս երկու, նախ գրականութիւն համառաւտ եւ ապայ քերթողական արուեստս որ վասն տառից եաւթանցն, զոր ի մերոց սրբոց վարդապետացն, ի սրբոյն Դաւթայ եւ ի Մովսիսէ եւ յԱնանիայէ Շիրակացւոյ համարողէ էին բազում գիրս տաղեալ արուեստս այս , զոր ի բազմացն գրեցի եւ լուծի ըստ արուեստին եւ ոչ մտաց սուտ ինչ կամ յաւտար գրոց աստ գծեցի, այլ զարժան մերոց հարց հաւատացեալ եւ ի ջանասէր յաշակերտացն ոչ բազուցի, եւ զմեզ եւ զհարկողսն զայս մատենիս*

[1] Դաւիթ, Սահմանք իմաստասիրութեան, էջ 199:



*ձեր աղաւթիցդ յանձն արարի զտէր Բարսէղ եւ զհարազատ նորին զարքայ Հայոց զՀեթում եւ զԼեւոն որդի նորին աշակերտ այս մատենիս, յիշեսջիք առ Քրիստոս պահել պսակ սուրբ եւ թագ ամենայն հայոց աւծմամբ տեառն եւ Աստուծոյ Յիսուսի:*

Հիշատակարանը հետաքրքրական է, սակայն, ցավոք, ոչ այնքան պարզ: Նախ, անորոշ է, արդյոք այն գրչին է պատկանում, թե հեղինակին, և արդյոք հիշատակած անձինք բոլորն են գրքի կազմման նախաձեռնողները, թե նրանցից առաջինը՝ Բարսեղն է հենց այն անձնավորությունը, որ գիրքը գրել էր թագավորի և արքայազնի պահանջով: Տարբեր ձևով կարելի է հասկանալ նաև հիշատակարանի բուն բովանդակությունը. արդյոք հեղինակը հայտնում է, որ նա առաջինն է, որ կազմել է այս «Եւթնագրեանք»-ը՝ թվարկած հեղինակների մոտ գտած ինչ-ինչ նյութերի հիման վրա, թե խոսքը ինչ-որ բանաքաղության մասին է, որ կատարվել էր մինչև իր օրերը գոյություն ունեցող բազմաթիվ մատյաններից: Ելնելով հիշատակարանի ընդհանուր բնույթից, մենք հակված ենք կարծելու, որ հենց Բարսեղ եպիսկոպոսը պետք է համարվի հեղինակ ինչպես քերականական ակնարկի, այնպես էլ «Եւթնագրեանք»-ի, որ նա գրել էր Հեթում թագավորի և թագաժառանգ Լևոնի խնդրանքով: Թերևս դա նման էր գրական այն «Ժղլանք»-ներին, որոնք նույն թագավորը պատվիրել էր Վարդանին:

Բարսեղ եպիսկոպոսը վախճանվել է 1275 թ.[1], իսկ Հեթումը գահ է բարձրացել 1226 թ. (94), և հրաժարվել դրանից իր որդու Լևոնի օգտին 1269 թ.: Այս հանգամանքներով և սահմանվում է մեր հուշարձանի առաջացման ժամանակը՝ XIII դ. կեսը:

X. Նկարագրված ձեռագրերում Մովսեսի անունն է կրում, բացի մեր քննած MS աշխատությունից, Դիոնիսիոսի առաջին երեք գլուխներին նվիրված ևս մի սեղմ մեկնություն: Այն սովորաբար հանդիպում է որպես վերը հիշատակված MS երկի հավելված, ինչպես դա երևում է մեր գրչագրերից.

Ձեռ. 2297, բնագիր 3:
Ձեռ. 2372, » 22:
Ձեռ. *Բ.գ.* 442 » 4:
Ձեռ. *Ը.բ.* 632 » 7:

Սա ավելի շուտ քաղվածք է, որ արվել էր առավել հանգամանալից աշխատությունից, թերևս, Ստեփանոսի, համենայնդեպս, ոչ Մովսեսի մեկնությունից, թեև տեղ-տեղ լսվում է Մովսեսի խոսքերի ազդեցությունը: Մեզ հաջողվեց բացահայտել այն երկասիրությունը, որից քաղված է եղել սույն

[1] Հ. Տաշյան, Ցուցակ, էջ 906:

հատվածը. նշված գրչագրերից վերջինը՝ *Ը.գ.* 632 (95), դրա ամբողջական խմբագրությունն է: Դրանց առնչությունների մասին մենք խոսելու ենք դրանք հրատարակելու ժամանակ: Այժմ նշենք միայն, որ հատվածի վերջում կա մի փոքրիկ քերականական բնույթի մեջբերում՝ *Մամբրէի Վերծանողի* վերտառությամբ, որն առկա է նաև ամբողջական խմբագրության մեջ: Այս հանգամանքը չի կարող փաստարկ ծառայել ամբողջ մեկնությունը իրեն՝ Մամբրեին վերագրելու օգտին: Բովանդակության վերլուծությունը ցույց է տալիս, որ սա «հավաքումն» է՝ Դավթի, Անանունի և Ստեփանոսի երկերից, վերջինիս գերակշռությամբ: Թերևս այս երկի հեղինակը նույնպես կրում էր «Մովսես» անունը, սակայն նա չունի և ոչ մի ընդհանրություն MS աշխատությունում Ստեփանոսի կողմից մեջբերվող Մովսեսի հետ:

XI. **Մովսես Խորենացու «Բան իմաստության»**՝ ձեռագրերում շատ հաճախ հանդիպող փոքրածավալ գրվածք. ավելորդ չենք համարում մեջբերել այն ամբողջությամբ ըստ ներքոհիշյալ գրչագրերից առաջինի.

Ձեռ. 2359, բնագիր 2:
Ձեռ. 2372, » 4:
Ձեռ. *Ը.բ.* 632:
Ձեռ. *Թ.գ.* 39:
Ձեռ. *Է.ա.* 671:

## ՄՈՎՍԵՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՑ ԲԱՆ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆ

*Յաստուծոյ խորհրդով եւ իմաստութեամբ հաստատեցաւ մարդկայինս տեսակ, իսկ անհմտութեամբ եւ ախտիւ պարտեցաւ ի չարէն եւ յինքենէ. յետոյ միջոց եղեւ երկոցունց ոչ ըստ բնութեան, այլ ըստ պատահման, զի ըստ երկոցունց կարողութիւն է կեալ իմաստութեամբ ըստ առաջնոյն, իսկ շամբշութեամբ ըստ որ յետնոյն: Նոյնպէս քերականութիւնս այս միասահման կալով ոչ կատարեալ իմաստութիւն, այլ տրամախոհս որոշողութեամբ ենթակայ ունելով զմասունս բանի զատել զբանաւոր ի բառաւորաց. վասն այնր ասի հմտութիւն, իսկ կատարեալ իմաստութիւն յաստուած տեսանի, որով* ***հիմունս էարկ երկրի*** *եւ որ բնակեցաւ ի խորագիտութեան (այլ ըստ հայցման եւ ըստ արժանոյ ի տեառնէ ծրի: Արդ քէպէտ եւ ոչ է կատարեալ), այլ ըստ մարմնոյ քաղաքաւարութեան զընտրելին յայտնէ, որպէս ընդ առապար պողոտա. իսկ անմտաց պատերազմաւղ թուի լսելեաց, որք անտեղակ մնալով խրոխտեն եպերելով, զլացեալ զսա իբր դժուարաբանութիւն: Այլ սա է լոյս մտաց եւ որպէս մեծաշուք զարդ ի թագաւորս, այնպէս է սա յիմաստասէրս. որպէս նաւագնացութիւն է ծովային բանից եւ բնակէ ոչ ի հակամիտս, այլ* <*ի*> *հոգիս մտառուաց եւ լոյս տա շաւղաց ըստ պատուիրանին տեառն:*

*Իսկ մեք զքերականութիւն պատուեմք հանդերձ իւրովին մասամբ. զի սովաւ* ***զանցեալն տեսանեմք եւ ի ներկայումս զուարճանամք եւ զապառնիսն իմանամք հոգւոյն ակամբ:*** *Եւ քերականութիւն այսինքն գրականութիւն: Դարձեալ եւ զտառ, որ է ճշմարիտ տարր, այսինքն գիր, զի սովաւ գոյացեալ ունակացաւ քերականութիւն: Դարձեալ անուն եւ այլ մասունք բանի այսպէս են – յորժամ զաստուած ասեմք կամ Ադամ՝ այն անուն է: Իսկ ասելովն՝ արար աստուած զմարդն, արար-ն բայ է: Եւ աւրհնեաց զնոսա աստուած* <*ի դրախտին*>*. աւրհնութիւն ընդունելութիւն է, իսկ ի դրախտին՝ յաւդ: Եւ ո պատմեաց քեզ. քեզ-ն դերանուն է: Նախդիրն՝ որպէս մարդն Ադամ, մարդկային ազանց սկիզբն: Իսկ մակբայ յառաջ ի դրախտին, յետոյ յանիծից երկրի, դարձեալ յերկիրս: Իսկ շաղկապ, որպէս մարմին բանին աստուծոյ ընդ աստուած եւ ընդ մարդ:*

*Վասն այնորիկ պատուեմք եւ մեք զարուեստս զայս, զի* ***սովաւ անուրջքն յայտնին,*** *որպէս տարակուսութիւն մեկնութեանց հանգէտ համաքանութեամբ յայտ է եւ ոչ վայրաքար կամ ըստ ախորժականաց մարդկայնոց ըստ ամենայնի եւ յամենայնի փառս տեառն աստուծոյ յաւիտեանս. ամէն:*

Խորենացին, ի հարկե, չի կարող նման աշխատության հեղինակը լինել նույնիսկ ենթադրաբար: Այն պատկանում է անհայտ հեղինակի գրչին՝ հեղինակի, որը ծանոթ էր մեր կողմից վերը քննարկված՝ Մովսեսի անունը կրող՝ Դիոնիսիոսի առաջին գլուխներին նվիրված մեկնությանը: Դրա առաջին արտահայտությունը՝ ***Գրականութիւն*** *ստուգաբանի* ***քերականութիւն*** *եւ հմուտն վեց մասամբ կարէ վարել զարուեստն. իսկ ամենակատար իմաստութիւն աստուած է, որ իմաստիւ* (տրբ. *իմաստութեամբ*) *հիմն* ***էարկ երկրի***, օգտագործվել է *Բան իմաստութեան* հեղինակի կողմից, որտեղ կարդում ենք. *կատարեալ իմաստութիւն աստուած տեսանի, որով հիմունս էարկ երկրի*, և, մի փոքր անց. *եւ քերականութիւն այսինքն գրականութիւն*:

«Բան»-ի անհայտ հորինողը հզոր քերական չէ, ինչը և երևում է խոսքի մասերի իր սահմանումներից: Բացի այդ, նրա ընկալմամբ, «*զքերականութիւն պատուեմք հանդերձ իւրովին մասամբ. զի սովաւ զանցեալն տեսանեմք եւ ի ներկայումս զուարճանամք եւ զապառնիսն իմանամք հոգւոյն ակամբ*»: Նա կարծում է նաև, որ քերականությունը պատվավոր արվեստ է, «*զի սովաւ անուրջքն յայտնին*»: Այս ըմբռնումները հարազատացնում են «Բան»-ը և դրա հեղինակին այն աշխարհի հետ, ուր հնարավոր էր «Եւթնագրեանք»-ի նման գրվածքների ի հայտ գալը:

*Ե.ա.* 671 «Բանի» գրչագիրն ունի հիշատակարան. *Գրեցաւ ՉՂԹ (=1350 թ.) ի յունվարի ժէ*: Մխիթարյան հայրերն այս պատճառով ամբողջ ձեռագիրը թվագրում են 1350 թ., մինչդեռ այն գրվել է, ինչպես երևում է Հովհաննես գրչի սույն հիշատակարանից, *պկդ* (=1415) թվականին: Նշված 1350 տարեթիվը չի կարող համարվել նաև «Բան»-ի շարադրման թվականը. ավելի շուտ դա մեր ձեռագրին նախագաղափար ծառայած մատյանի տարեթիվն է:

XII. Դավթի և մասամբ Մովսեսի կյանքին և գրական գործունեությանը վերաբերող նյութերը տրվում են հետևյալ ձեռագրերում՝

Ձեռ. 2372, բնագիր 27:
Ձեռ. 47, բնագիր 1,2,3:
Ձեռ. *Ա.դ.* 875, բնագիր 22:
Ձեռ. *Է.գ.* 1244, բնագիր 1:

Կշռադատությունը քերականության սկզբի և ծագման մասին նույնանում է Է.գ. 1244 ձեռագրում եղածի հետ, որը հրապարակել են Մխիթարյանները Դավթի աշխատությունների հատորում՝ այն տարբերությամբ, որ այստեղ ինչ-ինչ մասեր զեղչված են: Խղճուկ այս պատառիկները չեն կարող վերագրվել Դավթին. թվում է, որ դրա համար առիթ չի տալիս նաև գայթակղիչ վերնագիրը, եթե միայն ճիշտ ըմբռնենք այն: Դավիթը չէ, որ ճառում է քերականության ծագման և սկզբնավորության մասին, այլ մեկ ուրիշը՝ Դավթի քերականության «սկիզբն ու պատճառի»: Քերականության մասին դրվագների վերնագրերը հարկավոր է համադրել նախորդ՝ *Սահմանաց* գրքին վերաբերող դրվագների նմանատիպ և ավելի անաղարտ խորագրերի հետ. *Սկիզբն և պատճառ Սահմանացն գրոցն Դաւթի վարդապետի, զուգեալ ի տեսութիւն դիւրաւոր գիտ*: Այս, ինչպես և քերականության վերաբերյալ դրվագի խորագիրը ոչ միայն հիմք չեն տալիս դրանք Դավթին վերագրելու, այլ ընդհակառակն, ապացուցում են, որ ուրիշ մեկն է գրում նրա մասին նրա գրքի առթիվ (96):

Ինչ վերաբերում է Դավթի և նրա ընկերների կյանքի մասին հատվածներին, ապա դրանք երևան չեն հանում որևէ նոր աղբյուր. նրա մեջ հայտնած տեղեկությունները ամբողջությամբ բղխում են արդեն հրատարակված հայտնի բնագրերից՝ ***Բան յաղագս խաչվերացի*** առնչությամբ Գյուտ կաթողիկոսի և Դավթի թղթակցությունից, ինչպես նաև Դավթի և Մովսեսի ***Հարցմունքից***: Ուստի հարկ չկա կանգ առնել այս հատվածների վրա, իսկ վերոհիշյալ ձեռագիր հուշարձաններին կանդրադառնանք ստորև:



**XIII. Արիստակեսի, Գևորգի և Գրիգոր Տաթևացու բառգրքերը և ուղղագրության կանոնները.**

Ձեռ. 2297, բնագրեր 4,5,6:
Ձեռ. 2373, « « 6, 7, 24, 25:
Ձեռ. Թ.գ. 39:

Բառարանագրային նյութերից հատկապես ուշադրության են արժանի այն [տեղեկությունները], որոնք կապ ունեն ուղղագրության հետ: Ուղղագրության խնդիրը վաղուց ի վեր գայթաքար է եղել հայ գրագետների համար: Եվ դա միանգամայն հասկանալի է, եթե նկատի առնենք այն անդունդը, որ բացվել էր կենդանի խոսակցական և կենդանի գրական լեզուների միջև, և որը ժամանակին համընթաց ավելի և ավելի էր խորանում: «Անհասանելի գրիչ» Արիստակեսի արժանիքը հենց այն է, որ նա առաջինը ձեռնարկեց ուղղագրության ամենավիճահարույց խնդիրների վերաբերյալ որոշակի նորմերի մշակմանը: Ծագումով Մեծ Հայքից, նա ծանոթ էր նաև կիլիկյան գրական միջավայրին, վայելում էր Ներսես Լամբրոնացու բարեկամությունը: Իր նախաձեռնության համար նա պարտական էր Գրիգոր Լամբրոնացուն, Սկևռայի վանքի վանահորը: «Գրիգորից ստացած սերմերը Արիստակեսը բազմապատկեց պարարտ հողի նման» - ասում է նրա աշակերտ Գևորգը, - «և դրանց[ից ստացած] պտուղները ծավալեց լայն և հանգամանալից խրատներում»: Արիստակեսի կանոնները լրացրել է նրա հետևորդներից մեկը՝ Գևորգ Սկևռացին, որը և հայտնում է մեջբերած տեղեկությունները.

Ձեռ. 2297, թ. 260. *ոչ միայն ի նախագրելոցն առաջնոց հռետորացոյն գրչացն շարագրութեանց, այլ եւ ի վերջնոցն քան զնոսա նոցին հետևողացն ի սոյնս. այսինքն յանհաս գրչէն Գրիգորէ Ղամբրոնեցւոյ եւ եւս առաւել յԱռիստակիսէ երբեմն նորին ծանաւթ եղելոյ ի Հայոց Մեծաց, որ պատճառս խրատու յաղագս այսոցիկ առեալ ի նախասացեալ գրչէն Գրիգորէ եւ ըստ արինակի պարարտ երկրի բազմապատկեալ, աճեցոյց զարդիւնս սերմանցն լայն եւ ընդարձակ խրատուց պատմաբանութեամբ ի շահ աւգտի հետեւողացն յարուեստ գրչութեան... որոց խրատուցն սուղ ինչ հանդիպեալ յոքնաբշուառ տառապեալս Գէորգ, թէպէտ զընաւն անգիտանամ, սակայն փոքր ի շատէ, զոր վասն խնդրոյ եղբաւր մերոյ Կոստանդեայ հարկեցայ գրել, անտարակոյս ունի ճշմարտութիւն*:

Գևորգը, Գրիգորի զարմիկն ու աշակերտը[1], իր կանոնները գրել է [ոմն] Կոստանդնի և Ստեփանոս քահանայի պահանջով՝ Ստեփանոս, որի մականունը Գույներ Երիցանց էր (ավելի հաճախ հապավված՝ *Գոյներիցանց* ձևով): Գևորգը, Ստեփանոսը և նրանց աշակերտները կոչվում են «անհասանելի գրիչներ», քանի որ գրում էին գեղեցիկ և գրագետ, և թողել են բազմաթիվ մատյաններ, որոնք այժմ մեր մատենադարանների զարդն են հանդիսանում:

Արիստակեսի և Գևորգի կանոնների վերաբերյալ, որոնց քննությունը այժմ մեր նպատակից դուրս է, բավարարվենք մեկ ընդհանուր դիտարկումով: Մեր դիտումները ցույց են տալիս, որ ուղղագրությունն իբրև որոշակի գիտություն, անցել է զարգացման բոլոր այն փուլերը, ինչ և հայ դպրությունն առհասարակ: Ընդհանուր առմամբ պետք է տարբերել նախաբազրատունյաց, բագրատունյաց և հետբագրատունյաց փուլերը: Բառավերջի ձայնավորների խնդրում պարզվում է, որ առաջին փուլում, որպես ընդհանուր կանոն, վերջնաձայն *ա, ո, ե* փակվում էին *-յ* ձայնորդով: Դիոնիսիոսի թարգմանիչը հստակորեն բացատրում է, որ հայերենում վերջատառ կարող են լինել բոլոր տառերը, բացի *ա, ե, ո* և *ը*-ից:

Բագրատունյաց դարաշրջանում, կենդանի խոսքի ճնշման ներքո, որ ավելի և ավելի մուտք էր գործում գրականության մեջ, այս նորմը կորցնում է պարտադիր բնույթը և պահպանվում է միայն հմուտ գրիչների մոտ. մեզ հասած հնագույն ձեռագրերում, որ ծագում են Բագրատունյաց դարաշրջանից, նկատվում է բառավերջի *-յ*-ն բաց թողնելու միտումը:

Կիլիկյան դարաշրջանում, երբ խոսակցական լեզուն համարձակորեն իր ճանապարհն էր հարթում դեպի գրականություն, թվում է՝ պետք է հաղթեին ուղղագրության այն կանոնները, որոնք համապատասխան են հնչունական համակարգին: Սակայն ինչպես նոր լեզվին չհաջողվեց հասնել գրական լեզվի բարձունքին, այդպես և նոր կանոնները հարկադրված էին տեղի տալ հին կարգին: Սկևռայի դպրոցից սերող մի շարք հռչակավոր գրիչներ, ուսումնասիրելով վաղեմի ձեռագիր ժառանգության լավագույն օրինակները, վերադառնում են դեպի հնությունը և վերականգնում գրության՝ դարն ապրած կանոնները: Այսպես, Արիստակեսին է պատկանում այն կանոնի ձևակերպումը, ըստ որի բացառությամբ դերանունների և հրամայական եղանակի եզակի թվի (97) բոլոր այլ դեպքերում բառավերջի *-ա*-ն փակվում է [արդեն] համր *-յ* ձայնորդով: Նրա և իր մերձավորագույն հետևորդների մշակած ուղղագրությունը պարտադրող կանոնի զորություն է ձեռք բերել հետագա ժամանակների համար: Այն ընդունել են նաև Մխիթարյանները և

[1] Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 505:



նրանց շնորհիվ է, որ այն տարածվել ու հաստատվել է ժամանակակից գրականության մեջ:

Մեր կողմից հրատարակվող հուշարձանների հիմնական մասը գալիս է հայ դպրության նախաբագրատունյաց դարաշրջանից, ուստի մենք մեր հրատարակման մեջ պետք է հետևեինք այն ուղղագրությանը, որը մենք ընդունում ենք այդ փուլի համար որպես կանոն: Մյուս կողմից, ներկա ձեռագրերից և ոչ մեկը չի իջնում մինչև նույն դարաշրջանը, անգամ դրանց մերձավորագույն նախազաղափարները այդքան հնության չեն հասնում: Այս հանգամանքը ևս պետք է հաշվի առնել, քանի որ հրատարակությունը պետք է հարմարեցնել գրչագրերի վիճակին, և ոչ հնացնել՝ դրանց տվյալներին հակառակ: Մեր տրամադրության ներքո եղած բոլոր օրինակները հետբագրատունյաց շրջանից են, սակայն դրանցից շատերն ընդօրինակվել են նախորդ, բագրատունյաց դարաշրջանի նախազաղափարներից: Եվ այս հանգամանքն արտացոլվել է օրինակների ուղղագրության մեջ: Գրության տարբեր կանոնների շփոթությունը ավելի ցայտուն երևում է բանաքաղներում: Հովհաննես Երզնկացին, իր ժամանակի օրինակելի մատենագիրն ու գրիչը, այնտեղ, ուր ինքնուրույն է գրում, հետևում է Արիստակեսի կանոններին, իսկ որտեղ արտագրում է հին հեղինակներից, օրինակ, Դավթից, նա շատ հաճախ պահպանում է առանց *-յ* ձայնորդի ուղղագրությունը:

Սրանից, իհարկե, դեռևս չի հետևում, թե այն պարագային, երբ Դավթի ուղղագրությունը նույնանում է Հովհաննեսի ուղղագրության, պետք է տեսնել Հովհաննեսի ազդեցությունը. նման դեպքերը կարող են վերագրվել բնօրինակի ժամանակին, քանի որ Հովհաննեսի կանոնները ոչ այլ ինչ են, եթե ոչ հնի վերականգնում:

Այս պատճառով մենք, առանց հաշվի առնելու օրինակների խառն կամ երկատված ուղղագրությունը, ամենուրեք պահպանում ենք գրության միաձև համակարգը, որն ընդունում է բառավերջի *-յ*-ն, ընդորում բացառություն է արվել միայն *երե*-ին՝ *երէ*-ի փոխարեն, և *-եի* (փոխանակ *-էի*) անցյալ անկատարի վերջավորության, իբրև առավել բնորոշ հատկանիշների այն դարաշրջանի համար, որտեղից ծագում են մեր օրինակների մայր-զաղափարները:

Մենք չենք անդրադառնում այլ, ոչ պակաս բարդ ուղղագրական խնդիրներին, որոնցից մի քանիսն ունեն արդիական հետաքրքրություն: Հնչունական պառակտումը, որ առկա է հայերենի երկու հիմնական ճյուղերի միջև, վաղնջական ժառանգություն է, համենայնդեպս, այն գալիս է շատ ավելի վաղեմի ժամանակաշրջանից, քան ընդունված է կարծել: Լեզվի զարգացումը վաղուց էր առաջ քաշում ձևեր, որոնց հնչունական արտահայտումը չէր համապատասխանում գրության հաստատված կանոններին: Կաղա-

պարված ուղղագրության խախտումները հին հայերեն բնագրերի հրատարակիչները դիտում են որպես ընդօրինակողների ոչ բավարար գրագիտություն, մինչդեռ հաճախ դրանք պետք է վերագրել բուն հեղինակների գրչին: Այս խնդիրները կարոտ են մասնավոր քննարկման. այստեղ բավական է նշել դրանց սկզբունքային կարևորությունը[1]:

[1] Ոչ պակաս դժվարություն է հարուցում նաև հունարեն բառերի տառադարձությունը: Օրինակ, *ποιητικῶς* բառը կարող էր տառադարձվել տարբեր ձևով: Մելամպոդեսի լուծմունքներից դատելով (Grammatici Graeci, III, 3, 15, $14_{24\text{-}26}$) *-οι* երկբարբառը նրա ժամանակ արտասանվում էր որպես *-υ* (=ֆրանս. u). այդպիսին էր դրա արտասանությունը տակավին IX դարում (**K. Krumbacher**, Byzantinische Literatur, էջ 585), ավելի ուշ այն հնչում էր որպես -i: *οι = υ* հնչյունը հայերենում կարող էր վերարտադրվել –ւ («վյունի») միջոցով, որը քերականները հավասարեցրել են հունարեն υ-ին: Ուստի *ποιητικῶς* բառը «նյութական» փոխադրության դեպքում կհնչեր որպես *պոյետիկոսաբար*, իսկ հնչյունական վերարտադրմամբ՝ *պւետիկոսաբար*: Թե առաջին, և թե երկրորդ ձևը ավանդաբար գրագետ գրչի ձեռքը պետք է վերածվեր *պուետիկոսաբար* ձևին: Այս երեք ձևերից ո՞րն է ընդունելի մեր բնագրի համար: Մեզ մոտ (էջ $184_{15}$) հանդիպում է այս բառը և մենք նախընտրում ենք *պւետիկոսաբար* ձևը (որը բնագիր է ներմուծվել անախորժ վրիպակով՝ որպես *պիետիկոսաբար*) (98):



## III. ԿՈՐԱԾ ԲՆԱԳՐԵՐԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄ

*Պատմագրական տեղեկություններ քերականների մասին: Առասպելականն ու վավերականը դրանց մեջ: Հովհաննես Երզնկացու հաղորդումները հին քերականների մասին: Վաղ, այժմ կորած աշխատություններ ուշ բանաքաղների կազմում: Դրանց տարանջատելու հնարները: Դավթի, Անանունի, Մովսեսի և Ստեփանոսի բնագրերի վերականգնումը: Վիճելի հանգամանքների վերլուծությունը: Համամի քերականությունը:*

Ներկա, ավելի շուտ՝ մեզ մատչելի ձեռագիր գրականության տեսությունը մեզ հանգեցնում է այն եզրակացության, որ ժամանակը համեմատաբար քիչ նյութեր է պահպանել: [Հայկական քերականական ավանդության] սկզբի և Գրիգոր Մագիստրոսի դարաշրջանի միջև ընկած ժամանակամիջոցը մեզ տրամադրում է միայն Դիոնիսիոս Թրակացու թարգմանական բնագիրը և Ստեփանոսի՝ Մովսեսի աշխատությանը նվիրված աստվածաբանական մեկնությունը, այսինքն՝ այն գործը, որը մեզ մոտ նշված է MS տառանիշով: Այսպիսին է քերականական գրականության իրական վիճակը: Այն, սակայն, ամենևին էլ չի համապատասխանում պատմական գրականության մեջ այս առարկայի մասին եղած տեղեկություններին:

Հնում, ինչպես հայտնի է, քերականությունը, ճարտասանության և փիլիսոփայության հետ, կազմում էր բանական կամ տեսական արվեստների խումբը՝ *τέχνη λογική*, ի տարբերություն գործնական արվեստի՝ *τέχνη πρακτική*, որի մեջ մտնում էին ատաղձագործությունը, դարբնությունը և նման արհեստներ՝ մի բաժանում, որ համապատասխանում է արվեստի և արհեստի արդի ըմբռնմանը: Ընդորում քերականությունը հասկացվում էր շատ ավելի լայն իմաստով, քան այժմ, և եթե ոչ հավասարազոր, ապա շատ մոտ է եղել «բանասիրություն» հասկացության: Դիոնիսիոս Թրակացին քերականությունը սահմանում է իբրև գիտություն բանաստեղծական և «պատմողական» երկերի (99) մասին, դրանց փորձնական կամ գործնական ճանաչողության իմաստով: Նա քերականության մեջ զանազանում է վեց մաս:

Առաջինը՝ **վերծանությունն** է, կամ պարզորոշ ընթերցում՝ առոգանության կանոնների համաձայն:

Երկրորդը («զրուցատրութիւն»)՝ **մեկնողությունն** է, այսինքն՝ ընթերցվածի վերլուծությունն ըստ գրական հնարների, այլ կերպ ասած՝ պոետիկա:

Երրորդը՝ **լեզուների և պատմության իմացություն**, որոնցից առաջինը, ըստ հույների, նշանակում էր հունարեն բարբառներին ծանոթություն, և կոչվում էր «գլոսսեմատիկա», ըստ [արդի լեզվաբանության]՝ բարբառագիտություն:

Չորրորդը **ստուգաբանությունն** է, որը հծները հասկանում էին որպես գիտություն բառերի ծագման և դրանց ուղղագրության մասին. ավելի ճշգրտորեն այն անվանվում էր «ալեքոլոգիա»՝ [«ճշտաբանություն»]. վերջին երեք մասերը Դիոնիսիոսից առաջ կազմում էին «դիորթոտիկայի», [այսինքն՝ «սրբագրական»] բաժինը:

Հինգերորդը («համեմատութիւն»)՝ **համանմանությունն** է («անալոգիա»), կամ բառի համանման ձևերի որոնում, ինչը հավասարազոր է «ստուգաբանության»՝ մեր կողմից ընդունված իմաստով, այսինքն՝ ուսմունք խոսքի մասերի մասին (100):

Վերջապես, վեցերորդ մասը («դատումն քերդածոց») **քննադատությունն** է, բանաստեղծությունները դատելու հմտություն. այն համարվում էր քերականության մասերից ամենակարևորը:

Այս սահմանումից երևում է, որ այսպես կոչված քերականական արվեստն ընդգրկում էր ոչ միայն քերականությունը՝ բառի արդի իմաստով, այլև մի շարք այլ գիտություններ: Դրանք բոլորը միասին, ընդհանուր առմամբ, քերականությունը հավասարեցնում են գրականագիտություն հասկացությանը, նամանավանդ որ դրա վերջնական նպատակն էր դպրության ստեղծագործական ոլորտի քննությունը: Քերականական արվեստը դիտվում է իբրև բանաստեղծական երկերի ըմբռնման բանալի: Հայ դպրության վաղ, այսինքն «սուրբգրային» դպրոցը *γραμματική* բառը ամենայն ճշտությամբ թարգմանում էր որպես *դպրութիւն*[1], սակայն հունաբանները, հորինել են նոր բառ՝ *քերական*՝ ինչպես կտեսնենք, հունարեն *γραμματική* բառի ստուգաբանության ազդեցությամբ: Նրանց է պատկանում նաև *քերդել, քերդող, քերդած* արտահայտությունները՝ *ποιεῖν, ποιητής, ποίημα* («ստեղծել», «ստեղծագործ», «ստեղծագործություն») նշանակությամբ: Քանի որ քերականության բոլոր թվարկված բաժինները համարվում էին անհրաժեշտ աստիճաններ, որ տանում էին դեպի բանաստեղծական երկերի ըմբռնումը, ապա, բնականաբար, դրանց ճանաչումը հավասարապես պարտադիր էր իրենց՝ բանաստեղծների համար: Ինչպիսին և լիներ ստեղծագործական ծիրքը, որպեսզի այն դրսևորվեր պատշաճ ձևերով, հարկավոր էր հիմնովին

[1] **Եզնիկ**, Եղծ աղանդոց, էջ 28. *որպէս ի դպրութենէ դպիր կոչի և ի ճարտարութենէ ճարտար*: Մեթոդիոս Պատարացու համատեքստի հետ համեմատությունը (101) ցույց է տալիս, որ *դպրութիւն*-ը արտահայտում է *γραμματική*-[իմաստը], իսկ *ճարտարութիւն* *ῥητορική*. (**G. N. Bonwetsch**, Methodius von Olympus, 1891, S. 22, տե՛ս «Հանդես ամսօրյա», 1893, էջ 360): Բացի այդ, հայերեն Սաղմոսագրքում նույն բառը հանդիպում է 70, 15 տողում. *որպէս ոչ բէ խարդախութիւն ինչ գիտէի ես դպրութեան*: Ցավոք, պարզվեց, որ տողը վիճահարույց է. հունարեն Յոթանասնից թարգմանության մեջ կարդում ենք. *ὅτι οὐκ ἔγνων πραγματίας:* Որոշ մատյաններում, սակայն, ինչպես, օրինակ, Վատիկանի ու Սինայի (The Old Testament in Greek, ed. H. B. Swete D. D., Cambridge, 1896) առկա է նաև *γραμματίας* ընթերցվածը, որը համապատասխանում է հայերեն բնագրին:



ծանոթ լինել այն գիտության, որը զբաղվում էր հենց այս ձևերով, այսինքն՝ քերականության: Այսպիսով, քերականն ու բանաստեղծը գտնվում էին ստեղծագործական միևնույն ոլորտում, մեկը՝ իբրև տեսաբան, մյուսը՝ և իբրև տեսաբան, և իբրև գործադրող:

Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ հայ հեղինակների գործածմամբ *քերդող* եզրույթը նշանակում է ոչ միայն «բանաստեղծ», այլև «քերական»: Երկրորդ նշանակությունը, թերևս, գերակշռում է. *«քերդող է, որ զմասունս բանին գիտէ»*, ասվում է Մովսեսի մեկնությունում: Դավիթը և հետագա վերլուծագիրները *քերդողութիւն* բառը գործածում են *քերականութիւն* իմաստով[1]: Էլիասի մեկնության հայերեն թարգմանության մեջ *քերդող* բառով հավասարապես թարգմանվում է հունարեն բնագրի և՛ *ποιητής*-ը, և՛ *γραμματικός*-ը[2]:

Վերլուծելով *քերդող* եզրույթը, մենք ձեռք ենք բերում այն ուղեցույցը, որը օգնելու է մեզ հայկական դպրության մեջ փնտրել քերականներին: Հայ մատենագիրների մեջ քիչ չեն *քերդող* մակդիրով հորջորջվողները, իսկ ոմանց համար այն անբաժան մականուն է: Պետք է կարծել, որ դրանով նրանք պարտական են իրենց՝ քերականական գրականության մեջ վաստակած համբավին՝ կամ որպես հեղինակներ, և կամ որպես գիտակներ: Լայն ճանաչում էր վայելում Մովսեսը, որին անվանում էին ոչ այլ կերպ, եթե ոչ *քերդող* կամ *քերդողահայր*: Ոչ պակաս հնչեղ էր Դավթի անունը, որին հորջորջում էին *անհաղթ փիլիսոփա* կոչումով: Նրանց կողքին հաճախ հիշատակվում է նաև Մամբրեն, որին անվանում էին *վերծանող*՝ *ἀναγνώστης*, եկեղեցական իմաստով, թե քերականական՝ հայտնի չէ: Ավանդությունը նշված անձանց նույնիսկ կապում է ազգակցական կապերով. Մամբրեն համարվում է Մովսեսի եղբայրը, իսկ Դավիթը՝ նրանց զարմիկը՝ տեղեկություններ, որոնք խիստ տարակուսելի են և արժանի չեն վստահության: Ինչևիցե, մեզ այժմ չի զբաղեցնում նրանց անձնավորությունների խնդիրը, որը լուծելու ենթակա էլ չէ. ավելի քան վտանգավոր է հավատ ընծայել ակներև առասպելական պատումներին:

[1] *Քերական* բառը կազմվել է *γραμματικός* եզրույթի հունարեն ստուգաբանության ազդեցության ներքո՝ ստուգաբանություն, որ բխեցնում է այս եզրույթը *γράφω* բառից, հասկանալով այն *ξύω*-ի («քերել») իմաստով, տե՛ս **Դիոնիսիոս**, $4_{14}$: Ինչ վերաբերում է *քերդող, քերդել* բառերին, ապա դրանց մեջ, ամենայն հավանականությամբ, պետք է տեսնել Արշակունյաց դարաշրջանի *կերտող, կերտել* ձևերը: Ուշ արտասանությամբ երկու ձևն էլ համապատասխանում են հին պարսկերենի ***karta*** և միջին պարսկերենի ***kerden*** «ստեղծել»՝ *ποιεῖν, ποιητής* իմաստով, ինչպես երևում է նաև Դիոնիսիոսի թարգմանությունից: Բայց կան նաև *քերթել* «կաշին պոկել», և *քրթել* «քոր գալ» հայերեն բառերը, և վրացերեն ქერთნა «կեղևել» [«կեղևը պոկել»] բառը: Այս բառերն իմաստով հարում են «քերել» բառին, և, հավանաբար, ոչ առանց դրանց ազդեցության էր, որ *քերդող* բառը ստացել է նաև «քերական»-ի նշանակություն:

[2] Էլիաս փիլիսոփայի Մեկնութիւն, էջ $54_{24}$, $55_2$, հրատ. Հ. Մանանդյանի, [ՍՊբ.], 1911:

Դավթի և Մովսեսի անունները չարաբաստիկ դեր են խաղացել հայկական մատենագրության մեջ: Նրանց շուրջ անորոշության մի այնպիսի մշուշ է կուտակվել, որ հնարանքի շերտերում գեթ ինչ-որ ճշմարտություն որսալը տակավին մնում է հայագիտության ամենաբարդ և ամենակարևոր խնդիրներից մեկը: Այս անունները ճեռք են բերել հանգուցային կետերի նշանակություն. որոնց հստակեցումը խոստանում է լույս սփռել երկու ուղղությամբ՝ և նրանցից առաջ, և նրանցից հետո եկող դարաշրջանի վրա: Ցավոք, փաստական տվյալները խիստ սակավ են, իսկ պահպանված պատումները՝ այնքան խառնաշփոթ, որ անգամ իրականը ոչ պատմական բնույթի գունազարդ փառից մերկացնել անչափ դժվար է:

Պատումներից ամենահետաքրքրականն է՝ «Հայոց Սուրբ վարդապետներ Մովսեսի և Դավթի վիճաբանությունը երկաբնակների հետ»[1]: Սույն ավանդությունից են ընձյուղում և այն կցկտուր զրույցները, որոնք մեջ բերվեցին վերը՝ ձեռագրերի նկարագրության բաժնում: Քննադատ հայացքով դիտելով «Վիճաբանությունը», չի կարելի չնկատել, որ այն կազմված է տարբեր, վերոհիշյալ հայրերի կյանքի այս կամ այն դրվագները ներկայացնող կտորներից, որոնք սկզբնապես, hավանաբար, շրջաբերվում էին առանձնաբար, և միայն հետագայում ի մի են բերվել և կազմել մի ամբողջություն: Որոշ, բավական ակնառու նշաններ խոսում են «Վիճաբանության» մի քանի տարբերակների առկայության մասին. նկատելի է նույնիսկ տարաբանությունների ամենացայտուն դրսևորումները հարթեցնելու միտում: Ինչևէ, կանգ առնել այս խնդրի վրա և զբաղվել պատումների քննարկմամբ, որքանով էլ դա ցանկալի լիներ, կնշանակեր առանց անհրաժեշտության շեղվել մեր անմիջական խնդրից: Այժմ այս հուշարձանում մեզ անմիջապես հետաքրքրում են միայն նշված հեղինակների գրական գործունեության վերաբերող ցուցումները:

«Վիճաբանության» մեջ խոսքը «Անհաղթ փիլիսոփա» կոչվող Դավթի, Մովսեսի, որ քերդողների հայր և գլուխ է, Մամբրե իմաստասերի, Աբրահամ հռետորի և նրանց նմանվող Պողոսի մասին է: Նրանք կրթություն են ստացել հունական գիտական կենտրոններում և այնտեղ երկար ժամանակ մնալու հետևանքով «լեզվով և կերպարանքով դարձել էին աթենացիներ»: Այս դիտողության մեջ hիանալիորեն արտացոլվել է հունաբանների [ամենավառ] բնութագիծը՝ հունարենով նրանց հափշտակված լինելը: Վերադառնալով, նրանք հայրենիքը գտան ծանր պայմաններում, աննպաստ

[1] *Սրբոց վարդապետաց հայոց Մովսէսի եւ Դաւթի Հարցմունք ըստ (sic!) երկաբնակացն*, տե՛ս *«Արարատ», 1879, ապրիլ-մայիս*: Ավելի վաղ, 1874 թ., այն հրապարակել է [Գ.] Սրվանձտյանցը Կոստանդնուպոլսում՝ *Յաղագս սրբոց վարդապետացն հայոց Մովսէսի եւ Դաւթի*: «Հարցմունք»-ի մեզ հետաքրքրող մասը տպագրել է [Ֆ. Կ.] Կոնիբերը «Հանդես Ամսօրյա»-ում 1903 թ.: Այս մասը պակասում է *«Արարատ»*-ի բնագրից:



իրենց ունեցած գիտելիքները կիրառելու համար: Երկիրը պառակտված էր. նրանց վիճակված չէր ապրել մինչև խաղաղության վերականգնումը, և «լիուլի կուտակված գանձը, որ վաղուց ի վեր նրանք պահում էին անոքում, տարան իրենց հետ ծիրքեր Բաշխողի մոտ»[1]:

Այս խոսքերը, իհարկե, չեն նշանակում, թե նրանք ոչինչ չեն գրել, այլ որ չէին կարողացել իրենց դրսևորել պատշաճ կերպով, համապատասխան իրենց պատրաստվածության: Այնուամենայնիվ նրանք hասցրին ինչ-որ բան գրել և մեզ թողնել ինչ-որ մատենագրական ժառանգություն: Մովսեսին, Հայոց Պատմություն և այլ երկեր հեղինակելու հետ մեկտեղ, վերագրվում է նաև **քերականության մեկնություն**. *արար եւ զքերականին մեկնութիւնն*: Նմանապես և Դավթին, բացի «Իմաստասիրության սահմանումներ»-ից, հատկացվում է նույնպիսի «Քերականության» մեկնություն. *արար եւ զմեկնութիւն քերականին*: Նրանց մյուս ընկերները՝ Մամբրեն, Աբրահամն ու Պողոսը նույնպես գրել են ինչ-ինչ բաներ, բայց թե ինչ՝ հուշարձանը չի նշում:

Վերը բերված դրվագներում Դավթին են վերագրում, բացի հիշատակված աշխատություններից, նաև *Ներբող ի սուրբ Խաչն (Բարձրացուցէք)* ճառը, Պիտոյից գիրքը, սաղմոսների մեկնություններ և առանձին ճառեր: Ընդհրում, ուշադրության է արժանի մի դիտողություն այն մասին, որ, ըստ հույների, «Դավիթը գրել է յոթ գիրք և ծագումով իրենց ազգությունից էր»[2]: Այս նույն դրվագից իմանում ենք, որ «Իմաստասիրության սահմանումները» և «Բարձրացուցէք»-ը սկզբից շրջանառության մեջ են դրվել անանուն, հետո միայն փորձեր էին արվել դրանք վերագրելու Դավթին: Գոյություն ուներ [պատումի] մի տարբերակ ևս, որը կապում էր *Ներբողի* հորինումը 614 թ., Սուրբ Խաչը Պարսկաստանից վերադարձնելու պահին[3]: Այս տեղեկությունները կարևոր են և պետք է հաշվի առնվեն Դավթի և նրա ժամանակի խճճված խնդիրը լուծելու համար: Պիտոյից գիրքը, մեզ հետաքրքրող հուշարձանի վկայությամբ, նույնպես պատկանում է Դավթի գրչին, մինչդեռ

[1] *Եւ խնդրեցին ի Մովսիսէ գրով տալ ի նոցա զպատմութիւն Հայոց: Իսկ նա սկսեալ գրէր զպատմութեան Հայոց պատմագիրն եւ այլ բազում ինչ արար քննութիւն պէսպէս ճառեալ ի տնօրինութիւն փրկչին եւ բազում ինչ, արար եւ* ***զքերականին մեկնութիւն****, եւ արարին եւ զեղանակս երաժշտականացն ձայնաւորս բազումս ի պէտս եկեղեցւոյ: Այլ վասն խօսից վարդապետութեանց ոչ էր առ ուրեք վասն դառն ժամանակին<:> արար(:)*

*Եւ Դաւիթ (գրեաց) զՍահմանացն գիրսն, զոր էր առեալ ի փիլիսոփայիցն. արար եւ* ***զմեկնութիւն քերականին****:*

*Եւ ոչ ժամանեցին ելանել ի խաղաղական ժամանակի, զի զառլցեալ եւ զամբարեալ զգանձն զայն, որ ի վաղ ժամանակաց ի յամանի պահեալ ունէին, զոր եւ ընդ իւրեանս տարան առ տուողն պարգեւացն եւ ննջեցին բարեօք ի Քրիստոս:*

*Արար եւ Մամբրէ, Պօղոս եւ Աբրահամ ճառս ոչ սակաւս պէսպէս խորհրդոց: «Հնոց Նորոց»*, էջ 84-86, հմմտ. *«Հանդես ամսօրյա»*, 1903, էջ 154:

[2] Վերը, էջ XXVIII:

[3] **Դաւիթ**, հրատ. երկ., Վենետիկ, 1833, էջ 102:

հայտնի է, որ ձեռագրերում որպես դրա հեղինակ նշվում է Մովսեսը[1]:

Վիճելի չէ, համենայնդեպս, մեզ հետաքրքրող քերականական աշխատասիրության հեղինակությունը. և՛ Դավիթը, և՛ Մովսեսը գրել են քերականության մեկնություններ: Դավիթի մասին այս ցուցումը հաստատվում է և վերոբերյալ *«Սկիզբ և պատճառ Քերականի»* դրվագում, որից երևում է, որ Դավիթի հեղինակությամբ ճանաչվում էր ինչ-որ քերականական աշխատություն:

Երբ այս հուշարձաններից անցնում ենք պատմագիրներին, մեզ ապշեցնում է քերականների նրանց անծանոթ լինելու փաստը: Ընդհանուր լռությունը առաջին անգամ խզում է Ասողիկը, որը ճանաչում է «Մամբրեին, Մովսեսի եղբորը և երրորդին, ինչպես ասում էին, փիլիսոփային», ինչպես նաև «Դավիթին՝ Մովսեսի աշակերտին, Հարք գավառից, Հերեան գյուղից»[2]: Բայց տեղեկությունների աղբյուրը դարձյալ մեր քննարկած ավանդազրույցն է, ընդորում դրա այն տարբերակը, որը Դավիթին զետեղում է Հովհաննես Մանդակունու, և ոչ Գյուտ կաթողիկոսի ժամանակներում. քանի որ հենց այս ժամանակագրությանն է հետևում Ասողիկը: Նույն հեղինակը հիշատակում է նաև «Եզրաս Անգեղացուն՝ Մովսես հռետորի, Բագրևանդ գավառի եպիսկոպոսի աշակերտին, նրան, ով բազմացնում էր հռետորների կաճառը»[3]: Նրան ծանոթ է նաև Համամը՝ որպես քերականության մեկնության հեղինակ, որն ապրել է IX դ. կեսերին[4]:

Սակայն ավելի վաղ շրջանի մեկնությունների կամ դրանց հեղինակների մասին Ասողիկը չի հայտնում ոչինչ: Նրանց մասին լռում են և՛ Թովմա Արծրունին, և՛ Հովհաննես Կաթողիկոսը: Թեպետ վերջինս մատնում է իր՝ Դիոնիսիոսի աշխատության հետ իրականում ծանոթ լինելը: Այստեղ գտնում ենք Դիոնիսիոսի բնագրից վերցված երկու արտահայտություն. *«զի մի՛ աղայարար ինչ յանդգնեալ զմիանգամ գրեալսն երկրորդեցից»* եւ *«զքերթողաց արուեստն տապալեցից եւ զոյնս (102) վերծանողացն ծիծաղելիս յարկացուցից»*[5]:

[1] **Հ. Գարեգին [Հովսեփյան]**, *Դաւիթ Հարքացի եւ Պիտոյից գիրքը*, *«Արարատ»*, 1908, փետրվար:

[2] *«Յայսմ ժամանակի Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս* <տարընթերց.՝ *երրորդ գտեալ փիլիսոփայ*> *դառնայր ի Հայս, եւ Դաւիթ աշակերտ Մովսիսի ի Հարք գաւառէ ի Հերեան գեղջէ»*, տե՛ս Ստեփանոս Տարոնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական, ՍՊբ., 1885, էջ 80-81:

[3] *«Յորում ժամանակի Եզրաս Անգեղացի, աշակերտ ճարտասանին Մովսիսի եպիսկոպոսի Բագրևանդ գաւառի զդասս ճարտասանիցն բազմացուցանէր»*, անդ, էջ 82, ակնարկվում է Պիտոյից գիրքը: Քրիստափոր կաթողիկոսին նա ևս անվանում է *«փիլիսոփայ»*, էջ 81:

[4] **Ասողիկ**, էջ 159:

[5] **Հովհաննես Կաթողիկոս**, Պատմութիւն, էջ 4 = **Դիոնիսիոս**, էջ $2_{29}$-$3_{3}$: Հրատարակություններում *զոյնս* բառի փոխարեն սխալմամբ դրվում է *զայն*: Մոսկովյան հրատարակության մեջ *արուեստն* փոխարեն կարդացվում է *արուեստ*, ընթերցված, որը հանդիպում է նաև Դիոնիսիո-



Հայոց իշխանների մեկի կողմից արաբների հասցրած պարտության առթիվ նույն պատմիչը մեջբերում է Դիոնիսիոսի խոսքը. *«եւ առ նմա յարառօցեալ լինէր մակսատութիւն միայն առ բազումս ասել թէ Դաւիթ արուորագոյն քան զզէքացիսն»*[1]: Դիոնիսիոսին վերաբերող գրականության հետ ծանոթությունը նշմարվում է նաև նրա՝ Հովհաննես Օձնեցու մասին հայտնած կարծիքից, իբրև մի մարդու, որ լավատեղյակ է բանաստեղծական արվեստին, խոսքի մասերին ու դրանց պարագաներին[2]: Դիոնիսիոսին ծանոթ է նաև *«Աղվանից պատմության»* խմբագիրը[3]:

Մեզ հետաքրքրող հեղինակների մասին Բագրատունյաց դարաշրջանի պատմագիրների թողած տեղեկությունների սղությունը հատուկ է նաև ավելի ուշ դարաշրջանի պատմիչներին: Սամուել Անեցին, Կիրակոս [Գանձակեցին], Վարդան [Արևելցին], Մխիթար [Այրիվանեցին] կրկնում են նրանց մասին միմիայն այն, ինչ կարդացել են մեր քննած աղբյուրներում:

[Թվարկած պատմիչներից] առաջինը տալիս է նոր անձանց անուններ. 775 թ. ներքո նա հիշատակում է *«Յայսմ ժամանակի էր Ստեփանոս դրան երէց՝ որ բանիրուն ճանաչիւր: Եհաս ի կատարումն ամենայն իմաստութեան եւ գրամարտիկոս արհեստից՝ հանդերձ հոգեւորական առաքինութեամբ»*: Կային Հայոց աշխարհում և այլ վարդապետներ, շարունակում է նույն պատմագիրը՝ *«ընտրեալք և լուսաւորք՝ տէր Եփրեմ եւ Անաստաս՝ եւ Խաչիկ՝ եւ Դաւիթ Հոռոմայեցին. եւ մեծ իմաստասէրն Ստեփանոս Սիւնեցին՝ աշակերտ Մովսէսի»*[4]:

Այստեղ կրկնակի հիշատակվող Ստեփանոսը՝ փիլիսոփան և երեցը՝ միևնո՞ւյն անձնավորությունն է, թե տարբեր, այնքան էլ պարզ չէ: Տարա-

սի երկի ձեռագրերում: Այս օրինակը ցույց է տալիս, թե ինչպես հեղինակները երբեմն սրբագրվել են ըստ իրենց օգտագործած աղբյուրների:

Կարապետ վարդապետի, այժմ արդեն՝ եպիսկոպոսի հրատարակած ճառում՝ *Խոստովանութիւն անշարժ յուսոյ մարմնանալոյ բանին*, կարդում ենք. *եւ արդ ո՞ն առեալ զարհամարհելին նոցա բանս ծիծաղելիս յարկացուցից եւ տապալեցուցից ի զաւրութենէ պատրաստ օգնականին մերոյ Քրիստոսի*, էջ 5: Դիոնիսիոսի արտահայտության ազդեցությունը այս խոսքերի վրա ակնառու է: Այն հանգամանքը, որ այս բնորոշ արտահայտությունը հանդիպում է և՛ Հովհաննես Կաթողիկոսի [«Պատմության»], և՛ «Խոստովանության» մեջ, կարող է կռվան ծառայել «Խոստովանությունը» Կաթողիկոսին, և ո՛չ Օձնեցուն վերագրելու օգտին:

[1] Նույն տեղում, էջ 192 = Դիոնիսիոս, էջ 15:

[2] *Հմուտ եւ տեղեակ գոլով քերթողական շարագ*<*րա*>*ծաց, մասանց բանի եւ մասնականաց*, նույն տեղում, էջ 57. ապա գալիս է. *այլ եւ վարժից սեռից եւ որք ընդ զոյացութեամբ են սեռական տեսակարարութիւնք մինչեւ ցանհատ վայր եւ տարբերութեանցն եւս հանգամանաց եւ պատահմանց անանջատից ոչ անտեղեակ*՝ ինչից երևում է Արիստոտելի և Պորփյուրի աշխատությունների հետ ծանոթ լինելը:

[3] **Մովսես Կաղանկատուացի**, Պատմութիւն Աղուանից, էջ 71. *շարագրած յաղագս...ըստ ներգոյս զրուցատրաբար* = Դիոնիսիոս, էջ 1, հմմտ. նաև **Կիրակոս Գանձակեցի**, էջ 96: Նշենք նաև Դիոնիսիոսի *հնագէտ պատմութեանց* արտահայտությունը (էջ 1) Մնացորդաց գրքերի նախադրության մեջ:

[4] **Սամուէլ Անեցի**, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, էջ 89:

կուսանքը չի լուծում նաև Կիրակոս պատմագիրը, որը քաղացի արտագրում է այս տեղին Սամուելից[1]. թեև նա դրանից առաջ էլ առիթ է ունեցել խոսելու Ստեփանոսի գործունեության մասին՝ Դավթի և Մամբրեի կապակցությամբ[2], այստեղ նա կրկին անդրադառնում է նրան, և Սամուելի խոսքերին ավելացնում է այն, ինչ մասամբ արդեն հայտնել էր Ստեփանոսի մատենագրության վերաբերյալ: Նա լրացնում է Ստեփանոսի երկերի ցանկը մի քանի նոր, այդ թվում նաև *«Մեկնութիւն քերականին»* գործով: Սակայն արդյո՞ք այս Ստեփանոսն էր այն *«դրան երէց»*-ը, որ հասել է *«ի կատարումն ամենայն իմաստասիրութեան եւ գրամարտիկոս արհեստից»*, որին Կիրակոսը հիշատակում է Սամուելի խոսքերի հիման վրա, թե դա բոլորովին այլ անձնավորություն էր, ըստ երևույթին, պարզ չէր իրեն իսկ Կիրակոսին: Սամուելի [տվյալներից ելնելով], նա Ստեփանոսին տեղադրում է Հայոց թվարկության 222 թվականի ներքո, ինչը հավասար է 775 թվականին, քանի որ Սամուելը Հայոց թվարկության սկիզբը համարում է 553 թվականը: Այս երկու Ստեփանոսներին ամենայն վստահությամբ նույնացնելուն խոչընդոտում էր հենց այս տարեթիվը. ինչպես մենք, այնպես էլ նշված պատմիչները տեղյակ են եղել, որ Ստեփանոս Սյունեցին, որը հայտնի էր Կոստանդնուպոլսի պատրիարք Գերմանոսի (715-730) հետ վարած նամակագրությամբ, ապրում էր VIII դ. սկզբին, Հովհաննես կաթողիկոս Օձնեցու օրոք. ուստի, նա չէր կարող նշված լինել 775 թվականի ներքո: Անանիա կաթողիկոս Մոկացին (941-965) իր նամակներում Խաչենի ժողովի մասնակիցների թվում հիշատակում է նաև ոմն *«հայր Ստեփաննոս, որ կոչէր քերական»*[3]: Դժվար է կարծել, որ այս Ստեփանոսը որևէ առնչություն ունենար *«դրան երէց»* Ստեփանոսի հետ, քանի որ նրանց տարանջատում է ժամանակի մեծ հատված:

Մեզ հետաքրքրող տեղեկությունների համար Սամուել ժամանակագիրը, ըստ երևույթին, պարտական է Ստեփանոս Սյունեցու թարգմանական գործերի՝ Նեմեսիոսի, Դիոնիսիոս Արիսպագացու և Կյուրեղ Ալեքսանդրացու երկերի վերջում դրված հիշատակարաններին: Դրանք հար և նման են իրար և հայտնում են այն մասին, թե թարգմանությունները կատարված են Կոստանդնուպոլսում *«ի ձեռն Դաւթի հիպատոսի եւ թագաւորական սեղանոյն կինառի, եւ ի ձեռն Ստեփանոսի քահանայի եւ քերդողի, աշակերտի տեառն Մովսիսի Սիւնեաց եպիսկոպոսի»*: Տարբերությունը միայն տարեթվի մեջ է: Վերջինս որոշվում է երեք՝ աշխարհի արարչագործության, ինդիկտիոնի և կայսեր գահակալության տարեթվերով: Թվային ցուցումները մեկը

[1] **Կիրակոս Գանձակեցի**, Պատմութիւն, էջ 40-41:
[2] Անդ, էջ 17:
[3] **Հ[այր] Գալուստ [Տեր-Մկրտչյան]**, Անանիա Մոկացի, «Արարատ», 1897, մարտ, էջ 134:



մյուսին չեն համընկնում, և ակներևաբար աղավաղված են[1]: Սակայն բանն այդ չէ: Հիշատակարաններից մեկում, որը կից է Նեմեսիոսի աշխատությանը, թվագրությունը տրվում է նաև ըստ Հայոց թվարկության, այն է *միա* = 772 թ.: Սա, անկասկած, ուշ ընդմիջարկություն է և խորթ է հիշատակարանի հեղինակի գրչին: Ընդմիջարկությունը բավական հին է և հասնում է մինչև XII դարը, Սամուելի և Կիրակոսի [ժամանակը]: Այն արդեն առկա

[1] Դիոնիսիոս Արիսպագացու թարգմանության հիշատակարանում, որ մեջբերում է Գ. Զարբհանալյանը («Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց». Դար Դ-ԺԳ, Վենետիկ, 1889, էջ 388), որպես տարեթիվ նշվում է.

«Ի վեցհազարերորդի երկերիւրորդի քսաներորդի (6220) ամի արարածոց աշխարհիս<,>
ըստ յունարէն թուոյ՝ ի չորեքտասաներորդի (14) *դիկտիոնին*,
յերկրորդ (2) ամի թագաւորութեանն Փիլիպպոսի (711-717)»:

Կյուրեղ [Ալեքսանդրացու] «Պարապմանց գրքի» հիշատակարանում, որը տպագրված է անդ, էջ 519.

«Ի վեցհազարերկիւրերորդի քսաներորդի չորրորդի (6224) ամի արարածոց աշխարհիս,
ըստ յունարէն թուոյ՝ ի չորեքտասաներորդի (14) *ենդիկտիոնի*՝
յերկրորդ (2I) ամի թագաւորութեան Անաստասի (713-716)»:

Նեմեսիոսի երկի հիշատակարանում, անդ, էջ 371, ինչպես և հրապարակված բնագրում (103), էջ 162.

«Ի վեցհազարերորդի երկերիւրորդի քսաներորդի չորրորդի (6227) ամի արարածոց աշխարհիս,
ըստ յունարէն թուոյ ի չորեքտասաներորդի (14) ինդիքտիոնի.
իսկ ըստ հայումս ՄԻԱ (772) <,>
առաջին ամի թագաւորութեանն Լեւոնի (717-741)»:

Թվերի անճշտությունը երևում է նրանից, որ 6220-ից մինչև 6227 թվականը, այսինքն՝ 7 տարվա մեջ երեք անգամ ցույց է տրվում ինդիկտիոնի 14-րդ տարին, որ ակներև անհեթեթություն է. եթե 6220 թ. = ինդիկտիոնի 14-ը, ապա 6224 թ. = ինդիկտիոնի 3-րդ տարվան, իսկ 6227 թ. = 6-րդ տարվան: Հ. Տաշյանը («Մանր ուսումնասիրութիւնք», էջ 14) գտնում է, որ արարչագործության 6227 թ., որը հավասար է Ք.հ. 719 թ., համապատասխանում է ինդիկտիոնի 14-րդ տարվան: Այս հաշվարկն այնքան էլ ճիշտ չէ, քանի որ ինդիկտիոնի տարին որոշելու համար հարկավոր է ոչ թե 719-ը բաժանել 15-ին, ինչպես անում է Հ. Տաշյանը, այլ 719+3, որովհետև մեր թվարկության առաջին տարին համընկնում է ինդիկտիոնի 3-րդ տարվան: Ուստի 719 թ. = ինդիկտիոնի 2-րդ տարվան:

Թվերը հնարավոր է ուղղել հետևյալ կերպ: Տարեթվերից ամենավստահելին և ճշգրիտը՝ Լևոն թագավորի առաջին տարին է, 717 թ.: Աշխարհի արարչագործության տարեթվի հետ այն համաձայնեցնելու համար պետք է կարդալ 6225՝ 6227-ի փոխարեն. իսկ ինդիկտիոնի ճիշտ տարեթիվն էլ կլինի 15-ը՝ և ո՛չ 14, որն ընդունելի կլիներ միմիայն այն դեպքում, եթե Լևոնի [գահակալությունը] սկսվեր 716 թվականից: Ըստ այսմ հարկ է շտկել և մնացած տարեթվերը. Անաստասի 2-րդ տարվա փոխարեն կարդալ 3-րդ տարի = 716 թ., որ հավասար է ինդիկտիոնի 14-րդ տարվան և աշխարհի արարչագործության 6224 թ.: Այնուհետև, առաջին հիշատակարանում սրբագրել ինդիկտիոնի 14-ը, վերածելով այն 10-ի (ծդ-ի փոխարեն՝ ժ), ինչը համընկնում է աշխարհի արարչագործության 6220 թ. և Փիլիպպոսի 2-րդ տարվան, այն է՝ 712 թ.:

Այս երեք հիշատակարանների դիտարկումը տեղիք չի տալիս որևէ տարակուսանքի, թե երրորդ հիշատակարանի Հայոց թվականը ընդմիջարկություն է, ներմուծված օգետ դպրի ձեռքով: Մ. Չամչյանի օրինակում (*Պատմութիւն*, II, էջ 555) այն սրբագրված է՝ *ճկե* = 716: Մ. Բրոսսեի (Histoire de la Siounie, p.83) տեղեկության համաձայն, Կյուրեղի աշխատության Ջուղայի օրինակում ևս նշված է Հայոց թվարկության ՄԻԸ = 779 թ., որ նույնպես պետք է համարել ընդմիջարկություն:

էր Նեմեսիոսի գործի այն օրինակում, որից օգտվել էր Սամուելը. այնտեղից էր վերցված 775 թ., կամ, ինչպես Կիրակոսի մոտ, Հայոց թվարկության 222 թվականը: Ստեփանոսի ժամանակակիցների թվում հիշատակված Դավիթ Հոռոմեացին ոչ այլ ոք է, եթե ոչ հիշատակարանի Դավիթ հյուպատոսը (104): *«Դրան երէց»* տիտղոսը, որով Ստեփանոսին մեծարում է Սամուելը, ամենայն հավանականությամբ, թելադրված էր այն հանգամանքով, որ Ստեփանոսը համագործակցում էր պալատական և քաղաքական սեղանի կենտր Դավթի հետ[1]: Հիշատակարանի Հայոց թվականի պատճառով մոլորված Սամուելը ստիպված էր բաց թողնել դրա վերջին մասը, որտեղ խոսվում է Ստեփանոսի՝ իբրև Մովսեսի աշակերտի մասին, գտնելով, որ այն չի համապատասխանում այն փաստերին, որ իրեն ծանոթ էին շատ ավելի վաղ ապրած Մովսեսի աշակերտ Ստեփանոսի մասին: Մինչդեռ Կիրակոսն արտագրում է հիշատակարանն ամբողջությամբ, անպատասխան թողնելով երկու Ստեփանոսների նույնության հարցը:

Մեր նկատառումները գալիս են համոզելու, որ 775 թվականի ներքո հիշատակվող *«գրամարտիկոս արհեստից»* կատարելության հասած Ստեփանոսը հենց ինքը՝ Ստեփանոս Սյունեցին է:

Այս հանգամանքը կարող է հաստատման, քանի որ Ստեփանոսի անվան ներքո, ինչպես կտեսնենք, պահպանվել է քերականական երկու աշխատություն, ուստի և ենթադրությունն այն մասին, որ բացի Ստեփանոս Սյունեցուց գոյություն է ունեցել ևս մի համանուն հեղինակ, կարող է որոշ գայթակղություն առաջացնել:

Այսպիսով, մեր ստացած տեղեկությունները հանգեցնում են միայն այն [եզրակացության], որ Դավիթը, Մովսեսն ու Ստեփանոսը քերականական երկեր են գրել: Այս տեղեկությունները պատշաճ հաստատում և լուսաբանում են գտնում քերական Հովհաննես Երզնկացու մոտ: Հովհաննեսը՝ երևելի գրական անձնավորություններից է հայ դպրության այն սահմանագծային ժամանակամիջոցում, երբ հայոց անցյալի մասին դարերի ընթացքում ձևավորված պատկերացումը վերջնականապես քարանում է յուրատեսակ դոգմատիկ անսասանության մեջ:

---

[1] Ավելի բնական կլիներ *դրան երէց* արտահայտությունը հասկանալ պատրիարքարանին առընթեր քահանայի իմաստով, առավել ևս որ, Ստեփանոս Օրբելյանի [Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 96] խոսքով. *«էր սա որդի աւագ երիցու մեծ մայրաքաղաքին Հայոց Դուինայ, եւ սնանէր եւ զարգանայր ուսմամբ ի կաթողիկոսարանին Հայոց»*: Ցավոք, այս տեղեկությունը որոշ անվստահություն է ներշնչում. այն, հավանաբար, նպատակ ունի մեկնաբանելու մեզ հետաքրքրող *դրան երէց* տիտղոսը: Եվ առհասարակ Ստեփանոս Օրբելյանի չափազանց ներբողական ոճը՝ Ստեփանոսի կյանքի մասին պատմելիս, չի հաստատվում և ոչ մի նոր՝ մեզ որևէ այլ աղբյուրից հայտնի տվյալներով: Եթե անգամ նկատվում է որևէ նոր բան, ապա [շարադրանքի] միտումնավոր և երբեմն նույնիսկ առասպելական բնույթը վերացնում է դրա արժանահավատությունը:



Մեզ հետաքրքրող բնագավառում Հովհաննեսի աշխատությունը նշանավորում է ավարտվածության հենց այսպիսի պահ: Այն summarium [ամփոփումն] է այն ամենի, ինչ արվել էր դրանից առաջ քերականական արվեստում և աղբյուր է վերջինիս գոյատևման համար նաև հետագա դարերում: Այս երկասիրության մեջ Հովհաննեսը ոչ միայն հանրագումարի է բերում փաստական նյութը, այլև հաղորդում բարձրարժեք պատմագրական և մատենագրական տեղեկություններ: Դրանց մասին նա խոսում է իր երկի նախադրության մեջ, որը մենք հարկ ենք համարում մեջբերել ամբողջությամբ (105):

## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ ԲԱՆԻ Ի ՅՈՅՑՍ ՊԱՏՃԱՌԻ ՀԱՒԱՔՄԱՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ. ԵՒ ԱՂԵՐՍ ԽՆԴՐՈՑ ԱՇԽԱՏԱՏՐԻՍ ՅՈՀԱՆՆԻՍԻ ԱՌ ՍՊԱՍԱՒՈՐԴ ԲԱՆԻ

*Ճշմարտութեան հաւատոյ բանին ուղիղ դաւանութեան պահողաց եւ անախտ երկանց ծննդոց՝ դաստիարակ որդւոյ հոգեւորաց, քան զմեղու եւ կաթին քաղցրորակ, ճաշակաց, իմաստութեանն ստեամբք սնընդագործացդ. ընդ ձեզ եւ մանկանց ձերոց նորաքոյս եւ ուսումնատենչ համբակաց, նորոյ Սիոնի սրբոյ գերագոյն գրկաց գգուեալ զաւակաց, ազարակին զանձոյ եւ մարգարտին մեծագնոյ ընդ անցաւոր գոյիս գնողաց, որոց ցանկալի ճոխութիւն բանի քան տփերականն ոսկի, եւ քան զակունս լուսանշոյլս՝ լոյս մտաց եւ ճրագ ընթացից շաւղաց իմաստութեան ջահ տեսողաց. ընկալարո՛ւք զաղերս բանի ի շրթանց եւ ապա զընծայս կառկառեալ բազկաց, եթե հանճոյ թուեսցի ձեզ ըմպել ջուր ի ստոմանէ կաթի ջրոյ կարաւտացելոյ եւ կերակրիլ ի նկանակէ հացից քաղցի սեղանոյ անկեալ փշրանաց:*

*Հաւանեցուսցէ զձեզ յայս աննախանձութիւն բարւոյ եւ հեզութիւն հոգւոյ եւ իմաստութեան քաղցր բաղձանք. մի՛ ներհակարար վարիք ի վարձ քրտանց վաստակաւորի եւ մի սիրով տռչորեցելոյ ի զուք ուսումնակցացն ազգի զանընդունակն գթութեան շնորհիցէք զատելութիւն: Զի թէպէտ ոչ աղբիւր ջրոյ նոր պատառեցաք եւ ոչ ի կորդ ագարակի սերմանց որայս բարդից հնձեցաք, այլ միայն զխցեալ ջրհորս հարց մերոց բացաք եւ ի նոցունց համբարաց ցորենոյ հաց ի կերակուր գործեալ հասուցաք, բայց ոչ առանց աշխատութեան ուշոյ եւ խստիւ զստինս խորհրդոց ճմլելոյ:*

*Եւ այս ոչ ինքնաձեռք համարձակութեամբ վստահացեալ ի զաւրութիւն եւ կամ զգիտութեան փառս յանձն անփառունակ ձգելով, այլ հնազանդ հրամայաւղ հարանց եւ եղբարց հարազատաց խնդրոյ եղաք եւ ի յորդորմանէ յարակցաց յայս յաւժարեցաք:*

Զի ի պատահելն մեր յերբեմն ժամանակի ՉԼ թուին մերոյ գնալ յաստուածային քաղաքն Երուսաղէմ, ի տեսութիւն փրկագործ տնօրինութեան Քրիստոսի աստուծոյ մերոյ: Եւ եկաք յերկիրն հայոց ի Կիլիկէ, ի թագաւորութեանն Լէոնի բարեպաշտի որ յՌոբինեացն, որդի Հեթմոյ աստուածասիրի, եւ կացաք ժամանակս ինչ առ վերադիտաւղն աթոռոյ սուրբ Լուսաւորչին մերոյ կաթողիկոսն հայոց տէր Յակոբ, հեղինակն հօգւոց եւ հանճարոյ իմաստութեամբ վարժն աստուածաշունչ գրոց, հմուտ եւ գտաւղ բանից իմաստնոց, աննախանձաբար սիրողն եւ պատուաւղն ուսումնասիրաց: Որ եւ հայրն մեր հոգեւոր հրամայեաց մեզ ասել **զքերականն դաս** իւրոց աշակերտաց, եւ ախորժելի եւ հաւանական եղեւ:

Վասն որոյ խնդրեաց ի մէնջ պարզութիւն առնել մեկնութեան նորին եւ լնուլ զթերին մնացեալ ի վերլուծական բանից մեկնողացն: Որ եւ աւուրս ինչ մնաց գործն անկատար սակս անպարապ գոլոյ եւ անդորր ի տեղւոյ:

Եւ ապա շնորհազարդ ոմն ի վարդապետաց եկեղեցւոյ, Յովհաննէս անուն, հեզահոգի եւ առաքինասէր, կացեալ ժամանակս յոլովս ի պաշտաւն սպասաւորութեան եկեղեցւոյ ի դուռն սուրբ Կարապետին որ ի Տարաւն, եւ ըստ շնորհի յաջողելոյն աստուծոյ հասեալ ի վարդապետական աթոռ ասել դաս եւ մեկնել զգիրս աստուածաշունչ աշակերտելոցն եկեղեցւոյ մանկանց. նա իսկ թախանձելի թղթով եւ աղերսական բանիւ խնդրեաց ի մէնջ զայս իրագործութիւն, իբր յոյժ տեղեակ գոլոյ իւր լուծողական մեկնութեամբ յայտնեցելոցն եւ անյայտ եւ ծածուկ մնացելոցն:

Այլ եւ որ առ մեզ էին ուսումնակիցք եղբարք փափաքելով փութացուցանէին զմեզ յայս: Եւ մեր զի թէպէտ առճեռն էր պատճառն տկարութիւն մարմնոյ եւ անբաւականութիւն բանի, եւ տեղի եւս անպատշաճ ունողի, եւ կեանս ամբոխականս վասն նեղութեանցն, որ յաւուրս մերոյ ժամանակիս, մնայր անգործ յաւժարութիւն խնդրոյն:

Իսկ շնորհ ողորմութեանն աստուծոյ զթացեալ ի մեզ, այն որ տա թեւս աղաւնւոյ հոգւոյն արժանաւորաց եւ յարուցանէ զանկեալ բազմամեա անդամալոյծն, արձակեաց եւ զիս ի կապոյ շղթայից երկրաւոր ցնորից: Եւ ետ դուզնաքեա անապատ ի հանգիստ եւ զիւտ աւթեւանի եւ հասոյց ի լեառն հանգստեան սուրբ Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի (106), յանապատսն որ ընդ հովանեաւ նորին, յորում մանկական հասակին էաք վարժեալ յուսումն դպրութեան, յանապատն որ յանուն սուրբ Մինասին:

Անդ սկիզբն արարաք եղբարց ոմանց ասել զգիրս աստուածաշունչս եւ ի յիշումն ածաք զխնդիրս պատկառելի եղբարցն: Եւ յաստուած ապաւինեալ եւ ի շնորհս սուրբ Լուսաւորչին, եւ եկեղեցեաց **սուրբ լերինս**, եւ յաղաւթս եւ յոյս խնդրողացն, զայս առաջին պտուղ յանապատի կենաց ընծայեցաք սուրբ եկեղեցւոյ մանկանց:



Բայց ցուցից ձեզ եւ զայս, զի մի՛ յաւելորդ եւ յանպէտս թուիցի աշխատութիւնս մեր: Վասնզի մեծապատիւ իշխան Մագիստրոս, որդի Վասակայ մարտիրոսի եւ հայր կաթողիկոսին տեառն Գրիգորիսի, տէր Վահրամ կոչեցելոյ, աշխատել էր ի հաւաքումն մեկնութեան սորա, եւ մինչ առ մերս ժամանակ այնու վարժէին վարդապետքն մեր զաշակերտեալսն իւրեանց:

Ապա զինչ հարկ էր այլոց ի մէնջ զայս խնդրողաց, կամ մեր առ այս ձեռնարկութիւն յաւժարելոյ: Եւ ասացից նախ զպակասութիւն առաջնոյն.եւ երկրորդ զմերն յաւելուած բանից, եւ երրորդ սակաւ ինչ պատուէր հանճարասիրացդ աւանդեցից: Զի հմուտն իմաստութեան Մագիստրոս իշխանն, աշխատեալ ի սմա, եւ **երեք մեկնչաց** բանս առ միմեանս եդեալ՝ զԴաւթի փիլիսոփայի եւ զՄովսէսի քերթողի եւ զմիւս իմաստնոյ, որոյ ոչ էր գրեալ անունն, արարեալ եւ ինքն յաւելուած բանից յինքենէ, որոյ տացէ տէր վարձս աշխատանացն, զի ընդ իշխանական հօգաբարձութեանն եւ զայս ընձեռեաց մեզ աւժիտ:

Բայց զբանս մեկնողացն **ոչ էր խառնեալ ընդ միմեանս** եւ ոչ զիւրաքանչիւր մեկնութիւն հանդէպ եւ կշիռ բանին եդեալ: Էին եւ այլ մեկնիչք որք ոչ էին հանդիպե<ա>լ նմա: Եւ բազումք ի մասանց բանին ոչ ունէին զմեկնութիւն. եւ էր զի կրկին եւ երեքկին էր եդեալ զերից մեկնչացն: Եւ կարգ շարադրութեան, թէ ո՞ր առաջին եւ ո՞ր երկրորդն, ոչ ունէր զյարմարութիւն: Սակս այսորիկ որոց ոչ գոյր լուծումն տարակոյս առնէր մտաց եւ որոց կրկին էր՝ ձանձրութիւն ընթերցողին: Եւ նախադասութիւն եւ ստորադասութիւն ոչ ըստ տեղւոյ գոլով աշխատանս էր շարաբանութեան:

Իսկ մեր ժամանակաւ տարեալ հոգս ժողովել զմեկնութիւնս քերականին եւ գտաք առանձնակի զամենեցունց արարեալսն եւ եդեալ ի մի գիրք: Զոր ուսումնասէր պարոնն Յոհաննէս, որդի մեծապատիւ եպիսկոպոսին մայրաքաղաքին Եզնկայի, գտեալ ուրեք աւրինակս էին եւ տուեալ փոխել, յորում էր **Դաւթի փիլիսոփայի եւ Մովսիսի քերթողին** եւ այլ Գ̃ մեկնիչս առանց անուան մեկնողին. էր ի նմա եւ **Բարսղի** մեկնութիւն: Գտայ եւ յանապատն Դերջնա զՀամամայ Արեւելից վարդապետի մեկնութիւնն. այլ եւ ի բառագրոցն Ըստակիսի, յայսոցիկ մեկնողաց գրոց, այլ եւ աստի եւ անտի լուծումն բանից արարեալ մերոց իմաստնոց: Եւ էր զոր յայլ իմաստասիրական գրոց զյարմարն եւ զդէպն եւ զնմանն բերեալ եդաք ընդ համազաւրի բանին եւ յայսցանէ ամենեցունց արարաք զմեկնութիւնս զայս: Եւ էր զի ի զաւրութենէ տեղւոյն եւ շնորհաց ի մերս ծնանէր պիտանութիւն բանի ի միտս: Եւ զամենայն մեկնողացն բան կշիռ եւ հանդէպ բանին եդաք, զկրկին եւ **զերեկքին** բանիցն երկարութիւն ի միաւորութիւն խառնեցաք. եւ որոց ոչ գոյր լուծումն մասանց բանի, լիով եւ անթերի գտեալ լցաք զթերութիւն: Բազում եւ այլ դրուանս բանական արուեստի յայլմէ տեղւոյ առ ազգակիցն խառնեալ յաւելաք:

*Էր զի եւ յարուեստ բանականութեանս անուանց զյոլովս, որ անծանաւք էր մերում ազգի, որոց հասու եղաք, փոքր ի շատէ նշանակելով, ծանաւք մանկանց եկեղեցւոյ արարաք: Եւ այսպէս զմերս դիտաւորութեան աւարտեալ մաւր մեր եկեղեցւոյ սրբոյ ընծայեցաք եւ զմանկունս ուսման ի փոյթ տարին յաւժարամիտ արարաք:*

*Վասն որոյ պատուիրեմ ձեզ եւ յոյժ աղաչանաւք հայցեմ, մի՛ անփոյթ առնէք կրթիլ վարժմամբ փոքու այսու գրովք, զի մեծամեծ եւ յոլովս է տուեալ զաճումն մտաց եւ բազմաց է սա բանալի իմաստութեան դրանց:*

*Եւ յոյժ սրտաբեկեալ խոցիմ, յորժամ տեսանեմ զազգս մեր անփոյթ արարեալ զիմաստասիրական ուսմանց եւ զհմտութենէ արհեստից բանականաց, մինչ զի զհանգամանս անուանց իմաստասիրացն գրոց անտեղեակ գոլով, զորս յայտնեալ են հարքն մեր ի գիրս իւրեանց, զոր ընթեռնումք, զոր այժմ երկարութիւն համարիմ յիշել զանուանսն եւ կամ զպատճառ հեղգութեան ազգիս:*

*Այլ միայն զայս պատուիրեմ, մի՛ ոք որ անտեղեակն է արհեստի գրչութեան ձեռնարկեսցէ գրել զսա եւ տապալել զերկս աշխատութեան բանասիրացն, այլ ստոյգ եւ ուղիղ գրչաց տացէ փոխել, զի իւր եւ այլոց լիցի պիտանացու:*

*Եւ մի՛ ոք նեղապատեալ ծանձրութեամբ թողցէ զսակաւ բանք նախադրութեան իբրև զաւելորդ, որք փոխէքդ աւրինակաւ, կամ որք ասէք զայն աշակերտաց իբր յոլով աշխատութեան զսակաւն ոչ տալով բարեմտութեամբ փոխարէն սիրոյ. եւ այսորիկ այսքան:*

*Այսուհետև ի սկիզբն եկեսցուք առաջիկայ գրոցս, զոր տէր առաջնորդեսցէ: Ո՜հ զաղքատս ի պատուական զանձէս յիշեա ի տէր:*

Հովհաննեսի հաղորդման մեջ կան մեր խնդրի լուծման համար մի քանի արժեքավոր ցուցումներ: Ամենայն հստակությամբ այս ցուցումները հաստատում են Դավթի, Մովսեսի և երրորդ, իր իսկ Հովհաննեսի կողմից Անանուն կոչված մի անհայտ հեղինակի, քերականական աշխատությունների գոյությունը:

Դրանցից է օգտվել Գրիգոր [Մագիստրոսը] իր քերականությունը կազմելիս և օգտվել է այնքան լայնորեն, որ իր գործը ներկայացնում է հիշյալ հեղինակներից քաղվածքների «հավաքումն»՝ տեղ-տեղ իր սեփական հավելումներով հանդերձ: Ապա Հովհաննեսը հավաստիացնում է, որ ինքը ևս իր տրամադրության ներքո ունեցել է Դավթի, Մովսեսի և Անանունի գործերը՝ այն ընդօրինակությամբ, որն իրեն տրամադրել էր ուսյալ այր Հովհաննեսը, ծննդյամբ այն նույն Երզնկա քաղաքից, որից սերում էր նաև մեր հեղինակը: Երեք հեղինակների երկերը ամփոփված էին միևնույն մատյանում, որում



առկա էր նաև Բարսեղի՝ Մագիստրոսին անծանոթ կամ նրա կողմից չօգտագործված հեղինակի մեկնությունը: Հովհաննեսը հայթայթել է նաև Համամի մեկնությունը, որը նույնպես Մագիստրոսի ձեռքի տակ չի եղել: Բացի այդ, նա ներգրավել է նաև Արիստակեսի բառգիրքը, ինչպես և ուրիշ՝ փիլիսոփայական կամ այլ բովանդակության աղբյուրներ և հենվելով այս ամբողջ նյութի վրա, կազմել է իր երկասիրությունը: Հովհաննեսը կանխատեսում է այն հարցը, որ կարող է ծագել ընթերցողի մտքում, և ինքը բացատրում է, թե Մագիստրոսի՝ այդ մեծահամբավ հեղինակի աշխատության առկայության պարագային՝ աշխատություն, որ դպրոցներում որպես ձեռնարկ էր ծառայում, կարիք կա՞ր Հովհաննեսի մի նոր ձեռնարկության:

Ինչպես պարզաբանում է Հովհաննեսը, Մագիստրոսի գործը զերծ չէր որոշ թերություններից: Դրանցից ամենաէականը՝ շարադրանքի անկանոնությունն է: Դա կայանում էր նրանում, որ երեք հեղինակների մեկնությունները նա «*ոչ էր խառնեալ ընդ միմեանս*», այլ դրանք գալիս էին մեկը մյուսի հետևից առանձին-առանձին, ինչի պատճառով մեկնությունն իր գրաված տեղով չէր համապատասխանում մեկնաբանվող բնագրային [հատվածին]:

Այս վկայության իմաստն ըմբռնելու համար պետք է իմանալ, որ հիշված հեղինակների՝ Դավթի, Մովսեսի և Անանունի երկերը ոչ այլ ինչ էին, եթե ոչ Դիոնիսիոսի բնագրի մեկնություններ: Ընդորում յուրաքանչյուր գլուխ քննվում էր ըստ առանձին մասերի և պարբերությունների: Այսինչ գլուխն, ասենք, մեկնվել էր Դավթի, Մովսեսի և Անանունի կողմից: Մագիստրոսը բերում է դրանց մեկնությունները այնպես, ինչպես դրանք կան, դասավորելով մեկը մյուսից հետո: Մինչդեռ կարելի էր խմբավորել դրանք ըստ պարբերությունների, այսինքն՝ մեկնությունից առանձնացնել այն, ինչ նրանցից յուրաքանչյուրն ասում է տվյալ պարբերության վերաբերյալ, հավաքել [քաղվածքները] և դնել [համապատասխան] պարբերության ներքո:

Նյութի զատումն ըստ պարբերությունների Հովհաննեսին թվում է ավելի հստակ և նպատակահարմար, քան՝ ըստ գլուխների: Այդպիսի շարադրանքի դեպքում բացառվում են կրկնությունները, որ Մագիստրոսի որդեգրած համակարգի դեպքում անխուսափելի էր: Կարդալով, որևէ խոսքի մասին՝ դիցուք, անվան վերաբերող, Դավթի մեկնությունը, ընթերցողը պատրաստ է անցնելու հաջորդ խոսքի մասին: Սակայն նրան առաջարկում են ևս մի մեկնություն, թեև այլ հեղինակի, բայց նույն առարկային, նույն խոսքի մասին վերաբերող. այնուհետև գալիս է նաև երրորդ մեկնությունը՝ Անանունը: Ահա այսպիսի կրկնությունների, միևնույն թեմաներին անընդհատ վերադառնալու համար է դժգոհում մեր հեղինակը, այն համարելով ձանձրալի:

Գրիգոր Մագիստրոսի աշխատության թերությունների թվում Հովհաննեսը նշում է դրա մեջ եղած բացթողումները, ինչպես և պակասավոր լինելը՝

այն իմաստով, որ հեղինակը չէր օգտագործել որոշ նյութեր, օրինակ՝ Բարսեղի, Համամի և այլոց մեկնությունները։ Հովհաննեսի հավելումներն ու լրացումները, այն ամբողջ ավելցուկը, որը դիտվում է նրա երկում Մագիստրոսի [մեկնության] համեմատ, մենք ուսումնասիրել ենք ըստ իրենց աղբյուրների։ Բայց առայժմ գործի այս կողմը չէ, որ մեզ հուզում է։ Ներկա աշխատասիրության մեջ մեզ բացառապես հետաքրքրում է այն, ինչ միավորում է Հովհաննեսի և Մագիստրոսի երկերը, այն, ինչ ընդհանուր է դրանց միջև։ Մագիստրոսի, մասնավորապես նրա շարադրակարգի նկատմամբ Հովհաննեսի քննական դատողությունները մեզ ընձեռում են բանալի մի քանի կորած երկերի բացահայտման և վերականգնման համար։

Հովհաննեսի քերականական աշխատությունը առանձնանում է որոշ հետաքրքրական հատկանիշներով։ Այն գրական խճանկարի հետաքրքիր մի նմուշ է՝ վարպետորեն կարած զանազան աղբյուրներից քաղված կտորներից։ Ներածական և ամփոփիչ գլուխները չհաշված, ամբողջ գրքում իրեն՝ հեղինակին է պատկանում մի քանի էջ։ Նրա խնդիրն էր՝ մի ամբողջության մեջ շաղկապել տարբեր, շատ հաճախ միմյանց խորթ հատվածները։ Հովհաննեսի երկի գլխավոր արժանիքն այն է, որ նա, գերազանց բանասերի հմտությամբ յուրաքանչյուր մեջբերման դիմաց՝ լուսանցքում, նշում է հեղինակի անունը, կամ աղբյուրը, որից այն փոխառված էր։ Շարադրանքի նման ոճը նկատելի է նաև Վարդան վարդապետի, հայտնի պատմագրի երկում, նրա՝ Ծննդոց գրքի մեկնության մեջ (107)։ Այս աշխատությունը դեռևս հրատարակված չէ և մեզ մատչելի եղավ Վենետիկի ու Վիեննայի Մխիթարյանների ձեռագիր օրինակներով։ Մենք նկատեցինք, որ լուսանցքներում նշված են մեջբերումների աղբյուրները։ Վարդանից, հավանաբար, այս հնարը ժառանգել է և Հովհաննեսը, որ ինքն իրեն Վարդանի աշակերտ է համարում[1]։ Աղբյուրների նշման շնորհիվ Հովհաննեսի գործը պատմագրական մեծ հետաքրքրություն է ձեռք բերում։ Գրիգոր Մագիստրոսի քերականության բացակայության պարագայում անգամ, միայն Հովհաննեսի երկի շնորհիվ մենք կկարողանայինք պատկերացում կազմել մեզ չհասած որոշ ստեղծագործությունների մասին։ Հարկավոր էր [միայն] դրանից առանձնացնել հատվածներ, որոնք նա վերագրում է այս կամ այն հեղինակին, ի մի բերել և դասավորել Դիոնիսիոսի քերականության [շարադրանքին] համընթաց։ Այս դեպքում, [սակայն], տարակուսելի կմնար, թե որքանով այս կերպով վերականգնված՝ այսպես ասած, լաքակտոր բնագիրը ամբողջական է, և արդյոք այն չունի միջանկյալ բաց թողած մասեր։

[1] «Ցաղագս երկնային շարժմանց» գրվածքի հիշատակարանում՝ *Ես նուաստ Յոհանէս Երզնկայեցի, աշակերտ հոգելից հօրն եւ սուրբ վարդապետին Վարդանայ*, տե՛ս Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 512։



Մագիստրոսի աշխատությունը փարատում է այս, [անշուշտ] արդարացի կասկածները։ Երկու հեղինակների համատեքստերի բաղդատությամբ երևան է գալիս մի հետաքրքիր իրողություն. այն ինչ Հովհաննեսը բերում է ցրված, կցկտուր ձևով՝ երբեմն առանձին արտահայտությամբ կամ նույնիսկ բառով, Մագիստրոսի մոտ ներկայացված է միասնական, ամբողջական հատվածով։ Այլ կերպ ասած, Մագիստրոսն ու Հովհաննեսն իրենց տրամադրության ներքո են ունեցել միևնույն աղբյուրները, բայց օգտվել են տարբեր կերպ. Մագիստրոսը փոխառում է ամբողջական հատվածներով, իսկ Հովհաննեսը նույն հատվածները տրոհում է մանր կտորների և զետեղում ցրիվ, միահյուսելով դրանք այլ հեղինակներից քաղած նմանաբնույթ մեջբերումներին։ Մագիստրոսն իր աղբյուրները չի նշում, իսկ Հովհաննեսը յուրաքանչյուր մեջբերման դիմաց լուսանցքում գրում է հեղինակի անունը։ Հովհաննեսի ցուցումները միաժամանակ [կարող են] հիմք ծառայել Մագիստրոսի երկի վերլուծության, մասնատման և դրա կազմից՝ օգտագործած յուրաքանչյուր հեղինակին պատկանող հատվածների առանձնացման համար։ Մեր խնդիրն է՝ երկու հեղինակների՝ Մագիստրոսի և Հովհաննեսի շարակարգի բաղդատությամբ վերականգնել նրանց կողմից ներառված ավելի վաղ երկասիրությունները։

Նշված խնդիրը լուծելու համար նախ հարկավոր էր պարզել Հովհաննեսի ցուցումների հավաստիության աստիճանը՝ ցուցումներ, որոնք մեր աշխատանքի ելակետ և հիմք էին կազմում, պարզել, թե որքան մեծ կարող է լինել մեր վստահությունը դրանց հանդեպ։ Լուսանցքներում ցրված ցուցումները ստուգելու համար պահանջում էր քննական համակարգ, որը բնավ չէր [կարող] սպառվել գրչագրերի սովորական բաղդատությամբ։

Բանն այն է, որ ոչ միշտ պարզ է բնագրի և լուսանցքում դրան կցվող հեղինակի անվան առնչությունը։ Շատ հաճախ դժվար է որոշել տվյալ անվան վերաբերող հատվածի սկիզբն ու վերջը։ Հովհաննեսն ազատ է վարվում իր աղբյուրների հետ՝ փոխառելով դրանցից էջեր, արտահայտություններ կամ առանձին բառեր, նա չի առանձնացնում, չի մեկուսացնում դրանք, այլ շարում է կապակցված շարադրանքի ընդհանուր թելի վրա, այլ հեղինակներից համանման փոխառությունների հետ մեկտեղ։ Երբեմն ստացվում է այնպիսի խառնուրդ, որ հեղինակը ստիպված է լինում դրա դիմաց դնել մի քանի անուն միասին։

Դրա հետևանքով միշտ չէ, որ հաջողվում է որոշել, թե ինչն ում է պատկանում։ Այս գործը վեր է եղել նաև ընդօրինակողների՝ սովորական դպիրների ուժերից. նրանց գրչի ներքո լուսանցքում նշվող անունները վերև-ներքև էին ցատկում՝ երբեմն մի քանի տողով, նախ և առաջ զուտ արտաքին պատճառներով։ Որքան որ գրագիրները ցանկանային հնարավորին չափ հարա-

զատ մնալ նախազաղափար ձեռագրին, չէին կարող այնպես համակերպվել, որ պատճեններին այն տող առ տող: Չափսերի տարբերությունն անգամ բավական էր, որպեսզի տողերը այլ կերպ բաշխվեին, ուստի և խառնաշփոթ առաջացնեին հեղինակների անունների` համապատասխան տողերի դիմաց դասավորության մեջ:

Մեր կողմից կատարված` ձեռագրերի բաղդատությունը դժվար թե նպաստեր այս գործին: Թեպետ կարիք էլ չի եղել, մեր աշխատանքի հիմք ծառայած` Թորոս [գրչի] օրինակի անկասկած բարձր որակի պատճառով: Այնուամենայնիվ երբեմն մենք ստիպված ենք եղել դիմելու այլ օրինակների ևս: Լինում էին դեպքեր, երբ լուսանցքում չկար ակնկալվող անունը, կամ նկատվում էր, որ անունը համապատասխան տողերից տեղաշարժվել էր վերև կամ ներքև: Պարզ էր, որ լավագույն օրինակը ևս զերծ չէ թերություններից[1]: Ձեռագրերն անզոր էին վերացնել աշխատանքի ընթացքում ծագող կասկածները: Այսպիսի դեպքերում մեզ փրկում էր միմիայն մեր աշխատանքի հիմնաքարը կազմող մեթոդը:

Հայ հեղինակների քերականական գրվածքներն ըմբռնելու համար նախ և առաջ հարկավոր է Դիոնիսիոսի բնագրի կատարյալ իմացություն: Բոլոր գրվածքները շրջաքերվում են Դիոնիսիոսի *Արվեստի* շուրջ, որը առավելապույնս (par excellence) կոչվում էր քերականություն` *քերական* (108): Ուստի մենք ձեռնամուխ եղանք Դիոնիսիոսի ուսումնասիրությանը և ավելորդ չհամարեցինք բազմաթիվ ձեռագրերի ներգրավմամբ վերստին հրատարակել [նրա երկը][2]: Գրիգոր [Մագիստրոսն] ու Հովհաննեսն ընթանում են Դիոնիսիոսի հետքերով, ընդորում ամեն անգամ բերում են նրա խոսքերը, և հետո միայն առաջարկելով սեփական մեկնությունը: Նույն կարգին հետևել են նաև այն ավելի վաղ հեղինակները, որոնց երկերից նրանք օգտվել են:

Ուշադիր կարդալով Գրիգոր [Մագիստրոսի] բնագիրը, դժվար չէ նկատել, որ նույն պարբերության ներքո մեծ մասամբ զետեղված են մի քանի մեկնություն, միևնույն հարցին հեղինակը վերադառնում է մի քանի անգամ: Պարզ է, որ նա իր առջև է ունեցել տարբեր հեղինակների երկերը և մեջբերում էր նրանցից յուրաքանչյուրի խոսքերը: Ովքեր են նրանք և ում ինչ էր պատկանում` այս հարցերը պարզաբանելու համար դիմում ենք Հովհաննեսին: Վերջինս կամ ամբողջությամբ է արտագրում Գրիգորից տվյալ տեղին, կամ էլ բերում է նույն կշռադատությունը բաժան-բաժան կտորներով,

[1] Դիցուք, Թորոսի գրչագրում, եթե մեր ուշադրությունից չի վրիպել, բաց է թողնված Դավթի անունը $172_{7-8}$ բնագրի դիմաց, և Անանունինը` $143_{8-17}$ դիմաց:

[2] Առաջին հրատարակությունը լույս է տեսել Փարիզում 1830 թ.: [Այն պատրաստվել էր Փարիզի] Ազգային գրադարանում պահպանվող` Հովհաննես Երզնկացու [մեկնության] երկու օրինակների հիման վրա [Հ.] Cահան-Ջրպետյանի աշխատասիրությամբ` Grammaire de Denis de Thrace, “Mémoire sur les langues dialectes et patois” [մատենաշարում] (109):



որոնք երբեմն ներմուծվում են այլ աղբյուրներից փոխառված խոսքի մեջ: Սակայն նա լուսանցքում ամենուրեք, յուրաքանչյուր մեջբերման դիմաց նշում է, թե ով է հեղինակը: Այս պարագայում ցուցումներում պատահող անճշտությունները, որոնց մասին ասացինք վերը, բազում դեպքերում այլևս լուրջ խոչընդոտ չեն հարուցում: Եվ իրոք, եթե այն, ինչ ցրիվ է Հովհաննեսի մոտ, ամբողջական տեսքով կա Մագիստրոսի մեկնությունում, ուրեմն ամենևին էլ դժվար չէ Մագիստրոսի բնագրի հիման վրա որոշել, թե որտեղ է տվյալ հեղինակի պատառիկի սկիզբն ու վերջը, եթե անգամ դրա հեղինակի անունը լուսանցքում նշված լինի անճշտորեն` իրեն պատկանող տողերից բարձր կամ ցածր: Մի խոսքով, Հովհաննեսի օգնությամբ որոշում ենք հատվածի հեղինակին, իսկ Մագիստրոսի բնագրով` դրա ճշգրիտ ծավալը:

Այս ամենը և առհասարակ մեր աշխատանքի ընթացքը ընթերցողի համար ավելի ակնառու կլիներ, եթե մենք Մագիստրոսի աշխատության հետ միկտեղ հրատարակեինք նաև Հովհաննեսի երկասիրությունը: Սակայն վերջինիս հրատարակումը հարկ եղավ հետաձգել: Թեպետ, Մագիստրոսի քերականության հրապարակումը այնպես է կատարված մեր կողմից, որ առանց այդ էլ գործի էությունը մեր առջև երևան է գալիս ամենայն պարզությամբ:

Մագիստրոսի երկը, որը ներառել էր վաղ հեղինակների մեկնություններ, ինքն իր հերթին ամբողջությամբ ներմուծվել է Հովհաննեսի քերականության կազմի մեջ: Մագիստրոսի առնչությունը ներգրավված հեղինակների հետ, ինչպես և Հովհաննեսի առնչությունը Մագիստրոսի հետ, ցայտուն կերպով երևում է մեր հրատարակության մեջ: Մագիստրոսի համահավաք աշխատությունը տարալուծված է բաղադրամասերի. կողքից, տողի սկզբից, յուրաքանչյուր հատվածից առաջ մենք նշում ենք դրա հեղինակի անունն ըստ Հովհաննեսի տվյալների և սահմանազատում ենք այն փակագծով աջ կողմից[1]: Ստացված արդյունքը միանգամայն արդարացնում է Մագիստրոսի աշխատության խորագիրը, որը վկայում է, որ երկը բաղկացած է *«այլոց»* գործերից` հեղինակի հավելումներով: *«Այլք»*-ը, պարզվեց, Դավիթը, Անանունը, Մովսեսն ու Ստեփանոսն էին: Առանձնացնելով այն, ինչ պատկանում էր նրանցից յուրաքանչյուրին, մենք զետեղեցինք համապատասխան անունների ներքո:

Ստացվեցին քիչ թե շատ ամբողջական գրվածքներ, հատկապես` Դավթինն ու Ստեփանոսինը, որոնք համապատասխանում էին Դիոնիսիոսի բազմաթիվ դրվագներին: Գրվածքների ըմբռնումը դյուրացնելու նպատա-

[1] Նույնպիսի փակագծերով` երկու կողմից դրված, նշվում են նաև մեր սրբագրումները, եթե, մեր կարծիքով, տվյալ անունը պակասում էր. կլոր փակագծերը ցույց են տալիս, որ անունն ավելորդ է:

կով մենք հարկ համարեցինք յուրաքանչյուր հատվածին նախադրել Դիոնիսիոսի համապատասխան դրվագը կամ պարբերությունը, անջատելով բնագրից հատուկ փակագծով[1]: Լուսանցքում նշվում են Մագիստրոսի և Հովհաննեսի երկերի թերթերը ըստ Ա. դ. 875 և Է.գ. 306 ձեռագրերի[2]: Այս ցուցումները կոչված են լուսաբանելու, թե ինչ կապակցությամբ կամ հաջորդականությամբ են ընթանում տվյալ բնագրի մասերը երկու բանաքաղ հեղինակների մոտ: Ինչպես ասվեց, տարբեր հեղինակներից փոխառված հատվածները նրանց մոտ միախառնված են: Լուսանցքում մեր մատնանշած էջերը փաստում են միայն փոխառված հատվածի սկիզբը, անկախ նրանից, թե հատվածը ձեռագրում որքան թերթ է գրավում: Եթե միևնույն էջում բնագիրն ընդհատվում է մի քանի անգամ, ապա ամեն անգամ նշվում է թերթի համարը. իսկ եթե բնագիրը ընթանում է անընդմեջ մի քանի էջում կամ թերթում, ապա բավարարվում ենք միմիայն սկզբի էջի նշմամբ:

M և E նիշերի կրկնությունների հաճախականությունից ելնելով, կարելի է դատել այն մասին, թե որքան հաճախ է ընդհատվում բնագիրը խորթ տարրերով թե՛ Մագիստրոսի երկում, և թե՛ Հովհաննես Երզնկացու: Նույն դիտարկումը հնարավորություն է ընձեռում ստուգելու Հովհաննեսի դատողությունը Մագիստրոսի գործի, ինչպես և իր՝ դրա հետ առնչվելու մասին:

Նախ՝ որոշ տարակուսանք է առաջացնում Հովհաննեսի խոսքն այն մասին, թե Մագիստրոսն օգտվել էր երեք մեկնիչների՝ Դավթի, Մովսեսի և Անանունի երկերից: Մինչդեռ Մագիստրոսի աշխատության վերլուծությունը ցույց է տալիս, որ նա օգտվել էր նաև Ստեփանոսից: Իհարկե, Ստեփանոսի անվան բացթողումը կարելի է վերագրել գրչագրի խաթարվածությանը[3], բայց թվում է, թե սա սովորական գրչի սայթաքում (lapsus) է, որ թույլ է տվել հեղինակն ինքը:

Հովհաննեսի հավաստմամբ, «զբանս մեկնողացն ոչ էր խառնեալ ընդ միմեանս»[4]: Այս դրույթն ընդհանուր առմամբ արդարացված է. իսկապես, բացի երկու առաջին գլուխներից, որտեղ Մագիստրոսը փորձում է միախառնել իր աղբյուրների տվյալները, բոլոր մնացած մասերում նա աշխատում է հետևել Հովհաննեսի նշած համակարգին: Դա կարելի է դիտել և մեր հրատարակած բնագրում: Երրորդ գլխից սկսած, Մագիստրոսը բերում է հիշված հեղինակների հատվածներն առանձին-առանձին. այսպես, օրինակ՝

[1] Այնտեղ, ուր փակագիծ չկա՝ Դիոնիսիոսի խոսքերը մեջբերել է ինքը՝ մեկնության հեղինակը:

[2] M տառանիշին կից թվերը նշում են ձեռագրի էջերը, իսկ E տառանիշից հետո՝ թերթերն ըստ մեր էջակալման:

[3] Փոխանակ *երեք* (գ) *մեկնչաց*, տե՛ս, էջ LXXXVII, կարելի է կարդալ դ̃ *մեկնչաց*, և վարը, *զՄովսէսի*-ց հետո ավելացնել *<եւ զՍտեփանի>*.

[4] Տե՛ս, էջ LXXXVIII:



3-րդ գլխում հերթով գալիս են՝ Մովսես, Դավիթ, Անանուն, Ստեփանոս,
4-րդ գլխում՝ Ստեփանոս, Մովսես, Անանուն, Դավիթ,
5-րդ գլխում՝ Դավիթ, Անանուն, Մովսես,
6-րդ գլխում՝ Դավիթ, Անանուն, Ստեփանոս, Մովսես և այլն:

Մագիստրոսի և Հովհաննեսի շարադրանքի տարբերությունը ցայտուն կերպով երևան է գալիս 13-րդ՝ «Յաղագս անվան» գլխում[1]: Մագիստրոսը բերում է Դավթի մեկնությունը (որից հետո գալիս է իր իսկ Մագիստրոսի հավելումը), այնուհետև նույն թեմային վերաբերող Անանունի, ապա Ստեփանոսի և, վերջապես, Մովսեսի մեկնությունը: Մինչդեռ Հովհաննեսը չորս հեղինակների մեկնությունները միահյուսել է, որի հետևանքով Դավթի միահետ բնագիրը նա մասնատել է մոտ երեք տասնյակ կտորների: Դիոնիսիոսը տարբերակում է անունների առնվազն 23 տեսակ: Մագիստրոսը զետեղում է բոլոր 23 հատվածների մեկնությունները նախ ըստ Դավթի, ապա՝ ըստ Անանունի և այլն: Իսկ Հովհաննեսը յուրաքանչյուրից վերցնում է այն, ինչ ասվում է անվան ամեն մի տեսակի վերաբերյալ և բոլորը զետեղում է միասին: Այսպես, օրինակ, Դավթի՝ *փաղանուն* (հոմանիշ) [հատվածին] վերաբերող խոսքերից հետո (էջ $109_{16-19}$) Հովհաննեսն անմիջապես բերում է Անանունի մեկնությունը նույն բառի վերաբերյալ (էջ $144_{22-24}$), ապա Ստեփանոսի խոսքերը (էջ $209_{14-18}$): Եվ միայն հետո Հովհաննեսը անցնում է անվան հաջորդ՝ *բերանուն* տեսակին, և հերթով բերում է նույն հեղինակների մեկնությունները, սկսելով Դավթից (էջ $109_{20-21}$):

Աշխատելով այս եղանակով, Հովհաննեսը, բնականաբար, երբեմն փոխատեղում է արտահայտությունները, կամ շարադրում սեփական խոսքերով, կամ բաց է թողնում առաջացած ավելորդ կրկնությունները՝ շարադրանքն ավելի կուռ և հավաք դարձնելու նպատակով: *«Յաղագս անուան»* դրվագի վերջում նա զետեղել է մի դիտողություն, որը պարզաբանում է նրա վերաբերմունքը Մագիստրոսի բնագրի նկատմամբ. «*Որք հմուտ եւ տեղեակ իսկ էք առաջնոյ աւրինակին, որ յաղագս անուանն ճառի եւ այժմ տեսանէք միայար եւ ըստ կարգի, զորս երեք եւ չորք կրկին էր եղեալ, կարծեմ եւ յուսամ, թէ դիւրութեամբ եւ հեշտաբար յընթեռնուլն եւ յացտիլն յիշէք զսակաւ աշխատանս մեր*»[2] (110): Հեղինակի դիտողությունը միանգամայն արդարացվում է փաստացի դրությամբ:

Զանազան մեկնությունները միասնական գրվածքի վերածելու Հովհաննեսի ծրագիրը դյուրին չէր: Սակայն հակառակ աշխատանքը, այն է՝ այս գրվածքը սկզբնական բաղադրամասերի տարրալուծելը, շատ ավելի դժվար է:

[1] էջ 238-245:

[2] Տե՛ս վերը, էջ XXXIII:

Բնագրերի հրատարակությանը ուղեկցող ծանոթագրություններում մենք վերլուծում ենք վիճահարույց դեպքերն ու տեղիները, և ըստ կարելվույն տալիս ենք դրանց բացատրությունները: Դեպքերի մի մասը իրենց ծագման առումով բավականին պարզ են, ուստի և կարիք չկա դրանց անդրադառնալու: Դրանք ավելի շուտ աղավաղված տեղիներ են և վեճի առարկա չեն: Այդպես են բոլոր այն դեպքերը, երբ Հովհաննեսի հատվածները Մագիստրոսի համեմատ [այս կամ այն հեղինակին] սխալ են վերագրվում: Դրանցից գլխավորներն են.

էջ $83_{16-19}$, $85_{2-4}$, $85_{9-14}$. առաջին երկու հատվածները սխալմամբ նշված են *Այլ, Այլուստ*, իսկ հաջորդը վերագրված է Ստեփանոսին:

$94_{12-17}$, որտեղ բաց է թողնված Դավթի անունը՝ դեպքը հատկանշական է. *զբնութեամբ երկարսն—սղիցն* բառերը E, այսինքն՝ Հովհաննեսի բնագրում հետևում են Անանունի խոսքերին առանց հեղինակի մատնանշման: Բայց որ դրանք պատկանում են ոչ թե Անանունին, այլ Դավթին, երևում է ոչ միայն Մագիստրոսի մեկնությունից, այլև այն հանգամանքից, որ վերջին արտահայտությունը՝ *որք ի ձգելն—սղիցն,* Հովհաննեսը բերում է կրկին անգամ, և հաջորդող խոսքերի հետ միասին վերագրում է Դավթին:

$95_{3-4}$, *նոյնպէս--ալրինակիդ* ներմուծված է Համամի խոսքի մեջ, [իսկ] ծանոթագրություններում նշված չէ:

$95_{10-11}$, արտահայտությունը կցված է Անանունի խոսքերին, թեև պատկանում է Դավթին:

$96_{21}$, վանկի մասին գրվածքին անմիջապես հարում են նույն առարկային վերաբերող խոսքեր, էջ $135_{2-7}$, որոնք պետք է վերագրել Անանունին, թեև Հովհաննեսի մոտ նրա անունը նշված չէ:

$101_{14-20}$, բաց է թողնված Դավթի անունը. այս մասը և հաջորդը՝ մինչև էջ $102_{2}$ Մագիստրոսի երկում զետեղված է նախորդ, ԺԱ գլխում:

$110_{1-4}$, բերված է *Այլ* անվան ներքո:

$112_{1-2}$, *զի երկոքումք հարկաւոր է վարել անուան* Հովհաննեսի գրվածքում գտնվում է Ստեփանոսի խոսքերի մեջ: Հաջորդ արտահայտությունը՝ *վասն զի--էին* Մագիստրոսը կապում է *հաստատաղութիւնք*-ի հետ, սակայն հնարավոր է, որ այն հաջորդ գլխի ներածականն է:



$130_{5-7}$, սխալմամբ վերագրված են Մովսեսին:

$135_{2-7}$, բաց է թողնված Անանունի անունը և այն կարող էր սխալմամբ ընկալվել իբրև Դավթի մեկնության շարունակություն:

$168_{2-5}$, հաջորդում է Անանունի, էջ $136_{21}$ խոսքերին, սակայն պատկանում են ոչ թե նրան, այլ ուրիշ հեղինակի՝ հավանաբար, Մովսեսին:

Նույն բնույթի են նաև էջ $147_{2}$, $147_{23-24}$, $149_{5-6}$, $150_{17}$-$151_{2}$, $187_{5-7}$, $191_{14-23}$, $211_{23-25}$ և այլ տեղիների խաթարումները:

Բայց կան իսկապես վիճահարույց, ավելի իրազեկին լուսաբանման կարոտ դեպքեր: Թե ինչպիսիք են այդ դժվարությունները և ինչպես են հաղթահարվում, կերևա հետևյալ օրինակից: Խոսքն այն մասին է, թե ինչ է նշանակում **ողբերգություն ու կատակերգություն**: Բերում ենք Մագիստրոսի բնագիրն ամբողջությամբ.

a. ***Իսկ ողբերգութիւն*** *նախազերգութիւն ասի ըստ յունականին առ ի պաշտաւն առեալ Դիոնիսեա ումեմն տաւղի որթոյ, որ է պատմութիւն յայտնի:*

b. ***Եւ է ողբերգութիւնդ ոչ աշխարհական քան թէ արարուած քերդողաց*** *զքաջացն գործեցեալ իրս եւ զաւրութիւնս պատմել ահաւորապէս եւ չքնաղ հանգոյն ըստ գործեցելոցն զերազանցութեամբ ամենայնիւ դիւցազնաբար եւ ոչ կաղս ի կաղս ինչ եւ քամահելիս:*

c. ***Իսկ զկատակերգութիւն,*** *որ եւ արարուածք քերթողացն ըստ իւրում պատշաճի:*

$a_{1}$. ***Քանզի զողբերգութիւնն*** *սակս այնորիկ ասեն նախազերգութիւն, զի զողբերգութիւնս իւրեանց ի սկսանելն եւ ի կատարելն նախազաւք մեծարեալ լինէին, որք նուիրէին ձաւնեալք Դիոնիսի զտաղի որթոյ:*

$b_{1}$. ***Եւ զողբերգութիւն դիւցազնաբար,*** *քանզի արարուած քերթողացն է:*

$a_{2}$. *Նա և մխիթարական, զորս* ***ի վերայ մեռելոց եւ կամ այլ ինչ*** *թշուառութիւն կրելոց առնեն:*

$b_{2}$. ***Իսկ դիւցազնաբար՝*** *զյորդորականն* ***ասէ եւ զքաջալերականն*** *եւ զներբողականն ի կենացս վաղճանելոցն:*

$c_{1}c_{2}$. ***Իսկ ասելն եթե զկատակերգութիւն*** *աշխարհաւրէն.* ***կատակերգութիւն արարուած*** *է քերդողաց, յանդիմանութիւն* ***վատ կենցաղավարելոց եւ անարի ծուլիցն եւ ընչասիրացն,*** *որ ունի խրատս եւ յանդիմանութիւնս*

*պիտանացու յաշխարհա<կա>ն ի(ւ)րս: Եւ ի վերայ այսպիսեացն զեպերականն եւ զհեզնականն առնել ճառս եւ առիչս որպէս ռամիկքն սովորաբար սահղծանեն առ այնոսիկ. խույնպիսեաւ վարեսցիս եւ դու յընթեռնույն զայնոսիկ:*

Կողքից a b c տառերով նշված առաջին հատվածը վերաբերում է *«ողբերգութիւն»*, *«դիւցազնաբար»* և *«կատակերգութիւն»* բառերի մեկնությանը:

Երկրորդը՝ $a_1b_1$ տառերով, արծարծում է միմիայն առաջին երկու բառերը:

Երրորդ՝ $a_2b_2$ հատվածը նույնպես վերաբերում է այս երկու բառերին:

Եվ, վերջապես, վերջին հատվածում քննվում է *«կատակերգութիւն»* բառը, ընդորում հնարավոր չէ չնկատել, որ այստեղ ևս կա կրկնակի մեկնություն:

Պարզ է, որ այստեղ բերվում են երեք հեղինակներին պատկանող խոսքեր: Առաջինին պատկանում են abc-ն, երկրորդին՝ $a_1b_1$, երրորդին՝ $a_2b_2$, իսկ վերջին հատվածը ներառում է երկու հեղինակների մեկնությունները՝ $c_1c_2$: Ովքեր են այս հեղինակները՝ հարցին պատասխանում է Հովհաննեսը: Իմանալով Հովհաննեսի աշխատանքային հնարները, կարելի է, նույնիսկ չնայելով բնագրին, ասել, որ նա այս ամբողջ նյութը շարադրելու է հետևյալ հերթականությամբ. ab $a_1b_1$ $a_2b_2$, և հետո նոր՝ $c_1c_2$: Եվ իրոք, Հովհաննեսի բնագիրը համոզում է մեզ, [որ դա այդպես է], և դա երևում է հետևյալից՝

a. ***Զի զողբերգութիւն** ի հայումս նոխազերգութիւն ասի ըստ յունականին առ ի պաշտաւն առնելոյ Դիոնեսեա ումեմն զտողի որթոյ, որ է պատմութիւն յայտնի:* ԴԱՒԹ

$a_1$. Եւ զողբերգութիւն սակս *այնորիկ ասեն **նոխազերգութիւն**, զի յողբերգութիւնս իւրեանց ի սկսանելն եւ ի կատարելն նոխազուք մեծարեալ լինեին, որք նուիրեն ձաւնեալք Դիոնիսեա:* ԱՆԱՆ.

b. *Եւ **դիւցազնաբար** ասէ. զի է **ողբերգութիւն ոչ աշխարհական** ձայն զոհեկաց քան թէ արարուած քերթողացն վեհականաց, զքաջացն գործեալ իրս եւ զաւրութիւնս պատմել ահաւորապէս եւ չքնաղ հանգոյնս գործեցելոցն զերազանցութեամբ ամենայնիւ դիւցազնաբար եւ ոչ կաղս ի կաղս ինչ եւ քամահելիս:* ԴԱՒԹԻ

$b_1$. ***Զի քերթողացն է արարուած եւ զի դիւցազանց իմն եղելոց** իրք են եւ պիտանացու:*

$a_2$. ***Նաւ մխիթարական**, զորս ի վերայ մեռելոցն եւ կամ այլ ինչ **թշուառութիւն** կրելոցն առնեն:* ՍՏԵՓ.

$b_2$. ***Իսկ դիւցազնաբար՝ զյորդորականն ասէ եւ զքաջալերականն** եւ զներբողականն ի կենցաղս վաղճանելոցն:*

$c_1c_2$. ***Իսկ ասելն զկատակերգութիւն աշխարհաւրէն**. կատակերգութիւն **արարուածք է քերթողացն**, որ եւ պիտանացու իսկ է [**եւ բաժանի երկակի, ոմանց յանդիմանութիւն վատ կենցաղավարութեան եւ ոմանց յաւժարութիւն ի բարի կենցաղավարութեան], որ ունի խրատս բազումս պէսպէս դիմաւք: Կարգեալ յաւրինակ եւ ի խրատ վայելչական պիտոյիցն:*** ԴԱՒԹԻ ԵՒ ԱՆԱՆ.

***Վատ կենցաղավարելոցն եւ անարի եւ ծուլիցն եւ ընչասիրացն եւ ի վերայ նոյնպիսեացն զեպերականն եւ զհեզնականն առնել ճառս եւ առիչս, որպէս ռամիկքն սովորաբար սահղծանեն առ այնոսիկ: Սոյնպիսեաւ վարեսցիս եւ դու յընթեռնուլն:*** ՍՏԵՓ.

Այստեղից երևում է, որ մեջբերված հատվածներն իրոք պատկանում են տարբեր հեղինակների՝ Դավթին, Անանունին և Ստեփանոսին: Մեր կռահումը շարադրակարգի վերաբերյալ արդարանում է միայն Դավթի և Անանունի նկատմամբ: Ստեփանոսի $a_2b_2$ խոսքերը շղթայի մեջ չեն տեղադրված, այսինքն՝ $a_2$ չի հետևում $a_1$-ին, իսկ $b_2$-ը՝ $b_1$-ին, ինչպես սպասելի էր, այլ հարում են Անանունին այնպես, ինչպես Մագիստրոսի գրվածքում: Թերևս այս դեպքը պետք է բացատրել այն հանգամանքով, որ Մագիստրոսի մոտ նույնպես դրանք ինքնուրույն քերականական կշռադատություն չեն, այլ կապված են Անանունի նախորդ՝ խոսքերի հետ, ուստի և Հովհաննեսը անկարելի համարեց խզել այս կապը:

Ինչ վերաբերում է կատակերգության մեկնությանը, այսինքն՝ c $c_1$ $c_2$ հատվածներին, ապա Հովհաննեսը, հավատարիմ մնալով իր որդեգրած համակարգին, զետեղել է դրանք միասին: Դժվար է տարրալուծել և մատնանշել, թե ում ինչ է պատկանում, գլխավորապես այն պատճառով, որ Հովհաննեսի և Մագիստրոսի շարակարգերը փոքր-ինչ միմյանցից տարբերվում են:

Ըստ Մագիստրոսի, Դավթին է պատկանում c արտահայտությունը, այն է՝ *իսկ զկատակերգութիւն <աշխարհաւրէն>, որ են արարուածք քերթողացն ըստ իւրում պատշաճի.* իսկ $c_1$ $c_2$ դրվագներից $c_1$-ին պետք է վերագրել առաջին մասը, այսինքն՝ մինչև *ընչասիրաց յաշխարհական իրս*, իսկ մնացածը

կկազմի $c_2$-ը: Մինչդեռ Հովհաննեսի մեկնությունում Դավքի c-ն միաձուլվել է Անանունի առաջին արտահայտության հետ, ուստի և նրանց անունները լուսանցքում նշված են միասին: Հովհաննեսը կարդում է ինչ-ինչ բառեր, որ պակասում են Մագիստրոսի մոտ. արդյո՞ք դրանք պետք է համարել հեղինակային հավելում, թե դրանք իրոք եղել են Հովհաննեսի օգտագործած [Մագիստրոսի երկի] օրինակում: Վերջին դեպքում ավելորդ արտահայտությունը՝ *եւ բաժանի երկակի*, մինչև *բարի կենցաղավարութեան* ավելի ճիշտ կլիներ վերագրել Դավքին: Դրան հաջորդող և իմաստով համազոր արտահայտությունը՝ *որ ունի*, մինչև *պիտոյից*, որը Մագիստրոսը տեղադրում է *որ ունի խրատս* մինչև *իրս* [հատվածի] համատեքստում, պատկանում է այլ հեղինակի, այն է՝ Անանունին (111): Իսկ այն, ինչ հետևում է սրան, Հովհաննեսի ցուցման համաձայն, փոխառված է Ստեփանոսից: Այսպիսի նկատառումներով ենք մենք ղեկավարվել վիճահարույց կետերը քննելիս:

Դավքի գրվածքը շեշտի մասին Մագիստրոսի մոտ ավարտվում է՝ *ոչ է միջոց, նախադասելով սորա զոլորակն, քանզի մարդկային բարբառոյ է* արտահայտությամբ: Այնուհետև գալիս են Անանունի խոսքերը նույն առարկայի վերաբերյալ՝ *իսկ ասելն – զպարոյկն*, $129_{18-22}$, և անմիջապես հետո՝ *եւ դարձեալ տարակուսելի է թե ընդէր արդեւք զոլորակն կիտին նախադասեաց. ասեմք, վասն զի հարկաւոր է յասացուածին նախ զոլորակին ունել զկարգ եւ ապա կիտին, որպէս աւդասլից երամոցն*, $122_{23}$-$130_3$. այս խոսքերը Հովհաննեսը վերագրում է Դավքին:

Ապա Մագիստրոսն անցնում է տրոհության նշաններին և բերում է զանազան հեղինակների խոսքերը. դրանց վերջում, Անանունի՝ ստորակետի մասին խոսքերից հետո, *տրամախոհութիւնն* ($130_{21}$) բառին հարելով, կրկին հայտնվում է *քանզի հարկաւոր է յասացուածին նախ զոլորակին ունել զկարգ եւ ապա կիտին* ($91_{13}$) արտահայտությունը, և դրան հաջորդող տրոհության նշանների մասին դրվագը, որը վերագրվում է Դավքին:

Այս խոսքերը սերտորեն կապված են վերոհիշյալ և Անանունից մեջբերված խոսքերով ընդհատված արտահայտության հետ. *ոչ է – բարբառոյ է*: Խոսքն այն մասին է, թե ինչու Արվեստավորը, այսինքն՝ Դիոնիսիոսը, նախ ճառում է շեշտի, և ապա միայն՝ տրոհության նշանների մասին: Դավքի կարծիքով, դրա համար կա երկու նկատառում. նախ և առաջ, շեշտը՝ մարդկային խոսքի սեփականությունն է, և ապա՝ շեշտը խոսքի մեջ իսկ նախորդում է տրոհության նշաններին: Իսկ *եւ դարձեալ տարակուսելի է – երամոցն* մեջբերումը այս մտքի կրկնությունն է, ուստի և, Հովհաննեսի ցուցման հակառակ, չի կարող, պատկանել նույն Դավքին, այլ, հավանաբար, պետք է վերագրվի Անանունին: Թերևս այս արտահայտությամբ Անանունը, Դավքի նման, ավարտում էր շեշտի մասին իր ճառը, կամ սկսում էր հաջորդ՝ [տրոհության] նշանների մասին գլուխը: Անանունը շատ բանով կախված է Դավքից. այս խոսքերը նա փոխառել է Դավքից, և Հովհաննեսը հիմք ուներ դիտել դրանք իբրև Դավքի սեփականություն:

Մագիստրոսի տրամադրության ներքո եղած Դավքի մեկնության օրինակը, հավանաբար, գլուխների ցանկ չի ունեցել: Այս պատճառով Մագիստրոսն երբեմն չէր կարող որոշել, թե ինչին է վերաբերում տվյալ արտահայտությունը՝ արդյոք այն ամփոփում է գլուխը, թե սկսում է նորը: Օրինակ՝ *այսպէս դնելով երկայնս եւ սուղս* ($98_{10}$) խոսքերը ավարտում են երկար վանկի մասին գրվածքը Մագիստրոսի ձեռագրի էջ 68-ում, և կրկին հայտնվում են էջ 71-ում, կարճ վանկի մասին գլխի սկզբում, էջ $98_{13}$:

Կարճ վանկի մասին գլխում Մագիստրոսը նախ դնում է ընդհանուր վանկերին վերաբերող Դավքի մեկնությունը, սակայն անսպասելիորեն ընդհատում է այն *այսպիսի* բառից հետո ($99_3$), տեղ տալով կարճ վանկի մասին Անանունի գրվածքին ($136_{11-21}$): Դրան հաջորդում է հասարակ վանկերին վերաբերող մի նոր գլուխ, *իսկ հասարակութիւն* ($168_{7-19}$), որը Հովհաննեսը բերում է դարձյալ Դավքի անունով: Ապա սկսվում է նոր գլուխ՝ «*Յաղագս հասարակ շաղաշարաց*», որում առաջին տեղը գրավում է առարկային վերաբերող Անանունի մեկնությունը ($137_{2-13}$), իսկ դրանից հետո ներմուծվում է Դավքի *«Յաղագս հասարակ շաղաշարաց»* այն գրվածքը, որի մի մասը մինչև *այսպիսի* բառը զետեղված էր նախորդ գլխում, ընդորում այս մասը կրկին ներկայացվում է և շարունակվում մինչև $98_{19}$-$100_{18}$ հատվածի վերջը:

Անկանոն շարադրանքը և մեկնիչների խոսքերի անփույթ ավանդումը՝ այն, ինչում Հովհաննեսը մեղադրում է Մագիստրոսին, այնուամենայնիվ, անակնկալ հետաքրքրություն է ներկայացնում այն առումով, որ դյուրացնում է զանազան հեղինակներից փոխառված մասերի բաշխումն ըստ իրենց պատկանելության:

Հովհաննեսը Դավքին է վերագրում միևնույն՝ *«Յաղագս հասարակ շաղաշարաց»* թեմայով երկու գրվածք: Դրանցից մեկը, այն է՝ *իսկ հասարակութիւն*, $168_{7-19}$, ըստ երևույթին, պատկանում է այլ հեղինակի, ոճից դատելով՝ Մովսեսին: Նույն հատվածը գտնվում է նաև MS երկում, Ստեփանոսի՝ Մովսեսի քերականության մեկնությունում, հանգամանք, որը պետք է նպաստի մեր կռահման այն մասին, որ այս հատվածը հենց Մովսեսին է պատկանում: Սակայն և այստեղ այն անսպասելիորեն նշվում է Դավքի անունով: Դա տարօրինակ է առավել ևս այն պատճառով, որ MS ամենուրեք նախ ունի Մովսեսի խոսքերը, և ապա՝ Ստեփանոսի համապատասխան

մեկնությունները. այլ հեղինակների մասին խոսք անգամ չկա[1]: Թե ինչպես պետք է բացատրել հեղինակի անստույգ նշումը՝ դա առանձին հարց է. համենայնդեպս, նշումը սխալ է: Ոչ միայն Մագիստրոսը, այլև Հովհաննեսը քաջ ծանոթ են MS-ին: Թերևս, Հովհաննեսը MS-ի ազդեցությանն է պարտական, որ անճիշտ կերպով Դավթին է վերագրում այն, ինչ նրան չի պատկանում: Սակայն չի բացառվում և Հովհաննեսի հակադարձ ազդեցության հնարավորությունը MS-ի վրա, թեև դա նվազ հավանական է:

*«Յաղագս բանի»*-ին վերաբերող Դավթի մեկնության երկու հատված, այն է՝ սկիզբը՝ *բայց մասն – միով* ($102_{11-15}$) և վերջը, սկսած *զայրէն*, մինչև *ի տեղւ*, $102_{21-24}$, *մասամբ* բառով կապակցված, առկա են նաև MS երկում: Այս պատճառով մեկնության նշված մասը դառնում է վիճարկելի՝ այն կարող է պատկանել ինչպես Դավթին, նույնպես և Մովսեսին:

15, 16, 18 և 19-րդ գլուխների մեկնություններն ունեն մի ընդհանուր առանձնահատկություն: Դրանց մեկնությունների բնագրերը Մագիստրոսի մոտ ակնհայտորեն բաժանված են երկու կեսի: Ըստ Մագիստրոսի որդեգրած շարադրակարգի, առաջին մասը պետք է վերագրել Դավթին, իսկ երկրորդը՝ Անանունին և Մովսեսին: Քանի որ Հովհաննեսը առանձնացնում է երկրորդ մասի ավարտը և դնում այն Մովսեսի անվան ներքո, ապա, թվում է, որ դրանով լուծվում է և երկրորդ մասի՝ Անանունին վերագրելու խնդիրը: Այստեղ, սակայն, հանդիպում ենք որոշ խոչընդոտների: Բայց դա նույնպես խնդիր չէ: Դավթի և Անանունի խոսքերը Հովհաննեսը բերում է այնպիսի համակցությամբ, որ առանց Մագիստրոսի դժվար կլիներ հասկանալ, թե ում ինչ է պատկանում: Բնագրի երկրորդ կեսն, այն, որ մենք հատկացրինք Անանունին և Դավթին, ամբողջապես գտնվում է MS-ի կազմում: Դա նշանակում է, որ այն կամ ամբողջությամբ է պատկանում Մովսեսին, կամ Մովսեսը համապատասխան մասը փոխառել է Անանունից:

Բոլոր չորս գլուխներում էլ դրությունը նույնն է: Այս անորոշությունը մեր հրատարակության մեջ արտահայտված է այնպես, որ կասկածելի մասը, որի պատկանելությունը Անանունին կամ Մովսեսին վիճահարույց է, Մովսեսի բնագրում վերցված է փակագծերի մեջ:

ԻԲ՝ *«Յաղագս առոգանութեան»* գլխի՝ Մագիստրոսի մեկնությունը պակասավոր է և խաթարված: Մեկնության՝ պարույկաձև շեշտին վերաբերող մասը, $123_{19}$-$124_{5}$, Մագիստրոսի առկա գրչագրերում հայտնվել է հաջորդ 23-րդ՝ *«Յաղագս ոտից»* գլխի վերջում: Նույն աղավաղված վիճակում այս բնագիրը գտնում ենք նաև Հովհաննեսի մոտ. ակնհայտ է, որ Մագիստրոսի աշխատության աղճատումը տեղի է ունեցել Հովհաննեսից առաջ: Մի՞թե տարօրինակ չէ, որ Հովհաննեսը, իր իսկ վկայությամբ ձեռքի տակ ունենալով Դավթի բուն աշխատությունը, բաց է թողել բնագիրը սկզբնագրով ստուգելու և սրբագրելու հնարավորությունը:

Մենք քննեցինք ամենախճճված դեպքերը, որոնց հանդիպեցինք մեզ հետաքրքրող բնագրերի վերականգնման ժամանակ: Կան և այլ բնույթի անհարթություններ, որոնք երևան են գալիս Մագիստրոսի և Հովհաննեսի շարակարգերը բաղդատելու ժամանակ. դրանք շեղումներ և տարաբանություններ են, թեև անկարևոր, բայց կարոտ բացատրության:

Մեր դիտարկումները ցույց են տալիս, որ Հովհաննեսն իր բոլոր գործողությունները կատարում է միմիայն Մագիստրոսի բնագրի հիման վրա. նա հավատարիմ է մնում Մագիստրոսի աշխատությանը այն մասերում, որոնք առնչվում են Դավթին, Անանունին, Մովսեսին և Ստեփանոսին: Մագիստրոսի չմեկնած գլուխներն ու պարբերությունները զուրկ են մեկնություններից նաև Հովհաննեսի գործում: Երբեմն հանդիպում են առանձին արտահայտություններ, բառեր, նույնիսկ պարբերություններ, որոնք բացակայում են Մագիստրոսի մեկնությունում, սակայն դրանք չունեն և ոչ մի յուրահատկություն, որը թույլ տար կարծել, որ դրանք՝ իրեն իսկ Հովհաննեսին պատկանող հավելումներ են: Այն դեպքերում, երբ նման հավելումներն, անկասկած, Հովհաննեսի ընդմիջարկություններն են, դրանք մենք զետեղում ենք ներքևում, ծանոթագրությունների մեջ: Բայց լինում են վիճելի դեպքեր, երբ չի կարելի վստահաբար ասել, թե տվյալ արտահայտությունն արդյոք պատկանում է Հովհաննեսին, թե արդեն առկա էր Մագիստրոսի երկի այն օրինակում, որից օգտվում էր Հովհաննեսը: Այսպիսի տեղիները, զգուշության համար, դրված են բնագրում անկյունավոր կիսափակագծերով, օրինակ, $185_{25}$-186, $186_{2-3}$, $187_{12-14}$, $190_{11-12}$, $194_{7-8}$, $208_{20-23}$: Հավելումներից մի քանիսն այն տեսակի են, որի մասին ինքը Հովհաննեսն ասում է, թե *«էր զի … ի մերս ծնանէր պիտանութիւն բանի ի միտս»*:

Երբեմն Հովհաննեսի մոտ Մագիստրոսի շարադրանքին հակառակ նկատվում են և՛ բացթողումներ և՛ հապավումներ, բայց դրանք համեմատաբար ավելի քիչ են, քան սպասելի էր մի հեղինակից, որը դժգոհում է իր նախորդի շարադրակարգից: Դրանց թվում են $190_{16-17}$, $191_{6-12}$, $193_{24-27}$, $199_{10-15}$, $201_{23}$-$202_{7}$, $201_{9-21}$ ($_{11}$ փոխարեն $_{21}$ վրիպակ է), $204_{2-6}$, $214_{22}$-$215_{3}$, $216_{13-19}$ և այլն:

Դավթի բնագրում երկու տեղի կա, որոնք չունի Մագիստրոսի երկը, և որոնք կարող էին ճանաչվել Հովհաննեսի սեփական՝ Մագիստրոսից անկախ փոխառություններ, այսինքն՝ Դավթի մեկնությունը Դիոնիսիոսի այն

[1] Գ. Զարբհանալյան, *Հայկական հին դպրության պատմություն*, էջ 387, ասում է, որ *Մովսեսի քերթողի յաղագս դպրութեանց* երկը, մեր MS-ը, բանաքաղ է, կազմված զանազան հեղինակների գործերից, ընդորում տալիս է ոչ միայն Մովսեսի և Ստեփանոսի, այլև Դավթի, Մագիստրոսի, Համամի, Արիստակեսի, Գևորգի և այլոց անունները: Սա թյուրիմացություն է կամ անախորժ սայթաքում. այդպիսի կազմություն ունի Հովհաննես Երզնկացու քերականությունը, և ո՛չ թե նշված MS գրվածքը:

հատվածի վերաբերյալ, ուր ճառում է դատողության՝ քերականության լավագույն մաս լինելու մասին ($86_{10-14}$), ինչպես և հողի մասին դրվագը ($115_{13-24}$ և $150_{2-8}$): Ըստ Դավթի, *«դատողական մասն...լաւագոյն է յամենեցունց. քանզի զհերձուածողացն ընդունայնաբանութիւն լուծանելով, որք ուղղափառութեան անուամբք կամեցան զիւրեանցն արդարացուցանել վրիպանս, ի ստուգիւ քննութենէ դատելոցն յանդիմանի աւտարոտի խառնուածն»*: Թեև նման նկատառումներն ավելի հատուկ են MS գրվածքին, այնուամենայնիվ դրանց՝ Դավթին պատկանելը հերքելու համար չկա և ոչ մի բավարար հիմք: Թերևս այս տեղին առկա էր Մագիստրոսի երկի այն օրինակում, որը եղել է Հովհաննեսի տրամադրության ներքո:

*«Յաղագս յաւղից»* գլխի մեկնությունը, մեր կարծիքով, կազմված է երկու մասից. առաջինը մենք զետեղել ենք Դավթի, իսկ երկրորդը՝ Անանունի անվան ներքո: Երկրորդ մասն առկա է նաև MS-ում, ինչի պատճառով հողի մասին դրվագը կիսում է վերը նշված 15, 16, 18 և 19-րդ գլուխների ճակատագիրը: Հովհաննեսն իրավացի չէ, երբ երկու մասն էլ վերագրում է միայն Դավթին: Ակնհայտ է երկու հեղինակների ներկայությունը: Մեզ համար ավելի շուտ վիճարկելի է թվում, թե արդյոք Դավթին է պատկանում նույնիսկ առաջին մասը, թե այն վերագրելի է Անանունին, ինչպես և երկրորդը՝ Մովսեսին: Մագիստրոսի մեկնության պահպանված օրինակներում հողի մասին գլուխն իսպառ բացակայում է. այն փոխարինված է Մագիստրոսի սեփական մեկնությունով: Ինչպիսին է եղել վիճակը Հովհաննեսի ձեռքի տակ եղած օրինակում՝ որոշակի բան ասել հնարավոր չէ:

Հովհաննեսի մեկնությունում գտնվող Անանունի բնագրում նույնպես, ի տարբերություն Մագիստրոսի, դիտվում է *«համեմատութեան»* մեկնություն ($127_{12}$-$128_{2}$), ինչպես և *«նախատիպ»* և *«ածանցական»* անունների բացատրություն ($139_{16-21}$): Վերջինս Հովհաննեսի աշխատությունում հետևում է Համամի խոսքերին ($258_{23}$), և, թերևս, Հովհաննեսինն են:

Կասկածի տակ են մնում *«համեմատութեան»* և հողի մասին վերոհիշյալ դրվագները: Դա, սակայն, դեռևս բավական չէ ապացուցելու համար Հովհաննեսի ծանոթությունը Դավթի և Անանունի մեկնություններին՝ առանց Մագիստրոսի միջնորդության:

Հովհաննեսի կախումը Մագիստրոսից առավել ակներև է Մովսեսի բնագրում: Այնքան էլ պարզ չէ, թե ճանաչում էր արդյոք Հովհաննեսը Դավթին կամ Անանունին,. սակայն կասկածից վեր է, որ նա իր տրամադրության ներքո է ունեցել Մովսեսի աշխատությունը: Չնայած դրան, նա Մովսեսի, ինչպես և Դավթի և Անանունի բնագրերի դեպքում չի շեղվում Մագիստրոսից: Մովսեսի մեկնությունները Մագիստրոսը փոխառել էր MS աշխատու-



թյունից[1]. նույն երկը ծանոթ է նաև Հովհաննեսին[2]: Մագիստրոսը չէր ներմուծել իր քերականության մեջ այն ամենը, ինչ MS գրվածքում կրում է Մովսեսի անունը: MS-ի առաջին գլուխը նա չի օգտագործել. մենք բերում ենք այն ըստ MS-ի, $159_{5-16}$: Հովհաննեսը տալիս է դրա հարասությունը, սակայն վերագրում է ոչ թե Մովսեսին, այլ մեկ ուրիշ հեղինակի՝ *Այլ*: Մնացածում նա հետևում է Մագիստրոսին: Մագիստրոսի երկից պակասող պարբերություններն առկա չեն նաև Հովհաննեսի մոտ: MS-ի համեմատ Մագիստրոսի մեկնությունում բաց թողած տեղիները բացակայում են նաև Հովհաննեսի երկից: Օրինակ՝ կիսափակագծերում գտնվող $165_{3-4}$ բառերը Մագիստրոսը, հավանաբար, վերագրում է Ստեփանոսի մեկնությանը, ուստի և բաց է թողնում, մինչդեռ դրանք Մովսեսի խոշոր պարբերության մասն են կազմում: MS գրվածքի ինքնուրույն օգտագործման պարագայում Հովհաննեսը երբեմն պետք է որ շեղվեր Մագիստրոսից՝ Մովսեսի և Ստեփանոսի բառերը սահմանազատելիս:

Մագիստրոսը բաց է թողնում $164_{14-15}$, $165_{3-4}$, $166_{20-21}$, $173_{8}$-$174_{6}$ տեղիները, չունի Ի և ԻԳ գլուխները. դրանք չկան նաև Հովհաննեսի մեկնությունում, մինչդեռ առկա են MS-ում: Եվ ընդհակառակը, կան տեղիներ, որոնք բացակայում են MS-ի մեզ հասած ձեռագիր օրինակների մեջ, սակայն դրանք առկա են Մագիստրոսի և Հովհաննեսի մոտ, օրինակ՝ $166_{15-18}$, $170_{11}$-$171_{21}$, $172_{1-12}$: Այս ամենը ցույց է տալիս, որ Հովհաննեսը, թեև ձեռքի տակ ունեցել է MS աշխատությունը, սակայն չի օգտվել դրանից, այլ սահմանափակվել է միայն Մագիստրոսի տրամադրած տեղեկություններով:

Նույնն է նրա վերաբերմունքը և այլ հեղինակների նկատմամբ: Արդյոք Հովհաննեսն իր ձեռքի տակ ունեցել է Դավթի, Անանունի և Ստեփանոսի երկերը՝ մի հարց է, որին կտրուկ պատասխանել հնարավոր չէ: Ենթադրելի է, որ Հովհաննեսը շփոթել է իր բերած օրինակները և որպես նշված հեղինակների վավերական երկեր ընդունել է բոլորովին ուրիշ բան: Թերևս մեր տարակուսանքներն անհիմն են, և պետք է հավատալ Հովհաննեսի պարզորոշ հայտարարությանը: Միայն մի բան է մնում մեզ համար անըմբռնելի՝ որ Հովհաննեսը չի օգտվել նշված երկերից, եթե նույնիսկ իր ձեռքին ունեցել է, այլ բավարարվել է սոսկ Մագիստրոսի մեկնությունից կատարած քաղվածքներով:

Մեր երկմտությունը ստիպում է մեզ պատասխանել ևս մի հարցի. Հովհաննեսը ո՛րտեղից կարող էր իմանալ, թե հեղինակներից որի՞ն ինչ է պատկանում: Չէ որ Մագիստրոսը չունի և ոչ մի ցուցում հեղինակների վե-

[1] Հետաքրքրական է MS-ի խորագրի համընկնումը Մագիստրոսի խոսքերին՝ *«Արդ պարտ ասել զառաջիկայիցս յաղագս էին երկայնութեան»*, $162_{22}$:
[2] Տե՛ս վերը:

րաքերյալ՝ նրանց անունները նշված են միմիայն Հովհաննեսի աշխատության լուսանցքներում: Եթե նշված հեղինակների հետ Հովհաննեսի ծանոթ լինելը հերքվում է, ապա ի՞նչ փաստերի հիման վրա նա կարողացել է գլուխ հանել Մագիստրոսի համահավաք բնույթի աշխատանքից և յուրաքանչյուր հեղինակին հատկացնել իրենը:

Մեր ենթադրությանը նպաստող կռվաններն այնքան ուժեղ են, որ մենք ստիպված ենք ընդունելու մեզ հասած Մագիստրոսի մեկնության օրինակների խաթարվածությունը ևս մի պարագայում և համաձայնել, որ սկզբնապես Մագիստրոսի գործի լուսանցքներում նույնպես նշվում էին հեղինակների անունները, և Հովհաննեսն իր տրամադրության ներքո ունեցել է հենց այսպիսի մի ընդօրինակություն: Հետևաբար ոչ միայն բնագրով, այլև լուսանցանիշերով Հովհաննեսը պարտական է բացառապես Մագիստրոսին:

Այլ դրության դեպքում հարկ կլիներ խոստովանել, որ Հովհաննեսը Մագիստրոսի բնագրին հետևել է ըստ նրա աղբյուրների, րոպեն մեկ դիմելով մերթ այս, մերթ այն հեղինակին՝ պարզելու համար, թե հեղինակներից ո՞ւմ է պատկանում տվյալ հատվածը, արտահայտությունը կամ բառը: Իհարկե, կարելի է պատկերացնել աշխատանքի այսպիսի ընթացք ևս: Անհասկանալի կմնա, սակայն, թե ինչո՞ւ դրա հետ մեկտեղ Հովհաննեսը սկզբնաղբյուրների՝ նշված հեղինակների բուն երկերի հիման վրա չի վերացնում Մագիստրոսի սխալներն ու թերությունները, այլ վերարտադրում է դրանք պատճենողի ճշգրտությամբ: Այսպես, օրինակ *երկիր* բառը, որը նշանակում է «աշխարհ» (ք. 98), Մագիստրոսի մոտ սխալմամբ ներկայացվում է իբրև *երկիր*՝ «երկրորդ» իմաստով, ինչի ազդեցության ներքո նախորդ արտահայտության մեջ ներմուծվել է *մի* բառը՝ «նախ և առաջ» իմաստով, $97_{24}$: Հովհաննեսն ընդօրինակում է այս տեղին այնպես, ինչպես որ այն կա, մինչդեռ բնօրինակի հետ գործ ունենալու դեպքում նրանից սպասելի կլիներ այլ վերաբերմունք:

Այնուհետև Մագիստրոսի մոտ կարդացվում է ($106_{24-25}$). *Նոյնպէս իմանալի է: Եւ զզարմազանութիւն* և այլն: Սխալ տրոհության պատճառով *իմանալի* բառը կապվել է նախորդ *Նոյնպէս*-ի հետ. մինչդեռ այն քերականորեն շաղկապված է հաջորդ՝ *եւ զարմազանութիւն* բառերի հետ: Հովհաննեսը նույնպես պահում է սխալ ընթերցվածը, ուստի և ստիպված է լինում դուրս գցել *եւ զզարմազանութիւն բարդիցն* հատվածը, նախադասությունը անհեթեթությունից փրկելու համար:

Հովհաննեսը հետևել է Մագիստրոսին նաև աղավաղված նախադասությունը ($112_{21-23}$) փոխադրելիս. այստեղ *անուանց* բառը սխալմամբ տարվել է նախորդ նախադասություն: Մի քանի անգամ Հովհաննեսը գանգատվում է, որ մեկնիչների խոսքերը խառնաշփոթ են և նրա համար դժվար է եղել



դրանք պարզաբանել[1]: Մեկնիչների բուն երկերի առկայության պարագային նման գանգատը անտեղի կլիներ:

Վերջապես, եթե Հովհաննեսն իր ձեռքի տակ ունեցել է մեզ հետաքրքրող հին հեղինակների գործերը, ապա ինչո՞ւ նա չի լրացրել Մագիստրոսի երկում եղած բացերը: Նրա դիտողության համաձայն, բազում գլուխներ և պարբերություններ Մագիստրոսը թողել էր առանց մեկնությունների, և նա՝ Հովհաննեսը, փորձել է լրացնել բացերը: Մենք տեսնում ենք, սակայն, որ եթե անգամ նա ավելացնում է ինչ-որ բան, ապա այլ աղբյուրներից, և ոչ վերոհիշյալ հեղինակներից: Մի՞թե տարօրինակ չէ, որ նա զանց է առնում ճանաչված հեղինակությունները և դիմում է անհայտ անձանց օգնության՝ *այլ, այլուստ* և այլն:

Այս դիտարկումները մեզ իրավունք են տալիս եզրակացնելու, որ Հովհաննեսը ձեռքի տակ չի ունեցել նշված հեղինակների գործերը. եթե անգամ Երզնկայի անվանի քաղաքացի՝ պարոն Հովհաննեսի տրամադրած գրքերը (112) պարունակում էին մեզ հետաքրքրող աշխատությունները՝ այն իսկ հեղինակների, որոնց թվարկում է Հովհաննեսը, ապա նա, համենայնդեպս, դրանցից իր քերականությունը կազմելիս չի օգտվել:

Եզրակացությունը, որին մենք հանգեցինք, աննպաստ չէ նաև վերականգնված բնագրերի քննության համար: Եթե Հովհաննեսի քաղվածքները ևս հասնում են մինչև Մագիստրոսը, ապա մենք կարող ենք առավել ազատությամբ վարվել քաղված բնագրերի հետ: Բնագրային և այլ բնույթի թերությունները չպետք է մեզ զարմացնեն: Կտորտանքներից կազմած բնագրերը, հարկավ, չեն կարող հավակնել այն անխաթարության, որը ցանկալի է: Բայց մյուս կողմից, բանասիրական տեսակետից դրանց ընդունելի լինելը կարելի է պաշտպանել ոչ պակաս, քան այլ հնագույն հուշարձանների պարագային: Չէ որ դրանք նույնպես իրենց նախնական անձեռնմխելիությամբ մեզ չեն հասել:

Որքան էլ կցկտուր լինեն վերականգնված բնագրերը, դրանց կարևորությունն անժխտելի է: Հեղինակները և գրականության այն փուլը, որին դրանք պատկանում են, տակավին, ինչպես հայտնի է, որոշ իմաստով մնում են առեղծված: Այժմ կարող ենք վստահ լինել, որ մեր տրամադրության ներքո կան Դավթի, Մովսեսի և Ստեփանոսի՝ անշուշտ հեղինակային բնագրերը. որոշ անունների շուրջ կուտակված մշուշը փարատելու համար դրանք, թերևս, շատ ավելի հաստատուն հիմք են տրամադրում, քան այլ հուշարձաններ:

Ներկա բնագրերի վերականգնումով արդարացվում են և մեր կողմից վերը քննարկված մատենագրության մեջ առկա տեղեկությունները: Նրանք

[1] Տե՛ս վերը, էջ XXXIII:

խոսում են Քերականության մեկնությունների մասին, հասկանալով Դիոնիսիոսի երկասիրությունը, իսկ «մեկնություններ» ասելով՝ Դավթի, Մովսեսի և Ստեփանոսի աշխատությունները։ Անանունի մասին չկա և ոչ մի հիշատակում։ Նույն տեղեկությունները Դավթի և Մովսեսի անունների հետ մեկտեղ տալիս են նաև նրանց ընկերակից Մամբրե Վերծանողի անունը։ Ինքնին միտք է ծագում միացնելու Մամբրեին և Անանունին։ Մամբրեի անունով պահպանվել է քերականական բնույթի մի փոքրիկ պատառիկ, որը, սակայն, ոչ բովանդակությամբ, և ոչ լեզվով արժանի չէ նրա անվանը. այն, հավանաբար, նրան չի պատկանում, և կամ աղավաղված է։ Զարմանալի չէ, որ այն ավանդազրույցներում, որոնցում հիշատակվում են Դավթի և Մովսեսի մեկնությունները, Մամբրեի որպես քերականի մասին չկա և ոչ մի տեղեկություն։ Քանի դեռ փաստական իրադրությունը մեզ հայտնի չէր, մատենագրական տվյալները կարող էին որոշ արժեք ներկայացնել։ Բայց այժմ, երբ հայտնաբերվեցին փաստերը, այդ տեղեկությունները փոքր ինչ այլ լույսով են ներկայանում։ Մեզ համար պարզ է, որ վերը քննած ավանդազրույցն իր մեջ պարունակած տեղեկություններով հանդերձ, կազմավորվել է այն դարաշրջանում, երբ Դիոնիսիոսի քերականությունն արդեն շրջաբերվում էր առանց հեղինակի անվան, երբ Անանունի աշխատությունը դուրս է ընկել մատենագրական գործածությունից, սակայն դրանում տակավին պահվում էին Դավիթն ու Մովսեսը։ Եթե պետք է ավելի մերձավորապես սահմանել այս ժամանակաշրջանը, ապա այն հասնում է մինչև Համամից առաջ ընկած ժամանակը, քանզի Համամն արդեն չգիտե Դիոնիսիոսին որպես իրեն քաջ հայտնի քերականության հեղինակի։ Ավելի ճիշտ կլիներ ասել, որ ավանդազրույցը մեզ զբաղեցնող մասում արտացոլում է նշված դարաշրջանի քերականական գրականության փաստացի վիճակը։ Ուստի և ավանդազրույցի՝ Անանուն-Մամբրեին չճանաչելը դեռ չի կարող փաստ ծառայել նրա՝ իբրև քերականի, դեմ։

Հաստատվում են նաև Ստեփանոսի մասին տեղեկությունները։ Թեպետ, պետք է վերապահություն անել. բերված վկայությունները վերաբերում են, ամենայն հավանականությամբ, MS աշխատությանը, այսինքն՝ ոչ թե Դիոնիսիոսի, այլ Մովսեսի քերականությանը վերաբերող Ստեփանոսի մեկնությանը։ Այս աշխատությունը հասել է մեզ, և չնայած ձեռագրերում կրում է Մովսեսի անունը, իրականում պատկանում է Ստեփանոսին։ Մովսեսին է պատկանում միայն սկիզբը, և առհասարակ՝ մեկնության ենթակա գլուխների սկզբնական խոսքերը։ Այս հանգամանքի պատճառով թյուրիմացության մեջ ընկած ընդօրինակողները նրան են վերագրել ամբողջ երկը, որի գլխավոր մասն են կազմում Ստեփանոսի մեկնությունները։

Մեր կատարած աշխատանքի շնորհիվ բացահայտվեց, որ Ստեփանոսն



ունեցել է ևս մի երկասիրություն, այն է՝ Դիոնիսիոսի բնագրի մեկնությունը՝ *Մեկնութիւն քերականին*, ինչպես այն ճշտորեն անվանում է Կիրակոս Գանձակեցին, թեև, հավանաբար, սխալմամբ դրա ներքո հասկանում է MS գրվածքը։

Առաջին աշխատությունը, Մովսեսի մեկնությունը, որ Ստեփանոսը հեղինակել էր դեռևս սարկավագ եղած ժամանակ, ինչպես երևում է վերևում բերված հիշատակարանից, ոչ այլ ինչ է, եթե ոչ աշակերտի տուրք ուսուցչի հիշատակին։ Մինչդեռ մեր կողմից վերականգնված Դիոնիսիոսի քերականության մեկնությունը հորինվել է ավելի ուշ, հավանաբար, վարդապետական-մանկավարժական գործունեության ժամանակ, և պայմանավորված էր, ինչպես և Հովհաննես Երզնկացու մեկնությունը, ուսումնական կարիքներով։ Ստեփանոսի այս վերջին մեկնությունը հայտնի է շատ ավելի ուշ դարաշրջանի քերականին, Առաքել Սյունեցուն, որի բուն հեղինակային խոսքեր ավելորդ չենք համարում մեջբերել, մանավանդ, որ դրանք վերաբերում են ո՛չ միայն Ստեփանոսին, այլ առհասարակ քերականական գրականության ակնարկ են։ Առաքելը նույնպես մեկնել է Դիոնիսիոսի երկը. այդ մեկնության վերը նկարագրված օրինակը մեր տրամադրության ներքո է եղել։ Այն, ի միջի այլոց, տեղեկացնում է. «*Թէ յումմէ թարգմանեցաւ եւ ով էր որ մեկնութիւն արար սորա. այսինքն (:) զի Դաւիթ փիլիսոփայն թարգմանեաց եւ մեկնեաց զսա(յ)։ Իսկ յետ սորա Գրիգոր Մագիստրոսն այլ ընդ(յ)արձակ մեկնեաց զԴաւթի մեկնեալն։ Իսկ յետոյ Յոհաննէս վարդապետն մականուն Պլուզ համառօտեաց զնոյն վասն դիւրալուր լինելոյ։ Եւ յետ նորա Եսայի վարդապետն Գայլիձորոյ այլ համառօտեաց զնոյն, որ այժմ կայ ի միջի։ Սոյնպէս եւ Ծործորեցին է համառօտեալ։ Արդ երկու մեկնիչ կայ ի գիրքս այս. առաջին Դաւիթ մեկնած է, երկրորդն Ստեփանոսի Սիւնեաց, որ ի Վայոց ձորն նահատակեցաւ*»[1]։

Թվարկված բոլոր հեղինակները մեզ արդեն ծանոթ են։ Ծործորեցու մեկնության ներքո պետք է հասկանալ նույն Երզնկացու համառոտ քերականությունը՝ Երզնկացի, որն իր այդ մականունը ստացել է ըստ ծննդյան վայրի, և Ծործորեցի՝ ըստ բնակավայրի. իր կյանքի վերջին տարիները նա անցկացրել է Արտազի հին իշխանության տարածքում (այժմ՝ Մակուի խանության սահմաններում) գտնվող Ծործորի Սբ. Աստվածածնի վանքում։ Նշված քերականության՝ մեր տրամադրության ներքո եղած օրինակների խորագրում երկու մականունն էլ առկա են[2]։

Իր ունեցած տեղեկությունների համար Մագիստրոսի, Հովհաննեսի և Եսայիի մասին Առաքելը պարտական է նրանց աշխատություններին անձ-

[1] Ձեռ. 2359, թ. 389։
[2] Տե՛ս բնագիր, էջ XX և XXXVI։

նական ծանոթության: Ինչ վերաբերում է Դավթին և Ստեփանոսին, ապա նրանց մասին նա գիտե, ամենայն հավանականությամբ, Հովհաննես Երզնկացու աշխատությունից: Հնարավոր է, որ նա իր տրամադրության ներքո ունեցել է նաև այլ վավերագրեր, որոնցից և քաղել է տեղեկությունն այն մասին, որ Դավիթն է կատարել Դիոնիսիոսի թարգմանությունը: Որ այս տեղեկությունը Առաքելի կողմից սովորական կռահում չէ, այլ հիմնված է ինչ-որ աղբյուրի վրա, երևում է նաև նրանից, որ Առաքելն իր՝ Դավթի «Սահմանքին» վերաբերող մեկնության մեջ հաղորդում է, որ Դավիթը հայերից ճանաչում չստացավ, այլ *«անարգեցին զնա եւ զբանս նորա, եւ հարեալ վիրաւորեցին զնա. եւ նա գնացեալ ի Վիրս, անդ կացեալ վախճանեցաւ...»*[1]:

Դավթի կյանքի այս՝ վերին աստիճանի հետաքրքիր հանգամանքը այլ աղբյուրներից ծանոթ չէ և անկասկած մատնանշում է մի լավ վավերագիր, որը եղել էր Առաքելի տրամադրության ներքո: Դավթի և Ստեփանոսի բուն հեղինակային երկերը, նրանց՝ Դիոնիսիոսի Քերականության մեկնություններն Առաքելն իր ձեռքի տակ չի ունեցել. նրա տեղեկությունները զուտ մատենագրական բնույթ ունեն:

Հովհաննես Երզնկացին հիշատակում է նաև Համամի և Բարսեղի աշխատությունները: Համամի մեկնությունը նույնպես չի պահպանվել, համենայնդեպս, գոնե մինչ այժմ ձեռագրերում չի հայտնաբերվել: Դրանից օգտվել էր Հովհաննեսը՝ և բավական շատ. ընդարձակ քաղվածքները, որ նա բերում է, մենք առանձնացրել ենք և դրել Համամի անվան ներքո: Դրանք լիակատար պատկերացում են տալիս Համամի երկի մասին:

Գալով Բարսեղին, Հովհաննեսը ոչ մի տող չի բերում նրա աշխատությունից: Երևի նրա երկասիրությունը ոչ մի շահեկանություն չէր ներկայացնում Հովհաննեսի առջև ծառացած խնդիրների լուծման, այսինքն՝ իր հետապնդած զուտ քերականական նպատակների համար: Մենք հակված ենք կարծելու, որ Բարսեղ քերականը ոչ այլ ոք է, եթե ոչ Հեթում թագավորի՝ նույն անունը կրող եղբայրը, այն անձը, որին մենք անդրադարձել ենք[2]:

Հետևաբար, Բարսեղի քերականական երկը, որ հիշատակում է Հովհաննեսը, պետք է նույնացնել *Ե.գ.* 1232 ձեռագրում գտնվող այն գրվածքի հետ, որին կից պահպանվել է Բարսեղի հիշատակարանը[3]: Եթե մեր ենթադրու-

[1] **Գ. Զարբհանալյան**, Պատմություն հայ հին դպրության (Դ-ԺԳ), Վենետիկ, 1886, էջ 322:
[2] Տե՛ս բնագիր, էջ LXIX:
[3] Դիոնիսիոսի Քերականության հրատարակիչը, [Հ.] Չահան-Չրպետ[յանն] իր նախաբանում, էջ XXVIII, քերականների թվում հիշատակում է նաև Բարսեղ Ճոնին. իսկ Հովհաննեսի հիշատակած Բարսեղի անվան ներքո նա հասկանում է Դպրեվանքի հայտնի վանահոր, որը, Վարդանի վկայությամբ («Պատմութիւն», էջ 69), ապրել է VII դարում: Ղ. Ալիշանը («Հայապատում», էջ 510) տարակուսում է, թե ով կարող էր լինել այս Բարսեղը՝ թերևս XII դարի



թյունն ընդունելի է, ապա Բարսեղին կարելի է հանել քերականների շարքից, քանի որ նրա գրվածքը քերականության հետ ընդհանուր եզրեր գրեթե չունի:

Այսպիսով, մատենագրական տվյալները, բայց գլխավորապես՝ Մագիստրոսի և Հովհաննեսի բանաքաղների վերլուծությունը հաստատում են մինչև Մագիստրոսը եղած քերականական արվեստի հետ առնչվող հետևյալ անուններն ու բնագրերը՝ Դիոնիսիոս, Դավիթ, Անանուն-Մամբրե, Մովսես, Ստեփանոս, Համամ:

նույնանուն վանականը Քեսունից, թե Մաշկևորցին, Հովհաննեսի ժամանակակիցը (անդ, էջ 534-536): Չահան-Չրպետյանի, ինչպես և Ալիշանի ենթադրությունները միանգամայն անընդունելի են:

## IV. ՎԵՐԱԿԱՆԳՆՎԱԾ ԲՆԱԳՐԵՐԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆԸ

*Քննության սահմանները: Քննական ապարատը: Դավթի մեկնությունը և դրա առնչությունը նույն քերականների լուծմունքներին: Նախերգան և προλεγόμενα: Համակարգված բաղդատություն գլուխ առ գլուխ և դրվագ առ դրվագ: Համեմատություն Մելամպոդեսի, Հելիոդորոսի, Ստեփանոսի և Բյուզանդացու [մեկնությունների] հետ: Մատենագրական զուգահեռներ և մերձեցումներ:*

Այն խնդիրը, որ մենք դրել ենք մեր առջև, ճիշտն ասած, սպառված է: Դա քննության առարկա բնագրերի առանձնացումն էր, վաղ քերականական աշխատությունների վերականգնում: Այս աշխատանքը կատարված է. վերականգնված բնագրերի հետ կապված կամ դրանց մեջ արտահայտված այլևայլ հարցերը ներկա աշխատանքի սահմաններից դուրս են: Դրանցից ամենաէականը, այն է՝ քերականական բնագրերի առնչության հարցը այլ հուշարձանների և դրանց՝ հունարան դպրոցի հարակից երկերի մեջ գրված դիրքի մասին, պահանջում է առանձին ուսումնասիրություն և նույնպես պետք է առայժմ մի կողմ դրվի, քանի որ դրա արդյունավետ քննարկումը հնարավոր է միայն նույնատիպ երկերի հետ համատեղ և դպրոցների ընդհանուր խնդրի սահմաններում:

Այդպիսի հարցադրման հնարավորությունը, իր հերթին, կախված է մի շարք մասնակի աշխատանքներից, որոնք պետք է նախօրոք կատարվեն տվյալ տեսակի յուրաքանչյուր երկի վերաբերյալ, նախքան դրանք գործածվեն նախահիշյալ խնդրի քննարկման միջոցին: Այլ վերաբերմունքի դեպքում անհնար կլինի դուրս գալ այն կախարդված շրջանակից, որ ստեղծվել է երկու վիճահարույց խնդիրների հարաբերություններից. մի կողմից՝ հայտնի հուշարձանների թվագրումը կախյալ է համարվում հունարան ուղղության ծագման պահից, և մյուս կողմից՝ այդ պահի ամրագրումը պայմանավորվում է վիճարկվող հուշարձանների հայտնվելու ժամանակով: Այդ պատճառով չի հաջողվում գտնել այն հենքը, որ որոշակի կայունություն հաղորդեր մասնագետների գիտակցության մեջ V-ից VIII դար հետ ու առաջ տարվող հուշարձաններին: Լույս ընծայվող քերականական հուշարձանները հաջողությամբ կարող են օգտագործվել տվյալ խնդիրը լուծելու համար այն դեպքում միայն, եթե դրանց վրա կատարվի հիշյալ աշխատանքը, ինչպես և ճշտվի համանման երկերի շարքում դրանց ինքնուրույն արժեքը:



Մեր բնագրերին ուղեկցող քննական տողատակը նպատակ ունի զտելու դրանք այն տարրերից, որ սպրդել են դրանց մեջ ժամանակի ընթացքում ի վնաս սկզբնօրինակի մաքրության: Այն հանգամանքը, որ դրանք մեզ են հասել բանաքաղություններից, այսպես ասած, օտար մարմնում, անխուսափելիորեն, որպես այդպիսի դրության հետևանք, պետք է առաջ բերեր աղճատվածություն: Բնագրերը վերականգնելիս մենք ձգտում էինք հետևել միմիայն ձեռագրային տվյալներին: Այդպես ենք վարվել, գիտակցելով, որ անհրաժեշտ է նախևառաջ ներկայացնել այն, ինչ տալիս են ձեռագրերը: Ստկումներն ու սրբագրումները մենք մեզ թույլ ենք տվել այնքանով, որքանով թույլ էին տալիս գրչագրերը, որքանով դրանց մեջ հիմք էինք տեսնում՝ առայժմ ձեռնպահ լինելով այլ բնույթի նկատառումներից: Դեռևս գործը առաջ էր տարվում սոսկ ձեռագիր նյութերի շրջանակներում: Մենք ցանկացել ենք սպառել խնդրի այս կողմն այնպես, որ հետագայում ոչ մի երկմտություն կամ տարակույս չմնա, թե ինչպիսին էր դրությունը ձեռագրերում: Բնագրային տարամիտումներն ու տարընթերցումները, պակասող կամ հավելյալ կետերը, ուղղագրական առանձնահատկությունները նշում ենք ամենայն ճշգրտությամբ ըստ այն գրչագրերի, որոնց արժեքը հաստատված է մեր կողմից, և այնչափ, որքան այս հանգամանքները կարող են պիտանի համարվել որևէ տեսակետից:

Ընթերցվածները և գրության եղանակներն ընտրելիս, թերևս միշտ չէ, որ արդարացի ենք: Հարկ է նշել, որ այս պարագայում ղեկավարվել ենք ոչ միայն լեզվաբանական, այլև բանասիրական բնույթի նկատառումներով: Հայոց լեզվի պատմական զարգացման պարբերացումը դեռ ճշտված չէ, ավելի բարվոք վիճակում չէ և սկզբնական փուլի մատենագրական հուշարձանների թվագրությունը: Հին հայերեն գրավոր լեզվի մեջ՝ կենդանի ժողովրդական խոսքի տարրերի ներթափանցումը, կամ աշխարհաբարի ճնշման ներքո կատարվող՝ գրաբարի, այսպես ասած, ռամկացումը սկսվել է շատ ավելի վաղ, քան ընդունված է կարծել: Ընդհանրապես գրական հին հայերենի բնույթի և վիճակի մասին՝ իր հանդես գալու պահին և հետագա զարգացման ընթացքում մեզ մոտ կարծիք է ձևավորվել, որը մենք մտադիր ենք արծարծել առանձին: Հին բնագրերում առկա ռամկաբանությունների հանդեպ բացասական վերաբերմունքը պատմական իրականության տեսակետից միշտ չէ, որ կարող է արդարացված լինել: Հաճախ պարզվում է՝ բառամթերքը, բառերի կազմությունն ու ձևերը, լեզվաբանական առումով ռամկական, իրենց գրական կյանքով ավելի հին են, քան շատ այլ բառեր, որոնք թեպետ ըստ էության վաղնջական են, սակայն մատենագրության մեջ հայտնվել են ավելի ուշ: Գրական լեզվի և կենդանի խոսքի միջև հուշարձաններում նկատվող մրցակցությունը՝ փաստ է և կասկածի ենթակա չէ:

Բայց ոչ միշտ հին հուշարձաններում առկա՝ ժողովրդական բառերն ու արտահայտությունները կարող են կասկածելի լինել իբրև հետագա սրբագրությունների արգասիք: Դրանցից շատերը գրական լեզվի մեջ իրենց տեղը նվաճել են կամ ամենասկզբից, և կամ առաջին փուլում: Մի խոսքով, պետք է խստակորեն տարբերել լեզվական տվյալների մատենագրական հնությունը լեզվաբանականից՝ մի հանգամանք, որ նշանակալիորեն բարդացնում է հայկական բնագրերի քննական հրատարակության խնդիրը:

Հին հայկական ժառանգության նկատմամբ առկա թերհավատության պայմաններում, իսկ տվյալ դեպքում նաև այն հատուկ հետաքրքրության պատճառով, որ հարուցում են հունաբան հուշարձանները, դրանց հրատարակությունը պետք է օժտված լինի ոչ միայն սովորական քննական ապարատով, այլև այս հուշարձանների արժանահավատությունը երաշխավորող պատմական տվյալներով: Թե ինչ են ներկայացնում մեր բնագրերը և թե որքանով դրանք վստահելի են տվյալ դպրոցին պատկանելու կամ հին լինելու տեսակետից՝ հնություն, որին դրանք հավակնում են ըստ ավելի ուշ շրջանի հեղինակների. ահա այն հարցերը, որոնք անպատասխան թողնելն անօգուտ կդարձնի քերականական բնագրերի՝ տվյալ դպրոցի արտադրանքի շրջանակի մեջ ներգրավումը:

Վերականգնված բնագրերից և՛ [ստեղծման] ժամանակով և՛ ներքին հատկություններով առավել հետաքրքրականը, Դավթի Մեկնությունն է: Մնացյալ հեղինակների մեկնությունները ցուցաբերում են Դավթի աշխատության հետ այս կամ այն աստիճանի ծանոթություն, և Դավթի [գործի] մասին եզրակացությունները կանխորոշում են դրանց ճակատագիրը ևս: Քերականական գրականությունը, ինչպես և հայոց դպրության յուրաքանչյուր այլ բնագավառ, կազմված լինելով բյուզանդական քրիստոնեական մշակույթի ոլորտում, կարող է և պետք է լուսաբանվի իր բյուզանդական սկզբնաղբյուրների առնչությամբ:

Հունարեն լուծմունքների հարստագույն հավաքածուն այժմ լույս է տեսել Grammatici Graeci մատենաշարով: Շարքի երրորդ հատորն ամփոփում է Դիոնիսիոսի «Արվեստին» նվիրված լուծմունքները՝ Scholia in Dionysii Thracis artem Grammaticam, 1901 թ. (113): Այստեղ զետեղված են երեք՝ Վատիկանի, Վենետիկի Սբ. Մարկոսի մատենադարանի և Լոնդոնի լուծմունքների հավաքածուները: Դրանցից յուրաքանչյուրը՝ բանաքաղ է, կազմած զանազան քերականների երկերից, որոնք ամբողջությամբ չեն պահպանվել: Օգտագործած աշխատությունների հեղինակների անուններն են՝ Մելամպոդես-Դիոմեդես, Գեորգիոս Խոյրոբոսկոս, Հելիոդորոս, Ստեփանոս, Պորփյուրիոս և մի քանի ուրիշները (114):

Ցավոք, նրանց թե՛ ժամանակը և թե՛ փոխադարձ առնչությունները



հայտնի չեն: Մելամպոդեսի և Հելիոդորոսի երկերի մի մասը պահպանվել է նաև առանձնաբար: Այն [նյութը], որ կրում է Մելամպոդեսի անունը, որոշ ձեռագրերում վերագրվում է Դիոմեդեսին: Ենթադրվում է, որ նրանցից մեկը, հավանաբար, Դիոմեդեսը, օգտվել է Մելամպոդեսի մեկնությունից: Նույնպես կարծում են, որ Հելիոդորոսի անունով հայտնի մեկնությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ Գեորգիոս Խոյրոբոսկոսի երկը՝ իր իսկ Հելիոդորոսի շարադրությամբ: Ըստ երևույթին, Ստեփանոսը նույնպես կախված է Գեորգիոսից: Պորփյուրիոսից քիչ բան է պահպանվել, իսկ նրա անձնավորության մասին ոչինչ հայտնի չէ: Հիշյալ հեղինակների և նրանց երկերի, ինչպես և լուծմունքների ժողովածուների մասին պատմվում է հրատարակությանը նախորդած՝ Հիլգարդի հանգամանալից հոդվածում, որին և հղում ենք խնդրով հետաքրքրվողներին:

Բացի նշված լուծմունքներից, համադրության համար ներգրավել ենք մի փոքր մեկնություն ևս՝ Commentariolus Byzantinus, տեղադրված Հիլգարդի հրատարակության վերջում. մեր կողմից այն մեջբերվում է «Բյուզանդացու մեկնություն» անվամբ:

Դավթի մեկնությանը նախորդում է մի պատշաճ ներածություն՝ *նախերգան*: Դրանում քննարկվում են արվեստին առնչվող ընդհանուր հարցեր: Դատողության առարկան, իսկն ասած, արվեստի սահմանումն է, որը գտնվում է Դիոնիսիոսի [«Քերականության»] հավելվածում: Ըստ այս սահմանման, արվեստները լինում են տեսական և գործնական. առաջինների մեջ են դասվում քերականությունը, ճարտասանությունը և փիլիսոփայությունը, իսկ երկրորդների՝ ատաղձագործությունը, դարբնությունը և դրանց նմանները[1]:

Նշված բաժանումը մեկնելիս, Դավիթն ելնում է մարդու երկատված բնությունից՝ բաղկացած *«յոգւոյ բանականէ եւ ի մարմնոյ գործականէ»*: Արվեստի երկու տեսակներից յուրաքանչյուրը, իր հերթին, տրոհվում է բարի, չար և միջին [մասերի]: Դավթի կարծիքով, արվեստավորը խուսափում է չարից և միջակից, և հետաքրքրվում միայն բարի արվեստով, *այլ թողլով արուեստաւորին զչարին եւ զմիջակին* և այլն, $80_3$: Սույն հղումից երևում է, որ մեր հեղինակը վերլուծում է արվեստի մասին հենց այն հավելվածը, որը առկա է Դիոնիսիոսի հունարեն գրչագրերում, բայց չկա պահպանված հայերեն գրչագրերում: Մենք այն վերականգնել ենք Դավթի մեջբերման հիման վրա:

Շարունակենք հետևել մեր հեղինակի մտքի ընթացքին հույն քերական-

---

[1] Հմմտ. **Փիլոն**, *Այլաբանութիւն, էջ 124. Քանզի ոմանք յարուեստիցն տեսականք են, այլ ոչ գործականք, երկրաչափութիւն. եւ ոմանք գործականք են, այլ ոչ տեսականք, հիւսնական, դարբնական եւ որ միանգամ ձեռագործք ասին:*

ների նույնանման դատողությունների կապակցությամբ:

Դավթի *«նախերգան»*-ը համապատասխանում է *προλεγόμενα* կամ, ավելի ճիշտ, հունարեն լուծումնքի ներածության՝ *προοίμιον*-ին: Հայերեն բառի կազմության և նշանավորության մասին կխոսենք վարը: Հունարեն լուծումնքների ժողովածուներում հայտնի են մի քանի ներածություններ: Դրանք պահպանվել են Վատիկանի ձեռագրում և զբաղեցնում են 106-115, 115-124, 156-164-րդ էջերը: Դրանցից քաղված են համարվում երեք ուրիշ *προλεγόμενα*, զգալիորեն համառոտված խմբագրությամբ, էջ 1-4, 4-7, 7-10:

Հունարեն ներածություններում քննարկվում են նույն այն հարցերը, ինչ և Դավթի մեկնությունում: Նախ քան արվեստի սահմանման անցնելը, Դավիթը պարզաբանում է, թե ինչ է նշանակում *սահմանում* ընդհանրապես, օգտվելով «մարդս բանաւոր, մահկանացու կենդանի է» օրինակից:

Հունարեն լուծումնքները նույնպես հարց են դնում, թե «ի՞նչ է սահմանումը»՝ *τί ἐστι ὅρος*, $106_{25}$, և լուսաբանում են այն նույն օրինակով՝ «մարդ է կենդանի բանաւոր, մահկանացու»՝ *ἄνθρωπος ἐστι ζῷον λογικὸν θνητόν*, և այլն, $107_{10}$ և $156_{30}$ [1]:

Ապա Դավիթը բերում է արվեստի սահմանումն այն ձևով, ինչպես այն ընթերցվում է Դիոնիսիոսի մոտ: Հունարեն *προλεγόμενα*-ների [հեղինակները], հիշատակելով էպիկուրյանների և Արիստոտելի՝ արվեստին վերաբերող հայացքները, կանգ են առնում սահմանման այն բանաձևի վրա, որն ունի նաև Դավիթը: Նրանցից մենք իմանում ենք նաև այն, որ այս բանաձևը պատկանում է ստոիկյաններին և ունի հետևյալ բովանդակությունը. «[արվեստը՝ վարժությամբ [յուրացված] հասկացությունների միասնականություն է, բարենպաստ որևէ կենցաղային նպատակին]»՝ *τέχνη ἐστὶ σύστημα ἐκ καταλήψεων ἐγγεγυμνασμένων πρός τι τέλος εὔχρηστον τῶν ἐν τῷ βίῳ*, $2_{25}$, $8_{32}$, $157_{18}$ (և $108_{31}$, որտեղ նեոմուծված է *ἐμπειρίᾳ* *փորձով*):

Հայերեն թարգմանությունը, որ մեջբերում է Դավիթը, ասում է. *արուեստ է բաղկացութիւն ի քողմանէ նախակրթեալ առ ի պիտանացու ինչ իրս որ ի կենցաղումս*, $80_{16}$:

Հայերենի փոխանցումն այնքան էլ ճշգրիտ չէ: *Κατάληψις* բառը [ծագում է] *καταλαμβάνω* [«ըմբռնել, հասկանալ»] բայից և նշանակում է «հասկացություն, հայացք». այն շփոթվել է *κατάληψις* «թողում», *καταλείπω* [«թողնել, լքել» բայից] (115): Հունարեն լուծումնքները ճիշտ են բացատրում. [«հասկացություններից», այսինքն՝ հնարանքներից, գիտելիքներից, տեսություններից»] *ἐκ καταλήψεων» οἱονεί ἐκ ἐφευρημάτων, ἐκ γνώσεων, ἐκ*

[1] Հունական մեկնություններից վկայակոչումներս ամենուր կատարվել են ըստ Հիլգարդի հրատարակության: Թվերը ցույց են տալիս մեջբերումների սկիզբը՝ էջերով և տողերով:



*θεωρημάτων*, $108_{37}$: *«Ի քողմանէ նախակրթեալն»*, ըստ Դավթի, նշանակում է *«զոր ինչ եգիտ ոք կրթելով, եւ յայլմէ եւս մնացելովք, զկնի իւր եթող ապագայիցն»*: Իմաստն այն է, որ արվեստները գոյանում և զարգանում են գիտելիքների կուտակման, սերնդից սերունդ փոխանցելու միջոցով: Միանգամայն նույն կերպ է հասկանում հույնը արվեստի զարգացման ընթացքը, ամփոփելով է իր միտքերն [հետևյալ կերպով]. [«և այսպես արվեստները, մեկից մյուսը փոխանցվելով, հասնում են կատարելության»]՝ *καὶ οὕτως ἐξ ἑνὸς εἰς ἕνα συμπεραιούμεναι αἱ τέχναι τὸ τέλειον κατειλήφασιν*, $109_{2}$:

Քննության առարկա արվեստի սահմանումը դեռևս հանդիպում է Դավիթ փիլիսոփայի «Սահմանք»-ում ավելի ճշգրիտ թարգմանությամբ, որին կանդրադառնանք ստորև:

Դավիթը արվեստներում զանազանում է օգտավետն ու վնասակարը, բարին և չարը: Հունարեն լուծումնքները, մեկնելով *εὔχρηστον* «օգտավետ, բարենպաստ, նպաստող» բառը, նույնպես սահմանազատում են օգտակար և անօգուտ արվեստները՝ «արվեստ»՝ *τέχνη* իսկապես կոչվում են միայն օգտակար նպատակների հետամուտ արվեստները, իսկ վնասակար նպատակներ ունեցողները կոչվում են «չարարվեստ»՝ *κακοτεχνία:* Դրանց թվին են պատկանում, օրինակ, կախարդությունը՝ *ἡ γοητευτική*, $109_{32}$, դեղավաճառները կամ օծանելիք պատրաստողները՝ *οἱ φαρμακοπῶλαι ἤγουν οἱ μύρεψοι* «սուտ արվեստներ» են՝ *ψευδοτεχνία*, $110_{10}$:

Դավիթը նույնպես վնասակար արվեստներ է համարում՝ *թովչութիւն, դիւթութիւն, կախարդութիւն* (116), իսկ բարի՝ *գիրք հօգևորք և երգք*:

Գործնական արվեստներից, ըստ Դավթի, օգտավետ են *հիւսնութիւն, դարբնութիւն* (*τεκτονική, χαλκευτική*, $110_{20}$), իսկ վնասակար են *դեղք մահաբերք* (հմմտ. *φαρμακοπῶλαι* և *μύρεψοι*):

Դավիթը տարաձայնում է հունարեն լուծումնքներին, ճանաչելով արվեստների նշված տեսակներում նաև ինչ-որ *միջին*, ընդ որում իբրև *միջին*-ի օրինակ՝ բանական արվեստների թվից բերում է *մրմունջք եւ պարք* (*ὀρχηστική*, $122_{34}$), իսկ գործականներից՝ *աղեղնաւորութիւն* եւ *գեղարդաւոր լինել* (հմմտ. *στρατηγική*, $110_{21}$):

Հունարեն լուծումնքները տրոհում են *λογικαί* («բանաւոր») արվեստները «գործնականների»՝ *ποιητικαί* և «տեսականների»՝ *θεωρητικαί*, և առաջինի մեջ դասում են ատաղձագործությունն ու դարբնությունը, իսկ երկրորդի՝ աստղաբաշխությունն և իմաստասիրությունը: Այն ինչ Դավիթն անվանում է «միջին», հունարեն լուծումնքներում դրվում է *πρακτικαί*՝ «գործնականների» մեջ. *στρατηγική* (ռազմավարություն) և *ὀρχηστική* (պարային արվեստ):

Հունարեն լուծումնքները զանազանում են նաև μικταί (խառը) արվեստ-

ներ, որոնք կարելի է նույնացնել Դավթի «միջին»-ի հետ: Սակայն, դատելով *ἰατρική* [«բժշկութիւն»] օրինակից, դա այդպես չէ: Ըստ Դավթի, «բանական»՝ *λογικαί* [արվեստներն են] *իմաստասիրութիւն, բանական բժշկութիւն, քերդողութիւն, ճարտասանութիւն*: Դիոնիսիոսի մոտ «բանականները»՝ *λογικαί* ունեն միայն երեք ստորաբաժանում՝ «իմաստասիրութիւն»՝ *φιλοσοφία*, «քերականութիւն»՝ γραμματική, «ճարտասանութիւն»՝ *ῥητορική*. Բժշկությունը չի հիշատակվում: Լուծմունքներից մեկում ասվում է, որ Դիոնիսիոսը հակիրճության համար նշում է արվեստների երկու տեսակ. *δύο μὲν οὗτος εἶπεν διὰ τὸ φιλοσύντομον*, իսկ իրականում հարկ է ճանաչել երեք տեսակ՝ «բանական», «գործական» և «խառն»՝ *λογικαί, πρακτικαί, μικταί*, և որպես վերջինիս օրինակ բերվում է «բժշկություն»՝ *ἰατρική*, ինչպես անում են նաև մյուս վերլուծողները, բայց հավելելով «քերականությունը»՝ *γραμματική*, $162_{8}$:

Դավիթը կարծես թե ընդունում է «խառն»՝ *μικταί* տեսակը այնու, որ հիշատակում է *բժշկութիւն ἰατρική*, բայց նա դասում է այն ոչ թե առանձին, «բանականների»՝ *λογικαί* և «գործականների» *πρακτικαί* շարքը, այլ առաջին տեսակի մեջ:

Դավթի՝ արվեստի տրոհումը ըստ *կայուն եւ հաստատակաց*-ի, ինչպես և *անցական եւ առանձինն*-ի, հիմնվում է, ըստ երևույթին, արվեստի ճանաչողական նշանակության վրա՝ համեմատված գիտության հետ, և այս իմաստով համադրելի է լուծմունքների խոսքերին. [«Քանի՞ եղանակով է տարբերվում արվեստը գիտությունից: Երկու՝ <որպես> ամենաընդհանուրն ու ամենամասնավորը, նաև <որպես> սխալվող և անսխալ. ընդհանուրին վայել է անսխալը, իսկ մասնավորին՝ սխալականը»]՝ *κατὰ πόσους τρόπους διαφέρει τέχνη ἐπιστήμης; κατὰ δύο, κατὰ τὸ καθολικώτερον καὶ μερικώτερον, καὶ <κατὰ τὸ> πταιστὸν καὶ ἄπταιστον· προσήκει δὲ τῷ μὲν καθολικῷ τὸ ἄπταιστον, τῷ δὲ μερικῷ τὸ πταιστόν*, $162_{14}$:

Լուծմունքներում ընդունված գլուխները՝ *τὰ εἰωθότα κεφάλαια*, $159_{7}$, հիշատակում է նաև մեր քերականը: Սովորաբար լինում է այդպիսի ութ «գլուխ» (117), ինչպես դա երևում է ընդարձակ ներածականներից՝ *προλεγόμενα*-ից. [նպատակը, օգուտը, վավերականությունը, խորագիրը, տրոհումը, ուսուցանման եղանակը, [փիլիսոփայության] որ [բաժնում] է դասվում]՝ *ὁ σκοπός, τὸ χρήσιμον, τὸ γνήσιον, ἡ ἐπιγραφή, ἡ διαίρησις, ὁ διδασ-καλικὸς τρόπος, τὸ ὑπὸ τί ἀνάγεται*, 159-161: Մյուս ընդարձակ ներածություն-προλεγόμενα-յում թվարկվում է միայն յոթ գլուխ, «ուսուցման եղանակի»՝ *ὁ διδασκαλικὸς τρόπος* բացառությամբ, 123-124: Իսկ համառոտ խմբագրության *προλεγόμενα*-յում նշվում է միայն վեց «գլուխ». [անհրաժեշտ է ... վեց գլուխ հետազոտել, որոնք և կարևոր են. խորագիր, հեղինակ, նպատակ, օգուտ, կարգ, կատարում]՝ *δεῖ δὲ ἀναγκαίως...τὰ ἓξ κεφάλαια ζητεῖν· ταῦτα καὶ αὐτὰ ἀναγκαῖα ὄντα, ἐπιγραφήν, συγγραφέα, σκοπόν, χρήσιμον, τάξιν, τέλος*, 3-4:



Այս խոսքերից երևում է, որ հեղինակին ծանոթ են և այլ գլուխներ, բայց *ἀναγκαῖα* «անհրաժեշտ» կամ «կարևոր» նա համարում է միայն վեցը: Նրան համամիտ է մեր Դավիթը: Ճիշտ է, նա ասում է՝ *հարկաւորաբար* (*ἀναγκαίως*) *հնգիւ կատարի*, սակայն իրականում թվարկում է ոչ թե հինգ, այլ վեց գլուխ. *դիտաւորութիւն, հարազատութիւն, վերագիր, վարդապետական, ըստ մասին բաժանումն, յորում եւ օգտակարն*, այսինքն՝ *ὁ σκοπός, τὸ γνήσιον, ἡ ἐπιγραφή, ὁ διδασκαλικὸς, ἡ διαίρησις, τὸ χρήσιμον*.

*Συγγραφεύς* [«հեղինակ»] ասելով, հասկանում են *τὸ γνήσιον* վավերականություն, ինչպես երևում է բացատրությունից. [իսկ հեղինակը՝ Դիոնիսիոս Թրակացին է] *συγγραφέα δὲ Διονύσιον τὸν Θρᾷκα*. $4_{14}$, $124_{3}$, $160_{24}$: Ուրեմն, Դավթի և հույն մեկնիչի տարբերությունն այ է, որ Դավիթը «կարգի»՝ *τάξις* և «ավարտման»՝ *τέλος* փոխարեն դնում է «վարդապետական»՝ *ὁ διδασκαλικός* և «բաժանումն»՝ *ἡ διαίρησις*. Հիմնվելով [«կարգ, քանի որ դրանով բարեկարգված է ամբողջ վարդապետությունը»]՝ *τάξιν, ὅτι αὐτῷ εὔτακτος πᾶσα ἡ διδασκαλία*, $4_{17}$ բացատրության վրա, կարելի էր ենթադրել, որ հեղինակը շփոթում է «կարգը»՝ *τάξις* «վարդապետականի»՝ *διδασκαλικός*-ի հետ: Այդ դեպքում երկու հեղինակների միջև իբրև տարաձայնության միակ կետ մնում է «կատարումն»՝ *τέλος* «բաժանման»՝ *διαίρησις* փոխարեն: Հետաքրքիր է, որ Դավիթը մեկնելիս փոխարինում է *ըստ մասին բաժանումն*՝ *ըստ մասին կատարումն* արտահայտությամբ, այսինքն՝ διαίρησις-ի փոխարեն գործածում է *τέλος*: Հույնը մեկնաբանում է. [«կատարումն, քանի որ ընթանում է մինչև եզրահանգում»]՝ *τέλος, ὅτι μέχρι τοῦ συμπεράσματος διεξέρχεται*, $4_{18}$: Նույնպիսի իմաստ է դնում Դավիթն իր արտահայտության մեջ, երբ ասում է, որ *ըստ մասին կատարումն* նշանակում է *«բայէտ ի քերականութենէ սկիզբն առնելով առաջնորդէ մինչեւ ի վերջին մասն, եւ կամ ի վերջի մասնէն մինչեւ ի գլխաւորագոյն սկիզբն»*: Երկու հեղինակների խոսքը նույն պահանջի մասին է՝ որ դրված խնդիրը քննարկվի ամբողջությամբ: *«Գլխաւորագոյն սկիզբն»* ասելով, Դավիթն, ըստ երևույթին, ի նկատի ունի Դիոնիսիոսի բուն քերականությունը, իսկ «վերջին մաս»՝ արվեստի մասին հավելվածը: Դավիթը արվեստի վերաբերյալ ընդհանուր հարցի քննարկումը համարում է քերականության մաս և գտնում է, որ շարադրանքը կարելի է սկսել կամ քերականությունից, և կամ արվեստի սահմանումից, բայց երկու մասն էլ պետք է քննվեն ի շահ առարկայի ամբողջության:

Դավթի ազգակցությունը համառոտ ներածականների հետ հաստատ-

վում է նաև այնու, որ դրանց մեջ էլ, ինչպես և Դավթի ներածության մեջ, քննարկվում է քերականության սկզբնավորման խնդիրը, $4_{20}$, մինչդեռ այլ լուծմունքներում այս հարցը զետեղված է Դիոնիսիոսի երկի առաջին գլխի մեկնությունում:

Ըստ Դավթի, *«սկիզբն առեալ քերդողականիս* (*քերդողական*՝ «քերական»-ի իմաստով) *յառաջ գալոյ յերաժշտականէ անտի, վասն զի բնաւորեցաւ երկայնիւք և ողիւք յիւրն վարիլ նուագարար երգս»* [$82_{14}$], այսինքն՝ երգի հիմքում ընկած են երկար և կարճ վանկերը[1]: Ըստ երևույթին, Դավթի այս խոսքերում արտացոլվել է այն կարծիքը, թե առոգանությունը քերականության մասն է, և թե հենց առոգանությունից պետք է սկսել քերականության շարադրությունը: Այդպես էր կարծում նաև Պորփյուրիոսը, որից պահպանվել է առոգանության մասին հանգամանալից մի գրվածք՝ *Περὶ προσῳδίας*, [«Առոգանության մասին»], 128-150, որտեղ և միտքն է արծարծվում, թե հակառակ Դիոնիսիոսի, պետք է սկսել [«հենց առոգանությունից»]՝ *ἀπ᾽ αὐτῆς τῆς προσῳδίας*: Նույն տեղից իմանում ենք, որ Դիոնիսիոսի [«Արվեստին»] կցված գլուխը առոգանության մասին պատկանում է ոչ թե նրան, այլ ոմն Թեոդոսիոսի:

Դավիթը բերում է նաև այն [հեղինակների] կարծիքը, ովքեր կնախընտրեին սկսել հնչյունից՝ *«ի ձայնէ, իբր թե ձայնս է նիւթ բանականութեան, որպէս հիւսնականին փայտ և դարբնականին երկաթ, այլ եւ վայելչութիւնք եւ կարգք աշխարհիս ձայնիւ ասացեալ յարմարին. եւ հաստատելով յայս, զի բանիւ վարդապետեին եւ բանիւ աշակերտեալք կրթեին»* [$82_{18}$]:

Հունարեն լուծմունքներում այս կարծիքը հիմնավորվում է փոքր ինչ այլ կերպ. այսպես, օրինակ, ըստ Հելիոդորոս քերականի, [«քանի որ հնչյունները բաղկացած են ձայնից, իսկ հնչյունը՝ մարդու առաջին և անմասն ձայն է, անհրաժեշտ է մեզ նախ և առաջ հասկանալ այն, ինչ վերաբերում է ձայնին»]՝ *ἐπειδὴ ἐκ τῆς φωνῆς τὰ στοιχεία συνίστανται, στοιχεῖον δὲ ἐστιν ἡ πρώτη καὶ ἀμερὴς τοῦ ἀνθρώπου φωνή, ἀναγκαῖον ἡμᾶς περὶ φωνῆς πρῶτον διαλαβεῖν*, $482_3$ (հմմտ. $165_5$, [արդյո՞ք բառը քերականության նյութ է]՝ *εἰ γὰρ ὕλη γραμματικῆς λέξις* և այլն):

Նույն կարծիքի էր և հռչակավոր քերական Ապոլլոնիոս Դիսկոլոսը. [«նրանք, ովքեր սկսում են ձայնից, ինչպես և Ապոլլոնիոս Դիսկոլոսը»]՝ *οἱ δὲ ἀπὸ φωνῆς, ὡς καὶ ᾽Απολλώνιος ὁ Δύσκολος*, $4_{22}$:

Դավիթը հիշատակում է հնչյունի սահմանումը իբրև «վիրաւորութիւն

[1] Հմմտ. **Դավիթ**, *Սահմանք*, էջ 176, ***Քերթողն գիտէ թէ էն եւ ովն բնութեամբ երկարք են, բայց եւ զպատճառսն ոչ գիտէ, այլ վերաձգէ յերաժշտական իմաստասէրն*** – հուն. 39-40, ***ὁ γραμματικὸς οἶδε μὲν ὅτι τὸ ῆ καὶ τὸ ῶ μακρά ἐστι, τὴν δὲ αἰτίαν τῇ μουσικῇ παραπέμπεται***.



աւդոյ». *«[Եւ ասացին] զձայն* վիրաւորութիւն աւդոյ, *աւրինակաւ զխիտն ինչ ընդ իրեարս բաղխելով, զի վիրաւորեալ աւդն ի միջոցին տացէ ձայն. իսկ անգայտն եւ կակուղն ոչ տացէ զհնչումն»* [$82_{23}$]:

Հելիոդորոսը վկայում է, որ Դիոգենես Բաբելոնացին հնչյունը սահմանում է իբրև «օդ հարվածյալ» [«վիրավորեալ»] (118)՝ *φωνὴ ἐστιν ἀὴρ πεπληγμένος*, բայց քանի որ ըստ Պլատոնի օդը մարմին չի ճանաչվում, ըստ այդմ նա ձևափոխում է Դիոգենեսի սահմանումը, դարձնելով այն «օդի հարվածում»՝ *πληγὴ ἀέρος*, $482_5$ (հմմտ. *πλῆξις ἀέρος* $312_1$): Այս նույն բանաձևը մեջբերվում է Դավթի «Սահմանքում». ***քանզի քերթողքն ի սահմանել զձայն՝ վիրաւորութիւն աւդոյ ասացին***, 178 = հունարենի *οἱ μὲν γραμματικοὶ τὴν φωνὴν ὁρίζονται πληγὴν ἀέρος*, $41_{26}$:

Դավիթը հաշվի է նստում նաև նրանց հետ, ովքեր համաձայն չէին մեջբերված կարծիքներին և ասում էին, թե *«ընդ արուեստաւորին անցանել խափանի եւ արուեստն»*, և *«սկիզբն արարին ի գրոյ, որպէս զի յառաջակայսն զյիշատակն յարաձգեսցէ»* [$82_{26}$]: Ուրեմն, նախամեծար համարվում է գիրը, իբրև արվեստի երկերի հավերժացման միջոցի:

Դիոնիսիոսը, ըստ մեր հեղինակի, հաշտեցրեց երկու կարծիքները կամ սկզբունքները, կարծելով, *«թե զձայնի բնութիւն գտանել իմաստասիրաց է, եւ զիրն տեսցի ի կարգի իւրում, զի մի՛ այլ ընդ այլոյ քննութեամբ ծառը լիցի արուեստաւորն. եւ իւր սկսեալ բուռն եհար զնոյն ինքն զիրէս, եթե "քերականութիւն է հմտութիւն"»* [$83_4$]:

Թրակացի հորջորջված (թեև նա Բյուզանդիայից էր) (119) Դիոնիսիոսի և նրա աշխատության մասին հունարեն լուծմունքները մեծ գովասանքով են արտահայտվում, $158_{17}$:

Այն կարծիքը, թե հնչյունի ուսումնասիրությունը պատկանում է փիլիսոփայության բնագավառին, կարդում ենք Դավթի «Սահմանք»-ում. *եւ դարձեալ իմաստասիրութիւն գիտէ զբնութիւնս ձայնից*, 177 = հունարենի *καὶ πάλιν ἡ φιλοσοφία γινώσκει τὴν φύσιν τῆς φωνῆς*, $40_{21}$:

Ապոլլոնիոսի որդի Հերովդիանոսի մասին հիշատակվում է հունարեն լուծմունքներում ևս՝ *ὁ δὲ ῾Ηρωδιανὸς οὗτος υἱὸς μὲν γέγονεν ᾽Απολλωνίου τοῦπίκλην Δυσκόλου*, 129. սակայն Դավթի պատմածը նրա մասին, թե նա այրել է քերականական երկերը, հույն աղբյուրներին անծանոթ է[1]:

[1] **Համանման արարք եբրայական ծագումնաբանական գրքերի նկատմամբ վերագրում էին Հերովդեսին, տե՛ս Եւսեբիոս Կեսարացի**, *Պատմութիւն եկեղեցւոյ*, էջ 41 (120):

## §1. Քերականության մասին

*Քերականութիւն է հմտութիւն որք ի քերդողաց եւ ի շարագրաց իբրու բազում անգամ ասացելոց:*

Դավիթը սկսում է իր մեկնությունը նույնից, ինչից և հունարեն լուծմունքները: Նրան հայտնի է ոմանց տարակուսանքը՝ նրանց, ում թվում էր, թե Դիոնիսիոսի *հմտութիւն ἐμπειρία* բառը տանում է ավելի շուտ դեպի անմտություն, քան դեպի իմացություն: Նա այս կարծիքին համամիտ չէ և կարծում է, թե «*նա* (իմա՝ Դիոնիսիոսը) *ճշմարտի զոր ինչ եգիտն և կարգեաց ի հմտութենէ եւ ի բանաւորութենէ*[1]»: Ընդ որում Դավիթը բացատրում է, թե ինչ են նշանակում *հմտութիւն* և *բանաւորութիւն* հասկացությունները. «*հարցեալ զքեզ բայ եւ կամ անուն եւ քո ոչ կարացեալ ըստ արժանւոյն պատասխանել ի նախնեացն անկար սովորութիւն ըստ նմանութեան երթալոյ անասնոցն ի սովորական տեղիս*»: Սակայն բանավորությունը ունակություն է «*զուծանել զխնդիրն ըստ նշանաւոր հրամանաց ի լսելոյ մարդոյ ստուգելով զբազում անգամ ասացեալսն քերդողաց եւ շարագրաց, այլ ոչ զաւտար ինչ որ ոչ լսի բան*»:

Դավթի շոշափած խնդիրը քննվում է հունարեն լուծմունքներում ևս: Դրանցից իմանում ենք, որ այս հարցը բարձրացրել են Պտղոմեոս Ճեմականը և ուրիշներ, ովքեր տհաճությամբ էին վերաբերվում Դիոնիսիոսին այն պատճառով, որ նա «բանականագույն քերականությունը անվանել է "փորձառություն", որ ոչ այլ ինչ է, եթե ոչ միշտ իրենց հավասար իրերի պահպանում և անգիտակից հիշողություն»՝

*Πτολεμαῖος ὁ Περιπατητικὸς καὶ ἄλλοι τινὲς ἐγκαλοῦσι Διονυσίῳ ἐμπειρίαν εἰρηκότι τὴν λογικωτάτὴν γραμματικὴν ἥτις ἐμπειρία[ν] φημί τῶν ὡσαύτως ἐχόντων πραγμάτων ἐστὶ τήρησις τε καὶ μνήμη ἄλογος*, $165_{16}$, $300_{15}$:

Քերականները ու առհասարակ հին փիլիսոփայական երկերի մեկնիչները զանազանում էին *πεῖρα*՝ «փորձը» և *ἐμπειρία*՝ «փորձառությունը» և համադրում էին դրանք *τέχνη*՝ «արվեստ, արհեստ» և *ἐπιστήμη*՝ «գիտություն» կամ *γνῶσις*՝ «ճանաչողություն» [հասկացություններին]: Ըստ Մելամպոդեսի, *πεῖρα*-ն՝ [«փորձը»՝ որևէ իրի մեկական ոչ բանական ստուգումն է]՝ *ἡ ἅπαξ τινὸς πράγματος δοκιμασία ἄλογος*, իսկ *ἐμπειρία-ն* [«փորձառությունը»՝ նույն բանի հաճախակի ոչ բանական ստուգումն է]՝ *ἡ πολλάκις τοῦ αὐτοῦ πράγματος δοκιμασία ἄλογος*, $10_{25}$: Մինչդեռ «արվեստը»՝ *τέχνη*-ն գիտություն է կամ գիտելիքների միագումար՝ *σύστημα ἐκ καταλήψεων*, $162_{20}$, $166_{25}$[2]:

---

[1] Ավելի ճիշտ կլիներ փոխարեն *ի բանաւորութենէ* կարդալ *ի բանաւորութենէ* <է>, $84_4$:

[2] Հմմտ. **Դավիթ**, Սահմանք, էջ 181, *Հմտութիւն է միոյ իրի անպատճառ գիտութիւն ... ներհմտութիւն է ընդհանուր անպատճառ գիտութիւն ... եւ դարձեալ ներհմտութիւն է յիշումն եւ*



Եվ երբ Դիոնիսիոսն ասում է, թե քերականությունը փորձառություն է, վարժվածություն կամ հմտություն, այդպիսով նա նսեմացնում է այս վերին աստիճանի բանական՝ *λογικωτάτη*, ամենից շատ բանականություն՝ *λόγος* պահանջող գիտությունը, վերածելով այն սովորական, բանականությունից զրկված վարժվածության՝ *δοκιμασία ἄλογος*, կամ, ինչպես արտահայտվում է մեր Դավիթը, անբանության՝ *ἀλογία*:

Լուծմունքների հեղինակները համարում են, որ սա թյուրիմացություն է և փորձում են այն մի կերպ փարատել: Մելամպոդեսին թվում է, որ վիճահարույց բառն այստեղ գործածվում է «իմացություն» բառի փոխարեն. [«այստեղ ոչ բուն իմաստով է ասում՝ *ճանաչողության* փոխարեն»] *ἐνταῦθα καταχρηστικῶς εἰπεῖν ἀντὶ τοῦ γνῶσις*, $11_2$: Այլ կարծիքի համաձայն, այն դրված է «արվեստ»-ի փոխարեն. [«*փորձառություն* բառն այստեղ Դիոնիսիոսը վերցնում է *արվեստ*-ի իմաստով»] *τὴν γὰρ ἐμπειρίαν ἐνταῦθα ὁ Διονύσιος ἀντὶ τῆς τέχνης ἐξελάβετο*, $300_{26}$: Բյուզանդական դարաշրջանին պատկանող Մեկնության հեղինակը կարծում է, որ [«փորձառություն» բառով երբեմն անվանում են անբան ճանաչողությունը, և երբեմն՝ բանական»] *ἐμπειρία δὲ λέγεται ποτὲ μὲν ἡ ἄλογος γνῶσις, ποτὲ δὲ καὶ ἡ διὰ λόγου γνῶσις*, և որ Դիոնիսիոսի գործածմամբ այս բառը պետք է հասկանալ հենց «բանական ճանաչողություն»՝ *λογικὴ γνῶσις* իմաստով, $566_{26}$:

Կա և այսպիսի մեկնություն, թե [«միշտ չէ, որ քերականությունն իր նպատակին է հասնում բանականությամբ, այլ հաճախ նաև զուտ ավանդությամբ ... հաճախ հայտնաբերում ենք, որ քերականությունը ոչ բանական է»] *οὐ λόγῳ πάντοτε κατορθοῦται ἡ γραμματική, ἀλλὰ πολλάκις καὶ ψιλῇ παραδόσει ... πολλάκις εὑρίσκομεν τὴν γραμματικὴν ἄλογον*, $165_{20}$:

Նույն միտքն է արտահայտում Ստեփանոս մեկնիչը՝ այլ ձևակերպմամբ: Քանի որ քերականությունը խառն՝ *μικτή* համակարգ է, մասամբ դա բանական է՝ *λογική*, և մասամբ գործնական՝ *πρακτική*, [«փորձառությունը որոշում և սահմանում է դրա գործնական մասը, իսկ մասից տարածվում է ամբողջի վրա»] *διὰ τοῦ ἐμπειρία τὸ πρακτικὸν μέρος αὐτῆς ἀφορίζεται τε καὶ ὁρίζεται, ἀπὸ δὲ μέρους τὸ ὅλον διαλαμβάνει*: Ուստի և նրան հայտնի է այն կարծիքը, թե [«փորձառությունը անբան վարժվածություն է և բանական ճանաչողություն»]՝ *ἐμπειρία ἐστὶν ἡ ἄλογος τριβὴ καὶ ἡ λογική*

---

*անբան պահպանութիւն մարդկային բազմաբար եւ նոյնաբար երեւեցելոցն* = հուն. էջ $43_{23}$: *Ἐμπειρία* բառը ճիշտ է փոխանցվել իբրև *ներհմտութիւն*, և նույն *ներհմտութիւն*-ը սպասելի էր նաև Դիոնիսիոսի թարգմանության մեջ:

Նույն տեղում, *արուեստ ունակութիւն ումն է եւ գիտութիւն*, 181 = *ἡ τέχνη ἕξις καὶ γνῶσις ἐστιν*, $43_{32}$: Հմմտ. նաև էջ 182 = հուն. $44_{23}$ (121):

*γνῶσις*, սակայն նա չի կիսում դա, և պաշտպանում է սեփական բացատրությունը, այն է՝ որ Դիոնիսիոսի սահմանումը վերաբերում է սոսկ քերականության գործնական կողմին, 167$_5$:

Մեր Դավիթը, հավանաբար, այն տեսակետին է հետևում, որ մեկնիչների գանգատները անհիմն են, և Դիոնիսիոսի բանաձևը պարփակում է քերականության ոչ միայն գործնական, այլև տեսական նշանակությունը, քանի որ այստեղ խոսվում է ոչ միայն *հմտութեան*՝ *ἐμπειρία*, այլև փորձնական ճանաչողության մասին՝ ճանաչողություն այն ամենի մասին, ինչ որ մատենագրությունն է պարունակում: Սրա մեջ է նա տեսնում փորձառության և բանականության՝ *ἐμπειρία* և *λογική*-ի զուգակցումը:

*Եւ մասունք են նորա վեց*: Դավթի մեկնությունն (122) ասում է. *Եցոյց զքերդողական մասունս, որ հատեալք են ի բոլորէ. եւ եթե զմի ոչ կալցի յայսցանէ քերդողն, ոչ ասի կատարեալ արուեստաւոր: Քանզի տեսակք ճարտասանականին երիւք այսոքիւք կատարին եւ վարին՝ ատենականաւն եւ բաղխոհականաւն եւ կացրդականաւն, զուգահաւասար հատեալք ի սեռէ. եւ զնոյն ինքն բերելով յինքեան, որպէս զկենդանութիւն կենդանին, որոց եթե ոչ ունիցի ոք զմի ի նոցանէ ոչ կատարեալ ասի ճարտասան*[1]*:*

Խոսքն այն մասին է, թե ինչու քերականությունը բաժանվում է մասերի, և ո՛չ տեսակների, և ինչ տարբերություն կա դրանց միջև:

Մասը՝ *μέρος*, ըստ Դավթի, ինքնուրույն մեծություն չէ, այլ ամբողջի մի հատված. իսկ տեսակը՝ *εἶδος*, թեև նույնպես մասնավոր հասկացություն է սեռի՝ *γένος*-ի վերաբերությամբ, սակայն նա ամբողջական մի բան է: Ուստի, եթե որևէ մեկը չգիտե ինչ-որ բանի մի մասը, նա չգիտե և ամբողջը. մինչդեռ որևէ տեսակի իմացությունն արդեն մի ամբողջականության տիրապետելն է: Այս պատճառով քերականության որևէ մասի չիմացությունը նշանակում է քերականի անվան արժանի չլինելը. մինչդեռ ճարտասանության երեք տեսակներից մեկի իմացությունն արդեն ճարտասանի հռչակ է ստեղծում:

Դավթի դատողությունը համարյա բառացի համընկնում է հունարեն լուծմունքներում մեր ընթերցածին. [Ինչո՞ւ քերականությունը բաժանվում է մասերի, և ո՛չ տեսակների, և ի՞նչ է զանազանում մասը տեսակից: Պետք է ասել, որ տեսակները առանձնանում են սեռից և ինքնամփոփ են, ինչպես «կենդանի» սեռից առանձնանում է «մարդ» տեսակը. իսկ մասը՝ տեսակի բեկոր է, չէ՞ որ անկատար է մարդու մասը՝ գլուխը: Ուստի խոսում ենք ճարտասանության երեք տեսակի մասին՝ ատենական, բաղխոհական և կացրդական, և նրան, ով գիտե այս երեք տեսակներից մեկը, կոչում ենք

[1] «Ոչ» մասնիկները՝ էջ 84$_{18-19}$, պետք է վերցնել փակագծերի մեջ, այսինքն՝ վերացնել:



կատարյալ ճարտասան, բայց նրան, ով չգիտե քերականության բոլոր մասերը, քերական չեն անվանում, քանի որ քերականությունը համալրվում է այս բոլոր մասերից]՝ *διὰ τὶ δὲ μέρη τῆς γραμματικῆς καὶ οὐχὶ εἴδη, καὶ τί διαφέρει μέρος εἴδους; καὶ λεκτέον ὅτι τὰ εἴδη ἐκ τῶν γενῶν διαιροῦνται καὶ αὐτοτελῆ εἰσιν, οἷον ἐκ τοῦ ζῴου γένους διαιροῦμεν τὸν ἄνθρωπον· τὸ δὲ μέρος ἀπόσπασμά ἐστι τοῦ εἴδους;ἀτελὲς γὰρ ἀνθρώπου μέρος ἡ κεφαλή. Ὅθεν ῥητορικῆς λέγομεν εἴδη τρία, συμβουλευτικόν, δικανικόν, πανηγυρικόν· καὶ ὅτι τὸν μὲν ἐπιστάμενον ἓν τῶν τριῶν τούτων εἰδῶν ῥήτορα τέλειον λέγομεν, τὸν δὲ μὴ ἐπιστάμενον πάντα τὰ τῆς γραμματικῆς μέρη γραμματικὸν οὐ λέγομεν· ἐκ πάντων γὰρ αὕτη τούτων τῶν μερῶν ἀναπληροῦται*, 301$_{30}$ (նաև 168$_{19}$):

Ճարտասանության երեք տեսակները հիշատակվում են նաև «Սահմանք»-ում. այստեղ դրանք թարգմանված են նույն բառերով. *ճարտասանական սեռ զոլով յերիս բաժանի ի տեսակս՝ յատենականն, ի բաղխոհականն եւ ի կացրդականն*, 207 = հուն. 72$_5$: Տերմինաբանությունն այնքան հատկանշական է, որ թույլ է տալիս Դավիթ քերականին մասնակից դարձնել «Սահմանք»-ի թարգմանությանը: Սակայն բանն այն է, որ «Սահմանք»-ում ճարտասանության տրոհումը երեք տեսակի սխալ է համարվում՝ *ոչ է բարւոք բաժանումն*, *οὐ καλῶς ἔχει αὕτη ἡ διαίρεσις*. Հետևաբար, մեր Դավիթը, որ այս տրոհման կողմնակից է, չի կարող լինել «Սահմանք»-ի ո՛չ հեղինակը և ո՛չ թարգմանիչը (123): Նրանց գործածած եզրույթների ընդհանրությունը հարկ է վերագրել աղբյուրների նույնությանը կամ թարգմանական գրականության հանրաճանաչ ավանդությանը:

Ճարտասանության տեսակների առնչությունը միմյանց և իրենց սեռին լուսաբանելու համար Դավիթը դիմում է համեմատության. *որպէս զկենդանութիւն կենդանին*, ցանկանալով ասել, որ ճարտասանության տեսակներն այնպիսի հատկություն ունեն, ինչպիսին է կենդանու համար «կենդանի լինել»-ը՝ ինչպես յուրաքանչյուր կենդանի ունի «կենդանություն», նույնպես և ճարտասանության յուրաքանչյուր տեսակն ունի համապատասխան հատկանիշ: Դավիթն իր օրինակին է հղում մի այնպիսի անբռնազբոսությամբ, որ թվում է, թե մեջբերված օրինակը հանրածանոթ է և [բոլորին] հասկանալի: Արդյո՞ք մեր հեղինակն ի նկատի չուներ Պորփյուրի հանրահայտ աշխատությունը՝ Ներածությունը:

*Նախ՝ վերծանութիւն ներկուռ ըստ առոգանութեան*: Դավիթն իր առաջ հարց է դնում, թե ինչու Դիոնիսիոսը նախապատվություն է տալիս վերծանությանը՝ ըստ առոգանության, այսինքն՝ թե ինչու նա սկսում է վերծանությունից: Նա գտնում է, որ նախապատվությունը (բառացի՝ *նախադասութիւն և ստորադասութիւն*, praepositio et postpositio) ընդհանրապես լինում է երեք տեսակ, երեք հիմքով՝ տեղ, ժամանակ, արժանիք, և

կարծում է, որ տվյալ դեպքում նախապատվությունն ըստ տեղի է, *«քանզի անկար էր առանց սորա այլեւս առաջիկայիցն զյարմարութիւն ունել»*:

Ապա Դավիթն առաջարկում է «վերծանության»՝ *ἀνάγνωσις*-ի մեկնությունը: Ըստ այդմ, *վերծանութիւն* նշանակում է «ընթերցում», իսկ փիլիսոփաներն ասում են, թե [դա նշանակում է] *«վերստին ճանաչել* (124) *հոգւոյ զմոռացումն իմաստից ազնիւ գիտի ծառային»*:

Նկատենք, որ *եւ վերծանութիւն ասի ընթերցումն* արտահայտությունը պակասում էր բնագրից, բայց այն թելադրված է ընդհանուր իմաստով: Մեր սրբագրումը հաստատվում է ոչ միայն ուշ շրջանի մեկնիչ Եսայիի կողմից, ինչպես նշում ենք ծանոթագրություններում, այլև իր իսկ Դավթի՝ նույն տեղի հղմամբ՝ հաջորդ, 87-րդ էջում. *եւ եթե զինչ է վերծանութիւն ըստ մեզ, կամ որպէս ըստ իմաստասիրացն, քաջայայտ է*:

Դավթի այս մեկնությանը հունարեն լուծմունքներից լավագույնս համարվում են Հելիոդորոսի խոսքերը. [«արվեստագիրը մասերի դասավորությունը կատարել է ըստ դասավանդման հաջորդականության. նախ երիտասարդը պետք է վերծանի... Իսկ վերծանությունը՝ հոգու նախապես սովորածների վերստին ճանաչումն է... քանի որ ասում են՝ կա հոգեփոխություն, և հոգին, մտնելով մարդկային մարմին, վերստին իմանում և ճանաչում է այն, ինչ արդեն նախապես գիտեր»]՝ *ἡ τῶν μερῶν τάξις πεποίηται τῷ τεχνογράφῳ κατὰ τὴν τῆς διδασκαλίας ἀκολουθίαν· πρότερον γὰρ ἀναγνῶναι δεῖ τὸν νέον... Καὶ ἔστιν ἀνάγνωσις ἡ τῶν πρώτων μαθημάτων τῆς ψυχῆς ἀναγνώρισις... φασὶ γὰρ μετεμψύχωσιν εἶναι καὶ ἐρχομένην εἰς ἀνθρώπειον σῶμα τὴν ψυχὴν ἀναγνωρίζειν καὶ ἐπιγινώσκειν ἃ ἤδε προέμαθεν*, $453_{25}$:

Այս խոսքերից պարզվում է, որ հույն մեկնիչը նույնպես, ինչպես և Դավիթը, կարծում է, թե քերականության մասերը շարակարգելիս, Դիոնիսիոսը պահպանում էր այն կարգը, որ պահանջում է մանկավարժությունը. երիտասարդ կամ անտեղյակ մարդկանց, նախ քան քերականության մյուս մասերին անցնելը, պետք է սկզբից վարժեցնել վերծանության:

Վերծանության սահմանումը լիովին համընկնում է Դավթի՝ փիլիսոփաներին վերագրածին: Թեպետ ասենք, որ ըստ Հելիոդորոսի ևս, այս սահմանումը գալիս է փիլիսոփաներից, ինչպես երևում է նրա խոսքերից, որ ուղեկցում են նույն սահմանման կրկին հիշատակմանը. [«պետք է իմանալ (հմմտ. Դավթի՝ *եւ գիտելի է*)», որ փիլիսոփաները վերծանությունը սահմանում են հետևյալ կերպ. վերծանությունը հոգու նախնական սովորածների վերստին ճանաչումն է»]՝ *ἰστέον δὲ ὅτι οἱ φιλόσοφοι τὴν ἀνάγνωσιν οὕτως ὁρίζονται· ἀνάγνωσις ἐστι ἀναγνώρισις τῶν τῆς ψυχῆς προτέρων μαθημάτων*, $473_7$:



Հելիոդորոսը բերում է նաև այս սահմանման փիլիսոփաների բացատրությունը. «քանի որ ասում են, թե կա հոգեփոխություն, և հոգին, մտնելով մարդկային մարմին, վերստին իմանում և ճանաչում է այն, ինչ արդեն նախապես գիտեր»: Այս բացատրությունը չկա հայ մեկնիչի երկում, բայց այն, ըստ երևույթին, թաքնված է հակիրճ և անհասկանալի «ազնիւ գիտի ծառային» արտահայտության մեջ: Հունարեն լուծմունքներից մեկում նույն հարցի վերաբերյալ ասվում է. [«ինչպես ասում են փիլիսոփաների *զավակները* (թարգմանելի է նաև՝ *սաղուկները*)», կա հոգեփոխություն և <հոգին>, մտնելով մարդկային մարմին» և այլն]՝ *ὥς φασι φιλοσόφων παῖδες μετεμψύχωσιν εἶναι καὶ ἐρχομένην εἰς ἀνθρώπειον σῶμα*, և այլն, $305_8$:

Այստեղ հոգեփոխության մասին կարծիքը վերաբերում է ոչ թե փիլիսոփաներին, այլ նրանց [«զավակներին»]՝ *παῖδες*, իհարկե, ոչ բառի բուն, այլ փիլիսոփայությանը տհասների իմաստով՝ νέοι, *համբակք*: Շատ հավանական է, որ Դավթի *ծառայ* բառը փոխանցում է *παῖδες* [բառի երկրորդ իմաստը]՝ այն բառի, որ եղել է իր ձեռքի տակ գտնված աղբյուրում: Այդ դեպքում Դավթի անհասկանալի արտահայտությունը կարելի է մեկնաբանել այն իմաստով, որ վերծանության սահմանումը նա վերագրում է իսկական փիլիսոփաներին, իսկ դրա բացատրությունը հոգեփոխության միջոցով, որը նա չի բերում, այլ միայն ակնարկում է՝ *παῖδες*-փիլիսոփաներին[1]:

Երկրորդ մասում *ἐξήγησις* բառը թարգմանված է *զրուցատրութիւն*, որ այնքան էլ ճիշտ չէ: Ըստ երևույթին, Դիոնիսիոսի թարգմանիչն այն շփոթել է *διήγησις* բառի հետ, որն իսկապես նշանակում է *զրոյց*, մինչդեռ *ἐξήγησις* բառը նշանակում է բացատրություն կամ մեկնաբանում[2]: Դավիթը գործածում է *զրոյց* և *զրուցել* բառերը նույն *ἐξήγεῖσθαι* [«բացատրել, մեկնաբանել»] իմաստով:

Այն հարցին, թե [«ո՞րն է քերականության երկրորդ մասը»] *τί ἐστι τὸ δεύτερον μέρος τῆς γραμματικῆς;* Մելամպոդեսը պատասխանում է. [«մեկնաբանում ըստ եղած և առկա եղանակների, որ առավել հարմար են բանաստեղծներին»]՝ *τὸ ἐξηγεῖσθαι κατὰ τοὺς ὄντας καὶ ἐγκειμένους τρόπους τοὺς μάλιστα ποιηταῖς ἁρμόζοντας*, $13_{30}$: Հելիոդորոսը կրկնում է

[1] Ծանոթագրություններում, էջ 85, բերում ենք մի նշում, որն առկա է Մագիստրոսի մեկնության մի գրչագրի լուսանցքում, թերևս իբրև Դավթի խոսքերի մեկնություն: «Ծառա» ասելով իբր պետք է հասկանալ վաճառականների այն ծառաներին, ովքեր, օգտվելով իրենց տերերի երկարատև բացակայությունից, կենակցում էին նրանց կանանց հետ: Նրանցից ծնված զավակները վաճառականների վերադառնալու պահին արդեն այնքան էին մեծացած, որ հանդես են եկել վաճառականների դեմ ի պաշտպանություն իրենց ծառա-հայրերի: Պատմությունը ոչ մի կերպ չի առնչվում մեր բնագրին: Այն վերցված է Նոննոսի Գրիգոր Նազիանզացու ճառերի լուծմունքներից, հրատ. Հ. Հ. Մանանդյանի, էջ 54 (125):

[2] Հմմտ. նաև Աստվածաշնչում՝ *διηγήσαντο ետուն զրոյց*, Թիւք ԺԳ. 28, *διήγημα զրոյց*, Բ.Օր. ԻԸ, 37:

այս արտահայտությունը, ընդորում [«ըստ բանաստեղծական եղանակների»] *κατὰ τοὺς ποιητικοὺς τρόπους* մեկնում է իբրև [«ըստ առանձնահատկությունների, որ բնորոշ են բանաստեղծություններին»] *κατὰ τὰς ἰδιότητας τὰς ἐγκειμέναις τοῖς ποιήμασιν*, $456_{5}$:

Հայ մեկնիչը, սակայն, ասում է. *«Եւ զրուցատրութիւն առնելի է ոչ ըստ սովորական ինչ խաւսից, այլ կամ զքերդողացն արարուածս, կամ իւրաքանչիւր ուրուք, նոցուն զաղափարաւք ձեւացուցանելով զրուցել»*: Բնագրում առկա է *զաղափարաւք* բառը, այսինքն՝ *τύποις*. հնարավոր է, որ Դավթի [տրամադրության ներքո եղած] օրինակում *τρόποις* էր, բայց նա սխալմամբ կարդացել է *τύποις*, և այդպես էլ թարգմանել է: Այլ դեպքում այն պետք է հասկանալ այստեղ *ἰδιότητες* [«առանձնահատկություններ»] իմաստով:

*Զրուցատրութիւն*, *զրուցել* բառերը Դավթի մոտ նույնպես, ինչպես նշեցինք, նշանակում են *ἐξήγησις, ἐξήγεῖσθαι* «բացատրել, մեկնաբանել»: Այս հիմամբ թերևս կարելի է Դավթին մերձեցնել Դիոնիսիոսի [Քերականության] թարգմանչին: Սակայն չի բացառվում, որ բառի սխալ կիրառության նմանությունը բացատրվում է Դավթի՝ [Դիոնիսիոսի երկի] հայերեն թարգմանությունից կրած ազդեցությամբ:

Քերականության երրորդ մասը Մելամպոդեսը մեկնում է իբրև [«արտառոց բառերի և պատմությունների <վերաբերյալ հարցերի> առձեռն պատասխան»] *τῶν γλωσσηματικὸν λέξεων καὶ τῶν διηγημάτων ἡ ἕτοιμος ἀπόκρισις*, $14_{20}$: Ըստ Հելիոդորոսի, [«գլոսսա»-ներ են կոչվում բարբառային <բառերը>»]՝ *γλώσσας φησὶ τὰς διαλέκτους*, $462_{36}$. իսկ ինչ վերաբերում է ἱστορία-ին, ապա այն հասկացվում է երկու կերպ [«և՛ որպես վաղեմի գործերի մասին պատմություն, և՛ որպես հների օգտագործում»]՝ *καὶ γὰρ τὴν διήγησιν τῶν πάλαι πραγμάτων ἱστορίαν φάμεν, καὶ τὴν τῶν παλαιῶν χρῆσιν*, ըստ որի զանազանում են [«պատմականները» և «գրքայինները»]՝ *ἱστορικοί և βιβλιακοί*, $470_{4}$:

Մեր մեկնիչն ասում է. *«Նա եւ հարկ է վարդապետին ոչ զաւտար ինչ, այլ զիւրոյ լեզուին խաւսս եւ պատմութիւնս ինչ նախնեացն արարեալ լաւագոյնս համառաւտապէս գիտել, զի իբրեւ հարցանիցի, դիւրաւ լուիցի»*:

Վերջին արտահայտությունն իր իմաստով և կառուցվածքով համադրելի է հունարեն լուծմունքին. [«ուստի քերականը, ասում է, հարցված լինելով թե՛ իմաստի, թե՛ արտառոց բառի, և թե՛ պատմության մասին, պետք է պատրաստ լինի տալ բացատրություն»]՝ *δεῖ οὖν τὸν γραμματικὸν φησίν, ἐρωτώμενον ἢ περὶ σημασίας ἢ περὶ γλώττης ἢ ἱστορίας προχείρως ἀποδιδόναι τὴν αἰτίαν*, $169_{16}$:

Տարօրինակ է թվում Դավթի պահանջը՝ *գիտել համառաւտապէս*, բայց



դրա որոշ զուգահեռ է գտնվում Հելիոդորոսի [մեկնության մեջ], որը նույնպես կարծում է, թե քերականը պարտավոր չէ իմանալ [պատմությունն ամբողջությամբ՝ այլ հաճախակի գործածվող (126) <դրվագները>]՝ *πᾶσαν ἱστορίαν, ἀλλὰ τὴν τετριμμένην*, $470_{10}$:

Ուշագրավ է հայերեն թարգմանության ևս մի առանձնահատկությունը՝ Դիոնիսիոսի *ἱστοριῶν* բառի *հնագէտ պատմութեանց* [համարժեքը]: Արդյո՞ք թարգմանիչը ծանոթ չէր այս բառի երկակի իմաստին և արդյոք չէ՞ր ցանկանում որևէ կերպ ընդգծել այն իմաստը, որն ի նկատի ուներ Դիոնիսիոսը:

Չորին՝ ստուգաբանութեան գիւտ: Ըստ Դավթի՝ *«ստուգաբանութեան ձեւք են երեք, յիրէն, յարուեստէն, ի ձայնէն»* (եթե բառացի թարգմանենք հունարեն՝ *σχήματα γὰρ τῆς ἐτυμολογίας τρία, ἐκ πράγματος, τέχνης, φωνῆς*): *«Եւ յարացոյց առաջնումն սափոր, եւ երկրորդին փայտահատ, եւ երրորդին ճնճղուկ: Բայց ոչ ամենեցուն է գիւտս այս, այլ խոհեմագունիցն եւ եթ»*:

Հունարեն լուծմունքներում, օրինակ, Մելամպոդեսը ստուգաբանությունը հասկանում է իբրև [«բառերի բանում, որի միջոցով պարզվում է իսկությունը»]՝ *ἡ ἀνάπτυξις τῶν λέξεων, δι᾽ ἧς τὸ ἀληθὲς σαφηνίζεται*, $14_{23}$: Սրան ավելի մոտ է մի այլ հայ մեկնիչի, Անանունի սահմանումը, ըստ որի ստուգաբանությունն է *«լուծումն փաղառութեանց ի կատարեալս եւ ի նախատիպս բառսն»*, 127: Խոսքը, հավանաբար, սկզբնական և ածանցյալ բառերի մասին է: Դրան հաջորդող օրինակից երևում է, որ հայ մեկնիչը, ինչպես և Մելամպոդեսը, կարծում է, թե ստուգաբանության խնդիրն է՝ ըմբռնել բառը: Մելամպոդեսը ստուգաբանությունն անվանում է «իսկաբանություն»՝ *ἀληθολογία*, և համոզված է, որ «հունարեն բառերը առարկաների նկատմամբ իզուր, պատահականորեն չէին կիրառվում», այլ իմաստի վերհանմամբ՝ [«ինչի՞ համար ինչ-որ բան ասվում է այսինչ ձևով»]՝ *χάριν τίνος τόδε τι τοιῶσδε λέγεται*, $14_{27}$: Իբրև ապացույց բերվում են օրինակներ: Նույն տեսակետի կողմնակից է նաև հայ մեկնիչ Ստեփանոսը, ըստ որի ստուգաբանությունն է *«ուղղութիւն անուանց եւ բայից, վասնզի յանհմտութենէ խաւսից թիւրեալ են անուանք եւ բայք ամենից ազգաց բայց ի սակաւուց»*[1]:

Քանի որ Դավթին վերագրվող ստուգաբանության [սահմանման]

---

[1] **Ստեփանոս**, էջ 188: Նկատելի է, որ Ստեփանոսը նման է Հելիոդորոսին մեթոդով, որ նա հանձնարարում է ստուգաբանական ուսումնասիրությունների համար. հմմտ. Ստեփանոսի դատողությունը, $190_{2-5}$ Հելիոդորոսի խոսքերին. [«պետք է ստուգաբանել, որպեսզի յուրաքանչյուրն ըստ առանձին մտադրության շարժվելով, շոշափի բառի նշանակությունը»] *δεῖ δὲ ἐτυμολογεῖν ὡς ἂν ἕκαστος κατὰ ἰδίαν ἐπιβουλὴν κινούμενος ἅπτηται τοῦ κατὰ τὴν λέξιν σημαινομένου*, $470_{34}$:

մեկնաբանումը չի համընկնում հունարեն լուծմունքների [բացատրություննրին], ապա դրա վավերականությունը վիճարկելի է, նամանավանդ, որ դա այնքան նման է Ստեփանոսի՝ նույն խնդրի վերաբերյալ ասածին:

Հինգերորդ մասը, համեմատությունը, ըստ Դավթի, *«համեմատութիւն է բայի առ բայ եւ անուան առ անուն, եթե ասասցի «անուան» առ «անուն», «ստեղծուածոյ» եւ կամ «կազմածոյ» եւ բերցին անուանք հանգոյն նորին, եւ առաւելն տանի զհաստատութիւն. նոյնպէս եւ բային՝ «ողորմեայն» քան «զողորմեացն»*[1]:

Մելամպոդեսը նույնպես «համեմատությունը» հասկանում է որպես բառերի համանման ձևերի համադրություն, որի միջոցով մշակվում են քերականական կանոնները. [«ի՞նչ պատճառով "Հոմերոս" - "Հոմերոսի" և "ընկեր" – "ընկերոջ"»]՝ *τίνος ἕνεκεν ὁ Ὅμηρος τοῦ Ὁμήρου καὶ ὁ φίλος τοῦ φίλου* [2] (127), և բանաձևում է. [«անունները, բայերը և խոսքի այլ մասերը ճշգրիտ հետազոտելով և համադրելով նմանը նմանին, վստահելիորեն մշակում ենք կանոնները»]՝ *ἐπὶ πάντων τῶν ὀνομάτων καὶ τῶν ῥημάτων καὶ τῶν ἄλλων μερῶν τοῦ λόγου ἀκριβῶς ζητοῦντες καὶ τὰ ὅμοια τοῖς ὁμοίοις παρατιθέμενοι τοὺς κανόνας ἀσφαλῶς ἀποφαινόμεθα*, $15_{11}$:

Վերջին, վեցերորդ, «դատողական» մասի վերաբերյալ Դավիթը նկատում է, որ այն, *«մեծ քեպէտ եւ ի վերջէ դասեալ, զի սովորութիւն է բանական արուեստաւորի յառաջադասել զառաւելն, որպէս զվերծանութիւն, զի զարքուցէ զլսաւղսն եւ ապա ընդ միմեանս շաղկապին»*[3]:

Մելամպոդեսը, բացատրելով, թե ինչու «դատողական»-ը լավագույն մասն է, բերում է հետևյալ նկատառումը. [«եթե մեկը նախապես չի իմանում վերը նշված քերականության մասերը, դատողի գործը կատարել չի կարող»]՝ *εἰ γὰρ μὴ προοῖδε τις τὰ προλεχθέντα μέρη τῆς γραμματικῆς, τὸ ἔργον τοῦ κριτικοῦ ποιεῖν οὐ δύναται*, $15_{30}$: Իսկն ասած, այս նկատառումն ավելի շուտ պատասխանում է Դավթի առաջադրած այն հարցին, թե ինչու «դատողականը» համարվում է վերջին մաս: Իսկ Դավիթն ինքը «դատողական»-ի՝ այլ մասերի հանդեպ առավելությունը տեսնում է նրանում, որ այն *«զհերձուածողացն ընդունայնաբանութիւն լուծանելով, որք ուղղափառութեան անուամբք կամեցան զիւրեանցն արդարացուցանել վրիպանս, ի ստուգիւ քննութենէ դատելոցն յանդիմանի աստարոտի խառնուածն»*:

[1] Բնագիրը խաթարված է. վերջին բառերը ըստ [այլ] տրոհության կարելի է հասկանալ այլ կերպ, այսինքն՝ *«եւ բերցին անուանք հանգոյն նորին, եւ առաւել, [եւ] տանի զհաստատութիւն նոյնպէս եւ բային՝ «ողորմեայն» քան «զողորմեացն»*:

[2] Հմմտ. Անանուն, Մեկնութիւն, էջ 127:

[3] Վերջին արտահայտությունը, որ անթերի չէ Երզնկացու մոտ ևս, Եսային փոխարինում է այլ արտահայտությամբ:



Նման մի միտք նույն խնդրի վերաբերյալ արտահայտում է նաև Բյուզանդացի մեկնիչը. «դատողականը» նա հասկանում է իբրև «ճշգրիտ գիտություն»՝ *ἡ ἀκριβὴς γνῶσις*, իսկ քերականին պարտադրում է իմանալ «բոլոր եկեղեցական գրքերը»՝ *τὰ βιβλία τῆς ἐκκλησίας πάντα*, որպեսզի կարողանա տարբերել պարականոն գրքերը՝ [«որպեսզի, եթե լսի օտար ձայնը կամ կեղծ աշխատությունը կամ բանաստեղծությունը, չընդունի այն իբրև իսկական»]՝ *ἵνα ὅταν ἀκούσῃ φωνὴν ξενὴν καὶ συγγράμματα ἢ ποίημα ψευδές, μὴ δέξηται αὐτο ὡς ἀληθινόν*, ինչպես, օրինակ, Թովմասի Ավետարանը, կամ Պողոսի՝ իբրպես՝ Պողոս Սամոսատցու, կամ Աստվածարանի հայտնությունը, $568_{15}$:

## § 2. Վերծանության մասին

Դավթի մեկնությունը (128) ասում է. *«Վերծանութիւն նախադասեալ եղեւ իբրեւ զաստիճան առաջին կամ զմուտ դրան ի քաղաք իմաստութեան*[1]*: Բայց խնդրելն արուեստաւորիս զներկուռ ընթերցմունս եւ զանդադար կրթութիւնս եւ այն ըստ ենթադատութեան, ըստ առոգանութեան, ըստ տրոհութեան. եւ սակս այսորիկ զգուշացուցանէ զընթերցողն հմտանալ ներկուռ կրթութեամբ, զի մի՛ դարձեալ ի սովորականսն թիւրեալ ընթացի ուղէգնացութիւն:*

*Եւ եթե զինչ է վերծանութիւն (ἀνάγνωσις) ըստ մեզ, կամ որպէս ըստ իմաստասիրաց, քաջահայտ է:*

*Բայց զարմանալ գոյ ընդ արուեստիս, զի յառաջ ասաց զաւրին մասունս, իսկ այժմ ասելոց է զմասանց մասունս մինչեւ տարեալ հասուցէ յանհատն, ուստի առաւելապէս շահիցն մատակարարիցի ագուտ:*

*Եւ զի՞ նախակարգէ զվերծանութիւն քերթողաց և ապա շարագրաց. Նախ՝ զի ամենայն արուեստաւոր զիւրն կամի յարգուն ցուցանել. երկրորդ՝ զի նախադուռն իսկ եւ սկիզբն բանաւոր արուեստիս զիւրեանցն ասել լինել քերթողքն»:*

Դավթի կշռադատությունից երևում է, որ *քերթող* բառը նա գործածում է *քերական*-ի իմաստով. եթե, նախ հանձնարարելով *վերծանութիւն քերթողաց*, Դիոնիսիոսը ցանկանում է *զիւրն յարգուն ցուցանել*, պարզ է, որ խոսքը քերականության մասին է: Բացի այդ, բանական արվեստը տրոհվում է քերականության, ճարտասանության և փիլիսոփայության. քերականությունը գտնվում է առաջին տեղում, ուստի այն համարվում է արվեստի սկիզբը կամ նախադուռը (129):

[1] Հմմտ. Հելիոդորոսի խոսքերը, 472-3:

Ենթադատութիւն՝ *ὑπόκρισις* Դավիթը սահմանում է այսպես. *«զենթադրութիւն իմանալի է նմանութիւն ներքոկայ դիմացն ձեւով եւ ձայնիւ նմանապէս, որ գործէ ընթերցողին ըստ քաջութեան հանդիսի, յերկչոտութենէ եւ ի յանդգնութենէ խոյս տալ եւ միայն միջակին սպասելով, յորժամ խրոխտականն գայցէ բան եւ ձեւ ըստ այնմ ընթեռնուլ, եւ եթե խանդաղատականն, ըստ այնմ, զի եւ իւր եւ վասն որոյ բան է, ծանիցի արութիւն եւ մի՛ տապալեսցի, զի մի՛ ծիծաղելի լսողացն լիցի»*:

Հելիոդորոսն ասում է. [«դերասանությունն է առաջադրված անձնավորությունների կամ իրադարձությունների նմանակում՝ խոսքի կամ արտաքինի միջոցով»]՝ *ὑπόκρισις δέ ἐστι μίμησις τῶν ὑποκειμένων προσώπων ἢ πραγμάτων ἢ διὰ λόγων ἢ διὰ σχήματος*, $474_{2}$:

Ըստ Ստեփանոսի, [«դերասանությունն է նմանակում, որ հարմարվում է առաջադրված անձնավորություններին խոսքով կամ արտաքինով»]՝ *ὑπόκρισις ἐστι μίμησις ἁρμόζουσα τοῖς ὑποκειμένοῖς προσώποῖς ἔν τῇ λόγῳ καὶ σχήματι*, $172_{2}$:

Ըստ Բյուզանդացու մեկնության, [«դերասանությունն է ձայնի և արտաքինի արժանահավատ վիճակ, որ վայել է առաջադրված անձնավորության և իրադարձության»]՝ *ὑπόκρισις ἐστι φωνῆς καὶ σχήματος πιθανὴ διάθεσις, πρέπουσα τῷ ὑποκειμένου προσώπῳ καὶ πράγματι*, $568_{43}$:

Դավթի սահմանումը՝ *նմանութիւն ներքոկայ դիմացն ձեւով եւ ձայնիւ նմանապէս* բխում է հունարեն բնօրինակից. [«պետք է իմանալ, որ դերասանությունը առաջադրված անձնավորությունների նմանակումն է ձայնի և խոսքի միջոցով»]՝ *ἰστέον, ὅτι ὑπόκρισις μίμησις τοῖς ὑποκειμένοῖς προσώποῖς διὰ φωνῆς τε καὶ διὰ λόγων ἐστί*: Ուշագրավ է Դավթի՝ *ὑποκείμενος* բառի թարգմանությունը. *ներքոկայ*՝ *ենթակայ*-ի փոխարեն: Այն, ինչ հետագայում Դավիթն ասում է վերծանության մասին, կարելի է համադրել Մելամպոդեսի բառերին, թե դյուցազնականը պետք է ընթերցել [«լարված ձայնով, ... և ո՛չ թուլացած»]՝ *συντόνῳ τῇ φωνῇ... καὶ μὴ ἐκλελυμένῃ*, իսկ կատակերգականը՝ [«ինչպես կյանքում, այսինքն՝ նմանակելով երիտասարդ կանանց կամ պառավներին, վախկոտ կամ ջղային տղամարդկանց»]՝ *ὡς ἐν τῷ βίῳ, τουτέστι μιμουμένους γυναῖκας νέας ἢ γραΐδας ἢ δεδοικότας ἢ ὀργιζομένους ἄνδρας*, և այլն, $16_{21}$:

Վերծանել ըստ առոգանության նշանակում է, ըստ Դավթի, «վերծանել ճշտորեն», պահպանելով շեշտադրությունը: Հունարեն լուծմունքում, այն է՝ Ստեփանոսի մոտ, կարդում ենք. [«և ըստ առոգանության, այսինքն՝ [ձայնի] ճիշտ լարվածությամբ»]՝ *κατὰ προσῳδίαν οὖν, τουτέστι κατὰ τὸν ὀρθὸν τόνον*, $172_{12}$:

Վերծանել ըստ տրոհության. *«Իսկ ոչ ուղիղ տրոհելն ըստ չար խոհա-*



*կերի զանդամսն ոչ ուղիղ յաւշել, որ է զմիտս ի մտաց եւ զբան ի բանէ ոչ զատուցանել»*[1]: Ըստ էության նույն միտքը արտահայտել է Մելամպոդեսը. [«առանձնացնում և հեռացնում է բառը հաջորդ բառից և հնչյունները՝ հնչյուններից»]՝ *ἡ διαστέλλουσα καὶ διαχωρίζουσα ἢ λέξεις ἀπὸ τῶν ἐπιφερομένων λέξεων ἢ στοιχεῖα ἀπὸ τῶν στοιχείων*, $17_{1}$, նաև $172_{15}$:

Երեք կետերով ներկայացված պահանջների անհաջող իրագործումը կարող է ծաղրանք հարուցել. *մի՛ ծիծաղելի լսողացն լիցի*, $88_{3}$, *այլ ինքն ծաղր եկաց*, $88_{8}$, *ինքն անարուեստ ցուցաւ*, $88_{14}$: Բյուզանդացու մեկնության մեջ. [«Այն ինչ կոչվում է դերասանություն, շատ է դուր գալիս ունկնդիրներին. բայց առոգանությունը ևս երևան է հանում արվեստը և փայլուն է դարձնում վերծանությունը. և տրոհումը լավագույնս հայտնում է [բնագրում] պարունակվող միտքը»]՝ *ἡ γὰρ ὑπόκρισις λεγομένη πάνυ ἀρέσκει τοῖς ἀκροαταῖς· ἀλλὰ καὶ ἡ προσῳδία ἐκφαίνεται τὴν τέχνην καὶ τὸν ἀναγνωστὴν λαμπρύνει· καί ἡ διαστολὴ τὸν περιεχόμενον νοῦν κάλλιστα ἐκφαίνει*, $569_{14}$ (*հմմտ. պարունակեալն ի նմա միտք անյայտացաւ*, $88_{13}$):

Վերծանության կանոնների բացատրությունը Դավիթն ավարտում է նկատելով, թե մինչ այստեղ ասվածն օգտակար է բոլոր բանավոր արվեստավորներին, *«իսկ յայսմ հետէ զիւրեանցն ձեռնարկութիւն ի մէջ առեալ քերթողացն»*: Խոսքը ողբերգության, կատակերգության, եղերերգության, հերոսավեպի և քնարերգության մասին է: Այստեղ *քերթող* բառը Դավիթն, անշուշտ, հասկանում է «բանաստեղծ» իմաստով: Թեև նա խոսում է հոգնակի թվով, սակայն պարզ է, որ նկատի ունի միմիայն Դիոնիսիոսին: Ըստ արտահայտության իմաստի, Դիոնիսիոսը նույնպես դասվում է բանաստեղծների կարգը (130):

*Τραγῳδία* բառը Դիոնիսիոսի թարգմանության մեջ փոխադրված է *ողբերգութիւն* բառով, բառացի՝ *θρηνῳδία*: Մեկնելիս, Դավիթն առաջարկում է հունարեն բառի տառացի թարգմանությունը. *«Իսկ ողբերգութիւն նոխազերգութիւն τραγῳδία ասի ըստ յունականին առ ի պաշտաւն առեալ Դիոնիսեայ ումեմն տուողի որթոյ, որ է պատմութիւն յայտնի»*:

Նրա սահմանմամբ, «*է ողբերգութիւն ... արարուած վեհականաց զքաջաց գործեցեալ իրս եւ զաւրութիւնս պատմել ահաւորապէս եւ չքնաղ հանգոյն ըստ գործեցելոցն գերազանցութեամբ ամենայնիւ դիւցազնաբար եւ ոչ կաղս ի կաղ ինչ եւ քամահելիս*»:

Ըստ Մելամպոդեսի և այլ մեկնիչների, ողբերգությունն իր անվանումը ստացել է այն հանգամանքից, որ «հաղթողները պարգևատրվում էին

[1] Տե՛ս **Դաւիթ**, Վերլուծութիւն Պորփիւրի, էջ 303՝ *Նման է փցուն խոհակերի, որ ոչ ըստ յաւդից առնէ զբակմունսն*, 308 = հուն. $162_{8}$, *ἀτέχνῳ μαγείρῳ ἔοικε κατ᾽ ἄρθρα τὰς τομὰς μὴ ποιοῦντι*.

նոխազով»՝ *ὅτι τράγον ἐλάμβανον ἔπαθλον οἱ νικῶντες*, $18_{3}$, կամ [«վարձատրվում էին նոխազով»]՝ *ἀντὶ μισθοῦ τράγον ἐλάμβανον*, $172_{20}$:

Այս բացատրությունը գտնում ենք նաև հայ Անանունի մոտ, ըստ որի *«զողբերգութիւն սակս այնորիկ ասեն նոխազերգութիւն, զի զողբերգութիւնս իւրեանց ի սկսանելն եւ ի կատարելն նոխազաւք մեծարեալ լինեին, որք նուիրեին ճաւնեալք Դիոնիսեա, գտողի որթոյ»*, $128_{8}$:

Դավիթը նույնն ասում է շատ հակիրճ՝ իբրև հանրածանոթ բան, ուստի և նրա խոսքից այնքան էլ պարզ չի երևում ողբերգության առնչությունը Դիոնիսոսին (131): Ինչպես հայտնի է, ողբերգության ծագման մեջ իսկապես ինչ-որ դեր է խաղացել նոխազը, որը, որպես այգիներ ամայացնող, զոհ էր մատուցվում խաղողի այգիների հովանավոր՝ Դիոնիսոսին, և այդ ժամանակ երգեր էին երգում, որ կոչվում էին *τραγῳδίαι*, «նոխազի զենման երգեր»: Դիոնիսոսի՝ իբրև խաղողի վազի արարչի հիշատակումը կարելի է մեկնաբանել այն իմաստով, որ Դավիթն ավելի ճիշտ է ըմբռնում ողբերգության ծագումը (132), քան հույն քերականները:

Ինչ վերաբերում է ողբերգության սահմանման որպես այդպիսին, ապա հունարեն լուծմունքներում կան հանգամանքներ, որ Դավթի օգտին են խոսում. [«ողբերգությունը բանաստեղծություն է»]՝ *τραγῳδία ποίησίς ἐστιν*, $172_{17}$: [«Ողբերգությունն իր մեջ պարունակում է պատմություն և հայտարարում է եղած սխրագործությունները»]՝ *Ἡ μὲν τραγῳδία ἱστορίαν ἔχει καὶ ἐπαγγελίαν πράξεων γενομένων*, $173_{3}$. նաև Հելիոդորոսի մոտ, $306_{25}$ և $307_{2}$՝ [«ողբերգությունը ճառում է հերոսական անձանց և գործերի մասին»]՝ *ἡ μὲν τραγῳδία περὶ ἡρωϊκῶν προσώπων καὶ πραγμάτων λέγει*, $307_{3}$: Մելամպոդեսն ասում է. [«պետք է վերծանել հերոսաբար, այսինքն՝ բարձր ձայնով, ամենայն լրջությամբ և հանդիսավորությամբ»]՝ *δεῖ ἡρωϊκῶς ἀναγινώσκειν, τουτέστι μεγάλῃ τῇ φωνῇ μετὰ πολλῆς σεμνότητος καὶ ὄγκου*, $17_{32}$: Մի այլ մեկնիչ խորհուրդ է տալիս վերծանել [«ողբերգական պատմությունները վերամբարձ ձայնով, հերոսների պես»]՝ *τραγῳδικὰ διηγήματα ἐν ὑψηλῇ φωνῇ καθὼς οἱ ἥρωες ἀναγινώσκειν*, $569_{21}$:

Կատակերգությունը նույնպես բանաստեղծների ստեղծագործություն է, սակայն *ըստ իւրում պատշաճի*, այսինքն՝ իրականության համաձայն, ինչպես ասում է Մելամպոդեսը՝ «այնպես, ինչպես դա լինում է կյանքում»՝ *ὡς ἐν τῷ βίῳ*, $20_{11}$: Այն լինում է երկակի. *«ոմանց յանդիմանութիւն վատ կենցաղավարութեան եւ ոմանց յաւժարութիւն վատ կենցաղավարութեան»* [$89_{11-12}$]: Ըստ Մելամպոդեսի, [«շատ են եղել կատակերգություններ գրողները, որ ծաղրում և մերկացնում էին չար կյանք վարողներին, և անարդարությունների համար ուրախացողներին»]՝ *πολλοὶ γεγόνασι κωμῳδοί, διακωμῳδοῦντες καὶ ἐλέγχοντες τοὺς κακῶς βιοῦντας καὶ τοὺς ταῖς ἀδικίαις χαίροντας*, $19_{12}$: Նաև [«ըստ յուրաքանչյուրի կյանքի՝ որովհետև կա արդար կյանք, և կա անարդար»]՝ *κατὰ τὸν ἑκάστου βίον ἔστι γὰρ βίος δίκαιος καὶ βίος ἄδικος*, $569_{26}$:



Դավթի մեկնությունը եղերերգության վերաբերյալ չի պահպանվել: Ըստ Մելամպոդեսի, եղերերգությունն [«է կոչվում դամբանական երգ, որով սփոփանքի համար հիշատակում են հանգուցյալի արժանիքները և հորդորելով՝ վանում են հարազատների և բարեկամների վիշտը»]՝ *καλεῖται ἐπικήδεια πρὸς γὰρ παραμυθίαν, τοῦ τετελευτηκότος τὰ καλὰ μνημονεύοντες, καὶ τῶν συγγενῶν αὐτοῦ καὶ φίλων τῇ παραινήσει τὴν λύπην ἀναστέλλοντες*, $20_{28}$: *τὰ ἐλεγεῖα* եզրույթը Դավիթը թարգմանում է *դամբանական*, որը համապատասխանում է մեկնիչների ἐπικήδεια [եզրույթին]: Ողբերգության մեկնության մեջ Մելամպոդեսի բառերը հարմարվում են հայ Ստեփանոսին վերագրվող [արտահայտությանը]. *նաև մխիթարական*[1], *զորս ի վերայ մեռելոց եւ կամ այլ ինչ թշուառութիւն կրելոց ասենն*: Եթե այս խոսքերը նույնպես պատկանում են Ստեփանոսին, ապա դրանք, ըստ երևույթին, նա փոխառել է Դավթի մեկնությունից, որտեղ դրանք վերաբերում են եղերերգության, այլ ո՛չ ողբերգության:

Այն, ինչ գտնում ենք Ստեփանոսի մոտ եղերերգության վերաբերյալ՝ *կսկծողական ձայնիւ մակականչութեամբ ձայնել*, $193_{16}$, մեկնում է «ուժգնակի»՝ *λιγυρῶς* բառը և հիշեցնում Մելամպոդեսի արտահայտությունը. [«քանի որ վիշտն առավել ինչ սրությամբ է ազդում, եթե ձայնը փոխված է հեկեկանքով»]՝ *ἡ γὰρ λύπη τῇ παρατροπῇ τῆς φωνῆς ἐκ τοῦ κλαυθμοῦ ὀξύτερά τινα παρεισάγει*, $21_{4}$:

*Եւ զտաղ քաջոլորակի: Տաղ* [ձևով] թարգմանվել է «վեպ»՝ ἔπος բառը: Ըստ Դավթի, *«տաղ ասի հոմերականն, յորժամ յարմար բանիւք եւ ոլորակաւք ի սկսմանէ մինչեւ գյանկումն զմիտս կատարեալ բերիցէ եւ զչափս»* [$89_{15}$]: Դավթին ծանոթ է ոչ միայն հունարեն լուծմունքների բացատրությունը. [«"վեպ" է կոչվում գլխավորապես չափածո խոսքը. և առավելապես "վեպ" է կոչվում հերոսական չափածոն»]՝ *ἔπος κυρίως ὁ ἔμμετρος λόγος· κατ᾽ἐξοχὴν δὲ τὸ ἡρωϊκῶν μέτρον ἔπος ἐκάλεσαν*, բայց և դրա ստուգաբանությունը. ["վեպ" բառը ծագում է "հետևել չափին" <արտահայտությունից>]՝ *ἔπος δὲ ἀπὸ τοῦ ἕπεσθαι τῷ μέτρῳ*, հմմտ. *ի սկսմանէ մինչեւ գյանկումն կատարեալ*, $89_{16}$: Դավիթը մերձ է հունարեն լուծմունքներին սրան հաջորդող տաղի սահմանմամբ. *բայց ասի եւ ոլորակ տաղ*, այսինքն՝ *ἀλλὰ τὸ ἔπος λέγεται καὶ τόνος*. Ճիշտ այս սահմանումը, այս արտահայտությունը կարդում ենք Հելիոդորոսի մոտ. [«վեպ» է կոչվում <ձայնի պարբե-

[1] Տե՛ս վերը, էջ XCIX-C: Բնագրի մեջ ներմուծված է Z գրչագրի հիման վրա. *ողբերգութիւն զմխիթարական ասէ*, որն, ըստ երևույթին, ճիշտ չէ, $193_{6}$:

բական> լարում]՝ *τόνος δὲ λέγεται τὸ ἔπος*, $476_{20}$ (նաև $307_{38}$). Նրանից իմանում ենք, որ այս ըմբռնումը հիմնվում է Հերոդոտոսի գործության վրա. [«այս բաները Պյութիան գուշակասում էր վեցաչափով (բառացի՝ վեցաչափ լարմամբ)»]՝ *ἡ δὲ Πυθία ἐν ἑξαμέτρῳ τόνῳ χρᾷ τάδε*, I, 47, 62:

Տաղի երկրորդ սահմանման վերաբերյալ Դավթի դատողությունն անհասկանալի է: Խոսքը չափերին վերաբերող ինչ-որ նկատառումների, այն է՝ *անգայտ, մեծասար, մեծավերջ*՝ *πυρρίχιος, τροχαῖος, ἴαμβος* ոտքերի մասին է (հմմտ. Մելամպոդես, $21_{6}$, Հելիոդորոս, $476_{15}$):

*Եւ զքնարական քերդութիւնն ներդաշնակապէս:* Անցնելով քնարերգությանը, Դավիթն այն սահմանում է իբրև *«մասն իմաստասիրութեան, ըստ աստեղագիտութեան, ըստ երկրաչափականին, ըստ թուականին ունի հանգամանս, զի զդաշնակումն ձայնին, զոտինն եւ զաղտյն ի ներքս ի յիրսն համանման եւ ոչ աւտարս ինչ բերիցէ»*:

Հունարեն լուծմունքներում, ինչպես, օրինակ, Մելամպոդեսի մոտ, խոսվում է [«չափը պահպանել և մեղեդիների հորինման հոգալ»] անհրաժեշտության մասին՝ *τὸ μέτρον διασῴζειν καὶ τῶν μελῶν ἐπινοεῖν τὴν εὕρησιν*, $21_{12}$:

Քնարերգության իբրև մաթեմատիկայի մասի սահմանմանը հանդիպում ենք Դավթի «Սահմանք»-ում: Այստեղ խոսքը, իսկն ասած, երաժշտության մասին է: Մաթեմատիկական գիտությունները բաժանվում են նշված չորս մասերի, քանի որ դրանց միավորող հասկացությունը՝ քանակն է, որ թվաբանության մեջ արտահայտվում է թվով, աստղաբաշխության մեջ՝ շարժումով, երկրաչափության մեջ՝ տարածությամբ և երաժշտության մեջ՝ հնչյունների տևողությամբ[1]: Մեր բնագրում առկա է *իմաստասիրութիւն*՝ *ուսումնականի* փոխարեն:

*Եւ զխանդաղատականն թուլակի:* Այս մասը պակասում է Դավթի մեկնությունից: Ըստ Մելամպոդեսի, «խանդաղատականը» (կարեկցականը) [«նույնպես որոշ տեսակի բանաստեղծություն է, որն ասում էին ածյունի ներկայությամբ, ողբերգելով իրեն հանգուցյալին»]՝ *πάλιν ἔστι τινὰ ποιήματα, ἃ ἐπικειμένου τοῦ λειψάνου ἔλεγον θρηνοῦντες αὐτὸν τὸν τεθνεῶτα*, $194_{4}$: Ստեփանոսի բառերը՝ *դարովական բանք ... երբեմն ի կենդանութեան եւ երբեմն ի մահու*, $194_{4}$, թերևս փոխառված են Դավթի մեկնությունից (133):

Համադրելի է Դավթի՝ *եթե ոչ պահիցէ զխտրութիւն* [արտահայտությունը] Մելամպոդեսի [«եթե չպահպանի այս»]՝ *ἐὰν μὴ παραφυλάττωνται ταῦτα*, $22_{2}$, ինչպես և *ունակցեալ*... [«հատկություններ ... այսինքն՝ այն, որին հաղորդ են»]՝ *ἕξεις...τουτέστιν ὧν τινων μετέσχον*, $22_{8}$ հետ (134):

---

[1] Դաւիթ, Սահմանք, պրակ ծէ = հունարեն *πράξις κ*՛:



## §3. Շեշտի մասին

*Ողորակ է բացագանչութիւն պատկանաւոր ձայնի:* Դավիթը տրամաբանում է հետևյալ կերպ. *Իսկ զի ասէ բացագանչութիւն՝ բացագանչութիւն ողորակի սեռ իմանի, քանզի հաւասարապէս անշնչիցն եւ շնչաւորացն եւ բանաւորացն է: Իսկ ողորակն միայն բանականիս առ ի պատկանաւոր ունելոյ ձայն, եւ ոմանց ծանաւթ լեալ առ ի կրկնութենէ, որպէս ի յունական լեզուին, իսկ այլ ազգաց ոչ եւս:*

*Եւ թերեւս տարակուսեսցի ոք, թե շեշտ վերացմանն աղագաւ ասի ողորակ, իսկ բութն ընդէ՞ր. այս է, զի որպէս նա ի վեր հանէ, սա ի խոնարհ նմանապէս զիջուցանելով հարթէ, որք ի մի տեղ եկեալ բաղկացուցանեն զպարոյկն, ըստ առակի ծայրիցն՝ ի սպիտակէն եւ ի սեւոյ գորշն, իսկ ընդ մահ եւ ընդ կեանս ոչ է միջոց:*

Դավթի բառերի իմաստն այն է, որ [«ձայնի անդրադարձում»]՝ *ἀπήχησις*-ը սեռային հասկացություն է, իսկ «ձայնը»՝ *φωνή*-ն՝ տեսակային է, որ հատուկ է միայն մարդուն: [Այս միտքը] արտահայտված է Մելամպոդեսի մոտ ևս. [«Ի՞նչ է շեշտը: Ասում է, որ ձայնի անդրադարձում է, այսինքն՝ արձագանք: Ո՞ր ձայնի՝ ցանկացա՞ծ ձայնի: Ո՛չ: Իսկ ինչպիսի՞: Ներդաշնակ՝ ... որպիսին է մարդկային ձայնը»]՝ *τί οὖν ἔστι τόνος; φησὶν ἀπήχησις, τουτέστιν ἦχος. Τίνος φωνῆς. Οἱασδήποτε φωνῆς; οὔ. Ἀλλὰ ποίας; τῆς ἐναρμονίου,... οἵα ἐστὶν ἡ τοῦ ἀνθρώπου φωνή*, $22_{18}$:

Պետք է նշել Մելամպոդեսի արտահայտությունները «սուր», «բութ» (բառացի՝ «ծանր») և «պարույկաձև» շեշտերի վերաբերյալ. [«այս նշանն (իմա՛ «սուրը») ունի <տոնի> բարձրացման <նշանակություն>»]՝ *τὸ σημεῖον τὴν ἐπὶ τὰ ἄνω φορὰν ἔχει*, $22_{24}$ կամ [«ուղղված է վեր»]՝ *ἐπὶ τὰ ἄνω νεύουσιν*, $23_{3}$. [«այս նշանն ունի <տոնի> իջեցման <նշանակություն>»]՝ *τὸ σημεῖον αὐτοῦ τὴν ἐπὶ τὰ κάτω φορὰν ἔχει*, $23_{6}$, կամ [«"ծանրը" ուղղված է վար»]՝ *ἡ βαρεῖα κάτω νεύει*, $23_{13}$. [«"պարույկաձև"նշանը մատնում է «սուրից» և «բութից» կազմված լինելը, <որ> վերջիվերջո ի մի են գալիս միևնույն վանկում»]՝ *τὸ σημεῖον ἐλέγχει συγκείμενον ἐξ ὀξείας καὶ βαρείας ...ὕστερον δὲ συνελθουσῶν εἰς μίαν συλλαβήν*.

Դավթի համեմատությունը՝ *ի սպիտակէն եւ ի սեւոյ գորշն* չկա քերականական լուծմունքներում, բայց առկա է Դավթի՝ փիլիսոփայության ներածությունում [«քանի որ գորշը՝ սպիտակի և սևի խառնուրդ է»]՝ *τὸ γὰρ φαιὸν μίγμα ἐστι τοῦ λευκοῦ καὶ μέλανος*, $7_{31}$ (հայերեն թարգմանության մեջ, «Սահմանք»-ում, այս մասը բաց է թողնված) և Էլիասի փիլիսոփայության ներածականներում՝ [«նմանապես և գորշը՝ միջինն է (հմմտ. *միջոց*՝ Դավթի մեկնությունում) սպիտակի և սևի»]՝ *ὁμοίως καὶ τὸ φαιὸν μέσον ὂν λευκοῦ καὶ μέλανος*, $7_{10}$:

## § 4. Կետի մասին

Ներածականում քննվում է, թե ինչո՞ւ արվեստավորը շեշտի մասին խոսում է կետից առաջ: Դավթի կարծիքով, դա ունի երկու հիմք. *քանզի ոլո-րակն մարդկայինս բարբառոյ է, եւ քանզի հարկաւոր է յասացուածին նախ ոլորակին եւ ապա կիտին ունել զկարգն*:

Այդպիսի միտք չկա հունարեն լուծմունքներում, բայց դրանց ոգով է շա-րադրված:

*«Իսկ զի՞ ասաց զիւրաքանչիւր որ ի կիտին յառաջագոյն»*,- շարունակում է Դավիթը:

Դավթի արծարծած խնդիրը լիովին հասկանալի չէ, այն սխալ էր մեկ-նաբանվել նաև հնում[1]: Ամենայն հավանականությամբ, վեճի առարկան հետևյալն է՝ ինչու Դիոնիսիոսը անմիջապես հիշատակում է երեք կետ, և դրանցից յուրաքանչյուրի վրա կանգ չի առնում առանձին-առանձին: Դավթի կարծիքով, արվեստավորը միանգամայն ճիշտ է վարվել, կամ, ինչպես ինքն է արտահայտվում՝ *«արուեստի»*, ընդորում բերում է երկու նկատառում. նախ, *«կէտք են երեք, կէտ աւարտեալ, միջակ, ստորակէտ»* սահմանմամբ արվես-տավորն իսկույն բնութագրում է դրանց էությունը. երկրորդ՝ *«զի տեղեաւն եւ ձայնիւ զաւարտեալ կէտն իբրեւ զարքայ, իսկ զերկուսն իբրեւ զծառայս նորին»*:

Այս խոսքի ըմբռնման բանալին մեզ ընձեռում է Ստեփանոսի հունարեն լուծմունքը. [«կետերը երեք չեն, այլ <ունեն> երեք կերպարան»]՝ *οὐ τρεῖς εἰσι στιγμαί, ἀλλὰ τύποι τρεῖς*, $177_{6}$, ընդ որում [«վերջակետը դրվում է տառի գլխին»]՝ *ἡ τελεία τίθεται δὲ ἐπὶ κεφαλῆς τοῦ γράμματος*, $177_{10}$, [«միջակետը դրվում է տառի մեջտեղը, իսկ ստորակետը՝ ներքևում, տառի ծայրին»]՝ *τίθεται δὲ ἡ μὲν μέση ἐν τῷ μέσῳ τοῦ γράμματος, ἡ δὲ*

[1] Դիոնիսիոսի բնագիրը ճանաչում էր սկզբնապես միայն երկու նշան. *μέση*՝ «միջինը» համարվում է ընդմիջարկություն (*Μέση* bei Dionysius, G. Uhlig, Heidelberger Festschrift zur XXXVI Philologenversammlung in Karlsruhe, S.76): Շատ հավանական է որ վեճի առարկան՝ սկզբնական արտահայտությունը չի եղել նախնական բնագրում: Դավթի հարցը չի կարելի շփոթել այն տարակուսանքի հետ, որ հայտնում է հույն մեկնիչ Ստեփանոսը նույն՝ կետի մասին գլխի առթիվ: Տրոհության նշանները նա ավելի առոգանությանն է վերապահում և այս պատճառով նշված գլխի մեկնության ներածության մեջ փորձում է բացատրել, թե ինչո՞ւ արվեստավորը նախընտրել է կետի մասին գրել առոգանությունից առաջ: Նա հանգում է այն եզրակացության, որ արվեստավորը շրջանցել է առոգանությունը՝ ելնելով զուտ մանկավարժա-կան նկատառումներից, հատկապես ի նկատի առնելով նյութի անմատչելիությունը երեխանե-րի համար և կանգ է առել կետի վրա, նրանց անտեղյակ չթողնելու և նրանց մարսելի սնունդ մատուցելու համար, $176_{19}$:

Հայ մեկնիչը՝ Եսայի Նչեցին ճիշտ չի հասկացել Դավթի հարցը, և կարծել է՝ խոսքն այն մասին է, թե ինչու սկզբնական արտահայտությունը հայտնվել էր նախորդ գլխի վերջում, ինչ-պես այն կա Դիոնիսիոսի շատ գրչագրերում:



*ὑποστιγμὴ κάτω ἐν τῷ ἄκρῳ τοῦ γράμματος*, $177_{16}$: Այսինքն՝ կետերի [տե-սակը] որոշվում է ըստ տեղի կամ դիրքի, որ դրանք զբաղեցնում են տառին առընթեր, կամ, ըստ մեզ, տողի վրա. դրվում է այն տողից կամ տառից բարձր, ցածր կամ դրանց մեջտեղում՝ դրա համաձայն այն ստանում է իր անվանումը: Այն կետը, որ տողից բարձր է, համեմատվում է «արքային», իսկ դրանից ցածր՝ մեջտեղում կամ ներքևում, վայր են բերվում մինչև դրա սպասավորների դիրքը:

Կետերի այս փոխհարաբերությունները որոշվում են, ըստ Դավթի, ոչ միայն իրենց գրաված դիրքով, այլև հնչմամբ. *տեղեաւն եւ ձայնիւ*: Վերջինիս ներքո հասկացվում է այն, ինչով զանազանվում է, ըստ Դավթի, վերջակետը ստորակետից՝ *χρόνῳ* ժամանակով, կամ, ավելի ճիշտ, հապաղմամբ: [«Ասած "ժամանակով"՝ ոչ պահի իմաստով»]՝ ասում է նույն Ստեփանոսը, [«այլ ձայնի տարածությամբ»]՝ *χρόνῳ δὲ εἶπεν οὐ τῷ καιρῷ, ἀλλὰ τῷ διαστήματι τῆς φωνῆς*, $178_{13}$ (ինչպես և Հելիոդորոսը, $314_{12}$), և բացատրում է, թե ինչ է այս «ձայնի տարածությունը». վերջակետից հետո թույլատրելի է հապաղել որքան որ կամենում ես, իսկ ստորակետից հետո միայն շունչ են առնում, որպեսզի անմիջապես անցնեն հաջորդին: Ստեփանոսի խոսքի լուսաբանմամբ հասկանալի է դառնում Դավթի արտահայտության իմաստը՝ արտահայտություն, որ հաջորդում է կետերի՝ արքայի և ծառաների հա-մեմատությանը և դյուրին չէ թարգմանության համար. *արինակ իմն նուա-զեալն եւ զառաւելեալն այնոքիւք նշանակութեամբք, իսկ զչափաւորսն* (ավելի ճիշտ՝ *զչափաւորն*, ինչպես J օրինակում) *յստակ*: Այստեղ *այնոքիւք նշա-նակութեամբք* նշանակում է *տեղեաւն եւ ձայնիւ*, ընդորում դրանցով *առա-ւելեալն* կետ-արքան է, այն, որ ունի [այդ հատկությունները] ոչ բավարար քանակությամբ՝ *նուազեալն* ստորին կետ-ծառան է, իսկ *չափաւորն* միջակը:

Ապա Դավիթը մեկնում է [«ձայնի տարածություն»]՝ *διάστημα τῆς φωνῆς* [արտահայտությունը]. *Եւ են հանգամանք ընակիտիս* (բառացի՝ *φυσιοστιγμή*), *մի՝ ըստ բացարձակ ձայնի, որպէս «ոչ շունք» եւ որ ի կարգին* (Կորնթ. Զ, 10), *եւ միւս՝ յորժամ ի միջին կիտին հանգիստ առնուցու, երթեալ ի ստորակէտէն, ուստի պատրաստական ի կէտն ելանիցէ ըստ առակի ճանապարհորդութեան*[1]*: Եւ ստորակիտիս է եւ այս, առաջին՝ ունել զբացարձակն եւ սմա, որպիսի՝ «ոչ ապաքէն առաքեալ եմ»* (Կորնթ. Թ, 1), *երկրորդ, յորժամ պատասխանւոյ ինչ կարաւտանայ բանն ըստ այնմ, «ինձ պիտոյ է ի քէն մկրտիլ եւ դու առ իս գաս»* (Մատթ. Գ, 14):

Հույն վերլուծողները՝ Մելամպոդեսը, Ստեփանոսը խոսում են նույն ոգով. վերջակետից հետո կարելի է լռել, որքան որ կամենաս՝ *ὅσας ὥρας θέλω σιωπῶ*, $24_{23}$, և [հետո] անցնել [խոսքի] հաջորդ [հատվածին «մեկ ժամից, և

[1] Հմմտ. Մովսէս, Մեկնութիւն, $161_{9}$:

երկու, և երեք»]՝ *μετὰ μίαν ὥραν καὶ μετὰ δύο καὶ μετὰ τρεῖς*, $178_{15}$: Իսկ ստորակետից հետո չի կարելի այդպես վարվել, չի կարելի երկար հապաղել՝ ինքն ունկնդիրը մեզ ստիպում է շարունակելու (բառացի՝ «անցնել որևէ այլ խոսքի»)՝ *οὔτι ὅσον χρόνον θέλω σιωπῶ, ἀλλὰ καὶ ὁ ἀκούων ἀναγκάζει με ἐπαγαγεῖν τινα ἕτερον λόγον*, $24_{26}$, $25_{20}$, նաև Ստեփանոսի $178_{16}$:

Պարզ է, որ Դավթի *բացարձակ ձայն* արտահայտությունը համասարազոր է «երկար հապաղում» հասկացության. ապա, *պատասխանւոյ ինչ կարաւտանայ* նշանակում է այն, ինչի մասին ասում են լուծումներները, այսինքն՝ ստորակետը դրվում է այնտեղ, որտեղ արտահայտությունը ավարտված չէ, և ունկնդիրը սպասում է դրա շարունակման: Միալմամբ Դավիթը ստորակետին ևս հատկացնում է «բացարձակ ձայն»: Ավելի ճիշտ է Անանունը. *ոչ ինչ ստորակէտ բացարձակ ձայնիւ ասի, այլ խոնարհեցուցանէ եւ յերկարէ առ ի վերայ ածելոյ* և այլն $130_{19}$ (հմմտ. [«ակնհայտորեն իջեցնում են ձայնը»] *καταβιβάζοντες ἐκφαντικώτατα τὴν φωνήν* $178_{10}$. *ի վերայ ածել հմմտ. ἐπαγαγεῖν*, $178_{15}$):

Հունարեն լուծումներում քննարկվում է նաև այն խնդիրը, թե ինչու արվեստավորը նշում է վերջակետի և ստորակետի տարբերությունը, բայց լռում է միջակետի մասին: Պատճառն իսկապես այն է, որ Դիոնիսիոսի մոտ սկզբնապես ոչ մի խոսք չի եղել միջակետի մասին. [դրան վերաբերող հատվածն] ընդմիջարկվել էր ուրիշների կողմից: Մինչդեռ հույն մեկնիչները փորձում էին բացատրել նրանով, որ [«ծայրերը, քանի որ գրեթե միշտ հակառակ են <միմյանց>, այդ իսկ պատճառով կարոտ են միմյանց համեմատության, իսկ միջակը՝ ոչ լիովին… ինչպես ցուրտը հակառակ է տաքությանը»]՝ *ὅτι τὰ ἄκρα ἀεί ποτε ἐνάντια ἐστι, καὶ ἐκ τοῦ ἐναντίως ἔχειν πρὸς ἄλληλα δεῖται συγκρίσεως, ἡ δὲ μέση οὐδ᾽ ὅλως… ὥσπερ οὖν τὸ ψυχρὸν τῷ θερμῷ ἐναντίον*, և այլն, $178_{19}$ (հմմտ. Դավթի խոսքերը՝ *ըստ առակի ծայրիցն* և այլն $91_{8}$, ինչի մասին խոսվեց նախորդ գլխի վերջում):

## § 5. Հագներգության մասին

Հագներգությանն անցնելիս[1], Դավիթը նախ և առաջ վերապահություն է անում, «*զի ոչ եթե ի հարկաւորացն է մասանց արուեստիս, որպէս եւ այլքն, այլ առ կրթութիւն մանկանց*»:

[1] Դիոնիսիոսի բնագիրը մեջբերում է Մագիստրոսը՝ Պետրոս Կաթողիկոսին հղած թղթում, որտեղ պետք է սրբագրել *ններտարեալ*-ը *ներպարառեալ*, *ստորոգութիւն*-ը՝ *ստորադրութիւն*, *պարտ զօլով*՝ *պար զօլով*, Կ. Կոստանյանցի հրատ. էջ 33 (135): Թղթերում կան և այլ՝ Դիոնիսիոսից փոխառված արտահայտություններ, օրինակ՝ *վերծանութիւն անվթար յառաջաբերութեամբ*, 207, *տաղս եւ առինչս*, 40 (հրատարակիչն իզուր է սրբագրում *առինչս*, դարձնելով այն *առինչս*, 328) և այլն:



Հելիոդորոսը նույնպես ծանոթ է այն առարկությանը, թե արվեստավորը չպետք է զբաղվի հագներգությամբ՝ քանի որ քերականությունը լոկ խոսքի մասերով է պարապում, իսկ հագներգությունն այդպիսի միտք չունի՝ [«խոսքի մասերը նույնը չեն, ինչ և հագներգությունը»]՝ *τὰ δὲ μέρη τοῦ λόγου οὐκ ἐστιν ὅπερ ἡ ῥαψῳδία*, $314_{23}$: Սակայն նկատի առնելով, որ արվեստավորը պահանջում է բանաստեղծությունների վարժ իմացություն, իսկ դպրոցներում դասավանդվող հագներգությունը դրանց մասն է, Հելիոդորոսն բնավ անտեղի չի համարում դրա մասին խոսելը. [«հագներգությունը բանաստեղծության մասն է, երիտասարդներին առավելապես ծանոթ. դրա համար նա առանձին խոսում է հագներգության մասին»]՝ *μέρως δὲ ποιήματος ἐστιν ἡ ῥαψῳδία καὶ μάλιστα νέοις εγνωσμένων, τούτου χάριν περὶ ῥαψῳδίας διέλαβε*, $314_{29}$: Այստեղից երևում է, որ հարցադրման և լուծման առումով հայերեն և հունարեն լուծումները համերաշխ են:

Դավիթն անցնում է ստուգաբանության. «*հագներգութիւն ըստ հոռոմին լսի զաւազաներգութիւն, վասն զի սարդենի զաւազանաւ, զոր փոխանակ սուզելոյ կուսին, որպէս ասեն, բուսոյց երկիր, պար զօլով Ապողոնի երգեն զհոմերական քերդածսն վասն խնդրելոյ շնորհին, որ ի Հոմերոնէ ասացեալ քերդածացն, որ զանխլացեալ յաղագս դիւր ուսման մանկանց յերկուս գիրս՝ յԻղիականն եւ յՈդիսիականն ի քսան եւ չորս ճառս, քանզի մանկանց է խրոխտելն եւ սրտմտելն բարուք, այլ ոչ զբարուք նախանձն ախտանան եւ զբանականն ունել հզաւր զաւրութիւն խորհրդոցն: Վասն այնորիկ բաժանմամբ ճառիցն, զի բժշկեսցին միտքն առ ի յամբողջ պատասխանելոյ առ հարցուածսն ասել, յորում ճառի է, եւ մի՛ վհատեալ պատահեսցէ ի քաղցր ճաշակէ ուսումնասիրութեանն անգիտանալովն*»:

Մելամպոդեսը և մյուս մեկնիչներն ընդունում են Դիոնիսիոսի առաջարկած *ῥαψῳδία* բառի ստուգաբանությունը, բխեցնելով այն *ῥαβδῳδία*-ից, որ համապատասխանում է Դավթի *զաւազաներգութիւն* բառին: Բառի ծագումը նրանք բացատրում են նրանով, որ հոմերոսյան պոեմների երգիչները կատարում էին դրանք [«դափնե ճյուղը ձեռքին»]՝ *ῥάβδον δαφνίνην κατέχοντες*, $28_{25}$, $315_{23}$: Մելամպոդեսը սահմանափակվում է [«Ապոլլոնի խորհրդանիշ»]՝ *σύμβολον ᾿Απολλωνιακόν* արտահայտությամբ, իսկ Պորփյուրիոսվերլուծագիրը, Դավթի նման, բերում է նաև դափնիի գոյացման մասին հայտնի առասպելը. Ապոլլոնը, սիրահարվելով Դափնե գեղեցկուհուն, հետապնդում էր նրան, և երկիրն, իբրև մայր, ցանկանալով փրկել զոհին, ճեղքեց իր կուրծքն ու ընդունեց աղջկան, իսկ փոխարենը տվեց մի ծառ, որը կույսի անվամբ էր կոչվում՝ դափնի, *δάφνη*: Ապոլլոնը դրա ոստերից իր համար պսակ պատրաստեց: Ի հիշատակ որի հոմերականք ևս, դափնե ճյուղերը ձեռքին՝ *κατεῖχον δὲ καὶ κλάδους δαφνῶν*, երգաբանում են Ապոլլոնի

տոնին, $180_{15}$: Այս առասպելը բերվում է և Նոննոսի լուծումներում, 71:

Հայ Անանունը, $131_{25}$, հայտնում է, որ «*մանկունս յունաց ... գործարանս երաժշտականութեան առեալ մահակս սարդենի, որ է դափնի, ելեալ յուս միմեանս եւ երկուս զաւազանաւքն բա<ղ>խեն, կալով ի վերայ ուսոցն եւ երգեն զհոմերական տաղսն*»

«*Եւ եթե է՞ր աղագաւ զդափնին առնուն.* - շարունակում է Անանունը,- *սակս անթառամութեանն եւ կանաչութեանն եւ հոտոցն, քանզի սա միշտ անթառամ գոյ, իբրու թէ զայս գուշակելով նոցա միշտ լինել ուրախ*»:

Այս հանգամանքը, որ չկա Դավթի մեկնությունում, առկա է նույն Պորփյուրիոսի մոտ. [«Ինչո՞ւ Հոմերոսի պոեմները երգում են, կրելով այդպիսի ճյուղը: Որովհետև դա բանաստեղծության մշտադալար <մասն> է, ինչպես և դափնին մշտադալար է՝ տերևները երբեք չի թափում»]՝ *διὰ τί τοιαύτην ῥάβδον κατέχοντες τὰ Ὁμηρικὰ ᾖδουν; Διὰ τὸ ἀειθαλὲς τῆς ποιήσεως, ἐπεὶ καὶ ἡ δάφνη ἀειθαλές ἐστιν οὐδέποτε φυλλορ<ῥ>οοῦσα*, 180, $_{17}$:

Իլիականն ու Ոդիսականը, ինչպես և դրանց՝ Ա, Բ և այլ հագներգությունների տրոհվելը, հիշատակվում է հունարեն լուծումներում ևս, 315, 480: Քանչորս հագներգության տրոհման մասին խոսվում է տառի մասին գլխում, $320_{29}$: Պետք է առանձին նշել Դավթի կիրառած *Հոմերոն, Իղիակոն, Ոդիսիակոն* ձևերը:

Հատկանշական է, որ Դավիթը ոչինչ չի ասում *հագներգութիւն* բառի մեկ այլ ստուգաբանության մասին, որն ընթերցվում է Դիոնիսիոսի հայերեն թարգմանության առկա գրչագրերում. *ի հագնելոյ կարկատուն բանս*: Հունարեն լուծումները ջանասիրաբար մեկնաբանում են այս ստուգաբանությունը. անշուշտ, այն առկա էր վերլուծողների օգտագործած՝ Դիոնիսիոսի գրչագրերում: Մելամպոդեսը վկայում է, որ [«Դիոնիսիոսն ինքը երկու ստուգաբանություն է տվել՝ կամ *կարել* բառից, այսինքն՝ բաժանվածը միացնել, և կամ *ճյուղ*-ից»]՝ *αὐτὸς ὁ Διονύσιος εἶπε τὰς δύο ἐτυμολογίας, ἢ ἀπὸ τοῦ ῥάπτειν, τουτέστι τὰ διεστῶτα συνάγειν, ἢ ἀπὸ τοῦ ῥάβδου*, և այլն, $29_{13}$:

Դիոնիսիոսի քերականության հենց այդպիսի մի օրինակ էլ, ըստ երևույթին, աչքի առաջ է ունեցել հայ թարգմանիչը: Բայց ի նկատի առնելով, որ նշված ստուգաբանության մասին չեն հիշատակում ո՛չ Դավիթը, և ո՛չ Դիոնիսիոսի հետագա հայ մեկնիչները՝ մինչև Մագիստրոսը, որը դրա առաջին մեկնաբանողն է, կարելի է վիճարկել դրա առկայությունը Դիոնիսիոսի թարգմանության սկզբնօրինակում: Այստեղ, ինչպես և նույն դպրոցի այլ հուշարձաններում, *ῥαψῳδία* թարգմանվում է *հագներգութիւն*[1]: Հուշար-

[1] **Դաւիթ**, Վերլուծ. Պորփ., հունարեն բնագրի [«Հոմերոսյան տաղերը»]՝ *Ὁμηρικοὺς στίχους*, $82_{9\text{-}10}$, առաջին անգամ թարգմանվել է *Հոմերականաց հագներգութեանցն*, երկրորդ



ձանների թվագրման խնդրի ներկա վիճակում դժվար է ասել, թե ով է եղել այդ բառի հայտնագործողը: Այն, հավանաբար, *ῥαψῳδία* բառի նյութական թարգմանությունն է՝ [«ճյուղերգություն»]՝ *ῥαβδῳδία*-ի իմաստով, ընդ որում *ῥάβδος* «ճյուղ» բառն արտահայտված է ոչ համապատասխան բառով, այլ փոխարինված է *հագնի* (դափնի) ծառի անվանումով: Համապատասխանո՞ւմ է իսկապես *հագնին* դափնուն՝ դա ուրիշ խնդիր է. համենայնդեպս, *հագներգութիւն* եզրույթի հորինողի պատկերացմամբ դրանք հավասարազոր էին[1]:

Եթե դա այդպես է, ապա ուրեմն եզրույթի հորինողին չի կարելի ճանաչել իբրև Դիոնիսիոսի թարգմանչի, քանի որ վերջինը [«դափնե»] δαφνίνῃ ձևը թարգմանում է *սարդենի*, ուրեմն, այլ կարծիքի է դափնի հայերեն համարժեքի մասին: Եվ որքանով խոսքը դափնի՝ *δάφνη* բառի մասին է, Դիոնիսիոսի թարգմանչին չի կարելի նույնացնել նաև Նոննոսի լուծումների թարգմանչի հետ, քանի որ վերջինը *δάφνη*-ն արտահայտում է *մուրտ*[2] ձևով:

Սակայն եթե մեր տարակուսանքները *ի հագնելոյ կարկատուն բանս* արտահայտության վերաբերյալ անհիմն են, և դա իրոք բնագրի բուն մասն է կազմում, ապա հարկ կլինի ենթադրելու, որ Դիոնիսիոսի թարգմանիչը ոչ միայն չի կարող համարվել *հագներգութիւն* բառի հեղինակը, այլև նույնիսկ ճիշտ պատկերացում չուներ դրա բաղադրության մասին: Չգիտենալով, թե ինչ է նշանակում բաղադրյալ բառի առաջին մասը, նա *հագն-(երգութիւն)-ից* ստեղծել է նոր արտահայտություն՝ *հագնել*, արտաքնապես միանգամայն ճիշտ՝ *կատակել*՝ *կատակ-(երգութիւն)* օրինակով: Հեղինակի կարծիքով, *հագնել* պետք է ունենա այն նույն իմաստը, ինչ և *հագներգել*:

Հնարավոր է, որ այստեղ առկա է նաև *հագագ* բառի ազդեցությունը: Դիոնիսիոսի հնագույն մեկնիչներից մեկը՝ Մովսեսը, հաստատում է երկու բառերի կապը՝ *հագներգութիւն է երբ շնչոյ հագագին*, $161_{12}$: Զարմանալի չէ, եթե նույն կերպ մտածում էր նաև Դիոնիսիոսի թարգմանիչը: Առկա գրականությունից փոխառելով պատրաստի *հագներգութիւն* բառը, նա կարող էր

անգամ՝ *տաղս Հոմերականս*, 253. նույն տեղում՝ *ἐπλάττοντο στίχους*՝ *տաղս ստեղծանելով*: Նոննոսի լուծումներում [H. **Manandian**, Die Scholien zu fünf Reden des Gregor von Nazianz // Zeitschrift fur armenische Philologie, Marburg, N 1, 1902, 3, SS. 220-272; N 1, 1903, 4, SS. 273-300], էջ 60 և 61՝ *ի Հոմերոսի հագներգութիւնս գրեալ է*: Փիլոնի Հեսս[եայք]՝ [Ցաղագս վարուց կենաց տեսականի], էջ 10 (136), *ի սկզբանէ ծ̃գ հագներգութեան ի ծնոն այսոց տաղից*:

[1] Աստվածաշնչում երկու անգամ հանդիպում է *հագնի* բառը, և երկու անգամ այն դրվում է հունարեն բնագրի *ἄγνος* բառի դիմաց՝ *զոստս հագնեաց*, *ἄγνου κλάδους*, Ղևտ. ԻԳ, 40, և երկրորդ անգամ, Յոբ. Խ, 17՝ *κλῶνες ἄγρου* [«դաշտի ոստայններ»], սակայն որոշ գրչագրերում, ինչպես, օրինակ, Cod. Alex., կարդում ենք *ἄγνου*, ինչը համապատասխանում է հայերենի *ծողք հա(ն)գնւոյ*:

[2] Նոննոսի հրատարակության մեջ, էջ $71_{10}$ ընթերցվում է. *յաղագս Դափնոյն որ թարգմանի մարտ*՝ փոխանակ *մուրտ*-ի: *Տունկել ուզանէր* նույնպես հարկավոր է սրբագրել՝ *տունկ ելուզանէր*, $71_{16}$:

մեկնաբանել այն, ստուգաբանորեն մերձեցնելով *հագագ*[1] բառին: Պատրաստի են հասել նրան, ըստ երևույթին, նաև *ողբերգութիւն* եւ *կատակերգութիւն*[2] բառերը:

## § 6. Տառի մասին

Ներածական մասում, որով օժտված է սովորաբար յուրաքանչյուր գլուխը, Դավիթը նշում է. *«Արդ մինչեւ ցայս վայր սկիզբն արարեալ արուեստատրիս քննեաց զմասունս եւ զմասանց մասունս: Իսկ այժմ բուռն հարեալ զնիւթոյն, զի առ փոքր փոքր ելցէ ի վերին կատարելագոյնն»*:

«Մասերը» հասկացվում են իբրև Դիոնիսիոսի թվարկած վեց գիտությունները, իսկ «մասերի մասերը»՝ իբրև վերծանության ստորաբաժանումներ: «Նյութ» է կոչվում գիրը՝ նվազագույն միավորը, որից, այնուամենայնիվ, առաջանում են ավելի կատարյալ մեծությունները՝ վանկը, բառը և խոսքը:

Նույն միտքը զարգացվում է նաև հունարեն լուծումներում՝ Դավթի հաջորդ բառերի կապակցությամբ. *«Եւ զի ասէ յաղագս տառի եւ բուռն հարկանէ զգրոյ. քանզի տառդ անմարմին, իբր թէ բանի նշանակ, զի գիտելի կացուցանէ գրովն զբանն, որպէս այրիւն զայրն: Իսկ նախադասեալ տառիս աւրինակ իմն ըստ պատուոյ*[3]*, իբրեւ ոգի քան զմարմին լաւագոյն»*:

Ըստ Մելամպոդեսի, [«որոշ դժվարություն և խնդիր է հարուցում ինքն իսկ խորագիրը. ինչո՞ւ, վերտառելով "Հնչյունների մասին", նա սկսում է ոչ թե "հնչյուն է"…, այլ՝ "տառ է"»]՝ *ἀπορίαν τινὰ εὐθέως καὶ ζήτησις ἔχει ἡ ἐπιγραφή, τίνος ἕνεκεν ἐπιγράψας "περὶ στοιχείου" οὐκ ἐπίγαγε "στοιχεῖόν ἐστιν… ἀλλὰ "γράμματά ἐστιν"*. Նա հարց է արծարծում, թե [«ի՞նչ է հնչյունը»]՝ *τί οὖν ἐστιν στοιχεῖον*, և տալիս է մի քանի սահմանում. [«արտասանում»]՝ *ἡ ἐκφώνησις*, կամ [«առաջին և մասեր չունեցող ձայն մարդու»]՝ *ἡ πρώτη καὶ ἀμερῆς τοῦ ἀνθρώπου φωνή*, կամ ինչ-որ [«նվազագույն»]՝ *ἐλάχιστον*, որից կազմվում են [«վանկեր»]՝ *αἱ συλλαβαί*, վանկերից՝ [«բառեր»]՝ *αἱ λέξεις*, բառերից՝ [«խոսքեր»]՝ *οἱ λόγοι*, խոսքերից՝

[1] *Հագագ*՝ **հագ-հագ*-ից, գավառական **հեկ-հեկ = հեկեկ-ել*, արդյո՞ք կապված չէ *հեգ*, *հեգնել* բառերի հետ: Փիլոնի [Այնոցիկ որ ի Լինելութեան խնդրոց եւ լուծմանց] երկում հանդիպում է *հագածել* բառը, էջ 130, 143, 201՝ որի իմաստը դեռ պետք է պարզել: Այն չունի և ոչ մի առնչություն մտացածին *հագնել*, իբր *ῥάπτειν*, բառի հետ՝ որպիսի նշանակություն ցանկանում ենք դրան վերագրել «Հայկազեան»-ի հեղինակները մեր վերլուծած՝ Դիոնիսիոսի տեղիի հիման վրա:

[2] Դրանք հանդիպում են Նոննոսի Լուծումներում, էջ 58 և 36: Գայթակղիչ է ստուգաբանորեն համադրել *կատակ-երգութիւն κωμῳδία*-ի հետ *ἡ τῶν κώμων ᾠδή* [«գյուղերի երգ»] իմաստով. *κῶμαι γὰρ λέγονται οἱ μείζονες ἀγροί* [«գյուղեր են կոչվում առավել խոշոր ագարակները»], Մելամպոդես, էջ $20_{8}$: «Կատակ» պարսկ. -كد արաբ.՝ «տուն» [իմաստով լավագույնս] կհարմարվեր *κῶμαι*՝ [«գյուղեր» բառին]:

[3] Հմմտ. վերը, էջ CXXVI:



[«բանաստեղծություններ և արձակ երկեր»]՝ *τὰ ποιήματα* **և** *συγγράμματα*, $30_{26}$-$31_{18}$:

Դիոնիսիոսի «դրանք անվանվում են "հնչյուններ" (*στοιχεῖα*)» խոսքի վերաբերյալ Մելամպոդեսը հայտարարում է. [«և իրոք, քանի որ հնչյունը՝ արտասանումն է, իսկ տառերը՝ պատկերներ և գծագիրներ են»]՝ *τὸ δὲ ἀληθές, ὅτι στοιχεῖον μὲν ἐστιν ἡ ἐκφώνησιν, γράμματα δὲ αἱ εἰκόνες καὶ οἱ χαρακτῆρες*, $32_{18}$ (հմմտ. Դավթի *<գիր> իբր նշանակ բանի*): Նրան նաև հայտնի է, որ գիրն է կոչվում *στοιχεῖον*՝ «տարր», «տառ»՝ չորս տարրերի նմանությամբ. [«թերևս ասելի է, որ դրանք անվանվել են *στοιχεῖα*՝ "տարրեր", «տառեր»՝ չորս տարրերի նմանությամբ»]՝ *εἴποι δ' ἄν τις αὐτά στοιχεῖα εἰρῆσθαι καὶ κατὰ μίμησιν τῶν τεσσάρων στοιχείων*, և դրանցից [«բաղկացած է ամեն ինչ և իրական գոյություն ունի այն, ինչ կա աշխարհում»]՝ *σύγκειται πάντα καὶ ἐν ὑποστάσει ἐστι τὰ ἐν τῷ κόσμῳ*. ճիշտ նույն ձևով 24 տառերից՝ *στοιχείων* կազմվում են խոսքն ու գրականությունը, $36_{8}$:

Դիոնիսիոսի նույն խոսքերը նույն կերպ է մեկնում և մեր քերականը. *«Եւ զի ասաց կրկնաբանելով զտառս, ցուցանէ զտարրումն եւ զմիաբանութիւն գրոյ եւ ձայնի անգոյ տարերց հանգոյն*[1] *ընդ երկրի եւ ընդ կենդանիս միաբանութեան»*:

Հելիոդորոսն ասում է. «ինչպես տարրերը [«խառնվելով, կազմում են մեր մարմիններ»]՝ *τῇ μίξει τῇ πρὸς ἄλληλα τὰ ἡμέτερα σώματα καθίστησι*, այդպես և տառերից [«փոխադարձ ընդհանրությամբ»]՝ *τῇ πρὸς ἄλληλα κοινωνίᾳ* կազմվում են վանկեր և այլն, $317_{25}$: [«Խառնուրդը»]՝ *μίξις*, կամ [«միահյուսված» <լինելը>]՝ *μετ' ἀλλήλων συμπεπλεγμένα*, ինչպես մյուս անգամ արտահայտվում է նույն հեղինակը, $324_{35}$, ինչպես և [«միմյանց հյուսվածները»]՝ *καταλλήλως πλεκόμενα*, $197_{8}$, համապատասխանում են Դավթի *միայարութիւն* բառին, իսկ *κοινωνία*-ն հավասարազոր է *միաբանութիւն* արտահայտությանը: Դավթի՝ *միաւորութիւն գրոյ եւ ձայնի* բառերից երևում է, որ նրան, ի միջի այլոց, խորթ չէր *տառ*՝ *στοιχεῖον*-ի ըմբռնումը *ձայն ἐκφώνησις*-ի նշանակությամբ, հավանաբար, այս իմաստով նա *տառդ* անվանում է *անմարմին*[2]:

Հայ Անանունը շատ ավելի պարզ, քան Դավիթը, արտահայտում է հիմնական միտքը. *«Բայց խնդրելի է* (բառացի՝ *ζητέον*, հմմտ. Մելամպոդեսի *ζήτησιν ἔχει*), *թե ընդէ՞ր ի մակագրութեանն տառ անուանելով, բուռն հարկանէ զգրոյ. եւ ասեմք, եթե տառ մակագրելով յայտ արար թե, որպէս*

[1] Բնագրում *(անգոյ) տարերց հանգոյն*. ըստ երևույթին, *անգոյ*՝ *տարերց* բառից հետո կրկնվող *հանգոյն*-ի աղավաղումն է: E-ն ընթերցում է *հանգոյն տարերց* (137):

[2] Հմմտ. Ստեփանոս, *Մեկնութիւն*, $184_{1}$:

*տարերք նիւթ են ամենայն մարմնոյ, այսպէս գիր տարր է եւ նիւթ ամենայն խաւսից»*, $131_9$:

Դիոնիսիոսի խոսքերն այն մասին, որ տառերն ունեն [«շարքն ու կարգ»]՝ *στοῖχον καὶ τάξιν*, Մելամպոդեսը պարզաբանում է, ստուգաբանելով *στοιχεῖον*-ը *στείχω* [«անցնել, ընթանալ»] բայի միջոցով. [վերջինը, ըստ նրա], նշանակում է [«կարգով ընթանալ»]՝ *μετὰ τάξεως πορεύμαι*: Տառերն այդպես են անվանվում, ըստ Մելամպոդեսի, այն պատճառով, որ տառերը հետևում են միմյանց որոշակի հաջորդականությամբ, և ոչ ինչպես պատահի. [«ինչպես *κλέος* "լուր, համբավ" <բառում> *կ* <տառը> նախորդում է *լ*-ին մի վանկում»]՝ *ὡς ἐν τῷ κλέος τὸ κ̄ τοῦ λ̄ προετάγη ἐν μιᾷ συλλαβῇ*, $35_{28}$:

Այս դատողությունը նույն բառի մասին արձագանք է գտել Դավթի մեկնության մեջ. *դասութիւն, զի երբեմն այր ասի եւ երբեմն յար*, և այլն, $94_3$:

Հույն քերականները հետաքրքրվում էին տառերի քանակության խնդրով՝ թե ինչու են դրանք 24, և ոչ ավելի: Մելամպոդեսը միանգամայն իրավացիորեն նշում է, որ «գծագիրները 24 են, բայց հնչյունները՝ շատ ավելի բազմաթիվ»: Շատ հետաքրքրական է Ստեփանոսի հայտարարությունն այն մասին, թե կան ժողովուրդներ, որոնք ունեն ավելի շատ տառեր, քան հույները, ընդորում այս դեպքում հիշում է նաև հայերին. [«ասում ենք, որ դրանք (իմա՛ տառերը) համարակալվում են, և ասում, որ հույների մոտ ճանաչված են միայն քսանչորսը, մինչդեռ կան ավելի շատ <հնչյուններ>, ինչպես հայերի և ղպտացիների մոտ»]՝ *λέγομεν οὖν ὅτι ἐκεῖνα ἀριθμεῖται καὶ λέγει εἶναι κδ΄ τὰ παρ᾽ Ἕλλησι μόνα γνωριζόμενα, ἐπεὶ ἔστι πλείω, ὡς τὰ Ἀρμενίων καὶ τὰ Αἰγυπτίων*, $196_{29}$:

Այս խնդիրը ծանոթ է նաև Դավթին, և նրա լուծումը հետևյալն է. *«Բայց բազմութիւն գրոյս, մի՝ զի անարուեստ* (բառացի՝ *ἄτεχνος*) *խաւսք, եւ բարբարիկոն լեզու, եւ երկրորդ՝ վասն թաւութեան* (բառացի՝ *δασύτης*) *զնոյն կարգել*[1] *ի գրին, որ ըստ խաւսիցն յարմարին»*, $92_{13}$:

Վերջին խոսքերը հղում են հունարենի համեմատությամբ հայերեն այբուբենի հավելյալ տառերին, որ անշուշտ ներառվել են նաև Դավթի մեկնած՝ Դիոնիսիոսի գրի մասին դրվագում:

Հնչյունների դասակարգման բացատրության մեջ Դավիթն ունի մի դիտողություն, որ առկա է և Մելամպոդեսի մոտ. *«Բայց ոմանց հակառակել դէպ եղեւ եւ ասել եռամանակս՝ τρίχρονα, իսկ ոչ կալաւ զտեղի, վասն զի ոչ համանգամայն երեքին ամանակք ասին, այլ երբեմն մին եւ երբեմն երկուն»*, $94_{18}$ (հմմտ. Մովսէս, $163_{20}$): Մելամպոդեսն ասում է. [«իսկ ոմանք <անվանում են դրանք> "եռամանակ", որովհետև երբեմն տևում են երկու ամանակ,

[1] Ավելի ճիշտ կլիներ *կարգեալ*՝ *կարգել* ձևի փոխարեն: E-ն կարդում է՝ *պարտ է կարգել, ի* նկատի ունենալով Դիոնիսիոսի թարգմանչին:



երբ երկար են, և երբեմն՝ մեկ, երբ կարճ են. սակայն անտեղի կոչվեցին եռամանակ. չէ՞ որ չեն ընդունում երեք ամանակ (138) միևնույն պահին»]՝ *τινὲς δὲ τρίχρονα, ὡς ποτὲ μὲν ἔχοντα δύο χρόνους, ὅτε μακρά ἐστι, ποτὲ δὲ ἕνα, ὅτε βραχέα ἐστίν· ἀλλ᾽ οὐ καλῶς οὗτοι ὠνόμασαν αὐτὰ τρίχρονα· οὐ γὰρ ὁμοῦ ἐπιδέχεται τοὺς τρεῖς χρόνους*, $38_{19}$:

Բաղաձայնները և դրանց դասակարգումը Դավիթը մեկնաբանում է պատկերավոր ձևով, համեմատելով գիրը մարդու մտքի հետ, ձայնավորները՝ նրա զգացողությունների, իսկ բաղաձայնները՝ մարմնի անդամների հետ: Ինչպես զգացողության համար ոչ բոլոր անդամներն են հավասարապես կարևոր, այդպես և «քաջաձայնության» (բառացի՝ *εὐφωνία*՝ [«բարեհնչություն»]) համար բաղաձայնները տարբեր արժեք ունեն:

Հույն մեկնիչ Ստեփանոսի մոտ գտնում ենք նույնպիսի համեմատություն ձայնավորների՝ հոգու և բաղաձայնների՝ մարմնի հետ. [«ձայնավորները նման են հոգուն, իսկ բաղաձայնները՝ մարմնին»] *τὰ <μὲν> φωνήεντα τῇ ψυχῇ ἐοίκασι, τὰ δὲ σύμφωνα τῷ σώματι*, և այլն, $198_{16}$, $497_{17}$ (հմմտ. Հելիոդորոս, $325_{35}$):

«Կրկնակ»՝ *διπλᾶ* բաղաձայնները նույն կերպով մեկնաբանվում են և Դավթի, և Մելամպոդեսի կողմից. ըստ Դավթի, «կրկնակք» են, «յորժամ մի գիր բաւական լիցի ունել զերկուց տեղի», իսկ ըստ Մելամպոդեսի, դրանք [«իբրև ունեն երկու բաղաձայնների զորություն»]՝ *ὡς δύο συμφώνων δύναμιν ἔχοντα*, $45_{30}$:

Նայ հնչյունների՝ Դավթի մեկնությունը որոշ տարակուսանք է հարուցում: Դիոնիսիոսն այս հնչյուններն անվանում է *անփոփոխք*՝ *ἀμετάβολα*, որովհետև դրանք չեն փոխվում բայի ապառնի ժամանակում և անունների թեքման պարագայում: Նույն հնչյունները նա կոչում է *խոնաւք*՝ *ὑγρά*:

Հայերեն ներկա բնագրում այս ամենի դիմաց ունենք. *«եւ նայք են չորք. ղ, մ, ն, ր»*:

Հունարեն լուծմունքները լուսաբանում են Դիոնիսիոսի սահմանումը *πάλλω παλῶ, νέμω, κρίνω, σπείρω, Νέστωρ, Μέμνων* [«ցնցել, պարտվել, բաշխել, դատել, ցանել, Նեստոր, Մեմնոն»] օրինակներով, իսկ [*խոնաւք*]՝ *ὑγρά* անվանումը հասկանում են [*իբրև ողորկ*]՝ *ὡς εὐόλισθα*, կամ [բացատրում են. «քանի որ դրանց արտասանությունը քնքուշ է և հավասարաչափ»]՝ *διὰ τὸ τὴν ἐκφώνησιν αὐτῶν λείαν καὶ ὁμαλὴν εἶναι*, $46_{10}$:

Հայ Անանունը ճիշտ է մեկնաբանում Դիոնիսիոսի բնագրի *նայք* եզրույթը *խոնաւք* իմաստով, ընդորում ավելացնում է, որ *«ըստ յունին նայքն ի խոնարհումն բային երեւին. իսկ ի հայումս ի հոլովումն անուանց, յորժամ միով բաղաձայնիւ յանգի, որպէս առն առին, անգղ անգեղ, վագր վագեր, աւր աւուր»*, $134_9$:

Նույնպես է հասկանում և Մովսեսը, և, օրինակներ բերելով *ն*-ի և *դ*-ի հանգավորությամբ, նկատում է, որ *մ*-յով ավարտվող բառերը հազվադեպ են, քանի որ դրանք պատկանում են *ի*– թեքման, $166_{19}$:

Ինչ վերաբերում է Դավթին, ապա նրան վերագրվող մեկնաբանությունը չի հարմարվում իր մեկնության ընդհանուր բնույթին: Այն ասում է. *«Տինա, եւ նայի բնութիւն իմանի իբր թէ խոնաւագոյն, եւ արուեստ ունի զհամբառնալն եւ զնուաստանալն իբր թէ հողմոյ, եղեգան»*, $96_{7}$:

*Համբառնալն եւ նուաստանալն*, ըստ երևույթին, ճարտասանական դարձվածներ են, որ նշանակում են *հոլովումն եւ խոնարհումն*, իսկ հաջորդ՝ *հողմոյ, եղեգան* բառերը օրինակներ են ծառայում, թեև, ինչպես ճիշտ նկատում է Մովսեսը, *հողմ*-ը՝ անհաջող օրինակ է:

Բայց կարելի է ենթադրել, որ մեկնիչը համեմատել է *նայ*-ը եղեգնի հետ և նայ բաղաձայնների հատկությունը հավասարեցրել եղեգնի ճկունության՝ եղեգն, որ տատանվում է հողմից (այդ դեպքում հարկավոր է կարդալ *իբր թէ <ի> հողմոյ եղեգան*): Այդպես էին հասկանում ընդօրինակողները և անգամ ուշ մեկնիչները (հմմտ. Եսայի, էջ 96, ծան. *եղեգն ի հողմոյ*): Եթե վերլուծվող արտահայտությունը պատկանում է Դավթին, ապա առաջին ըմբռնումը ավելի նախընտրելի է: Իսկ եթե ընդունենք երկրորդ մեկնաբանությունը, ապա արտահայտությունը չի կարելի Դավթին վերագրել: Ի նկատի առնելով այն, որ դա մեջբերվում է վերը MS [տառանիշով] նշված Ստեփանոսի աստվածաբանական գրվածքում ևս, անհիմն չէր լինի այն վերագրել Մովսեսին, որին նա իր բնույթով ավելի է հարմարվում (139): Անանունի՝ նայերի մեկնությունը, թերևս, գալիս է Դավթից, իսկ այն, ինչ զետեղված է Մովսեսի անվան ներքո, իր հերթին պատկանում է Անանունին:

Հայ մեկնիչները ճիշտ են ըմբռնում *նայ* եզրույթի նշանակությունն իբրև *խոնաւ՝ ὑγρά*: *Նայ* բառը՝ հայկական, թերևս ժողովրդական ձևն է պարսկական nam՝ «խոնավ» բառի: Այս իմաստով այն գործածվում է նաև Պիտոյից գրքում[1]: Սակայն հարցական է մնում, արդյոք *ὑγρά* բառի *նայ* համարժեքը պատկանում է Դիոնիսիոսի թարգմանչին, թե նա օգտվում է դրանից որպես արդեն կայունացած տեխնիկական եզրույթից:

Ցավոք, հնչյունների թվարկման ժամանակ Դավիթը չի պահպանում Դիոնիսիոսի հստակ դասակարգումը: Դա շատ կարևոր կլիներ հայերեն բնագրի քննության համար: Հայերենի հնչյունների դասակարգումն ըստ Դիոնիսիոսի կանոնների այն տեսքով, որ ներկայացված է պահպանված գրչագրերում՝ արդյոք բխում է թարգմանության բուն բնագրի՞ց, թե խաթարված է օտար ձեռքով՝ դժվար է ասել: Այս կամ այն պատասխանը անկարևոր չէ հայոց լեզվի պատմության համար: Հունարենում բացակայող հայերենի հնչյունների մեկնաբանման մեջ Դիոնիսիոսի թարգմանությունում նկատվում է որոշակի անհետևողականություն: Պայթաշփական *ձ, ց, ծ* հնչյունները ճիշտ են բաշխվում միջակների, շնչեղների և խուլերի շարքերի միջև, մինչդեռ *ճ*-ն հայտնվում է միջակների շարքում, իսկ *ջ*-ն և *չ*-ն՝ շնչեղների:

[1] Ցաղագս Պիտոյից (140). *եւ զնայ տառին*, 564, *նայ տառիդ*, 568, *նայամէտս բնութիւն*, 577:



Այսպես է և Անանունի երկում, որն ամբողջությամբ արտագրում է համապատասխան տեղին Դիոնիսիսից: Ոչ մի հիմք չկա խոսելու Անանունի հակադարձ ազդեցության մասին Դիոնիսիոսի բնագրի վրա: Ստիպված ենք խոստովանելու, որ քաջ հայտնի հնչունային այն տեղաշարժը, որով բնորոշվում են հայոց բազմաթիվ գավառաբարբառներ և որն ընկած է գրական արևմտահայերենի հիմքում, խորթ չէր հայերին դեռևս Դիոնիսիոսի թարգմանության դարաշրջանում:

## §§7-10. Վանկի մասին

Հունարեն *συλλαβή* բառը թարգմանված է երկու ձևով՝ խորագրում իբրև *վանգ*, իսկ բնագրում՝ *փաղառութիւն*: Սովորական ներածական խոսքերից հետո Դավիթը հարց է հարուցում այն մասին, թե ինչու արվեստավորն այդպես է վարվում, ինչու է նա վերտառում *վանգ* բառով, բայց խոսում է *փաղառութեան* մասին:

Դավթի կարծիքով, արվեստավորը տարբերում է *վանգ*-ը *փաղառութիւն*ից. մի դեպքում ձայնավորը փակվում է բաղաձայնով մեկ, իսկ մյուս դեպքում՝ երկու կողմից: Այս դատողությունը ցույց է տալիս, որ դրա հեղինակը չի կարող համարվել Դիոնիսիոսի թարգմանիչը: Ավելին, այն մատնում է նաև նրա անծանոթությունը հունարեն աղբյուրներին՝ այլապես նրան հայտնի կլիներ, որ հայերեն երկու արտահայտություններն էլ համապատասխանում են միևնույն հունարեն բառին, ուստի և քննարկվող հարցը փաստորեն գոյություն չի ունեցել Դիոնիսիոսի համար:

Թվում է, որ մեջբերված դատողությունը Դավթին՝ հունարեն լուծումքներին անկասկած ծանոթ լինելու պարագային (ինչպես այդ երևում է նրա աշխատության քննությունից) չի կարող պատկանել (141): Ցավոք, ձեռագրական միջավայրը նույնպես բավական անբարենպաստ է և տարակուսանքները չի փարատում: Մագիստրոսի մեկնությունում մեզ այժմ հետաքրքրող բնագրին անմիջապես հաջորդում են այն տողերը, որոնք մենք զետեղել ենք Անանունի անվան ներքո, $135_{2-7}$: Հովհաննես Երզնկացին, ընդօրինակելով Մագիստրոսից ամբողջ հատվածն այնպես, ինչպես որ դա կա,

կողքին՝ լուսանցքում նշում է միայն Դավթի անունը: Հատվածի վերջին տողերը՝ առաջին մասի կրկնություն են և այդ պատճառով չեն կարող վերագրվել միևնույն հեղինակին: Այս նկատառումներից ելնելով, մենք առանձնացրինք դրանք և հատկացրինք Անանունին, այն հեղինակին, որ սովորաբար հաջորդում է Դավթին՝ Մագիստրոսի և Հովհաննեսի շարադրանքներում: Հնարավոր է, որ Դավթի անվան նշումը վերաբերում է միայն բնագրի սկզբին՝ ներածությանը, ուստի և նրան է պատկանում միայն այդ մասը[1]: Նկատի առնելով, սակայն, որ *վանգ* և *փաղառութիւն* հասկացությունների տարբերությունը բերում են Անանունն ու Մովսեսը, ավելի հավանական կլինի ենթադրել, որ երկուսն էլ տվյալ դեպքում կախված են Դավթից: Այդ դեպքում հարկ կլինի ճանաչել վիճարկվող բնագրի վավերականությունը (հմմտ. ոճի տեսակետից՝ *իսկ զի ճառէ* և այլն, $96_{17}$ և *եւ զի ասէ յաղագս տառի* և այլն, $93_{8}$):

Եթե դա այդպես է, ապա Դավիթը չի կարող մասնակից լինել Դիոնիսիոսի թարգմանությանը: Գուցե նա գիտեր, որ նրա դատողությունը երկու բառերի տարբերության մասին չի հաստատվում հունարեն բառի օգտագործմամբ, և նպատակ ուներ միմիայն պարզաբանել հայերեն թարգմանության առանձնահատկությունը: Նրա բացատրությունը, համենայնդեպս, կամայական է: Իրապես *վանգ*-ը կենդանի բառ է (142), մինչդեռ *փաղառութիւն*-ը արհեստական բառ է, որ ստեղծվել է *συλλαβή*-ի կաղապարով (143): Այլ հուշարձաններում հունարեն այս բառը հանդիպում է ասորերեն՝ *սիղոբայ* ձևով[2]:

Դավթի մեկնությունը երկար, կարճ և հասարակ վանկերի մասին ցույց է տալիս, որ նրան ծանոթ էր հունարենի վանկի մասին ուսմունքը: Այն ամենը, ինչ նա ասում է դրա վերաբերյալ, կիրառելի է միայն հունարեն տաղաչափության նկատմամբ: Քննելով վանկերի քանակական կողմը՝ Դիոնիսիոսի հայերեն թարգմանությունում բերված օրինակների հիման վրա, նա, կարծես թե, աչքի առաջ է ունեցել հունարեն բնագրի օրինակները: Որքան էլ որ հայերեն բնագրում հաջող ընտրվեին բառերը՝ բնօրինակին համապատասխան և համահունչ, դրանց հիման վրա դատել երկարության և կարճության մասին այնքան ճիշտ, ինչպես դա անում է Դավիթը, անհնարին և աներևակայելի է առանց հունարեն բնագրին ծանոթ լինելու: Վանկերի մեկնաբանումը Դավթին մերձեցնում է Դիոնիսիոսի թարգմանչի անձին:

Ուշագրավ է Դիոնիսիոսի մեջբերած հոմերոսյան երեք տողերի մեկնու-

[1] Հաջորդ գլխում Դավիթն ասում է. *յորժամ ծանոյց զվանգին բնութիւն* $97_{3}$, սակայն *փաղառութիւն*-ը չի հիշատակում:

[2] **Կորիւն**, *սիւղոբայս*, էջ 18, *սիւղոբայիւք*, 19, **Եւսեբի Ժամանակագրութիւն** (144). *մինչեւ ցսիւղոբայս*, 37 (տե՛ս J. Karst, գերմաներեն թարգմանություն (145), էջ 242, ծան. 31):



թյունը: Այդ տաղերը Դավիթը սխալ է լուսաբանում: Թեպետ, առնվազն առաջին տաղի մեկնության բնագիրն անշուշտ աղավաղված է: Երկու անգամ է ընթերցվում է *Պրիամոս* անունը. սակայն մի դեպքում պետք է ընթերցել *Պարիս* և կատարել համապատասխան վերականգնում. և կամ պետք է սրբագրել՝

*Պրիամոս Տրովացի, որոյ <որդւոյ> զկինն յափշտակեալ էր հելլենացւոցն, – որդի նորա Պարիս* (և ո՛չ *Պրիամոս*) – ***քննելով*** և այլն, կամ էլ

*Պարիս* (և ո՛չ *Պրիամոս*) *Տրովացի, որոյ զկինն յափշտակեալ էր հելլենացւոցն, հայր* (և ո՛չ *որդի*) *նորա*, և այլն:

Հունարեն լուծմունքներում մենք չենք հանդիպում հոմերոսյան տաղերի մեկնության. միայն Բյուզանդացու մեկնությունում տրվում է որոշ բացատրություն: Առաջին տաղի վերաբերյալ ասվում է. [«եթե ցանկանում ես իմանալ հոմերոսյան տաղի պատճառը, ապա այն հետևյալն է. երբ Պրիամոսն ու իշխանավորները նախատում են Հեղինեին, թե քո պատճառով շատ չարիք ենք տեսել, և նա համաձայնում և ինքն իրեն է դատապարտում, Պրիամոսը, խղճալով նրան, պատասխանում է այս բանատողով. “ոչ, [մեղավոր չես]”»]՝ *εἰ δὲ θέλεις τὴν αἰτίαν τοῦ Ὁμηρικοῦ στίχου μαθεῖν, ἔστιν οὕτως. ἡ Ἑλένη ὀνειδιζομένη ὑπὸ Πριάμου καὶ τῶν λοιπῶν ἀρχόντων, ὅτι διὰ σὲ πολλὰ κακὰ ἔγνωμεν, καὶ συγκαταθεμένης αὐτῆς καὶ ἑαυτὴν κατακρινούσης, ἐλεήσας αὐτὴν ὁ Πρίαμος ἀπεκρίθη τὸν στίχον τοῦτον λέγων· οὔ τί μοι* և այլն, $571_{30}$:

Հոմերոսյան երկրորդ տողը Դավիթը, թվում է, վերագրում է Աքիլլեվսին, մինչդեռ Հոմերոսն այն դնում է Բրիսեիս հարճի շուրթերին: Ողբալով Պատրոկլեսի մահը, Բրիսեիսն, ի միջի այլոց, հիշատակում է նաև հանգուցյալի խոսքերը՝ հարճին Աքիլլեվսին կնության տալու մասին. [«բայց ասում էիր, որ դու ինձ օրինավոր կնության կտաս Աքիլլեվսին»]՝ *ἀλλά μ᾽ ἔφασκες Ἀχιλλῆος θείοιο κουριδίην ἄλοχον θήσειν.* այս տողը բերում և Դավիթը՝ *զքեզ յամուսնութիւն տամ Աքիլլեա*, սակայն կրկին վերաբերում է Աքիլլեվսին: Եթե հեռացվի *Աքիլլեա* բառը *զհարճն* բառից հետո, և հանվի ստորակետը *լալով* բառից առաջ, ապա ամուսնության մասին տողը կարող է վերաբերել հարճին. ***«եւ իբրեւ ետես Աքիլլեւս զՊատրոկղէ մեռեալ հանդերձ քաջութեամբ, լալով զհարճն Աքիլլեա, թե «զքեզ յամուսնութիւն տամ Աքիլլեա». ասէ՝ «ինձ հիքիս կարի յոյժ սիրեցեալ անձին»***: Քերականորեն վերջին տողը վերաբերում է Աքիլլեվսին. բայց քանի որ Հոմերոսի վեպում այն արտասանում է Բրիսեիսը, ապա կարող էր մեր բնագրում այն վերաբերել հարճին: Սակայն տարօրինակ զուգադիպմամբ նման սխալ մեկնությունը գտնում ենք Բյուզանդացու մեկնության մեջ ևս. [«Պատրոկլեսի զոհվելուց հետո Աքիլլեվսը, որ յուրայինների հետ ողբում էր նրան, ասում էր. “իմ Պատ-

ռոկլես"»]՝ *τετελευτήσαντος τοῦ Πατρόκλου ὀδυρόμενος αὐτὸν ὁ Ἀχιλλεὺς σὺν τοῖς ἰδίοις ἔλεγεν· Πάτροκλέ μοι* և այլն, $572_1$: Այս հանգամանքը ստիպում է մեզ մտածելու, որ Դավթի սխալը պայմանավորված չէ գրչագրերի վիճակով, այլ բխում է նրա հունարեն աղբյուրից:

Անխաթար չէ նաև երրորդ տողի մեկնությունը: Ըստ Դավթի, ստացվում է, թե իբր Նեստորն է հանձնվել բժիշկ Մաքաոնի խնամակալության: Մինչդեռ իրականում բժիշկ Մաքաոնը, մարտում Պարիսից վիրավորված, դուրս է տարվել Նեստորի կողմից (Իլիական, XI, 505, 598): Հոմերոսը Նեստորին վերագրում է քուլություն գինու նկատմամբ. նա վայելում էր ըմպելիքը, երբ նրա ականջին հասնում է տրովացի առաջնորդների բարձրացրած աղմուկը, և նա, թողնելով Մաքաոնին իր կնոջ՝ Հեկամեդեի խնամքին, դուրս է գալիս ռազմակայանից, XIV, 1: Նեստորի և Մաքաոնի դերերի շփոթությունը Դավթի «Մեկնությունում» դյուրին բացատրվում է այն հանգամանքով, որ Մաքաոնը բժիշկ է անվանվում: Կարծում ենք, որ այս սխալով նույնպես Դավիթը պարտական է իր հունարեն աղբյուրին: Բյուզանդական մեկնությունը միայն վերապատմում է տողը՝ առանց ծագումը պարզաբանելու. [«Եվ Նեստորի ուշադրությունից, թեև հարբում էր, աղմուկը չի վրիպել»]՝ *καίπερ πίνοντα τὸν Νέστορα ὁ ἦχος οὐ διέλαθεν*, $572_9$:

Անանունի մեկնությունում Դիոնիսիոսի օրինակները փոխարինված են Դավթի՝ մեզ չհասած էպիկական երկից վերցված տողերով, որոնց իմաստը լիովին ըմբռնելի չէ:

## §11. Բառի մասին

Բառը, ըստ Դավթի համեմատության, խոսքի հիմքն է այնպես, ինչպես ողնափայտը՝ նավի: Հույն մեկնիչները գտնում են, որ Դիոնիսիոսի՝ բառի սահմանումը լիակատար չէ՝ դրան հարմարվելու են և առանձին վանկերը, և նույնիսկ տառերը, քանի որ դրանք բոլորը խոսքի մասեր են: Նրանք մտադիր են լրացնելու Դիոնիսիոսի սահմանումը, ներմուծելով [«բանական որևէ բան նշանակող»]՝ *νοητόν τι σημαῖνον*, ինչպես առաջարկում է Մելամպոդեսը, $56_{16}$, կամ, ըստ Ստեփանոսի, [«իմաստները»]՝ *διανοίας*, $212_1$:

Մեր Դավիթը, թեև հարցն այդքան կտրականապես չի դնում, ինչպես հույները, բայց համաձայն է նրանց առարկություններին, քանի որ նա նույնպես համարում է, որ իմաստը կամ նշանակությունը բառի անհրաժեշտ հատկանիշ է. *«եւ լսի բառ ասածուածն, որ է ըստ միում վանգի կամ ըստ երկուց կամ ըստ երից. նշանակն մի է»*, $101_5$:



Բնագրի վերջին բառերն[1] անցում են ծառայում հաջորդ գլխին և կրկնում են բազմիցս արտահայտված միտքն այն մասին, որ արվեստավորը սկսել է հիմնական նյութից և հետզհետե սանդուղքով վեր է բարձրանում դեպի խոսքը: Նման կշռադատություն մենք գտնում ենք և հույն Ստեփանոսի մոտ, $211_{25}$:

## § 12. Խոսքի մասին

Այն հարցը, թե որքան են խոսքի մասերը՝ հները զանազան կերպ էին լուծում: Այս հարցի վերաբերյալ տարաձայնությունները հայտնի են մեր մեկնիչին: Նա գիտե, որ ոմանք համարում են ինը մաս, ավելացնելով ութ մասերին նաևածականը. *«բայց զմասունս բանի եւ զառասութիւնս եւս յաւելով ասացին ինն»*, $102_3$: Դրան համընկնում են Մելամպոդեսի բառերը. [«ոմանք ցանկացան առանձին կարգել ածական անունը, որպեսզի այն լինի խոսքի իններորդ մասը»]՝ *τινὲς τὸ προσηγορικὸν ὄνομα ἠθέλησαν κατ᾽ ἰδίαν τάξαι, ἵνα ᾖ ἔννατον μέρος λόγου*, $58_{21}$:

Դավիթը մեջ է բերում և այն փիլիսոփաների կարծիքը, որոնք ճանաչում էին խոսքի հինգ մաս՝ անուն, բայ, շաղկապ, հոդ և նախդիր: Հելիոդորոսից իմանում ենք, որ նույնքան մաս էին համարում ստոյիկյանները, բայց խմբավորում էին դրանք փոքր ինչ այլ կերպ. [«Ստոյիկյանները ասում են հինգ՝ անուն, ածական, հոդ, բայ, շաղկապ»]՝ *οἱ δὲ Στωϊκοὶ πέντε λέγουσιν, ὄνομα, προσηγορίαν, ἄρθρον, ῥῆμα, σύνδεσμον*, $517_{33}$: Ըստ Հելիոդորոսի բացատրության, առաջին մասը ճանաչվում էր անունը, երկրորդը՝ ածականը. երրորդը՝ բայը դերբայով հանդերձ, չորրորդը՝ հոդն ու դերանունը, իսկ հինգերորդը՝ նախդիրն ու շաղկապը, $356_7$:

Դիոնիսիոսը, ածականը հատկացնելով անվանը, ընդունում է խոսքի ութ մաս ՝ Ապոլլոնիոսի ուսուցիչ Տրյուփոնի համաձայն, որին, ինչպես հայտնում է Հելիոդորոսը, և պատկանում է այդ գաղափարը, $356_{21}$:

Դավթի մեկնությունում կարդում ենք, որ Արիստոտելեսն էլ էր ընդունում խոսքի հինգ մաս, ընդորում բերվում են *ստորասութիւն, բացասութիւն, բացերեւութիւն, անուն, բայ*: Վկայակոչումը բերվում է [Մեկնության մասին]՝ *Περὶ Ἑρμηνείας* գրվածքի սկզբի ասույթից, և խնդրին չի առնչվում. հնարավոր է, որ լուսանցագիր է:

---

[1] Դրանցով է Երզնկացին սկսում հաջորդ գլուխը, ընդ որում *զնիւթն* $101_{12}$ [բառից] հետո ներմուծում է Ստեփանոս Սյունեցու խոսքը՝ *զմանրկութիւն* – $202_{1-3}$, իսկ վերջին ասույթունը փոխարինում է *եւ ելեալ ընդ աստիճանսն եւ հասոյց մինչեւ ի բան* [հատվածով], տե՛ս էջ 202, ծան.:

«Խոսքի մասեր» արտահայտությունը հարկադրում է Դավթին կրկին կանգ առնել տեսակի և մասի հասկացությունների վրա և սահմանել դրանց փոխհարաբերությունները նույն ոգով, որով նա լուսաբանում էր նույն հարցը քերականության մասերի վերաբերյալ:

Վերջում Դավիթը հիշեցնում է, որ վեճ է ընթանում այն մասին, թե ո՞րն է առաջնայինը՝ անունը, թե բայը: Դավիթը միտվում է դեպի անունը, ելնելով նույն նկատառումներից, ինչ և Հելիոդորոսը, այսինքն՝ [«անունը սկզբից է դասվում, քանի որ նշանակում է էությունը, իսկ բայը՝ պատահականությունը. իսկ էությունները միշտ էլ նախադաս են պատահականություններից»]՝ *τὸ δὲ ὄνομα προτέτακται, ἐπειδὴ οὐσίας ἐστὶ σημαντικόν, τὸ δὲ ῥῆμα συμβεβηκότος, αἱ δὲ οὐσίαι προτερεύουσι τῶν συμβεβηκότων*, $521_{13}$:

## § 13. Անվան մասին

Դավիթը մեկ անգամ ևս հիշեցնում է անվան և բայի միջև եղած տարբերությունը, կրկնելով այն, ինչով ավարտվել է նախընթաց գլուխը:

Ապա, իր սովորության համաձայն, տալիս է Դիոնիսիոսի՝ անվան սահմանման տրամաբանական վերլուծությունը, մատնանշում [սեռը]՝ genus և [բաղկացուցիչ տարբերությունները]՝ differentia, և անցնում անվան բնորոշ հատկանիշների քննությանը:

Կարիք չկա մի առ մի կանգ առնել Դավթի դատողությունների վրա: Նրա հակիրճ մեկնությունները մեծ մասամբ զարգացնում են Դիոնիսիոսի խոսքն ու միտքը և չեն ներկայացնում ոչ մի այնպիսի բան, որում անպայման տեսնենք փոխառություններ կողմնակի աղբյուրից: Բայց առանձին բառերն ու արտահայտությունները, երբեմն էլ՝ մտքի ընթացքը մատնում են հունարեն լուծմունքների ազդեցությունը նրա մեկնության նաև այն մասերում, որոնք կարող էին համարվել քիչ թե շատ ինքնուրույն: Դրանք բոլորը մանրուքներ են, որոնց մեջ հնարավոր են և պատահական զուգադիպություններ, և մեր նպատակի համար դրանք վճռական նշանակություն չեն կարող ունենալ: Սահմանափակվենք միայն ամենաբնորոշ տեղիների արձանագրմամբ:

Դավիթը միանգամայն ճիշտ է բացատրում, որ քերականական սեռը նշվում է ոչ թե գոյությամբ, այլ հնչմամբ, $103_{20}$: Հույն մեկնիչ Ստեփանոսն ասում է՝ սեռը զանազանվում է [«ոչ իսկությամբ, այլ բարեհնչությամբ»]՝ *οὐ κατὰ τὴν ἀλήθειαν κατὰ τὴν εὐφωνίαν*, $218_{13}$: Ըստ Հելիոդորոսի, [«փիլիսոփաները զատորոշում են սեռերը ոչ թե հնչմամբ, այլ նշանակությամբ»]՝ *οἱ φιλόσοφοι οὐκ ἀπὸ τῆς φωνῆς νοοῦσι τὰ γένη, ἀλλ' ἐκ τῆς σημασίας*, $361_{35}$:



Դավիթը նշում է, թե *«ասեն ոմանք եթե ի հոռոմին լինի արական եւ իգական եւ չեզոքական, իւ եւ կամեսցի որ յայտնել ըստ երիցունց կարողութիւն է յայտնել»* [$103_{22}$]:

Դավթի խոսքերը չպետք է հասկանալ այն իմաստով, թե նա ինքը չգիտե՝ լեզվին անծանոթ լինելու պատճառով, թե ինչպիսին է կացությունը հունարենում: Դավթի բերված դատողությունը կապ ունի իր հետագա շարադրանքի հետ: Սեռի մասին ուսմունքի վերաբերյալ նա երկու կարծիք է բերում, որ առկա են հունարեն մատենագրության մեջ: Ոմանք ընդունում են սոսկ երեք սեռ, կարծելով, որ դրանցով սպառվում են մեր գիտելիքները սեռի վերաբերյալ: Ուրիշներն էլ երեք սեռերին գումարում են ևս երկուսը՝ *զհասարակն եւ զմակաւասարն*: Ընդորում Դավիթը ճիշտ է սահմանում այդ եզրույթները, ասելով, որ *հասարակ* են կոչվում այն բառերը, որոնք նշանակում են և արական և իգական սեռ, ինչպես, օրինակ, շուն և ձի՝ *ὁ* կամ *ἡ κύων* [որձ կամ էգ շուն], *ὁ* կամ *ἡ ἵππος* [հովատակ կամ զամբիկ] (146), իսկ *մակաւասար*՝ այն բառերը, որոնք քերականորեն մեկ սեռի գոյականներն են, որոնք, սակայն, նշանակում են երկու սեռ՝ և՛ արական, և՛ իգական. ինչպես, օրինակ, ծիծեռնակն ու աքիսը, թեև քերականորեն իգական սեռի են՝ *ἡ χελιδών, ἡ γαλῆ*, բայց նշանակում են և՛ իգականը, և՛ արականը. կամ արծիվն ու առյուծը՝ արական սեռի բառեր են՝ *ὁ ἀετὸς, ὁ λέων*, բայց կիրառելի են նույն կենդանիների իգական սեռի համար:

Նույն կերպ մեկնում են և հունարեն լուծմունքները, $218_{22}$ և $572_{35}$: Պարզ է, որ առանց հունարեն լեզվի իմացության և հունարեն աղբյուրի, միմիայն Դիոնիսիոսի հիման վրա անկարելի է գլուխ հանել այս բոլոր հասկացություններից:

Որ Դավիթն իր ձեռքի տակ ունեցել է ինչ-որ հունարեն աղբյուր, երևում է նաև նրանից, որ հայերեն թարգմանության մեջ Դիոնիսիոսի [*«արծիվ»*]՝ *ἀετὸς* օրինակը փոխարինված է *աքիս*՝ *γαλῆ* բառով, մինչդեռ Դավիթը բերում է երկու բառն էլ, ինչպես և *առիւծ*՝ *λέων* բառը:

Վերջին բառը հանդիպում է հունարեն լուծմունքներում ևս, սակայն Դիոնիսիոսի *κοινῶς*՝ *հասարակաբար* հասկացության վերաբերյալ, ինչպես, օրինակ, Ստեփանոսի մեկնությունում, $217_{16}$: Ինչ վերաբերում է [«աքիս»]՝ *γαλῆ* օրինակին, ապա այն չկա ներկա հունարեն լուծմունքներում, բայց որ այն եղել է այնտեղ, մասնավորապես այն լուծմունքում, որից օգտվում էր Դավիթը, շատ հավանական է. *γαλῆ* mustela հիշատակվում է լատին քերականների կողմից[1]:

Հայրանվանական անունների մասին Դիոնիսիոսի պարբերությունում փոխանակ [«Էոլյաններից»]՝ *τῶν Αἰολείων*-ի հայերեն թարգմանությունում

[1] G. Uhlig, Dionysii Thracis ars, էջ 25, ծան.:

կարդում ենք *Գորդայից*: Սակայն Դավթի մոտ, բացի *Գորդայից* ձևից, [որպես օրինակ] բերվում է նաև դորյան բարբառը՝ *ի հռոմին Դովրացի*, $105_3$: Ներկա լուծմունքներում այս օրինակը չի հանդիպում, բայց այն անկասկած եղել է Դավթի աղբյուրում:

*Փաղաքշական* եզրույթը Դավիթը մեկնաբանում է *աղջկական* բառով, ինչը միանգամայն հասկանալի է, բայց միայն համապատասխան՝ *ὑποκοριστικόν* հունարեն եզրույթի նկատմամբ, որը, հույն մեկնիչների համաձայն, [«անվանում է ստացել κόροι (մանուկներ), այն է՝ փոքր տղաներ կամ աղջիկներ <նշանակող բառից>»]՝ *εἴρηται δὲ παρὰ τοὺς κόρους, τουτέστι τοὺς μικροὺς νέους ἢ τὰς κόρας*, $227_{25}$:

Դավթին քաջածանոթ է վեճն այն մասին, թե կարելի՞ է արդյոք *ուղղականը*՝ ὀρθή հոլով անվանել: Դիոնիսիոսի բառերի՝ *հոլովք են անուանց վեց, ուղղական* և այլն, վերաբերյալ Դավիթը նկատում է, որ ոմանք այստեղ հակասություն կամ անհետևողականություն տեսան այն բանում, որ արվեստավորը, խոսելով հոլովների մասին, հիշատակում է ուղղականը, և կարծում են, որ *ուղղական*-ը պետք է անվանել *հոլովական*, $107_{11}$:

Այս հարցն արծարծում են և հունարեն լուծմունքները. [«եթե ուղիղ է (այսինքն՝ ուղղական), ապա ինչո՞ւ անկում (այսինքն՝ հոլով)»]՝ *εἰ ὀρθή, πῶς πτῶσις*, հարցնում է Ստեփանոսը, $230_{24}$: Ավելի ևս պարզ է ասում Հելիոդորոսը. [«պետք է իմանալ, որ շատերը հարցնում էին ուղղական հոլովի մասին, թե ինչպես կարող է նույն ուղիղը լինել նաև «անկում» («հոլով»). թվում է, որ հակասական է միևնույն բանը անվանել ուղղական և հոլով»]՝ *ἰστέον δὲ ὅτι ἐζητήθη παρὰ πολλοῖς περὶ τῆς ὀρθῆς, πῶς δύναται ἡ αὐτὴ ὀρθὴ καὶ πτῶσις εἶναι· ἐναντίον γὰρ ἔδοξεν εἶναι τὴν αὐτὴν ὀρθὴν καὶ πτῶσιν καλεῖσθαι*, $383_7$:

Խոսքն այստեղ ճեմականների և ստոիկյանների միջև եղած վեճի մասին է: Առաջինները պնդում էին, որ ուղղականը հոլով չէ, քանի որ «հոլով»՝ *πτῶσις* [եզրույթը, որ ածանցվել է] «ընկնել»՝ *πίπτω* բառից, կիրառելի է միայն այն ձևերի նկատմամբ, որոնք առաջանում կամ «ընկնում» են ուղղականից, այսինքն՝ թեք հոլովների նկատմամբ, իսկ ուղղականը ոչնչից «ընկնել» չի կարող: Ստոիկյաններն առարկում էին դրան, ասելով, թե ուղղական հոլովը կամ իրերի անվանումները առաջանում են ընդհանուր գաղափարների հստակեցման միջոցով. այլ կերպ ասած, դրանք նույնպես «ընկնում» են, միայն թե մեր գաղափարներից[1]:

Հոլովները մեկնաբանելիս, հունարեն լուծմունքները օգտվում են երկու կարծիքներից էլ. [«և թույլատրելի է ասել այսպես, քանի որ հոլովը կոչվում է "անկում" կամ այն պատճառով, որ այն, "ընկնելով", փոխարկվում է մնացած

[1] Scholia in Aristotelem, IV 104, ed. Academia Regia Borussica, 1836:



հոլովների, կամ սեռից փոխարկվում է տեսակների, և կամ "ընկնում" է մարմինների վրա»]՝ *καὶ ἔστιν εἰπεῖν οὕτως, ὅτι κατὰ τοῦτο μὲν πτῶσις καλεῖται, καθὸ μεταπίπτει εἰς τὰς λοιπὰς πτώσεις, ἢ καθὸ ἀπὸ τοῦ γενικοῦ μεταπίπτει εἰς τὸ εἰδικόν, ἤγουν ὅτι ἐπιπίπτει τοῖς σώμασιν*, $383_9$:

Այս դատողությունը մենք գտնում ենք և Դավթի մոտ, բայց փոքր ինչ այլ՝ այսպես ասած քրիստոնեացված բանաձևով: Ըստ Դավթի, բոլոր էակները, բոլոր իրերն իրենց անվանումները ստացել են Աստծուց, կամ նրանցից, որոնց Աստված այդ բանի համար զորություն է տվել: *«Արդ ըստ վերուստ դրութեան անուանն անկումն* (*πτῶσις*) *ասի եւ նոյն ինքն ուղղական* (*ὀρθή*)*. արինակ իմն գրչի ի վերայ կակուղ իրիք նիւթոյ նկարմամբ ուղիղ կացուցանելոյ, [եւ անդուստ ապա հոլովումն առնելով ի սեռականն եւ ի տրականն եւ որ ի կարգին]»*:

Նման համեմատության մենք հանդիպում ենք նաև հունարեն լուծմունքներում. [«ուղղական է կոչվում թերևս այնպես, ինչպես ասում ենք և գրչի մասին՝ եթե ինչ-որ մեկը վերցնի այն և գցի հատակին, և այն ուղիղ կանգնի»]՝ *καλοῖτο ἂν ὀρθή, ὡς ἂν εἴπομεν καὶ περὶ γραφείου, ὥσπερ ἐὰν τις λάβῃ γραφεῖον καὶ ἀφῇ εἰς γῆν καὶ ὀρθὸν στῇ*, $231_{24}$:

Դիոնիսիոսն ուղղականը՝ *ὀρθή* նմանապես անվանում է նաև «անվանական»՝ *ὀνομαστική* և «անմիջական»՝ *εὐθεῖα*. վերջին բառը սխալմամբ թարգմանվել է *պարզ*, և Դավիթը մեկնում է այն հայերեն իբրև *մեկնակ, անշարադիր*, այսինքն՝ պարզ, ոչ բարդ, որը չի համապատասխանում հունարեն եզրույթի նշանակությանը:

Այնուհետև Դավիթը մեկնում է մնացած հոլովները, թվարկելով, ըստ Դիոնիսիոսի հայերեն բնագրի, վեց հոլով՝ հունարեն բնագրի հինգի փոխարեն: Սկզբնագրի այդպիսի ստրկական հավատարմության պարագային օտար տարրի երևան գալը հայերեն բնագրում իրավամբ կարող է տարակույս հարուցել: Արդյո՞ք ավելորդ՝ *առաքական* հոլովը իսկապես չի առաջացել թյուրիմացության հետևանքով: *Δοτικὴ ἐπισταλτική* թարգմանված է *տրական պատուիրական*, որից հետո գալիս է եւ *առաքականն ցուցական*: Թերևս, *առաքական* բառը վերաբերում է նախորդ հատվածին, և *տրական*-ի հետ միասին արտահայտում է *ἐπισταλτική* եզրույթի երկակի իմաստը՝ եզրույթ, որ առաջացել է *ἐπιστέλλω*՝ «հրամայել» և «ուղարկել, առաքել» նշանակություն ունեցող բայից: Այդ դեպքում *ցուցական*-ը պետք է համարել լուսանցագիր կամ հաջորդ *հայցական*-ի աղավաղված կրկնագիր (147):

Դավիթը մեկնաբանում է *տրական*-ը որպես *թղթական*, հույն Ստեփանոսի նման. [«գեղեցիկ է այս անվանումը, քանի որ գործածում ենք այն բարեկամներին <նամակներ> հղելիս»]՝ *καλῶς οὕτως εἴρηται, ἐπείπερ καὶ τοῖς φίλοις ἐπιστέλλοντες ταύτῃ χρώμεθα*, $231_{31}$:

Վիճահարույց հոլովի մասին Դավթի տված մեկնությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ *ցուցական*-ի բացատրություն, և չի տալիս դրա մասին որևէ որոշակի պատկերացում: Դիոնիսիոսի թարգմանության մեջ *առաքական*-ը դարձյալ կրկնվում է դերանուններին վերաբերող գլխում, և այստեղ, ինչպես երևում է հոլովումից, այդ հոլովը հավասարեցված է գործիականի հետ, $28_{25}$: Դավթի ասելով, *«Եւ ցուցական իսկ առաքականդ ըստ երկուց դիմաց. յորժամ առաքիցի որ ուրեք յումեքէ զհեռաւորն նշանաւոր բանիւ ցուցանել եւ զմաւատաւորն եւ որ երեւին տեսութեամբն»*, $108_{2}$:

Չի կարելի կարծել, որ այս սահմանումը կարող է վերաբերել գործիական հոլովին: Այս խոսքերի հեղինակը, ամենայն հավանականությամբ, ոչ մի հոլով ի նկատի չի ունեցել, այլ միայն զուգադրել է միևնույն արտահայտության մեջ երկու եզրույթների՝ *առաքական-ցուցական*-ի նշանակությունները: Եթե մեկնությունը պատկանում է Դավթին, և մեր կասկածները *առաքական* հոլովի վերաբերյալ անհիմն չեն, ապա հարկ կլինի ընդունել, որ բնագրի աղավաղումը կատարվել է Դավթից առաջ, և Դավիթը՝ Դիոնիսիոսի թարգմանության հեղինակը չէ:

Հայցական՝ *αἰτιαιτική* Դիոնիսիոսի երկում թարգմանված է *հայցական խնդրական*, այն նշումով, որ հունարենում այն հնչում է իբրև *փաստական*: Դավիթն այս վերջին ձևը փոխարինում է ավելի հասկանալի *պատճառական*-ով:

Հույն մեկնիչ Ստեփանոսն ասում է. [«ըստ “պատճառի” է ասում, կամ ըստ “խնդրանքի”, և կամ ըստ “մեղադրանքի”. որովհետև, երբ խնդրում ենք՝ որևէ բան ստանալու համար կամ մեղադրում ենք որևէ մեկին, այս հոլովն ենք դնում»]՝ *κατ᾽ αἰτίαν φησὶν ἤτοι αἴτησις ἢ καὶ αἰτίασιν, ἐπείπερ αἰτούμενοι λαβεῖν τι ἢ αἰτιώμενοι <τινα> ταύτην προφερόμεθα*, $232_{3}$: Բյուզանդացին մեկնում է. [«ինչպես *Պետրոսին* խնդրում կամ փնտրում եմ, որպեսզի նրան պատիվ տամ կամ անպատվեմ, կամ ուղարկեմ ճանապարհ<որդության>, կամ բարձրացնեմ նրան դեպի մեծ փառքը»]՝ *οἷον τὸν Πέτρον αἰτῶ ἢ ζητῶ, ἵνα αὐτὸν τιμήσω ἢ ἀτιμάσω, ἢ καὶ ἐν ὁδῷ ἀποστείλω ἢ εἰς μεγάλην ἀξίαν ἀναβιβάσω*, $575_{10}$:

Այստեղից երևում է, որ հույն մեկնիչները համոզված չէին, թե արդյոք *αἰτιαιτική* անվանումն ծագում է *αἰτέω*՝ «խնդրել», թե *αἰτιάομαι*՝ «մեղադրել» բայերից: Այս երկբայությունն անդրադարձվել է Դիոնիսիոսի հայերեն թարգմանությունում: Արդյո՞ք այստեղ իր հետքն է թողել հույն լուծմունքների ազդեցությունը, թե թարգմանիչն օգտվել է իր ժամանակին ընդունված *հայցական* եզրույթից, սակայն գտնելով, որ այն չի համապատասխանում հունարեն բառին, ստիպված էր վերապահություն անել. սա մի խնդիր է, որը չի լուծվում Դավթի բնագրի միջոցով:



Կոչական հոլովի մեկնությունում Դիոնիսիոսի *հռչական* բառը ընթերցվել կամ ըմբռնվել է իբրև *կոչական*, իսկ *առասական*-ը՝ իբրև *առհասարակական*: Այս մեկնությունը կարելի է վերագրել Դավթին ճիշտ ընթերցումները վերականգնելու պայմանով:

Այնուհետև Դավիթը քննում է անվան տեսակները այն հաջորդականությամբ, որով դրանք թվարկվում են Դիոնիսիոսի երկում, օժտելով դրանք համառոտ դիտողություններով:

Առաջին տեղում Դիոնիսիոսը դրել է *յատուկ* անունը, ապա գալիս է հասարակը: Այս առթիվ Դավիթը նշում է պլատոնականների և արիստոտելականների միջև եղած տարաձայնությունն այն մասին, թե որն է նախնականը՝ հասարակ անունը, ինչպես պնդում էր Պլատոնը, թե հատուկը՝ ինչպես կարծում էր Արիստոտելեսը: Դավիթը գտնում է, որ Դիոնիսիոսը վարվել է Արիստոտելեսի ուսմունքի համաձայն:

Այն հարցը, թե [«Ինչո՞ւ արվեստավորը չի նախադասում հասարակ անունը հատուկին»]՝ *διὰ τί μὴ προέταξεν ὁ τεχνικὸς τὸ προσηγορικὸν τοῦ κυρίου* դրվում է և հունարեն լուծմունքներում, բայց լուծվում է այլ կերպ. [«քանի որ արվեստավորները սովոր են անհատը նախադասել տրոհվածին»]՝ *ὅτι ἔθος ἐστὶ τοῖς τεχνικοῖς τὰ ἄτομα προτάσσειν τῶν τεμνομένων*, $386_{3}$:

Դավթի բացատրությունները <4> և <5> տեսակի՝ *առնչունակ* անունների մասին համընկնում է հունարենի հետ. [«քանի որ առնչունակները միաժամանակ և գտնվում են և կործանվում, իսկ իբր առնչունակները մեկը մյուսից չեն առանձնանում»]՝ *τὸ μὲν γὰρ πρός τι ἔχον καὶ συνευρίσκεται καὶ συναπόλλυται, τὸ δὲ ὡς πρός τι ἔχον ἓν τοῦ ἑτέρου ἀναιρετικόν ἐστιν*, $235_{25}$: Բացի Դիոնիսիոսի օրինակներից, Դավիթը բերում է նաև *որպէս տէր զծառայ*, որ ընթերցվում է և հունարենում. *ὡς δοῦλος πρὸς δεσπότην*, $388_{32}$. այնուամենայնիվ դրանց ընդհանուր աղբյուրն է Արիստոտելեսի «Ստորոգությունները»՝ *«առինչքն առ հակադարձսն ասին, հիկէն ծառայ տեառն»* և այլն, 379:

*Հոմանունը*, Դավթի համաձայն, լինում է *«ըստ պատահման եւ ըստ մտածութեան. պատահմամբ՝ յորժամ երկուց իրաց նոյն դիպեսցի անուն տիրական եւ առասական, արծուի՝ թռչուն եւ արծուի՝ շինուած փայտից. իսկ մտածութեամբ՝ ըստ պատուոյ, ըստ յուսոյ, ըստ աղաւթից եւ այլոցն եւս»*, $109_{11}$: Այստեղից երևում է, որ Դավիթը վերցնում է մեկնվող բառը ոչ թե քերականական, այլ տրամաբանական իմաստով: Նրա նշած հոմանունների տեսակները արտացոլում են տրոհումը, որն ընդունել են Արիստոտելի «Ստորոգությունների» մեկնիչները, օրինակ՝ Էլիասի, ըստ որի հոմանունները լինում են՝

ἀπὸ τύχης և ἀπὸ διανοίας

|

κατὰ χρονικήν և οὐ κατά

|

κατὰ μνήμην, κατὰ ἐλπίδα, և այլն, 139$_{29}$= հայերեն 49$_{1}$:

Այս տեսակներից Դավիթը հիշատակում է *ἀπὸ τύχης՝ ըստ պատահման* (=Էլիասի հայերեն թարգմանությունում՝ *ի բաստէ*, 49$_{3}$), *ըստ մտածութեան ἀπὸ διανοίας* կամ *κατὰ ἔννοιαν, ըստ պատույն*, որն իր իմաստով համապատասխան է *κατὰ μνήμην* [«ըստ հիշողության»], *ըստ յուսոյ՝ κατὰ ἐλπίδα*, իսկ *ըստ աղաւթից* Էլիասի բնագրում չկա[1]:

Որ հոմանունները կարող են լինել *տիրական* և *առասական*, հիշատակվում է նաև հունարենում. [«հոմանուններ...բուն իմաստով (տիրական)... անվանումով (առասական)»]՝ *ὁμώνυμα...ἐπὶ μὲν κυρίων...ἐπὶ δὲ προσηγορικῶν*, 389$_{18}$:

Հոմանունը (148) մեկնաբանելիս, Դավիթը զանազանում է բառի քերականական իմաստը փիլիսոփայականից, ինչ որ անում են և հույն մեկնիչները. [«պետք է իմանալ, որ հակասում են միմյանց քերականներն ու տրամախոսները. քերականները *հոմանուններ* են անվանում այն, ինչ նույն անվան միջոցով հավասարապես կիրառվում է զանազան կերպարանների նկատմամբ, իսկ փիլիսոփաները՝ այն, ինչ միևնույն սեռի է պատկանում և ունի միևնույն էություն, ինչպես եղջերուն և մարդը՝ քանի որ երկուսն էլ կենդանիներ են»]՝ *ἱστέον δὲ ὅτι ἐναντιοῦνται οἱ γραμματικοὶ καὶ οἱ διαλεκτικοί· οἱ μὲν <γὰρ> γραμματικοὶ ὁμώνυμά φασι τὰ τιθέμενα ὁμοίως διὰ τοῦ αὐτοῦ ὀνόματος ἐπὶ διαφόρων προσώπων, οἱ δὲ φιλόσοφοι ὁμώνυμά φασι τὰ τὸ αὐτὸ γένος ἔχοντα καὶ τὴν αὐτὴν οὐσίαν ὡς ἔλαφοι καὶ ἄνθρωποι, ἄμφω γὰρ ζῷα*, 554$_{27}$:

Հույն քերականները նշում են, որ փիլիսոփաները, այն է՝ ճեմականները, հոմանիշը անվանում էին [«բազմանուն»]՝ *πολυώνυμα*, 236$_{20}$, նաև 390$_{1}$, 554$_{35}$: Դավիթն, ընդհակառակը, *բազմանուն* եզրույթը վերագրում է քերականներին, որոնք այն այդպես էին անվանում, «իբրու թե իրն բազում անուանս ունի զիւրեաւ բարդեալ, իսկ իմաստասիրացն է փաղանուն (*συνώνυμος*), զի կենդանին զբազում ընութեանց անուանս փաղեաց», 109$_{17}$:

Էլիասի «Ստորոգությունների մեկնություն»-ում կարդում ենք. *ոչ է ընդունելի քերթողն, որ զհոմանունսն փաղանունսն կոչեն. որպէս խաղ, ղալապր, մարտացու, վաղանաւոր, սուսեր, նրան*, 54$_{24}$ (հմմտ. 51$_{23}$) = *οὐκ ἀποδεκτέον*

[1] Հմմտ. տրոհումը Scholia in Arist[otelem], t. IV, p. 34 մեջ: Փոքր ինչ այլ կերպ տրոհում է Օլիմպիոդորոսը, Commentarii in Aristotelem, XII, p. 34, ed. A. Busse, 1902:



*τὸν ποιητὴν...οὐδὲ τοὺς λέγοντας τὰ πολυώνυμα συνώνυμα ἀποδεκτέον, ὡς τὸ ξίφος μάχαιρα σπάθη ἄορ*, 143$_{23}$ (հմմտ. 141$_{33}$): Էլիասի թվարկած օրինակները փոխառված են Դիոնիսիոսից, ուստի, նա էլ, Դավթի նման, *πολυώνυμα* եզրույթը վերագրում է քերականներին, և ո՛չ թե փիլիսոփաներին:

Էլիասի հունարեն բնագրում պակասում է հինգերորդ օրինակը՝ *τὸ φάσγανον*. հայ թարգմանչի ունեցած գրչագրում, հավանաբար, եղել է նաև այդ բառը: Թեպետ Էլիասը մեկ անգամ ևս մեջբերում է այս օրինակները, և այստեղ նույնպես կարդացվում է *φάσγανον*, 141$_{33}$=հայերեն 51$_{23}$: Սակայն բանն այդ չէ: Թվարկված հոմանիշների թարգմանությունը Էլիասի երկում համընկնում է Դիոնիսիոսի հայերեն թարգմանության հետ: Դա կարելի է բացատրել կամ այն հանգամանքով, որ երկու թարգմանությունն էլ միևնույն գրչին են պատկանում, կամ էլ Էլիասի թարգմանիչն օգտվել է Դիոնիսիոսի հայերեն բնագրից: Թարգմանությունների պատահական զուգադիպության մասին խոսք անգամ լինել չի կարող, քանի որ բառերը խիստ հատկանշական են և դրանցից մի քանիսը այլ աղբյուրներից ծանոթ չեն. օրինակ, *խաղ*, Անանունը կարդում է *խարբ*, 144$_{23}$, որը հանդիպում է նաև Փիլոնի Լին.(149), 432, Ծննդ. ԻԷ, 40 մեջբերված տողում. *խարբիւ քով կեցցես*, Ընկալյալի՝ *սրով քով կեցցես* [ընթերցման] փոխարեն՝ *ἐπὶ τῇ μαχαίρῃ σου ζήσῃ. Դալապր*-ը (150) ծագում է լատիներեն dolabra-ից, որը, թերևս, գործածական էր ժողովրդի մեջ, և, վերջապես, *մարտացու*՝ արհեստական բառ է, որ գոյացել է *μάχαιρα*-ի ազդեցության ներքո՝ *մարտ՝ μάχη* բառից:

Էլիասի և Դիոնիսիոսի թարգմանությունների հարաբերակցության հարցն ունի պատմաբանասիրական մեծ հետաքրքրություն. դրա լուծման համար կարևոր է նշել նաև հետևյալ հանգամանքը:

Վերը նշված տեղում Էլիասն այնուհետև վիճում է Դիոնիսիոսի հետ հարանունների վերաբերյալ: Այժմ մեզ հետաքրքրում է ոչ թե վեճի էությունը, այլ Դիոնիսիոսից փոխառված որոշ եզրույթների թարգմանությունը: *Θέων և Τρύφων* անունները Դիոնիսիոսի հայերեն բնագրում թարգմանված են *Տիրիճան, Խրախճան* ձևով, իսկ *Φιλήμων և Νοήμων* իբրև *Սիրուն* և *Իմաստուն*, 16$_{2-5}$: Էլիասի խոսքը՝ *τὸ Τρύφων ἀπὸ τοῦ τρύφη καὶ Θέων ἀπὸ τοῦ θεός*, 143$_{28}$, հայերեն է թարգմանվել՝ *Փափկանէս ի փափկութենէ և Աստուածանէս յաստուծու*, 55$_{4}$: Նմանապես և Էլիասի արտահայտությունը՝ *ῥηματικὰ δὲ τὸ Φιλήμων Νοήμων ἀπὸ τοῦ φιλῶ καὶ νοῶ*, 143$_{30}$, հայերեն է հնչում իբրև *բայականք ի սիրելոյ սիրեմ* (հմա՛ *սիրուն*) *եւ յիմանալոյ իմաստուն*, 55$_{5}$:

Եթե միևնույն բառերը մի դեպքում թարգմանվում են *Տիրիճան, Խրախճան*, իսկ մյուսում՝ *Աստուածանէս, Փափկանէս*, ապա թվում է, թե թարգմա-

նությունները պատկանում են տարբեր անձանց, հետևաբար վերոբերյալ հարցը, թե արդյոք Դիոնիսիոսի և Էլիասի թարգմանությունները միևնույն անձին են պատկանում, թե՞ մի թարգմանությունը կախված է մյուսից, պետք է լուծվի ի նպաստ վերջին ենթադրության: Իրականությունը, սակայն, այդքան պարզ չէ: Հունարան թարգմանությունները աչքի են ընկնում այնպիսի առանձնահատկություններով, հաճախ միմյանց հակասող, որ լիովին հնարավոր է, եթե միևնույն հեղինակը տարբեր ձևով է թարգմանում միևնույն արտահայտությունները: Տվյալ դեպքում, ցանկանալով հայացնել հունարեն անունները, նա կարող էր թարգմանել *Տիրիճան, Խրախճան*, իսկ բնագրին ավելի մերձենալու նկատառումները կարող էին ստիպել նրան թարգմանելու այն մյուս անգամ իբրև *Աստուածանէս, Փափկանէս*, նամանավանդ որ այդտեղ պահանջվում էր ավելի իրազնին ներկայացնել բառերի ստուգաբանությունը:

Այս պատճառով հիշյալ աշխատությունների հարաբերակցության հարցը պետք է առկախ մնա մինչև ընդգրկվեն այնպիսի փաստեր և դիտարկումներ, որոնք ընդհանուր առմամբ ավելի ամուր հենք կընձեռեն Դիոնիսիոսի և Էլիասի թարգմանությունների ազգակցությունը, այն է՝ Էլիասի՝ Դիոնիսիոսից կախված լինելը պնդելու համար:

Անունների այլ տեսակների մեկնությունները բնորոշ տեղիներ չեն տրամադրում՝ դրանք հունարեն լուծումքների հետ համադրելու համար, թեև դրանց կապը անտարակուսելի է և սակավ չեն քիչ թե շատ նշանակալից շփման կետերը:

Դիոնիսիոսի բնագրի այս մասում ուշադրության արժանի են անվան *ազգական* <11> տեսակի հայկական օրինակները. *գաղերձական, տուի, վրացի*, փոխանակ հույն բնագրի [«Թրակացի, Գաղատացի»]՝ *Θράξ, Γαλάτης*-ի: Առաջին անունը կապ չունի՞ արդյոք Պտղոմեոսի հիշատակած *Κοταρζήνη* երկրի անվան հետ, որը սովորաբար ընդունվում է իբրև աղավաղված *Καλαρζήνη*, հայերեն *Կղարջք*: *Տուհ* անվանումը հանդիպում է Խորենացու մոտ, իսկ *վրացի*, ըստ երևույթին, լուսանցագիր է:

## §14. Բայի մասին

Բայի վերաբերյալ կշռադատությունը սկսվում է մեր մեկնիչի համար սովորական հարցերով՝ բայի տեղի և դրա սահմանման մասին: Մեր հետապնդած նպատակների համար հատկապես հետաքրքիր է նրա դատողությունը ժամանակի մասին: *«Ամանակ հաւաստեաւ երեք. ներկայ, անցեալ, ապառնի: Ասացին ոմանք զներկայ երիցագոյն վասն անցանելոյ ընդ նա*



*երկուցն եւ. եւ այլք զանցեալն՝ յաղագս յառաջ անցանելոյն՝ ըստ նախադասութեան* (բառացի՝ praepositione)*»* [$113_7$]:

Ստեփանոսից իմանում ենք, որ առաջին կարծիքը պատկանում է ստոիկյաններին. [«ստոիկյանները ներկան սահմանում էին իբրև "ներկա տևական", քանի որ տևում է և՛ դեպի անցյալը, և՛ դեպի ապառնին»]՝ *τὸν ἐνεστῶτα οἱ Στωϊκοὶ ἐνεστῶτα παρατατικὸν ὁρίζονται, ὅτι παρατείνεται καὶ εἰς παρεληλυθότα καὶ εἰς μέλλοντα*, $250_{26}$, ինչպես և [«ներկան մտարերվելու է չնչին <պահի> ընթացքում, <թեև> ներառում է անցյալն ու ապառնին»]՝ *ἐν ἀκαριαίῳ νοηθήσεται ὁ ἐνεστώς, περιέχων τὸν παρεληλυθότα καὶ τὸν μέλλοντα*, $249_7$:

Երկրորդ կարծիքի վերաբերյալ նույն հեղինակը [հայտնում է]. [«իսկ եթե մեկը հարցնի, թե ինչո՞ւ մենք չենք սկսում անցյալից, որ իր բնությամբ ներկայից առաջ է»]՝ *εἰ δὲ τις ζητοίη, πῶς μὴ ἀπὸ παρῳχημένου ἀρχόμεθα, ὡς φύσει προτέρου ὄντος τοῦ ἐνεστῶτος*, $249_9$:

*«Դարձեալ հարցաւ յոմանց,-* շարունակում է Դավիթը,- *թե զինչ իցէ ժամանակն, ի գոյից թե յոչ գոյից: Ոյք ի գոյիցն՝ ասացին զայս աւրինակ թե լուսատրաց շարժմունք եւ բնաւին լինելութեանս անմունք եւ յարմարութիւնք աշխարհի ի ժամանակի կատարին: Իսկ Արիստոտելէս ասաց՝ յոչ գոյից. որպիսի յուշկապարկացն համբաւ անուամբ միայն եւ ոչ ճշմարտութեամբ. զանցեալն այսպէս աղարտէ, որպէս զի էանց եւ ապականեցաւ, զապառնին՝ զի չէ իսկ ի միջի. զներկայն՝ աներեւութաբար իմն, զոր աւրինակ եթէ ի քուն ոք իցէ եւ կամ յայլ զբաւսանս ըստ նմանութեան ջրոյ իջելոյ ի խողովակէ յառաջին տեղիս, իջանէ յաւազն եւ ոչ երեւի եւ ընդ իջանելն ծորի»*, $113_{10}$:

Դավթի խոսքերում, ասես, համադրվում են ժամանակի վերաբերյալ Պլատոնի և Արիստոտելեսի կարծիքները[1]: Սակայն հայտնի չէ, թե որտեղից է վերցված այստեղ բերվող համեմատությունը. դրա աղբյուրը, համենայնդեպս, չհաջողվեց որոշել:

## §15. Լծորդության (խոնարհման) մասին

*«Առ սովաւ ասելի է զլծորդութիւնս, զի խառնուած է սա բայի, ձեռն տալով ստուգաբանութեան. եւ լծորդութիւն ասի, յորժամ ելեալ մինն ի լծոյն, մտանէ ընկերակիցն բառնալով զլուծն, որպէս բենն զմենի եւ կամ մենն զպէի, նոյնպէս եւ այլքն»*, $114_2$:

---

[1] Հմմտ. Պլատոնի կարծիքը, որը մեջբերում է Արիստոտելեսը [«Բնագիտական ունկնդրություն»] *Φυσικὴ ἀκρόασις* երկում (θ, $251_{17}$): Նույն կարծիքը, փոխառված «Տիմայից», մեջբերվում է Փիլոնի կողմից՝ Ցառաջախնամութիւն, էջ 10: Արիստոտելեսի կարծիքի հետ համեմատելի է *յիրողութեանցն ոմանց անգոյգ են, որպէս եղջերուաքաղն*, Սահմանք, էջ 121 = հուն. $1_{17}$:

Դավթի հետ համաձայնում են և հունարեն լուծմունքները, գտնելով, որ լծորդությունը խոսքի մաս է, և արվեստավորն ինքը դասում է այն [«բային ուղեկցող <հանգամանքների մեջ>»]՝ *τῶν παρεπομένων τῷ ῥήματι*, $251_{28}$: Նույն տեղում բառի ստուգաբանության վերաբերյալ ասվում է. [«լծորդություն է կոչվել փոխաբերաբար, լծկան կենդանիների օրինակով, որոնք միևնույն լծի տակ միևնույն ուղիով են ընթանում»]՝ *εἴρηται δὲ <συζυγία> μεταφορικῶς ἀπὸ τῶν ὑποζυγίων, ἃ ὑπὸ τὸν αὐτὸν ζύγον ὄντα ἴσον δρόμον ποιεῖται*, $252_{6}$:

Դավթի համեմատությունը այնքան էլ չի համապատասխանում հունարենին, բայցևայնպես մատնում է իր հունարեն ծագումը:

Ցավոք, Դավիթը չի բերում խոնարհումները: Դիոնիսիոսի հայերեն բնագիրն այս մասում, ինչպես արդեն նշեցինք, խաթարված է. այստեղ խոսվում է լծորդությունների ութ դասերի մասին, սակայն թվարկվում են տասը. այս դասերից երկուսը համարում ենք ընդմիջարկություն, և եթե Դավթի բնագրում լինեեր լծորդությունների ցանկը՝ չենք կասկածում, որ դա կհաստատեր մեր նկատառումները:

Դավիթը ոչինչ չի հիշատակում նաև վերջին լծորդության վերաբերյալ՝ *գեամ, գեաս, գեայ եւ ըստ լեզուաց ո-իւ, որգոն գոմ, յոռմ*: Վարդանն իր քերականության մեջ (տե՛ս վերը, էջ LX), պարզաբանում է այս ձևերը, վերագրելով *գեամ*-ը՝ *գամ*-ի փոխարեն Կորճեքի, Բարգուշատի և Գոռոզի գավառաբարբառային առանձնահատկություններին: Նա ինքն է մատնանշում *լուս* ձևը՝ *լոյս*-ի, *գոռն՝ գառն*-ի և *գոյլ՝ գայլ*-ի փոխարեն: Դժվար չէ կռահել, ի միջի այլոց, որ խոսքը Ղարաբաղի և Զոկի բարբառների մասին է: Շատ կարևոր է նշել, որ դեռևս Դիոնիսիոսի երկի թարգմանության ժամանակ հայերեն բարբառներից առավել բնորոշներն արդեն ձևակերպվել էին՝ մի հանգամանք, որը պետք է հեղաշրջի հայոց լեզվի անցյալի մասին համատարած պատկերացումները:

## §16. Դերբայի մասին

Ըստ Դավթի, դերբայը՝ *«ընդունելութիւն»*-ը *«հասարակ ասի գոյանալ ի բայէ եւ յանուանէ. եթե կատարեալ ունէր զերկոսեան, ապա նախագահ դասէր քան զերկոսեան: Իսկ զի մասն ինչ ի միոջէն ունի եւ մասն ինչ ի միւսմէն, այնր աղագաւ ոչ քան զնոսա նախկին, բայց ըստ սոցանէն կարգեցաւ»*, $114_{16}$:

Ստեփանոսն ասում է . [«դերբայը գրավել է անհրաժեշտ տեղը. եթե ասում ենք, որ նա հաղորդ է (151) և՛ անվան և՛ բայի <հատկություններին>,



ապա արդարացի է դասել դրան այն <խոսքի> մասերից հետո, որոնց այն, ինչպես կարծում են, հաղորդ է»]՝ *ἀναγκαίαν ἡ μετοχὴ τὴν τάξιν εἴληχεν· εἰ γὰρ ὀνόματος τε ῥήματος αὐτήν φαμεν μετέχειν, δίκαιον καὶ αὐτὴν ταγῆναι μετ᾽ ἐκεῖνα τὰ μέρη, ὧν δοκεῖ μετέχειν*, $254_{28}$:

## §17. Հոդի մասին

Այս դրվագը սկսելիս, Դավիթը շեղվում է Դիոնիսիոսի թարգմանությունից: Թարգմանությունը չի դրսևորում հարցի ըմբռնումը. հունարենի հոդը հայերեն թարգմանության մեջ փոխարինված է ցուցական դերանունով: Իսկ Դավիթը միանգամայն ճիշտ նկատում է, որ հունարենում հոդը դրվում է բառից առաջ և զանազանվում է սեռով ու թվով. ճիշտ է, այս առթիվ նրա առաջարկած օրինակը՝ *ո՜վ Պետրոս*, անհաջող է, եթե այդ հասկանանք որպես *ὦ Πέτρε* և ոչ *ὁ Πέτρος* (152) (հմմտ. *ὁ Ὅμηρος*, $257_{5}$), բայց այս հանգամանքը նույնպես մատնանշում է ծանոթություն հունարեն լուծմունքներին՝ լուծմունքներ, որոնց մեջ քննարկվում է այն հարցը, թե արդյոք *ὦ*-ն հո՞դ է՝ *ὦ Μενέλαε* [«ո՜վ Մենելաոս»], թե ոչ, $257_{33}$:

Սակայն հայերենում, ըստ Դավթի, հոդը դրվում է բառավերջում, օրինակ՝ *ձիս, ձիդ, ձին*: Նա միանգամայն ճիշտ է զանազանում *ձի եկն* և *ձին եկն* արտահայտությունների իմաստը: Իսկ հոդի մնացած նշանակությունները, այսինքն՝ սեռը, թիվը, հոլովումը, հայերենում հայտնի չեն և նշվել են Դիոնիսիոսի թարգմանության մեջ, Դավթի ասելով, միայն *«զտեղիսն լնլոյ»*, $115_{24}$:

Հունարեն լուծմունքներում շեշտվում է, թե հոդը երբեմն նշանավորում է հարաբերություն՝ արդեն հիշատակվածին վերադառնալու իմաստով՝ [«կրկնություն»]՝ *ἀναφορά*: [«Իսկ կրկնությունը՝ վերադարձ է նախապես ծանոթ և բացակայող անձնավորության. մի բան է՝ ասել "մարդ եկավ", և այլ է, երբ հոդով»] *ἀναφορὰ δὲ ἔστιν ἀναπόλησις προεγνωσμένου καὶ ἀπόντος προσώπου· ἄλλο γὰρ τί ἐστιν εἰπεῖν „ἄνθρωπος ἦλθε", καὶ ἄλλο μετὰ τοῦ ἄρθρου*, և այլն, $256_{20}$: Այս կշռադատությունը գտնում ենք և Դավթի «Սահմանք»-ում, նույն՝ *այր եկն* օրինակով, և համապատասխան պարզաբանություններով հանդերձ, 158-9=հունարեն $27_{28}$ (հմմտ. նաև Էլիասի Prolegomena, $10_{30}$): Եթե մեր Դավիթ մեկնիչը առնչվեր «Սահմանք»-ին իբրև հեղինակ կամ թարգմանիչ, ապա նշված երկում և քերականությունում հոդի մասին դատողություններում սպասելի էր ավելի մեծ նմանություն:

## §18. Դերանվան մասին

Դավիթը *դերանունութիւն* եզրույթը երեք իմաստով է հասկանում՝ իբրև *փոխանունութիւն*, *քերանուն* և *հասարակ անուն*: Առաջին անվանումը բացատրվում է նրանով, որ դերանունը գործածվում է «հատուկ անվան փոխարեն»՝ *«իբր փոխանակ տիրականին* (հմմտ. *ἀντὶ μόνου τοῦ κυρίου*, $258_{30}$, հմմտ. նաև $77_{25}$), *եւ միւսդ՝ զի ոչ զենլուցանէ զիսկն իբրեւ զանուն, եւ երրորդ՝ հաւասարապէս ի վերայ արուի եւ իգի եւ կատարելումն եւ մանկան առեալ լինի»*, [$116_{6}$]:

Եթե այս բառերն իսկապես պատկանում են Դավթին, ապա նա, անկասկած, չի կարող լինել Դիոնիսիոսի թարգմանության հեղինակը, քանի որ նա վստահ չէ *դերանուն* բառի ծագման հարցում, և հնարավոր է համարում բխեցնել այն *քերանուն* ձևից[1]:

Մնացած մասերում Դավթի մեկնությունը չունի և ոչ մի յուրահատկություն, որը համադրելի լինի հունարեն լուծմունքներին: Սակայն նրանում, ինչպես և Դիոնիսիոսի թարգմանությունում կա մի առանձնահատկություն, որի պատմական-մատենագրական շահեկանությունը արժանի է հատուկ ուշադրության, որը և պետք է շեշտվի:

Հունարան դպրոցում, ինչպես հայտնի է, փորձեր են արվել ստեղծելու իգական սեռի դերանվանական ձևեր՝ *սէ, դէ, նէ*՝ *αὐτή, ἐκείνη*: Որքան որ արհեստական լինեին այս ձևերը, դրանք մասամբ արմատացան և հանդիպում են հունարան դպրոցի բազում հուշարձաններում: Դրանք պատահում են Փիլոնի երկերում՝ *Այլաբ.* 156, *Ցեսս.* 6, *Պիտոյից* գրքում՝ 377, 384, Իրինեոսի *Հերձ.* 85, 140. հատկապես սիրված է Տիմոթեոս Կուզի կողմից՝ *սէ* $42_{17}$, *զսէ*, $26_{14}$, $33_{34}$, *զնէ* $35_{17}$, *նէրա* $221_{5\ 20}$, $222_{11}$, *նէրում* $105_{15}$ (153), *նէմայ* $31_{30}$, $93_{26}$, $95_{3}$ և այլն: Սակայն ոչ Դիոնիսիոսի, և ոչ էլ Դավթի ու մի քանի այլ երկերում այս ձևերը չեն հանդիպում: Կարելի՞ է արդյոք օգտվել այս հանգամանքից տվյալ դպրոցի հուշարձանների ժամանակագրական հարաբերությունները որոշելու համար, և կա՞ արդյոք որևէ հիմք կարծելու համար, թե հուշարձանները, որ անծանոթ են այս նորամուծության, ավելի հին են, քան այն հուշարձանները, որոնց մեջ նույնը ընդունված է: Եթե նման հարցադ-

[1] Սուրբ Գրքի՝ Կյուրեղ Ալեքսանդրացուն վերագրվող մեկնության մեջ, հատկապես այն մասում, որ հրատարակել է հ[այր] Թ. Թոռնյանը *Հատընտիր ընթերցվածք*-ում, Վիեննա, 1893, հանդիպում են մի քանի քերականական եզրույթներ, անկասկած, այն ժամանակի թարգմանությամբ, որ նախընթաց է հունարան դպրոցին. *ձայնատր*, *նշանագիր*՝ տառ, *արուաբար*՝ արական, *իգաբար*՝ իգական, *միատր*՝ եզակի, *բազմատր*՝ հոգնակի, *փոխանակ-անուան* դերանուն, էջ 300: Ցատ ցանկալի է, որ այս՝ լեզվի կողմից նշանավոր հուշարձանը, լույս տեսնի շուտափույթ, որի ձեռագիրը պահվում է Վիեննայում և նկարագրված է Հ. Տաշյանի «Ցուցակ»-ում, 231:



րումը թույլատրելի է, ապա հունարան դպրոցի մի քանի հուշարձաններ պետք է հատկացնել Տիմոթեոս Կուզի [թարգմանությանը] նախորդող ժամանակին, ուրեմն՝ VI դարին:

Քանի որ խոսքը վերաբերում է մեզ այստեղ զբաղեցնող հուշարձանին, այն է՝ Դիոնիսիոսի թարգմանությանը, պետք է վերապահում անել, նշելով, որ այնտեղ, որտեղ սպասելի էին նշված արհեստական ձևերը՝ հենց դերանունների մասին գլխում, հունարեն բնօրինակը և ոչ մի առիթ չի ընձեռում թարգմանչին նշված ձևերը գործածելու համար: Հունարեն բնագրում իգական սեռի ցուցական դերանունները չկան, այս պատճառով հայ թարգմանիչն իրապես չէր կարող ցուցաբերել իր ծանոթությունն արհեստական դերանվանական ձևերին, եթե անգամ համաձայնենք, որ այդպիսի ծանոթություն իրոք եղել է: Հոդի իգական սեռի հոլովաձևերը՝ *ἡ τῆς* և այլն, $27_{19}$, նախընթաց՝ հոդի վերաբերյալ գլխում, արտահայտելու համար թարգմանիչը կարող էր օգտագործել իգական սեռի գոյացումները *սա* դերանունից, սակայն, երևում է, նրա՝ Դիոնիսիոսի գրչագրում այս ձևերը պակասում էին, ուստի բացակայում է նաև դրանց թարգմանությունը: Հետաքրքիր է, որ Հելիոդորոսին նույնպես այս ձևերի [կիրառությունը] Դիոնիսիոսի երկում անծանոթ է. [«այս հոլովները միայն արական սեռի են և եզակի թվի»]՝ *αὗται αἱ πτώσεις γένους εἰσὶ μόνου ἀρσενικοῦ καὶ ἀριθμοῦ μόνου ἑνικοῦ*, $76_{27}$:

## §19. Նախդրի (նախադրության) մասին

Դավիթը քննում է նախդրի գրավված տեղի խնդիրը իր անվանակոչության կապակցությամբ, որ կարծես հավակնում է ավելի նախապատվելի դրության, քան թե իրեն հատկացված է, և գտնում է, որ ամեն ինչ ճիշտ է:

Այս գլխում հատկապես կարևոր է Դավթի նշումն այն մասին, որ նախդիրները *«ի հոռոմին ը̃ եւ ծ̃, զ̃ պարզք եւ երկոտասան բարդք: Իսկ ի մերումս ըստ երկայնութեան լեզուիս յանբաւս հատեալք»*, [$118_{15}$]:

Այս դատողությունը կարևոր է նրանով, որ, նախ՝ դա կասկածի տեղիք չի տալիս Դավթի ծանոթությունը հունարեն լուծմունքներին, որտեղից էլ նա կարող էր քաղել այս տեղեկությունները, քանի որ դրանք, թեև առկա են Դիոնիսիոսի երկում, սակայն բաց են թողնված հայերեն թարգմանության մեջ (տե՛ս վերը, էջ XLV), և երկրորդ՝ ապացուցում են, որ հայերեն բնագրում թվարկված մասնիկները՝ նախդիրները և ոչ նախդիրները, բխում են թարգմանության բուն բնագրից:

## § 20. Մակբայի մասին

Ներածական խոսքում Դավիթը մակբայի դիրքը լուսաբանում է հետևյալ օրինակով՝ եթե ոմն իշխանի ծառան ավելի հարուստ է, քան որևէ ազատ, դա չի նշանակում, որ ծառան կարող է ազատից նախադաս համարվել:

Համեմատությունը նույնքան հատկանշական է, ինչպես և նախորդ գլխում նախդրի համադրությունը *«իմն կարապետի թե եւ եկեալ յառաջ, այլ ոչ զպատիւ թագաւորին կամ զանուն նորա կարասցէ բերել»*, [$118_8$]: Այս ամենը մատնանշում է հունական ծագմամբ մի յուրահատուկ աղբյուր, որից օգտվել է մեր մեկնիչը:

Հունարեն լուծմունքներին են հարում մակբայի մասերի մեկնության որոշ տեղիները ևս: Այն, ինչ Դավիթն ասում է ժամանակի մակբայների մասին, $119_{14}$, լիապես համընկնում է Մելամպոդեսի խոսքերի հետ. [«"այժմ" մակբայի միջոցով՝ ներկան, "այնժամ"-ի միջոցով՝ անցյալը, իսկ "հետո"-ի միջոցով՝ ապառնին»]՝ *διὰ μὲν τοῦ νῦν ὁ ἐνεστώς, διὰ δὲ τοῦ τότε ὁ παρεληλυθώς, διὰ δὲ τοῦ αὖτις ὁ μέλλων*, $59_{19}$:

<2> Մակբայների երկրորդ տեսակը՝ «միջակութեան»՝ *τὰ δὲ μεσότητος* մակբայները այդպես են անվանվում ըստ հունարեն լուծմունքների՝ ոչ իմաստի համար, այլ այն պատճառով, որ ածանցվում են հոգնակի թվի սեռական հոլովի ձևից, որը ընդհանուր է բոլոր երեք սեռերի համար՝ միայն վերջավորության *ν*-ը փոխարինվում է *ς*-ով, $59_{27}$: Իսկ Դավիթը, մեջբերելով Դիոնիսիոսի բերած այս տեսակի մակբայների օրինակները՝ *բարւոք, յայտնապէս* (հունարեն «խելացի, իմաստուն կերպով»՝ *σοφῶς* հայն ընթերցում է իբրև *յայտնապէս*՝ *σαφῶς*, որը, աղճատվելով ընդօրինակողներից, ընդունում է *յատկապէս* ձևը), ասում է, որ դրանք *«իբր արականաց եւ իգականաց միջակ* (հմմտ. Մելամպոդեսի՝ [«լինելով երեք սեռերի միջինը»]՝ *τῆς μέσης οὔσης τῶν τριῶν γενῶν*), *զի հասարակ են եւ կինն ասեմք գովելոյն բարւոք»*, [$119_{18}$]:

Կասկածից վեր է, որ Դավիթն այստեղ էլ ի նկատի է ունեցել հունարեն մեկնությունը, բայց փոխադրել է այնպիսի ձևով, որը քիչ թե շատ մատչելի լինի հայ ընթերցողին, այլ կերպ ասած՝ հայացրել է:

<3> Երրորդ տեսակի [անվանումը]՝ *որակական* մակբայներ՝ *τὰ δὲ ποιότητος*, հայերեն են փոխանցվել *քերդողութեան* բառով, *τὰ δὲ ποιήσεως* սխալ ընթերցման պատճառով:

Դավիթը ոչ միայն չի ուղղում ակամա սխալը, այլ աշխատում է պատահական եզրույթը մեկնաբանել, հաղորդելով դրան ընդունելի իմաստ: *βοτρυδόν, ἀγεληδόν* բառերի վերաբերյալ նա ասում է. *«զոր քերդեալ է ի խտութենէ պատերազմին զաւրուն երթալոյ, իբր թե տարմաբար երթային եւ ողկուզաւրէն»*, [$120_2$]:



Դիոնիսիոսի բառերը, որ մեկնում է Դավիթը, վերցված են Հոմերոսից, և այնտեղ, II 89, *ողկուզաւրէն* *βοτρυδόν* ասված է մեղուների մասին, ուստիև նշանակում է՝ «պարսով», իսկ *տարմատար*՝ *ἀγεληδόν* XVI 160՝ գայլերի մասին, ուստի նշանակում է «ոհմակով»:

Հետաքրքրական է, որ հայ մեկնիչ Մովսեսին հայտնի է՝ հիշյալ բառերը պատկանում են Հոմերոսին, իսկ Հոմերոսն արտասանեց դրանք, *«տեսեալ զաւր, զի հանդիսանայր ի պատերազմի եւ ժողովեին սակաւիկ սակաւիկ»*, $177_1$:

Եթե այս տեղեկությամբ Մովսեսը պարտական է Դավթին, ապա վերջինիս առձեռն բնագիրը պետք է խաթարված համարվի:

## § 21. Շաղկապի մասին

Շաղկապի՝ վերջին գլխում զետեղվելու վերաբերյալ Դավիթը նկատում է, *«զի ոչ ամենայն վերջադասեալքն պատուականք են եւ ոչ բնաւ անարգք, զի տեսանես զկառավարն ի վերջէ մտեալ, թեպէտ եւ տեղին զայս խնդրեսցէ հրամանատարութեան աղագաւ, այլ եւ վասն պատուոյ: Իսկ սա ոչ պատուոյ քան թե պիտոյից, առակ իմն՝ յորժամ նիւթ ի միջի կայցէ, ապա պիտի կապն. սոյնպէս եւ սա՝ բայի եւ անուան եւ այլոց եւս եկելոց ի մէջ»*, [$120_7$]:

Ըստ էության նույնկերպ է կշռադատում և Հելիոդորոսը, գտնելով, որ արվեստավորը միանգամայն ճիշտ է վարվել, վանելով շաղկապը վերջին տեղը, քանի որ ցանկացած արվեստավոր նախ նյութ է պատրաստում, և ապա՝ գործի է անցնում, $102_5$:

Դիոնիսիոսի դասակարգած շաղկապների զանազան տեսակների մեկնություններում կան ինչ-ինչ տեղեր, որոնք առնչվում են հունարեն լուծմունքներին, բայց ընդհանուր առմամբ Դավթի պարզաբանումներն այդքան էլ գոհացուցիչ չեն. դրանք միշտ չէ, որ ցույց են տալիս, թե հեղինակը ճիշտ է հասկանում քննության առարկան, ինչը պարզվում է նրա առաջարկած օրինակներից՝ եթե, իհարկե, բնագիրն աղավաղված չէ: Բայց և այս ձախողություններում Դավթի կախվածությունը հունարեն լուծմունքներից անտարակուսելի է և բացատրում է [թույլ տված սխալները]:

## § 22. Հավելված

Վերջին գլուխները առոգանության, <արվեստի> և ոտքի մասին, իսկն ասած, Դիոնիսիոսին չեն վերաբերում, բայց հավելված են եղել, ըստ երևույ-

թին, Դիոնիսիոսի այն գրչագրին, որից կատարվել էր հայերեն թարգմանությունը:

Արվեստի մասին գլուխը իսպառ բացակայում է, իսկ երկու մնացած գլուխները վնասված են, իսկ փրկված հատվածները վատ են պահպանվել: Բայց այստեղ էլ նշմարվում է հունարեն աղբյուրի ազդեցությունը. օրինակ, խոսքն այն մասին, թե պարույկաձև շեշտը դրվում է սեռական և տրական հոլովների վրա, $124_{6}$, հասկանալի է միմիայն հունարեն լեզվի տեսանկյունից, հմմտ. $565_{28}$:

Նկատենք, որ առոգանության այդքան բնորոշ եզրույթները հանդիպում են նաև Փիլոնի [Աստուածային օրինաց] Այլաբանութիւն, 109 հատվածում. *եւ զբարբառոյ սաստկութիւնս ոլորմանցն եւքն զոլ դէպ եղեւ. շեշտ, բութ, պարոյկ, թաւ, սոսկ, երկար, սուղ*: Եվ դա կարևոր է երկու հուշարձանների փոխհարաբերությունները պարզելու համար:

Ոտքի մասին գլխում Դավթի սկզբնական հատվածը փոքր ինչ այլ կերպ է վերարտադրվում Մովսեսի կողմից՝ *որպէս կենդանի մարմին ի վերայ ոտից հաստատուն կայ*, $178_{18}$, և գրեթե նույն այս ձևով կրկնվում է նաև Խորենացու՝ Սահակ Բագրատունուն հղած նամակում. *եւ որպէս ի վերայ երկուց ոտից բոլոր մարմին հաստատի*[1]:

**Խոնարհման հարացույցի առթիվ:** Դիոնիսիոսի աշխատության վերջում զետեղված է նաև *τύπτω*-բայի խոնարհման օրինակը, որը վերագրվում է Թեոդոսիոս Ալեքսանդրացուն: Հայերեն բնագրում թարգմանված է ոչ միայն բայը՝ *τύπτω* = *կոփեմ*, այլև դրա բոլոր ձևերն ըստ ժամանակների և եղանակների, ընդորում հեղինակը, արհամարհելով հայերենի լծորդության թե կանոնները, և թե ոգին, աղճատում է լեզուն ի հաճույս հունարենի ձևերի:

Դավթի վերաբերմունքն այս հարացույցի նկատմամբ անհայտ է: Մի դրվագում, որը պատկանում է Դիոնիսիոսի ուշ մեկնիչներից մեկին՝ հավանաբար Եսայի Նչեցուն, այս բոլոր քմահաճ գոյացումները անվանվում են *բաջաղմունք* և խորհուրդ է տրվում «սանձահարել մտքի երիվարը» և մնալ ճշմարտության սահմաններում (տե՛ս էջ 66):

**ԲԱՌՔ ՔԵՐԱԿԱՆԻՆ** բառգիրքը, որը գտնվում է Դիոնիսիոսի հայերեն գրչագրերին կից, ըստ երևույթին, հին ծագում ունի, թեև անհայտ է, թե ով է կազմել այդ: Բառերն ընդհանուր առմամբ ճիշտ են մեկնաբանվում, սակավ բացառությամբ. օրինակ՝ *բաղաւղք* և *անբաղաւղք* ընկալվել են իբրև *բաղայք* և մեկնաբանվել իբրև *պատճառք*, էջ 63:

[1] **Մովսէս Խորենացի**, Մատենագրութիւնք, էջ 284:



# V. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Դավիթ-քերականի առնչությունը Դավիթ-փիլիսոփային: Հունաբան դպրոցի հուշարձանների փոխհարաբերությունները պարզելու մեթոդները:*

Դավթի «Մեկնության» մեր առաջադրած վերլուծության մեջ մենք հետամուտ էինք երկու նպատակի. մի կողմից, «Մեկնությունը» նույնատիպ հունարեն լուծմունքներին համեմատելիս, աշխատում էինք բացահայտել դրանց ընդհանուր տեղերը, շեշտել առավել կամ պակաս մերձավոր շփման կետերը՝ սա մեր գլխավոր խնդիրն էր: Բայց մյուս կողմից, մենք առիթ չէինք փախցնում նաև մատնանշելու ուսումնասիրվող բնագրի առանձնահատկությունները, որոնք նույնը հարազատացնում են հունաբան դպրոցի այլ թարգմանական հուշարձանների հետ:

Մեր դիտարկումները կարող են ամփոփվել հետևյալ կերպ. բաղդատության արդյունքները տեղիք չեն տալիս տարակուսելու, որ Դավթի քերականական աշխատությունը սերտ ազգակցական կապերով կապված է հույն հեղինակների համանման լուծմունքների հետ: Աշխատության ընդհանուր նկարագիրը, հարցերի ներկայացման ձևական ոգին, հունարեն լուծմունքների ոչ միայն մտքի ընթացքի, այլև արտահայտությունների հաճախ զուգադիպությունները՝ այն նշաններն են, որոնք փոխադրում են մեր հուշարձանը հույն քերականների հոգևոր աշխարհը:

Երբեմն այդ նմանությունները այնքան ցայտուն են, որ կարող է տարակույս ծագել, թե Դավթի երկն իրականում արդյո՞ք չէր թարգմանվել հունարենից: Այլ կերպ ասած, արդյո՞ք Դավթի «Մեկնության»ը նույնը չպատահեց, ինչ որ «Սահմանք իմաստութեան»-ը:

Ինչպես հայտնի է, հայ ավանդությունը «Սահմանք»-ի հեղինակ էր համարում Դավիթ Անհաղթին: Սակայն պարզվեց, որ դրա հեղինակն իրոք Դավիթն էր, բայց ոչ թե հայ մատենագիրը, այլ նույնանուն, թերևս ծագումով հայ, բայց հույն մատենագրության ասպարեզում գործող մի անձնավորություն, որը նշված աշխատությունը գրել է հունարեն: Այժմ այն հրատարակված (154) և հայտնի է, և հայերեն բնագիրը դրա թարգմանությունն է, որ զգալի կրճատումներով է կատարվել (155): Միգուցե նման մի բան պատահել էր նաև Դավթի «Մեկնության» հետ, և այն նույնպես պատկանում է հույն մատենագիր Դավթին, որը միայն հետագայում է ճանաչվել որպես հայ հեղինակ:

Սակայն, ինչպես վերն արդեն շեշտվեց, մեր քերականը ճարտասանու-

թյան՝ երեք մասերի տրոհելու խնդրում էապես տարաձայնվում է «Սահ-
մանք»-ից. նա հավանություն է տալիս այս տրոհմանը, մինչդեռ «Սահ-
մանք»-ի հեղինակը՝ Դավիթն այն գռհացուցիչ չի համարում: Այս պատճա-
ռով, մեզ թվում է, չի կարելի նրանց նույնացնել, և պետք է համաձայնել, որ
Դավիթ-քերականը տարբերվում է Դավիթ-փիլիսոփայից: Նա, հավանա-
բար, հայ մատենագիր էր, որն իր «Մեկնություն»-ը կազմել էր հունական
աղբյուրների, թերևս ժամանակին կայսերական դպրոցներում ճանաչում
ստացած ինչ-որ ձեռնարկի հիման վրա:

Դավթի անձնավորության խնդրի լուծումը (եթե նույնիսկ այն վերջնա-
կան համարենք) դեռևս չի նշանակում, որ սպառված է նրա՝ հույն մատենա-
գիր Դավթին առնչվելու հարցը: Դավիթ-քերականը կարող է հանդիսանալ
իբրև Դավիթ-փիլիսոփայի երկի թարգմանիչը. հենց այս հանգամանքում,
այն է՝ [երկու աշխատության] լեզվական փոխհարաբերությունները պարզե-
լու խնդրում է թաքնվում բանասիրական չափազանց կարևոր շահեկանու-
թյուն:

«Մեկնության» և «Սահմանքի» փոխհարաբերության հստակեցումը առ-
հասարակ մեզ առաջնորդում է քննելու հունարան հուշարձանների փոխհա-
րաբերությունները՝ և դա այս դպրոցի ուսումնասիրման առանցքային
խնդիրն է: Սրա քննությունը էապես մեր նպատակներից դուրս է. այժմ
կցանկանայինք միայն մատնացույց անել, թե որն է նշված խնդրի բար-
դությունն ու դժվարությունը և ինչպիսի մեթոդներ կարելի է նախատեսել
դրա լուծման համար:

Հայ բանասիրության մեջ խորամուխ անձանց քաջ հայտնի է, թե որն է
հունարան լեզվի յուրօրինակությունը, և թե ինչպես դյուրին է դրա հատկա-
նշան գծերով զանազանել հունարան դպրոցի հուշարձանը ցանկացած այլ
գրական [հուշարձանից]: Բացի շարահյուսական և այլ առանձնահատկու-
թյուններից, այդ յուրօրինակությունն արտահայտվում է նաև բառերի որո-
շակի կազմության մեջ, որը հարմարեցված է հունարենի բառակազմու-
թյանը: [Բուն] հայերեն բառապաշարը հունարենից զանազանվում է առա-
ջին հերթին նախածանցված բառերի բացակայությամբ (156): [Հունարան
դպրոցի] ներկայացուցիչները, ձգտելով մերձեցնել երկու լեզուները, փոր-
ձում էին լրացնել այս պակասը, յուրաքանչյուր հունարեն նախդրի (157)
համար հայերենում գտնելով համապատասխան համարժեք, ընդորում գոր-
ծածվում էին ոչ միայն գոյություն ունեցող նախդիրները, այլև ստեղծվում
էին նորերը՝ առկա, քիչ թե շատ հայտնի բառամթերքի հարմարեցմամբ:
Ստացվում էր նախդիրների մի ամբողջ շարք.



| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| առ | *πρός,* | մատ, յար | *παρά,* մոտ, կողքին | մակ | *ἐπί,* |
| ապ, բաց | *ἀπό,* | տար | *παρά,* (-ից) | վեր | *ἀνά,* |
| | | | | նախ | *πρό,* |
| արտ | *ἐκ,* | տրամ | *διά,* | գեր | *ὑπέρ,* |
| ներ | *ἐν,* | | | | |
| բաղ, փաղ, շաղ, շար, ջոկ | *σύν,* | պար, բակ | *περί,* | դեր, փոխ | *ἀντί,* |
| | | ենթ, ստոր | *ὑπό,* | հոմ, համ | *ὁμο-:* |

Օրինակ՝

| | | |
|---|---|---|
| | առ-ոգանութիւն | *προσ-ῳδία* |
| | ապ-ա-ցոյց | *ἀπό-δειξις* |
| | բաց-ա-տրութիւն | *ἀπό-δοσις* |
| | արտ-ա-բերիլ | *ἐκ-φέρεσθαι* |
| | ներ-գործութիւն | *ἐν-έργεια* |
| | բաղ-դասութիւն | *σύν-ταξις* |
| | փաղ-առութիւն | *συλ-λαβή* |
| | շաղ-առակ | *σύλ-ληψις* [միաձուլում] |
| | շար-ա-դրութիւն | *σύν-θεσις* |
| | ջոկ-ա-ման | *συμ-πλεκτικός* [միահյուսված, միացնող] |
| | մատ-հրաման | *παρα-κέλευσις* [հրահանգ, խրատ, քաջալերում] |
| | յար-անուն | *παρ-ώνυμον* [պիտականուն] |
| | տար-բաղ-մատ | *παρα-συν-απτικός* [պատճառական կապ] |
| | տրամ-ա-դրութիւն | *διά-θεσις* |
| | պար-բեկութիւն | *περί-κλασις* |
| | բակ-ձաձական | *περι-ληπτικός* [պարունակ, հավաքական] |
| | ենթ-ա-դատութիւն | *ὑπό-κρισις* |
| | ստոր-ա-դրութիւն | *ὑπό-θεσις* |
| | մակ-անուն | *ἐπ-ώνυμον* |
| | վեր-ծանութիւն | *ἀνά-γνωσις* |
| | նախ-ա-դասել | *προ-τάσσω* |
| | գեր-ա-դրական | *ὑπερ-θετικόν* |
| | դեր-անուն | *ἀντ-ωνυμία* |
| | հոմ-անուն | *ὁμ-ώνυμον* |

*Ստոր՝ κατα* [նախածանցը] Դիոնիսիոսի մոտ չի հանդիպում, բայց առկա է այլ հուշարձաններում, օրինակ՝ ստոր-ոգութիւն՝ κατηγορία [բառում] և այլն:

Նման կազմություն ունեցող բառերի առկայությունը որևէ հուշարձանում, եթե անգամ հաշվի չառնենք լեզվի այլ հատկությունները, որ բխում են նյութական թարգմանության [մեթոդի] էությունից, բավական է դրա ճակատագիրը անսխալ որոշելու համար՝ հունաբան դպրոցին պատկանելու իմաստով: Այս առանձնահատկություններին այս կամ այն չափով հաղորդ են հունաբան գրականության բոլոր երկերը: Նյութական թարգմանության սկզբունքները[1] դրանց մեջ կիրառվում են այնպիսի հետևողականությամբ, որ առաջին հայացքից թվում է, թե դրանք միևնույն գրչի արտադրանքներ են: Մինչդեռ դրանց ավելի մերձավոր ծանոթությունը հանգեցնում է այն եզրակացության, որ թարգմանության միանմանությունը՝ մի առանձնահատկություն է, որ պայմանավորված է ոչ թե անձնավորության, այլ տվյալ դպրոցում ընդունված թարգմանչական արվեստի [կանոններով]: Հետևաբար անձինք, որ անցել են այս դպրոցի հունով, կարող էին միմյանցից անկախ թարգմանել միևնույն բնագիրը այնքան նման, որ նրանց թարգմանությունները կմիաձուլվեին, կամ, համենայնդեպս, դժվար կլինի դրանք ճանաչել իբրև տարբեր [անհատների] աշխատանքներ: Այս պայմաններում անկարելի է թվում լեզվական փաստերի հիման վրա որոշել և հավաստել թարգմանական հուշարձանների հեղինակների անձնավորությունը:

Թվում է, թե թարգմանության տարբեր աստիճանի հարազատությունը բնագրին, այսինքն՝ դրա նյութականությունը կարող է հիմք ծառայել թարգմանությունները զանազանելու և տարբեր հեղինակների վերագրելու համար: Սակայն և այստեղ մենք կսխալվեինք, որովհետև հելլենացման աստիճանը պայմանավորված է, ինչպես պարզվում է, ավելի շուտ այն բանով, թե ո՛ւմ են թարգմանում, քան թե ո՛վ է թարգմանում: Մեծ հեղինակությունների աշխատությունները, այն աշխատությունները, որոնք ուսումնասիրության և մեկնության առարկա էին, թարգմանվում էին բծախնդիր ճշգրտությամբ, բնագրի տառին ստրկական հավատարմությամբ, իսկ մեկնությունները և ուսումնասիրությունները, որ գրել են պակաս հայտնի հեղինակները այս նույն երկերի վերաբերյալ, հայերեն թարգմանությամբ աչքի էին ընկնում

[1] Հովհաննես Պետրիծիոնին սահմանում է նյութական թարգմանության սկզբունքը Վրաստանի XI-XII դդ. համանման մատենագրական իրականության համար հետևյալ կերպ. «Պետք է ամենայն ճշգրտությամբ հետևել բնօրինակի լեզվի առանձնահատկություններին», տե՛ս Н. Марр, Иоанн Петрицский, стр. 35 (158):



պակաս կաշկանդվածությամբ և առավել ազատությամբ՝ հօգուտ մայրենի լեզվի կանոնների պահպանման: Դիոնիսիոսի, Արիստոտելի (Ստորոգութիւն, Պերիարմենիաս, Վերլուծական), Պորփյուրի, Ափթոնիոսի թարգմանություններն այնքան նյութական են և հելլենացված, որ առանց բնօրինակի պարզապես անհասկանալի են: Մինչդեռ դրանց վերաբերյալ Դավթի, Էլիասի կազմած մեկնությունները թարգմանված են շատ ավելի պարզ կերպով (159), և թեպետ հեռու են սովորական հայերեն խոսքից, բայց միանգամայն հասկանալի են և ընթերցվում են պարզորոշ՝ առանց բնօրինակի օգնության:

Թարգմանական հեղինակների նկատմամբ երկակի վերաբերմունքը հասարակ պատահականություն չէ, այլ խստակ մտածված համակարգ, որ ընդունված է տվյալ դպրոցում: Դրա էությունն այն է, որ հետղասական ամբողջ գիտականությունը շրջաբերվում է անտիկ աշխարհի մեծ վարդապետների ստվերների շուրջ՝ ձգտելով հասկանալ և մեկնաբանել նրանց մտքերը, որ դյուրըմբռնելի չէին բավարար պատրաստվածություն չունեցող մեկնիչների համար: Սրանց մեկնությունները հաճախ ձևական-քերականական բնույթի էին՝ մեռյալ սխոլաստիկությանը հատուկ բոլոր թերություններով հանդերձ:

Այս գիտականությունը հայ հողի վրա պատվաստողները աշխատում էին մեկնության ենթակա բնագրերը հայերեն վերարտադրել՝ բնօրինակի լեզվի բոլոր դժվարությունների պահպանմամբ՝ դժվարություններ, որոնք պարզաբանման առարկաներ էին: Այլ վերաբերմունքի դեպքում, այն է՝ պարզ և միանգամայն հասկանալի թարգմանության պարագային կանխորոշվելու էր բնագրի այս կամ այն ըմբռնումը, ինչը կրացառեր մեկնողական գիտականության հնարավորությունն ու անհրաժեշտությունը (160): Քանի որ խոսքս վերաբերում է փիլիսոփայական բնույթի գրվածքներին, ենց նշված հանգամանքներով է բացատրվում թարգմանական լեզվի ստրկականության պատճառը: Նույնանման նկատառումները, որոնք ոչ միայն տեսական, այլև գործնական շահի հետամուտ էին, հիմք էին դարձել նաև դավանաբանական բովանդակություն ունեցող նույնատիպ թարգմանությունների համար:

Ըստ այդմ հունաբան արհեստական լեզուն, լինելով դպրոցի առավել ակնառու և բնորոշ հատկանիշը, որն իսկույն առանձնացնում է դրա ստեղծագործությունները ուրիշ հուշարձաններից, չի տալիս, այնուամենայնիվ, քիչ թե շատ վստահելի կռվան դպրոցի ներսում աշխատությունները սահմանազատելու համար: Եվ մենք չենք կարող սոսկ լեզվով ղեկավարվելով, որքան որ այն բազմերանգ լինի իր բնութագրով, այսինքն՝ հունաբանու-

թյամբ, դպրոցի ժառանգությունը բաժանել դասերի՝ հեղինակների կամ ժամանակների համեմատ:

Այս առումով մեզ օգնության են գալիս ավելի թարգմանության վրիպումները՝ այն դեպքերը, երբ հունարեն բնագրի միևնույն արտահայտությունը, զանազան հուշարձաններում վերարտադրվում է տարբեր ձևով՝ արտահայտության տարբեր ըմբռնման պատճառով: Մեզ հաջողվեց նկատել մի քանի այդպիսի՝ չափազանց կարևոր և հատկանշական դեպքեր:

Վերը (161) մենք հիշատակեցինք արվեստի սահմանմանը վերաբերող ստոիկյանների բանաձևը, որ Դավիթը վերլուծում է «Մեկնության» ներածության մեջ. *արուեստ է բաղկացութիւն ի թողմանէ նախակրթեալ առ ի պիտանացու ինչ իրս որ ի կենցաղումս.*

Դա հանդիպում է Դավթի «Սահմանք»-ում փոքր ինչ այլ թարգմանությամբ. *արհեստ է բաղկացութիւն ի հասողութենէ ներհմտութեամբ նախակրթեալ առ ի պիտանացու ինչ կատարումն որ ի կենցաղումս*, 182: Համապատասխան հունարեն բնագիրը հետևյալն է. *τέχνη ἐστὶ σύστημα ἐκ καταλήψεων ἐμπειρίᾳ συγγεγυμνασμένη πρὸς τι τέλος εὔχρηστον τῶν ἐν τῷ βίῳ*, 44: Վերը մենք ծանոթացանք *κατάληψις* բառի իմաստին: Այն ճիշտ է թարգմանված «Սահմանք»-ում՝ որպես *հասողութիւն*, այն է՝ «հասկացություն»: Մինչդեռ մեր Դավիթն իր «Մեկնությունում» այս նույն բառը թարգմանել է *թողումն* բառով, հավանաբար, դրա ստուգաբանական կազմի ոչ ճիշտ ըմբռնման հետևանքով: *Κατάληψις* կարող է սերել և՛ *καταλαμβάνω*-ից՝ «հասկանալ, ըմբռնել», և՛ *καταλείπω*-ից՝ «թողնել» (162): «Սահմանք»-ում բառն ընդունվել է առաջին իմաստով, իսկ «Մեկնությունում»՝ երկրորդ: Եզրակացությունը պարզ է՝ հույն մատենագրի հեղինակած «Սահմանք»-ի թարգմանությունը չէր կարող պատկանել այն հեղինակին, որ գրել է «Մեկնությունը» (կամ թարգմանել այն, եթե մեկը հակված չէ դիտելու դրա հեղինակին իբրև հայ մատենագրի): Եվ իրոք, չի կարելի ընդունել, որ միևնույն անձը, թարգմանելով հայտնի փիլիսոփայական դպրոցի հստակորեն բանաձևված դրույթը, այդքան կտրուկ տարաձայներ ինքն իրեն ոչ թե հոմանիշների ընտրության, ինչը հասկանալի կլիներ, այլ եզրույթի բուն իմաստի ըմբռնման մեջ: Տարակույսից վեր է, որ թարգմանությունները պատկանում են երկու տարբեր անձանց:

Մենք ենթադրեցինք նաև, որ արվեստի քննարկվող սահմանումը Դավիթը վերցրել էր Դիոնիսիոսի հավելվածից՝ հավելված, որ առկա է Դիոնիսիոսի հունարեն գրչագրերին կից, բայց չի պահպանվել հայերեն թարգմանության ներկա օրինակներում: Մեր ենթադրությունը վերը հիմնավորված է և այլևս չի կարող էական առարկություններ հարուցել: Եթե դա այդ-



պես է, ապա ուրեմն Դիոնիսիոսի թարգմանիչն էլ այլ անձնավորություն է, քան «Սահմանք»-ինը: Հետևաբար, *κατάληψις* բառի երկակի թարգմանությունը թույլ է տալիս ենթադրել երեք մատենագիրների գոյություն. մեկը թարգմանել է «Սահմանք»ը, երկրորդը՝ Դիոնիսիոսի [երկը], իսկ երրորդը նա է, ով Դիոնիսիոսի մեկնաբանության մեջ անվերապահորեն օգտվում է հիշյալ բառի սխալ թարգմանությունից:

Հնարավոր է, որ վերջին երկու մատենագիրները միաձուլված են միևնույն անձում, այսինքն՝ «Մեկնության» հեղինակ Դավիթը նաև Դիոնիսիոսի, ուրեմն և քննվող արտահայտության թարգմանիչն է: Բայց վերը նշեցինք, որ եթե Դավթին վերագրվող «Վանկի մասին» դրվագի մեկնությունն իսկապես իրենն է, ապա նա չի կարող ճանաչվել Դիոնիսիոսի թարգմանության հեղինակ: Այն հանգամանքը, որ երկու թարգմանություններն էլ, նշված բառի բացառությամբ, մնացած հանգամանքներում լրիվ համընկնում են ցույց է տալիս դրանց՝ միևնույն գրական դպրոցից սերելը:

Մեկ այլ բառ, որ տարբեր ձևով է մեկնաբանվել և թարգմանվել՝ *τὸ προοίμιον*-ն է:

Այն հանդիպում է «Ստորոգություններում»՝ *τὸ γὰρ προοίμιον τῆς διηγήσεως πρότερον*, $14^{b}_{3}$, ինչը հայերեն է թարգմանված՝ *քանզի նախերգութիւն քան զպատմութիւն նախկին է*, $404_{<21>}$: Նույն արտահայտությունը հանդիպում է նաև Դավթին վերագրվող «Ստորոգութեանց մեկնութիւն»-ում՝ *նախկին է նախերգանն* $448_{<5>}$:

Պորփյուրի «Ներածության» մեկնությունում, *κόρον ἔχειν τῶν προοιμίων*, $95_{5}$, հայերեն է վերարտադրվել որպես *յանկումն ունելով նախերգանաց*, $264_{<4>}$: Մյուս անգամ՝ *μετὰ τὰ διττὰ προοίμια*, $121_{21}$, թարգմանված է՝ *յետ երկակի նախերգութեան*, $281_{<16>}$:

Արիստոտելեսի Վերլուծականի մեկնությունում նույնպես բազմիցս կարդացվում է *նախերգան* 557, 569, 570, 578: Անտարակույս դա այստեղ էլ համապատասխանում է հունարեն *προοίμιον* բառին, թեև փաստական ստուգումն անկարելի է, քանի որ նշված Մեկնության բնագիրը մինչ օրս չի հայտնաբերվել:

Այս բառը գործածվում է և Էլիասի Ստորոգությունների մեկնության մեջ՝ *զնախերգանն*, $41_{5}$ = *τὰ προοίμια*, $134_{3}$ (հմմտ. *զնախերգանացն*, $41_{6}$=*τῶν μὲν προοιμίων*, $134_{10}$), *նախագոյն է նախերգան քան զպատմութիւն*, $131_{4}$ = *πρότερον τὸ προοίμιον τῆς διηγήσεως*, $195_{3}$:

Ըստ Մագիստրոսի, Դավթի քերականության ներածությունը նույնպես

կոչվել էր *նախերգան*, ինչպես և նշված է մեր հրատարակության մեջ, $79_3$[1]:

Մեզ հետաքրքրող *προοίμιον* բառը Պիտոյից գրքում հետևողականորեն թարգմանվում է իբրև *նախաշավիղ*, ընդորում այս դեպքում ի նկատի ունենք Պիտոյից գրքի ոչ թե «նախակրթությունները» կամ օրինակները, այլ դրա հիմնական մասը, որ սերում է Ափթոնիոս ճարտասանից (163): Հայերեն թարգմանության և հունարեն բնօրինակի փոխհարաբերություններին ծանոթ ուսումնասիրողները գիտեն, որ բաղդատության պարագայում խոսք կարող է լինել միմիայն շարակարգի համադրելիության, և ո՛չ բնագրային համընկնումների մասին, ինչը մեր նպատակի համար լրիվ բավական է: Հունարեն՝ *προοιμιάσῃ μὲν πρὸς τὴν οὖσαν ὑπόθεσιν· εἶτα θήσεις τὸ γένος* և այլն $87_9$[2], հայերենում համապատասխանում է. *նախաշաւիղ առնել ըստ տեղւոյ պատճառին: Ապա դնել զազգն*, $413_{<14>}$:

*προοιμιαζόμενος ἐποίσεις τὸ γένος* $93_{12}$ = հայերեն *նախաշաւիղ առնել որպէս ի ներբողեանսն: Ի վերայ ածել եւ զազգն* $445_{<10>}$:

*πρῶτον μὲν τῇ καλουμένῃ ἐφόδῳ, ἣν ἀντὶ προοιμίων ἐρεῖς*, $102_{12}$ = հայերեն *առաջին նախաշաւղաւն*, $551_{<27>}$: Հնարավոր է, որ այստեղ հայերենը վերարտադրում է *ἔφοδος* բառը, սակայն ավելի հավանական է, որ այստեղ, ինչպես և նախորդ բաղդատություններում այն համապատասխանում է *προοίμιον*-ին:

Մի դեպքում նույն բառը թարգմանված է որպես *յառաջաբան*.

*διὸ προοίμιον μὲν ὁ κοινὸς τόπος οὐκ ἔχει*, $81_4$ = հայերեն *յաղագս որոյ յառաջաբան տեղի ոչ ունի*, $386_9$:

*προοίμιον* բառի առաջին թարգմանությունը՝ *նախերգան* հիմնվում է բառի երկրորդ մասի՝ *-οίμιον*-ի ոչ ճիշտ ըմբռնման վրա. թարգմանիչն այն բխեցնում է *οἴμη* «երգ» բառից: Մինչդեռ *-οίμιον*-ը առաջացել է *οἶμος* «ուղի, ճանապարհ, շավիղ» բառից և ամենայն ճշտությամբ թարգմանվել է *նախաշավիղ*:

Միանգամայն պարզ է, որ երկու տարբեր թարգմանություններ անկարելի է վերագրել միևնույն անձին: *Նախաշավիղ* բառը առանձնացնում է Պիտոյից գիրքը, ավելի շուտ՝ Ափթոնիոսի բնագիրը այլ թարգմանական երկերի շարքից: Ովքեր էլ որ լինեն վերջիններիս հեղինակները՝ ուսումնակիցներ թե այլ փոխհարաբերություններով կապված անձինք, նրանք փոքր-ինչ ավելի են հեռանում Ափթոնիոսի թարգմանչից, թեև նրա հետ միասին պատկանում են միևնույն դպրոցին:

[1] Անանիայի Մնացորդք բանից (164), 67 կարդացվում է. *Պաւղոսի Ալեքսանդրացւոյ նախերգան ի ներքսածութեանէ* <:> *յոյժ (:) գեղեցկաբար* և այլն: *Նախերգան* բառից դատելով, գրվածքը չի կարող նրան պատկանել:

[2] Rhetores Graeci, ed. Ch.Walz, vol. I.



Ուշադրության արժանի է և *γραμματικός* եզրույթի երկակի թարգմանությունը: Ոչ միայն Դիոնիսիոսի [բնագրում], այլև հունաբան դպրոցի բոլոր այլ հուշարձաններում *γραμματικός* թարգմանվում է *քերական*, *γραμματική*՝ *քերականութիւն*: Այսպես, օրինակ, «Ստորոգություններում»՝ *ἀπὸ τῆς γραμματικῆς ὁ γραμματικός*, $10^{a}_{14}$ = հայերեն *ի քերականութենէ քերական*, $359_{<29>}$. ինչպես և $10^{a}_{31}$ = հայերեն 391, $1^{a}_{26}=360_{<10>}$, $1^{b}_{3}=360_{<16>}$, $1^{b}_{8}=360_{<22>}$, $1^{b}_{29}=362_{<9>}$, $3^{a}_{4}=365_{<28>}$, $3^{a}_{5}=366_{<1>}$, $14^{b}_{1}=404_{<19>}$, *γραμματικώτερος* $10^{a}_{3}$ = *քերականագոյն* $393_{<8>}$ և այլն:

Նույն համապատասխանությունները կան նաև Դավթի՝ Ստորոգությունների մեկնությունում, 421-422, Վերլուծականի մեկնությունում՝ 565, «Յաղագս աշխարհի» գրվածքում՝ $617_{<1>}$ = հունարեն $396_{17}$:

Հանդիպում է նաև Փիլոնի (*Լին., ի քերականին*, $275_{<22>}$) և Իրինեոսի, (Հերձ., *քերականք*, 101) թարգմանություններում:

Որոշ այլ հուշարձաններում *քերական* բառը հերթագայում է *քերդող*-ին «քերական» իմաստով: Այսպես, օրինակ, «Սահմանք»-ում *քերականութիւն* $177_{<13>}$ համապատասխանում է հունարեն *ἡ γραμματική* $40_{27}$, ինչպես և *ի քերականութենէն* $134_{<29>}$ = *ἀπὸ τῆς γραμματικῆς*, $10_{17}$, *քերական* $147_{<32,37>}$ = *γραμματικός*, $19_{17,\ 18}$ և այլն: Բայց հունարեն բնագրի *ὁ γραμματικὸς οἶδε*, $39_{32}$, հայերեն է վերարտադրվել որպես *քերթողն գիտէ* $176_{<1>}$, իսկ *ὁ γραμματικὸς λαμβάνει*, $21_{18}$ = հայերեն *քերթողն առնու* $151_{<15>}$, կամ *οἱ μὲν γραμματικοὶ τὴν φωνὴν ὁρίζονται πληγὴν ἀέρος* $41_{26}$ = հայերենի *քերթողք ի սահմանել զձայն վիրաւորութիւն աւդոյ ասացին* $178_{<20>}$. *δίδωσι τῇ γραμματικῇ*, $40_{22}$ = հայերեն *ետ գիտել քերթողին* $177_{<6>}$:

Դավթի՝ Պորփյուրի մեկնությունում *οἱ γραμματικοί*, $83_{25}$ = հայերեն *քերդողք*, $254_{<25>}$, Էլիասի՝ Ստորոգությունների մեկնությունում *τοὺς γραμματικούς*, $143_{27}$ = հայերեն *զքերդողս* $55_2$, ինչպես և $167_9$ = հայերեն $84_{25}$. վերջին երկու աշխատություններում *քերական* բառը չի հանդիպում:

Այսպիսով, որոշ հուշարձաններում գործածվում է բացառապես *քերական* բառը, որոշ հուշարձաններում այն հերթագայում է *քերդող* բառին, և, վերջապես, երրորդներում դա վտարվում է վերջինիս կողմից: Պետք է ենթադրել, որ առաջին հուշարձանները համեմատաբար ավելի վաղ են, քան երկրորդները, իսկ սրանք՝ քան երրորդները:

Դիոնիսիոսի թարգմանությունը տակավին չգիտէ *քերդող* բառը, իսկ Էլիասն, ընդհակառակը, չի գործածում *քերական* ձևը: Վերը մենք շեշտեցինք Դիոնիսիոսի և Էլիասի հատկանշական մի արտահայտության նույնությունը, այն է՝ սրի անվանումների համընկնումը: Այժմ մենք կարող ենք դա բացատրել Էլիասի թարգմանության՝ Դիոնիսիոսի թարգմանությունից կախվածությամբ:

*Περὶ ἑρμηνείας*-ին վերաբերող մեկնությունում հնչյունը սահմանվում է իբրև *աւդոյ բախմունս* $496_{<14>}$: Այստեղ ի նկատի է առնվում այն սահմանումը, որ «Սահմանք»-ում բերվում է այլ թարգմանությամբ՝ *վիրավորութիւն աւդոյ*, ինչը համապատասխանում է հունարենի *πληγὴ ἀέρος*: *Πληγή* նշանակում է ինչպես «հարված», այնպես էլ հարվածից ստացած «վերք», ըստ այդմ թարգմանվել է մեկի կողմից՝ *բախմունք*, իսկ մյուսի կողմից՝ *վիրաւորութիւն*:

Թվում է, թե թարգմանությունները պատկանում են զանազան անձերի: Սակայն *Սիմոն կարուակ* օրինակը, որ բերվում է *Περὶ ἑρμηνείας*-ի մեկնությունում, $515_{<25>}$ և կրկնվում է «Սահմանք»-ում, $180_{<8>}$ = *Σίμων σκυτεύς*, $42_{27}$ հարկադրում է վարանել: *σκυτεύς* ՝ «կոշկակար» բառը գտնվում է Արիստոտելեսի [«Մեկնության մասին» երկում]՝ *Περὶ ἑρμηνείας*, $20^{b}_{35}$ = *կարուակ*, հայ[երեն բնագիր], $477_{<11>}$, բայց մեկնիչն իր կողմից ավելացնում է *Սիմոն*, և այս՝ *Սիմոն կարուակ* կապակցությամբ այն հանդիպում է Դավթի «Սահմանք»-ում: *Կարուակ* հատկանշական եզրույթը մերձեցնում է նշված երկերի թարգմանությունները, իսկ *Սիմոն Σίμων* ընդհանուր օրինակը մատնանշում է նաև դրանց հեղինակների մերձավոր կապը, հակառակ այն եզրակացության, որին հանգեցրել են Հ. Մանանդյանին իր հետաքրքրական դիտարկումները[1]:

Դրանով մենք բնավ մտադիր չենք [վերջնականապես] լուծելու հունաբան դպրոցի հուշարձանների փոխհարաբերությունների այդքան բարդ խնդիրը: Մեր թռուցիկ դիտողությունների նպատակն էր, ընդհակառակն, ապացուցել, թե որքան բազմազան են միահյուսված նշված հարաբերությունները և որքան դժվար է գտնել դրանք հստակեցնող որևէ չափորոշիչ: Դրանից է կախված և շատ ավելի կարևոր խնդրի ձևակերպումը՝ հունաբան դպրոցի երկերի ժամանակագրության խնդիրը, որ կապված է [նույն դպրոցի] առանձին հուշարձանների թվագրման հետ:

Մենք ցանկանում էինք լոկ ուրվագծել առաջադրյալ խնդրի լուծման մեթոդը և կարծում էինք, թե նշված ուղին ճշմարիտ միջոց է այդ նպատակի համար: Վճռորոշ պետք է համարել այն դեպքերը, երբ բնօրինակի միևնույն արտահայտությունները հայերեն են թարգմանվում տարբեր ձևով տարբեր երկերում, ընդորում տարբերությունը երևում է ոչ թե չհամընկնող, բայց հոմանիշ արտահայտությունների ընտրության մեջ, այլ արդյունք է միևնույն անձի մեջ անհամատեղելի՝ տվյալ տեղիի վերաբերյալ բառերի տարբեր ըմբռնման:

Հունաբան դպրոցի ծագման և ծաղկման ժամանակը որոշելիս պետք է ի նկատի առնել [այստեղ] առաջին անգամ լույս տեսնող քերականական

[1] Հ. Մանանդյան, Դավիթ Անհաղթի խնդիրը, 1904 (165):



լուծմունքները: Դպրոցի այլ երկերի համեմատ դրանք ունեն այն առավելությունը, որ գիտության որոշակի բնագավառ են ներկայացնում՝ զարգացման անընդհատ հաջորդականությամբ ի դեմս մի շարք հեղինակների: Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Ստեփանոսը՝ քերականական կրթվածության վերջին ներկայացուցիչն է. նրա աշխատությունն իր որակով շատ ավելի հեռու է կանգնած Դավթի երկից և բնավ չի նշանավորում տվյալ գիտության ծաղկումը: Ստեփանոսի ժամանակը քաջ հայտնի է: Նրա ուսուցիչ Մովսեսը նրանից առաջ էր, իսկ նրանից ավելի վաղ էին Անանունն ու Դավիթը: Դրանով տեղափոխվում ենք արդեն VII դար, որի սահմաններում, ըստ երևույթին, պետք է հաստատել հիշյալ քերականների ժամանակաշրջանը: Բյուզանդական մատենագրության մեջ էլ VII դարն այն ժամանակաշրջանն է, երբ ավարտվում և ամփոփվում է քերականական և փիլիսոփայական մտքի ճոխ զարգացումը, որ տեղի էր ունեցել նախորդ VI դարում: Այս տվյալներով հանդերձ հրատարակվող հուշարձանները կարող են օգտակար լինել հունաբան դպրոցի խնդիրը ընդհանրապես քննելու համար:



## EXPLICATIO SIGLORUM*

T = cod. 2297 Etschmiatsinensis

MS = cod. ը. գ. 1104 Venetianus

M = cod. ա. դ. 875 "

E = cod. է. գ. 306 "

$E_2$ = cod. ը. բ. 174 "

$E_3$ = cod. բ. գ. 1317 "

N = cod. ա. գ. 994 "

J = cod. 336 Vindobonensis

A = cod. բ. գ. 39 Venetianus

$V_1$ = cod. բ. գ. 957 " } V

$V_2$ = cod. 2372 Etschmiatsinensis } V

Is = cod. 2359 "

$D^c$ $A^c$ $M^c$ $S^c$ $H^c$ $E^c$ $J^c$ = Commentarii Davidis, Anonymi, Moysis, Stephani, Hamami, [Joannis] Erzencaiensis, Jesaiae Nixensis

His uncis < > inclusa verba in codd non extant.

" " ( ) inclusa quae a textu aliena mihi videntur.

" " ⌜ ⌝ vel ⌞ ⌟ verba ambiqua apud M vel E solum leguntur.

Vide etiam pp. XCV-XCVI.

## *ՆԻՇԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

T = ձեռ. 2297, Էջմիածին

MS = ձեռ. ը. գ. 1104, Վենետիկ

M = ձեռ. ա. դ. 875 "

E = ձեռ. է. գ. 306 "

$E_2$ = ձեռ. ը. բ. 174 "

$E_3$ = ձեռ. բ. գ. 1317 "

N = ձեռ. ա. գ. 994 "

J = ձեռ. 336 Վիեննա

A = ձեռ. բ. գ. 39 Վենետիկ

$V_1$ = ձեռ. բ. գ. 957 " } V

$V_2$ = ձեռ. 2372 Էջմիածին } V

Is = ձեռ. 2359 "

$D^c$ $A^c$ $M^c$ $S^c$ $H^c$ $E^c$ $J^c$ = Դավթի, Անանունի, Մովսեսի, Ստեփանոսի, Համամի, Հովհաննես Երզնկացու, Եսայի Նչեցու մեկնությունները

Այս՝ < > փակագծերում գտնվող բառերը մատյաններում չեն պահպանվել:

" ( ) գտնվողները, ինձ թվում է, բնագրին խորթ են:

" ⌜ ⌝ կամ ⌞ ⌟ փակագծերի մեջ վերցված բառերը տարակուսելի են՝ ընթերցվում են միայն M կամ E մատյաններում:

Տե՛ս նաև էջ XCV-XCVI:

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

*Բնագրերի ավարտին՝ «Անուանց եւ բառից» ցանկերից հետո, Ն. Առոնցը առանձին բաժնով ներկայացրել է նաև աշխատանքում տեղ գտած վրիպումները, ուղղելիքները և հավելումները: Մենք անհրաժեշտ համարեցինք այդ ուղղումներն ու հավելումները տեղադրել հրատարակվող բնագրերի համապատասխան հատվածներում: Փաստորեն, այժմ բնագրերը զերծ են Առոնցի մատնանշած վրիպակներից, իսկ հավելումներն էլ տեղ են գտել համապատասխան դրվագներում: Այնուհանդերձ, հնարավոր թյուրիմացություններից խուսափելու նպատակով, անհրաժեշտ համարեցինք վրիպակների և հավելումների առոնցյան ցանկը ևս ներկայացնել ընթերցողների ուշադրությանը:*

*Նշենք նաև, որ բացի մատնանշված վրիպակներից, բնագրերում և հատկապես գիտական ապարատում, նկատելի են նաև սխալագրության առանձին դեպքեր, որոնց սակայն չենք անդրադառնում՝ Առոնցի կատարած աշխատանքին միջամտելու մտավախությամբ:*

կատարեաց ի մեծագոյնսն, | զմանրկութիւն մասանց գրոյ եւ E 109- զփաղառութեան, զհազագի եւ զվանգի, զոր բայ եւ բառ անուանեմք, քանզի շարակածեալ զվերծանութիւն շաղկապիցն կատարեաց ի բան:

Իսկ անդ ասելն եթե բան է հետեւակ բառի <շարադրութիւն>, քանզի հետեւանայ հոլովելով զբառսն եւ ածեալ յենթադասութիւն միմեանց:

Իսկ ասելն եթե զտրամախոհութիւն ինքնակատար M 77 E 100- յայտնելով, այսինքն, հաստատախոհ կատարումն յինքեանց ցուցանէ մեզ ցան եւ տարած բառիցն, որպէս արքայութիւն, նեղութիւն եւ անձկութիւն եւ որք այսպիսիք:

Բայց ասի տրամախոհութիւնդ եւ փոխադրութիւն, քանզի արդարեւ իսկ փոփոխի խորհուրդ մտացն յայլ եւ յայլս եւ սոյնպէս ծնանի եւ զբանս զանազանս ի միմեանց այլ եւ այլ բառիւքն:

Իսկ ասելն եթե բանիս մասունք են ութ, բան ասէ E 111 զյայտնեալ եւ զկատարեալ խորհուրդն, որ ստորակիտաւն եւ միջակիտաւն եւ ապարտելովն յայտնի եւ դադարէ խորհուրդն: Այլ ոչ եթե բազմութիւնք անուանց, ոչ միայն եզավանգքն ոչ են եւ ոչ ասին բանք, որպէս մարդ եւ հաց եւ ջուր, այլ եւ ոչ երկավանգքն եւ քառավանգքն եւ մի ըստ միոջէքն:

Եւ արդ զայսոսիկ ասէ ութմասնեան գոլ, զորոց ասէ եւ անուանս. անուն, բայ, ընդունելութիւն, յաւդ, դերանուն, նախադրութիւն, մակբայ, շաղկապ:

*verbi tractationis pars prior ab initio usque ad* միմեանց *apud* M *non suo loco legitur sed infra in capite de nomine inter Stephaniana; ex quibus* E *haec tantum praebet:* զմանրկութիւն մասանց գրոյ եւ զփաղառութեան եւ զհագագի եւ զվանգի, զոր բառ եւ բայ ասեմք (etiam $M_2$ pro անուանեմք) եւ շարակածեալ զվերծանութիւն շաղկապիցն, *quae sub nomine auctoris scholiis Davidis de eadem re inserit; ibidem* յոգնիմաստ արուեստաւորս *habet pro* ամենիմաստ արուեստաւորս; *habet etiam verba* ածել յենթադասութիւն միմեանց եւ առնել բան ըստ շարադրութեան *inserta post* զաստարսն *Anonymi n. p.* 138 9 || 7 յենթադասութիւն] յենթադրութիւն $M_3$ || 10 ցան եւ տարած (*cfr* ցան եւ ցիր) *quamquam iis scholiis interposita sunt, quae Anonymo ab* E *tribuuntur* (*v. supra* 138 13-14), *Stephani esse credi possint* || 12 տրամախոհութիւնդ] տրամադրութիւնդ $M_2$ || 17 *post* խորհուրդն] *inserunt* E *et* J: որ զտրամախոհութիւնն յինքն ցուցանէ, այսինքն զաւարտումն խորհրդոյն, որ || 18 յայտնի] յայտնէ $M_1$ || 19 բազմութեամբ M, բազմութիւնքն J.



E 111 Եւ ասի անունդ անըմբռնելի, վասն զի արդարեւ իսկ անտեղի եւ անժամանակ է:

Իսկ բայդ ասի* ասումն, վասն զի արդարեւ իսկ յայտնելով զտեղի, զժամանակ, զթիւ, զդէմ եւ զայլ եւս պատահս:

Իսկ ընդունելութիւնդ ունելութիւն ասի, քանզի բառս այս ունի խառնումն յանուանէ եւ ի բայէ:

E 112 Իսկ յաւդդ ասի արդարեւ իսկ յաւդ, որ է կցումն գրոյ յանգի անուանն եւ բայի:

Իսկ դերանունդ թերանուն ասի կամ տիրանուն կամ փոխանուն:

Իսկ նախադրութիւնդ առաջադրութիւն ասի, վասն զի են վանգք ինչ, որ ըստ ինքեանց ոչինչ նշանակեն, բայց դնին նախերգանք այլոց մասանց:

Իսկ մակբայդ կրկնաբայ ասի կամ վերնաբայ, զի ունի սոսկ ինչ նշան ժամանակի եւ այլոց:

Իսկ շաղկապդ զուգակապ ասի: Այսոքիկ են մասունք բանի:

*DISCREPANTIAE CODICUM.* 3 ասումն] ուսումն codd || 9 եւ բայի] *add* E: որ ցուցանէ զմերձաւորն կամ զհեռաւորն, որպէս յորժամ ասես մարդս, զսէն յաւդելով յանգի անուանն, զմերձաւորն գոլ եցոյցլինել մարդոյն եւ զնուն դնելով զհեռաւորն; *quae contracta habet* J: որ ցուցանէ զծանօթս զհեռաւորն կամ զմերձաւորս, որպէս մարդս կամ մարդն || 10—11 փոխանուն] *add* E *et* J: որպէս յորժամ թողլով զանուանսն՝ ես, դու, նա ասեմք || 14 *post* մասանց] *add* E J: զի յորժամ զբանն ճոխացուցանել կամիմք, հեգ ինչ փոքրիկ նախ առաջի դասեմք, որպէս յորժամ ասեմք արտաձայնեալ ձայնեալն բան է եւ արտն, հեգ միայն, որ ոչ ունի խորհուրդ, բայց միայն դժոխալոյր առնել զբանն, որպէս յորժամ ասեմք շարայարեալ, շարամանեալ, շարդ նախադիր միայն է || 15 կրկնաբայ] կրկնաբար $M_1$, կրկնակաբայ $M_3$, կրկնակ բայ J || 16 նշան] նշանակ $M_2$ || 17 շաղկապդ E, շաղկապ M J | *post* ասի] *inserunt* E J: զի անմիութիւն նշանակէ, որպէս միտս ընդ միտս, բան ընդ բան, ձայն ընդ ձայն: Արդ այս են (Այսոքիկ են J) զաւրութիւնք ութ մասանց բանին: Իսկ բասանդակ բացատրութիւնք սոցին ի կրթական հարցականութիւնսն լինին, յորժամ հարցանէ. այն ինչ ո՞ր մասն է բանի. զորոյ զհետ զան հինգ հետեւանքն՝ կերպ, ձեւ, թիւ, տեսակք, հոլովք, որ յոյժ ընդարձակատարս (ընդարձակ J) բանիւք ներճառելիք (ներ *om* J) են: Եւ այսոքիկ այսքան, զոր այժմ մի ըստ միոջէ տեսցուք մասունս բանի; *omnes hae additiones quamquam* E *sub Stephani nomine profert, tamen dubito, eiusne sint.*

## ‹ԺԳ› ՅԱՂԱԳՍ ԱՆՈՒԱՆ

Դարձեալ ասելն եթե անուն է մասն բանի հոլովա- M 98 կան, այսինքն, անուն թաւալական մասն է բանի: Իսկ ասելն եթե մարմին կամ իր նշանակելով, մարմին կոչէ զամենայն տեսանելիսս, զոր եւ ինքն ասէ թե մարմին, որպէս քար եւ իր, որպէս խրատ:

Արդ քար ասելով զամենայն մարմին նշանակեաց, իսկ իր E 114 զխրատն ասէ: Այս զգալի անմարմինսն ասէ՝ զհուր, զջուր, զաւդ, զլոյս, զխաւար, զխաղաղութիւն, զխռովութիւն, զարքայութիւն եւ զայլսն: Եւ բաժանի սա եւ յիմանալիսն, քանզի իմանալի իր են վերին զաւրութիւնքն եւ եւս եւ վերագոյն պատճառն:

Իսկ ասելն եթե հասարակաբար եւ յատկապէս, հասարակ զազգական անունն ասէ, որպէս հրեշտակ, մարդ, ձի, արջառ եւ այլքն. եւ զյատկական, որպէս Գաբրիէլ, Մովսէս, եզն, խոյ, ճակ եւ այլքն, որպէս եւ ինքն ասէ՝ հասարակ, որպէս մարդ ‹եւ յատկապէս, որգոն Պաւղոս›:

DISCREPANTIAE CODICUM. 2—6 Դարձեալ ասելն — խրատ] om E praeter vocem թաւալական insertam inter verba Davidis || 8 զգալի] om $M_1$ | անմարմինսն] զմարմինսն $M_3$ || 11 եւ վերագոյն] էագոյն $M_2$ $M_3$ || 15 զյատկական] զատական M || 17 post մարդ exspectatur generum et specierum nominis commentatio, quae deest; eius autem in locum ad մարդ adiecta est in cod M haec expositio depravata admodumque turbata: այլ ով ամենիմաստ արուեստաւորիս, որ ի հոլովական մասանց յեզական եւ ի յոգնական ի փոքրագունիցն ածեալ կատարեաց (կացոյց $M_3$) ի մեծագոյնսն, զմանրկութիւն մասանց զրոյ, զփաղառութեան, զհազագի եւ զվանգի, զոր բա եւ բառ անուանեմք (ասեմք $M_3$ E). քանզի շարակածեալ զվերծանութիւն շաղկապիցն, կատարեաց ի բան: Իսկ ասելն եթէ բան է հետեւակ բառի, քանզի հետեւանա հոլովելով զբառսն եւ ածեալ յենթադատութիւն (յենթադրութիւն $M_3$) միմեանց: Եւ առնել բան ըստ երից յեղանակաց, որ ասի (ասէ $M_2$) կոփեմ, կոփեա, կոփէի, որպէս արարեալն, արարեալս, արարաւ կամ լինելոցն եւ ապա շաղկապի բայն: Բառին (բառ $M_3$) յարաբարդն, որպէս քաջ Մանուէլ եւ կամ գնդապետ եւ որք այլ ասպիսիք: Եւ ապա յաւդին ստորադասեալ շարադրի: Իսկ յաւդ ասի պատուասատ ինչ յանուն կամ ի բա. եւ են սոքա գիր քննողաց յանկի անուան կամ բայի առ ի ցուցական առնել զդէմն: Եւ է սա հոլովական մասն բանի, քանզի նախադիր եւ անյաւդ անուն է, յորժամ նոյն ոյդ ‹ըէդ› առցէ ի որպիսի ո. եւ ստորադասեալ եւ յաւդեալ անուն է, յորժամ նոյն ոյդ ‹ըէդ› առցէ ի բա: Եւ շաղաշարնեքոյ իւրմէ, որպէս որ: Եւ արդ այսպէս յաւդի ամենայն բան եւ բա: Եւ շաղաշարիսկ շաղաշարդ զուգաշար ասի: Եւ ասէ զայս երիս զու յեղանակս եւ դնէ զաւրի-



Եւ սերք են երեք] ...||||

Եւ տեսակք են երկուք] ...|||

M 100 E 124- Եւ ձեւք անուանց, ասէ, երեք. պարզ, բարդ, յարաբարդ: Պարզ ասէ զմեկնակ անունն, բարդ՝ զերկուս կցեալս յիրեարս, յարաբարդ՝ զերիս միաւորեալս, որպէս դնէ զաւրինակն: Եւ արդ ամենայն այսպիսիքն սոյնպիսիք կոչին:

Եւ գտանի սա յոլովագոյն ի Պարսից եւ յԱղուանից եւ ի Սիւնեաց լեզուին, զի երկանունք եւ եռանունք են յոլովք, որպէս՝ Նիւ-դաստ, Նիւ-խոսրով, Ջուան-խոսրով, Վարազ-խոսրով, Վարազ-տրդատ եւ որք այսպիսիք:

E 125 Ասէ դարձեալ եւ բարդիցն զանազանութիւնք են երեք, այսինքն, այլեւայլութիւնք. ոմն բարդ | ՚երկուց կատարելոց եղանի անուանց, որպիսի Նորայր, Կորայր, ազատայր, խուլայր, Գազտուր, Վարազ-տրդատ եւ որք այսպիսիք:

Իսկ ոմանք յանկատարից երկուց, որպիսի իմաստնապատում, կուրապատում, ուղղապատում, ծռապատում, հիապա

նակն ի Հոմերոսի տաղիցն որ են այս. ինձ բնաւ ես դու իր իք պատ-ճառ, արեւ, այլ աստուածքն: Քանզի աւ, ես, դու, իր, եւ, այլ, ուածքն ի ձայնաւոր երկայն (երկայլ աստուածքն: Քանզի աւ, ես, դու, իր, եւ, այլ, բարբառք երկայն $M_3$) յանկեցան: Արդ դնելով զեշ եւ զայբ ի միում վանգի, որք են սուղ եւ երկար ի միում հնգի. բայց սակայն եշն է եզր բանին, իսկ վերաբերական պատահեաց զու այբն, վասն որոյ զսա եւ զամենեսին զառաջինսն մարթի (զառաջին անմարթի $N_1$) երկարս ասել եւ սուղ ի ձեռն զատելոյ ի միմեանց: Արդ զբան հետեւակ բառի դնելով, որպէս թէ հոլովումն յինքեան բաղկացուցանել զիրն կամ զմարմինն. եւ լինի նախ բառ եւ բա եւ ապա բան ըստ երից յեղանակաց եւ երից թուոց, որով պատմութիւնք եւ խաւսք յաւրինին զովական եւ նպերական եւ այլք այսպիսիք: Huius expositionis priorem partem ab այլ ով usque ad միմեանց, quam etiam E exhibet, ad caput de oratione pertinere credens, hinc eo transposui (v. $201_{23}$—$202_{7}$). Quae tum sequuntur ab Եւ առնել բան usque ad finem om E praeter haec, quae excipiunt vocem բառիցն (v. $202_{15}$): Եւ լինի բան ի բառից եւ ի բայէ ըստ երից յեղանակաց, կոփէի, կոփեմ, կոփեցից եւ ըստ երից թուոց եզական, երկական, յոգնական, որով պատմութիւն եւ խաւսք յաւրինին զովական, նպերական եւ այլքն. Verba Բառին յարաբարդն—այսպիսիք fortasse textui inserenda sunt post որպէս դնէ զաւրինակն: Quae postea de articulo traduntur ad suum locum reponenda sunt (v. infra p. 214); fragmentum de syllabis ad suum locum a me iam translatum est (vide supra p. $200_{20}$) || 5—6 զաւրինակն vide supra p. 16 || 6 այսպիսիքն] այսպիսի անուանք E || 9 Նիւ-դաստ $M_3$, Նիւդազ: զդ $M_1$, Նիւդազդ $M_2$, Նիւդդաստ E, Նիւ-զամ J || 13 Կոր այր $M_1$, կոյրայր ceteri || 14 խուշ այր M, խուլ այր E J | Գազտուր] Գարդայր J | Վարազ—Տրդատ] om $M_3$ || 16 կուրապատում] om $M_3$ J.

տում, Հիասացութիւն, անազնութիւն, Մանայծ, Տիրիճան եւ որք այսպիսիք:

Իսկ ոմանք յանկատարէ եւ ի կատարելոյ, որպիսի սիրամարգ, տիրասպան, տիրասէր, տիրաշատ, գունազեղ, վանաշէն, Տիրախոսրով, Տիրատուր, սիգատուր եւ որք այսպիսիք:

Իսկ ոմանք ի կատարելոյ եւ յանկատարէ, որպէս մարդիկթ, մարդոտ, մարդոց, մարդեղ, մարդուտ, հայրիկ, մայրիկ, Դաւթեան, Պաւղոսեան, մայրական, հայրական, եղբայրական, Բագրատունի, Գրիգորեան, Գրիգորիս, Դաւթուկ եւ որք այսպիսիք:

Բայց ի յայն սակս կարես զայսոցիկ զփորձն առնուլ, զորոց ծանիցես զորպիսութիւն, մի զուցէ յատարոտին անճարեսցես:

Նշանակին եւ թիւք երեք(դիմ)ի յունական եւ հոռմայա- E 125- կան լեզուին, զմիաւորական եւ զերկուորական եւ զբազմաւորական, որպէս թէ Պետրոս, Պետրու, Պետրոսք: Իսկ ի հայումս զեզական եւ զբազումս միայն կարեն նշանակել անուանք, որպէս Պետրոս եւ Պետրոսք, մարդ եւ մարդիկ, աստուած-եւ աստուածք, եւ ամենայն այսպիսիքս: | Քանզի կեն եւ քէ եւ ցոյ E 125- զոլով ի յանգի անուանն զբազումս նշանակեն: Բայց կայ ուրեք յանուան միաւորական նշան ի վերայ բազմաց եղեալ առանց ցոյի եւ քէի, որպէս տոհմ, պար, ամբոխ, հաւտ, անդեայ, ջոկիր, երամ, բարդակ, գունդ, սպայ, զաւր, գեհ, մայրի, այգի, արտ, մարգ, դրախտ եւ որք այսպիսիք:

Եւ դարձեալ են եւ յոգնական նշանակք ի յանգի ոմանց եզականաց անուանց եւ երկականաց, որք են միաւորական

DISCREPANTIAE CODICUM. 1 հիասացութիւն] հիասացապատում J | Մանայծ] Միայնամ $M_3$ ‖ 5 Տիրախոսրով] om $M_3$ | Տիրատուր E, Սիրասուր $M_1$, Սիրատուր $M_2$ J, om $M_3$ | սիգատուր om $M_3$, ուգատուր J | եւ որք այսպիսիք (etiamJ)] եւ այլք E ‖ 7 մարդոց, մարդեղ, մարդուտ] om $M_3$ ‖ 8—9 մայրական—Գրիգորեան] om $M_3$ ‖ 9 Գրիգորիս] Գրիգորիկ $M_3$, Գրիգորիս, Գորգիկ J | Դաւթուկ] Ստեփաննոսիկ $M_3$, Դաւթուկ (-ուն cod), Դաւթակ, Խոսրովեան, Խոսրովիկ, Վարդիկ $M_2$, Գագոն, Խոսրովեան, Խոսրովիկ, Վարդիկ J ‖ 14 Այլ եւ ի յունական E J ‖ 16 ante որպէս] զերծքեանն յայտնի նշանակեն E J ‖ 22—24 ամբոխ, պարտակ, սպա, գեհ, մայրի, արտ, մարգ] om $M_3$, պարտակ, գեհ om J ‖ 28 բարդակ] պարտակ codd.



անուանք այսոքիկ՝ Խոյարանք, կալք, Ներքնոց, վարդիկ, Ենովք, Ղամէք, Սերուք եւ որք այսպիսիք են. քանզի ամենեքեան սոքա մի մի են, իսկ զոլով քէդ ի վերայ սոցա զբազումս նշանակեաց: Իսկ նշանակեն դարձեալ եւ զերկուսն իբրեւ զբազումս. այսպէս երկու ընտերք, ոտք, ծեռք, աչք, ականջք, բարծք, ծունկք, սրունք, թաթք, բոյթք, ⸢քիթք, ճկոյթք⸣, կաւշիկք, մուճակք եւ որք այսպիսիք, զի ամենեքին սոքա երկու երկու են, իսկ քէդ ի վերայ զոլով զբազումս նշանակեաց:

Եւ թաւալմունք անուանց են վեց, զորս կոչէ իմաստասէրս ուղղական, սեռական, տրական, առաքական, հայցական, հոլովական, զորս մեկնէ ինքն, զխրթնութիւն անուանցս այսոցիկ:

Իսկ ասելն ենթակաւ անուամբ եւ այս‹ք›, որք եւ սոքա տեսակք կոչին եւ են այս. իսկ, առասական, մակդիր, առինչունակ, հոմանուն, փաղանուն, քերանուն, յարանուն, երկանուն, մականուն, ազգական, հարցական, անորիշ, վերքերական, որ եւ նմանական եւ դերհատուցական կոչի, բակծածական, մակբաշխ, պարունակ, քերդեալ, սեռական, յատուկ, դասական, թուական, բացարծակ, զորոց մեկնեալ եւ լուծեալ զհանգոյցս կապեալս, եցոյց մեզ ինքն արուեստաւորս զորպիսութիւն միոյ միոյ ի սոցանէ:

‹1› Իսկ է, որ զինքեան զոյացութիւն յայտնէ, որպիսի E 128- Մարկոս, այսինքն, | մի մի անուն, որ ոչ հատանի ի յայլ ոմն, որք ի նմանէն բաժանին կամ ծնանին. ամենեքեան սոքա իսկ ասին եւ են այսոքիկ. Ադամ, Սէթ, Ենովս, Կայինան, Մաղաաղիէլ, Յարեդ, Ենովք, Մաթուսաղա, Ղամէք, Նոյ եւ ամենայն սոքա մի ըստ միոջէ, որք ընդհանուր մարդիկ մինչեւ ցայսաւր, սոյնպէս եւ այլ կենդանիք եւ անականք եւ անասք, անհատքն ի նոցանէ իսկ ասին:

‹2› Իսկ առասական է, այսինքն, տեսակաւոր անուն, որ զհասարակական ինչ էութիւն ասէ, որպէս մարդ կամ ծի

DISCREPANTIAE CODICUM. 1 Ներքնոց, վարդիկ, Ղամէք] om $M_3$ ‖ 5 երկու ընտերք] երկու ընկերք $M_1$ J ‖ 6 բարծք, ծունկք] om $M_3$ ‖ 6—7 քիթք, ճկոյթք, մուճակք] legit E, om ceteri ‖ 11 զորս $M_2$, զոր ceteri ‖ 18 զորոյ codd ‖ 21 զինքեան] զիւրոյ $M_3$ ‖ 23 ամենեցուն սոցա իսկ $M_3$ ‖ 30 կամ om $M_3$.

կամ ոչխար կամ արջառ եւ այսպիսիք ամենայն ազգ կենդանեաց, աճականաց եւ անաճից: Եւ վասն այնորիկ ասէ հասարակական զայսոսիկ, զի ի սոցանէ բաժանին մի մի անհատ գոյացութիւնք՝ Մարկոս, Ադամ, հայր, որդի, թոռն, խնձորի, տանձի, մանուշակ, շուշան, տլփին, սղոցն, դալն, լոքն, բիլն, կապոյտն, ովկի‹ա›ն: Իսկ սեռականաւ իմն այս ի բազումս կոտորի, որք են առասականք, եւ այսք են սեռքն. կենդանի, տունկ, բոյս, ոչ կենդանի, աճական, անաճ, ցամաքային, ջրային, երկնային, հրային, աւդային, թեւաւոր, թռչուն, զազան, չորքոտանի, սողուն, լուղակ, զեռուն, խոտաքուտ, ծեռնընդեղ, վայրենի, քանզի ամենեքին սոքա ի բազում տեսակս բաժանին, զորս առասական ասէ:

‹3› Իսկ մակդիր է ‹իսկիցն› կամ առասականացն ի վերայ եղեալ տեսակաց, որ է մարդ կամ ձի, որ զբոլոր ազգէն ասի. ի վերայ սոցա զովական կամ նպերական ինչ անուն դնելով, որ առնու զէանալն | ըստ երից դիմաց՝ ըստ մարմնոյ E 129- եւ ըստ հոգւոյ եւ ըստ պատահմանց: Ըստ մարմնոյ՝ որպէս արագ, հեզ, քաջամարմին կամ վատամարմին, խարտեաշ կամ թուխ եւ որք են այսպիսիք:

⸢Իսկ ըստ հոգւոյ՝ ողջախոհ կամ բղջախոհ, իմաստուն կամ անմիտ, ամբարտաւան կամ հեզ, պարկեշտ կամ զեխեալ եւ որք այսպիսիք: Իսկ յարտաքին պատահմանց՝ ընչեղ կամ աղքատ, առատ կամ ոլիշտ, բազմորդի կամ անորդի⸣:

‹4› Իսկ առինչունակ է՝ հայր, որդի, մայր, դուստր, եղ- E 130- բայր, քոյր, թոռն, հաւ, փեսայ, աներ, հարսն, սկեսուր, տալ, նու, դառն, քաղցր, թթու, ցուրտ, ջերմ, անոյշ, գէշ, դիւր, դժուար, տէր, ծառայ, տիկին, աղախին, կէս, կրկնապատիկ, մեծ, փոքր, անաւր, թանձր, ստուար, նուրբ եւ որք այսպիսիք:

DISCREPANTIAE CODICUM. 1 utrumque կամ] om $M_3$ || 5 դալն] դալփն $M_3$ || 6 ովկի‹ա›ն] արծաթն, ոսկին J || 6—7 սեռականաւ—կոտորի cfr ‹19› artis, p. 21 || 13 առասականացն] առասական սոյն $M_1M_3$ || 13—16 Իսկ մակդիր է—դիմաց] եւ զի յերից է մարդն, յերիցն առնու զովս եւ կամ պարսաւն E J || 18 ante խարտեաշ] բարձր կամ խոնարհ E J || 20—23 quae uncis saepsi om M, habent E J.



‹5› Իսկ իբր առինչունակ է, իբրեւ տիւ եւ գիշեր, լոյս խաւար, դալար չոր, լեառն դաշտ, գարուն ամառն, աշուն ձմեռն եւ որք այսպիսիք զոյքն երանգոց իբր առինչունակ:

E 130 ‹6› Իսկ համանուն, այս ինչ մի անուն, որ ի վերայ բազմաց մի անուն եղեալ ի վերայ իսկիցն եւ ումն մարդոյն, որպէս Յովհաննէս Զաքարեան եւ Յովհաննէս Զեբեդեան եւ Սիմովն Յունանու եւ Սիմովն Կանանացի եւ այլք, որք պատահին ի մարդկանէ ունել զայսպիսի անուն: Իսկ ի վերայ առասականացն եւ ազգականացն միանունութիւն՝ մուկն ասի եւ ցամաքային եւ ջրային, եւ շուն ցամաքային եւ ջրային, խեցգետի ջրային եւ E 131 երկնային, եւ ցուլ եւ խոյ երկրային եւ երկնային եւ | այլք այսպիսիք, որոց անուանք մի, եւ բնութիւնք եւ գոյացութիւնք բաժանեալք եւ զանազանեալք:

E 131 ‹7› Իսկ փաղանունք ասին, որ են զոյգ անուանք. անիւ եւ ճղուղ, առեղ եւ աւարտք, հեւան եւ դանդանք, կունդք եւ ականոց, հեց եւ բոյթ, կապերտ եւ զորգ, ձի եւ դգի, երամակապան եւ կուտպան, բիր եւ մահակ, որոց բնութիւն մի եւ անուանք այլ:

E 131- ‹8› Իսկ բերանուն ասի, որ վասն պատահման ինչ ուրեք ասի, որպէս վանեալ, ⸢մեծասուգ, աշխատեալ, տառապեալ⸣, չարչարեալ, ճգնաւոր, մարտիրոս, կապանաւոր, զնդանարգել, զունչ, քարց, արբեալ, քաղցեալ եւ այսպիսիքն: Բերանունք ասին, քանզի յոգնազոյն որակութիւնք ի ներքոյ բերանունութեանդ պարփակեալ են, սեռաբար անուն զդա ունելով, այլ ոչ որակութիւն զսա կամ իր անուանեմք:

E 131- ‹9› Երկանուն է՝ անուանք երկու ի վերայ միոյ անձին եղեալ, Եղիազարոս Աւարան, եւ Սիմովն Պետրոս, եւ Յովսէփ Մատաթիա, եւ Յովհաննէս Մարկոս եւ որք միանգամ այսպիսիք երկու անունք ասին:

DISCREPANTIAE CODICUM. 3 ամենայն գոյնք $M_2$ E J || 4 այս ինչ pro այս ինքն || 5—6 ի Յովհաննէս $M_1$ $M_2$, Իովաննէս J || 6 Զաքարիեան M J | Իովաննէս codd | Սիմոն codd exc $M_2$ || 7 Կանանացի] Կիւրենացի $M_3$ || 8 զայսպիսի] զմի $M_2$ $M_3$ || 10 exm շուն] om $M_3$ || 20 uncis saepta om $M_1$ || 20—22 enumerationis ordine E discrepat ab M || 25 իր] կիր $M_3$ || 28 Մարկոս] add E Յակոբ եւ ի՞էլ || 28—29 եւ որք—ասին] om E.

‹10› *Մականուն է*] .... ||||

‹11› *Իսկ ազգականք ասին, որ ազգի եւ լեզուաց յատկական է, որպէս ասորի, վրացի, հայ, տաճիկ, յոյն, լատի-* E 132 *նացի եւ այլ բոլոր ազգք:*

‹12› *Հարցական է*] .... ||||

‹13› *Իսկ անորիշ, այսինքն, անյայտ, որ հարցականին* E 132- *հակառակ ասի, որպէս թե պատասխանի նմա խորհրդական ձայնիւ, որ են այսոքիկ. որպիսի ոք են, որքան են, որչափ կարեն, որչափ քաւեն եւ սոքա այսպիսիք:*

‹14› *Իսկ վերքերական է, որ եւ նմանական եւ դեր-* E 132- *հաւուցական կոչի, նմանութիւն իմն ցուցանելով, որպէս այսանիւկ, այսպիսի, այսչափ, այսքան: Արդ սոքա եւ ամենայն այսպիսիքս ի դերանուանսն են եւ լինին սոքա ըստ երից ամանակաց եւ ըստ երից դիմաց եւ ըստ երից թուոց:*

‹15› *Իսկ քակառական է, որ եզական անուամբ զբա-* E 132- *զումս նշանակէ, որպէս տոհմ, պար, հոյլ, ջոկ, գլոհ, գեհ, անդեայ, պառակ, երամ, կոյտ:*

‹16› *Իսկ մակքաշխ է, այսինքն, վերաքաշխ կամ կրկնաքաշխ կամ երկուց, որպէս երկաքանչիւր, իւրաքանչիւր, ամենից, ընդ ամենայնս, ամենեցուն, յոգունց, բազմաց, հասսար, զոյգ, հարթ, ճիշտ եւ որք այսպիսիք:*

‹17› *Իսկ պարունակ է, որ երեւեցուցանէ ինչ յին-* E 133 *քեան պարփակեալ, այսինքն, որթոց, կուսաստան, մարդաստան, ընկուզուտ, կթոց, այգի, պարտէզ, ծաղկոց, դրախտ, անտառ, մորի, ճաղագ, արտ, մարգ եւ այսպիսիքս:*

‹18› *Իսկ քերդեալ է, որ ըստ հնչման յատկութեան նմա-* E 133- *նակի ասացեալ է, այսինքն, պաճուճեալ բան, խռովական կաս խաղաղական, նման ասացեալ է կամ յառաջնոյն կամ ի մէնջ, որք են այս՝ խազմ, վրդով, յոյզ, ամբոխ, աղմուկ, դղրդումն,*

DISCREPANTIAE CODICUM. 2—3 *Իսկ—յատկական է*] om E || 4 *զուայլ*] om M || 6 *Իսկ—անյայտ*] *Եւ դարձեալ անորիշ է* E || 17 *կոյտ*] add E *զումար, խումբ*; huic paragrapho nullum auctoris nomen apud E adscriptum est || 24 post *ընկուզուտ*] inserit E *քաղաք* || 25 *մորի*] *մայրի* $M_2$ | *այսպիսիքս*] adnectit E: *Եւ ցուցանէ որթոցն զծնունդս արմատոցն կամ զփայտի որթոյ ամբարումն եւ կթոցն զընդունելութիւն պտղոյն* || 26 *յատկութեան*] *յայտնութեան* E.



*բոմբիւն, դոփիւն, որոտ, բաբախիւն, զանչիւն եւ այլ այսպիսիք, որք չկարեն զիրսն ստոյգ ասել:*

‹19› *Սեռական է*] ... ||||

‹20› *Ցատկական է*] ... ||||

E 134 ‹21› *Իսկ դասական անուն է, այսինքն, կարգական, որ զկարգաւորութեանց ինչ ասէ, որք են այսոքիկ. առաջին, երկրորդ, երրորդ, չորրորդ եւ մի ըստ միոջէք. սոքա եւ դարձեալ այսք. ներքին, միջին, վերջին, աստի, անտի, ի վերջոյ, յառաջոյ, ի կողմանէ, յաջմէ, յահեկէ, ի սնարից, յանոտից, եւ եթե այլ ինչ այսպիսի:*

‹22› *Թուական է*] ... ||||

E 134 ‹23› *Իսկ բացարձակ անուն է, որ առանձինն իմանի, այսինքն անմարմինք եւ անըմբռնելիք, որք բացարձակք ասին, որպէս աստուած, հրեշտակք, հոգիք, շունչք, միտք, բան, խորհուրդ, իմացումն իրիք իրի:*

E 134- *Իսկ ասելն եթե անուան հաստատադրութիւնք են երկու, այսինքն ըստ երկուս յեղանակս է անուանակոչութիւն ամենիցն՝ ներգործական եւ կամ կրաւորական, որպէս եւ ինքն իսկ իմաստասէրս դնէ զաւրինակն այսոցիկ:*

E 134- *Ներգործական ասէ, այսինքն, տիր(ող)ական անուանս ի վերայ այլոցն. դատաւոր, ընտրող, տէր իշխան, թագաւոր, սպարապետ, զնդապետ, հազարապետ, հարիւրապետ, յիսնապետ, տասնապետ եւ այլք ի պատուոց, եւ արարիչ եւ ստեղծիչ եւ կեցուցիչ եւ նորոգիչ եւ այլ անուանք, որ զգերագոյն նշան ունին:*

*Իսկ կիր՝ դատեալ, հարեալ, վարեալ, ընտրեալ, տէրունի, իշխանի, թագաւորական, թագաւորութիւն, սպայ, գունդք, հազարք, հարիւրք, յիսունք, տասունք, ծագք, արարածք, եղականք եւ ոչ այսք միայն, այլ եւ ամենայն անուանք նոյնպէս ստուգաբանին:*

DISCREPANTIAE CODICUM. 5—7 *Իսկ—միոջէք*] *զի դասական է այս՝ առաջին, երկրորդ, երրորդ եւ որ ի կարգին դասեալ է մի ըստ միոջէ* E (J=M) || 7 *սոքա*] om E || 16 *հաստատութիւնք* $M_2$ || 20 *տիրական* J, *տիրողական* ceteri || 23—25 *եւ արարիչ—ունին*] apud E falso Davidis nomen praescriptum habent || 26 *հարեալ*] *հատեալ* $M_1$ || 27 *սպայ*] *սպահ* $M_2$, *սպառ* $M_2$.

## ‹ԺԴ› ՑԱՂԱԳՍ ԲԱՅԻ

Դարձեալ զի ասէ թե բայ անհոլով մասն է բանի, այ- M 114 E 138 սինքն ոչ թուալի, որպէս զանուն: Եւ է բայ ըստ բանիս մեկնութեան, որ է ասութիւն մեր զգործոց միմեանց, զոր ասեմք, կամ զանձանց մերոց թե զայս ինչ գործեցի կամ գործեաց կամ գործեցին:

Ընդունակ ամանակաց, դիմաց եւ թուոց, այսինքն վասն զի յայտնէ զայսոսիկ:

Եւ յարեւանայ բայի, այսինքն հետեւանք են բայի ութ, E 139 զի ըստ այսքան յեղանակս ունի բայ զասութիւնս եւ զցուցումն: Եւ են հետեւանք ութ այսոքիկ. խոնարհութիւնք, տրամադրութիւնք, տեսակք, ձեւք, թիւք, դէմք, ամանակք, լծորդութիւնք:

Եւ խոնարհութիւնք են հինգ, վասն զի ի հինգ դէմս յանգի բայն. ի սահմանական, յաներեւոյթ, ի հրամանեան, յըղձական, ի ստորադասական: Եւ է սահմանականդ, որպէս կոփեմ, իսկ աներեւոյթ՝ կոփել, իսկ հրամանեանն՝ կոփեա, իսկ ըղձականն՝ կոփիցեմ, իսկ ստորադասականն՝ կոփիցիւ:

Իսկ տրամադրութիւնք, այսինքն փոխադրութիւնք երեք. ներգործական եւ կրական եւ միջին:

Եւ է ներգործականդ զաւրութիւն ի վերայ ուրուք, որպէս E 140 զանեմ, կոփեմ, ծամեմ, վարեմ, խլեմ, սպանանեմ եւ որք այսպիսիք:

Իսկ կիր, որպէս պարտիլ ինչ յումեքէ եւ կամ ծառայիլ եւ է այս. զանիմ, մեռանիմ, խլիմ, աւերիմ, տնկիմ, վարիմ, հալածիմ, ծամիմ, սպանանիմ եւ որք այսպիսիք, որք զայլ ոմն ցուցանեն իւրեանց գործաւղ բարւոյ եւ չարի:

Իսկ միջին բայք են այսոքիկ, որ երբեմն ներգործութիւն

DISCREPANTIAE CODICUM. 2—3 *այսինքն — զանուն*] E J *scholiis Davidis inserunt* || 4 *միմեանց* M J, *մերոց* E, *մերոց միմեանց* $M_3$ || 7—8 *Ընդունակ — զայսոսիկ*] om E, *legit* J || 16 *սահմանեանդ* M || 17—18 *իսկ աներեւոյթ — կոփիցիւ*] *apud* E J *permixta cum verbis Hamami* || 18 *կոփիցիւ* M, *կոփեմ* E, *եթէ կոփեմ* J || 19 *այսինքն փոխադրութիւնք*] om $M_1$ $N_2$ || 22 *սպանանեմ*] om E, *legit* J.



E 140 եւ երբեմն կիր ցուցանեն նովին վանգիւ | որպէս մեռանեմ, տանիմ, խորհիմ, սփածայ, մոռացայ. քանզի մեռանիմդ՝ կիր, իսկ տանիմդ՝ ներգործութիւն, եւ խորհիմդ՝ նոյն. իսկ սփածայն՝ ներգործութիւն եւ կիր եւ ամենայն այսպիսիքս միջակք ասին, որք վերջին վանգիւն զկրից ասեն եւ ի սկզբանն՝ զներգործութեանց:

Եւ տեսակք են բայի երկու. նախազաղափար եւ ածանցական:

Եւ է նախազաղափարն, որպիսի ոռոգեմ, վարեմ, կարեմ, պատառեմ եւ այսպիսիքն: Եւ ածանցեալն ի սմանէ, որ անց առաջ քան զսա եւ է այս. ոռոգանեմ, վարոտեմ, կտրատեմ, պատառոտեմ, կարոտեմ, քեկոտեմ եւ որք այսպիսիք: Եւ զայս ըստ անուանն կարգի:

E 140 Իսկ ձեւք բայի, որպէս յանուանն երեք. պարզ, բարդ, յարաբարդ:

Եւ է պարզ բայ ամենայն նախազաղափարն, որպէս գիտեմ, կոփեմ, կտրեմ: Իսկ բարդ՝ քաջ գիտեմ կամ գիտոտեմ կամ կտրատեմ: Իսկ յարաբարդ՝ կարի քաջ գիտեմ, աստուածաբանեմ:

E 141 Եւ թիւք բայի են երեք, որպէս յանուանն. միական, երկական, յոգնական: Եւ է եզական բայ, որպիսի զանեմ, կոփեմ, կտրեմ եւ այսպիսիքն: Իսկ երկուորական բայք, որպիսի զանոմ, կոփոմ, կտրոմ: Իսկ բազմաւորական բայք են այսք. զանեմք, կոփեմք, կտրեմք եւ այսպիսիքն:

E 141 Եւ դէմք բայի են երեք. նախ՝ որ ասէ զբանն, որպէս թե կոփեմ եւ կամ այլ ինչ. իսկ երկրորդ դէմք՝ ընկերին, որպէս թե կոփես. երրորդ դէմք, յորժամ զհեռաւոր ընկերէն ընդ մերձաւորիս ասիցէ, որպէս կոփէ, վարէ, հնձէ, կասու, աղայ, ժողովէ եւ ամենայն այսպիսիքս:

Եւ ժամանակ բայի են երեք. զներկայս, որ է մերձա-

DISCREPANTIAE CODICUM. 2 *սփածայ*] *զփածայ* $M_1$ || 5 *ասեն*] *անուանեն* $M_3$ || 9 *կարեմ*] *կտրեմ* $M_2$ J || 12 *կարոտեմ*] *կարկատեմ* $M_3$ J || 17—18 *գիտոտեմ—գիտեմ*] om $M_3$ || 26 **ընկերին* *coniectura ex* *ընգերին* M, *ընդրին* E J || 28 *կասու, աղայ*] om $M_3$.

կայ եւ են բայքս այս, կոփեմ, զանեմ, ուտեմ, նստիմ, յառնեմ, խաւսիմ եւ ամենայն այսպիսիքս:

Եւ նշանակէ բայ եւ զապառնի ժամանակն, որ է ապազայ կամ առաջիկայ, այսպէս կոփեցից, կտրեցից, զանեցից, կերայց, արբից, նստայց, յարեայց, խաւսեցայց եւ ամենայն այսպիսիքս ապառնիք ասին:

Եւ ի սոցանէ անցեալն բայ, որ անցելոյ ժամանակին է E 142- նշան, ունի նա զանազանութիւնս չորս, որ են այսոքիկ. յարածզական, յարակայ, գերակատար, անորիշ:

Իսկ յարածզականն այսպիսի՝ կոփեի, տաշեի, հալեի, քե- E 143 րեի, քանդեի, նկարեի: Իսկ յարակայն այս ինքն՝ էկոփէի, էտաշէի, էհալէի, էքերէի, էքանդէի, էնկարէի, էուտէի, էըմպէի: Իսկ գերակատարն այսպիսի՝ էկոփեցի, էհանի, էհատի, էտաշեցի, էհալեցի, էքանդեցի, էնկարեցի, էկտորեցի, էսպանի եւ այլ այսպիսիք: Իսկ անորիշ այսպիսիքս՝ կոփեցի, տաշեցի, քերեցի, հալեցի, նկարեցի եւ ամենայն այսպիսիքս:

## ‹ԺԵ› ՅԱՂԱԳՍ ԼԾՈՐԴՈՒԹԵԱՆ

.... ||||

## ‹ԺԶ› ՅԱՂԱԳՍ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ

.... ||||

## ‹ԺԷ› ՅԱՂԱԳՍ ՅԱՒԴԻ

Իսկ յաւդ ասի պատուաստ ինչ յանուն կամ ի բայ: Եւ են M 90 սոքա զիր քննողաց յանզի անուանն կամ բայի առ ի ցուցական առնել զդէմսն:

Եւ է սա հոլովական մասն բանի, քանզի նախադիր եւ

DISCREPANTIAE CODIOUM. 1 ուտեմ] om $M_3$ || 2 խաւսիմ եւ ամենայն այսպիսիքս] om $M_3$ || 4 կամ առաջիկայ] om $M_3$ || 5 նստայց—խաւսեցայց] om $M_3$ || 11 նկարեի] om $M_3$ || 12 էհալէի et nonnulla exempla om $M_3$ || 22 Quae de articulo traduntur M solus praebet; neque vero apud hunc suo loco, sed in capite de no-



անյաւդ անուն է, որպիսի ո. եւ ստորադասեալ եւ յաւդեալ անուն է, յորժամ նոյն օյդ ‹րէ› առցէ ի ներքոյ իւրմէ, որպէս որ: Արդ այսպէս յաւդի ամենայն բան եւ բայ:

## ‹ԺԸ› ՅԱՂԱԳՍ ԴԵՐԱՆՈՒՆՈՒԹԵԱՆ

M 124 E 112- Դերանունդ թերանուն ստուգաբանի եւ տիրանուն | որ է բառ ինչ փոխանակ անուան առեալ ի վերայ ամենայն էակացս: Եւ են բառքն այսոքիկ. ես, դու, սա, դա, նա եւ յոգնականք են այս. մեք, դուք, սոքա, դոքա, նոքա. իմ, քո, սորա, դորա, նորա եւ մեր, ձեր, սոցա, դոցա, նոցա. եւ այս, այդ, E 160 այն եւ այսք, այդք, այնք եւ ամենայնք այսպիսիք, | որք զդէմս ուրումն յայտնեն յասելն, այլ զիրն ոչ յայտնեն, եթե զմարդոյ զումեքէ ասեն եւ եթե զայլոյ ուրուք յէակացս:

Եւ արդարեւ իսկ են սոքա թերանունք, վասն անյայտ դիմացդ թե զումմէ յանհատ գոյացութեանցդ ասին այսք կամ այդք, զմարդոյն կամ զայլոյ ուրուք:

Այլ արդարեւ իսկ են տիրանունք, վասն զի սոքա նախադրին քանք քան զՊետրոս եւ զՌուբէն եւ զամենեսին զՄովսէս եւ զՊաւղոս: Եւ դարձեալ վասն յայտնի զդէմս որոշելոյ զմերձաւորին եւ զհեռաւորին, քանզի ստոյգ եւ անխախտելի կայ այսդ ի վերայ դորա եւ այլք այսպիսիք: Իսկ Պաւղոս եւ Պետրոս եւ Մովսէս եւ Աբրահամ եւ ամենեքին սոքա ոչ կարեն յանեղացն յաւդիլ, քանզի անժամանակ եւ անդէմ եւ անտեղի է անուն: Արդ վասն այսորիկ տիրանունք ասին այդոքիկ, վասն որոյ եւ ասէ թե որոշեալ դիմաց յայտնող:

Եւ հետեւին տիրանուան յեղանակք վեց. դէմք, սեռք, թիւք, հոլովք, ձեւք, տեսակք. քանզի ըստ այսքան յեղանակս ձեւանայ դերանուն եւ են յեղանակքս ըստ հետեւանաց անուանն:

mine casu servata sunt (v. p. 205) || 6 առեալ] add լինի E || 8—10 իմ քո—այնք] om $M_3$ || 12 ասեն] յայտնեն $M_3$, յայտնեալ ասեն $M_2$ || 13 արդարեւ] արդ եւ $M_1$ || 14 զումմէ $M_1$, զումէ E $M_2$ $M_3$ || 15 ուրուք] իրիք $M_2$ || 16 արդարեւ] արդ եւ $M_1$ | այլ—տիրանունք] om $M_2$ || 17—18 զՄովսէս եւ զՊաւղոս] om $M_3$ || 27 են] ն M | յեղանակքս] յեղանակաւք $M_2$.

Ու են նախազաղափար դէմք այսք եւ այսպիսիք. ես, դու, E 161 սա, դա, նա եւ այսպիսիքն. եւ ածանցացն նախազաղափար, իմ, քո, սորա, դորա, նորա:

Իսկ սեռքդ դերանուանս ի մերում լեզուիս ոչ ունի յայտ- E 161- նութիւն:

Ու թուական նախազաղափարին. եզական՝ ես, դու, սա, E 161- դա, նա. իսկ երկուորական ինեւ, քեւ, սովաւ, դովաւ, նովաւ. իսկ յոգնական՝ մեք, դուք, սոքա, դոքա, նոքա:

Ու հոլովք դերանուանս նախազաղափարացն. ուղղական E 162 ես, դու, սա, դա, նա. սեռական, որ է ստացական .... ||||

Ձեւք պարզ] .... ||||

Ու տեսակք] ....

⸢Ու նախազաղափարի յոգնական ի վերայ եզականի եւ M 126 երկուորականի, որպիսի մեք, ինձ, նմա: Ու ապա հոլովականք ձեւք՝ պարով, ազգով, ջոկով. եւ ապա շարակածելով զեչն ի միջի, որպէս զեն, զետք եւ որք այլ այսպիսի հոլովական բանք: Ու ապա եզական եւ երկուորական, որպէս եզն, տատրակ, ինձ եւ որ այլ այսպիսիք թիւք են: (Սեռական եւ եզական ի վերայ հազագի եւ կրիցն ասացեալ)⸣:

## ‹ԺԹ› ՑԱՂԱԳՍ ՆԱԽԱԴՐՈՒԹԵԱՆ

.... ||||

## ‹Ի› ՑԱՂԱԳՍ ՄԱԿԲԱՅԻ

.... ||||

## ‹ԻԱ› ՑԱՂԱԳՍ ՇԱՂԿԱՊԻ

.... ||||

## ‹ԻԲ› ՑԱՂԱԳՍ ԱՌՈԳԱՆՈՒԹԵԱՆ

Իսկ արդ ասելն եթե առոգանութիւնք են տասն, զքա- M 134 E 167-

DISCREPANTIAE CODICUM. 1 Ու] add արդ $M_2$ | եւ այսպիսիք] om $M_3$ || 2 սա, դա] om $M_3$ | եւ այսպիսիքն] om $M_3$ || 4 դերանուանս] դերանուանութեան $M_3$ || 6—10 Ու թուական—ստացական] om $M_3$ || 10 post ստացական, ubi aliquam pronominis tractationem intercidisse apparet, sequitur Davidianae illius de etymologia, analogia, aestimatione poematum disputationis, quam supra (p. 85₁₅) dedi, pars ab Քանզի (hic Իսկ) առոգանութեան ձեւք usque ad ընդ միմեանս շաղկապին (p. 86₉) pertinens || 18—19 haec, quae uncis saepsi, ad



նիանութիւն սորա յայտնեաց հանդերձ անուամբ: Իսկ զզաւրութիւն սորա ես բացայայտեցից:

Ասի շեշտ սուր, բութ ծանր, պարոյկ՝ շուրջառ: Երկար՝ երկայն, սուղ՝ կարճ: Թաւ՝ խոշոր, սոսկ՝ լերկ կամ ողորկ: Ապաթարծ՝ առանց, ենթամայն՝ ներքսաղրական, ստորատ՝ ներքեւահատ:

Իսկ ասելն թե առոգանութիւնք են սեռականք երեք, այսինքն առոգանութիւնք ազգականք: Ու առոգանութիւն վասն այնորիկ ասէ, սակս այսր եւ անդր դառնալոյ բանին եւ զբազումս ամփոփելոյ: Իսկ ազգական վասն այնորիկ ասէ, զի ազգ ի բազումս հատանի, յեղբայր եւ ի քոյր եւ ի քեռի եւ կամ որք միանգամ ասին յարենէ քումմէ: Այսպէս եւ սոքա եւ բաժանին յերիս տեսակս այսպէս, ոլորակ անուն բաժանի ի շեշտ, ի բութ, ի պարոյկ. ամանակն՝ յերկար եւ ի սուղ. հազագն՝ ի թաւ եւ ի սոսկ: ⸢Իսկ կիրքն՝ յապաթարց, յենթամայ եւ ի ստորատ: Ու արդ է ոլորակդ ոլորակ⸣. իսկ ամանակդ՝ ժամանակ, հազագդ՝ բառ, իսկ կիրքդ պատահումն:

Արդ ոլորակդ, այսինքն դոյն ծնանի զշեշտ եւ զբութ եւ զպարոյկ: Իսկ ժամանակն՝ զկարճն եւ զերկայն: Իսկ բառդ՝ զխոշորն եւ զողորկն: Իսկ պատահումն՝ զբացաբարձումն գրոյ ի միջոյ վանգին, կամ կցեալ զգիրն ի յանգի վանգին, եւ կամ ի բաց բառնալ դարձեալ ի վանգէն:

Արդ ոլորակացդ աւրինակ ասացաւ ի տեղւոջ իւրում: Իսկ զողորկ եւ զխոշոր ի բառ ի գրոց թուացն իմասցիս, յորս թաւքն պատահին ի վանգս եւ նոքա թաւք ասին: Իսկ յորս լերկքն, նոքա ողորկք: Իսկ յորժամ գիր ինչ յանգի անուան

pronomen pertinere videntur, sed ita confusa depravataque sunt, ut intellegi nequeant; iisdem caret E || 4 սուղդ] add որ սղացուցանէ $M_3$ | կարճ—ողորկ] om $M_1$ $M_3$ | լերկ կամ ողորկ E, ողորկ կամ լերկ $M_2$ || 8 ազգականք: Ու առոգանութիւն om $M_3$ (առոգասացութիւն $M_2$) || 15—16 quae uncis circumclusi om M || 18 Արդ է սեռ $M_3$ ոլորակդ եւ դոյն ծնանի J | դոյն] om $M_2$ | որ ծնանի $M_3$ || 19 ժամանակն ... M | բառդ] բարդ $M_1$ $M_2$, հազագդ բարդ $M_2$ || 20 զողորկն] զոլորակն $M_1$ | զբացբարձումն $M_3$ || 21 ի յանգի] ի վերջոյ $M_3$ || 23 ոլորակացդ] ոլորակ, այն $M_1$, ոլորակ, այս $M_2$, ոլորակ այնր աղագաւ $M_3$ (om աւրինակ), fortasse emendandum ոլորակ, այնր աւրինակ || 24 ի բառ] բառ $M_3$ J || 26 ante Իսկ յորժամ J apponit notam: Իսկ տեսաք եւ զայս գրեալ եթէ յորժամ etc.

դիցես յաղագս ցուցական գիրն առնելոյ, որպէս մարդս, մարդդ, մարդն եւ կամ մարդքս, մարդքդ, մարդքն, այսոքիկ ենթամնականք: Արդ այս քեզ յաղագս տասն առոգանութեանցն:

Եւ արդ դարձեալ եւս ասէ զորպիսութիւն եւ զզանազանութիւն ոլորակացդ ճշմարիտ եւս աւրինակաւք:

Արդ ասէ թե շեշտոլոր անուն է, որ յանգին ունի զոլորակն, որպիսի Սահակ. այսպէս ամենայն անուանք որ ի վերջին հեգին ունին զայբ կամ զեչ կամ զին, ամենեքեան նոքա յանգաշեշտ ասին:

Իսկ ասելն թե յարաշեշտ<ոլոր> անուն է, որ նախ հեգով յանգէն ունի զոլորակն, որպիսի Պե՛տրոս, այսինքն ամենայն անուն, որ միով հեգով յառաջ քան զվերջին հեգն ունի զայբ կամ զեչ կամ զին, ամենեքեան նոքա յարաշեշտք ասին:

Իսկ ասելն եթե նախայարաշեշտոլոր անուն է, որ նախ երկուք յանգէն ունի զոլորակն, որպիսի Դի՛կղիկոն, այսինքն ամենայն անուն, որ երկու հեգով յառաջ քան զվերջին հեգն ունի զայբ կամ զեչ կամ զին, ամենեքեան նոքա նախայարաշեշտք ասին:

Արդ ասէ եւ յաղագս պարուկին: Եւ արդ ասելն եթե պարոյկ անուն է, որ յանգին ունի զպարոյկն, որպիսի Հերակլէս, այսինքն է ամենայն անուն, որ ի վերջին հեգին ունի զէ կամ զով, ամենեքեան յանգապարոյկք ասին:

Իսկ արդ ասելն թե յարապարոյկն անուն է, որ նախ հեգով յանգէն ունի զպարոյկն որպիսի Պաւղոս, այսինքն ամենայն անուն, որ միով հեգով յառաջ քան զվերջին հեգն ունի զէ կամ զով զմի ոք յերկբարբառոցն, ամենեքեան նոքա յարապարոյկք ասին:

(Իսկ որք միանգամ յառաջ քան զվերջինն երկու հեգաւք

DISCREPANTIAE CODICUM. 2 մարդդ] om M | եւ կամ մարդքս] om $M_3$ || 3 ենթամնայականք J || 23 Հրակլէս E $M_2$ $M_3$ || 27 հեգով] եգով $M_2$ || 30—219 5 quae uncis saepsi aliena a Stephano censenda sunt || 30 հեգովք $M_3$.



ասին, Ցովսէպոս եւ կամ Կղաւդիոս, ամենեքեան նոքա յարապարոյկք ասին:

Իսկ չորեքհեգեան կամ հինգհեգեան անուանք, որ առաջին հեգին ունի զէ կամ զով կամ զմի ոք յերկբարբառոցն, ամենեքեան նոքա նախայարապարոյկք ասին եւ այս ցայսվայր):

Իսկ յաղագս բութ ոլորակին վասն այնորիկ ոչ ետ զաւրինակն, վասն զի դիւրին է գիտութիւն նորա ի սոցանէ, վասն զի ամենայն անուանք, յորս ոչ են շեշտք եւ պարոյկք ձայնաւորք կամ երկբարբառքն, այլ եթիւ, ոյիւ են շինեալ, ամենեքեան նոքա բութք են: Այսոքիկ են խրատք վերծանութեան:

DISCREPANTIAE CODICUM. 1 եւ կամ Կղաւդիոս] om $M_3$ || 4—5 կամ զմի — սոքա] որ $M_3$ || 5 նախայարապարոյկք] նախապարոյկք $M_1$, նախայարաշեշտք J | եւ այս ցայսվայր] om $M_3$ || 9—10 եթիւ, ոյիւ—վերծանութեան] հիւնիւ եւ ոիւ բութ է $M_3$.

# V

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԵՒ ԿԻՏԱՒՆՑԻ

ՈՐԴՒՈՅ ՎԱՍԱԿԱՅ ՄԱՐՏԻՐՈՍԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ

V

## GREGORII MAGISTRI ET CUBICULARII

FILII VASACI MARTYRIS

## COMMENTARIUS IN GRAMMATICAM

# ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԵՒ ԿԻՏԱՒՆՏԻ

ՈՐԴՒՈՅ ՎԱՍԱԿԱՅ ՄԱՐՏԻՐՈՍԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ

ԶՈՐ ԵԴԵԱԼ Է ՁԱՅԼՈՅ ԵՒ ՅԻՒՐՈՅ ՅՈՒԵԼԵԱԼ ՅԻՄԱՍՏԻՑ

### ‹Ա ՅԱՂԱԳՍ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ›

M 25 E 49 *Քերականութիւն է հմտութիւն որք ի քերդողաց եւ ի շարագրաց իբրու բազում անգամ ասացելոց։ Անուն իսկ քերականութիւն գրականութիւն ասի ըստ Հոմերոսի, որպէս յառաջ երեւեալ ասէ։ Իսկ եթէ էր աղագաւ կոչեցաւ քերականութիւն. իբր քերեալ հիւսանց զփայտ եւ զփտեալն ի նմանէ կամ զթիւրեալն կամ զոստոն ճախարակաւք եւ այլ եւս գործարանաւք ջան տարեալ ուղղել զնա եւ մաքրել. Նաեւ անաւթս ինչ առնել կամ այլ ինչ գործի կամ կենդանատեսակ եւ այս ի ձեռն քերուածոյ կամ որպէս ի ծողածեւ մորթէ գործք, որք արտաքոյ եւ ներքոյ քերուածովք զմորթսն կազմեն, զոմանս արուեստի գրչութեան որպէս մագաղաթ եւ քեմուխտ եւ կամ որպէս ոսկերիչք յոսկի եւ արծաթ եւ կամ դարբնաց յերկաթ եւ ի պղինձ եւ ի միջէ ենթակայէ բազում տեսակս ստեղծեալ եւ մետաքսագործք կերպասի ի միջէ բազում գոյնս եւ ստեւս պարզ եւ յստակս եւ ծայրագոյնս փողեն աւքսոյն։*

*DISCREPANTIAE CODICUM* M E J. 1 *Մայկիստրոսի* $M_1$ $M_3$, *Մաժիստրոսի* $M_2$ || 2 *Կիտաւնտի* cfr *Գրիգոր Մագիստրոսին Կիտաւնտին*, Vimacan Taregir p. 23, *կիտաւն‹ի›տ*=κοιτωνίτης *cubicularius* || 4 *յիւրոց—իմաստից*] *զիւրոց յաւելուածոց միտս* $M_2$ || 5 *հմտութիւն*] *add իմաստից* $M_1$ $M_3$ || 6 *եւ ի շարագրաց*] om $M_1$ $M_3$ || 11 *Նաեւ*] *եւ* $M_3$ J | *առնել կամ այլ ինչ*] *պիտանիս եւ* J || 13 pro *եւ այս ի ձեռն քերուածոյ*] *ինչ կազմեալ* J | *ծողածեւ* $M_2$, *կողածեւ* $M_1$. om J || 14 *քերուածովք*] *քերածով* E, *քերուածքով* M (om $M_3$) | *յաղագս*] om M E || 15—19 *մագաղաթ—փողեն աւքսոյն* $M_1$ $M_2$ E, *փողեն ոքսոն* $M_3$; vox *ոքսոն* incerta; ad verba *ըստ նմանութեան ոքսոնի իւրքեայ* in versione armeniaca Vitae Evagrii (ed Venetiana p. 5) commentator quidam notat: *այնպէս արագագիր էր որպէս այն ճանճքն, որ ի*

Այսպէս բնական եւ մտաւոր կենդանիս այս մարդ ունելով բնութեամբ ենթակայ զքանականութիւն եւ զմտաց եւ մակացութեան ընդունակութիւն, սակայն խառնաղանճ եւ հոծ եւ անյարմար, որպէս յառաջագոյն քան զմեզն ասացին:

ՍՏԵՓ› Իւրաքանչիւր որ—ուղղախաւսել: =183$_3$–7.

M 26 E 33 Որպէս եւ արդ իսկ բազում|մք ի մէնջ ոչ գիտելով զգիր եւ զվանգ կամ զչափաւորութիւն եւ զկշիռ, ուղիղ խաւսին պարզաբար, եւ ոմանք ի մէջ ամենեւին թիւր եւ անյարմար դաւանութեամբ իբրու զաւրէնս ստացեալ ունին եւ ոչ երբեք զձայնակիցս կամ զլծորդս փոխանակեն իբր զմանկանց կամ զպատանեաց, որպէս զխէ փոխանակ հոյի գիտեալք կամ զճա՝ ծայի եւ զայլս ոմանս բազումս, զոր հանդերձեալ եմք ասել: Արդ այսպէս եղելոյ յառաջագոյն, որպէս վերագոյնն ասացաք,

ՍՏԵՓ› յոգունց նախ քան—մարմին զգիր: =183$_8$–184$_2$.

E 38 Եւ ընդէր անմարմին. քանզի պտուղ է հոգւոյ եւ պարտ է անմարմնոյն անմարմին լինել ծնունդ առանց հատուածոյ եւ չարչարանաց. թեպէտ եւ յայլսն անմարմինս հաստատելով մեր չարչարանաւք եւ հաստանելով ի մէնջ տրոհի, քանզի խորհելն չարչարանաւք է եւ ստեղծանելն ինչ խորհրդոց եւ մտածութեանց, իսկ ասելն լեզուաց եւ այլոց գործարանաց. եւ այս է հաստանելն: Սակայն ոչ իբր զմարմնական ծնունդ ախտի եւ վատթարագոյն մոլութիւնս կոչել զսա պարտ է:

վերայ ջրին կենան եւ դիհաց դիհ վազեն, ոքսոն այն է որ ասեն: Ու այլք թէ գալիր մի կայր ճարտար Աղէքսանդրու հայրապետին, զայն կու ասէ: Ու այլ՝ թէ զոքսոն դիպակազործքն, որ փութով զարուեստն յանգին, այնոք նման է, ib; haec explicationes omnes falsae sunt, nam vocabulum ոքսոնի իւրքեայ, corruptum ex ոքս(ոնի) իւր‹ոն›քեայ, reddit graecum ὀξύρυγχον χαρακτῆρα, quod speciem scripturae significat. Neque ultima vocis ոքսոն intepretatio, quae ab hoc Magistri commento profecta esse videtur, recte se habet || 2–3 եւ զմտաց—ընդունակութիւն] om E (legit J) || 3 հոծ] $M_2$ corrigit in անհոծ || 5 ՍՏԵՓ› hic et deinceps nomina auctorum e latere a me hoc modo addita sunt secundum notationes Erzencaiensis || 6 արդ] այժմ $M_3$ || 7 ոչ զվանգ $M_3$ | զչափաւորութիւն] զփաղառութիւն J | ուղեղ $M_1$, ուղիղ $M_2$ J, ուղիւղ $M_3$ || 9 երբեք] իբրեւ $M_2$ || 10 փոխանակեն] փոխանակել զիտեն E || 11 զխէ] զի է M | գիտեալք] զտեալք M, om $M_3$ || 12–13 զոր—ասել] զոր ի լծորդութիւնս ասասցուք E || 14 ad verba Արդ—զգիր v. supra 183 adnot || 18 հաստանելով մեր] om E J || 20 ինչ] add դատողմէ E || 21 լեզուաց] լեզուոյ $M_2$ J || 22 զսա] զսոսա $M_2$.



ՍՏԵՓ› Եւ արդ զտեալ զգիր—այլք մի ըստ միոջէ: =184$_3$–4.

M 26 E 42 Եւ որպէս վերագոյն ասացաք, | զքականութիւնս այս վասն այնորիկ կոչեցաւ քերականութիւն, զի ի քանականէ ատրի զվճիտն եւ զմաքուրն եւ զամենեւին առանց բծի եւ կարծեացն արտաքս բերել իբրու ի քրայէ զմաքրագոյնն եւ զհրատեսակն ոսկի, անուանեցին զնա քերականութիւն եւ իբրեւ զարճան ի մահարճանաց կամ զաշտարակ կանգնեալ կամ եթե նպատակս ինչ եւ դրոշուածս ի ճանապարհի հաստատեալ, զի ծանիցեն զճանապարհն ուղեղ եւ այնու ոչ մոլորեալք երթիցեն ի պաղատն արքունի եւ մի խոտորիցին: Այսպէս քերականութեամբս մտանել յամենայն արհեստս իմաստասիրութեան պարտ է:

E 34 Իսկ եթէ ո ոք եղեւ յարմարիչ քերականութեանս զկնի այնոցիկ, ասեն զՀոմերոս եւ որք առ նովաւ յայնմ ժամանակի զայսոսիկ խոկային: Իսկ պարտ է մեզ ասել զՀոմերոս թե ուստի եւ կամ յորմէ ազգէ եւ գաւառէ:

Հոմերոս էր որդի Մեղամպոդոսի, այսինքն Սեւոտան, եւ մաւր Եւմիտեայ, յազգէ Հոմնիսեայ: Եւ սոքա էին տաղասացք եւ երգեցիկք եւ քերողք: Եւ էր սա ի գաւառէ Զմիւռնիա ի քաղաքէ յունաց բնակեալ անդ. եւ էր գետ մի, որում անուն յորջորջիւր Մելէս եւ կոչէին զՀոմերոս Մելեսածին:

Եւ յետ այսորիկ պատերազմ եղեալ ընդ Զմիւռնացիսն Կողոփոնեացն եւ պատանի զոլով Հոմերոս ասէ ցԶմիւռնացիսն. „ես կամիմ ճեզ հոմերանալ", այսինքն զլինելոցն զուշակել ճեզ: Եւ բնակեալ ի տան Քիքոսի, կուրացեալ ի պատահմանէ չար

DISCREPANTIAE CODICUM. 3 ի քանականէ] ի քանականութենէ J || 4 բծի եւ] om J || 5–6 արտաքս—եւ իբրեւ] յառաջ եկեալ քանս արճանացաւ իբրեւ J || 7 կամ զքարձր կանգնեալ աշտարակ E || 8 եւ դրոշուածս] եւ ձողս ինչ $M_3$ | հաստատեալ] կանգնեալ E $M_3$ || 8–10 զի ծանիցեն—խոտորիցին] զի ծանիցեն ճանապարհորդք եւ անմիլար երթիցեն ի պաղատն արքունի J || 13 ասեն] հռչակաւոր ի յոքունս ասեն] E J, cfr p. 183$_8$ || 12–13 Իսկ—զՀոմերոս] Բայց նախ ուս‹ց›ուք յաղագս Հոմերոնի] J || 17 սեաւ ոտան $M_3$ J || 18 Եւմիդեա $M_1$, Եւմիտիդեա E $M_3$, Եւմիտիդայ $M_3$, Միոյիդեա | Հոմնիսեա $M_1$, Հոմնիսա $M_2$ E J, Հոմնեսա $M_3$ || 20 յորջորջիւր] էր $M_3$ | զՀոմերոս $M_3$ J, Հոմերոսի $M_1$ || 21–22 Կողոփոնեացն E, Կոլոփանեացն $M_1$, Կողոփանեացն $M_2$ J, Կողափանեացն $M_3$ || 23 զլինելոցն] զեղելոցն $M_2$, զհանդերձելոցն $M_3$ || 16 et sq. quae de Homero aguntur cfr Suidas v. Ὅμηρος: Μητίου καὶ Εὑμήτιδος μητρός τοῦ δὲ Μελάνωπος, Μέλης, Μελεσιγενής.

ախտից եւ ոխակութեանց, կոչեցաւ Հոմերոս, քանզի Հոմերոս կուրութիւն թարգմանի: Արդ յաղագս սորա բազում են պատմութիւնք եւ անուանադրութիւնք, սակայն այժմ ոչ պարտ վարկայ ՛զամենայն ընդ գրով արկանել՛, զի բաւական է այս: Արդ քերականութիւնս առ ի սմանէ յառաջ եկեալ եւ որք առ սովաւ եին յայնմ ժամանակի իմաստունք:

ԴԱՒԻԹ› (Եւ) թե էր աղագաւ—ինչ որ ոչ լսի բան: $79_{3}$–$84_{11}$.

(M 33, E 44) Քանզի բազում անգամ ասացելոցն յայնցանէ ջան տարեալ եւ յինքենէ յաւելուլ հարազատաբար, քանզի ոչ էր նոցա այլ ինչ եթե ոչ ասել ինչ նորագոյն կամ լսել:

(E 43) Արդ այս Դիոնիսիոս Թրակացի գտեալ զգիրս զայս, որպէս վերագոյն ասացաք, սակայն անոճ եւ անյարմար զնա կարգեալ մինչեւ յարամանեալ շարագրեաց զսա հանդերձ իւրովքն գիտիւք եւ ասէ քերականութեամբս լինել հմուտ ամենայն իմաստից եւ խոտրութեամբ մաքրել զբան եւ զբայ եւ զգիր մաքուր եւ վճիտ առասութեամբ:

(E 45) Վասն որոյ հմտանալն խնդրէ բազում անգամ ասացելովքն որք ի քերդողացն եւ ի շարագրացն բանաստեղծութիւնք եւ առասութիւնք եւ առասպելավարժութիւնք ասին, այսոքիւք հմտանալ եւ յոգնաքեղուն տրոհմամբք եւ յեղանակաւք եւ ներկուռ կրթութեամբք:

ՄՏԵՓ› Եւ լինի հմտանալ—ասացելոց: =$184_{8}$–$185_{6}$.

ԴԱՒԻԹ› Իսկ ասելն եթե մասունք—ըստ պատույ: =$84_{11-23}$.

ՄՏԵՓ› Իսկ զի մասունս ասաց—արդեաւք իցեն: =$185_{7-23}$.

DISCREPANTIAE CODICUM. 1 քանզի Հոմերոս] որ $M_3$ ‖ 3—6 սակայն—իմաստունք] այլ այդորիկ այժմ բաւականասցին. յաղագս սքանչելոյ առնն, յորմէ արհեստ քերական բանից ի սմանէ գտեալ եղեւ եւ ապա յայլոց ոմանց, որք եւ յետ սորա եղեն, որպէս եւ այս իմաստասէր, զորոյ զգրեալ զգիրս ունիմք, (զ)որ եւ յիշեսցի ի տեղւոջ իւրում E ‖ 4 uncis saepta apud J solum ‖ 8—9 տարեալ] տանել $M_3$ ‖ 10 եթէ—լսել] քան ասել եւ լսել ինչ նորագոյն E ‖ 11—16 Արդ այս Դիոնիսիոս—առասութեամբ] similia praebet E, sed inter scholia Այլ: Դիոնիսիոս ոմն Թրակացի, գտաւղ քերականութեան զեղեցիկ արուեստից եւ զի թեպէտ զգիր եւ զխոտրութիւնս նորին եւ զոտից զչափ յառաջ քան զսա եգիտ Հոմերոս եւ այլք ոմանք, սակայն թերակատար եւ անյարմար թարց մասանց գտելոցն ի սմանէ: Իսկ սա զառաջնոցն շարադասեաց զկնի միմեանց հանդերձ իւրովքն գիտիւք, զոր եւ կոչէ քերականութիւն, ասելով է հմտութիւն ‖ 16 առասանութեամբ $M_2$ ‖ 17 ասացելով $M_2$ ‖ 19 առասացութիւնք $M_2$.



(M 34, E 46) Իսկ եթե է՞ր աղագաւ սահմանեցին զսա վեց. քանզի սա է դուռն ամենայն իմաստութեան եւ կրթութեան, քանզի թե ոչ գիտէ զգրականութիւն եւ զգրչութիւն եւ զխոտրութիւնս, զիա՞րդ յիմաստասիրութիւն կարիցի ամբառնալ, քանզի պարտ էր աստիճանաւքս այսոքիւք ելանել ի կատարեալ իմաստասիրութիւն, որպէս ասեն իսկ եթե քերականն գիտէ, զի էն եւ աւն բնութեամբ երկարք են, այլ եթե է՞ր աղագաւ երկարք են, ոչ գիտէ: Պարտ էր զծննդական թիւ զայս դնել մայր եւ սկիզբն գիտիցս, զի սոքաւք յանհատսն վարել կարասցէ եւ զբնական հոգիս այս յարդարել, քանզի որք ոչ գիտեն զքանականութեան մանկունսն եւ զտրոհմունսն եւ զքաղդատութիւնս, թուի ինձ թե իբրեւ զպղինձ կամ զայլ ոմն գործարան հնչեն:

Իսկ վեց թիւ յերկուս ճեղքեալ արականս զնոսա գործէ երիս զոլով, իսկ թուականութիւնն երկուս. եւ յերիս ճեղքեալ զնոսա երիս երկուս մասնատրեալ, իգական զենթակայն ունելով, քանզի երեք երկու են եւ երկու երեք. եւ երկուն թիւ իգական է եւ երեքն թիւ արական: Եւ ահա արական եւ իգական սորա կրելով լինի ծննդական. քանզի ոչ զայլ ոք ի թուոցն, որ ի խոնարհ քան զտասնեակն, գտցես այսպիսի բայց միայն վեցս: Եւ ասեն ոմանք եթե քանզի կատարեալ է թիւս այս եւ բանական կենդանի մարդս, վասն որոյ այս արհեստ է, ի վեցերրորդումն ստեղծանի աւուր: Եւ զի

ՄՈՎՍԷՍ› մասն ի բոլոր է—տրոհել իրաւացի· =$160_{1-9}$.

ԴԱՒԻԹ› Իսկ եթե էր աղագաւ—դիւրաւ լուիցի: =$84_{23}$–$85_{14}$.

ՄՏԵՓ› Իսկ ասելն եթե ներկուռ—բայից (=$185_{24}$–$188_{1}$)

ՄՏԵՓ (ՄՈՎՍ.)› վասն զի յանմտութենէ—անաճից: =$188_{1-22}$.

DISCREPANTIAE CODICUM. 2—3 թե ոչ գիտէ] ոչ $M_1$ ‖ 4 կարիցի] կարէ $M_1$ ‖ 2—4 քանզի—քանզի] om E ‖ 5 այսոքիւք] սոքաւք իսկ E, այսոցիկ $M_2$ ‖ 5—6 իմաստութիւն E $M_2$ ‖ 6—8 որպէս—ոչ գիտէ] om E, cfr Սահմանք փիլիս. p. 151 ‖ 6 ասէն $M_2$ ‖ 7 աւն] ոմն $M_3$ | այլ] բայց $M_3$ ‖ 8 Պարտ էր—զայս] Եւ զի ծննդական է թիւս այս, պարտ էր զսա դնել E ‖ 10 այս] յայս $M_2$ | յորդորել $M_3$ ‖ 13—15 Իսկ վեց—զնոսա] Եւ ծննդական զոլով վեց թիւդ, զի յերկուս ճեղքեալ, արականս զսա գործէ, երկու երիս զոլով եւ յերիս ճեղքեալ զսա E ‖ 15 երկուս] յերկուս codd ‖ 17 թիւ om E $M_2$ ‖ 19 ի խոնարհ քան զտասնեակն] ի ներքոյ տասնեկին E ‖ 21 կենդանիս այս մարդ, որոյ E ‖ 22 ստեղծանի] ստեղծաւ E; cfr Philonis Այլաբանութիւն p. 106; Լինելութիւն p. 101; Սահմ. փիլիս. p. 152-3.

ԴԱՒԻԹ› Քանզի ստուգաբանութեան ձեւք—եւ եթ: =$85_{15-19}$.

ՍՏԵՓ (ՄՌՎ.)› Ու յաւելուն եւ այլեւս—եւ ոչ հանդիպեսցիս ստուգաբանութեանն: =$188_{26}$–$190_{9}$.

M 39 E 53 Իսկ են բազում անուանք առ մեզ ընտանեգոյն յայլոց լեզուաց եւ ի մերձակայից, որք ոչ ստուգաբանին: Ու եթե կամեսցի ոք, ոչ ուղղապէս թեւակոխէ, այլ խորթս ստեղծանէ: Քանզի որ ոչն էր անկ մեզ եւ ոչ գիտ, առեալ յայլ ազգաց, նովին անուամբ պահեցաւ մինչեւ ցայժմ. եւ զայն եւս, յորժամ հարցեալք լինիմք, ասեմք յայլոց լեզուաց — քանզի եւ նոքա ի մէնջ զորս ոչ ունէին զտեալ մերոյին Արամանեան անուանակոչութեամբ պահեցին—որպէս փակեղն, որ է յունարէն, քանզի ոչ զոյր մեր եւ ոչ էր սովորութիւն. եւ սուտրա, որ է սպիքուռ. եւ կաղամար, որ է կալամառ, այսինքն աման գրչի. եւ այլ ինչ բազում զոր ընտանացեալ մեզ ունիմք. եւ ոչ է բազմաց զսա գիտել բայց իմաստնոց:

Այսպէս եւ նոքա. զի ոչ էր սովորութիւն յունաց հող գործել եւ կիթ եւ ուտել ի մէնջ զմածուն եւ նովին անուամբ կոչեն զնա, ոչ գիտելով զստուգաբանութիւն եթե մածուն քանզի մածեալ է, սոյնպէս եւ անուանի: Ու ոչ ունելով նոցա սովորութիւն զգենուլ կապա, ի մէնջ առեալ, ոչ ուղղախաւսեն, այլ անուանեն զնա կովա: Ու զգործ մատին ոստայնանկութեան զոր այժմ առ մերս գործի եւ մեսխուր անուանեմք զնա ըստ վրաց, իսկ նոքա մեսխիկա: Նոյնպէս եւ թռչնոց, սակս ոչ ունելով ճէ նոցա, յորջորջեն զճուռակն ծուռակ, որպէս եւ ոչ եղելոյ լուղակաց որ ի մերում զաւառի նովին ձայնիւ կոչեն զամարն աման եւ զայլսն ամենայն. եւ զորսոցն՝ զտուռէճն դուռէծ եւ զտահուճն տահուծ եւ այսոքիկ բազումք եւ ոչ գի-

DISCREPANTIAE CODICUM. 6 ոք] add նա եւ թե առաւել եւս ստիպէ J | թեւակոխեսցէ $M_3$ || 7 գիտ] պիտոյ $M_3$ || 8 նովին] նովիմք $M_2$ J || 10 Արամանեան $M_2$, Արամեան ceteri || 11 փակեղն φάχελλος || 12 զոյր մեր] ՙէր $M_3$ | սուտրա شدره sudra | սպիքուռ] սպիտուռ $M_2M_3$ || 16 գործել] om $M_2$ || 19 անուանի] զանունն ունի $M_3$ || 17 կապա قبا kaba || 21 կովա] կովատին $M_3$ || 22 մեսխուր] մեսխուրան $M_3$ || 23 մեսխիկա fortasse e nomine gentis Moschorum მესხური մեսխուր, graece μεσχική || 24 ճուռակ جرّه ǧurra, τζουράκιον || 26 դուռէճ تراج turaǧ || 27 տահուճ طاوس ταῶς pavo.



տեն զնա: Այսպէս եւ բազում ինչ յարաբացւոցն ունին նոքա, որպէս զայծեամն՝ խազալթան եւ այլ ինչ անուանս:

Իսկ մեր ի պարսից բազում ինչ ընտանեբար ուեալ զգեստս, որպէս դուռա եւ ռիդէ, մարքաբ, աւազան, որ է ջրոյ անաւթ, զաւազան որ է վարիչ արջառոյ, խարազան որ է վարիչ իշոյ եւ այլք այսպիսի բազում, որ զրեթէ հասարակորդ է լեզուիս մերոյ: Սոյնպէս եւ մեր առ նոսա, զոր եթե ստուգաբանէ ոք, մեծագոյն սխալէ, քանզի բազում անգամ եւ մեր իսկ տեսեալ է ստուգաբանել մերոցս զայսպիսիս, որք յայլոց լեզուաց են, եւ որք իմաստունք կարծեցեալք եին. եւ այն յանհմտութենէ լեզուաց: Քանզի

ԱՆԱՆ› ստուգաբանութեան գիտ — ստուգաբանէ: =$128_{8-11}$.

ՍՏԵՓ› Ու դարձեալ ասէ զհամեմատութեան—թողաւ յաշխարհի: =$190_{10}$–$191_{12}$.

Ու այս ցայսքան բաւականացի:

## ‹Բ› ՅԱՂԱԳՍ ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ

‹ԴԱՒԻԹ› Վերծանութիւն նախադասեալ—քաջայայտ է:

ԴԱՒԻԹ› Բայց զարմանալ զոյ—քերդողքն: =$86_{16}$–$87_{17}$.

M 42 E 58 Երրորդ՝ զի թե ոչ նախ կրթութեամբ զվերծանութիւնս ուսցի եւ տիրապէս զնորայն յառաջբերութիւն, զիարդ կարասցէ շարագրել որում ոչ էր հմուտ: ⌜Յաղագս այնորիկ նախադասեալ եղեւ վերծանութիւն քան զշարագրութիւն⌝,

ԴԱՒԻԹ› ըստ որում ապա—ծաղր եկաց: =$87_{18}$–$88_{8}$.

ՍՏԵՓ› Ու վերծանութիւն է — մասանց ենթադասութեան: =$191_{14}$–$192_{16}$.

ԴԱՒԻԹ› Իսկ ոչ ուղիղ տրոհելն—քերդողաց: =$88_{10-17}$.

ՍՏԵՓ› Իսկ ասելն եթե ի նառոգութենէն—առեալ զքերդողացն: =$192_{17}$–$193_{4}$.

(ԱՆԱՆ)‹ԴԱՒԻԹ› Իսկ ողբերգութիւն—ըստ իւրում պատշաճի: =$89_{2-11}$.

DISCREPANTIAE CODICUM. 2 խազալթա غزالة || 4 դուռա دراعه durrā'a ռիդէ ردا rida | մարքաբ مركب merkab || 5 վարիչ] բշիչ $M_2$ || 10 որք] որ E | կարծեցեալ $M_1$ || 11 post լեզուաց] E habet notam: եւ արդ—գիտութեամբ v. p 85. adn. 15—19 || 19 կրթութեամբ] խոկութեամբ $M_2$ || 21—22 uncis inclusa om E.

ԱՆԱՆ> Քանզի զողբերգութիւնն—քերդողացն է. =128 8–12.
ՍՏԷՓ> Նաեւ մխիթարական—վաղճանեցելոցն: =193 6–9.
(ԴԱՒԻԹ) ԱՆԱՆ> Իսկ ասելն եթե զկատակերգութիւն աշխարաւրէն. կատակերգութիւն արարած է քերդողաց, յանդիմանութիւն.
ՍՏԷՓ> վատ կենցաղավարելոցն եւ անարի եւ ծուլիցն եւ ընչասիրաց. =193 10–11.
(ԴԱՒԻԹ) ԱՆԱՆ> որ ունի խրատս եւ յանդիմանութիւնս, պիտանացու յաշխարհա‹կա›ն հ(ւ)րս. =128 15–16.
ՍՏԷՓ> եւ ի վերայ այսպիսեացն—յընթեռնուլն զայնոսիկ: =193 12–14.
ԱՆԱՆ> Ու զդամբանականն ուժգնակի—յընթեռնուլն: =128 17–20.
ՍՏԷՓ> Իբրեւ կսկծողական—զվշտացեալսն: =193 16–18.
ԱՆԱՆ> Իսկ քաջոլորակի տաղ ասի—տաղուն: =128 21–129 12.
(ԱՆԱՆ) ԴԱՒԻԹ> Դարձեալ տաղ ասի—ողբերգակին: =89 15–22.
ՍՏԷՓ> Դարձեալ զտաղն քաջոլորակի—առնելոյ: =193 19–22.
ԴԱՒԻԹ> Իսկ ասելն զքնարական—ինչ քերիցէ: =90 2–6.
ՍՏԷՓ> Դարձեալ զքնարական զքերդութիւնսն—յընթեռնուլն հանդիպի: =193 23–194 5.
ԴԱՒԻԹ> Ըստ ասացեալ—երեւեցուցանէ: =90 9–13.
ՍՏԷՓ> Վասն զի առ քերդողսն է զրեալ—ցուցանէ: =194 8–12.

## ‹Գ› ՑԱՂԱԳՍ ՈԼՈՐԱԿԻ

ՄՈՎՍ.> Աղբիւր արուեստից—ի սկզբանն իրում: =160 13–161 4.
ԴԱՒԻԹ> Իսկ զի աւէ բացազանչութիւն — բարբառոյ է: =90 16–91 13.
ԱՆԱՆ> Իսկ ասելն եթե ըստ վերսաստութեան — երամոցն: =129 18–130 3.
ՍՏԷՓ> Ու քանզի աւէ եթե ոլորակ է—ի ստացողէն եղիցի: =194 14–197 12.

Արդ (արար) յաղագս ոլորակի եւ շեշտի եւ բթի եւ պարուկի, որպէս վերագոյնդ ասացան արհեստք սոցա եւ տրամախոհութեան նշանակք, բաւական է: Ու դարձեալ հանդերձեալ եմք ուսանել յառաջիկայումն առոգութեանցն ճառի եւ զարուեստսն իսկ եւ զնշանակութիւնսն եւ զապացոյցս: M 49 E 88

Իսկ եթե պարտ է ասել յայսմ փութէ զմերս վեհերոտ ազգի ոչ ըստ տրամախոհութեան զսա ուղղապէս վարեցեալ յազգիս: Քանզի ի վախճանելն մերոց թագաւորացն եւ ի սպառելն ազգին Արշակունեացն զտաւ գիրս Արամեան. եւ թեպէտ հզաւր գոլով մերոց թարգմանչացն ամենայն լեզուաց եւ իմաստութեանց, սակս ոչ լինելոյ քաղաքականութիւնս եւ արքունական ապարանս եւ մանկակրթութիւնս (եւ) խնդիրս այսպիսի բարձրագոյն զիտի կրաւնաւորաց միայն եղեւ փոյթ յանձին ունել սակաւուց, իբրեւ զաւանդութիւն հաւատոյ պահել եւ ոչ վարել սոքաւք զղպրութիւն մերոյ լեզուիս. յայսմ պատճառէ, եթե (ոչ) որք այսմ հետեւեցին, ոչ երբեք սխալեցին:

## ‹Դ› ՑԱՂԱԳՍ ԿԻՏԻ

Կէտ է պատճառ գծի ոչ ունելով երկայնութիւն եւ ոչ լայնութիւն եւ ոչ խորութիւն:
ՍՏԷՓ> Իսկ ասելն եթե կէտ է—եւս աւելի: =197 14–198 27.
ՄՈՎՍ.> Սոյնպէս կէտ եւ որոշումն—ասիցն: =161 6–10.
ԱՆԱՆ> Ու զի ասաց եւ անուանեաց — տրամախոհութիւնն: =130 5–21.
ԴԱՒԻԹ> Քանզի հարկաւոր է յասացուածին—եւ դու առ իս զաս: =91 13–92 4.

## ‹Ե› ՑԱՂԱԳՍ ՀԱԳՆԵՐԳՈՒԹԵԱՆ

ԴԱՒԻԹ> Ցետ որոյ զհագներգութիւնն ասելի է—անգիտանալովն: =92 6–93 2.

M 53 E 85 Իսկ հագներգութիւն, ըստ որում աւէ ի հագնելոյ կարկատուն բանս. կարկատուն բանիւք յարամանին շարամա-

DISCREPANTIAE CODICUM. 30 արար] om E || 31 տրամախոհութեան] տրոհութեան E || 1 նշանակ E || 6—7 ազգին $M_3$ solus || 9—10 արքայական $M_2$ || 12 հաւատոյ պահել] պահել հաւատոց $M_2$ $M_3$ || 14 եթե] եթե ոչ codd exc $M_3$ | հետեւեսցին $M_3$ | երբեք] om $M_3$ | սխալեսցին $M_2$ || 28 յարամանին] յարամա-

նեալ ամենայն մրմունջք եւ երգք զուսանութեան, քանզի բազում բանից պէտք են կարկատել եւ աւարտել զսա, զոր այժմ ի հայումս առաւել քան ի յունականին գտանեմք: Քանզի չափ եւ կշիռ բանի արուեստաւորեալ ներգործեն զայսոսիկ յոյժ չքնաղ եւ դժուարագիւտ եւ հրաշալի առասութիւնս: Քանզի աւարտեն միով գծիւ բազում բանս, եթե զովասանութիւն եւ եթե պարսաւ, երբեմն երիս գիրս յաւարտին ունելով զմիմեանս բախելով եւ երբեմն երկուս. եւ այսպէս ոտանաւորս ստեղծանին վեցոտանիս եւ քառոտանիս:

Եւ թե ուստի այսմ արհեստիս եղեաք տեղեակք. յիսմայելականացն գտեալ զսա բազում ջանիւ կրթեցաք նախ զգոյն եւ լեզուին եւ ապա արհեստին: Քանզի թեպէտ եւ յոյնք զոտանաւորսն ստեղծանեն գիտելով զչափն, այլ ոչ զկշիռն: Իսկ նոքա հմուտ գոլով արուեստին, ամենայն գրեթէ բոլորն Արաբիա սովաւ վարին: Եւ թե ոչ մանկունք նոցա ստեղծանեն նորագոյնս ինչ եւ կատարեալս պատկանաւոր շարամանութեամբ զչափ եւ զկշիռ, ոչ նոցա հրամայեն տալ ամուսին: Եւ այսպիսի բազմաց գրելով ճառս ներբողականս եւ ոչ յայլ ինչ պարապեն քան եթե զայնոսիկ յարմարել նկատեն:

Եւ բազում խնդիր եւ պատուասիրութիւն առ նոսա ցուցանեն թագաւորք եւ պետք նոցա, որ եւ ասեն իսկ եթե միոյ ներբողենի առաւել քան զհնգետասան հազար դենարի տալով արքային Բաբելոնի: Եւ այս ի մերում ժամանակի սակաւ ինչ յառաջ եղեալ, որում արքային անուն կոչի Բեն-ի-խոսրով, իսկ պետիկոսին Մութանաբի: Եւ այս ոչ մի կամ հարիւր կամ հազարից չափ եղեալ, քանզի եւ նոքա իմաստասիրութեան եւ ամենայն բոլոր արհեստից հզաւր գոլով թուականութեան, երաժշտականութեան, երկրաչափութեան, աստեղաբաշխու-

րին E $M_2$ || 2 աւարտել] արատել $M_2$ || 5 առասանութիւնս $M_2$ || 7 երիս] երիրիս $M_1$ || 10 տեղեակ E $M_3$ || 14 գրեթէ] om $M_3$ || 18 այսպիսի] այսպէս ի $M_2$ | ճառս] տառս $M_2$ || 19 պարապել $M_3$ | յարմարեալ E $M_3$ || 20—21 ցուցանեն] om $M_3$ || 21 որ] որք $M_1$, om $M_3$ || 22 հազար] om $M_1$ || 22—23 տալով արքային Բաբելոնի] տալով ծիր արքային Բաբիլոնի $M_2$ $M_3$ post ներբողենի collocata || 24 անուն] om $M_1$ $M_3$ | Բեն-ի-] Բանի $M_2$, Իպնի- E || 25 Մութանաբի E, posta X sec. || 27 բոլոր] բոլորի E post արհեստից | արհեստից] իմաստից $M_2$ $M_3$.



թեան. եւ ոչ միայն այսոցիկ, այլ եւ մասնկանց բոլոր պարառեալ արհեստից՝ բժշկութեան, ոստայնանկութեան: Քանզի յայս միայն են պարապեալ եւ ոչ ունելով այլ ինչ հոգեւոր ընթերցմունս եւ երգս կամ առաքինութիւնս, այլ միայն զոր վերագոյնդ յիշեցաք:

Եւ թե ուստի կամ զինչ պատճառանաւք զսոսա գտին: Սահլ ոմն, որդի Շապհոյ, քաղդէացի եւ Ահարոն քահանայ սոքա թարգմանիչք եւ յոյժ տեղեակք յունական լեզուին եւ արաբացւոց թարգմանեցին նախ զբժշկականն: Եւ իբրեւ ոչ եղեն հասու Ասկղեպեայ եւ Հիպոկրատեայ բառիցն, հարկ եղեւ նոցա զքերականութիւն նախ թարգմանել եւ զճարտասանութիւն եւ զկնի այնորիկ զիմաստասիրութիւն եւ ապա մի ըստ միոջէ: Եւ զի քաղաքականք էին եւ հարստութիւն իսմայէլական ազգին տակաւին բազում, փոյթ կալեալ յանձին, մինչ զի այսպէս գրեալ է ի մատեանս իւրեանց ստուգութեամբ թե որչափ թուղթս թարգմանեալ ցուցանեին արքային, յոսկւոյն յարաբացւոց յազնուէն պարածածկեալ լինեին: Նոյնպէս եւ ի վարժարանսն եւ ի դպրոցսն ի բազում տեղիս, զոր այժմ մերոյս սակաւ ինչ խափանեալ յունաց ասեմ եւ մերոյս ազգի, եթե ի ծուլութենէ եւ եթե յառաջնորդաց մերոց քամահելոյ յարուեստիցս յայսցանէ, կաղացեալ եմք յաստեղաբաշխութենէն, որ քաղդէացւոցն էր գիւտ եւ յերկրաչափութենէն, որ յեգիպտացւոցն — քանզի եւ նոցա այժմ տիրեն նոքա — այսպէս եւ բժշկականութեան: Բայց զարմանամ թե զիարդ յերաժշտականէն ամենեւին պակասեալ գտանին, զոր ի Թրակիա գտեալ, եւ միայն զթուականութիւնն պահեալ յաղագս զանձուցն արքունի:

Ի չորիցն յայնց միոյն մնացեալ ամբողջ, զոր առ եթիոպացիսն, գիւտի քերականութեան վասն գրչութեան եւ ճարտա-

DISCREPANTIAE CODICUM. 1 այլ] om $M_3$ || 6 զսոսա] զսա E || 9 զբժշկականն] զերաժշտականն $M_3$ || 10 բառիցն] բանիցն $M_2$ || 13—14 իսմայելացւոց $M_2$ | տակաւին իսմայել ազինն գոյր $M_3$ || 15 ստուգութեամբ] ստոյգ $M_3$ || 21 յայսցանէ] յայս $M_1$ || 22 գիւտ] փոյթ եւ գիւտ $M_2$ || 23 այսպէս եւ] այլ եւ $M_3$ || 23—24 բժշկութեան $M_2$ $M_3$ E | 24 յերաժշտականութենէն $M_2$ || 25 որ ի Թրակիա գտաւ $M_3$ || 27 Ի չորիցն—ամբողջ] դն էանց եւ ա մնաց $M_3$ || 27—28 Եթովպացիսն $M_3$.

սանութեանն վասն դատողութեան, զոր մեր բազում փոյթ յանձին կալեալ ի պարսկականէն եւ յիմայելականացն ժողովեալ զսա եւ մերոցն ծերոց արծարծեցաք վերստին:
ԱՆԱՆ› Արդ ասելն հազներգութիւն—ուրախ: =130$_{24}$–131$_{6}$.
ՄՈՎՍ› Ու է հազներգութիւն ելք—գոչմամբ: =161$_{12-16}$.

## ‹Զ› ՑԱՂԱԳՍ ՏԱՌԻ

ԴԱՒԻԹ› Արդ մինչեւ ցայս վայր—եղեգան: =93$_{4}$–93$_{9}$.
ԱՆԱՆ› Դարձեալ սկիզբն առնէ—մարդիկ: =131$_{8}$–134$_{23}$.
ՅՑՆՓ› Դարձեալ տառ կոչէ բաբախումն — մեզ լսին: =199$_{4}$–200$_{12}$.

Զայսուիկ զընտրութիւն գրոյս յերաժշտականէ անտի M 61 ուսեալ եղաք, զբախիւն եւ զթնդիւն եւ թե որք են ի տառէ աստի, զոր ծայրիւ լեզուին ասեմք. եւ որք են, որ միջովն. եւ ոյք են որ հպմամբ շրթանցն եւ որ այլք: Քանզի երաժիշտքն զծայնս ստեղծանեն յայնցանէ, որ բախեն զշրթունսն եւ հպին, իսկ զստեղունսն եւ զկողմունսն յայնցանէ, որ ծայրիւ լեզուին բաղկացեալ են:
ՄՈՎՍ› Արդ սկիզբն արարեալ զտառէ—անմարմին սեռականագոյն: =161$_{18}$–162$_{21}$.

Ու եթե զիարդ ութիւքս կարգեցաւ մակագրութեամբ գծի M 63 E 91 ծայնաւորաց ոչ միայն մերս, այլ եւ բոլոր քանականաց, ամենեցուն յայտնի է. որպէս ա՝ այբիւն, ե՝ եչիւն, է՝ էիւ, ը՝ ըթիւ, ի՝ ինիւ, ո՝ ոյիւ, ւ՝ հիւնիւ, ω՝ ովիւ: Ու սմա ոչ յութիցս յայսցանէ զտցէ ոք արտաքոյ ի քանականաց սկսեալ կամ յանգեալ մինչ ցքան մի եւ ցքայ: Քանզի ութիւքս այսոքիւք ամենայն քան պատկանեալ շարադասի եւ ոչ գործարան աղեաց ըստ Ուրիպիդեայ եւ ոչ այլ ինչ արուեստ երաժշտականաց յասպարիսէ աստի արտաքոյ մղիլ կարասցէ, քանզի որք մղինն, որպէս ասէր Ուրիպիդէս թե „ինծ պատուեալ լիցի ութերեակն", որ

DISCREPANTIAE CODICUM. 1 դատողութեան] add տարեալ փոյթ $M_3$ || 2 յիմայէլականէն $M_2$ || 20 մակագրութիւն $M_1$ || 25 մի եւ] մի կամ $M_3$ || 26—27 Ուրիպիդեայ] Իւրիդիպեա $M_1$ || 27 երաժշտականութեան $M_3$ || 29 Իւրիգի-



եւ քուեայ առաջին զսա անուանէ յաղագս ուղղանկեանցն, քանզի յերկուց քառանկիւնից եւ ի չորից լծորդաց է բաղկացեալ ութեակն: Ու զի ոչ արական է ութեակն, քանզի յերկուս ճեղքեալ իգական է եւ ի մի հաւաքեալ դարձեալ ոչ արու, վասն որոյ խանդաղատական եւ փաղաքշական նուագերգութիւնք են, ըստ որում ասէր նախասականս այս եթե „որ արտաքոյ ութերեկիս անցանէ, զբոլորն ապականէ": Արդ պարտ է ասել զառաջիկայս
ՄՈՎՍ› յաղագս է-ին երկայնութեան: Երկայնութիւն է-ին — փաղանունաբար: =162$_{22}$–163$_{7}$.

M 63 E 92 Սակայն զմերոյս պարտ է զպատճառս իմանալ եթե էր աղագաւ յաղագս է-ի որոշիմք ի յունականէն, իսկ ով-իւ համեմատիմք միմեանց: Երաժշտականէ ումեմն է ուսեալ մեր, սակս այնր զայն բերեալ մեզ երկարագոյն. քանզի թեպէտ եւ ուայն յերկուց աւարտեալ ըէից բաղկացեալ է, սակայն սակաւաքարքառ ի մերս քան զըէն եղեալ է սա: Այսպէս բազում պէտս է-ն ի մերս լեզու ունել, այսպէս եւ պարսկականին, յորմէ զայս ուսեալ ասեմք: Քանզի այլոցն գծից ծայնաւորաց աւարտեալ երիւք եւ երկրորդիւ յաղաւորիւ յանգին, որպէս այք, եչ, ին, ըթ, ոյ, ւհիւն: Իսկ է-ն առանձին, պարունակէ եւ ոչ զոք, ոչ սկսեալ յումեքէ եւ ոչ աւարտեալ որպէս ըթ ի սկիզբն ունելով եւ ւիւն եւ այլքն յաւարտի: Վասն որոյ սուղ սոքա անուանին իբրեւ երեսանակաւք ուրուք եւ վարչաւք յառաջ բերեալք: Իսկ որ յաւարտն բաղխին իբրեւ դրան դիպելոյ փակեալ կամ հոլովելոյ վիմի եւ պատահեալ դարի նահանջի: Իսկ սորա ոչ ունելով սկիզբն եւ միջութիւն եւ կատարած երկայն է: Քանզի թիւ այս ութնեակ ասի կոյս եւ ծնեալ զսա

պէս $M_1$ || 3 ճեղքեալ] ճեղքի $M_3$ || 6 ութեկիս M || 7 անցցէ $M_2$ || 13 զայն բերեալ] զըէն քերեալ $M_3$ || 16 է-ն] էին E | պարսկականին] պատասխանականին $M_2$ || 18 աւարտեալ են M | յերկրորդիւ $M_1$, յերկրորդիւք $M_2$ | յաւղաւորաւ $M_3$ || 19 ըըթ] ըթ $M_1$ || 17—19 Քանզի այլոցն—ւ-ն] քանզի այլ տառքն երկրորդիւ եւ երրորդ զրով անուանին եւ զրին, որպէս ա՝ այբ, ե՝ եչ, ի՝ ին, ը՝ եթ, ո՝ ոյ, ւ՝ ւիւն J || 20 զոք] ինչ $M_3$ | ի սկիզբունս $M_3$ || 22 երեսանակաւք] երեսանակակաւաւք $M_3$ | ուրուք] ումանք J || 23 բաղխին] բախին $M_1$, բանին J || 23—24 դիպելոյ փակեալ] դիպելով փակել J, rectius esset դիպեալ փակելոյ || 24 հոլովելոյ վիմի] հոլովելով ի մի M, հոլով J | պատահեալ] կամ հանդիպեալ $M_3$ | նահանջի] հանգչի J || 26 ութնեակ] է էակ $M_1$, է-ակ $M_2$ || 26—236$_1$ թիւ այս—անուանեն] cfr ութն թիւք կոյս

ասեն յուղղոյն Արամազդայ, զոր եւ ոմանք Աթենա անուանեն եւ ի բազմաց պատուեալ եղեւ ի հեթանոսականացն կոյսս. եւ յաստեղաբաշխականն յաղագս ելթն վարչացն եւ ըստ հրէականին ելթն ամն պատուեալ: Եւ մերս տուչութիւն գծի ոչ ճարտարութեամբ. թեպէտ եւ աշխատութեամբ ջան տարեալ եղեն, բայց ոչ գտեալ հնար մինչեւ յաստուածուստ երեւեալ, այսպիսի դասաւորութեամբ զսա գտեալ: Քանզի պարտ էր էին երկայնութիւն, քանզի ոչ արու զսա եւ ոչ էգ ըստ թուոյ սահմանեմք, այլ չեզոք, վասն որոյ եւ յաստուածայինսն իսկ դասաւորի անուանակոչութեամբ, քանզի է միշտ:

Իսկ յաղագս ով-ին զարմանամ զոչ ստեղծանելն զնա իբրեւ զայլսն զերեսուն եւ զվեցսն, քանզի ով ստեղծեալ անուանեն ա: Քանզի յունաց երկուս ունելով ո փոքր եւ ապա յերկուց ոյից կացուցանեն ո(վ) մեծ. ոչ գիտեմ եթե յաղագս բազմութեան գծիցն ոչ յաւելին եւ եթե իբրեւ զ յունացն երկու գծիւ սովորեցան ստեղծանել, քանզի ի քերականութեանս ո(վ) մեծ ոյիւ եւ վեւիւ սովորեցան անուանել. իսկ ի շարագրութիւնսն այբիւ եւ հիւնիւ, որպէս աւրհնեալ, կրաւնաւոր: Բայց միայն յանուանս հնազունիցն շարադասեն զո եւ զվեւ, որպիսի Մովսէս, Ահարովն: Բայց ինձ թուի թէ առանձինն պատկեր գրոյդ ստեղծեալ եին, ոչ ունելով եւ դա սկիզբն յումեքէ եւ ոչ աւարտ յանգական. քանզի ահա ըստ բառիս ոչ ունի վախճանական եւ արգելակ բթացուցանել զսա. եւ ահա է սա երկայն:

Արդ ի յունականին ոչ է է-ն երկայն ըստ մերումս, այլ ի-ն եւ ոչ սոցա միայն ին-ն առանձին է, այլ եւ նուազագոյն քան զնա ունելով գիծ, որ իաւտա անուանի: Եւ է պատկեր գծին այնմ գիծ մի սուկ եւ յատուկ առանց նկատման. եւ դարձեալ

լսի, որպէս Աթենա... վասն զի ասէին արտաքինքն զԱթենայէ եթէ ի գլխոյն— Արամազդայ ծնաւ: Սմ. փիլ. p. 188 || 3 յաստեղաբաշխութեան $M_3$ || 4 մերս] add ստուգու թիւն $M_3$ || 5 թեպէտ եւ] om $M_1$ $M_2$ || 7 պարտ էր] պարտ է J, պատուէր $M_3$ | քանզի] om $M_2$ || 9 այլ—դասաւորի] դասիւ եւ $M_3$ || 10 քանզի] այլ J || 15 իբրեւ զ յունացն] ըստ յունացն E J || 16 քանզի] որպէս J || 22 ըստ բառիս] եւաստ բառիս E (ըստ J) || 25 երկայն] յերկայն M | մերումս] add եւ պարսիցն J.



գրեալ է մերձ առ գծիս այս եւ այլս ստեղծանիին: Բայց զսոսա ոչ մերձ առ ձայնաւորսն շարադասեն, այլ է նոցա ին երկուս գիծ պատկանեալ մերձ առ միմեանս եւ լծեալ գծիւ զնոսա, զայնմանէ անուանեալ ասեն երկայն զոլ, սակս յերկուց բաղկացելոցն իաւտայիցն:

ՄՈՎՍ› Իսկ ոյ-ն ըստ մերումս—պարիսպք: =163 8–167 9.

## ‹Է› ՑԱՂԱԳՍ ՎԱՆԳԻ

ԴԱՒԻԹ› Արդ իբրեւ եգիտ—սուկ ա, ե: =96 13–21.
‹ՍՆԱՆ› Այլ քանզի (փ) վանգ է—այբ եւ եչ: =135 2–7.
ԴԱՒԻԹ› Եւ յորժամ ծանոյց—եւ սուղս: =97 3–98 10.

## ‹Ը› ՑԱՂԱԳՍ ԵՐԿԱՐ ՎԱՆԳԻ

ՍՆԱՆ› Երկար փաղառութիւն—զայբն: =135 9–136 9.
ՄՈՎՍ› Երկարութիւն ութիցս—հեգիկ, աչ: =167 15–20.

## ‹Թ› ՑԱՂԱԳՍ ‹ՍՈՒՂ› ՎԱՆԳԻ

ԴԱՒԻԹ› Այսպէս դնելով զըստ—այսպիսի: =98 13–99 3.
ՍՆԱՆ› Սուղ փաղառութիւն լինի—առնէ: =136 11–21.
ՄՈՎՍ› Իսկ հասարակութիւնս այս—համբոյր: =168 7–19.

## ‹Ժ. ՑԱՂԱԳՍ› ՀԱՍԱՐԱԿԱՑ ԾԱՂԱԾԱՐԱՑ

ՍՆԱՆ› Հասարակ վանգ լինի—ածողեալ զնա: =137 2–13.
ԴԱՒԻԹ› Դարձեալ ասելն, հասարակ լինի ըստ երիս—տայր նմա =98 19–100 18.

M 74 E 108 ըմպել խաշելոյ լիրի ջուր, զոր ասէր թե սեաւ գինի է. իսկ նորա ըմպեալ ծանեաւ եթե ոչ է գինի այլ խաշոյ:

DISCREPANTIAE CODICUM. 1 առ գծիս այս եւ այլս] առ գիծ այս եւ այս J; hic in mg apud $M_3$ E litterae graecae *I* et *H* designatae sunt || 1—2 ըմպել—խաշոյ] om $M_2$ $M_3$ explanatione Davidis substituta.

## ‹ԺԱ› ՑԱՂԱԳՍ ԲԱՌԻ

ԴԱՒԻԹ› Հիմն արական է արդ բանի—ի բանն: =101 8–12.

‹ԴԱՒԻԹ› Եւ արդ կամի ցուցանել—յանգեալ: =101 14–102 2.

ԱՆԱՆ› Դարձեալ ասելն թե բառ է — փաղառութեանց. =137 15–18.

ՍՏԵՓ› Բառ կոչէ զնոյն վանգս—ասիցն: =201 7–21.

## ‹ԺԲ› ՑԱՂԱԳՍ ԲԱՆԻ

ԴԱՒԻԹ› Բայց զմասունս—պատահման: =102 8–103 5.

ԱՆԱՆ› (Վասն որոյ ասէ զբանէ թե բան է հետեւակ բառի), զի բառ շարադրութիւն է փաղառութեանց — լինի բան: =137 17–138 15.

ՍՏԵՓ› Իսկ ասելն եթե զտրամախոհութիւն—մասունք բանի: =202 8–203 18.

## ‹ԺԳ› ՑԱՂԱԳՍ ԱՆՈՒԱՆ

ԴԱՒԻԹ› Անուն է մասն բանի — կարողութիւն է յայտնել: =103 7–24.

Իսկ յաղագս մերոյ լեզուիս եթե ոչ է ի սոսա արական եւ իգական եւ չեզոք շարադասեալ որպէս ի յունականին եւ յոմանց նշանակեալ ունել մեզ: Բայց զայս ոչ իբրու պարսաւանս եղեալ մեզ վարկցիս, զի է եւ մեր սովորաբարբառ. զի եւ ոչ առ նոսա է մի արականն եւ իգականն, քանզի այսոքիկ են արականք յունաց, որք ունին ի սկզբունս բանի ով, որպէս ասելն՝ ով այիոս ապաւստալաւս, այսինքն սուրբ առաքեալ(ք) եւ է արական: Իսկ ասելն ի այէ այէ աւղաւկաւս, որ է անուն իգական եւ որք միանգամ ի սկզբունսն ունին ի, նոքա M 78 E 114

DISCREPANTIAE CODICUM. 16 լեզուի $M_3$ | ի նոսա E || 19 սովորաբարբառ] սովորաբար բարբառ $M_3$ || 20 մի] միայն $M_2$ || 21—22 որպէս ասելն ով] om $M_2$ | ովաայիովս ապաւստովլոաւս $M_1$, աայիովս ապաւստաւլաւս $M_3$, ովածի, ովասպ ովտաւլաա $M_3$, ովայի ովսապաւտովլօս E J (-լաւս)=ὁ ἅγιος ἀπόστολος || 23 իածէ ածէ (ածի $M_2$) աւղաւկաւս codd (յաւղաւս $M_3$) pro ի այէ այէ depravatae voces ἡ ἁγία Εὐδοκία esse videntur || 24 անուն] նոյնանուն $M_2$.



են իգականք: Իսկ որք ունին ի սկզբունսն տաւ քսաւլա եւ ամենայն որ ի սկզբունսն ունին տաւ, նոքա չեզոք են. եւ այլք եւս որք ի վաղճանին ունին զնշանակութիւնս զայսոսիկ, իմաստասիրելով զնոսա, տրոհեալ զմարդս փոքր աշխարհ, որպէս եւ է իսկ: Զի որպէս երկիր բուսուցանէ եւ ծնուցանէ արականս եւ իգականս եւ չեզոքս, սոյնպէս եւ մարդկայինս բուսոյ եւ պտղոյ բանականութեանս խնդրի:

Իսկ ի մերս, յորժամ ասեմք ա՛յ այս անուն, իգական է. ի սկզբունս ա՛յ, ո՛ւք, իգական է եւ այս սկզբանցն նշանակութիւնք: Եւ ասելն ընդ քեզ եմ, արական է. իսկ ասելն աղեա, լսեա՝ չեզոք. ⌜եւ այս սկզբանց նշանակութիւնք յանհատսն⌝:

Իսկ ի յանգին ‹ով› որպէս Խոսրով, արական. ‹հի որպէս› Խոսրովուհի՝ իգական, Խոսրովիդուխտ՝ չեզոք. եւ այսոքիկ թե զմտաւ ածցէ ոք, յանհունս վարեսցի: Արդ այսոքիկ մարդոյն բաւականասցի յարացոյց, որպէս վերոգրեալ է:

Իսկ չորքոտանեացդ ստուգաբար իմացեալ եմք թե մերոյս բաղդատութիւն եւ նշանակութիւն արականաց եւ իգականաց եւ չեզոքաց յոգնագոյն է քան զյունացն, զոր եւ յայտ արարից ըստ իւրաքանչիւր ընդունելութեան. առն, խոյ, զոնչակ, վիղոն, դուար, մալ, այսոքիկ արականք ի վերայ հաւտից ասացեալք են նշանակութեամբ եւ այլք այսպիսիք, քանզի ուր հանդիպեսցի յանմարտի իգական է եւ ուր հանդիպեսցի ըթ ընդ նու՝ արական է, կամ այբ ընդ րէի, կամ ո ընդ յի:

Արդ որպէս սեռաբար չորքոտանեաց վայրենեաց մաքրազունից անուանեալ է սեռաբար երէ, իսկ յատուկ ի նոցունց՝ շիկերիա: Եւ այս թեպէտ եւ զատեաւ ի սեռէն, միայն նշանա-

DISCREPANTIAE CODICUM. 1 ունին] ունելով $M_3$ | տաւ քսոյլա $M_2$= τὸ ξύλον? || 2 ունին] ունելով $M_2$ $M_3$ || 5 ծնուցանէ] սնուցանէ $M_3$ E || 6 չեզոքս] չեզոքականն E $M_3$ || 8 այ] om $M_1$ || 10—11 աղէ, լսէ $M_3$ || 11 uncis inclusa om $M_1$ || 14 ածցէ] ածէ $M_2$ | Արդ] om $M_3$ || 15 վերոգրեալ] վերստին գրեալ || 16 իմացեալ եմք] իմն ասեմք $M_3$ || 16—18 Իսկ—յոգնագոյն] Իսկ չորքոտանեացդ անուան նշանակութիւն արականաց եւ իգականաց եւ չեզոքաց յոգնագոյն գտանի ի մերս, զոր եւ յայտ արարեալ է մեծ իշխանին Մագիստրոսի. թէ կամիս, զնորայն ի ձեռն առեալ ուսիր, այլ մեք զհամառօտս սիրեցաք J (omissis reliquis) || 19 զանչակ $M_3$ || 20 դուար] դաւշ $M_3$ || 22 յայնմարտի $M_2$ || 23 ո $M_3$, ոյ ceteri || 25 երէ] էրէ E || 26 շիկիրէ $M_3$=شکاری | šikari | զատաւ $M_1$.

*կեաց աղիս զոլ եւ ոչ եղունք կամ այծեմունք կամ կրկիտք կամ այլքն:*

*Արդ յորժամ ասեմք ըստ մերում բարբառոյս եւ ուլթին ըստ անուանցդ է անուն չորքոտանեաց հասարակաբար ի կերակուրս տուեալոց, այլ ոչ յատուկ նշանակի սեռ իբրու զարջառս. իբրու զարջառն ոչ նշանակեաց զարականն եւ զիգականն եւ զչեզոքն, թե ոչ ասեմք եզն եւ կով եւ մոզի:*

*Այսպէս եւ ըստ մերում լեզուի երիցս այսոցիկ՝ աղեաց այծից, խոչից սեռաբար անուն է պատրուճակ. քանզի յորժամ ասեմք՝ երթիցես բերցես պատրուճակ եւ զենցես, զերիսս զայսոսիկ նշանակէ անյայտաբար, այլ ոչ ի դասէ արջառոց երկքայեսցի կրաւորականն եւ այս այսպէս:*

*Իսկ հասարակաբար նորա, որպիսի՝ ընտանի ոչխար եւ վայրենի՝ շիկերիա. այսոքիկ աղեաց արական: Իսկ այլ եւս այծից արական՝ քաւշ, քաղ, նոխազ, բզակ. այսպէս եւ որ սոցայս են յանգի՝ արականք, յանգին ունելով լծեալ այբ ընդ ղատի, ո ընդ շայի, այբ ընդ զայի եւ այբ ընդ քէի:*

*Իսկ արականք արջառոց՝ հասարակաբար արջառ եւ է անունդ արական, լծեալ այբ ընդ ռայի: Իսկ արականք՝ որպիսի եզն, եղջերու, խաչենեակ, խոյ եւ այլ այսպիսիք, քանզի նոյդ աւարտ միշտ եւ ոյդ եւ ակ արականք են: Եւ ձիոց՝ յովատակ, նժոյգ, փաճլ, երիւար, զեղազատ, այսոքիկ արականք են եւ որ ի սոցանէ սկզբունք:*

*Իսկ հաւականք հասարակաբար հաւորսաց կամ որսական թռչնոց արականք. կանդ, որ նշանակէ միայն զարու արծուի կամ վարուժանակ եւ ոչ զայլ ոք ի թռչնոցն: Եւ կանդն արու. եւ բազէի արական ճուռակ, որպէս ի յովատակ է ակն արական. իսկ շահենի եւ զաւազի՝ քուպիճ եւ յայտնի նշանակութիւն, զի ոչ ուրուք այլոց հաւուց լինի քուպիճ անուն:*

**DISCREPANTIAE CODICUM.** 1 *ոչ*] om $M_2$ || 3 *եւ ուլթին*] *էուլթիւն* $M_3$ || 8 *այսոցիկ*] *այս սերից* $M_3$ || 9 *խոխից* $M_1$, *խոչից* $M_2$ $M_3$ || 10 *երթայցես* $M_2$ $M_3$ | *բերիցես* $M_1$ || 15 *բծաք* $M_2$ بُزّه || 17 *ո*] *ոյ* $M_1$ || 20 *խաչենակ* $M_3$ E | *փոյ* $M_1$ || 21 *նոյդ* $M_3$, *նուդ* $M_2$, *նոյնդ* $M_1$, *fortasse նոյ* <ո>*նդ* | *ակ*] om $M_1$ $M_3$ || 21—22 *յովատակ* $M_1$ || 23 *զեւլազատ* $M_3$ || 28 *զաւազի* گوز *gewez.*



*Եւ արդ զայսոցիկ պարտ է մեզ ասել զիգականսն, յորոց սկսայ, մաքի, որոջ, այծ, թալասմեդ. եւ են այսոքիկ իգական, յայտնապէս հասարակաց յաղագս հարկի ծանուցեալ. իսկ չեզոքն ալոջ եւ բուծ:*

*Իսկ արջառոցն իգականք՝ կով, երն, երինջ եւ այլքն. իսկ չեզոք, որպիսի մոզի եւ որ այսպիսիք: Իսկ ձիոցն իգականքն՝ մատեան, զամբիկ, ճայիկ, զոր ճակ անուանեն. եւ չեզոքն, որպիսի քուռակ, բաշահատ, մատաղածի, խեշակ, դզի, բոչոյ, անդրավար, փալանիկ:*

*Եւ թռչնոցդ՝ որպիսի բարովդլոք եւ այս այսքան:*

*Քանզի մերս հմտութիւն լեզուի ընդ կատարմանն սովորեալ են յանգել, որպէս նախ քան զմեզ յիշատակեալ սահմանեցին զանուն արականացն այսպէս. ի մեն, յեղն, յիթն, ի զենն, յեճն, յակն. եւ ոչ եթե սոքա միայն արականք են եւ կամ սոքա միայն անուանին: Իսկ սովորութիւն է քերդողաց սակաւուք նշանակել զտարեցոյցն: Իսկ իգականացն՝ ի նինն յուշն, նուրհին, յոցն, այսոքիկ իգականք: Եւ չեզոքացն՝ որպիսի մանուկ, զաւակ, փրզանդ, ժառանգորդ, հարազատ:*

*Այսպէս եթե հարկ ինչ էր մեզ զսա յարդարել, ոչինչ դժուարադատ լինեաք. եւ մի եւ նոյն նշանակութեամբ զամենայն անուն ի մէնջ սահմանել յերիս յայս կարող եաք, որպէս ակն արական է, ունիմք սովաւ առնել զբամբակ արական, թեպէտ եւ ակն յերկուս բարբառս յանգին նշանակէ մատակ, ճակ, յովատակ: Սակայն ի մենէ սկսեալ սակս այնորիկ առնէ իգական, քանզի թիւն այն ոչ զարականն յանգեալ վեցիւքն կարէ արականս առնել: Իսկ յիդ քանզի արական է եւ կոճատ, սակս այնորիկ լծորդեալ ընդ այլսն առնէ արական: Այսպէս կարող եաք ասել զխնձորիկն իգական եւ զտանձիկն իգական եւ դեղձուկն չեզոք,*

**DISCREPANTIAE CODICUM.** 1 *զայսոցիկ*] *զայսոսիկ* codd || 2 *սկսայ*] *սկսար* $M_2$ || 7 *մատեան*] *մատակք* $M_3$ || 8 *բոչոյ* بچه || 10 *բարովդլոք* *vox corrupta ex perroquet?* || 11 *լեզուի*] om $M_1$ || 13 *յեն* E, *ի մենն* M, pro *նէնն* artis || 16 *զտարեհցոյց* $M_1$, *զտարացոյց* $M_2$ || 18 *փրզանդ* فرزند || 20 *եւ մի*] *եւ զի* codd || 22 *ունիմք*] *կարող էաք եւ ունիմք* $M_3$ || 23 *յերկուս բարբառս*] *յերկբարբառս* $M_3$ || 24 *մատակ*] *մատաղ* $M_1$ $M_3$ | *յովատակ* $M_1$ || 29 *եւ դեղ-*

որպէս ի մէնջ նշանակեալ ծաւլա արական եւ քալա իգական, զաւակ չեզոք, քանզի ոչ նշանակէ սա թէ արական է թէ իգական, որպէս մանկանց նշանակութիւն եւ աննշանակութիւն՝ տղայ դիեցիկ, ստնդեայ, տարրա, խորշ, այս ոչ ունի նշանակութիւն թէ արականք են թէ իգականք եւ անա են աննշանակք:

Իսկ նշանակեալքն արականացն՝ համբակ, կտրիճ, ուստր:

Իսկ իգականացն ի նոցունց՝ դուստր, աղջիկ, ճաւակեթ եւ այսոքիկ իգական առ նորազոյնսն եւ խակագոյնսն տիաւք արականս եւ իգականս եւ չեզոք եւ դարձեալ աննշանակութիւն ի սոսա ասել: Իսկ եպերական մոլի, պղծագործ, վիրագ, այս արանց, արական նշանակութիւնք են առնամոլեացն եւ անաստուածիցն: Եւ են դարձեալ շիտիտի, տապզէ, անուն իգացելոցն եւ կանացեացն եւ անարական պղծիցն: Իսկ վաւաշ, բորբորիտոն, կաթոտ, բոզ, այսոքիկ իգականացն անուանադրութիւնք:

Այսպէս եւ յամենեսեան, որ ինչ մի անգամ էակքն են, նշանակութիւնք են. նախ քան զանունն զովասանութեամբն կամ պարսաւովն ճանաչել, որպէս սակաւուք յայտնեցից: Ոչ ասեմք նախ ծառ, սակայն զովասանութեամբ ծանուցանեմք որպիսի՝ առոյգ, սաղարթացեալ, գեղեցկուղէշ. սոյնպէս բուսոց՝ դալարավայր, կանաչացեալ, ծաղկաւէտ. եւ ջուրց՝ քաղցրաճաշակ, կարկաչասահ, ականակիտ. եւ անա ոչ նշանակելոյ նախ անուանց ծանուցեալ եղեւ յորմէ բանն: Սակայն ծառն անուն սեռաբար արական է, թեպէտ եւ աննշանակութիւն յինքեան ունի թէ որպէս. իսկ յատուկն բաժանի յարական եւ յիգական եւ ի չեզոք. իսկ ջուր անուն արական է ըստ մերումս, իսկ խոտ եւ խաւարտ եւ քանճար չեզոք:

ծուլն—նշանակեալ] om $M_1$ || 1 որպէս E, որ, $M_3$, որ եւ $M_2$ | ծաւլա ﻓﺤﻞ | քալա ﻗﻠﺐ || 2 ոչ] om $M_1$ || 4 տարրա $M_1$, տայարրա $M_3$ | խորշ] խորս $M_3$ || 7 ճաւակեճ $M_2$ || 9 աննշանակութիւն $M_2$, նշանակութիւն ceteri || 10 եպերական] արական $M_3$ || 12 անաստուածիցն] աստուածամարտիցն $M_3$, առնաւածամոլացն մարտիցն (pro առն(ածա)մոլացն ‹ածա›մարտիցն) | شدید šedid || 17 նշանակութիւնք են] նշանակութիւն է $M_3$ || 19—20 ծանուցանեմք որպիսի] յայտնեսցի, մինչ ասեմք $M_3$ || 23 ոչ նշանակելոյ] ի չնշանակելոյ $M_3$ || 24—25 աննշանակութիւն—ունի] նշանակութիւն յինքենէ ոչ անուանէ $M_3$ || 26 անուն] անուանի $M_2$ || 27 է om $M_2$ | խոտ]



ԴԱՒԻԹ› Եւ եթէ ոք ջան տարցի—միայն հանդիպի: =$1032_{4}$–1048.

M 83 E 118· Սակս մակասարիդ ոչ այդպէս ի յունականին սահմանեալ եղեւ եւ ոչ հոմանունութիւն, քանզի նոքա ասեն մակասար յաւելեալ ոմանց արծուի, ծիծեռն. իսկ մերս՝ ծիծեռն, աքիս եւ ոչ ունին առքա պէտս առաւել քան զվերագոյնդ ասացեալ թարգմանութեամբ: Քանզի եռակի տարորոշութեամբ զամենայն կենդան եւ զանկենդան եւ զաճականս եւ զանաճս, նաեւ զվերնայինն իսկ զիմանալիսն երիւք այսոքիւք սահմանեն՝ արական եւ իգական եւ չեզոք: Իսկ մակասարն ի վեր քան զհասարն յաւելեալ ոմանց, ոչ գիտեմ զիարդ ոչ զգտիչ կամ զստեղծող յայտ առնել, եթէ խորթ ուրուք զսա ստեղծեալ եւ եթէ ի հարկէ իմեմնէ ոչ համարձակեալ: Քանզի եւ այսպէս ստոյգ ի յունականին մակագրեալ է ըստ մերումս բնաքանականի‹ս› եւ թարգմանութեան, որ ոչինչ յայտնապէս նշանակէ:

Իսկ մեր գտեալ ի պարսկական դիւանս այսպէս. ըստ մերումս սահմանի ծիծառն եւ աքիս. եւ այս ինչ ամենայն, որ հարթ եւ հաւասար դաշտացեալ է եւ դիւրին տեսականին եւ թեւակոխութեան, իսկ անհոծն եւ անհարթն դիւրաւ արգել լինի ուղղապէս տեսութեան: Սակս որոյ ասէ ի վեր քան զհաւասար. եւ որում ոչ հաւասարել կարիցէ եւ ոչ ի կատարսն ելանել, զիարդ դատեսցի, քանզի արականքդ եւ իգականքդ եւ չեզոքդ սահմանեալ եւ հարթեալ վաղնջուց արուեստաւորին իսկ, որպէս վերագոյնն գրեցաք: Ընթերցաք հզաւրի ումեմն յՅլլադա իմաստնոյ լեալ հարցաքննութիւն եւ ի հակառակել նոցա ասէ իմաստասէրն այն. գիտեմ, զի յոյժ հմտացեալ էք գիտութեամբք, քերականութեամբք, այլ լուայ ես եթէ են կենդանիք, յորս ոչ նշանակութիւն ինչ է արուի կամ իգի եւ ոչ են չեզոք. զինչ վասն նոցա իմաստասիրեսցուք: Եւ հարցեալ զի՞նչ եւ ասէ. որպէս արծուի, ծիծեռն:

խոտից $M_2$ || 4 cfr ի յունացն արծիւ է եւ ոչ աքիս, որպէս ի մերս եւ ի պարսիցն J || 10 զգտիչ $M_2$, ըստ գտիչ $M_1$ E, ստուգիչ $M_3$ || 11 ստեղծող $M_1$ || 14 թարգմանութեանց $M_3$ || 16 ի պարսկականս $M_3$ (om դիւանս) || 17 post ամենայն iterum ամենայն ինչ $M_1$ || 25 հարցաքննութիւն] քննութիւն հարցմանց $M_2$ || 26 գիտութեամբ] om $M_2$ $M_3$ || 28 է] իցէ $M_3$ | եւ ոչ են] կամ չէ $M_3$.

Եւ ոչ կարացին եւ հարցեալ զնա բազում ջանիւ, ոչինչ պատասխանեաց, այլ միայն այսչափ եթէ ի սերս այս ոչ արական յայտնի եւ ոչ իգական: Եւ ասեն զառնէն Եթեոպացի զոլ եւ անուն նմա անուանեն Սինա: Ոչ գիտեմ, որպիսի աղագաւ զարծուի համեմատեաց ծիծռան, թեեւ ոչ ի նուազ երեւի նշանակութիւն աքաղաղոյ կամ մարեաց, որպէս յայլսդ հոյլս հաւուց, սակայն ըմբռնեալ ի նոցունց բոյն ճանաչեմք, զի մեծն եւ յաղթանդամն արու է, բայց ոչ զծիծեռն ոք ամենեւին:

Արդ եթէ յաղագս դաշտականութեան եւ ոչ լինելոյ անձաւս ի բարձրագոյն վէմս, ոչ լինելոյ արծուիս առ Եթիովպացիսն եւ բոյնս նոցա եւ թռուցեալ զնոսա, ոչ արտաղատեացէ աչք: Յաղագս որոյ փոխանակեալ մերոցս իմաստասիրաց, աքիս փոխանակ արծուոյ եդաւ, զի անհնարին ի նոցունցն զարուն եւ զէգն սահմանել, զի ոչ ունին նշանակութիւնս յայսցանէ եւ ոչ զմիոյ եւ ոչ բնաւ ճանաչի նոցա արու լինել կամ էգ: Եւ ահա բնութիւնն եղեւ խնդիր արտադրութեան եւ ոչ անուանակրութեան, քանզի ըստ յունականին արծուի արական է անուն յայտնապէս եւ ծիծեռն իգական: Եւ զիարդ ի նոցունց լինէր դժոխադատ անուն արականաց եւ իգականաց եւ չեզոքաց կամ ի վեր քան զհասարակ սահմանեալ լինին: Այսպէս եւ ի մերումս աքիս փոխանակ արծուոյ առեալ եղեւ եւ է սա անուն արական, իսկ ծիծառնս իգական: Եւ ահա յայտ է թէ ոչ տարակուսանքս այս յաղագս անուան ի պատահմանէ, այլ ենթակայ բնութեան արտադրութիւն եւ իբրու ոչ վերահասու ոք լիցի տիրապէս ի վեր քան զհասարակ է նա:

ԴԱՒԹ› Եւ նախազաղափար իմանալի է—զներգործութիւն էին: $=104_{10}-112_{8}$.

ԱՆԱՆ› Հոլովական, այսինքն ընդունակ—որ ազգ յայտ առնէ: $=138_{17}-145_{8}$.

DISCREPANTIAE CODICUM. 3 զառնէն — Սինա] զայրն այն եթիոպացի եւ անուն ասեն նմա Սինա $M_3$ || 5 համեմատեաց] հաւասարեաց E || 8 ոք] om E || 10 ի] եւ E, om $M_1$ || 11 թռուցեալ] թռեցեալ $M_1$ || 15 զմիոյ] զմի ոք $M_2$ || 16 արտադրութեան $M_2$ || 19 դժոխադատ] $M_2$ corr in դժուարադատ || 24 ենթակայ] ընթանա $M_3$ | արտադրութիւն $M_2$.



ՍՏԵՓ› Դարձեալ ասելն՝ եթէ անուն է—ստուգաբանին: $=204_{2}-211_{30}$

ՄՈՎՍ› (Քանզի) անուն յերկուս բաժանի—դատեալ, դատեցեա‹լ›: $=169_{7}-173_{4}$.

## ‹ԺԴ› ՅԱՂԱԳՍ ԲԱՅԻ

ԴԱՒԹ› Բայց թէ որպէս նախադասեցաւ—ընդ իջանելն ծորի: $=112_{5}-113_{20}$.

ԱՆԱՆ› Յարադրէ մեզ յաղագս բայի—միաբանութիւն ունի: $=145_{11}-148_{26}$.

ՍՏԵՓ› Դարձեալ զի ասէ թէ բայ—եւ ամենայն այսպիսիքս: $=212_{2}-214_{16}$.

ՄՈՎՍ› Եւ զի բայս յետոյ դասեալ—քան զտեսութիւն: $=173_{6}-174_{11}$.

## ‹ԺԵ› ՅԱՂԱԳՍ ԼԾՈՐԴՈՒԹԵԱՆ

‹ԴԱՒԹ› Առ սովաւ ասելի է—յորժամ $=114_{3-4}$.

ԴԱՒԹ› Ելեալ մինն—անուանի լծորդութիւն: $=114_{5-14}$.

Եւ դարձեալ

ԱՆԱՆ (ԸՍ ԴԱՒԹ)› լծորդութիւն դատեալ — կոփեմ, կոփես: $=149_{2-10}$.

ՄՈՎՍ› Այլ զանազանապէս—կերակրոցն: $=174_{21-25}$.

## ‹ԺԶ› ՅԱՂԱԳՍ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ

ԴԱՒԹ› Այլ վասն ընդունելութեան—ի կարգին: $=114_{16}-115_{10}$.

ԱՆԱՆ (ԸՍ ԴԱՒԹ)› Արդ ընդունելութիւն յանուան—եւ ընդունելութեան զոն: $=149_{13-22}$.

ՄՈՎՍ› Այլ ընդունի եւ տեսակ—առանձնաւորութիւն: $=175_{8-12}$.

## ‹ԺԷ› ՅԱՂԱԳՍ ՅԱՒԴԻ

ԴԱՒԹ› Յաւդ է մասն բանի հոլովական նախադասեալ ներխոնարհութեան (եւ) անուանց: $=11_{12-13}$.

Ցայդ հաղորդեալ անուան կցորդաբար ի բազումս հոլովի, M 120 E 156– իբրու զդաստակ ինչ սրոյ որ ի գործ արկանէ: Եւ է սա ըստ յունականին ի բազումս նախադասեալ, որպէս վերագոյն գրեցաք ի մակաւասարութեանն առասութիւնս. քանզի յորժամ կամին ասել անուն արական զառնէ ումեմնէ, այսպէս գյաւդ նախադասեն՝ ո՛ Կոստանդիանոս, ո՛ Գրիգորիոս. եւ այս արական յաւդեալ ո-իւ նախադասեալ, այս եւ այլ բազումք ի նախադասութենէ յաւդին ծանուցեալ: Եւ ըստ մերս նախադասելով յաւդ ոչ եմք սովորեալ բազմաւորական յաճախ զաս վարեցեալ, բայց միայն ասեմք ո՛վ Գէորգ, ո՛վ Գրիգոր, ո՛վ Տրդատ. եւ ահա նախադասեալ եղեւ ովդ առանձին արական:

Իսկ ասեմք ո՛ Համունի, ո՛ Մանի, ո՛ Նունի եւ այս(քան) քանզի ովդ արական եւ երկարացեալ է յաւդ, իսկ ո՛ փաղաքշական իմն եւ մանկական:

Սակայն յաւարտս յաւդել զաս ունիմք յոգնագոյն, իբրու ծովային երկնային, ցամաքային, արքայական, իշխանական, տերունեան եւ այսպիսիքս:

Այլ թե էր աղագաւ յոյնք սովորեալ են յաճախ վարել նախազաղափարաւն. սակս երագութեանն եւ փոյթ վերահասու լինելոյն, քանզի փոխանակեն զգիծ նախադասեալն: Եւ եթե էր աղագաւ հոլովք ստորադասական ի մեզ յոգնագոյն եւ ուղղական չարամանեալ յանգի, իսկ նախադասականն սակաւ. քանզի յառաւսութենէ լեզուի մերոյ եւ ի գրոյ յոգնագոյն ոչ այսմ կարաւտանան դժոխադատութեան, զի յորժամ ասեմք նախադասելով ինի եւ զայի եւ այքի այսպէս զՊղատոն՝ այս հայցական է, իսկ (զ)Պղատոնոյ՝ սեռական, առ Պղատոնով՝ տրական, ո՛վ Պղատոն՝ հոչական: Այս են հոլովք հինգ եզականի եւ այսպէս յայլսն վարեցեալ ըստ քումդ ներկուր կրթութեան: Քանզի զտցես եւ յայլսդ զթարգմանութիւնն ըստ իւրաքանչիւր հոլովից գրեալ է ի պատճէնն որ յաղագս անուանն. եւ ըստ այսմ աւրինակի նախադասեսցես:



Իսկ ստորադասականք յաւդին այսպիսի ինչ. ուղղական եզականի Պղատոն, սեռական՝ Պղատոնոյ, տրական եւ առաքական՝ Պղատոնով, հայցական զՊղատոն, հոչական ո՛վ Պղատոն: Յոգնական ուղղական Պղատոնք. սեռական (առ) Պղատոննեանց, տրական եւ առաքական Պղատոնաւքն, հոչական ո՛վ Պղատոնու: Իգականի եզական այ Պղատոնուհի, սեռական Պղատոնուհւոյ, տրական առաքական Պղատոնուհով, հայցական զՊղատոնուհի, հոչական ո՛վ Պղատոնուհի: Երկուորականի ուղղական Պղատոնուհւոյ, տրական եւ առաքական Պղատոնուհով, հայցական զՊղատոնուհի, հոչական ո՛վ Պղատոնուհի: Յոգնականի ուղղական Պղատոնուհիք, սեռական Պղատոնուհեանց, տրական եւ առաքական Պղատոնուհաւք, հոչական ո՛վ Պղատոնուհիք:

Չեզոք անուան եզականի ուղղական Պղատոնուկ, սեռական Պղատոննկոյ, տրական եւ առաքական Պղատոննկաւ, հայցական զՊղատոննկէ, հոչական ո՛վ Պղատոնիկ:

Երկուորականի ուղղական (առ) Պղատոննկոյ: Յոգնականի ‹ուղղական Պղատոնունկք, սեռական Պղատոննկաց›, տրական եւ առաքական զՊղատոննկաւք, հայցական զՊղատոնունկք, հոչական ո՛վ Պղատոնունկք:

Եւ յաղագս ոչ ունելոյ մեզ յոգնագոյն զնախադասականդ յաւդ, որպէս ասացաւ վերագոյն եւ մի յայսոսիկ թախանձայնս հասցէ հաւանելոցն յայսպիսի բարի մոլորութիւնս:

Քանզի թեպետ եւ յունաց սովորաբար եւ իմայէլացւոցն նախադասեալ է, բայց ոչ մինչեւ յաւարտ յանգեսցի նշանակէ ուղղապէս եւ այսմ երկուց տրամախոհութեանց ունել պէտս նոցա: Իսկ մերս միով յանգիւ նշանակէ անկարաւտաբար զքոլորն զորեւ կարեւոր են մեզ, քանզի որք ոչ ուսեալ են թուել յարաքարդելով ի վերայ տասնեկին իբրու թե հնգետասան, նա-

DISCREPANTIAE CODICUM. 17 տերունեան] տէրունական $M_2$ || 20 փոխարկեն $M_3$ || 21 ստորադասական] ստորական $M_3$ || 23 քանզի—ի գրոյ] om $M_2$ | յառաւսութենէ] յառաստութենէ $M_3$ || 24 դժոխադաւութեան $M_3$ || 26 հայցական] հարցական codd hic et porro ubique || 4—5 Պղատոննեանց $M_2$, Պղատոնոնց $M_1$ $M_3$ E || 5 հոչական] հրաշական $M_3$ ubique || 10—13 հայցական՝—ո՛վ Պղատոնունհիք] om $M_3$ || 8—10 formae dualis apud $M_1$ bis scriptae || 14 Չեզոք անուանք] Չեզոքական $M_1$ || 16 զՊղատոննկէ || 19 զՊղատոնունկք codd pro զՊղատոնունկս || 23 մոլութիւնս E || 25 յանգեսցի] դասիցի $M_3$.

*խաղասելով զհինգն առեն տասն եւ հինգ: Այսպէս եւ որք ոչն առեն երկոտասան‹երորդ›, առեն տասներորդ երկրորդ եւ անա զնոյն նշանակէ այսպէս թե առեմք ըստ հայումս Պղատոնենց նշանակէ առ Պղատոնենց բազմատրական կամ աշակերտս կամ գիրս կամ այլ ինչ աձանցական: Իսկ եթե առեմք զՊղատոն, զ-ենցն նախադասեցի ց-, ոչ ուղախաւսի, այլ մանաւանդ լինի ի ստոցն եւ ոչ ի կարծեաւք կրողացն, քանզի կարծիք թեպետ եւ ոչ նշանակէ, այլ յերկբայս զմեզ կացուցանէ խուզմանն:*

*Արդ յունականին ընականազոյն քանականութեան իւրում նա եւ ինձ թուի թե ի բաժանել լեզուացն սահման նախադասականիս այս տուեալ եղեւ ի վերայ յոգունց որպէս եւ մեր ստորադասական: Եւ այս այսքան:*

## ‹ԺԸ› ՅԱՂԱԳ ԴԵՐԱՆՈՒՆՈՒԹԵԱՆ

ԴԱՒԻԹ› *Դերանունն զիտելի է—ունելով ի պարզն:* =$116_{2}$–$117_{19}$.

ՍՑՆՓ› *Դերանունն թերանուն ստոգաբանի—եւ կրիցն ասացեալ:* =$215_{5}$–$216_{19}$.

ԱՆԱՆ› *Դերանուն փոխանակ անուան — եւ իրաւ իմն:* =$150_{10}$–$151_{22}$ (cfr $175_{21}$–$176_{5}$):

## ‹ԺԹ› ՅԱՂԱԳ ՆԱԽԱԴՐՈՒԹԵԱՆ

ԴԱՒԻԹ› *Իսկ նախադրութեան անուն — իբրեւ զայլսն:* =$117_{21}$–$118_{22}$.

ՄՈՎՍ› *Նախադիրս առ ի զարդ — եւ ‹ի›այլ այսպիսի(ք):* =$176_{7-14}$.

## ‹Ի› ՅԱՂԱԳ ՄԱԿԲԱՅԻ

ԴԱՒԻԹ› *Իսկ մակբայդ թեպէտ եւ մեծ է — եւ ողկուզարէն:* =$118_{24}$–$120_{3}$.

ԱՆԱՆ› *Նա եւ մակբայս թեպէտ եւ — իս, հո:* =$152_{5}$–$154_{11}$.



## ‹ԻԱ› ՅԱՂԱԳ ՇԱՂԿԱՊԻ

ԴԱՒԻԹ› *Նա եւ վասն շաղկապիդ — զեթ բանիկ ասեի:* =$120_{6}$–$123_{10}$.

ԱՆԱՆ› *Շաղկապս այս զերկուսին — յաղագս որոյ ասացն:* $154_{13}$–$155_{16}$.

## ‹ԻԲ› ՅԱՂԱԳ ԱՌՈԳԱՆՈՒԹԵԱՆ

ԴԱՒԻԹ› *Առոգանութիւնդ առասութիւն ասի — ապաղարծ:* =$123_{12}$–$124_{13}$.

ՍՑՆՓ› *Իսկարդ առեղն եթէ — խրատք վերծանութեան:* =$216_{26}$–$219_{10}$.

## ՅԱՂԱԳՍ ՈՏԻՑ.

ԴԱՒԻԹ› *Ոտք յայն սակս—շարադրեալք...* =$124_{15-22}$ (*Պարոյկ առնու—զպարոյկ նշանն:* =$123_{18}$–$124_{6}$).

## ԽՈՆԱՐՀՄՈՒՆՔ ԲԱՅԻՑ

M 138 *Բայ սահմանական ներգործական պարզ լծորդութեան առաջնոյ շեշտոլոր բայից ամանակի ներկայի ըստ երից դիմաց եւ ըստ երից թուոց:*

*եզական. կոփեմ, կոփես, կոփէ.*

*երկուորական. կոփոմ, կոփոս, կոփոյ.*

*յոգնակական. փոփեմք, կոփէք, կոփեն:* =45–56.

## VI

## HAMAMI ORIENTALIS

## COMMENTARIUS IN GRAMMATICAM

## ՀԱՄԱՄԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ

### ‹Ա› ՑԱՂԱԳՍ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ

. . . ||||

### ‹Բ› ՑԱՂԱԳՍ ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ

. . . ||||

E 61 *Կատակերգութիւնն աշխարհաւրէն*] Նոյնպէս եւ քարեացն յորդորականսն ըստ իւրաքանչիւրոցն ձեւացուցես. որպէս Կայենին եւ Սեթայն կամ Ղամեքայն եւ երիտասարդին հարելոյ ըստ արդարն եւ սուտն զոյգ ձեւացեալք ըստ ասացուածոյն եւ յընթեռնուլն:

E 61 *Եւ զղամբանականն*] Եւ բանք սոցա, որպէս ի վերայ Արտաշեսին եւ Դարեհին ղէպք գրեալք եւ զայսպիսի բանքս յընթեռնուլն պարտ է հմտաբար:

E 62 *Եւ զտաղն քաջոլորակի*] Այլ եւ ի մերոցս տալով տեղեկութիւն, զի տաղ ասի Դաւթեան քերդութիւնն յարմարական բառք ողբականացն որ զիրս ձայնիցն ունեին, որպէս ոլորակաւք իմն յայտ ածել զմիտս տաղին մերախոհ ունակութեամբ զգիտս իմաստից քերդողականացն բերելով ի դէմս լաւին եւ անլաւին զտաղն վերառոցական ձայնականաց եւ երգականաց ըստ իւրաքանչիւր պատահման ասացեալ, որպէս Ռոայն եւ Ռոոբիայն ճառքն կրից, կամ Դեբովրային մարգարէական ձայնիւ ասացելոցն ի վերայ Սիսարայ արքային, կամ

ADNOTATIONES. Titulum cfr Համամ Արեւելցի, որ զվերլուծութիւն Առակացն գրեաց... եւ վերլուծութիւն քերականին. Asolik III 2; որ գրեաց մեկնութիւն առակացն եւ քերականին Vardan *Hist* p. 86 || 22—23 Judices IV—V.

Դաւթին ողբք որ ի վերայ սիրելւոյն Յովնաթանայ եւ արքային Սաւուղայ ի Գեղբուայ լերինն նզովիւք անդալար բուսովք ի չորինս եւ անանձրեւաւք զվայրսն առակէ, եւ զտաղն վերառնու քաջոլորակի դիմաւք ի դէպս եղելոցն: Եւ այսոքիկ հանգամանք տաղից ի քերդողաց եւ ի մարգարէականացն բանից:

Եւ զքնարական քերդութիւնն ներդաշնակապէս] (Եւ ունել ասէ զյարմարումն եւ զդաշնակումն ձայնի աղւոյն եւ ոտին յիրսն նման եւ ոչ աւտար)։ Աղւոյն խորին իմն լարացն E 83 որ ի բնութիւնս կրի. եւ ոտին, որպէս կառուցմամբ փաստատաղրութիւն արուեստիցն հիմնաւորելով ի մեզ զոյգ շարադրել ի կարգի զկենդանին եւ զբանականն քնարական քերդութեամբ իմն առնուլ, որպէս զԱնիտոսն եւ զՄիլիտոսն եւ զձին եւ զձիավարն մարդ ի դէպ ածելով ստորագրէ:

## ‹Գ› ՅԱՂԱԳՍ ՈԼՈՐԱԿԻ

Արդ զի ոլորակացդ երեք են զանազանութիւնք, մինն սուր E 84 եւ վերասատեալ եւ միւսն ենթակացեալ եւ միւսումն վերանաւել եւ զիջեալ: Եւ ցուցից զաւրինակ սոցա ի բան եւ յանուն, որ է մասն բանի: Եւ անունն է այսպէս, զի շեշտն յանգի անուանսն ունի զոլորակն եւ յարաշեշտն նախնեզելով անգին ունի զոլորակն, համգիտաբար նմին եւ պարուկին նոյնք ստորոգին: Եւ զի դիւրահաս լիցի, գիտասջիր, զի անուն որ ի վերջի վանգն ունի զոլորակն շեշտ է եւ թե յերկրորդումն՝ յարաշեշտ եւ թե յերրորդումն՝ նախայարաշեշտ: Ի վերջէ յառաջ կոյս թուէ շեշտ՝ Սահակ, բութ՝ Ղուկաս, պարոյկ՝ Եբաւկլէս: Իսկ ի բանս շեշտ ասի. «ո՛չ այսպէս են ամբարիշտքն» եւ «ոչ այսպէս» ի վեր ունել զշեշտն. կամ այսպէս «ո՛չ շունք, ո՛չ գողք» եւ այլքն:

Ըստ հարթութեան բթիւն՝ հարթիկ ունելով զձայնն «ես խոնարհ եղէ եւ տէր կեցոյց զիս» եւ թե «արդ զամք զհետ քո» եւ թե «կամք հաստովք եւ պարծիմք առ աստուած»:

ADNOTATIONES. 1—2 II Reg I || 12 Porphyrii *Isag* XI *p.* 248 v. Isag Porph 248. || 20 նախնեզելով անգիին] pro նախ եզով նանգէն artis || 26 Psalm I 1 || 27 I Cornth VI 9 || 30 Psalm CXIV 6 || 31 *cfr* Rom V 2.



Պարուկաւն՝ կացոյց «զուս իմ ի վերայ պարանոցի թշնամւոյն» եւ հանգեայ արագ արագ:

Վասն որոյ երեք են զանազանութիւնք սոցա, զի ոլորակն քատակէ ձեւով եւ ձայնիւ փամբարձումն. իսկ բութն ըստ փոխաբերութեան բեռնակրացն, որք վասն սաստիկ ծանրութեանն մեղմագոյն առնեն զգնացս եւ սա նմանապէս մեղմագոյն զիջմամբ հարթէ զբանն:

## ‹Դ› ՅԱՂԱԳՍ ԿԻՑԻ

E 85 Իսկ կէտքն՝ զի երեք ունի‹ն› զանազանութիւն. աւարտեալ է, յորժամ չափովքն եւ խորհրդովքն աւարտի, յորժամ ասես՝ «Պաւղոս ծառայ Յիսուսի քրիստոսի կոչեցեալ առաքեալ»: Իսկ միջակ հանգէտ իմն ոգի սակս առնելոյ. իսկ միջակն, յորժամ ասես՝ «աւրհնեալ է աստուած եւ հայր տեառն մերոյ Յիսուսի քրիստոսի, հայր գթութեանց եւ աստուած ամենայն մխիթարութեանց», որ փոքր ոլորակովն լուր զոգին ոք ի մէջ տանն միջակաւն խառնէ եւ զոճն իմաստիցն բաղադրէ: Իսկ ստորակէտ՝ եթե «ինձ պարտ է քարոզել զբանն աստուծոյ» եւ թե «զայս պատուիրեմ քեզ, որդեակ իմ Տիմոթէոս:»

## ‹Ե› ՅԱՂԱԳՍ ՀԱԳՆԵՐԳՈՒԹԵԱՆ

... ||||

## ‹Զ› ՅԱՂԱԳՍ ՏԱՌԻ

E 86 Ասի գիր, որպէս թե քերելով իմն զաղափարի, այսինքն աւրինակի ըստ վկայութեան Հոմերոսի գրոյ զտաւղի: Իսկ ըստ մերում ստուգելոյ եւ վկայութեան աստուածային գրոց գիր ասի, վասն զի գծելով իմն կշռի, զի քերելդ ջնջել եւ ապականել ասի, իսկ գծելդ դրոշմել եւ քանդակել, որպէս ի թիթեղանն կամ յականս պատուականս ասացաւ զգծեալն

ADNOTATIONES. 1 cfr Jesus X 24 || 5 *cfr supra p.* 41 7 || 11 Rom I 1 || 13—15 II Cornth I 3 || 17 *cfr* Luc IV 43 || 18 I Timoth I 18.

եւ զքանդակեալն գրել, որպէս եւ կնիք մատանւոյ զգծեալ գիրն ընդունի մոմն եւ ցուցանէ զգիրն. որպէս Երեմիայիւ ասաց աստուած՝ „տաց զաւրէնս իմ ի միտս նոցա եւ ի սիրտս նոցա գրեցից զնոսա:“

Նախադասելով զինիւն եւ զիւնիւն] Նոյնպէս եւ ինդ E 95 ւիւնիւդ կարէ լինել նախադիր ըստ ասացելում աւրինակիդ, որ ասէ. ստորադասք են երկու, այսինքն ներքեւադասք, վասն զի յանգի անուանն դնին ւիւնդ ուղղականին որպէս եղջերու եւ ինդ սեռականին որպէս եղջե(ւ)րուի:

Իսկ ասելն թե ինդ է ուրեք որ վաղադասական է քան ւիւնդ որպէս յիմաստութիւնդ եւ յարդիւնդ. քանզի յորժամ առ միմեանս պատկանին ինդ եւ ւի‹ւ›նդ յուղղական անուանսդ միշտ ինդ առաջի դնի վերջի վանգին, որպէս իմաստութիւնդ եւ յարդիւնդ:

... ||||

Եւ վախճանականք անուանց] Ցիշել պարտ է յաճումն E 99 մտաց ուսումնասիրաց:

Ողբ բենն է բաղազանել ի դէպ:
Ազգ գիմն է, սերաւորելով զազգս:
Մարդ դայն է սեռաւորել զհասարակաց զձայն:
Բոզ զայն է լուտականացն ի դէպ:
Բազէ էն է ի պայծառական կենդանւոյն:
Բաղթ թոյն է թուլազոյն եւ տխուր:
Վարժ ժեն է հոմերոսեան խոկացս գործի:
Բարի ին է, աւրինակելով զքարս բարուց:
Տալ տիւնն է, լի անուն շնորհականն իմաստնոց:
Խրոխ խեն է խրոխտականն պարուց:
Ինծ ծայն է տարբերաւղն ծննդական կենդանւոյն:
Տունկ կենն է ‹եր›կրաղատ բուսական տեսակին:
Մահ հոյն է համբաւելի բալթք մահուց:
Հանդերձ ձայն է ձեւական զգեստն զարդուց:
Մանուէղ ղատն է վերական աստուծոյ տիպ կոչման:

ADNOTATIONES. 3—4 Jerem XXX 33 || 27 խրոխ] pro խորխ artis.



Կենճ ճեն է ճահաւոր եւ ընդդէմ ախտի եւ սատանայի:
Որմ մենն է մեկնազարդ շինողաց:
Խոյ յին է յարադրական արական կենդանւոյն:
Տարաւն նուն է նախադիր անուան եւ զաւառի:
Ուշ շայն է շարունակաւղ ուշայինն մտաց:
Ունչ չայն է անուանական մասն անդամոց:
Ամպ պէն է պայծառ էջք հոգւոյն ի վերուստ:
Որջ ջէն է ջատագովին աւանքն մեղաց երկրի:
Կուռ ռայն է ռատ ներկռելոցն քերդողացն ի դէպ անուն կամ ձայն:
Հիւս սէն է ստորաքերաւղ ջայլակոծելոցն աւղաքերական ձայնից:
Խոսրով վեւն է վառազուշական անուն մարդոյ:
Կոյտ տիւնն է տառաժողովականն հոյլք կուտելոցն թեովնականաց:
Այր րէն է րաքունականացն դէմք հասարակական անուն ի Հոմերոսէ ասացեալ:
Ոյց ցոյն է ցուցանողական հարցականին. ոյց՝ սոցա կամ նոցա ի Պիթագորէ ասացեալ:
Իրաւ ւիւնն է զերազարդ կոելոցն յԱրիստոտելէ զիրաւն ներգործողին առնելով:
Թուփ փիւրն է փառացական տունկ ի վայրէ ըստ սարդենի մահակն Ապողոնի առակեալ:
Կնիք քէն է քմականաց կնիքն ի Պղատոնէ դրմանով անկեալ, երկդիր սեռաւորացն գործի իսկաւորական սահմանաւ աւարտեալ զքոլորս հետեւելոցն ի գիրս:

## ‹Է› ՑԱՂԱԳՍ ՎԱՆԳԻ

... ||||

## ‹Ը› ՑԱՂԱԳՍ ԵՐԿԱՐ ՎԱՆԳԻ

E 101 Ծանիր եւ զայս վասն երկար վանգիս, զի սակս այնորիկ ասի երկար, զի զտարմն յոլովակի գրոյն ի ներքս փակէ: Ցե-

ADNOTATIONES. 16 pro այր] ածր cod.

ղանակս ուԹ, զի յուԹ ձեւս եւ ձայնս եւ զնացս ասի. ընու- Թեամբ, զի վաղաժամանակեան է եւ զներկայս եւ զապառնին յինքն բերէ. դրուԹեամբ կոչէ զընակաւոր արուեստաւորին զարուեստն ի բնուԹիւն զոյիցն, զՆզլիցն կերպս առ ինքն բե- րելով յեղանակաւ իբր ներկուռ Հանճարով զոլ ծանաւԹ նոցա:

## ‹Թ› ՑԱՂԱԳՍ ՍՈՒՂ ՎԱՆԳԻ

...||||

## ‹Ժ› ՑԱՂԱԳՍ ՀԱՄԱՐԱԿ ՇԱՂԱՇԱՐԱՑ

...||||

## ‹ԺԱ› ՑԱՂԱԳՍ ԲԱՌԻ

...||||

## ‹ԺԲ› ՑԱՂԱԳՍ ԲԱՆԻ

...||||

## ‹ԺԳ› ՑԱՂԱԳՍ ԱՆՈՒԱՆ

...||||

Իսկ մակաւասարն որ է ի վեր քան զՀաւասար, ծիծառն, E 120- աքիս, որ իգական են անուն ի տեսողացն անգիտելի արուն եւ էգն, որպէս աղաւնին եւ տատրակն իգական անուն, իսկ առիւծ արծուի՝ արական: Նաեւ ի ծաղիկս զվարդ, զմերուշան, զաս- պուզան արական ասացին եւ զշուշան եւ զմանիշակն՝ իգա- կան: Եւ ձեւք սոցա ի բնուԹիւնս մեր տեսանի, արական պնդու- Թիւնքն ի ձեւ վարդին եւ իգական լուծուԹիւն ըստ մանիշակին եւ շուշանին:

...||||

ԸնԹանկեալ ընդ անուամբ] Բայց արդ դառնամ միւս E 135- եւս յընԹանկեալ տեսակացս խաղաղացմունս եւ զեւս պա-



տեհսն ի մատոյ պարզիկ իմն առնում ըստ յիս առելոցս քերդելով բան ազդողականաց, ըստ որում մարդս ասիմ

‹1› եւ ըստ իսկին բանական եւ ումն անուանական պարզ:

‹2› Եւ ըստ առասականին՝ յընդՀանրական եղելոցն զՀա- սարակաց կենդանին մակաւասար ի նոսա Հրաշափառ իմն Հաղորդիմ եւ ասիմ կենդանի եւ զերադրիմ ի վերինսն:

‹3› Եւ ըստ մակադրին՝ զպարսաւն կրեմ եւ զովողաւքն ծածկիմ ունակուԹեամբ:

‹4› Եւ ըստ առինչունակին՝ տիրեմ կամ ծառայեմ կամ յերկուց ներՀակացն զոյգ ազատիմ:

‹5› Եւ ըստ իբր առինչունակին՝ մարմին իմ անձաւոր եւ շարաքերեմ զեղեցիկ զմիջակսն:

‹6› Եւ Հոմանուն եմ ի ծնաւղաց եւ լաւ մտածուԹեամբք զովիմ կամ դսրովիմ ի յետոյ:

‹7› Եւ փաղանուն եմ ի յոլովակի քաղաքորոցն որ յիս փաղինն իմացմանցն ձեւք:

‹8› Եւ քերաւնուն ասիմ կամ յառաքելուԹենէ առաքեալ, կամ ի քերականուԹենէ քերդաւղ, կամ ի քաջուԹենէ քաջ:

‹9› Եւ երկանուն դրուԹեամբ եմ ընդ այլում այլ ոք նոյն կոչմամբ, այլ Հանճարով եւ ունակուԹեամբ յաղԹեմ նմա կամ յաղԹիմ ես ի նմանէ:

‹10› Եւ մականուն՝ ըստ որում պատկեր եմ պատկերի եւ նմանուԹիւն նմանոյն, կենդանի եւ բանաւոր եւ երկուց կոչ- մանցն տէր եւ առաքեր լուծողացն:

‹11› Եւ ազգական՝ մարմնով կենդանեոյն եւ Հոգւով բանականիս պայծառական:

‹12› Եւ Հարցական՝ ըստ որում Հարցական իմս Թե քեր- դաւղ եմ կամ ունակ կամ երաժիշտ:

‹13› Իսկ անորիշ՝ ըստ Հիմնաւորելոյ գոյացուԹիւն կամ մարդ:

‹14› Եւ վերբերական՝ զի վեհս եմ Հոգւով եւ երկնախոՀ դետական. եւ նմանականն՝ Հրեշտակի. եւ ցուցականն՝ աստուծոյ. եւ դերՀատուցականն՝ ընտրաւղ բարւոյն եւ չա- րին եղեալ եմ եւ ասիմ:

‹15› Եւ բակձածական՝ ըստ կրկին հանճարոյն, առձեռն լին նախ եւ պակասն յետոյ ի կրից:

‹16› Եւ մակբաշխն՝ որում յերկուցն բաղկացեալ եւ ի մի համոզեալ բաղադանելով:

‹17› Եւ պարունակ՝ զի ըստ երկնի եւ երկրի զտեսանելիս եւ զիմանալին լիով իսկ պարունակեալ ունիմ շուրջ ունողաւքս:

‹18› Եւ քերդելով՝ զընաւս ըստ իմոյ անձին առնում զձեւ զուգիցն հրաշ:

‹19› Եւ սեռական եմ ըստ բանականին եւ կենդանի ըստ անմահիցն վեհական:

‹20› Եւ յատուկ՝ որպէս ծիծաղականն եւ լալականն եւ մահկանացուն լուծաւղ:

‹21› Եւ դասական՝ յետ աստուծոյ եւ հրեշտակաց ես բանական եւ սպասաւոր եւ ազատ:

‹22› Եւ թուական՝ ըստ բաղկացելոցն քառիցս:

‹23› Եւ բացարձակ՝ ըստ յուսոյ, յորում զաստուածանալն փառաւք մաքրողական գործքն հրաշածայնեցին:

Ըստ անուանն հաստատադրեալ է յերկնիցն սարասոյ ներգործութիւն կամ կիրն. ներգործիմ հոգւովն սրբով ի սուրբս հրաշաքերելով պարզ: Եւ կրիմ որականաւքս ի մարմնոյ զպատեհսն եւ զանպատեհսն: Եւ ներքերին յիս դատողական ընտրութիւնք սեռին եւ երկրաւոր իմն ես որպէս դատեալ իմաստիւք: Եւ դարձեալ ի քերդաւղս բառնամ զտեսակացն դիրս անհատ իմն յիս ժողովեալ զենթանկեալսն ի պարունակիս բովանդակ:

Դարձեալ կրկին մեկնութիւն տեսակացն անուան զեղեցիկ իմն արուեստախաւսութեան բանիւ:

‹1› Իսկն՝ աստուծոյ:

‹2› Եւ առասականն՝ աստուածայնոցն:

‹3› Մակդիրն՝ էութեանց:

‹4› Առինչունակն՝ չափոց:

‹5› Եւ իբր առինչունակն՝ սահմանականաց:

‹6› Հոմանունն՝ բանականիս:



‹7› Եւ փաղանունն՝ հասարակաց:

‹8› Բերանունն՝ քերդողաց:

‹9› Երկանունն՝ սրբոց:

‹10› Մականունն՝ դիպաւորաց:

‹11› Ազգականն՝ ճոխաց:

‹12› Հարցականն՝ խոկաց:

‹13› Անորիշն՝ ճեմականաց:

‹14› Վերբերականն՝ հրեշտակաց. եւ նմանականն՝ հոգւոց. եւ ցուցականն՝ մարդկան. դերհատուցականն՝ դիւաց:

‹15› Բակձածականն՝ ունակաց:

‹16› Մակբաշխն՝ դատողաց:

‹17› Պարունակն՝ բոլորից:

‹18› Քերդեալն՝ տեսակին:

‹19› Սեռականն՝ կենդանւոյն:

‹20› Յատուկն՝ ինձ:

‹21› Դասականն՝ այլոց:

‹22› Թուականն՝ բազմաց:

‹23› Բացարձակն՝ զոյապետին անճառին աստուծոյ:

## ‹ԺԴ› ՑԱՂԱԳՍ ԲԱՑԻ

Բայ է բառ անհոլով] ... ||||

E 139- Եւ խոնարհմունք են հինգ] Իբր սահմանաւ եցոյց զի դէպ ժամանակն եւ զդէմն: Աներեւոյթ՝ գործել, կոփել, գրել, դէմն ոչ է ի միջի, այլ սահման դիմին եւ ժամանակին ըստ մտածման: Հրամանեան՝ գործեա, գրեա, որպէս ի տեառն հրամանէ կամ յումեքէ: Ըղձական՝ գործիցեմ արդեաւք, որպէս մեծաւ ցանկութեամբ գործելով զընաւսն: Ստորադասական՝ կոփեմ, գործեմ, որպէս թե յետ այլոցն եւ ես գործեմ:

E 140- Եւ է նախազաղափար եւ ածանցական, որպէս ոռոգաւղն եւ ոռոգեալն. ոռոգաւղ քերդաւղն կամ շարագիրն եւ ոռոգեալք՝ աւգտեալք ի նոցունց: Նոյնպէս տես եւ զայլսն:

E 141 Ձեւք են երեք] Վասն զի ամենայն գիտութիւն ըստ երիցս

ADNOTATIONES. 26 cfr supra p. 126[23].

յեղանակի ձեւանայ՝ պարզին եւ անպարզին եւ շարադրելոյն. պարզ՝ մարդ, որ է հասարակաց. ըստ անպարզին՝ գեղեցիկ մարդ. եւ շարադրեալն՝ գեղեցիկ մարդ Պաւղոս, որ է ումն մարդ:

E 142 Եւ կոչի ներկայ, որ այժմս կայ եւ դէմք եւ գործք որ ի սմա ցուցանի: Իսկ անցեալն, որ չէ ի միջի եւ ոչ դէմք եւ գործք նոցա, այլ որպէս երազ ընդ մոռացմամբ եւ որպէս գիծք գրոյ ի վերայ ծեփոյ եւ աւազոյ եւ ծեփն եւ աւազին կուտելոյ վաղիւն չէ ի միջոյ: Ապառնի զառաջիկայն ասէ, որ յուսով զգործս ըղձիցն ունի յինքն, որպէս եւ հանդիպին չար կամ բարի, փառս կամ անփառութիւն: Եւ աւրինակ երից ժամանակաց բայի այսպէս. ներկայ, որ է մերձակայ եւ են բայքս այս՝ կոփեմ, զանեմ, ուտեմ, նստիմ, յառնեմ, խաւսիմ եւ ամենայն այսպիսիքս: Ցուցանէ եւ զանցեալն ժամանակն այսպէս. կոփեի, կամ կոփեցի, զանեի, ուտեի, ըմպեի, նստեի, յառնեի եւ ամենայն այսպիսիքս: Եւ նշանակէ բայ եւ զապառնի ժամանակն, որ է ապագայ այսպէս. կոփեցից, զանեցից, կտրեցից, կերայց, արբից, վարեցից, խաւսեցայց եւ ամենայն այսպիսիքս:

E 143- Եւ թէ ըստ գրոց կամիցիս առնուլ տարացոյցս չորից զանազանութեան ամանակաց: Ցարածզականն, որ յԱդամայ եւ ի դարս Նոյի եւ ի ժամանակս Փաղեկի եւ յԱբրահամէ եւ այսր գործեցան իրք: Եւ յարակայն, որ ի Մովսիսէ աւրինաւքն եւ մարգարէիւքն հրաշագործեցան: Եւ գերակատարն՝ ելք աւրինացն եւ մուտք շնորհացն, որք ի վեց դարուս, որք սկսեալ ի ծննդենէն քրիստոսի ըստ տարեւոր յեղանակացն չորից տնաւրինութեանն կատարումն: Իսկ անորիշն՝ երկրորդ գալուստն քրիստոսի եւ անժուժելի աւր երեւմանն ըստ իմաստնոյն՝ „երիւք շարժի երկիր եւ չորրորդին ոչ կարէ հանդարտել:“ Երեք՝ զժամանակս ասէ անցաւորս, յորում տարքերիմքս եւ ի չորրորդումն չժուժկալեալ ասէ ըստ այնմ՝ „ահ մեծ է անկանել ի ձեռս աստուծոյ կենդանւոյ“. Դաւիթ՝ „դու ահաւոր ես եւ ո՞ կարէ

ADNOTATIONES. 29 Prov XXX 21 || 31—32 Hebr X 31.



կալ առաջի քո:“ Եւ այս ամենայն ըստ չորից յեղանակաց հասանին յաւուրս կատարման, որպէս զարուն, որ ի սկզբանէ մինչ ի մեզ հրաշաքանեցին զծնունդն քրիստոսի ճեմականքն Սիովնի, մարգարէքն սուրբք: Ամառն, որ պարզեւք շնորհաց եւ հեղմունք բարեաց, առաքելազունդ փիլիսոփայքն ստորոգելով տրոհեցին զքազմաքեր պտուղս: Աշնանային եղանակ գերակատար հունձք տերունի ազարակին ի քաջ գործաւորաց այգւոյն, զքերս պտղոցն ժողովեցին: Իսկ ձմեռն՝ խիստ, անփախուստ եւ անհանդուրժելի, զգալստեանն քրիստոսի աւր ստորադիրք սրբոցն զեկուցին:

## ‹ԺԵ› ՑԱՂԱԳՍ ԼԾՈՐԴՈՒԹԵԱՆ

E 145 Լծորդութիւն է—շեշտոլոր բայից] Եւ շեշտոլոր այսինքն վերացեալ ձայն գերազարդ պայծառութեամբ յենթակայի ունելով զդէմս բանից ութիցն, զոր տեսանեմք ի կարգի:

E 145- Առաջինն՝ բենիւ, մենիւ, պէիւ, փիւրիւ: Բենն ի միջակացն եւ զմենն եւ զպէն իբր ամոլք ի լերկիցն. իսկ զփիւրն ի թաւացն շարայարելով ի մի լծակցութիւն, որք զմի տան ազդումն զաւրութեան բանին, որպէս եւ ասէ. ջամբեմ՝ որպէս թէ զիմաստիցն կերակուր զքանս անուանականին: Ծամեմ՝ որպէս թէ ծասկելով իջանի ցխոհականացն հանճարս: Ըմպեմ՝ զտարմն ձայնականին որպէս զջուր ուխից զքերդածս լաւացն: Չափեմ՝ ընդդէմ անուսումնութեանն զանձնաւորական կերակրոյն զչափ եւ թէ հաճոյ քեզ ըստ մարմնոյ կերակուրս վարժէ զքանս:

Իսկ երկրորդն՝ գիմիւ, կենիւ, քէիւ, խէիւ: Կարգեմ ի շարադրելոցն իմաստից ի մերս կարգելով ի միտս: Փակեմ՝ խոհականին շրթամբք ընդդէմ ներհակին: Կնքեմ՝ զմիտս նորազարդիցն ուսմամբ: Ա‹ղ›խեմ՝ փակաղակաւք ի խորս սրտին:

E 146 Իսկ երրորդն՝ դայիւ, տիւնիւ, թոյիւ. ազդեմ, աւարտեմ, յաղթեմ. դայիւն զառաքինութիւնսն չորս ի մասունսն

ADNOTATIONES. 1 Psalm LXXV 8.

հոգւոյ: Աւարտեմ` զիմաստն գործովք հաստատութեամբ կակղութեամբ տինիւն: Ցաղթեմ բնաւ հոլովիցն տառից: Ազդելն առ ոք եւ աւարտել զիւր կամս եւ յաղթել զաւրելով յումունսն: Սոքա երեք բառքս զմի գործ ցուցանեն:

Իսկ չորրորդն` զայիւ, սէիւ, ծայիւ, ցոյիւ: Կորզեմ` իբր զէն յիս կորզեմ զվեց մասունս քերականութեանն: Ասեմ սէիւն զասհման գրական արուեստին: Փործեմ կրթելով զծայնս բանի ծայնիւն որով տառքն զարդարին: Հայցեմ զցնծութիւնն, որ վեցհազարեակ թուով ցոյին ի հոլովսն զմիտսն խմբելով: Եւ սոքա չորքս զմի իրս նշանակեն, որպէս թե կորզել զմիտս ուրուք ասելով, փործելով, հայցելով:

Հինգերորդ` ժէիւ, շայիւ, չայիւ: Շարժեմ ժէիւն զտաանեակ զզայութիւնսդ յախորժումն ուսմանցն: Մաշեմ ի հմտութենէ տգիտական մասանց եւ շինեմ շնորհաւք: Կոչեմ ի լաւացն հանդէս: Եւ սոքա առ մի իրս ասին, զի նախ շարժել յայնմանէ յոր հաստատեալ է եւ առ փոքր փոքր մաշել զխամութիւն մտացն եւ կոչել ի կարգս վարժեցելոցն:

Վեցերորդն` լիւնիւ, ղատիւ, նոյիւ: Ծալեմ լիւնիւն զլայնատարած ճապաղեալ խորհուրդս: Մաղեմ խիտ իմն քննութեամբ զորակս մասանց հոգւոյդ: Մանեմ նուիւն մեկնողաւլէն մանուածովք արհեստին հիւսեալ զպսակս հրաշիցն որ ի մեզ բաղդատքն ներքին:

Իսկ եւթներորդն` ծայիւ, ջէիւ, ճէիւ. կարծեմ, տանջեմ, կարճեմ: Կարծաւղ միտք տանջանաւք բնաւորեալ է ի կարճել զվատթարսն զիւրսն եւ կամ զայլոցն. սոյնպէս եւ երեք լծորդ գիրս ներգործեն:

Ութերորդ` երկուորական յատուկքն: Բերեմ ռախական ռաքունիցն զարհեստ: Վառեմ ի լաւս ոողգելոցն հազարաւոր լուսոյ փայլմունս:

Իններորդ` հո‹յ›իւ. կահեմ զկարգս կահաւորելոյ:

Բայց եւ ասէ տասն‹երորդ› մաքուր եչիւն. դիեմ, զովեմ: Դիեմ ինծ կամ զովեմ բնազարդ եչիւն պայծառ: Եւ մաքուր ասէ, զի միայնակ եւ յատակ ի ծայնս:

Պարոյկ ‹բայից› լծորդ երեք, որպէս սեռն եւ տեսակ եւ



կենդանին, որոց առաջինն արտաքերի յառաջին եւ յերկրորդ դէմս, որ է կենդանին, այբիւ երկայնիւ. որպիսի զամ, զաս, զայ: Գամ-ն` որպէս յաժարական ի հոլովս անուանցն. եւ զաս-ն` որպէս ի քերդողականացն լուծս. իսկ զայ-ն` որպէս զինքնակամ տրոհաւղս ի պարոյկս բային կահաւորելով:

Եւ յերկրորդումն ոյիւ երկբարբառով. առնում զմիտս արուեստին, առնուս դու առաւել, որ քաջն է եւ կիրթ յառնուլ զբոլորս լծորդացն;

Երրորդն` եչիւ եւ այբիւ. զեամ, զեաս: Ծեքական է բառս ըստ մեին լեզուաց: Ոյիւ եւ եչիւ` զոմ եւ յղոմ. զոմ` որպէս խիտ իմաստիւք ընդ լծումն զալ, որ են քերդութիւնք չափուց: Եւ յղոմ-ն` առաքողական դիմաւք:

## ‹ԺՁ› ՑԱՂԱԳՍ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ

E 155 Ընդունելութիւն է բառ] Զի ոչ ունի հոլովս որպէս զանուն եւ ոչ զանազանի ի խոնարհմունս որպէս զբայն, որ ի հինգ դէմս խոնարհի, այլ ունի յերկուցն եւ կայ յիւր առանձնութիւն, որպէս թե ոք ասէ մարդկութիւն կամ ծիաւորութիւն, իսկ զմարդն կամ զծին ոչ նշանակէ:

Այսպէս ընդունելութիւն ոչ զդէմս եւ ոչ զթուութիւն իրիք նշանակէ, որպէս յորժամ ասես շինեալ, տարեալ, բերեալ, գրեալ, ոչ յայտնէ զդէմս, յորմէ արդեաւք իցէ շինեալ, բերեալ կամ տարեալ:

## ‹ԺԷ› ՑԱՂԱԳՍ ՑԱՒԴԻ

E 158- Բայց զոր ի բնաբանիդ յիշէ, նոքաւք յայտնեցից զզաւրութիւն յաւդին: Զի յաւդ ցուցանէ զմերձն եւ զհեռին, զշատն եւ զսակաւն. մերձ որպէս զսեռն եւ հեռի որպէս զընդհանրական կենդանին. շատն որպէս զբոլոր տեսակս, սակաւն որպէս զմասնաւորն կամ զումն մարդ: Նաեւ ամենայն ասելով զայ ի վերայ սեռականի մարդոյն. որպէս թե մարդոյ, որ է հասարակականն եւ մարդն, որպէս ումն յատուկ մարդ. իսկ մարդքս`

զյոլովս մերձակայիցն ի պարս. իսկ մարդքն՝ զեւս բազմաւորականն ի հեռաստանէ նշանակելով: Բայց ի յունականին յոլովք են սորա տեսակք: Իսկ ի մերս թարգմանչացն փոքր մի առումն զհարկաւոր պիտոյիցն:

Եւ նախադասական է այս, որգոն ո, որ է հարցական: Եւ ստորադասական՝ որ:

Եւ են սերք, որգոն արարաւղ. որպէս շինաւղ տան եւ տնկիչ բուրաստանի կամ թէ ոք արարաւղ բարւոյ եւ չարի, որպէս իշխանական: Արարած՝ որպէս արարեալ յումեքէ, ըստ որում եւ մարդն յաստուծոյ. «ձեռք քո արարին եւ ստեղծին զիս»: Արարուած՝ որպէս ի մէնջ արարուած գործոց ի մեզ են կարգեալք լաւին եւ վատթարին, որ ի յետոյ ունին զյայտնութիւնն:

Թիւք երեք: ‹Եզական› այս՝ թէ այս(ն) է զոր խնդրեսն. եւ այս է զոյնն մթին կամ պայծառ: Իսկ երկուորականն ոչ է ի մերս պարզ, այլ ասելովն այս, այսու, այսով. թէ այս է բանն խնդրոյ, կամ այսու ձեւով, այս էր աղբիւրն կամ տունն, կամ թէ այսով աւրինակաւ անցին ընդ ծովն եւ այսու զաւրութեամբ փրկեցան: Յոգնականն՝ այսք, այդք, այնք. որպէս թէ ‹ի›այսմ լերին այսք ժողովք են, կամ յայդ քաղաքի այսք իշխանք, կաս յայսմ հովտի այսք ծաղիկք:

Իսկ հոլովք՝ այս, այսր, այսմ. որպէս թէ ասես՝ այս գործ աստուծոյ է գործ. կամ այսր եկ եւ տես զսքանչելիս նորա. կամ թէ այսմ գիտակակից է Դաւիթ. այսու՝ այսու աւրինակաւ դու մարտեար եւ ես մարտնչեմ. զայս ով՝ որպէս թէ զայս ով կարասցէ գիտել, որպէս թէ զի խոր է, կամ թէ զայս ով պատմիցէ եւ ի վերայ ածէ թէ զայս ինքն տէր պատմեսցէ: Այս եզականացն են դէմք:

Երկուորական՝ այսու թէ բազում ժամանակս կեցցէ:

Ըստ յոգնականին՝ այսք. որպէս թէ այսք յառաջեցին, կամ այսք մտին, փութասցուք եւ մեք ընդ նոսին մտանել ի հանգիստն: Իսկ ի հոլովսն՝ այս հանդէսք են աստուծոյ. այսր

*ADNOTATIONES.* 10—11 Job. X 8.



աշխարհի լոյս ծագեցաւ քրիստոս. այսմ գործոյ տեղեակ եւ քննիչ է հոգին սուրբ: Եւ այս քննութիւն մասանց յաղագս ըստ իւրում ցուցելոյ բնաբանին մասանց, սերոցն եւ թուոցն եւ հոլովիցն:

## ‹ԺԸ› ՑԱՂԱԳՍ ԴԵՐԱՆՈՒՆՈՒԹԵԱՆ

. . . ||||

## ‹ԺԹ› ՑԱՂԱԳՍ ՆԱԽԱԴՐՈՒԹԵԱՆ

E 163 Այլ ըստ իւրաքանչիւր բառիցն հետեւման դիցուք եւ բանս լուծման, գտանելով ի սովորաբար ասիցելոց:

Ներ. որպէս ներգործել, ներունել, ներձայնել:

Արտ. արտակացեալ, արտաբերեալ, արտախուզեալ:

Ատր. ատրախաւսիմ, ատրադատիմ, ատրահաւանիմ դիմաց եւ իրին:

Ապ. ապաւառ, ապաքինից, ապաք, յորում զոմն:

Բաց. բացատրել, բացափայել աստի կամ անտի ի վերուստ:

Նր. նրասեմ, նրւիրեմ, նրքոլորիմ ի գլուս կամ յանգլուս:

Ըն. ընդ ինեւ կայք, ընդ ինեւ շաղապատին:

Բար. բարեւորեալ, բարեզանեալ, բարառնութեամբ քերդեմ կամ քերդիմ:

Բաղ. բաղադրել, բաղազանել, բաղարկոցել զիր առ իր:

Շաղ. շաղապատել, շաղամանել:

Շար. շարաբերեմ, շարադրիմ, շարագործեմ ի դէպ իմն ի դէմս եւ ի հոլովս:

Մուշտ. մուշտակեալ ասի մուշտ կամ հաւել ի հոյլս կամաւ ի ջոկս աւանաց:

Զով. զով ոք ասեն յինէն, զով ոք ասէք դուք:

Ջոկ. ջոկամանեալք ի խումբս. ջոկք վերնոցն շուրջ կան զնովաւ:

Պար. պարագրաւղն վերնոց, պարք սրբոցն:

Նախ. նախնական զաւրութեամբ հիմնեցաւ աշխարհս, նախկին լոյս, նախաստեղծին պատուիրանն:

Կան. կանխաւ սահման եդ ծովու:

Ուխ. ուխտս դիք. ուխտեաց աստուած Աբրահամու:

Վաղ. „վաղվաղակի ածէք զեզն պարարակ":

Առ. առաջին աւուրքն, առաջին դասք, առաջին մարդ:

Արդ. արդ ես ինձէն իսկ եկից. արդ եւ դուք մարդիկ իցէք:

Վեր. վերին զաւրք, վերնական փառք:

Ըստ. ըստ նա գրելոյն զմեզ աստուծոյ. ըստ նորայոցն խորհել մեզ եւ առնել:

Ընդ. ընդ նմա եղէց. ասէ տէր, ընդ ձեզ եմ:

Ստոր. ստորաքերել, ստորանկեալ:

Խոն. խոնաւուտ, խոնարհեցաք:

‹Ունչ. .:. ||||

Զկնի. զկնիք սուրբ ընկալաք. զկնի տեառն մերոյ գնացաք:

Յետ. յետնապէս, յետ Նոյին եւ մեք կոչեցաք ի հանդէս:

Տար. տարան զիս յարքունիս, տարաբերիմ:

Մատ. մատնեցաք մեք, մատնեցաւ տէրն:

Յար. յարուցողին յարահետեւիմք:

Քող. քողածեւելով, քողախնդրելով զքերդողացն բաղդատելով քողարկութիւն կրիցն:

Գաւ. գաւազանականաւք, գաւիթ սրբութեան:

Թափ. թափանցիկ լոյս, թափանցիկ բանն աստուծոյ:

Պար. պարունակեալ, պարաւորացն հանդէսք առաջի կան քրիստոսի:

Կար. կարաւորք, կար զաւրութեան իմոյ չէ ընդ ինեւ:

Փար. փարազրողին, փարիմք հոգւով շուրջ զնովաւ:

Բակ. բակառեալք ի բանիս, բակականաւք բակճաճեալ:

Հիռ(ն). հիռականազունաւքն հիռալ կամ հիռ զալ:

Թեռ. Թեռադատաւրէն, Թեռաւորական Թորումն:

Հակ. հակասաբար, հակառակ իմ ես:

ADNOTATIONES. 5 Luc XV 23.



Դեր. դերեւականք խմբից, դերեւս հանեալ, դերաքրիստոս ասի նեռն:

Փոխ. փոխանակ քո զՄիոն արարից, փոխահատոյց, փոխանակ տալոց իմ քեզ:

Մակ. մակահրաշական է բանս, մակերեւութանայ մի ոք ի քերդողացն:

Քան. քանզի դու ես մեր դէտ. քանզի քեզ նուիրիմք. քանակաւոր է շարադրութիւնն:

Գեր. գերազարդական է խորհուրդս, գերապայծառք ասիմք ի հոլովս բանին:

Աւել. աւելազոյն իմն խորհրդոցն հասի. աւելի շարաքերիմք. աւելազոյն եին հոյլք բանիցս:

Վասն. վասն այնորիկ եկի ի ժամս այս շատ կայ:

Յաղագս. յաղագս Ադամայ եմուտ մահ. յաղագս քրիստոսի կեանք:

Այս ըստ յիսնիցն բան առ բան զի մի ամենեւին դատարկիցէ բնաբանին շարադրութեամբ կերպի եւ դիմի քերողացն:

E 165 Իսկ ստորադասքն երեք, սակս, կից, որդ. ⸢սակս այսորիկ զդէպս արուեստից զտի⸣:

Սակս. սակս այսորիկ Պղատոնական ասեմ. սակս ամենայն մասանց է նախադիրս բազմաթիւ:

Կից. յոգնաձեւ իմն է եւ սա. կիցք ասին ածմունք մեր ի շարս. կից է եւ վերծանելն ծանաւթից:

Որդ(ն). որդն լի ասի անուն եւ կէս զայ ի բանիս, յորժամ իսկատրեմք զկցորդն. կիցն դրական ասի եւ որդն անուանական առ որս եւ ասի՝ որդն եմ եւ ոչ մարդ. որդն անքուն տանջողական եւ այդ այսպիսիք յոլովք:

Եւ թե ընդէր յիսուն եդ զքանակութիւն սորին թուոց. զի իմաստասիրացն բանք եւ պրակք սահմանեալն եւ չափեալն գեղեցիկ թուին, որպէս քառեակն եւ ութնեակն պիթագորականացն եւ պղատոնականացն վեցեակն եւ զերկեակն ի բազմաւորականսն առնլով եւ թէովնականացն երկից եօթնեակն զլուխ ճարտասանութեան եւ արիստոտեղականքն զհիմնացեալ զտասունսն եւ Հոմերոս զքսան եւ երկեակն եւ ութք ի նոցանէ

ասին մասունք բանի, որպէս կրկին քառիւքն որ ի մեզն բաղդատին բնութիւնք խառնիցն: Սապէս հնգիցս տասնեակ բաղդագանելով զյիսնակն ի նոյն ձեւ ի խորհուրդ խորին դրութեանսդ որ ի քեզ կշռելով սահման: Նախդիրս ծննդագործէ բան եւ զծնելոցն չափսն ներառնու եւ ինքնադիր առածութեամբ զարդարեալ ունի զկամաւղսն խոկաց: Այսոքիկ եղիցի ի մեզ առոգմանս գործի եւ քննութեանց զէն եւ քերդողութեանց զգեստք եւ նախակրթութեանցն սեղան եւ խոկացն բաժակ եւ կարողացն ճոխութիւն եւ ճեմականացն իմացական սանձք եւ սիովնականացն հետեւումն ազնիւ եւ եկեղեցականաց վանգ լիաբոլոր սեղանականաւք եւ աստուածաբանականացն մեկնոց փոքր եւ համբակացն վայելուչ զարդ եւ մեզ ստորապայծառ պատմուճանք անգին ի Դաւթէ եւ ի Պաւղոսէ հրաշացան եւ որ ի տէրունական ի պսակ ի քրիստոսէ ունիմք զվեցուն յանճառից:

## ‹Ի› ՅԱՂԱԳՍ ՄԱԿԲԱՅԻ

Մակբայ որ է կրկնաբայ, որ է բայ ի վերայ բայի ասացեալ: Եւ անխառաց ասի, զի ոչ հոլովս ունի, որպէս զանուն եւ ոչ խոնարհմունս, որպէս բայ: E 169-

Ստոր բայի ասացեալ կամ մակ ասացեալ բայի. զի երբեմն ստոր բայն տրամադրի եւ երբեմն մակբայ, այսինքն ի վերայ եղեալ լինի եւ ի ներքոյ:

Ոմանք պարզք եւ ոմանք ջոկամանք: Որպէս եւ յանուանն պարզ է ոմն մարդ կամ ոմն անասուն եւ բաղադանեալ սեռականն, որպէս կենդանին. նոյնպէս եւ աստ պարզ՝ վաղ, նախ. զի վաղն ասացողական է եւ նախն յիշողական: Եւ պարզք ասին, զի մեկին են. վաղն, որպէս թե վաղ ուրեմն եկի եւ նախ քան զքեզ. իսկ ջոկամանքն՝ վաղվաղ, նախավաղ. թե վաղվաղակի սկսայ գործել: Նախավաղն՝ ամանակի յայտնիչք, որպէս նախավաղ ուրեմն եւ ես ուսայ եւ եթե նախավաղ ստացայ զայս ինչ, զէն կամ զինչ եւ իցէ:

‹1› Իսկ ամանակի յայտնիչք, յայնժամ, այժմ. յայնժամ՝ անցելոյն եւ ապառնոյն զուգապէս ասին թե զնոյէ եւ թե զՔրիստոսի զերկրորդն. այժմ, յորում եմքս ի միջի:



Եւ դարձեալ ընդ սոքաւք իքր տեսակ դասելի է զաժամանակսն յատկական եւ յարակայական. ասացելոցս տեսակք են սոքա, որպէս սերկ, վաղիւ, եգուց, ցայս, ցայն, ցայսքան, ցայնքան, ցայդքան, մինչեւ: Այսաւր եղեւ փրկութիւն տանս այսմիկ. ի վաղիւն տեսանէ զՑիսուս զի գայ, զոր գոեհիկքն յեգուց ասեն. եգուց դառնամք: Իսկ այսչափ անտարորոշ ասի քանակին. այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ եւ ոչ ծանեար. Նոյնպէս ցայսքան, ցայնքան, աւուրս կամ շաբաթս. մինչ՝ ի վաղն, կամ կիւրակէ աւր, կամ որ եւ իցէ:

‹2› Եւ միջակաւոր է, որ ի նոյն ժամանակ(ան)ացն միջոցն իրս իմն առնեն, որք եւ իցէ որ առնէ ի ժամանակսն. որպէս բարիոք արար աստուած զաշխարհ. ի սկզբանէ բարւոք են զոր արար: Իսկ յատկապէսն՝ որպէս միաւորականաւքն խորհի յատուկ զաշխարհն վերին, կամ զդրախտն յատուկ, կամ զծառն ի միջակին: Իսկ բնաւն զյայտնիսն ցուցանէ: Իսկ ամենեւինն՝ զյայտնիսն եւ զանյայտնիս, որպէս զզալիս եւ զիմանալիս. որպէս յորժամ ասես ամենեւին լոյս էր մարդն, ամենեւին անմահ եւ անապական: Իսկ համաւրէն՝ ի վերայ ընդհանուր սեռիցն. համաւրէն զոյացան սեռքս ընդհանուր. համաւրէն մեռանիմք մեք. համաւրէն յառնեմք:

‹3› Եւ քերդութեան, որպէս վայելուչ յեղանակաւք զայս բերեալսն ցուցանէ պարզ յարացուցիւք, մուրցացի, ծղացի, աքացի, ողկուզաւրէն եւ տարմաբար: Մուրցացի, այսինքն մրցելն, հարկանելն չարաչար: Ծղացի, բռնցի, բազկացի: Աքացի, առ ոտս արկանելոյ ասի: Ողկուզաւրէն, որպէս ողկոյզք ի հնձան, այնպէս առ ոտն կոխել զթշնամին: Տարմաբար՝ զուգահաւասար տարմիցն, ի վերայ մարախոյ, այնպէս սատակեաց զխռովիչսն:

‹4› Եւ քանակութեան, որգոն բազում անգամ, կամ սակաւ անգամ, որ համարք եւ թիւք յայտնեն. մակբայ զայն ցուցանէ բազումն, զհազար կամ զբիւր նշանակէ: Եւ սակաւն զհարիւրաւորսն ի տասունս. „բազումք են որ մարտնչեն ընդ

իս». «բազումք են, որ հալածեն եւ նեղեն զիս»։ Սակաւագոյնք են կեանք մեր. «ահա չափով եդեր զաւուրս իմ»։

‹5› Եւ թուոց յայտականն, երկիցս, երիցս, քառորդս. սոքա յայտնիք են։

‹6› Եւ ետեղականն, որ զտեղին նշանակէ, որպէս վերին, ստորին. որոց կալք գ. յերկուս բաժանէ զտեղին եւ երիս կարգս ասի ունել նոցա. վերին՝ երկին, ստորին՝ երկիր։ Եւ յերիս բաժանէ զկալն ի տեղի. զի կամ ի տունէ եւ թէ ի տանէ (եւ) զայ եւ թէ ի տուն երթայ։ Տեղի՝ երկին եւ երկնից երկին. Աստուած մեր յերկինս կամ յերկնից նայեցաւ եւ նստի յերկինս։ Տեղի՝ դրախտն. զմարդն ի դրախտն եդ, ի դրախտէն ել, ի դրախտն դարձոյց եւ որ ըստ այսմ։ Տեղի ասի Աստուծոյ սիովն Երուսաղէմ. տուն իմանի աշխարհս, տունք ասին տաճարք սրբոցն, տուն գերեզմանն. վարժէ զքանդ ի սոցունց վերայ։

‹7› Եւ ըղձից նշանակք, իցիւ, աւշ, զուշ, մարտան։ Իղձն մակբայ է, որ նշանակէ զցանկութիւն ցանկալեացն։ Իցիւ, յորժամ ասէ թէ լինիցի այդ. իցէ՛ թէ տեսանեմ, իցէ՛ թէ առնում զպատուականն զայն։ Իսկ աւշն, որ երանութեամբ ցանկայ ըղձալոյն. ա՜շ թէ լինէր ինձ այս ինչ տեսանել կամ գործել. «ա՜շ թէ յաջողեալ եին ինձ ճանապարհք»։ Իսկ զուշն եւ մարտ‹ա›ն, որ է ինքնախոհ ցանկութեանցն հարկանել ածմունք. զուշ զուցէ լսի ըստ այնմ՝ զուցէ մոլորիմք ի ճանապարհացն Աստուծոյ. զուցէ մեռանիմք ի մեղս, զուցէ զրկիմք ի տեսանէ Աստուծոյ։ Իսկ մարտ‹ա›ն յորդորական լսի. մարտիցուք ընդ չարին հաւատոյն զինուք. մարտիցուք զքարկոց մարտն ի դէպ ժամանակի, զի հանգիցուք յայլում ժամանակի։

‹8› Խրոխտականն, ի՛շտ։ Խրոխտականն անձնահաճական ասէ կամ սէգ անձն, որ ինքն զինքն զերամբառնայ եւ զոր ինչ ոչ է, ասի ունել կարծեաւք։ Դարով նազականն, վրիպաւղ. իշտ այդպէս եղեւ, իշտ ինչգունակ գործեցեր եւ այսպիսիս աստուծոյ վայել է, որպէս եւ ասէ ո՞ւր են դիքն ձեր. եւ

ADNOTATIONES. 1 Psalm LV 3 | ib CXVIII 157 || 2 ib XXXVIII 6 || 21 ib CXVIII 5.



թէ զարմացեալ եմ ընդ ամբարշտութիւն տանդ Յուդայ. եւ ահա ես ինձէն խորտակեցից զկուռս ձեր եւ բարձից զձեզ յերեսաց իմոց եւ կորուսից զյիշատակ ձեր յերկրէ եւ որ սոցին նման է, խրոխտական ասի։

‹9› Սպառնականն, տի՛ր, տի. որպէս ոք ասէ մնասակարին, որ է տիրն կա՛ց, մնա՛, զի ահա այդպէս առնեմ զործողիդ զչար կամ արարի. որպէս եւ տէր ինքն սպառնայ. փոխանակ զի ոչ լուար ինձ, ասէ, ածից ի վերայ քո սով եւ սուր եւ մահ սատակել զմնացորդս քո։

‹10› Իսկ հեշտականն, որ դիւրին ասէ. վա՜շ քեզ զեղեցիկդ ինձ, վա՜շ քաջիդ, վա՜շ վայելուչ ես դու ինձ եւ աստուծոյ եւ այլս այսպիսիս։ Իսկ յայ, որ է յանձնառական թէ ահա ստուգես թէ յայ ճշմարիտ ես, յայ ահաւոր ես տէր ամենակալ։

‹11› Շնորհակալոյն, զոր շնորհակալութեամբ ասեն, դէն, արքէն, դրուատ։ Դէնն արդէն է եւ արքէնն ի սէր քո, որպէս թէ ասէ. արդէն ի սէր քո առնեմ զայս. արքէն վասն քո արարի զսիովն. արքէն, շինեմ զԵրուսաղէմ եւ զՍամարիա։ Իսկ դրուատն զով ասի ըստ այնմ՝ «գովեա Երուսաղէմ զտէր». գովեմք զքեզ միածինդ հաւր. գովելի են եւ սուրբք քո առաջի քո ի բանս քո։

‹12› Իսկ ողոքականն, փոխան, փարելի. որպէս ումեք ասէ ոք. առ իս եկ եւ երանելի լինիս, փոխանակելով զիմս առ քոյդ, փոխանակ այսմ տալ քեզ զարժանն. փոխան քո այլ ոչ զոյ ոք առաջի իմ։ Իսկ փարելի, յորժամ փարելով ոք զիրկս արկանէ զմեծաւ կամ զփոքու կամ զաստուծով կամ զհոգւով եւ զոյգ բարբառի ըստ այնմ։

‹13› Եւ ապաշնորհենին, դժմիտ, ձառաղէմ ապաժաման. որպէս՝ նախատելով թշնամանաբար ասէ ումեք դժմիտ դաժանին եւ վատին եւ յոռոյն։ Ձառաղէմ կոչէ զխեռաբարոյն եւ զհակառակսն եւ զանխոհս։ Եւ ապաղէմ զվատն եւ զվհատեալն։ Իսկ ապաժաման զանժամանսն եւ զներգեւեալսն։ Որ ըստ մեզ իմն առնուլ զտեսակս չորից բաղկացելոց նորա

ADNOTATIONES. 18 Psalm CXLVII 12.

կայից: Դժմիտ ասեմք զմարմնոյս սողոսկուտ բնութիւնս: Իսկ Զառաղէմ՝ զինեցելոց մեզ ներհակացն զիճային յածմունք: Իսկ ապաղէմն, որ է անբան ցանկութեանցն հոլովումն խիստ եւ սաստիկ դիմակաւք: Իսկ ապաժամանն՝ իշխանական առաջնորդական դէմք, որ առ չարս եւ առ բարին զոյգ է երագմունք: Եւ դժմիտքն կրաքերին ի չարէն: Եւ Զառաղէմն ոտն առնու ի հաղքս արտաքս: Եւ ապաղէմն դիմաւորի ընդ խաւար: Եւ ապաժամանն պարապորդ է հաստատ վտանգին, միւսն հրոյ եւ միւսն ջրոյ, իսկ միւսն հողոյ եւ միւսն աւդոյ, ի նոյն վտանգաւորացն է, ապաշնորհելոյս է տեսակք:

‹14› Իսկ աւաղականն, զորս ի նոյն խոշորացն ասեն, որ է ուխն եւ ուհն, վախ, վահ ըստ չորից կերպադրութեանս եղկականս, որ է մասունս զրկելոց. որ է ուխն՝ ի մտաց անդի զվհատելոցն զքանսն ի դէպ ածելով: Եւ ուհն՝ կորուսելոցն եւ անիրաւին. ո՛հ, ասէ, զի հանդիպէր այս նմա: Իսկ վախն դիմածայնական է. վախ, որ այսպէս ասեիր դու եւ արդ այսպէս զի՞ ես. ուա՛խ դու եիր հարուստն եւ արդ մուրանաս եղկականդ անծամք: Իսկ վահն ոտնահարական է եւ մորոսական. «վա՜հ, ասէ, դո՞ւ եիր, որ քակեիր զտաճարն». վա՜հ, որ ընդ երկինս խորհեիր, արդ ի դժոխս իջեր. վա՜հ, որ ըմբռնեալդ ես կարծաւղդ եւ որ ինչ զոյգ եղկականացն սարասք յուզմանց վատնելոցն, որ ի մեզս են մուտք, գերիչք եւ կորուսիչք բնակաւորին:

‹15› Իսկ եղկականն, որ է զառանցանք ի վերայ կամակորացն ասել. վայ, աւաղ, աղէտ, եղուկ: «Վա՜յ քեզ Քորազին, վայ քեզ Բեթսայիդա». վա՜յ քեզ ծուր եւ ծայղան. վա՜յ ազգի մեղաւորի: Իսկ աւաղն խոովական է. աւաղ թե ոչ եի ծնեալ. աւա՜ղ ինձ միայնոյս. աւա՜ղ հերքելոյս, զի արդ կարացից կեալ ի յիրէ: Իսկ աղէտն սրտմտաւղ է եւ տամկացական. աղէտն ի քէն եղեւ չարեացն ասէ. աղխտիցն, ասէ, մուտք պատրողին ի դէմ. աղէտքն վճարեցան կամ վճարին սաստկապէս, ասէ: Իսկ եղուկն աշխարաւական իմն է բան. եղուկ այս անուն

ADNOTATIONES. 19 Math XXVII 40; Marc XV 29 || 25—26 Math XI 21 || 26 cfr Jerem XLVII 4.



քաղաքի, որ պաշարեալ է. եղուկ ես կամ դու, եթե ըմբռնիմք ի պարտս գողին կամ շնացելոյն եթե աստ, եթե այլուր:

‹16›, ‹17› Իսկ հրաշական, ասէ, պայքարական ասի, որ հրաշանալով ասի պա‹յ›քարելոցն վեհից. բէք ասէ, ջէք ասէ: Բէք, այսպէս գեղեցիկ էր սկիզբն. բէք, այնպէս պայծառ են հրեշտակք: Բէքն յընքեան անբաւ իմն խորքն աստուծոյ: Իսկ ջէքն խրախճանագոյն լսի կամ զաւրազուարճ. ջէք(ն), այնքան գեղեցիկ էր պսակն. ջէք, պայծառ իմն է լոյսն. ջէք, անճառականք են աստուածայինքն եւ հրաշականք. բէքիցն սանք եւ ջէքիցն խումբք սոսկականք են եւ գեղաղէշք:

‹18› Իսկ հեգնականն, ուա՛հ, որ նախատական է կամ որպէս հեգնականաւքն ոք ասէ. ուա՛հ, արդ նիստ ի գետնի. ուա՛հ, ահա Ադամ եղեւ իբրեւ զմի ի մէնջ. ուա՛հ, ես ասեի թե աստուածք իցէք դուք ահաւասիկ, որ է զաւրեղականին հեգնականքն ի դէպ:

‹19› Իսկ որ ասէ ուրացութեան կամ ապերեւութեան, որ է հաւաստի ուրանալն եւ ապերախտին սուտ քան զճշմարիտն ասացեալ. չէ, ոչ, ոչ իւիք, ոչ եզով իւիք: Ուրանալոյն իրք չէ այդպէս. չէ քո սուտն, այլ իմ է. չէ զոր կարծեսն: Իսկ ոչն. ոչ գիտեմ զձեզ, ուստի էք. ոչ էք դուք յիմոցն. ոչ լսեմ ձեզ: Իսկ ոչ իւիքն. ոչ իւիք նմանիցէք նմա. ոչ իւիք գիտեմ զայդ. ոչ իւիք ունիմ զորս խնդրես յենէն, ով այր դու: Իսկ ոչ եզով իւիք. ոչ մի ինչ վնաս գոյ ի դմա. ոչ մի ինչ բարի կրի ի նմա. ոչ մի ինչ մխիթարութիւն է ինձ ի մասինդ յայդ: Իսկ ոչ իւիքն բնաւ անյանձնառողին է. ոչ իւիք գիտեմ զայդ. ոչ իւիք իմանամ զասացումնդ քո. եւ որ ինչ բնաւ քերդութեանցն է խորք ուրացականք լռկանան ի բանիս, ապերախտքն անհլուք:

‹20› Իսկ բաղասացութեան՝ գեղեցիկ դիւրասաւղութիւն, որ քերդեմն, այո(յ), հայո(յ), այո(յ). խոստանամ զոր հայցեսդ առ իս է. այո(յ), տեսի զնոյնդ. այո(յ), զճշմարիտն ասեմ, արդարեւ ճշմարիտ ես դու: Իսկ հայո(յ)ն. հա, դու միայն ես բարձր. հա՛, եւ դու տէր գիտես, զի քո եմ. հա աւասիկ

ADNOTATIONES. 8 ‹16›, ‹17› cfr p. 38 adn 5—6 | պայքարական] pro բաքասական artis || 28 բաղասացութեան] pro բաղատորադութեանն artis.

*մերձանամ գալ առ քեզ, նուիրական ուխտիւք զկամացն խուզել զձեւս:*

‹21› *Իսկ ապասութեան, որ յընդդիմադրականն համասար է ասել. մի՛, մի՛ իւիք, մի՛ եղով իւիք: Մի. եւ մի իւիք տացէք պատճառս չարին. մի՛ ստէք, մի՛ սպանանէք: Իսկ մի՛ իւիքն. մի՛ իւիք մոլորիք, մի՛ իւիք խաբէք, մի՛ իւիք յայդպիսիդ խորհիք: Իսկ մի եղով իւիք. մի զով‹ո›ք կարծէք զիս տէր. մի՛ զի ես նոյն եմ որ էն. զի մին անուանական է եւ մակբայ, իսկ զովն նախդիր է եւ հարցական. „զո ոք ասեն զինէն մարդիկն թե իցեմ“. „զո ոք ասէք եւ դուք“. „զով ոք խնդրէք, ասէ“. „եթե զիս, ահաւասիկ եմ ես:“*

‹22› *Իսկ զգուշական, որ զգուշացելոցն պատուիրէ, զգո՛յշ, զուցէ՛, որ է զգոյշն զուցէն նոյն մի պարզ հոմանունքն, զգուշացողին ասելով զդէպն. զուցէ մեռանիս, զուցէ մոլորիս. զուցէ եկեալ զտանիցէ զքեզ տէր անպատրաստ, որ ասաց, արթուն կացէք, որ է զգոյշն, զուցէ ոչ գիտասջիք զաւրն տեառն:*

‹23› *Իսկ որ ասէ թե մարտկացն կամ ճշգրտութեանցն. մարտկացն հարցական լսի, իսկ ճշգրտութեանցն, որ զեւս ստուգագոյնս հարցմամբ ոք կամի ուսանել եւ ասէ. ո՞րպէս, զիպէս, զիարդ, ըստ որոյ, որգոն: Որպէս էր ուղին այն. որպիսի՞ է տուն շինեալ, որպէս եւ շինաւղին ասի: Իսկ զի՞պէսն՝ նոյն եղանակովն հարցողին: Իսկ զիարդն՝ իսկն ենթանկեալ անուանէ. իսկ զին մակբայ եւ արդն նախդիր. եւ ցուցականք են պարզ. զիա՞րդ լուիցիս. զիա՞րդ այսպէս խորհիս. զիա՞րդ կամ այս անուն կամ այն: Իսկ ըստ որոյ. ըստ որոյ զաւրութեան: Իսկ որգոն ո՞րպէս է կամ ի՞բր. ի՞բր է քաղաք, իբր են բնակիչքն, իբր է շահին առուտուրքն վաճառաց նոցա:*

‹24› *Իսկ որ ասեն թե դիպուածոյն, որ է ստո՛յգ դէպ հարցականին զդիպուածոյն զպատասխանիսն, թերեւս, ինձ թուի, ի դէպ: Թերեւս այս ինչ գործ էր իմ. թերեւս հասի անդր. թերեւս լուր ինձ եւ ճշմարիտն ասացից: Իսկ թուին.*

*ADNOTATIONES.* **10 Matth XVI 13—15 || 11 Johan XVIII 4—6 || 16—17 *cfr* Matth XXV 13 || 18 *մարտկացն cfr supra p.* 33.**



*ի դէպ ինձ թուի թե անքննին են խորքն աստուծոյ. ինձ թուի թե զեղեցիկ էր մարդն ի սկզբանէ եւ անմահ եւ դու ասես թե եւ ինձ թուի թե այդ այդպէս իցէ. որ զքնաւս հարցողին լնու զդէպսն:*

‹25› *Իսկ դասականն, որպէս դասութիւն եւ թիւ շարամանեալ ասելով, յետ այսորիկ, զկնի սորա, ըստ որմէ, զատ, առանձինն. որ է յետ այսորիկ եկն Յիսուս ի Հրէաստան. յետ այսորիկ խաւսեցաւ ընդ նոսա առակաւք. յետ այսորիկ աղաչէ զՊիղատոս Յովսէփ: Իսկ զկնի սորա ասելով՝ զկնի սորա եկայք ուղղակի մինչեւ ցայսաւր. զկնի սորա գնասցուք ուր եւ երթիցէ: Իսկ ըստ որմէն. ըստ որմէ ասեմք, ըստ որմէ խաւսիմք, ըստ որմէ գործեմ: Բայց ի հարցանելն ուրուք, ըստ որն նախդիր է եւ մակբայ, յորմէն բայ: Իսկ զատն եւ առանձինն հոմանունք ասին եւ մի է յատուկ դրութեամբ. զատանելն որոշելոյն ասի զատեալ ի յոլովից. եթե ըստ չարի, եթե ըստ բարւոյն պատահմունքն առնուն: Իսկ զատելոյն ասեն առանձինն է, որպէս էութեամբ աստուած առանձինն եւ իսկապէս եւ զատեալ իմն է անճառելաւք յայժմէ սեռից կենդանեաց, որպէս եւ զրեալ է մարդն եւ կենդանին, բանականն եւ մահկանացուն եւ յատուկ սեռ կենդանի, որ ինքն վեհիցն վեհապետ:*

‹26› *Իսկ որ ժողովոյն ասի միանգամայն բաղդատեալն, միանգամայն ասելով խումբ, համուռ, հոյլ, որ եզակին անուամբ զբոլոր զտեսակն սեռիւքն համօզէ ի դէպ ասել. միանգամայն զումարեցան բիւրք. միանգամայն թուեցան կաճառք անմարմնոցն: Իսկ խումբն. խմբեցան բոլորքն Իսրայէղի, խմբեցան այլազգիքն ընդդէմ նոցա: Իսկ համուռն միաբանեցին եկին լսի. համուռ կուտեցին, համուռ հասին: Իսկ հոյլն յանբաւք լսին, որպէս է իմն հոյլքն աստեղացն կամ հոյլք հրեշտակաց:*

‹27› *Իսկ մուտհրամանին, որ է ստոյգ կամ պարզ հրամանին ասել, թող, ած, եկ, բեր: Թող, ած առ իս զորդին քո. թող, աստուած ինձ վկայ զայս անուն. ած առ իս զվիհսըն Քրիստոսի սիրելիսն: Իսկ եկն կոչնական է. եկ առ իս եւ*

*ուսիր. եկ առ իս եւ կեցցես. եկ առ իս եւ տաց քեզ զիմս ամենայն առճեռն ելով: Իսկ բերն խնդրական է. բերէք ինձ զիրսդ զայդոսիկ. բերէք ինձ զդահեկան հարկին. բերէք ինձ եզն զինական մեծին զմեծն նուիրականս:*

‹28› *Իսկ բաղդատական ասէ, որ է կշռական չափուց բայ, անուանական սարասոց, առաւել եւ նուազ ասելով. առաւել է աստուած քան զհրեշտակս. առաւել է հրեշտակ քան զմարդ սակս անմահութեան. առաւել եւս է մարդ քան զանասուն բանական իմաստիւք եւ հանճարով: Իսկ նուազն. նուազ է լուսին քան զարեգակն. նուազ է եւ աստղ քան զլուսին. նուազ է Արայն քան զարուսեակն գեղեցիկ:*

‹29› *Իսկ հարցականն պարզ իմն զրուցատուական է, ո՞ւստ, ե՞րբ, զի՞արդ, ի՞բր, հիզան. որ է ուստի՞ ես դոքա որ ընդ քեզդ. ուստի ածեր զայս: Իսկ երբն ժամանակ իմն ասի. ե՞րբ էր այն այր, զորա ասես. ե՞րբ շինեցաւ. ե՞րբ սկսաւ այս ինչ կամ այն ինչ դիմակք ծեսց: Իսկ զիարդն ոտնառական նախդիր է. զի՞արդ արդեւք իմանամ. զի՞արդ ես կապեալ, զիարդ լուծար եւ կամ յումէ:*

‹30› *Իսկ յորդութիւնն ասէ յորդ, յոյժ, կարի շատ, ‹սաստիկ, յաւէտ, մանաւանդ›. որ է յորդն յոգնականագոյն. յորդ են զաւրքն, յորդ են ջուրքն, յորդ են եկեղեցիքն: Իսկ յոյժն բոլորական իմն է եւ ի յոլորտսն անցանէ. յոյժ խոր է խորհուրդքն աստուծոյ. յոյժ անքաւ են միտք իրիդ. յոյժ հեռի եմք մեք յերկնէ յերկրիս: Իսկ կարի շատն, որ առաւել քան զչափուցն անքաւքն անցանեն. կարի շատ է գիրքն անսահմանականացն բառիցն Արիստոտելի. կարի շատ են առաւաւտքն քերդողաց. կարի շատ են առասպելացն գիրք: Իսկ սաստիկն պակուցանողական իմն է. սաստիկ են սպառնալիքն աստուծոյ. սաստիկ եւ այրեցանաւղ նետք որ ի կաղնոյ կայծականաց մխեալ. սաստիկ եւ հնճաւղքն ազարակին հրեշտակք առ մարդկային բոյսս առակեալ: Իսկ*

ADNOTATIONES. 19 *յորդութիւնն*] pro *սաստկութեան* artis ‖ 29 vocem *այրեցանաւղ* cfr *eiusdem auctoris* *յայրեցանող շաւղաց* (Kostaniantz *Համամ Արեւելցի*, p. 20)=*յայրեցական* (*կամ յայրեցան*) *փշոցն* Lex. arm.



*յաւէտն առաւելական է եւ ազդաւղ. յաւէտ մեծութեամբ է, յաւէտ զաւրութեամբ, յաւէտ ունակութեամբ կամ փառաւք: Իսկ մանաւանդն յանգական է եւ աւարտական. մանաւանդ աստուծոյն գործ. մանաւանդ տիեզերականն հարաւք. մանաւանդ հրեշտակականն կաճառք:*

‹31› *Իսկ որ ասէ թե ‹աս›երդմնականն, որ է հաստատական երդմնողին զյաւէտ գործ բանի ի վճարել. տա‹›> քաւ: Տաքովն փութով է. որպէս այո(յ) աւրհնելով աւրհնեցից զքեզ. եւ ես երդուայ աջով իմով, զոր ինչ երդուաւն, կենդանի գոլ յաւիտենից զինքն ասէ:*

‹32› *Իսկ խունեռդմնական պարզ երդմնական է. խունն նախդիր է, երդն անուն է, իսկ մնականն դերանուն, քննողին կայ դիմակ ասելովն հա. հա, տեսի զնա. հա, սիրեցի. հա, քերդաւղ եմ եւ քերդեմ:*

‹33› *Իսկ հաստատութեան, յայտ, որ պնդութեանն ասի յայտ. յայտնի է անունն աստուծոյ անճառ ասելով. յայտնի էր մարդն ի դրախտին. յայտնի եւ սպանաւղ անձն անիծեալ. եւ որ ինչ բոլորիցս է յայտնութիւն, հաստատութեամբ իմն ասին:*

‹34› *Իսկ դրականն, որ դնելով իմն է եւ ոչ բնութեամբ, որպէս ամուսնանալի, քետաքերելի, տամկացելի. որ է անքաղդատ շարադրութեամբ, ոչ ամուսնանայ կամ ամուսնացեալ, այլ ի վերայ հասակին ասացելոյ ամուսնանալի, որ առինչունակին յանքաւս անկանի աղիւքն ի գրիս: Իսկ քետաքերելին, որ քերդելով իմն զքնարականսն ոք առնու. քետայն քերելին, որ քերդելով իմն, որպէս հեբառ է, որ լսի հետահան, իսկ քերելին գրելի իմն, որպէս հետահանական գրովն զբանս բաղկապելով եւ զոճսն նշանակելով: Իսկ տամկացեալն՝ տրոհարկելով իմն զզուգութիւնս անպարզիցն տարբերէ եւ զիրս ունակացելոցն անշարադիր պարքերական իմն տամկացութիւնս անուանեաց:*

‹35› *Իսկ մոլութեան, որ է են, ըն, ըեն, ընը, ըստ երկար մոլորութեան մոլորելոցն, զեղանակս աշխարականացն ի դէպ երկայն վանգիւքն առնու մակբայս ի վերջոյ զքերդեցելոցն ի դէպ: Ե՛ն, ասէ, զոր Սողոմոնն՝ „ո՛ն, որ կթող զուսումն մանի-*

կութեան" եւ գնայ ընդ մոլարս: Ե՞հ, զիարդ կորեաւ: Իսկ ը՞հ լալական իմն է. ը՞հ, ինչ առնեմ. ըհ, զիարդ կամ, զիարդ այրիմս եւ մեռանիմ: Իսկ ըհհն աշխարական է. ըհ՞հ, վա՜յ զենեւ, վա՜յ չար կամ անդէպ եւ սաստիկ կատարածիս, կամ յոգւոց հանելով զըհհն ասէ: Իսկ ը՞հըն ցաւողական է եւ դառն. հ՞հը որքուանաւք զոլորակն ներկուռ խիստ կրիւ ոք առնու զըհըն ասելով, հեղձամղձուկ խանդիւք եւ ցաւակցական որակաւքն յանգին զհաստ ոլորակն, նուազամասնեայ ստորագրելով ստուգէ զդէպսն ի մաւտոյ եւ զխռովականսն ի համքասյ եւ զմոլորականսն ի միջէն զատուցանելով: Եւ արդ գեղեցիկ իմն դրութեամբ առ զտեղի իւր մակբայս, քանիւ զքաւղս եւ անխաղաց յստորաքայէն, կայուն հաստատութեամբք զպարզն եւ զջոկամանսն վեր առնելով: Պարզն Հոմերոսեան է եւ ջոկամանքն Արիստոտելեանց եւ ամանականքն Թէովնականաց եւ սահմանականքն Պիթագորեանց եւ գեղեցկաքանեւլն Պղատոնի, զորս ի լաւ մասին ստուգեցաք, քննել պատշաճսն, որ ի սմա զՀոմերոսին:

Ինձ փոքր խոկիս խոհեմք ցուցեալս ի պարզ եւ ձեզ յոլովականաց յոռոգումն աւարտեալ եւ ի կնիք զանձից եկեղեցւոյ տամ զսա ձեզ նոր տառ, ի հնմէ զլաւսն առեալ, որք զկնի արհեստիցն էք ծանող, ոչ զառ քուռն քերդեալս ի դէպ, աստուծով սկսեալ եւ խաղաղական իմն ի նոյն յանգելով, զվայելուչ զովութիւնս հատուցուք միոյն աստուծոյ յաւիտեան:

## ‹ԻԱ› ՑԱՂԱԳՍ ՇԱՂԿԱՊԻ

E 180- ‹1› Եւ ջոկամանք են] Եւ-ն. եւ նա արար զմեզ: Երեմիա՝ „եւ մարդ է եւ ո ծանիցէ զնա" եւ այլս բազումս:

Եւ ոչն. զայս յառաքելոյ ուսիր. „եւ ոչ շունք եւ ոչ գողք" եւ յայլ տեղի „եւ ոչ խորութիւնք եւ ոչ բարձրութիւնք" եւ այսպիսիքս:

Գ-ի. գիտեմ, գիտես, գիտէ:

ADNOTATIONES. 1 Prov II 17 || 26 Jerem XVII 9 || 27 Cornth VI 10 || 28 Rom VIII 29.



Իսկ այլ-ն՝ Եսայի ասէ. „այլ նոքա կամեին":

Դաւիթ՝ „այլ յաւրէնս տեառն": Պաւղոս՝ „այլ դուք յազատութիւն կոչեցեալ էք" եւ այլ նմանք սոցին:

Իսկ թեպէտ-ն. թեպէտ տեսի, ոչ գիտացի. թեպէտ լուայ, ոչ իմացայ. թեպէտ քննեցի, ոչ հասի, զի խորք են անհնարին. „թեպէտ եւ գնացից ի մէջ ստուերաց ‹մահու›, ոչ երկեայց:"

E 161- ‹2› Եւ անջատականք են] Իսկ որ ասէ՝ ‹յ›իրէ յիր խտրոցին, այսինքն է ի խորհրդենէ իրին ի խորհուրդս ինչ խտրոցին, դնելով զկամն: Եւ այս են ասացեալքն՝ կամ, եւ կամ, եւ կամ թե: Տէրն ասէր. „կամ արարէք զծառն բարի եւ զպտուղ նորա բարի, եւ կամ արարէք զծառն չար եւ զպտուղ նորա ‹չար›": Եւ կամ թե. ի Յոբ ասէ. „(եւ) կամ թե քո առեալ զհողն կաւ, ստեղծեր կենդանի". „եւ (կամ թե) քո բացեալ իցէ զպատրուակ Հայկին". „եւ (կամ թե) դու ազուցեր ձիոյ զաւրութիւն" եւ այլ որ սոցին նման խրատական քննութիւնք են:

E 186- ‹3› (Դարձեալ) եւ այսպէս իմացիր զքաղմատն, որ գոյութիւն ոչ յայտնէ, այլ ոճ իմն նշանակէ: Նմանապէս նախ‹ա›դրի եւ միջակի. թե սա, թե նա. զի թե նա. թեպէտ սա, թեպէտ նա. զի թեպէտ սա, զի թեպէտ նա: Եւ այսոքիկ շաղկապ ի խաւսս երեւին եւ ի գիրս սուրբս, դիւրաւ ճանաչին եւ յիմաստնոցն խաւսեցեալ ճառս:

E 182- ‹4› Եւ տարքաղմատք են] Եւ են ասացեալքն այսոքիկ. քան, քանզի, վասնզի: Եւ է քան-ն քանակաւորին թուոց: Քանզի՝ վերաբերաւղ եւ պարզ: Վասն զի՝ հանդիպական եւ կշռական: Եւ երեւի այսպէս, յորժամ ասես, քանիցս է գիտութիւն մարդոյ: (Քանզի մարդ զինքն ոչ գիտէ. քանզի վերջամուտ է յաշխարհ: Վասն զի՝ յառաջ այլք գոյացեալք եղեն):

‹5› Եւ փաստքանականք են, ոյք ի բացատրութեան սակս քաղայց յարառոցին. այսինքն պատճառա-

ADNOTATIONES. 2 Psalm I 2 || 2—3 II Gal V 13 || 6 Psalm XXII 4 || 10—12 Matth XII 33 || 12—15 Job. XXXVIII 14 *et* 31; XXXIX 19 || 16—21 *classis conditionalium haec comentatiuncula, quam* E *post verba Anonymi* չէ որ հզաւր *v. supra p.* $154_{20}$ *praebuit, auctoris nomine in mg ommisso, Hamami (sinon* Այլուստ *aliunde) esse videtur* || 26—27 *quae uncis saepsi Anonymo tribuenda sunt, v. supra p.* 155.

քանականք, որք բացատրին սակս բաղայց, որ է պատճառաց, որ եղելոց իրին անուն ի դէպս: Ու են այսոքիկ. զի, որպէս, եթե, արդ եթե, վասն, յաղագս. վասն որոյ, վասն զի, վասն ոյր, ըստ որոց, ըստ որքան, որքանի անգամ: Ու վարժեսցուք զփաստքանականդ այսպէս: (Յորժամ եկեալ ոք ի ճանապարհէ եւ զյամելոյն կամիցիս գիտել զպատճառս եւ քննէ թե էր աղագաւ յամեց,) նախադրեալ շաղկապի այսպէս. զի՞ եղեւ քեզ. որպէս եղեւ. եթե զինչ պատահեաց. արդ եթե էր. վասն ոյր, յաղագս ում. վասն որոյ իրի. վասն զի զինչ. վասն ոյր են ըստ որոց իրաց. ըստ որքան չափոյ:

⌜Ու ըստ այսմ մնաց յարմարեսցես ի քնաքանիդ զգրեալդ: Դարձեալ եւ ըստ այլ ճանապարհի իմասցիս զփաստքանականդ եւ զտարակուսականդ ի ստեղծումն մարդոյն:⌝

Ու յայլ միտս վարժեսցուք զասացեալ շաղկապիս մասունք, E 184 որ զպատճառս իրին յայտնէ հասարակաբար յամենայն իրս եւ ոչ հարցական միայն:

Զի՞ յորժամ ասէ. զի դու տէր մեր. զի դու հայր. զի դաստաւոր մեր:

Իսկ որպէս-ն. „որպէս փափաքէ եղջերու“. „որպէս սիրելի<ք> են յարկք քո տէր“:

Իսկ արդ-ն. „արդ լուր ինձ Յակովբ:“ Արդ ուր են դիքն ձեր:

Իսկ եթե-ն դարձողական է. „եթե քո բացեալ իցէ զպատրուակ Հայկինն“. „եթե ի քումմէ իմաստութենէդ եկաց բազէ տարածեալ:“

Իսկ վասն կոչական է. վասն որոյ „լուր ինձ որդեակ“. վասն որոյ „ուսիր զիմաստութիւն“. վասն զի „ոսկի խնձոր է ընդ սարդիոնի յեռեալ իմաստութիւն առ լսաւղս:“

Իսկ յաղագս նմանական է. ի տեառնէ աստուծոյ յաղագս

ADNOTATIONES. 5—7 *quae uncis inclusi conferenda cum Davidis verbis, v. supra p.* 122; *etiam quae subsequuntur verba* զի եղեւ քեզ: || 11—13 *et haec verba uncis saepta, quae apud* E *inter scholia Davidis prolata sunt, Hamami esse verisimile est* || 19—20 Psalm XLI 2; LXXXIII 2 || 21 Jes XLIV 1 (=XLVIII 12) || 23—25 Job XXXVIII 31, XXXIX 26 || 26 Prov V 7; *cfr* Eccles XVI 24 || 27—28 Parab XXV 11.



քո արարի ես զՍիոմն. յաղագս Երուսաղէմի երդուայ աջով իմով:

Իսկ ըստ որոյ-ն ստոր բայ ի Պղատոնէ:

Իսկ որքան-ն դիմառնական է ի գոյիցն Արիստոտելեան. որքան զփաղանուն տեսակն. որքան զորակութիւնսն:

Իսկ միանգամ-ն համառաւտական է ի Հոմերոսէ. միանգամ առաջադրութիւն տաղիցդ. միանգամ արականացն տեսակք. միանգամ անուան եւ բային եւ նոցին մասանցն քանին ի կարգի:

<6> Ու տարակուսականք են] Այլ տեսցուք եւ ըստ այլ աւրինակի առանց ձանձրութեան ի գիտս իմաստից ճեպելով: Վեց տարակուսական շաղկապաւքս, որ ի մեզ են խնդիրք ծեւիցն կարծաւղ ներանոււ Հոմերոս ի շաղկապիս:

Ապա կենդանի է. ապա եւ ես կենդանի եմ. ապա եւ այլք զոն կենդանիք:

Իսկ ապաքէն. ապաքէն մարմինք ենք. ապաքէն մարմին եմ. ապաքէն եւ այլք զոն մարմինք:

Իսկ ապա ուրեմն ժամանակին. ապա ուրեմն քանականաւքն, ապաուրեմն զեղեցիկ եւ ես քանականս, ապա ուրեմն քանականք են եւ էքն:

Իսկ ընդէր-ն հարցականացն. ընդէր ծիծաղականքն. ընդէր յիս ծաղր գոյական իմն ասի. ընդէր միայն քանականիս է յարագոյ ծաղրականն եւ լալականն:

Իսկ էրում-ն սաստկական է, էրումն ցանկականքն. էրում ցանկանամս յոլովակի. էրում եւ չարին ցանկամ:

Իսկ զմէ-ն քննական է. զմէ մեռանելն. զմէ եւ փոյթս մեռանիմ ես. զմէ եւ յոլովք են անմահքն:

Արդ զվեցից շաղկապիս առցուք վերստին, որ ըստ առաջնոյն կենդանի եւ գոյացեալ, ըստ երկրորդին քանական, ըստ երրորդին մնաց եւ մակացութեան ընդունակ եմ, ըստ քառիցն զուգադրեալ եմ ի չորից, ըստ հնգիցն կարգեալ եմ առ բարին կամ առ չարն ի դէպ, ըստ վեցիցն տարակուսական ասիմ ի մեռանելն եւ յոչ կեալն: Իսկ եւթն<երրորդ> մասն է, որ էր ար-

ղեաւքն, որ է առաջին, այլ մեր թողեալ անդ ի վերջոյ զնա պատշաճեալ ասացաք:

Արդեաւքն, որ է եղկական, որպէս պսակ յետ զգեստիցն դնիցի ի գլուխ ուրուք զարդ զարդարեցելումն եւ անդրէ<ն> պաճուճանին գերակայ պայծառն. արդեաւք գիտացաք քերդեալ. արդեաւք հասցուք ի ծայրսն խմբիցն. արդեաւք ծայն տացուք կռոցն եւ կոփելոցն Հոմերոսեան քերդածիցս:

‹7› Իսկ բաղքանականս ի նոյն չափք տարակուսականին զմասունս ունի եւ են այսոքիկ. արդեաւք, ուրեմն, այլ, այլ սակայն, այսուհետեւ, վասն որոյ, յաղագս որոյ:

Հանգէտ սմին արտաղրի. արդեաւք այս է, ուրեմն սա է, այլ սակայն զմանէ, այսուհետեւ ոչ զոք, վասն ոյր ասա, վասն ոյր զայ, յաղագս որոյ իրի:

Վարեսցիս եւ այսպէս բանիւ. արդեաւք քաղաքաւորիմք, արդեաւք վերագրիմք եւ ի լոյս առնումք:

Իսկ ուրեմն ուղղական է. ուրեմն ազատ եփ, ուրեմն անմահ, ուրեմն ճոխ:

Իսկ այլ-ն սեռական է. այլ ումն ես դու մարդ, այլ ումն ես քերդաւղ, այլ ումն եւ նա բանական եւ բժիշկ:

Իսկ այսուհետեւ-ն տրական է. այսուհետեւ առաքեալ եմ, այսուհետեւ կողոպտեմ:

Իսկ վասն որոյ-ն եւ կրկին վասն որոյ-ն զառաքականն եւ զհարցականն զոյգ ունի. վասն որոյ արտաքս առաքեցայ, վասն որոյ զխաւարին առնուլ զկողմն:

Իսկ յաղագս որոյ-ն հոշական իմն է. յաղագս անլաւիցն կոչեցելոցն զիս, յաղագս որոյ նախատիմ եւ դատիմ, յաղագս որոյ տուժիմ ի ծածուկս կրից. եւ որ ընդ իս զուգաշարեցան թիւք է-ից, կամ ի բարին ջոկամանելով, կամ առ չարն զուգա-

ADNOTATIONES. 12 hic *post* որոյ E *inseruit* եւ է բաղքանականդ—հաստատութեամբ *quae Davidis sunt*.=p. 122₁₂-₁₃ || 15 *post* իրի E *inseruit verba Davidis* զոր դիւրին է—իրս, 122₁₄-₁₈.



կալելով, երկակի զշաղկապսն բերելով ըստ իմանալւոյն եւ տեսանելւոյս, բաղդատելով ի բանս ներկուռ քերդոցիմք:

E186- ‹8› Եւ թարմատարք են] Վասն որոյ թարմատարն պաճուճեալ բանք ասին եւ են այսոքիկ մասունք. իգն, մակ, իքր, սիրելի: Իգն եւ մակն ի մերս փոքունք ասին, այլ իքրն եւ սիրելին պայծառապէս. իքրեւ զի գեղեցիկ էր, առաջին մարդն ի դրախտին. իքրեւ զի գեղեցիկ են ոտք աւետարանչացն. իսկ սիրելիք, մի ամենայն հոգւոյ հաւատայք. սիրելիք, սիրեսցուք զմիմեանս, զի սէր յաստուծոյ է:

‹9› Ընդդիմակ] ... ||||

E187- ‹10› Եւ վարանականք են] Եւ են սոքա գ. գեթ, գոնեա, փարթար:

Գեթն նուազական է. գեթ սակաւ ինչ տացիս, գեթ զոր ունիմս առնուցուս:

Իսկ գոնէ-ն հաւատական է եւ համբուրական. գոնէ դու իցիս որում ցանկայի. գոնէ զտի զքեզ ի պարտիզին առակեալ. գոնէ ելանեմ ես ի լեառն զմռսոյ եւ ի բլուրս կնդրկի: Ի սոյն միտս եւ փարթարն:

Այսոքիկ յաղագս շաղկապիս եւ նորին մասանց պարզապէս մեկնութիւն ընդ բանին դրութեան սակս բանասիրաց ծանաւթական հմտութիւն ի մէնջ հասու եղելոցս ընտրութեան իմաստնոցն բանի:

# INDICES NOMINUM ET VERBORUM

## DIONYSII VERBA A LIBRIS SACRIS ALIENA

## ԴԻՈՆԻՍԵԱՑ ԲԱՌՔ ԱՐՏԱՔՍ Ի ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

## DAVIDIS VERBA A BIBLIIS ET DIONYSIO ALIENA

### ԴԱՒԹԻ ԲԱՌՔ ՕՏԱՐՔ Ի Ս. ԳՐՈՑ ԵՒ Ի ԴԻՈՆԻՍԵԱՑ

## ANONYMI VERBA A BIBLIIS, DIONYSIO ET DAVIDE ALIENA

### ԱՆԱՆՈՒՆԻ ԲԱՌՔ ԱՒՏԱՐՔ Ի Ս. ԳՐՈՑ, Ի ԴԻՈՆԻՍԵԱՑ ԵՒ Ի ԴԱՒԹԱՑ





## MOYSIS VERBA AB ANTERIORIBUS ALIENA

### ՄՈՎՍԵՍԻ ԲԱՌՔ ԱՒՏԱՐՔ Ի ԿԱՐԴԵԱԼՈՑՆ ՅԱՌԱՋ

## *STEPHANI VERBA AB ANTERIORIBUS ALIENA*

## *ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ԲԱՌՔ ԱՒՏԱՐՔ Ի ՆԱԽԱԿԱՐԳԵԼՈՑՆ*







1 *միրի* 210] **om** Concord. ***legitur apud*** Jerem IV 7

## HAMAMI VERBA AB ANTERIORIBUS ALIENA

## ՀԱՄԱՄԱՅ ԲԱՌՔ ԱՒՏԱՐՔ Ի ՆԱԽԱԿԱՐԳԵԼՈՑՆ







## MAGISTRI VOCABULA RARA SEU HAPAXLEGOMENA

## ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԲԱՌՔ ՀԱԶՈՒԱԴԻՊՔ ԿԱՄ ԱՆԾԱՆԱՒԹՔ ԱՅԼՈՒՍՏ

## NONINA PROPRIA

### ՑԱՑՈՒԿ ԱՆՈՒԱՆՔ

# ԳՐԱԿԱՆ ՆՇՄԱՐՆԵՐ

## ԼԵԶՎԱԿԱՆ - ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ

*Նվեր Ղ. Աղայանին (1)*

Ուղղագրությունը աննշանակ խնդիր չէ, մանավանդ նորաբողբոջ և դեռևս անհաստատ լեզուների համար: Մեր նոր գրական լեզվի ուղղագրությունը շփոթ վիճակի մեջ է: Նույնիսկ այս խնդրում արևմտյան և արևելյան գրական բարբառները համերաշխ չեն. և փոխանակ միմյանց մոտենալու, ընդհակառակը, քանի գնում, այնքան հեռանում են և անջատվում:

Լեզուների մերձեցումը՝ կիսակտոր մարմնի ամբողջության խնդիր է: Քանի որ միմյանց հետ շփվելու, անմիջական հարաբերության մեջ մտնելու հնարավորություն չունենք, միակ միարար օղակը մնում է գրականությունը: Գրականության հիմը լեզուն է, այն հաղթ խարիսխը, որի վրա կանգնում է ազգության բարդ շենքը: Այլ պայմաններում ա՛յլ բաղդ կունենար մեր լեզուն: Բայց ներկան իրողություն է և պահանջում է աշխատել գոնե բանական, խոհական միջոցներով չեզոքացնել, որքան հնար է, այն պայմանների ազդեցությունը, որոնք առաջ են բերել մեր պառակտումը:

Գիրը լեզվի արտաքին պատկերն է. արտաքին նույնությունը՝ միօրինակ գրությունը անտարակույս կարևոր պայման է լեզվի ներքին սերտության: Մեր նորածին գրականության կարապետները իրենց ժամանակ առանձին փույթ չունեցան նոր լեզվի ուղղագրությունը նրա ոգուն հարմարցնելու: Ճիշտ է, թեթև փորձեր եղան, բայց անհաջող: Մխիթարյան միաբանության հեղինակությունը խիստ բարձր էր թե՛ մեր և թե՛ Կ. Պոլսի գրականների աչքում: Ուստի ընդհանրացավ գրաբարյան ուղղագրությունը, կամ ավելի ճիշտ գրաբարի այն ուղղագրությունը, որ հավանել էին Մխիթարյան գիտնական հայրերը:

Գաբրիել եպիսկոպոս Այվազյանը համոզված քարոզում էր, որ «ուղղագրության գլխավոր նպատակն է մեր գրոց լեզվին ուղիղ գրությունն ու արտասանությունը»: Գիտնական Մխիթարյանը կարծում էր, որ «անով հարկավ աշխարհաբար լեզվին ևս գրության ու արտասանության կանոն կըրվի, որովհետև աշխարհաբարը զատ լեզու չէ կանոնավոր, այլ գրաբարի ավրվածն է: Ով որ այս ճշմարիտ և գովելի սկզբունքը կ'ընդունի, թե աշխարհաբարը պետք է միշտ մաքրել ազնվացնել ու հետզհետե գրաբարին

մոտեցնել, անտարակույս հեռու կմնա ուղղագրական վնասակար նորաձևություններէն»[1]:

Գաբրիել եպիսկոպոսի մտքերը միայն իրենը չէին, այլ նաև իր ժամանակի գրական դասի: Բավական է հիշել, որ գրեթե նույն հայացքն ուներ Գրիգոր Օտյանը, որ աշխարհաբարի պաշտպաններից էր և առաջինը, որ պարզ և մատչելի կերպով բացատրեց նրա հասարակաց լեզու անելու անհրաժեշտությունը: Նա էլ ուրիշների նման այն հույսն ուներ, որ «քիչ քիչ գրաբար լեզվին ոճերը մտցնելով աշխարհաբարին մեջ և բառերն ալ իրենց աղավաղ կերպարանքեն մերկացնելով, և հին ձևերին և ուժերին տալով, կրնանք օր մը անզգայաբար հասնիլ գրաբարը հասարակաց լեզու ընելու: Աշխարհաբարը, որ գրաբարին այլանդակ վիժածն է, մեր առաջարկածին պես կոկված ու կանոնավորված միջնորդ մը ըլլա գրաբարին ու ռամկորեննին մեջ, երթալով իր բնիկ ձևն առնու, այսինքն՝ լեզվի կարգ մտնե, իր ծնողին կատարելություններն ստանալով»[2]:

Երևում է, որ աշխարհաբարի մինչև իսկ ամենալավ բարեկամը՝ Գ. Օտյան, մեծ համարում չուներ նոր լեզվի վրա: Նրա կարծիքով աշխարհաբարը գրաբարի «այլանդակ վիժածն» է: Օտյանին համակարծիք էր և Այվազյանը, որ նոր լեզուն հենց «ավրվածն» էր համարում: Այսպիսի հայացք ունենալով աշխարհաբարի ծագման վրա, նրանք ուրիշ կերպ չէին կարող գծել նոր լեզվի զարգացման ընթացքը, քան նախ՝ աշխարհաբարի ոճն ու շարադրությունը, որքան կարելի է, գրաբարին մոտեցնել, երկրորդ՝ ուղղագրել այնպիսի գրաբար բառեր, որ աշխարհաբարի մեջ գործածելի են, բայց աղճատված, ինչպես **խյնալ**-անկանիլ, **արցունք**-արտասուք և այլն[3]:

Երկու եղածներն էլ սխալ են և թյուր հասկացության արդյունք: Զարմանալի չէ, որ մոտիկ անցյալում այսպիսի մտքեր են եղել, քանի որ այժմ էլ շատ գրական գործիչների համար դեռևս պարզ և որոշ չէ գրաբարի և աշխարհաբարի հարաբերությունը[4]:

[1] **Գ. եպ. Այվազյան**, Ուղղագրություն լեզվիս հայոց, Թեոդոսիա, 1869, էջ 3:

[2] **Գ. Ս. Օտյան**, Առաջարկություն աշխարհաբար լեզվի վրա, Կ. Պոլիս, 1851, էջ 11:

[3] Անդ, էջ 9:

[4] Խրատական է «Մշակ» թերթի ննկատողությունը «Սուրհանդակ»-ի մի անմեղ և օրինավոր պահանջի առթիվ:

«Մեր երիտասարդներեն,- գրում է «Սուրհանդակ»-ը,- գոնե անոնք, որ հրապարակագրությունը ընտրած են իրենց կյանքի ասպարեզ, գիտնային գրաբարը՝ գոնե Ավետարանի պարզ լեզուն հասկնալու չափ»: «Մշակն» առարկում է. «Ով ուզում է, թո՛ղ սովորե գրաբար լեզուն, դրա դեմ մենք ոչինչ չունենք: Բայց ասել, թե միայն գրաբարը իմանալու միջոցով կարելի է աշխարհաբարի կանոնները պահած լինել, մեր կարծիքով մի մոլորություն է, որը հերքելու համար բազմաթիվ կենդանի օրինակներ կան: Մենք կարծում ենք, որ մեր աշխարհաբարը, մնալով ինքնուրույն և ինքնիշխան լեզու, կարող է և պիտի այդպիսի կանոններ մշակե իր համար: Բավական է, որ ըմբռնվեն նրա ոգին, զարգացման, կանոնավոր առաջադիմության օրենքները: Գրաբարը իբրև հիմք, իբրև ղեկավարող ընդունելը ոչ միայն օգուտ չի բերի, այլ վնասներ կհասցնե աշխարհաբարին, որովհետև այդ երկու լեզուները շատ դեպքերում են իրար հակառակորդ հանդիսանում ձևերի, դարձվածքների և ոճերի մեջ: Անցյալի մեջ ունինք շատ օրինակներ, որ գրաբարով ղեկավարվողը ստրկացել է գրաբարին» (տե՛ս «Մշակ», 1904, № 6):

Դժբախտաբար մոլորության դեմ «Մշակը» խոսում է մոլորությամբ: Նա գրաբարի ուսման ընդդեմ չէ. միայն գտնում է, որ գրաբարի գիտությունը վնասակար է աշխարհաբարին: Նրան հայտնի են անցյալում օրինակներ, որ գրաբարագետը ստրկացել է գրաբարին: Իսկ ներկայումս մի՞թե հայտնի չեն օրինակներ, որ մարդիկ ստրկանում են օտար լեզուներին: Բայց ո՞վ է կարծում, որ օտար լեզուների գիտությունը ավելորդ է նույն իսկ աշխարհաբարի զարգացման համար: Դարձյալ բոլորիս հայտնի է, որ նոր գրական լեզվի հիմնադիրներն էլ գրաբարագետներն են եղել: Կարելի՞ է արդյոք երևակայել այսօրվա գրական լեզուն, որով գրվում է և «Մշակ»-ը, առանց գրաբարի: Նրա կազմի կեսը գրաբարյան տարրեր են, այնտեղից են անցել նոր լեզվին: Երբ Ա. Գարագաշյան, ինչպես ամեն մի գրական Մխիթարյան, գրում էր գրաբարի խիստ ազդեցության տակ (2), հասկանալի է: Հեռու հայրենիքից և հայ կյանքից, գրաղման նյութ ունենալով գրեթե բացառապես հին գրականությունը, բնական է, որ մարդիկ գրաբարախառն և նույնիսկ գրաբար գրեին: Բայց սրանից չի հետևում, որ ամեն մի գրաբարագետ անպատճառ այնպես կվարվի: Ո՞ւր է և ո՞վ է այժմ սովորում գրաբարն այն հմտությամբ, որ մինչև անգամ գրաբար մտածե: Առանց էն էլ սովորող չկա. միակ հաստատությունները, ուր սովորեցնում էին գրաբար, մազե կամրջի վրա են: Գրաբարի գիտությունը գուցե հարկավոր չէ նրանց, որոնք ազատ ժամերին հոդվածներ են գրում թերթերում: Բայց նա, որ վճռում է իրեն նվիրել գրականության, իր կոչումն է համարում ծառայել հայ գրին, նա պարտավոր է գրաբար սովորել, «գոնե Ավետարանի պարզ լեզուն հասկնալու չափ»: Այս մի գրական պահանջ է և պարտք: Առանց գրաբարի դժվար է տիրանալ հմտորեն նոր գրական լեզվին, ըմբռնել բառերն իրենց նրբությամբ և երանգներով: Լուրջ գրական գործունեությունը պահանջում է լուրջ պատրաստականություն. ով որ ուխտում է ծառայել հայ գրականության, պարտավոր է ծանոթանալ նրա անցյալին: Հայ լեզվի արժանապատվությունը պահված կլիներ, եթե նրա սպասավորները նույնչափ հետաքրքրվեին նրա ալևոր անցյալով, որքան «Մշակ»-ը սիրում և գնահատում է իր դեռահաս անցյալը:



Ամեն մի լեզվի մեջ որոշելու է երկու կողմ՝ բառեր և բառերը կապելու արվեստ կամ քերականություն: Բառերը լոկ մթերք են, որից քերական արվեստը կանգնում է լեզվի շենքը: Բառական և քերական կազմով աշխարհաբարը սերտ կապ ունի գրաբարի հետ: Եվ այս բնական է, որովհետև աշխարհիկ լեզուն գրոց լեզվի այլանդակ վիժածը չէ. երկուսն էլ հայ մտքի ծնունդն են: Այժմյան աշխարհաբարը չէ թե գրաբարից է ծագած, այլ այն հին աշխարհաբարից, որից մշակվել և ծաղկել է գրաբարը: Այս տեսակետից աշխարհաբարի ազգակցությունը գրաբարի հետ նույնչափ որդիական է, որչափ և եղբայրական: Աշխարհաբարը որոշ չափով անկախ և ինքնուրույն է. նա իր առանձին հնչական օրենքներն ունի, որ շատ անգամ նույնը չեն, կամ բնավին տարբեր են գրաբարից: Նրա քերականությունն իր սեփական հիմքերն ունի, որ և նրան իրավունք են տալիս առանձին լեզու կոչվելու: Աշխարհաբար բարբառներից մշակելու է նոր գրաբար, այսինքն՝

նոր գրական լեզու: Սորա մշակման և զարգացման հիմքը պիտի լինեն աշխարհաբարի՝ կենդանի բարբառների հնչական և քերական օրենքները:

Հին լեզվից շատ բան անցել է նորին, շատ բան էլ քարացել, մեռել է: Ասել՝ որ մեռածից ոչինչ չի կարելի կամ պետք չէ կենդանացնել՝ թերմտություն է: Գրաբարը մեր պատմական անցյալի մեծ վկան է, ներքին կյանքի հարստության շտեմարանը. ցույց միակ զորեղ ապացույցը, որ հաղորդ ենք եղել մարդկային հոգուն վայել քաղաքակրթության: Մոռանալ գրաբարը՝ նշանակում է աչքաթող անել դարավոր աշխատության պանծալի արդյունքը: Ճիշտ է, հոյակապ շենքը գլորված է, բայց անկորուստ է մնացել թանկագին նյութը, որից նա կազմված էր: Մեր բարձր ձգտումը պիտի լինի հանել փլատակներից փայլուն գոհարները, և հին լեզվական գանձը գործադրել նոր լեզվի շինության համար:

Հարկավ, չենք կարող կենդանացնել գրաբարի ոգին, փլված շինության այսպես ասած ճարտարապետությունը: Լեզվի նոր շենքը կանգնելիս պետք է առաջնորդվենք այն ճարտարապետական արվեստով, որ տալիս է խոսուն աշխարհաբարը: Ուրիշ խոսքով, նոր գրական լեզվի և հնի հարաբերությունը լինելու է գլխավորապես բառարանական: Նորը կարող է և պետք է օգտվի հին լեզվի բառական ամբարից և գործ ածե ամեն մի բառ, որ խորթ չէ աշխարհաբարի հնչական օրենքներին:

Առանց հնության, առանց աչքը անցյալում պահելու, դժվար է քաղաքակրթական մեծ գործ կատարել: Կյանքը՝ մի որոշ իմաստով հնի, անցյալի վերամշակումն է: Նոր գրականությունն ու արվեստը ուրիշ բան չեն, եթե ոչ հնության ոճավորումը ***(stylisation)***: Առաջադիմել միշտ չի նշանակում հինը մոռանալ. ճշմարիտ առաջադիմությունը նման է մի փախստականի, որ վազելիս՝ անդադար հետ է նայում:

Ընթացիկ կյանքի տեսակետից՝ դժվարն և վիճելին այն է, թե հնությունից ի՛նչ պետք է կենդանացնել, և ի՛նչ թաղել: Լեզվի նկատմամբ ընտրության սկզբունքը պարզ է. հին լեզվից նորի համար պիտանի է համարելու այն բառերը, որոնք հարմար են կամ կարելի է հարմարեցնել նոր հնչաբանության: Լեզուն իր զարգացման ընթացքում շատ բան կորցնում է, շատ բան փոխում. հոլովումներն ու խոնարհումները պարզվում են, լծորդներն ու ածանցները թեթևանում, դժվարալուր հնչյունները հեշտանում են, կամ գլխովին ընկնում, անհետանում են: Եթե այս հեղեղումները կատարվում են բնականորեն, առաջադիմության բնական, ինքնորոշ թափով, առանց արտաքին և ապօրինի ճնշման, սրանցից և ո՛չ մինը չի կարելի կենդանացնել: Մեռածն արժանի է իր վիճակին:

Բայց պատմական դժպատեհ հանգամանքները միշտ ճնշել են մեր լեզվի անկախությունը և նրա ազատությունը բռնաբարել են օտար բարբառները:



Ամեն անգամ, երբ ներս են խուժել մեր երկիրը վայրենի հրոսակներ, ասպատակության և ավերածի է ենթարկվել նաև մայրենի լեզուն: Շատ լեզվական հարստություններ տեղի են տվել օտարամուտ տարրերի և իրենք բյուրեղացել գրավոր հիշատակարաններում: Նրանք մեռած չեն, այլ սպանված. իսկ սպանվածներն ամեն տեղ արժանի են հիշողության... Մեր պարտքն է անշնչացած մթերքը հրապարակ հանել, նոր կյանքի կանչել, հարկավոր դեպքում կատարելով նրանց վրա այն փոփոխությունները, որոնց անշուշտ կենթարկվեին, եթե մնային լեզվի մեջ և ապրեին իրենց բնական կյանքով:

Արդի գրական լեզուն, իրավ է, հասունացել է, նեցուկ ունենալով գրաբարը, բայց դժբախտաբար բոլորովին սխալ շավղով: Բավական չէ գրաբարից փոխառություններ անել, պետք է աշխատել նաև փոխառված բառերին աշխարհաբարի ձև տալ: Այս անհրաժեշտ է, որպեսզի գրաբար բառերը ձուլվեն և հալվեն նոր լեզվի մեջ, և ո՛չ թե իբրև նորելուկ տարրեր ցցվեն ելունդի նման: Ցանկալի ձուլման համար հարկավոր է, որ նորեկ բառերը ընդունեն աշխարհաբարի հնչաբանության օրենքները: Հնչաբանության հետ կապված է գրության ձևը: Չնայելով հին և նոր գրական լեզուների երբեմն խոշոր հնչական տարբերություններին, ամեն տեղ պահում ենք հին ուղղագրությունը: Այդպես պետք է վարվել բոլոր պարագաներում, երբ որոշ հնչափոխություն՝ որը նկատվում է աշխարհաբարում ընդդեմ գրաբարի, դեռևս չէ հասած ավարտուն ամբողջության: Եթե օրինակ գրաբարի **-գ** հնչյունը նոր լեզվում որոշ դեպքերում դարձել է **-ք** (**տու-գ, տու-ք. ծա-գ, ծա-ք.**), իսկ մյուս նույնանման դեպքերում մնացել **-գ**, պարտավոր ենք պահել հին ուղղագրությունը: Հակառակ դեպքում կծագեն բարդություններ և նորանոր դժվարություններ: Ուղղագրությունը կարելի է փոխել միայն այն ժամանակ, երբ սկսված հնչական էվոլյուցը ընդհանուր երևույթի կերպարանք է ստացել. այսինքն՝ նման պայմաններում հնչյունը նման փոփոխություն է կրում: Յուրաքանչյուր այսպիսի դեպք առանձին և լրիվ հետազոտության պետք ունի:

Արդ՝ աշխարհաբարում **-ու** և -ւ՛ հնչյունները հայտնի գրության մեջ խիստ հետևողաբար որոշ փոփոխության են ենթարկվում. **-ու** ձայնավորից առաջ ստանում է վ-ի հնչյուն, իսկ -յ բառերի վերջը կորցնում է իր ձայնը, այսինքն՝ ընկնում է: Այս երևույթը ընդհանուր է և ավարտուն: Նոր հիշած լեզվական սկզբունքը թույլ է տալիս այսպիսի դեպքում պատշաճ փոփոխությունը մտցնել և գրության մեջ ու-ի տեղ գրել -ւ, և -յ հապավել, դեն ձգել:

Հարկավոր է նկատել, որ հին գրաբարյան ուղղագրություն ասելով պետք չէ կարծել գրության որոշ մշակված սիստեմ: Մեր նախնիքների ուղղա-

գրությունն էլ միատեսակ չէ: Լծորդ հնչյունների կիրառությունը հների մոտ էլ անշփոթ ու հետևողական չէ: Ձեռագրերում պատահում են գրության տարբեր ձևեր՝ **նու-աստ**, **նւ-աստ**, **նվ-աստ**. **ե-ին**, **է-ին**. **ուտե-ին**, **ուտէ-ին**. **պիտո-յ**, **պիտ-ո**. **երկեա-յ**, **երկե-ա**. **որդո-յ**, **որդւ-ո** և այլն: Ձեռագիրը որչափ հին է, նույնչափ հաճախ է խորթ ուղղագրությունը:

Հետին դարերում Կիլիկյան շրջանից սկսած գերակշռություն է ստացել այն ուղղագրությունը, որ այժմ սովորական է շնորհիվ Մխիթարյան հայրերի: Սրանք էին մեր հնության առաջին հետազոտողները. և սրանց մենաշնորհն է եղել հին հիշատակարանների հրատարակությունը: Ազգային դպրոցական կրթությունը կատարվել է միշտ Մխիթարյանների աշխատասիրության վրա: Բոլորս ընտելացել ենք նրանց ուղղագրության: Վիճելի դեպքերում վենետիկցիք ընտրել են այն ձևը, որ ամենից տարածվածն է: Իսկ շատ տարածվածը ամեն անգամ միակ ստույգը չէ: Ւ-ի նոր գործածությունը և յ-ի հապավման խնդիրը կարելի է բարձրացնել, կանգնելով նույն իսկ գրաբարի հողի վրա: Նայենք ամեն մինը առանձին և հանգամանորեն:

* * *

Ներելի՞ է արդյոք ձայնավորից նախադաս -ու, որ հնչվում է -վ գրել -ւ: Մեզանում շատերն արդեն այդպես են գրում. ուրիշները ինչ ինչ դեպքերում գործ են ածում -վ, իսկ արևմտյանները պահում են -ու: Խառնակ գրության վերջ տալու համար, պետք է այդ լծորդ տառերի գործածության սահմանները որոշել և միմյանցից զատել: Նախ ծանոթանանք -ւ, ու, -վ տառերի իսկական բնավորության, կրկնելով նրանց ճշգրիտ կիրառությունը հին լեզվում:

Քերականները՝ հետևելով հ[այր] Ա. Բագրատունուն, **հյունը** յոթ ձայնավորներից մինն են համարում: Սակայն հետաքննին դիտողությունը ցույց է տալիս, որ նույն իսկ V դարում **հյունը** գործ էր ածվում սովորական *-v* ձայնի տեղ: Վերջադիր և թե միջադիր ւ-երը համապատասխանում և արտահայտում են *-v* հնչյունը՝ սկզբնական կամ ծագածու *-b* և *-m* լծորդ ձայներից: Այսպես՝

| | |
|---|---|
| սեա-ւ = զենդ. *sya-v-a* | տի-ւ = սնսկ. *di-v* |
| նա-ւ = լատ. *na-v-is* | հաշի-ւ = ասոր. *χesi-v* |
| գրա-ւ = պրս. *gira-v* | կեղե-ւ = ասոր. *qela-f-a* |
| հա-ւ = լատ. *a-v-is* | արե-ւ = սնսկ. *ra-v-i* |
| հա-ւ = (պապ) = լատ. *a-v-us* | դե-ւ = զենդ. *dae-v-a* |
| լա-ւ = լիտ. *la-b-as* | գրի-ւ = պրս. *giri-b* |
| դա-ւ = զենդ. *da-b* | և այլն: |



Այնուհետև, **հազի-ւ**, **արդարե-ւ**, **իբրե-ւ**, **իրա-ւ**, **կամա-ւ**, **վերե-ւ**, **ներքե-ւ**, **ազնի-ւ**, **արդե-ւք** և նման ձևերը գործիական հոլովներ են մակբայացած, կամ գործիականի մասնիկով կազմված, ինչպես ազն-իւ:

Սրանց վերջին հյունը նույն ծագումն ունի, ինչ որ գործիականի -ւ հոլովիչը՝ **քաղաքա-ւ**, **բանի-ւ**, **գործո-վ**: Գործիականի -ւ համազոր է արիոեվրոպական լեզուների նույն հոլովի *-b* հոլովակերտ ձայնին - սնսկ. *agni-bh-is*, լատ. *mani-b-us*, ռուս. *дъло-мъ*. հայերենի մեջ նախնի *-b* պահվել է անաղարտ բաղաձայն արմատների գործիական հոլովում. **աղբյուր**, **աղբեր-բ**, **արյուն**, ***արյան-բ** = **արյամ-բ**, **ձեռ-ն**. **ձեռամ-բ**, հին ձևը՝ **ձեր-բ**, որ մնացել է **ձերբակալել** բառի մեջ:

Միջադիր հյունը երևան է գալիս գլխավորապես -ւոր և ւէտ ածանցով կազմած բառերի մեջ.

| | |
|---|---|
| *թագա-ւոր* | *շահա-ւէտ* |
| *հոգե-ւոր* | *գինե-ւէտ* |
| *զօրա-ւոր* | *հացա-ւէտ* |
| *կարե-ւոր* | և այլն: |

Թագաւոր բառը մտքով և կազմությամբ նույնն է իրանական *tagobar* խույրի հետ. իսկական հայերենով պիտի հնչեր թագաբեր: Փոխառյալ **թագո-բար**, կամ **թագո-ւար** օտար ձևը հայերենում դառնում է **թագա-ւոր**, այսինքն **-ա** և **-ո** փոխում են իրենց տեղերը, զուտ հայ բառերի ազդեցության տակ, ուր արմատի և ածանցի կապը **-ա** է և ոչ **-ո**: Այսպիսով ծագում է **-ւոր** մասնիկը, որ թագաւոր և նման բառերի ձևից անջատվելով, ստանում է ինքնուրույն նշանակություն և այնուհետև գործ է ածվում անկախ ածանցի իմաստով. **հեռա-ւոր**, **ուղե-ւոր**, **հարկա-ւոր** և այլն:

Ինչ վերաբերում է **-ւէտ** ածանցին, ծագումը մութ է և դեռ չէ մեկնված: Թվում է, որ սա նույնպես իրանական փոխառություն է և կապ ունի արիո-եվրոպական *-vent* մասնիկի հետ: **Գինե-ւէտ** բառին համապատասխանում է տառացի հունարեն *οἰνο-εις*, որի հին ձևն է **οἰνό-Fεντ* և լատիներեն *vino-sus=*vino-unt-o*[1]: Կազմությամբ նույնն են և հնդկ. *agni-vant* = **կրակա-ւէտ**, *astu-vant* = **մարմնա-ւէտ** և այլն: Պետք է ենթադրել, որ հայերեն **-ւէտ** = *vaeti* =**vati* ծագում է հին պարսկերեն իգական ձևից. *harau-vati* = *haraxvati* = սնս. *saras-vati* = **ջուր-ւէտ**:

Ասել է, թե **-ւոր** և **-ւէտ** հանգերում ևս -ւ զուտ բաղաձայն հնչյուն է: Անհերքելի փաստեր են այս ճշմարտության պահլավերենից կամ սա-

[1] **K. Brugmann**, II, § 127.

սանյան շրջանի պարսկերենից փոխառությունները, ուր -ւ տառադարձնում է զուտ -վ հնչյունը: Այսպես՝

վա-ւ-եր = պհլ. *ba-υ-ar, va-υ-ar* — դի-ւ-ան = պհլ. *de-υ-an*
ա-ւ-ար = պհլ. *a-υ-ar* — գա-ւ-ազան = պրս. *ga-υ-az*
ա-ւ-աչ = պհլ. *a-υ-atch* — և այլն.

Այս կարգին են պատկանում և հատուկ անունները.
Կա-ւ-ատ = պհլ. *Ka-υ-at*, հուն. *Κα-β-άδης*
Արտա-ւ-ան = հ.պրս. *Arta-b-unu*
Արտա-ւ-ազդ = հ.պրս *Arta-υ-azdah*
Շա-ւ-ասպ = զենդ. *Shya-υ-aspa* և այլն:

Հետաքրքիր է, որ հյունը զուտ հայկական բառերի մեջ, նույն իսկ այն դեպքում, երբ կցելով -ա, -ե, -ի, -ո ձայնավորներին՝ կազմում է երկբարբառներ, ծագումով սկզբնական շրթնային բաղաձայն է: Պաշտօն կամ պաշտա-ւ-ն բառի նախնական ձևն է պաշտա-մ-ան ինչպես վկա է սեռ. հոլովը. և ուրեմն հյունը ծագում է նախկին մ-ից:

Ձի-ւ-ն, հին ձևը ձի-ւ-ան, ավելի հին ձի-մ-ան հնդ. he-m-an հուն. *χει-μ-ών*.
համեմատել նաև ձմեռն = *ձի-մ-եռն
սի-ւ-ն = *սի-ւ-ան, հուն. *κί- ων* = *κι-F-ων*
ե-ւ-թն = *ե-պ-թն, հուն. *ἑ-π-τά*, լատ. *se-p-tem*
քո-ւ-ն = *քո-պ-ն, հնդ. *sva-p-na*, լատ. *so-m-nus*
(*sυ*= հայ. -ք. *sυ-esr* = ք-ույր)
աղբի-ւ-ր = *աղբե-ւ-ար = *բրե-ւ-ար = *փրե-ւ-ար = հուն. *φρέ-αρ* = *φρέ-F-αρ*
զօր, զա-ւ-ր = *զա-ւ-ար, զենդ. *za-υ-are*
բի-ւ-ր, բե-ւ-ր = *բե-ւ-ար, զենդ. *be-υ-are*
դրա-ւ-շակ = զենդ. *dira-f-sha*
տա- ւ-թ = *ta-f-ti*, արմատն է *tap*, հայերեն տապ:

Այս և նման բառերի մեջ, նախնական -*υ* հնչյունը նախորդ ձայնավորի հետ միանալով, տվել է երկբարբառ, մի երևույթ, որ բացատրվում է հին շեշտադրությամբ: Հայերենում վաղ ժամանակ շեշտը ո՛չ թե վերջին վանկի վրա էր, ինչպես այժմ է, այլ վերջընթեր, այն է վերջինից առաջին, որ մնացել է Ղարաբաղի բարբառում: Քանի որ հյունը ձայնավորների մեջ է, պահում է իր իսկական հնչյունը: Իսկ երբ շեշտի շնորհիվ սղվում ընկնում է եռադաս ձայնավորը, թողնելով -ւ բաղաձայնի առաջ, հյունը նախընթաց ձայնավորի հետ կազմում է երկբարբառ:

Պաշտօն բառի հոլովական հիմը (*thème*) և ուղղականը հնում եղել է պաշտա՛ման. շեշտը վերջընթեր վանկի վրա: Սեռ հոլովներում հոլովակերտ մասնիկի կցվելովը (որ սեռ. կորսված է, բայց օր. բաց. պահված է) մի վանկ ավելանում է, ուստի և շեշտը մի վանկ առաջ է գալիս, որ դարձյալ վերջընթեր վանկի վրա կանգնի - ի պաշտամա՛նէ: Պաշտա՛ման ձևից՝ շեշտի ազդեցությամբ ստացվում է պաշտամըն, պաշտամն = պաշտաւն = պաշտօն: Զենդական *zaυare* բառը սկզբում անցել է հայերենի զաւարէ ձևով: Վերջին ձայնավորի հապավումից հետո, որ հատուկ է հայ լեզվին, շեշտը տեղափոխվում է նախընթաց վանկի վրա - զա՛ւար. ապա դառնում է զա՛ւըր = զա-ւ-ր = զօր: Նույնն և *beυare* = բե՛ւար = բեւր = բիւր: Աղբե՛ւար = աղբե՛ւըր = աղբեւր = աղբիւր. ա՛ւուր = ա՛ւըր = աւր = օր:

Այսպես ուրեմն, հյունը բոլոր դեպքերում նախ շրթնային բաղաձայն է, և ապա որոշ պայմաններում շեշտի ազդեցության տակ ստանում է կիսաձայնի զորություն: Նույնանման շրջումներ հատուկ են և ուրիշ լեզուների. հուն. *ἐλάF-νω* = *ἐλαυ-νω*, *βασιλεF-ος* = *βασιλεῦ-ς*, լատ. *caυ-ere, cau-tus*.

Տարօրինակ երևույթ է, որ բառի սկզբում երբեք հյուն չէ գրվում և փոխարեն գործ է ածվում -վ: Մյուս կողմից բացատրության կարոտ է, թե ինչո՞ւ վեի կիրառությունն այնքան աննշան և սահմանափակ է: Բառերի միջում և վերջում վեը պատահում է միմիայն ո-ից հետո, որ հասկանալի է. եթե հյուն գրեին՝ կկարդացվեր -ու և ո՛չ -ով: Հաշիվ չեն բարդ բառերը՝ զօրա-վար, օրա-վարձ, ամենա-վարժ և այլն:

Բուն հայ հնչյունների պատմությունը ցույց է տալիս, որ հայերենի մեջ բառի սկզբում -*υ* ձայն չէր կարող լինել, ուրիշ խոսքով *υ*-ով սկսվող բառ չկար: Արիո-եվրոպական -*υ* հնչյունը բառի սկզբում հայոց լեզվում փոխվում էր -գ. *υ-inum* = գ-ինի, *υedami* = գիտեմ, *в-ода* = գ-ետ, *в-олкъ, w-olf* = գ-այլ: Հայերն արտասանում էին *gυidem = գիտեմ: Ճիշտ այնպես, ինչպես հիմիկ իտալացիք լատ. *υastare* բառը հնչում են *guastare*: Այս հնչական օրենքի հիմամբ կարող ենք ասել, որ վեով սկսվող բառերը կասկածելի ծագում ունեն: Եվ հիրավի, աչք ածելով դրանց վրա, որ հարյուրից ավել չեն, տեսնում ենք, որ սակավ բացառությամբ բոլորն էլ օտար փոխառություններ են:

Երեսուն բառի նկատմամբ ո՛չ մի կասկած չի կարող զարթնել, որ նրանք միջին պարսկերենից են անցել հայերեն: Սրանց թվում են բավականին սովորական բառեր. վատ, վաճառ (= բազար), վանկ, վարազ, վագր, վրէժ, վրիպակ, վարդ, վարժ, վարձ, վարս, վեհ, վէմ, վիժել, վիշապ, վիրապ, վկայ, վիճակ, վճիռ, վճիտ, վնաս, վստահ, վտակ, վտառ և ուրիշները[1]: Մյուսների

[1] H. Hübschmann, Armenische Grammatik, I, Leipzig, 1895.

ստուգաբանությունը դեռ մեկնված չէ. բայց իրենց հնչական կազմով պարսիկ ձև ունեն: Պահլավ լեզվի ուսումնասիրության հետ անշուշտ հետզհետե կպարզվի նրանց իսկական ծագումը: Ինձ այնպես է թվում, որ վևի գոյությունը և գործածությունը V դարից այն կողմ չի անցնում. և անտարակույս Մեսրոպ [Մաշտոցն] էր, որ առաջին անգամ մտցրեց -վ: Նոր տառի պահանջ զգացվում էր ո՛չ այնքան պարսիկ բառերի, որքան բուն հայ -**ով** վանկի համար: Պարսիկ բառերի սկզբում կարելի էր վերջապես հյուն գրել, իսկ -**ով** հնչյունը առանց վևի ճշտորեն գրի առնելու հնար չկար:

Հիմք կա կարծելու, որ Մեսրոպից առաջ -**ով** վանկում կամ ոչինչ չէին գրում ո-ից հետո, ինչպես -**ո** (= ով) կամ ճարահատյալ գործ էին ածում -ւ: Ընթերցողն ինքն պիտի կռահեր, որտեղ -**ու** կարդար և որտեղ -**ով**: **Այս, այդ, այն** դերանունների գործիական հոլովը պատահաբար պահել է մեզ այս հին գրության ձևը, **այսու, այսու-իկ. այնու, այնու-իկ**: Մեր նախնիք անշուշտ կարդում էին **այսով-իկ, այդով-իկ, այնով-իկ**, որովհետև գործիականի հոլովիչն է ւ =υ.

*ուղ.* այս, *այս-իկ, (ասիկա, էսիկ)

*սեռ.* այս-ր, *այս-որ, այսոր-իկ

*տր.* այսմ, *այս-ոմ, այսմ-իկ, *այսոմ-իկ

*գործ.* այսո-ւ, *այս-ո-վ, այսու-իկ, *այսո-վ-իկ:

**Մա, դա, նա** նույնահոլով դերանունների գործիականում հյունի տեղ -վ է գրած. **սա, սորա, սմա** = *սո-մա, սո-վա-ւ = *սովա - վերջի -ւ հետամնաց կրկնությունն է:

Երևում է, որ նախամեսրոպյան հայերենում -**ով** շատ տեղ փոխարինվում է **աւ**-ով. **բովանդակ-բաւանդակ, յաւանակ-յովանակ, յովազ-յաւազ**[1]: Հայտնի է, որ Ղարաբաղի բարբառում այժմ էլ -**ով** հնչվում է **աւ**. **կով-կաւ, խրովված-խրաւած. խոով-խռաւ, գործով-գործաւ** ևն: Ուրիշ բարբառներում ևս նկատվում է նույն երևույթը. **սովորել-սավրել**: Ով գիտե, գուցե գրաբարի խառն կոչված հոլովների իսկական ծագումը կապ ունի այս երևույթի հետ՝ **այգի, այգւոյ, այգե-աւ** (փոխ. **այգով**):

Ահա գլխավորապես **ով**-ի կարիքը լրացնելու համար Մեսրոպ պետք է հնարեր մի երկրորդ տառ -*υ* հնչման: Ավելի քան հավանական է, որ Մեսրոպ -վ տառը ուղղակի վերցրել է զենդ այբուբենից: Հետաքրքիրն այն է, որ զենդ այբուբենը նմանապես երկու գիր ունի -*υ* հնչյունի համար և նրանց գործածությունը ճիշտ հայերենի նման է. մեկը գրվում է միմիայն բառերի սկզբում, մյուսը՝ բառերի մեջ: Մեր -վ ոչ միայն կոչումով, այլև արտաքին

[1] **Ա. Բագրատունի**, Հայերէն քերականութիւն ի պէտս զարգացելոց, Վենետիկ, 1852, էջ 644:



ձևով նմանություն ունի զենդի սկզբնագիր *υ*-ին: Մերը ոչ այլ ինչ է, եթե ոչ զենդերենի -*υ* շրջած: Այժմ հասկանալի է, թե ինչու պարսիկ փոխառյալ բառերի սկզբի -*υ* ձայնը վևով էին գրում. այդ տառով էր գրվում բնիկ լեզվում: Տառի հետ միասին հայոց է անցել և գրության ձևը:

Կան մի քանի վևով սկսվող բառեր, որոնցից անպայման բուն հայերեն է **վեց**, հավանորեն, նաև **վառել, վախենալ**, գուցե և **վեր, վաղ**: Մինչև Մեսրոպ ինչպես էին գրվում, չգիտենք. գուցե *ուեց, կամ *ւառել: Ուշադրության արժանի է, որ **վեր** Ղարաբաղի բարբառում ասվում է -**եր**, առանց վևի: Բառի սկզբում -վ գրելու սովորությունը միանգամ հաստատելուց հետո, մյուս բառերն ևս ենթարկվել են նույն սովորության և գրվել **վեց, վառել** և այլն:

Ասածներից հետևում է, որ բառի միջում վևի գործածությունը բոլորովին խոտելի է. և մեր լեզվի հարազատ ոգու համաձայն գրելու է -ւ կամ -**ու**: Մեր նոր գրական լեզվի նահապետները՝ Խ. Աբովյան, Գ. Օտյան, Ն. Ռուսինյան[1] մեղանչելով այս կանոնի դեմ, կրավորական բայերի -*υ* հնչյունը գրում էին վևով: Այս ուղղագրության միակ հետևորդը այժմ «Մշակ» թերթն է: Գրաբարում կրավորականն ուրիշ կերպ է կազմվում, **գործ-ե-լ** - **գործ-ի-լ**: Աշխարհաբար ձևը երևան է գալիս միմիայն անցյալ դերբայներում և գրվում է **ու**-ով՝ **ստեղծ-ու-ած, առեղծ-ու-ած, դիպ-ու-ած, յօրին-ու-ած, հերձ-ու-ած հաստ-ու-ած** և այլն: Եթե գրում ենք **ստեղծ-ու-ած, յօրին-ու-ած**, հետևողական լինելու համար պետք է գրենք և **ստեղծ-ու-ել, յօրին-ու-ել** և ոչ **ստեղծ-վ-ել**, կամ **յօրին-վ-ել**: Կրավորականի վև գրությունը հիմք չունի և լոկ թյուրիմացության արդյունք է. ընտրությունը **ու**-ի և ւ-ի մեջ է. լուրջ վեճ կարող է լինել միայն այս առթիվ: Խնդիրը պահանջում է նախ մոտիկ ծանոթանալ **ու**-ի բնավորությանը գրաբարի մեջ:

Զննելով **ու**-ի ծագումն ու գործածությունը մեր հին լեզվում, հանգում ենք շահեկան հետևանքների: Բառերի ստուգաբանությունը ցույց է տալիս, որ -**ու** շատ անգամ ուրիշ բան չէ, եթե ոչ սկզբնական -ւ հնչյունը: Ինչպես տեսանք վերև, հյունը իր իսկական ձայնը պահպանում է միայն ձայնավորների մեջ. և երբ հետադաս ձայնավորն ընկնում է, նախադասի հետ կազմում է երկբարբառ: Իսկ այն դեպքում, երբ նախադաս ձայնավորն է ընկնում, հյունը մնալով բաղաձայնի առաջ թեև պահում է իր հնչյունը, բայց գրության մեջ փոխվում է **ու**-ի: Այս ծագումն ունի -**ու** մի շարք բառերի մեջ:

**Պատվաստ** միջին պարսկերեն կամ պահլավ *pati-vasta* բառն է, նոր պարսկերեն **փեյ-վաստ**: Հայերենի սկզբնական ձևն է **պատի՛-վաստ. ի**-ի սղմամբ՝ **պատը-վա՛ստ** և հետո պատ-վ-աստ: Այսպես էլ՝

[1] **Ն. Ռուսինյան**, Ուղղախոսություն արդի հայ լեզվին, Կ. Պոլիս, 1853:

պատ-վար = պհլ. _pati-vara._

հայ. *պատի՛-վար = պատը-վա՛ր = պատըվ-ար = պատվ-ար:

պատ-վէր = պհլ. _pati-vaeda._

հայ. *պատի՛-վէր = պատը-վէ՛ր = պատուէր:

բշ-վառ = հ. պրս. _duzh-uvarna._

հայ. *դուժո՛ւ-ւառ = դժը-ւառ = բշուառ:

դժ-վար = զենդ. _duzh-uvatra (=duzh-hu-athra),_ պրս. _dush-var._

հայ. *դուժո՛ւ-ւար =դըժ-ւա՛ր = դժուար (դժար = _duzh-athra_):

դր-վատ = զենդ. _dru-vatat._

հայ. *դրո՛ւ-ւատ = դըր-ւա՛տ = դրուատ:

արծ-վի = զենդ. _erezi-f-iya, ἄρξι-φ-ος_ .

հայ. *արծի՛-ւ-ի = արծը-ւի՛ = արծ-ըւ-ի = արծուի:

զին- վոր = սկզբ. զինա՛-ւոր (ինչպես Ղարաբաղի բարբառում).

ապա՝ զինաւո՛ր = զինը-ւոր = զին-ըւ-որ = զինուոր:

սաղ-վարտ = սկզբ. սաղա՛-վարտ.

ապա՝ սաղա-ւա՛րտ = սաղը-ւրա՛տ = սաղուարտ:

աղ- վոր = սկզբ. աղո՛ւ-ւոր.

ապա՝ աղու-ւո՛ր= աղը-ւո՛ր = աղուոր:

երկուոր-(եակ) = սկզբ. երկո՛ւ-ւոր-(եակ).

ապա՝ երկու -ւո՛ր = երկը-ւո՛ր = երկուոր-(եակ):

Ուշագրավ են այս տեսակետից **պարավանդ, վարավանդ** և **բահվանդ** հազվադեպ բառերը: Սրանք պարսկերենից են առնված և ոտի, կրծքի ու բազկի վրա կրելու զարդերի անուններ են.

պարա-ւանդ = _pada-vand, *pada-banda_ = ոտ-կապ:

վարա-ւանդ = _vara-vand, *vara- banda_ = կուրծ-կապ:

բահ-ուանդ = _bahu-vand, *bahu-banda_ = բազուկ-կապ:

Առաջին երկու բառերում -ւ մնացել է, որովհետև ձայնավորից հետո է. իսկ երրորդում, ձայնավորի սղվելուն պատճառով, փոխվում է ու-ի. **բահո՛ւ-ւանդ = բահը-ւա՛նդ = բահ-ըւ-անդ, բահուանդ**:

Այսպես է բացատրելու նաև -իւ վերջացող բառերի շեղ հոլովների -ու.

հաշի՛ւ

հաշի՛ւ-ի = հաշըւ-ի՛ = հաշ-ու-ի

վաղի՛ւ

վաղիւ-եա՛ն = վաղըւ-եա՛ն = վաղու-եան և այլն:

Կրավորականի սեռանիշ -_v_ հնչյունի ծագումը մութ է: **Ստեղծու-ած, հատու-ած, հերձու-ած** և այլն ձևերի մեջ -ած ներգործականի անցյալ դերբայի վերջավորությունն է: Մնացածը՝ *ստեղծու-, *հատու-, *հերձու-կարոտ է մեկնության:



Թվում է, որ սրանք կրավորականի անցյալ դերբայի արխայիկ ձևն են: Գրաբարում -**ու** մասնիկը իբրև ածանց ներգործական դերբայի իմաստ ունի. **հասու, կծու, ազդու** նշանակում են՝ **հասնող, կծող, ազդող**: Բայց որ մի ժամանակ կրավորականի նշանակություն էլ է ունեցել, երևում է **վերարկու** և թերևս **ածու** բառերից: Վերարկու՝ նշանակում է վրան քցելի, ուրեմն քցվող, և ոչ քցող: **Ածու**, որ հին լեզվում նշանակում է ժողովուրդ, ազգ, հավանորեն ածեմ = բերել բայից է ածանցված. և նույնն է, ինչ որ **ածեալ, ածք**, այսինքն՝ բերուած, սերունդ:

Կրավորականի -**ու** կարող է առաջ եկած լինել և նախնի **իւ**-ից. ***ստեղծիւ+ած=ստեղծըւ-ած= ստեղծու-ած**, ճիշտ այնպես, ինչպես՝ **հովիւ = հովըւ-ի= հովու-ի**: Այս դեպքում պետք է ենթադրել կրավ. դերբայի համար ***հերձիւ**- ձևը, որի հին բուն նշանակությունը պահվել է **ցրիւ**, գուցե և **դրդիւ** բառերի մեջ: **Ցրիւ** նշանակում է ցրուած և համապատասխանում է ներգործականի ցրեալ ձևին - **ցրեմ, ցրեալ և ցրիմ, *ցրիւ**:

Ամենայն հավանականությամբ ենթադրական *ցրիւ դերբայը ստուգաբանական կապ ունի լատին _capt-iv-us, furt-iv-us_ և սլավոն _ходи-въ, уби-въ, дѣла-въ_ ձևերի հետ: Լատիներեն բառերը նշանակում են՝ գերեալ, գերի և փախած, փախստական: _Ходи-въ_ սլավոներեն բայածականի միտք ունի, իբրև **գնացող** գրական ռուսերենում է, որ գործ է ածվում միմիայն անփոփոխ ընդունելության իմաստով[1]:

Կրավորականի -_v_ հնչյունը համենայն դեպս համարելու է լծորդ սլավ -_въ_ և լատինի -_ivus_ ածանցի հետ: Լեզվագիտության մեջ արդեն ընդունված է, որ **գործեալ, գործե-լոյ** անցյալ դերբայը կազմությամբ նույնն է, ինչ որ սլավ _хвали-лъ, игра-лъ_: Սլավոներենում _хвали-лъ_ անցյալ դերբայ է և գործ է ածվում ածականաբար: _Дѣлалъ есмь_ - գործեալ եմ, _дѣлалъ еси_ - **գործեալ ես**. էական բայի վերացումով՝ ռուսերենում ստանում է անցյալի իմաստ. _я, ты, онъ, дѣлалъ. Дѣла-лъ_ ձևին համապատասխանում է հայերեն **գործեալ**, իսկ _дѣлал-въ_ - ենթադրական ***գործիւ** կամ **գործու**, ինչպես երևում է **գործու-ած** և այլն ձևերից: Երբ -իւ կամ -ու մասնիկի կրավորական իմաստը սկսում է աղոտանալ, թուլանալ գիտակցության մեջ, նրան ուժ տալու համար կցում են վերջից -ած մասնիկը հետևությամբ ներգործական դերբայներին՝ **արար-ած, կոտոր-ած, ողորմ-ած**: Նույն կարգի երևույթ է մեր մի քանի գավառաբարբառների մեջ նկատելի միտումը, անցյալին կցել ներկայի վերջավորություն. **գնացի-մ**, փոխ. **գնացի, առում էի-մ**, փոխ. **առում էի**. գրաբարում՝ **նա, նովա-ւ**, փոխ. **նովա**:

Ահա այս եղանակով առաջ են գալիս ստեղծ-ուած, հար-ուած ձևերը, որոնք արդի կրավորականի անդրանիկ կազմություններ են: **Ած**-ի

[1] Ժողովրդական՝ _онъ ходивъ =онъ ходилъ._

ավելադրությամբ՝ **ստեղծուած**-ի խոնարհման հիմը (*thème*) սկսում է համարվել **ստեղծու-**, ինչպես **կտորած**-ի հիմն է **կտոր-** և ընդհանուր կանոնին համաձայն կազմվում են բայի մյուս ձևերը՝ **ստեղծու-ած, ստեղծու-ել, ստեղծու-եմ**: Ուրեմն պատմական տեսակետից **-ուած** ավելի հին է, քան **-ուել, -ուեցի, -ուեմ**. սրանով է բացատրելու այն հանգամանքը, որ **-ուած** դերբայները հաճախ պատահում են գրաբարում, այն ինչ մյուս ձևերը և ոչ մի անգամ:

Մեր քննության նպատակն էր պարզել, թե ի՞նչ տառով դրոշմել կրավորականի կազմիչ հնչյունը: Գրաբարում գրվում է **-ու**. սա, ինչպես տեսանք, կարող է լինել կամ սկզբնական -ու և կամ ծագած **իւ**-ից: Գրության հարցը կախված է նրանից, թե ինչպես կորոշենք գրել **-ու** և **-իւ** վերջացող բառերի շեղ հոլովները: Մեր նախնիք երկու դեպքում էլ գրում էին **-ու**՝ **-կովու, կովուի**. լեզու, լեզուի:

Զննելով **ու**-ի գործածության գլխավոր դիպվածները, տեսանք, որ նա մի պայմանական գրություն է, որ արտահայտում է **-ըւ** հնչյունը: Թվում է, որ **-ըւ** պահում էր իր ձայնը. և մեր նախնիք **պատուաստ**, **հովուի** արտասանում էին **պատըւաստ, հովըւի**: Հիմք կա կարծելու, որ այդպես էին հնչում **-ու** մինչև իսկ **լեզու, լեզուի** տիպի բառերի մեջ. այսինքն **լեզըւի** և ոչ **լեզուի**: Հայկական հնչաբանության մեջ հնում, ինչպես և այժմ անտանելի էր հնչական երևույթը, որ կոչվում է **hiatus** - տարբեր ձայնավորների արտասանությունը իրար կից: Հայը չի կարող արտաբերել ***a, e, i, o*** հնչյուններից որևէ մեկը մյուսի կողքին, առանց թարմատար յ-ի կամ ւ-ի: Հունարեն *ἀήρ* արտասանում և գրում էին **ա-յ-եր**.

*στο-ά, στωϊκός* = **ստո-յ-ա, ստո-յ-իկեան.**
*χα-ος* = **քա-ւ-ոս.**
*Λέ-ων, λέοντος* = **Ղե-ւ-ոնդ, Լե-ւ-ոն**
*Γε-ώργης* = **Գէորգ, Գե-ւ-որգ**
*φαρα-ών* = **փարա-ւ-ոն**
*Τρό-α* = **Տրո-վ-ա և այլն:**

**-Ա** հնչվում է կոկորդով կամ լեզվի արմատում, -ի լեզվի միջին մասով: իսկ -ու՝ շրթունքով: Հային օտար է մի հնչյունից անմիջապես մյուսին անցնել: Օրթնային ձայնավորին անցնում է շրթնային բաղաձայն ւ-ի միջոցով, իսկ քմքային ի-ին նույնպիսի բաղաձայնով՝ որ է -յ: Մեր նախնիք **լեզու, լեզու-ի** պիտի արտասանեին **լեզու-ւ**՝ -ի կամ -ու աղելով **լեզ-ըւ-ի լեզը-ւ-ի. Աստուած, Աստու՛-ւ-ած = Աստը-ւա՛ծ. անուան, անու՛-ւ-ան = անը-ւան**: Այս դիրքում՝ այսինքն բաղաձայնի և ձայնավորի մեջ **-ու** չէր կարող պահել իր պարզ հնչյունը և պետք է արտասանվեր աղված իբրև **-ըւ**: Այժմ մենք հնչում



ենք **լեզ-ւի, Աստ-ւած, մահ-ւան, պատ-ւաստ, հով-ւի**, այսինքն **ու**-ի տեղակալ **-ը** անհետանում է բոլորովին: Հնում **-ը** որոշակի լսվում էր, որով երեք վանկ էր ստացվում՝ **պա-տը-ւաստ, պա-տը-ւի, Աս-տը-ւած**. **-ը** սովորաբար չէր գրվում բառերի մեջ. իսկ առանց ը-ի կկարդացվեր՝ **պատ-ւաստ, պատ-ւի, հով-ւի**, ինչպես այսօր **համա-լը-սարան** արտասանում ենք **համալ-սարան**: Մնում էր գրել **պատու-աստ, հովու-ի**, որպեսզի **պատը-ւաստ, հովը-ւի** կարդային: Իսկ այնտեղ, ուր թույլ էր տրվում **-ը** գրել, ինչպես տողադարձության ժամանակ՝ գրում էին **Աստը-ւած, հովը-ւի, նը-ւէր**:

Ուրիշ կերպ դժվար է հասկանալ **ու**-ի ներկայությունը այնպիսի բառերում, ուր ստուգաբանորեն **-ու** չկա, այլ -ւ, ինչպես *pati-vast* և այլն:

Գուցե ուրիշներին ավելի հավանական թվի, որ **ըւ**-ը **-ու** է գրվել **-ու** վերջացող բառերի ազդեցությամբ: **Լեզու, լե-զու-ի**, գրելով, բայց *hiatus*-ի օրենքով արտասանելով **լեզ-ւի**, նախնի հայը ընտելանում է **ու**-ի -ւ հնչման: Նա չէ հասկանում, հաշիվ չէ տալիս, թե ինչպես է լինում, որ **-ու** իբրև *-v* է արտասանվում. նրան թվում է, ինչպես շատ շատերին այժմ, որ **-ու** բաղաձայնի և ձայնավորի մեջ այդ հատկությունն ունի: Այնուհետև լսելով *patvast* օտար բառը, նա գրում է իր սովորության համաձայն, **պատ-ու-աստ**, փոխ. **պատ-ւաստ**.

Ապր-ու-էզ, փոխ. Ապր-ւէզ = պրսկ. *Apar-vez.*
Աղուանք, փոխ. Աղ-ւանք = *Al-b-ania.*
Մծուին, փոխ. Մծ-ւին = Մծ-բին,

ինչպես մենք այսօր, նույն պատճառով գրում ենք **Մոսկուա** փոխ. Մոսկւա = *Москва*, **Արագուա**, փոխ. **Արագւա** և այլն:

Հնչյունը լսելիքի համար նույնն է, ինչ որ գիրը՝ տեսողության: Նման դիպվածներում նույն կերպ գրել՝ տեսողության պահանջ է: Նմանողությունը՝ անալոգեն (*analogie*) ոչ միայն ուղղագրության մեջ, այլ ընդհանրապես լեզվի կյանքում մեծ դեր է խաղում: **-Ու** գրության ընդհանրանալուն, անշուշտ, նպաստել է նմանողությունը: Մի տեղ վեվահնչյուն **-ու** իրոք **-ու** է եղել, ուրիշ տեղ անտարակույս -ւ: Այս կամ այն պատճառով մեր նախնիք առավելություն են տվել **ու**-ին և նույն կերպ դրոշմել -ւ: Ի՞նչ էր իսկական պատճառը. արդյո՞ք այն, ինչ որ վերև պարզեցինք, թե ուրիշ: Փույթ չէ, եթե մեր ենթադրությունը ոմանց համար համոզկեր չերևի, կարևորը փաստն է, իրողությունը որ **-ու** կիրառությունը աճել է և ընդհանրացել ի հաշիվ ւ-ի, և այս անտարակույս է:

Այժմյան հնչաբանությունը մեզ իրավունք է տալիս հակառակ ընտրությունն անել և գերադասել -ւ: Մեր իրավունքն օրինական է, և մեր ընտրությունն արդարացի, որովհետև պատմական հիմք ևս ունի: Հյունի գրությունը չի մեղանչում, ո՛չ պատմության դեմ և ո՛չ հնչաբանության.

միևնույն ժամանակ ունի գործնական և տեսական առավելություններ. գործնականը՝ հարմարությունն է, տեսականը - ուղղագրական միօրինակություն: Հին գրության եղանակն այլևս անզոր է պահպանել միօրինակություն՝ շնորհիվ աշխարհաբարի մի քանի նոր ձևերի, որ օտար է գրաբարին. **թագ-ա-ւոր, թագ-ը-ւոր, թագ-ւոր. թանաւոր, թան-ւոր. ալեւոր, ալ-ւոր, շատ-ւոր, քիչ-ւոր, եկ-ւոր, տն-ւոր, հնձ-ւոր, կալ-ւոր, փող-ւոր** և այլն: Հների, հետևությամբ գրել **թագաւո-որ,** նման **զինուոր,** փոխ. **զին-ւոր,** նշանակում է պարզի և ճշգրտի փոխարեն ընտրել բարդը և սխալը, առաջանալու տեղ ետ գնալ և լեզվի կանոնավոր զարգացման արգելք դնել, նրա պարզվելու միտումներին ընդդիմանալ:

* * *

Նույնանման հիմունքներով կարելի է բարձրացնել և յ-ի հապավման խնդիրը:

Մեր հին լեզվում -յ տառը լայն գործածություն չունի: Բառերի սկզբում նա մեծ մասով անշնչացած նախդիր է.

| | | |
|---|---|---|
| *յ-ածեմ* | *յ-աչաղեմ* | *յ-աւելուած* |
| *յ-ակամեմ* | *յ-ապահով* | *յ-եղում* |
| *յ-աղագս* | *յ-անդիման* | *յ-եսան* |
| *յ-աղեմ* | *յ-աջողեմ* | *յ-ետ* |
| *յ-այն-ժամ, յ-որ-ժամ* | *յ-աջորդեմ* | *յ-ղեմ, *յ-ուղի-եմ* |
| *յ-այն-կոյս* | *յ-առաջ* | *յ-ոռի* |
| *յ-ան-կարծ* | *յ-արգ* | *յ-որձանք* |
| *յ-անձնեմ* | *յ-առնեմ* | *յ-օրինել* |
| *յ-անցանք* | *յ-արդարեմ, զ-արդարեմ* | *յ-ողդ-ողդ* և այլն: |

Շատ հավանական է, որ -յ մյուս բառերում, որոնց ստուգաբանությունը դեռ մութ է, նույնպես նախդիր է. ինչպես **յագենամ, յաղթեմ, յաճախ, յամր (յամե՞լ), յայտնի, յանգ, յապաղեմ, յանդուգն, յատուկ, յարմար, յիմար, յաւակնիմ, յոյս, յափշտակեմ, յափրանամ, յոյլ-ծոյլ** և այլն:

Միջադիր -յ համապատասխան ձայնավորների հետ կազմում է -այ, -ոյ, երկբարբառները.

| | |
|---|---|
| *հ-այ-ր* | *լ-ոյ-ս (= лойс, loys)* |
| *տ-այ-գր* | *երև-ոյ-թ* |
| *այ-ծ,* | *ան-ոյ-շ* |
| *այ-պանեմ* | *ծ-ոյ-լ* |
| *ն-այ-եմ* | *ողջ-ոյ-ն* |
| *խաղ-այ-ր* | *խար-ոյ-կ* |
| *եկ-այ-ք* | *թ-ոյ-ն* |
| | *ոյ-ժ* և այլն: |



Յ-ն դրվում է բառերի վերջում, եթե բառը հանգում է նույն -ա, -ո ձայնավորների.

| | | | |
|---|---|---|---|
| *արքա-յ* | *շուկա-յ* | *հա-յ* | *ներքո-յ* |
| *տղա-յ* | *արեղա-յ* | *բա-յ* | *յետո-յ* |
| *երեխա-յ* | *կաթսա-յ* | *վերա-յ* | *երեկո-յ* |
| *քահանա-յ* | *լումա-յ* | *ակամա-յ* | *խո-յ* |
| *ծառա-յ* | *մեքենա-յ* | *անուղղա-յ* | և այլն: |
| *սատանա-յ* | *ընծա-յ* | | |
| *փեսա-յ* | *շղթա-յ* | | |

Ածանցական բառերում.

| | | |
|---|---|---|
| *պաշտօնեա-յ* | *դժնեա-յ* | *բարեբարո-յ* |
| *երկաթեա-յ* | *գործունեա-յ* | *արգո-յ* |
| *անձնեա-յ* | *հրաչեա-յ* | *ձուլածո-յ* |
| *աւուրչեա-յ* | *ամենօրեա-յ* | *հաւաքածո-յ* |
| *քրիստոնեա-յ* | | և այլն: |

Հոլովներում և խոնարհումներում[1].

| | | | |
|---|---|---|---|
| *Ադամ,* | *Ադամա-յ,* | *յԱդամա-յ* | |
| *Արա,* | *Արա-յ,* | *յԱրա-յ, է* | |
| *մարդ,* | *մարդո-յ,* | *ի մարդո-յ* | |
| *խաղամ,* | *ս,* | *խաղա-յ* | |
| *գամ,* | *ս,* | *գո-յ* | |
| *տեսա-յ,* | *փախեա-յ,* | *մոռացա-յ* | և այլն: |

Յ-ն իսկապես կիսաձայն է. նրա ճշմարիտ հնչյունն է *-y,* ռուս. *-й,* այսինքն այն ձայնը, որ լսվում է այժմ **-այ** և **-ոյ** երկբարբառներում: Բառերի սկզբում հիմիկ ունի թեթև հագագային ձայն, հավասար հ-ի: Այդպես չէր հնում: Լուրջ հիմեր կան հաստատելու, որ հին ժամանակ բառի սկիզբն ու վերջը -յ պահում էր իր բուն կիսաձայնը: Այս երևում է օտար փոխառություններից. յազեմ, որ նշանակում է զոհել, զենդ *yaz-* արմատիցն է, անցած հայերեն պահլավիկ լեզվից:

[1] -յ ենթադրվում է նաև -ե և -ի ձայնավորներից հետո, բայց որովհետև գրության մեջ չեն երևում, ուստի այս մասին չենք խոսում: ե + յ = է, իսկ ի-ից հետո չի գրվում.

| | | |
|---|---|---|
| բերեմ, ս | բերիմ, ս | ձի= *ձիյ |
| բերէ = *բերե-ւ | բերի = *բերի-յ | ձի-ոյ = *ձիյ-ոյ: |

յ-ազեմ = *եազեմ = պհլ. *y-azem*
յ-աւէտ = *եաւէտ = զենդ. *yaxaeti*
յ-ոյզ = *եոյզ = զենդ. *y-aoza*
յ-այսմիկ = *եասմիկ = պրս. *y-asaman*, եասամանի և այլն:

Նույնն է ապացուցանում և հույն անունների հայերեն տառադարձությունը.

Յակովբ = *Ἰ-άκοβος*, Յուդա = *Ἰ-ούδα*, Յովհաննէս = *Ἰ-ωάννης*, Յիսուս = *Ἰ-ήσους* (կարդալ *Ἰ-ίσους* հետկլասիկ արտասանությամբ). հունական տառի անունը՝ *ἰῶτα* մերոնք տառադարձրել են յ-ով և գրել **յ-ովտ**, որ անշուշտ կարդում էին *եովտ (յովտ մի, որ նշանախեց մի է... Աւետ[արան]):

Գրաբարում -ի նախդիրը ձայնավորով սկսվող բառերից առաջ փոխվում է -յ, ի բանէ, յ-արքայէ: Անտարակույս, այս դեպքում արտասանվում էին *եարքայէ = *yarkaye*: Հաճախ պատահում են **ի յարքայէ, ի յԱստուծոյ** ձևերը: Սովորաբար կարծվում է, որ նախադիր -**ի** լոկ կրկնություն է, իմաստը սաստկացնելու համար: Սակայն թվում է, որ ի **յարքայէ** ձևն ավելի հին է, քան **յարքայէ**:

-Ի նախդիրը արիո-եվրոպական *-en, -in* է տրական և ներգոյական հոլովներում և *-ek, -ik* (= *и-зъ*) բացառական: Բաղաձայնի կորուստից հետո երկու ի-երը նույնանում են՝ **ի նմա, ի նմանէ**: Ձայնավորի առաջ -ի պետք է հանդես գար իր հին ձևով *ին արքայէ: Բայց երևում է, որ ն-ի անկումը շատ ավելի վաղ է տեղի ունեցել. և միմիայն անկումից հետո է առաջ եկել բա-ց[առական] և տր[ական] հոլովները **ի**-ով արտահայտելու եղանակը: Վաղակորույս ն-ի հետքը մնացել է մի քանի բառերում՝ **ն-այել (= հայել), ն-ստել, ն-եցուկ (յենուլ)**, ն-պաստ (= *ni + upasta*).

Սկզբում -**ի** հավասար գործածություն է ունեցել թե՛ բաղաձայնի և թե՛ ձայնավորի առաջ՝ **ի բանէ, ի արքայէ**: Վերև բացատրած հնչական օրենքի (*hiatus*) հիմամբ **ի արքայէ** պետք է արտասանվեր **ի յարքայէ**, **iyarkaye*, ինչպես **մի-յ-ակ**: Այնուհետև -ի սղվելով անհետանում է՝ **ըյարքայէ** = **յարքայէ**[1] (հմմտ. ուղղեակ = ըղղեակ = ղեակ = ղեկ):

Բառավերջի -յ զանազան ծագում ունի. որոշ բառերում ստուգաբանական հիմք ունի և մի ժամանակ հնչվելիս է եղել. և կան դիպվածներ, ուր յ-ի ներկայությունը լոկ հետևության՝ անալոգեի արդյունք է:

Հոլովական -ոյ = *oy, ой* կազմիչը արիո-եվրոպական *-io* մասնիկն է. **մարդ, մարդոյո** = ար[իո]-եւր[ոպական] *marta, marto-io*. Հայերենում էլ մի

[1] Այլ կերպ է բացատրում պ. Ն. Մառ, տե՛ս "Грамматика древнеармянского языка", СПб., 1903, § 325.



ժամանակ եղել է **մարդո՛յո**. շեշտի տակ վերջի թույլ -**ո** ընկել է և մնացել է **մարդոյ** = **martoy, МАРТОЙ:* Նման երևույթ նկատվում է և ռուսերենում. գործիականի *-ою́* վերջավորությունն այժմ կրճատվում է *-ой -вода, водою* (*=водо-й + у*) *=водой* վերջին *у*-ի անկմամբ:

Անձայն չէր -յ մի ժամանակ նաև բայերի երրորդ դեմքում.
գամ, գա-յ = *gay, *gayi* = արիո-եվր[ոպական] **ga-ti*.
բերեմ, բերէ = *բերե-յ = *բերե-յի = ար[իո]-եվր[ոպական] *bara-ti*.

Սույն արիո-եվրոպական *-ti* մասնիկն է, որ -յ է դարձել **բայ** բառում: **Բայ** նշանակում է խոսք, նույն արմատից է ինչ որ **բան**, տարբեր ածանցներով կազմված. բայ = *ba-ti, φά-τι*.
բան = *ba-ni, ба-с-нъ*.

Միավանկ բառերում -յ մինչև այժմ էլ պահել է իր կիսաձայնը. **հայ, բայ, վայ**: Հնագույն հայերենում, ինչպես նկատեցինք վերև, շեշտը վերջընթեր վանկի վրա էր: Երբ վերջից մի վանկ զեղչվում էր, շեշտը մի վանկ ետ էր գնում: Նախ *մարդո՛յո էր, ապա ո-ի անկումից հետո **մա՛րդոյ**, և ո՛չ թե **մարդո՛յ**: Շեշտի հեռանալով պակասում է յ-ի ձայնը և կամաց-կամաց վերանում: Իսկ միավանկ բառերում, որովհետև շեշտը փոխելու տեղ չուներ, ուստի յ-ի ձայնը մնում է անկորուստ: Ճիշտ է, միավանկ բայերի երրորդ դեմքում -յ խուլ է, բայց այդ հետևանք է անալոգեի. **խաղամ, խաղաս, խաղայ**. **երթամ, երթաս, երթայ** ձևերին ականջը սովորում է և նույն հետևությամբ արտասանում ենք տայ, գայ փոխ. հին **tay, *gay*.

Կրկնում ենք, որ անալոգեն լեզվի փոփոխության և զարգացման մեջ մեծ գործոն է: Նրանով է բացատրվում լեզվական շատ տարօրինակ երևույթներ: Մեր նախնիք բառավերջում -յ գրել են հաճախ բոլորովին անտեղի: Կան մի շարք բառեր, որոնք վերցրած են ասորերենից: Ասորի լեզվում նրանք վերջանում են ա-ով, իսկ մերոնք գրել են -այ.

| | |
|---|---|
| քահանա-յ = *kahna* | կաթսա-յ = *qadsa* |
| աբեղա-յ = *avila* | շուկա-յ = *shuka* |
| սատանա-յ = *satana* | ամիրա-յ = *amira* |
| լումա-յ = *luma* | շղթա-յ = *she-shalta* |
| | փիլիսոփա-յ = *filosofa*, որ թեև հունարեն |

բառ է, բայց հայերն առել են ասորերենից: Այս և նման բառերում -յ երբեք չի արտասանվել, բայց գրվել է միմիայն ուրիշ հայերեն բառերի հետևությամբ. ինչպես՝ **ծառայ, ընծայ, երեխայ** և այլն: Բուն հայ բառերում -յ ձայնը մնացորդ է արիո-եվրոպական որևէ մասնիկի, օր. *-ti* ածանցի, ինչպես վերև առիթ ունեցանք տեսնելու: Եթե **ծառայ, երեխայ** և նման բառերում -յ նույն ծագումն ունի, այսինքն, եթե սրանք իրոք հայ բառեր են և ո՛չ փոխա-

ռություն, վաղ ժամանակ -յ հնչվելիս է եղել: Հիշած ասորի բառերի փոխառության ժամանակ վերջադիր -յ այլևս չէր լսվում, խլացել էր և քարացած մնում էր լոկ գրության մեջ:

Իսկ ինչո՞ւ խուլ -յ դեն չէին ձգում և պահում էին նրա գրավոր կենդանությունը: Պատճառն այն էր, որ յ-ի ձայնը երևան էր գալիս և որոշակի լսվում շեղ հոլովներում և բարդության մեջ. **ծառա**, բայց **ծառայ-ի**, **ի ծառայ-է**, **ծառայ-ից**, **ծառայ-ական**: Այստեղ -յ և՛ ստուգաբանական հիմ ունի և՛ զուտ հնչական: Այս հանգամանքը միշտ կենդանի է պահել յ-ի հիշողությունը և ուղղական հոլովում: Անկախ ստուգաբանությունից՝ -յ պիտի հնչվեր շեղ հոլովներում և hiatus -ի հիմամբ: **Տղայ** գրեին, թե **տղա** միևնույն է, սեռ[ական] -**ա** և -**ի** իրար մոտ գալուս՝ տղա-ի ներս պիտի մտներ -յ շփման օրենքով: Ճիշտ այնպես, ինչպես այժմ գրում ենք **Ֆրանսիա**, **Ֆրանսիայ-ի**, **տղա**, **տղայի**, **Սաշա**, **Սաշայ-ի** և այլն:

Ուշադրության արժանի է, որ մակբայները՝ **այդ**, **ահա**, բայերի հրամայական եղանակները՝ **կեցո՛**, **ապրեցո՛** և դերանունները՝ **սորա**, **սմա**, զերծ են մնացել յ-ի ծանրությունից: Պատճառը հասկանալի է: Սրանք իրենց բնությամբ անհեղլի են. չեն կարող ո՛չ հոլովական և ո՛չ որևէ ածանցական բարդություն վերցնել, ուստի -**ո**, -**ա** մնացել են առանց յ-ի: Եթե **այդ** ունենար և գոյականի իմաստ ու կարելի լիներ հոլովել **այդ**, **այդ**-ի, աներկրա կգրվեր **այդ**-յ:

Հնում եղել են լուրջ փորձեր հապավելու անձայն յ-երը: Ձեռագրերում հաճախ պատահում են գրություններ առանց յ-ի: Լազարյան ճեմարանի Ավետարանում, որ մեզ հասած գրչագրերից ամենահինն է, գրված IX դարում, յ-ի զեղչը սովորական է - **սատանա**, **որդւո**, **պիտո**, **գո**, **միո**, **ձորձո**, **ողորմեցա**, **հաճեցա**, **ատեա**, **երկեա**, **արտաքո** և այլն:

Ուշագրավ են անալոգեի տեսակետից -**եայ**, -**ւայ** մասնիկները, որոնք լայն գործածություն ունին մեր լեզվում: Այս ածանցները, ուր -յ նշանակ է ընկած բաղաձայնի, հավանորեն լծորդ են -**եան**, -**ւան** գրեթե նույնանիշ մասնիկների հետ: **Պաշտօնեա-յ**, **ոսկեա-յ** և **բուրեա-ն**, **գունեա-ն** կազմությամբ նույն են: Այժմ էլ ասում ենք **տարւա-ն** և **տարւա-յ**, **ձմեռւա-ն**, և **ձմեռւա-յ**, **ժամանակւա-ն** և **ժամանակւա-յ**: Նախագրաբարյան հայ լեզուն առանձին հակում ուներ դեպի նոյավորումը (***nasalisation***):

ձեռ-ն = հին *ձեռ, ձեռ-ք. ձեր-բ-ակալ, ըն-ձեռ-ել, *χείρ*

ոտ-ն = *ոտ, ոտ-ք, հետի-ոտ, *ποδ-ός*

դուռ-ն =*դուր, դուր-ք, դր-ացի. *θύρα*

աստղ-ն = *աստղ, *ἄκρ-ος*, ռուս. *ос-т-р-ый*

քիրտ-ն = *քիրտ = *քիտր = *ἱδρ-ώς*, ** suidro-*

Գրաբարում արդեն նկատվում է միտում թոթվելու վերջադիր -**ն**: Կան



բառեր, որոնց շեղ հոլովներից երևում է, որ մի ժամանակ ուղղականում եղել է -**ն**.

խլուրդ, *խլուրդ-ն, խլրդա-ն

մանուկ, *մանուկ-ն, մանկա-ն

աղջիկ, *աղջիկ-ն, աղջկա-ն

սեր-ել, սեր-մն, սերմ-եմ. (-մն, -ման = արիո-եվր[ոպական] - *men*. հմմտ. ռուս. *пла-мень*, *пал-ить*, *пе-пелъ*).

ջեր, ջերոց, ջեր-մն, ջերմ, ջերմ-եմ

կող, կող-մն, և կողմ, կողմնակալ և այլն[1]:

Աշխարհաբարում ն-ի հապավումը գրեթե ընդհանուր երևույթ է. **սերմն**, **սերմ**. **դուռ-ն**, **դուռ**. **կուռ-ն**, **կուռ**. **նուռ-ն**, **նուռ**. **տաս-ն**, **տաս**. **եզ-ն**, **եզ**. **աւերում-ն**, **աւերում**. **կործանումն**, **կործանում**. ընկնում է նաև դիմորոշ -**ն** հոդը բաղաձայնով սկսվող բառից առաջ. մարդ-ն ասաց, բայց մարդը-բարկացաւ:

Այս երևույթի հանդեպ՝ չենք սխալվի, եթե ընդունենք, որ -**եայ**, -**ւայ** ածանցները առաջ են եկել -**եան**, -**ւան** մասնիկներից ն-ի հապավումով:

| | | |
|---|---|---|
| *պաշտօն-եայ* | *գոյն, գուն-եա-ն* | *մայրենի, *մայր-եան-ի* |
| *քրիստոն-եայ* | *բոյր, բուր-եա-ն* | *հայրենի, *հայր-եան-ի* |
| *գործուն-եայ* | *աջակողմ-եան* | *վայրենի, *վայր-եան-ի* |
| *հրաչ-եայ* | *Սամիկոն-եա-ն* | *տանձենի, *տանձ-եան-ի* |
| *հնօր-եայ* | | *լրբենի, *լիրբ-եան-ի* |
| *մաշկեղէն, *մաշկ-եղ-եան* | | *խոտեղէն, *խոտ-եղ-եան* |
| *ոսկեղէն, *ոսկ-եղ-եան* | | *նկարէն, *նկար-եան* և այլն: |

Այս զուգադրությունից հետևում է, որ -եայ ածանցի -յ բոլորովին ավելորդ է. իսկապես պետք էր գրել՝ **պաշտօն-եա**, **հրաչ-եա**: Շեղ հոլովներում երևում է -յ մեզ ծանոթ շփման օրենքովն՝ ***պաշտօն-եա-յի**. -**եա** սղվում է -**ե**, նման՝ **ցոր-եա-ն**, **ցոր-են-ի**, իսկ ե+ յ = է: Այսպես ստացվում է **պաշտօն-է-ի** ձևը:

Ուղղականի -յ բացատրելու է շեղ հոլովների ազդեցությամբ: Կարելի է և ուրիշ կերպ բացատրել: Հնարավոր է, որ ն-ի անկումից հետո -յ հնչվելիս է եղել մի ժամանակ: Բոլոր հավանական մեկնությունների քննությունը հեռու կտաներ: Աշխարհաբարի նկատմամբ համենայն դեպս տարակույս չի կարող լինել, որ -**եայ**, -**ւայ** ածանցներն առանց -յ են: Հիրավի, -յ երևան չի գալիս մինչև անգամ այն դիրքում, ուր նա պիտի պահեր իր ձայնը մեր լեզվի հնչական օրենքով՝ **քրիստոնեա-յ**, **քրիստոնեա**-ներ, և ոչ **քրիստոնեա-յ**-ներ(= *яйнеръ*). **պաշտօնեա-յ**, **պաշտօնեա-յ**-ներ և այլն:

[1] Տե՛ս նաև Н. Марр, Грамматика древнеармянского языка, § 101.

Աշխարհաբարում -ն անհետանում է և ուրիշ դեպքերում. մեր նոր լեզուն հակում ունի ընդհանրապես նետելու վերջին քաղաձայնները: Եթե քաղաձայնի կորուստով՝ բառի վերջը մնում է -ա, կամ ուրիշ ձայնավոր, սովորություն է դարձել կցել -յ անձայն տառը.

**գրաբար**. *աղջիկ, աղջկա-ն* *մուկն, մկան*
**աշխարհ**. *աղջիկ, աղջկա-յ* *մուկն, մկա-ն, և մկա-յ*, **նման**՝
*ձմեռ, ձմեռա-ն, ձմեռա-յ*
*տարի, տարւա-ն, տարւա-յ*.

**նաև**՝ *առաջին, առաջի, վերի-ն, վերի. ներքի-ն, ներքի* և այլն:

**ապառնի**. *կը գամ, կը գաս, կը գայ*

**բաց. ապառնի**. *չեմ գալ, չես գալ, չի գալ:* Աշխարհաբարում նկատվում է միտում կրճատելու վերջին -լ, **չեմ գա, չես գա, չի գա:**

Հաստատ է, որ կրճատվողը -լ է, այսինքն՝ որ ապառնին կազմվում է աներևույթ եղանակի միջոցով: Քանի որ **չեմ** դիմորոշ բայը կա, մյուս բայը միայն աներևույթ եղանակ կարող է լինել: **Չեմ գալ** դարձվածքի միջնադարյան ձևն է՝ **չեմ ի գալ:** Այս -**ի** մնացել է արևմտյան հայոց մի քանի բառերում. **չեմ ի տար, չեմ ի գար**, փոխ. **չեմ ի տալ, չեմ ի գալ:** Լեզվաբանական հիմք չկա հիշած դեպքերում -յ գրել. այդ միևնույն է, թե -յ գրենք **համա, քե, քո** և նման ձևերում, որ կրճատումն են **համար, քեզ, քող** բառերի:

Եթե մի հնչյուն կա, որ չի սիրում աշխարհաբարը, այդ -յ է: Նոր յ-երով բեռնել լեզուն այն ժամանակ, երբ նա ճգնում է թոթափել հների ծանրությունը, նշանակում է բռնություն գործ դնել լեզվի վրա. -յ տառի և հնչյունի պատմական կյանքը խիստ հրահանգիչ է և կարևոր նոր գրական լեզվի այսուհետևյան զարգացման համար:

Միջադիր յ-երը, իբրև երկբարբառների բաղկարար մաս, վերանում են աշխարհաբարում. երկբարբառները սղվելով տեղի են տալիս պարզ ձայնավորների. **այ = է, ոյ = ու.**

| | | |
|---|---|---|
| *հայր = հէր* | *լոյս = լուս* | *ձի, ձիոյ = ձի, ձիու* |
| *կայծակ = կէծակ* | *բոյն = բուն* | *գին-ի, գինւ-ոյ = գինի, գի-նու* |
| *սայլ = սէլ* | *ոյժ = ուժ* | *մարդ, մարդոյ = մարդ, մարդու* |
| *ծայր = ծէր* | *սովորոյթ = սովորութ-ք* | *ժողովածոյ = ժողովածու.* |
| *եկայք - եկէք* | | |

Վերջադիր -յ նույնպես անհետանում է. *ծառայ, ծառա, ծառա-ներ, փեսայ, փեսա, փեսա-ներ, շղթա, հսկա, քահանա* և այլն:

Այսպես մեր լեզվի էվոլյուցը բերել և տանում է դեպի երկբարբառների և նրանց հետ յ-երի հապավումն ու կորուստը: Նոր գրական լեզուն պետք է ընդունի այս հնչական օրենքը, եթե ուզում ենք, որ կենդանի հիմքերի վրա հաստատվի: Պիտի գրել՝ ուժ, բուն, երևութ, ողջուն, խսկուն, և ոչ ոյժ, բոյն և



այլն: Եթե գրաբարից բառեր ենք վերցնում, որոնք ժողովրդի բերանում կենդանի չեն մնացել, և այս պատճառով չեն ենթարկվել լեզվական էվոլյուցի, պարտավոր ենք համաձայնեցնել նոր լեզվի ոգուն. ասելու և գրելու է **ձանձրութ** և **ոչ ձանձրոյթ. բնութ, երեկութ, ցայգութ** և այլն: Այս փոփոխությունը գրեթե ընդհանուր երևույթ է մեր բոլոր բարբառներում, ուստի կարող է և պետք է օրենք համարվի նոր գրական լեզվի համար:

-Այ երկբարբառի կորուստը նույնպես ընդհանուր երևույթ է. արևելյան բարբառներում նրան փոխարինում է -**է** հնչյունը, իսկ արևմտյան՝ -**ա: Հայր, հէր, հար. ծայր, ծէր, ծար**: Լեզվի միությունը պահպանելու համար դեռևս ներելի է գործ ածել հին ընդհանուր ձևը: Այս արդեն քաղաքական, ազգային հայեցողություն է, որ կապ չունի գիտության հետ:

Միջադիր ւ-ի խնդիրն ուղղագրական դժվարություն չի հարուցանում. **երևոյթ** և **երևութ** տարբեր ձևեր են, մեկը հին, մյուսը՝ նոր և տարբեր էլ գրություն ունին: Այլ է վերջադիր -յ: Արտասանության և գրության մեջ բացվել է մի անջրպետ, որից երբեմն հակասերական ընդհարումներ են առաջանում: Պահանջվում է անհրաժեշտորեն յ-ի զեղջը: **Ծառայ, ծառաներ** և **ո՛չ ծառայ**-ներ, ինչպես պոլսեցիք են գրում, եղծելով ընթերցանության կանոնը: Աշխարհաբարը ոչ միայն յ-ն է հապավում, այլև նկրտում է վերջին -**ա** ևս կրճատել. ժողովուրդը հոլովում է՝ **փեսա, փեսի**, փոխ. **փեսա-յ-ի, ծառա, ծառ-ի, քահանա, քահան-ի, աղա, աղ-ի** և այլն:

* * *

Մեր խորհրդածություններն առաջնորդում են դեպի հետևյալ հաստատությունները՝

*ա*. -վ գրել միմիայն բառերի սկիզբը, նույն բառերից կազմված բարդության մեջ, և ո-ից հետո. **վարել, զօրա-վար, հովասուն**:

*բ*. մնացած բոլոր դիպվածներում գրել -ւ:

*գ*. խուլ յ-երը հապավել:

Այս եղածները համարելու է գիտական, որովհետև նախ՝ հենվում են պատմական և հնչական վարկածների (соображение) վրա և երկրորդ՝ չեն խանգարում այն միօրինակությունը, որ ցանկալի և անհրաժեշտ է պահել գրության եղանակի մեջ: Ընդհակառակը, այս ուղղագրությամբ չեզոքանում են հայտնի ուղղագրական անհեթեթություններ, որոնք ծագում են լեզվի նոր քերական և հոլովական կազմի շնորհիվ: Մեր առաջարկը պատմական է այն մտքով, որ խորթ նորամուծություն չէ. նման փորձեր տեղի են ունեցել մեր լեզվի պատմության մեջ, և մեր նախնիքների ձեռքով: Հետագա դարերում այս թե այն պատճառով մեր հայրերը գերադասել են ուրիշ ուղղագրական սիստեմ: Հավասար իրավունքով մենք էլ կարող ենք այժմ

ընդունել այն, ինչ որ մեզ ավելի հարմար է և պիտանի, և որը միաժամանակ և նո՛ր է և հին: Հնչական սկզբունքի արժեքը շատերն ուրանում են, մատնանիշ են անում ֆրանս և անգլիական լեզուները, ուր գրության և արտասանության միջև, իրոք, մեծ վիհ կա: Այս էին շշնջում մեր հեղինակավոր ուսուցիչները, երբ երևացին պ. Ղ. Աղայանի ուղղագրական հոդվածները (3): Ամեն մի երևույթ նախ ինքն իրեն գոյություն ունի. համեմատության համար բավական չէ, որ նյութը միևնույն կարգի լինի, անհրաժեշտ է, որ ընթացիկ պայմաններն էլ նման լինեն: Հայերենի և եվրոպական որևէ լեզվի իրական բախտի և ուժի մեջ ոչինչ նմանություն չկա: Տեսականորեն թե ֆրանս և թե անգլիական լեզուների համար ուղղագրական վերանորոգությունը ցանկալի է համարվում, նույնիսկ մեծ ջանք ու ճիգ է գործ դրվում: Բայց դժվար է իրագործելը, գրեթե անհնարին: Նրանք լեզուներ են բառի շիտակ մտքով և շրջում են միլիոնավոր բերաններում և միլիոնավոր հատորներում: Մարդիկ սովորում են այդ լեզուները մանկական օրորանից և ընտելանում են գրության երեխայությունից: Լեզուն ուժ է, շարժուն ուժ, նրանով ապրում են. լեզուն և գիրը ձուլված են նրանց էության հետ: Փոփոխություն անելու համար հարկավոր է, որ ավագ սերունդը զիջանի կրտսերին. հրաժարվել գրից նշանակում է ձեռք քաշել սեփական տեսողությունից, կամ ուրիշի աչքերով նայել: Էլ չասած որ դժվար է նշել, որտեղ է վերջանում հին սերունդը և սկսվում նորը: Կյանքն այնպիսի սերտ օրգանական ամբողջությամբ է ընթանում, որ հաջորդական մասերը միմյանց հետ շղթայված մի միություն են կազմում:

Կան նաև քաղաքական և հասարակական հիմքեր, որոնք դժվարացնում են ուղղագրական նոր փորձերը եվրոպական լեզուների մեջ, ինչպես առևտրական, արդյունաբերական թղթեր և դաշնագրական վավերագրեր, իրավաբանական պայմաններ, որոնց մեջ նույնիսկ տառի փոփոխությունը կարող է մեծ դաշտ բաց անել տեսակ տեսակ անախորժ թյուրիմացությունների: Այլ է, եթե մի մոգական հրամանով կանգ առներ ամբողջ կյանքը և հեղափոխեր մարդկանց գրագիտական ուսմունքը: Բայց այն օրից, երբ գիրը մտնում է կյանքի մեջ իբրև տնտեսական գործոն, հրամանները ու հրահանգները կորցնում են իրենց թովչությունը: Հնարավո՞ր է միթե կանգնեցնել հորդահոս և ահեղագոչ գետը, որի հզոր հորձանքների առաջ խորտակվում է ամեն մի խոչընդոտ: Եվրոպական լեզուները հորձանուտ գետեր են, որոնց կոհակները ամբողջ թափով թավալում են կյանքի անկյուններում, բորսայից մինչև գեղջուկի հյուղը և ստիպում են մարդկանց խոնարհել գլխիկոր:

Իսկ ի՞նչ է մեր լեզվի վիճակը: Մի խեղճ առվակ, որի հունը լի է թփերով և մացառներով. հազիվ զորում է գաղտագողի, մանվածապատ պտույտներով



մի կերպ ճամփա հորդել ճիչ ու աղաղակով: Զուրկ պետական և տնտեսական մղանի նշանակությունից՝ տկար է, խիստ տկար և մարդկանց հանդիման նույնն է, ինչ որ թույլ ջրի կաթիլները խրոխտ ժայռերի առաջ՝ հարազատ ափերի ժայռեր, որոնք նույնչափ ավելի սառն են, որքան ավելի բարձր: Ուրիշ լեզուները հարկադրում են գլուխ թեքել, դժվարություններ հաղթել և սովորել: Մերին կարևորություն տվող չկա. եթե ոգևորության ռոպեին, մի քանի ամսվա զբաղմունքով սովորել կարելի եղավ՝ լավ. թե չէ, թողնում են տրտունջով, «ինչ անեն, մեղավորը լեզուն է, դժվար է». մոռանում են թեթևորեն, որ տասնյակ տարիներ են հարկավոր եղել ուրիշ լեզու՝ էն էլ մի կերպ՝ սովորելու համար:

Այսպիսի պայմաններում լեզվին իրեն է մնում, գոնե իր գոյությունը պահպանելու համար, հարմարվել մարդկանց, դյուրություններ ընծայել, հեշտացնել գրագիտությունը: Ու-երի սղումը և յ-երի հապավումը մեծ թեթևություն է, որովհետև լեզուն մոտեցնում է հնչականին: Դյուրին է և իրագործելը. ունենք չունենք մի քանի հազար մարդ, որ կարդում են, և մի քանի հարյուր պարոններ, որոնք և գրքեր են թերթում և գրիչ են շարժում: Գրականությունը համարյա գլխովին կենտրոնացած է մի քանի տասնյակ պարբերական թերթերի մեջ. նրանց ղեկավարների հաճությունն ու ցանկությունը բավական է, որ խնդիրն ըղձալի վճիռն ու գործադրությունը ստանա:

Չնայելով ձախորդ հանգամանքներին, մեր մանուկ գրականությունը դարձյալ համեմատաբար առաջ է գնում, զարգանում է և ծավալվում: Պետք չէ մոռանալ, որ որքան մեծ ծավալ ստանա գրագիտությունը, այնքան դժվար կլինի ուղղագրական փոփոխություններ ներմուծել: Քանի վաղ է, պետք է անել ինչ որ կարող ենք անել, որպեսզի մոտիկ ապագայում չզղջանք, թե ինչո՞ւ անցյալի պարտքը անցյալին չտվինք:

* * *

Ուրախությամբ արձանագրում ենք, որ անձայն յ-ի հապավման մասին խոսել է դեռևս 1896 թ. Ս. Էջմիածնի հայագետ միաբան Գ. Տեր-Մկրտչյանը: Ներկա գրությունս գրեթե ուրվագծած էր, երբ հանդիպեցինք նրա հետևյալ տողերին[1]. «հայտնի է բանասերներին այն մեծ տարբերությունը, որ կա հին հիշատակարաններում -յ և -ե -է տառերի գործածության մեջ: Մեր երկու ձեռագիրն էլ շատ նշանավոր են իրենց որոշ և կանոնավոր ուղղագրությամբ... բառերի վերջում չհնչվող -յ տառը բնավ չէ գրվում. օրինակ՝

[1] Գ. Տեր-Մկրտչյան, Հիշատակ դատակնքաց Գորիա և Շմոնի վկայից, Վաղարշապատ, 1896, էջ 33-34, և 38-39:

ծառա, քահանա, ի վերա, արքա, նաև հոլովական և բայական ձևերում: Չէ գրվում նաև բառերի մեջտեղում, երբ յ տառը երկու ձայնավորի մեջ լոկ ձայնական կապի պաշտոն է կատարում. օրինակ՝ արքաութիւն, ի ծառաէ, հրամաեցին և այլն: Հին ընտիր ձեռագրներից շատերն են ինձ հայտնի այսպիսի որոշ և կանոնավոր ուղղագրությամբ: Նույն ուղղագրությունը պահպանված է հնագույն արձանագրությանց մեջ (քարերի վրա) շատ կամ սակավ միօրինակությամբ... Շեշտելով այս կետի վրա, որ ուշագրավ է միայն բանասիրական տեսակետից, ավելացնենք և այն, որ չհնչվող -յ տառի հապավումը բառերի վերջում կարող է ունենալ և գործնական նշանակություն: Մեր կարծիքով շատ նպատակահարմար կլիներ աշխարհաբարի մեջ ընդունել այս ուղղագրությունը, գրելով «ծառա, քահանա, Վանա ծով» և այլն, ինչպես որ գրում ենք «ահա, նա, նրա, Աննա, Եվրոպա, ասա՛, գնա՛» և այլն: Այսպիսով կունենանք մի դյուրին և հաստատուն կանոն: Իսկ դյուրությունը, որ շփոթություններ չէ ծագեցնում, շատ և շատ գնահատելի բան է, մանավանդ մեր հանգամանքներում եղող ժողովրդյան համար, որ օրից օր ավելի զրկվում է յուր մայրենի լեզուն սովորելու հնարավորությունից և միջոցներից: Նամանավանդ որ այսպիսով մենք վերականգնած կլինինք ավելի հինը, այս վերջին փաստը պահպանողականների համար է, և որևէ նորմուծություն արած չենք լինի»:

Եթե հարկ կա այս խնդրում խոսել պահպանողականության մասին, հիշելու է ամենից առաջ արևմտյան գրականներին: Պ[արոն] Աղայանի շնորհիվ հյունի գործածությունը այնքան ընդհանրացած է մեզանում, որ նոր նեցուկի կարիք չունի: Արևմտյաններն են, որ խիստ զգուշանում են այդ նորաձևությունից: Նրանք չեն կարող գանգատվել, որ իրենց բարբառին չի հարմարվում նոր ուղղագրությունը: Երիտասարդ գրողներից մինը՝ պ. Շանթ, որ լեզվով և ծագումով արևմտյան է, բայց կրթությամբ՝ արևելյան, գրում է -ւ առանց որևէ դժվարության: Իսկ այս համարում զետեղված «Ես-ի մարդը» դրաման (4) գրված է յ-երի հապավումով, հեղինակի սեփական նախաձեռնությամբ: Շանթի այս գրությունն է նաև ներկա տողերիս մերձավոր առիթը:

«Բանբեր»-ի ամբողջ համարը ցույց է տալիս, որ ոչ մի փաստացի անհարիր բան չկա նոր ուղղագրության գործադրության մեջ:

Քանի որ տեսական և գործնական արգելառիթ հանգամանքներ չկան, մնում է ցանկալ, որ մեր գրականության եռանդավորները լրջորեն վերաբերվին ընդգծածս խնդիրներին, դյուրացնելու մայրենի լեզվի ուսուցումը և բարգավաճումը:



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ - Հ. ՏԵՐ-ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, ՆՈՐ ԲԱՌԳԻՐՔ ՀԱՅԵՐԵՆ ԳՐԱԲԱՐԵ՝ ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԼԵԶՎԻ, ՌՈՒՍԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ: ՌՈՍՏՈՎ, 1898, 575 էջ

Հ. Տեր-Աբրահամյան և բառգիրք՝ այնպիսի անհարիր գաղափարներ են, որ հենց սկզբից մարդ կանխակալ կարծիքով և կասկածանքով է մոտենում գրքին, որի տարօրինակ վերնագրից չի էլ հասկացվում, ինչ բառգիրք է իսկապես, - գրաբարից-աշխարհաբար և ռուսերեն իբրև օժանդակ, պարզաբանող, թե գրաբարի՛ց ռուսերեն: Հեղինակ քանի մի անգույն գրությունների (1), երբեմն հրատարակիչ նույնպիսի անգույն՝ ռուս մի թերթի, անձն՝ որ զուրկ է որևէ լեզվագիտական պատրաստությունից, հարկավ անկարող է լրջորեն այնպիսի մի ծանր գործ կատարել, որպիսին է բառարան կազմելը:

Խիստ անհամեստ և անձնապաստան պիտի լինի մարդ, որ «հոժարակամ սիրով ձեռք զարկի այդպիսի աշխատության» (բառգրքի առաջաբան): Իսկ հանդգնության ձեռնարկներից գլուխ հանելու միջոցներ այնքան մաքուր չեն լինում սովորաբար...:

Առաջին թեթև ակնարկը, անցողակի թերթումը համոզում է, որ աշխատությունն այն բառգիրքների դասից չէ, որոնցից հեղինակը օգուտ է քաղել, մինչև իսկ նոցանից ամենավատթարից: Գ. Երեցփոխյանի «Ռուսերեն-հայերեն բառգրքի» (2) արժեքը չունի, այլ նման «Գրպանի» կոչված բառգրքերի, հարկավ, ոչ բառերի քանակով և դիրքով՝ այլ նոցա բացատրությանց որակով: Ոճերի և դարձվածների կատարյալ ամայություն, էական և երկրորդական իմաստները չեն զատվում միմյանցից (այնպես որ մետաղ-ք = մետաղ և աքսոր), բառերի բոլոր ըմբռնումները չեն նշանակվում, և դուրս է գալիս որ օր. խաղալ = է՝ խաղ ընել (= играть): Ոչ միայն հոմանիշ այլ և քիչ թե շատ մերձավոր իմաստ ունեցող բառերը նույն խոսքերով են բացատրվում՝ (խանդ = чувствительность, горячность, զորով = горячность, чувствительность), չեն նշանակվում բառգրքերում ընդունված քերականական տեղեկություններ, հոլովմունք, բայերի սեռը, որից կախված է խնդրառությունը և այլն: Ընդհանրապես բառերը շատ չեն ծանրաբեռնվում. ամեն մեկն իր հաշիվը վերջացնում է սովորաբար երկսյուն գրության մի տողում երբեմն երկու, հազվագյուտ ավելի:

Ամեն մի երևույթի, ինչպես և գրական երկերի արժեքը որոշելու համար զանազան չափոններ (criterium) կարելի է ընծայել: Այն հայացք ունինք, որ նոր երևույթները, պետք է չափել ամենից առաջ պատմական չափով, այսինքն՝ պարզել, թե նոր գրական վաստակը որպիսի տեղ է բռնում

իրանման երկերի պատմության մեջ. ինչ առավելություններ ունի իր նախորդներից կամ ի՞նչ թերություններ, և ի հարկե, միշտ իրավունք կա պահանջելու, որ ամեն մի նոր երևույթ անպատճառ մի բան ավելի տա, քան նախորդը, կամ լավ լինի նորանից: Այս դեպ պայմանով միայն նա **բարոյական** իրավունք ունի հանդես գալու, այլապես նա գրականության համար անմաքուր վիժունք է, իսկ հեղինակի նկատմամբ կա՛մ տգիտության, կա՛մ շահասիրության արդյունք: Այսպես բնական էր ցանկությունս համեմատելու «Նոր բառգիրքը» իր նախորդների հետ՝ գրաբար-աշխարհաբար առձեռն բառգրքի (Վենետիկի Մխիթարյանց) (3) և Խուդաբաշյանի 1838 թվականի երկու հատոր գրաբար-ռուսերեն բառգրքի հետ (4): Համեմատությունս խիստ նպաստավոր չեղավ Նոր բառգրքի համար: Որպեսզի ընթերցողներին լավ գաղափար տված լինինք, թե ի՞նչ առնչություն կա Նոր բառգրքի և այդ երկու հին բառգրքերի մեջ՝ հառաջ ենք բերում մի էջ պ. [Տեր-] Աբրահամյանի բառգրքից, կցելով նորան Առձեռնի և Խուդաբաշյանի համեմատությունը: Այս կլինի մի նմուշ, որ ոչ թե ընտրությամբ վերցրած է բառգրքից, այլ բոլորովին պատահաբար, և հենց իբրև այդպիսին շատ լավ վկայում է բառգրքի կցկցանք լինելը:

## Գ [տառը]

**Առաջ ենք բերում գ տառը. փակագիծը նշանակում է այն բառերը, որոնք չկան բառգրքում:**

| | |
|---|---|
| Գ (գիմ)<br>(Գար.)<br>Գարեղէն., տ. բաղէն.<br>(Նոյն Առձ.) | третья буква армян. азбуки, согласная (Խուդ. նույն)<br>չկայ եւ Խուդ. |
| (Գարծիլ.) | |
| Գագաթն. (գագաթ, մարդու եւ լեռներու). Առձ.<br>1. Գագաթ մարդու եւ լերանց. 2. Գըլխուն վերի ոսկորը. 3. Բոլոր գլուխը կարած, տեղի գագաթան, գողգոթա, գլուխ զարնելու տեղ. | с. черепъ головной, вершина горы, скалы, башни. Խուդ. верьхъ, вершина, (маковка) горы, скалы, башни, головы и пр. черепъ головной, голова, край, конецъ. |
| (Գագաթնադաշ.)<br>Գագաթնակէտ. (հորիզոնական (?!) կէտ.)<br>(Առձ. չկայ) | с. зенитъ, надглавная точка на небѣ<br>Խուդ. зенитъ, надглавная точка на небѣ |



| | |
|---|---|
| Գագաթնահայեաց. (ուղղահայեաց դէպ ի հորիզոն ?!)<br>(Առձ. չկայ.) (sic) | пр. и нар. вертикальный перпендикулярно, вертикально.<br>Խուդ. пр. неск. и нар. вертикальный надглавный прямо надъголовою, вертикально, перпендикулярно. |
| Գագաթնամաշկ. (գագաթը ծածկող մաշկ.). Առձ. չ.<br>(Գագաթնանամ.)<br>(Գագաթնաւոր). Խուդ. չ. (sic) | с. плева, покрывающая черепъ, черепная кожица.<br>Խուդ. с. анат. плева, кожица, черепъ покрывающая. |
| Գագաշիլ. (ցնդածի պէս խօսիլ) Առձ. - եցեալ, խռֆիլ, ցնդիլ, ցնդածի պէս խօսիլ. | сумасбродничать, говорить безразсудно. Խուդ. տ. բանդագուշել. |
| Գագաշոտ. (ցնդած) Առձ. 1. ցնդած, 2. անպարկեշտ, ցոփ. | пр. разъянный (?!) Խուդ. չկ. (sic) |
| Գագացել. (կոկոալ) Առձ. Գոռոզանալ. նտ. տ. աքաղաղի գոռոզությամբ կրկռալը՝ | куковать! |
| Գաղիշ. (խոտի եւ ցորենի դէզ) Առձ. - դշի, գ. (խոտի եւ ցորենի դէզ) | с. снопъ. Խուդ. снопъ |
| Գազ. (կանգուն) (!) Առձ. 1. փուշի տեսակ, 2. մոշի ծառ. | с. аршинъ. Խուդ. трагаканѳъ, гуммический клевой сокъ. См. կանգուն. (կանգուն = локоть, мѣра, аршинъ). |
| Գաղջ. (գոլ) Առձ. Գաղճ, եղկ. | прохладный Խուդ. прохладный, тепловатый, нерадивый. |

այսպես և Գազախ, Գազախանամ, և այլն: Կամ շրջեցեք թերթերը և համեմատեք ուրիշ որևէ էջ, օրինակ՝ 399.

| | |
|---|---|
| Ժամանակեայ-եան. (ժամանակաւոր, անցաւոր) Առձ. 1. ժամանակաւոր, անցաւոր, 2. ժամանակի տակ մտած, 3. աս աշխարհքս. աս աշխարհքիս բաները. | пр. временный, переходящій? Խուդ. временный. преходящій, тлѣнный, |
| Ժամանակել (ժամանակ) որոշել, Առձ. 1. Ատեն դնել, ժամանակ որոշել, 2. ժամանակ անցնել. | г. опредѣлить назначить время. Խուդ. опредѣлить, назначить время, срокъ.. |
| Ժամանել, գալ, հասնել Առձ. 1. հասնիլ, 2. կանուխ շարժիլ, յառաջ հասնիլ, 3. ատեն գտնել. | г. достигнуть, прiѣхать Խուդ. достигнуть, дойти, доѣхать, добраться, прибыть, поспѣвать, созрѣвать. |

և այլն, և այլն, ավելորդ և ժամավաճառություն կլինեի շարունակել. միևնույն ուղղությամբ կազմված է ամբողջը. այսքանն էլ բավական պարզում է, թե ինչ կապ կա բառգրքի և իր նախորդների միջև:

Տեր-Աբրահամյան՝ երկու բառգիրքն առաջը դրած արտագրում է, ինչ-ինչ բառեր բաց թողնելով: Եվ ինչո՞ւ է բաց թողնում, օրինակ՝ գար, գարծիլ, գագաթնաղաշն, գագաթնանամ, գագաթնաւոր, և ուրիշները՝ որովհետև Խուդաբաշյանի մեջ չկան. իսկ Առձեռնի բացատրությունը անհասկանալի է մնացել, ինչպես օրինակ՝ գար = գարի տակն (?) idem per idem. գազ - առաջին նշանակությունը թողնում է, որովհետև թեև Խուդաբաշյանի մոտ կա. գազ = трагакантъ, բայց նոր բառգիրք կազմողը բան չէ գլուխ հանել միջից. (երկապես трагакантa = հուն. *τραγάκανθα* = այծեփուշ.) ինչ վերաբերում է երկրորդ նշանակության՝ հետևելով Խուդաբաշյանի, см. **կանգուն**. ցուցման՝ միամտաբար գազը նույնացնում է կանգունի հետ: Գազի դեմ աշխարհաբար դնում է կանգուն և ռուս. = аршинъ. Ո՞ր աշխարհաբարումն է գործածվում կանգուն բառը և այն գազի իմաստով, կամ մի՞թե գազ = արշինին:

Ստրկորեն հետևելով Խուդաբաշյանին, ընդօրինակում է և նրա անհեթեթությունները. **Գազը** թրքական հետսամուտ բառ է, որ այժմ էլ գործ է ածվում ժողովրդի մեջ և հավասար է $1^1/_2$ արշինին. մինչդեռ կանգուն = հուն. *πῆχυς* դասական անորոշ մի չափ է. ուրեմն բոլորովին անտեղի է որոշը անորոշի վերածել:

Նույնպիսի անտեղիությամբ գրում է դահեկան = դուրուշ տաճկական: Գագաշոտ = разсѣянный, ամեն разсѣянный գագաշոտ չէ. Գագացել = куковать-ի պետք է ավելացնել և փոխաբերական իմաստը՝ важничать. Գաղիշ, եթե դէզ է նշանակում, չէ կարող снопъ լինել: Ա՛յլ է խուրձ կամ որայ = снопъ; (ըստ Նոր բառգրքի = связка, кипа, свертокъ) ա՛յլ է տրցակ = связка, ա՛յլ է դէզ կամ բարդ = стогъ, скирдъ, скирда. յարդը, ցորենի կամ խոտը քաղելիս տրցակ են շինում, տրցակից խուրձ են կազմում. խրձից դէզ կամ բարդ. իսկ գաղիշ օտար բառ է և ունի բոլորի իմաստը և՛ տրցակ և՛ որայ և՛ դէզ:

Прохладный չի արտահայտում **գաղջի** իմաստը. նշանակում է ո՛չ ցուրտ ո՛չ տաք, ժողովրդական բառով՝ գոլ (օր. ջուր). որի ռուս. тепловатый, тепленькій. այստեղից է փոխաբերական իմաստը մեղկ, թույլ, որ անտես է արել պ. Տեր- Աբրահամյանը:

| | |
|---|---|
| Բարեգրոյց (խօսքը տեղը? Առձ. նույն). | Խուդ. չկայ. թարգմանում է խիստ ճապաղ. неимѣющій недостатка въ произношеніи словъ, доброрѣчивый, ясно выговаривающій. |

Ի՞նչ է նշանակում խոսքը տեղը. եթե ասենք, պ. Տեր-Աբրահամյան շահագործում է ուրիշների աշխատանքը՝ խոսքը տե՞ղը կլինի, ուրեմն **տաղը բարեգրույց**...



| | |
|---|---|
| Բարեխառնություն օդոց | добропорядочность? воздуха. փոխանակ умѣренный, благоумѣренный (5). |

Բարեխոսել (որևէ մարդու համար աղեկ խոսել)? = говорить о комъ либо хорошо. Բարեխոսել նշանակում է միջնորդել և Խուդաբաշյան բրգ. = ходатайствовать. պ. Տեր-Աբրահամյան փորձել է շեղվել իր օրինակից և անհաջող. այլ էջ՝

| | |
|---|---|
| Գլորել (Գլորտըկել (?) կործանել). Առձ. նույն | свернуть въ трубку, катить, (իսկ կործանելը?) |

Խուդաբաշյան вертѣть, катить, ворочать, провалить, свернуть въ трубку, հաջող ընտրություն չէ արած. катить ա՛յլ է գլորել, ա՛յլ գալարել, ուրիշ պատատել - փաթաթել, ոլորել-ոլորակել, որ պետք է որոշել միմյանցից: Գումարտակ (բազմություն) толпа .- նաւուց = սակավաթիվ (ինչո՞ւ) խումբ պատերազմական նավերու .- առնել՝ շատ մարդիկ մեկ տեղ ժողովել:

Մեկ տեղ սակավաթիվ, մյուս տեղ շատ. իրրև հետևանք կույր թարգմանության Խուդաբաշյանի нѣсколько кораблей или другихъ судовъ, подъ предводительствомъ одного начальника и собирать многихъ людей въ кучу. Առձեռն բառարան՝ - կալ և գումարտակ դնել, կազմել, սփռել նույն նշանակությամբ, որ պարոնը զանց է առնում, որովհետև Խուդաբաշյանի մեջ չկա. և ոճերը այնտեղից է ընդօրինակում: Այս ոգով է կազմված ամբողջ բառգիրքը, շրջում ենք թերթը՝ աչքի է ընկնում խելայ = (ընծայ, պարգեւ) даръ, подарокъ. ամեն պարգև խելայ չէ. խելայ արաբ. բառ է և նշանակում է զգեստ, այն՝ ինչ որ այժմ կոչվում է խալաթ. երբեմն պարգևատրության առարկա էր արաբական ամիրաների համար, ուստի և երկրորդաբար գործ է ածվում և նվերի իմաստով. ինչպես առաջ, նույնպես և այժմ: Խուդաբաշյանի բառգիրք՝ 1) զգեստ և 2) ընծա: Ի զուր աչքաթող է արել պարոնը: Դարձյալ շրջեցեք. ընձեռել = ссужать, давать; Խուդաբաշյանը՝ ссужать, давать; ավելորդաբանություն. բավ է միայն բառն. вручить, որ նույն կազմություն ունի և լիովին արտահայտում է նույն միտքը. ընտիր = избранный՝ գոհացուցիչ չէ. избранный բառի համար գրաբար **ընտրեալ** - իսկ **ընտիր** նշանակում է լավ, ազնիվ, և եթե նույնարմատ բառով հայտնենք միտքը ռուսերեն, ավելի շուտով պետք է դնել = отборный, կամ ավելացնել. **ընտրյալ** = избранный, ուրեմն ի՞նչ տարբերություն կա երկուսի մեջ:

Նույն և մյուս էջերում, օրինակ՝ 246 էջ. Աշխարհաբար մասում նույնպիսի ստրկական հետևություն, Առձեռն բառգրքին նույնպիսի կրճատումներ, իսկ ուր որ երևում են զեթ ակամայից անկախության նշույլներ, իսկույն հառնում են անհեթեթություններ:

Ընթերցողների ուշադրությունից անշուշտ չվրիպեց վերև բերած **գագաթնակէտ** և **գագաթնահայեաց** բառերի աշխարհաբար բացատրությունը: **Գագաթնակէտ** = հորիզոնական կէտ, **գագաթնահայեաց** = ուղղահայաց դէպի հորիզոն (!?): Պարոնը եթե բառգիրքը գիտակցությամբ է կազմել՝ նույնիսկ այնտեղից պիտի իմանար, որ հորիզոն է այն շրջանը, որով ըստ երևույթին երկինքը երկրեն կբաժանվի: Ուրեմն գագաթնակէտ = зенитъ ի՞նչպես կարող է նշանակել հորիզոնական կէտ. և ի՞նչ է նշանակում իսկապես հորիզոնական կէտ. հորիզոնական բառը աշխարհաբարում շատ որոշ իմաստ ունի, որով կետը չի կարող հորիզոնական լինել, իսկ եթե նշանակում է հորիզոնի վրա գտնվող կետ, էլ ո՞ւր մնաց զենիթը: Մյուս օրինակներից ընթերցողը տեսնում է, որ Առձեռն բառգրքից արտագրում է սովորաբար մի նշանակություն՝ բաց թողնելով մյուսները: Մի բան չենք հասկանում, ի՞նչ է նշանակում գրաբարից աշխարհաբար բառգիրք. աշխարհաբար ասելով ի՞նչ է հասկանում բառգրքի տերը, այժմյան գրական լեզո՞ւն, թե այն լեզուն, որ իր ղրիմցի թե տաճկաստանցի հայրը խոսում էր: Այս ի՞նչ աշխարհաբար է, գլորել = գլորտըկել, բարեխորհ = աղեկ մտմտացող, դարանիլ = պահվըտել, խառնըխտել, փնտռտել[1], և այլ անհամ և գրական մաքրության դեմ մեղանչող բառեր: Վերջապես ա՛յլ բան է գրաբար բառի դեմ՝ աշխարհաբար բառը դնել, այլ բան է գրաբարը **մեկնել** աշխարհաբար լեզվով: Երբ բարեխոսել = որևիցե մարդու համար աղեկ խոսիլ, սա աշխարհաբար չէ, այլ մեկնաբանություն է. այս ոճով կարելի է և աշխարհաբարի համար բառարան կազմել: Ծիծաղելի է օրինակ՝ **Բարեկամ**՝ միայն գրաբար բառ հաշվել և դեմը դնել = յուր անձին պես ուրիշին բարիքն ուզող. **բարեձև** = վայելուչ դեմք (?) ունեցող, գեղեցիկ. **գլխաւորապէս** = գլխաւոր բանի կողմանէ. **բարեխնդիր** - աղեկութեան ետևէ եղող. գրաբարից աշխարհաբար բառգիրք կազմել նշանակում է թարգմանել այն բառերը, որոնք աշխարհաբարում գործածական չեն, օրինակ՝ **ձորձ** = **շոր, հագուստ. զգենուլ** = **հագնել. առնել** = **անել. համբառնալ** = բարձրանալ, իսկ **բարեկամ** = բարեկամ թողնել, **սէր**-սէր թողնել և ոչ թե վերծանության զբաղել: Բառգիրք կազմողին գոնե ոչ մի ժամանակ չի հետաքրքրել գրաբարի և աշխարհաբարի փոխադարձ հարաբերության խնդիրը և վերջինիս զարգացման պայմանները. և միայն միտք հղանալով բառարան կազմել, ընտրել է հեշտագույն միջոցը շահագործել իր նախորդներին աշխատանքը:

[1] Իլինքցած (= բաքաղուն). **օգտեցնել, բալլիք** (6):



Առձ[եռն] և Խուդաբաշյանի բառգիրքներից մի ավելի ձեռնհաս անձնավորություն կարող էր գողտրիկ, ամփոփ բառգիրք կազմել ժամանակի պիտույքին հարմարեցնելով՝ մեծ տեղ տալով աշխարհաբար լեզվին, և դուրս վանելով գրաբարի այն մասը՝ տարրը, որ անընդունակ է այլևս նոր մարմին, նոր շունչ առնելու: Պ[արոն] [Տեր-] Աբրահամյանը, որ իր աշխատությունը ուսումնարանների և ուրիշ դպրոցների աշակերտաց համար նյութապես դյուրատար անելու մտքով էլ զբաղած է (առաջաբան), ավելի լավ կաներ, եթե ջանար բառգրքի բովանդակությունը մատչելի անել նոցա: Ոչ մի ընտրություն բառերի. հավասար աշխույժով և մեծ անտարբերությամբ անցնում են գրքի էջերը բարին ու խոտանը: Կան մի շարք բառեր գրաբարում, որոնք շնորհիվ տգեղ բարդության ընդհանուր գործածության չեն արժանացած, ինչպես և շատ օտար բառեր, հունարեն, ասորերեն, եբրայեցերեն ծագումով, որոնք թեև ուր ուրեք գործ են ածվում գրաբարում, սակայն հնուց քաղաքացիության իրավունք չեն ստացել լեզվում և մնացել են նորա մեջ անկենդան, քարացած: Նոր բառգրքի հորինողը այդ տեսակ բառերին ընդարձակ տեղ է տվել իր աշխատության մեջ. օրինակ՝ բաղէնդեան - հուն. *βαδδίν*, գաղիշ, գաղատոս, գալլոս, գուրշ, աբբիանա, գաբիբ, աբիոն, ագանովք, ագապ, ակեղդամայ և այլն: Այն ինչ աշխարհիկ գրական լեզվի նորակազմ բառերից շատերը մոռացության են տված, թեև հորինողը հավատացնում է որ մոտ 2000 (!) նոր բառ է հավաքել նոր գրականությունից և մուծել բառգիրքը: Որքան ճշմարիտ է այդ վկայությունը, դժվար է ասել, առանց ստուգության, այսքան կասենք, որ մի թեթև հայացք ցույց տվեց, որ ամենասովորական բառեր չկան: Օրինակ՝ **երկաթուղի, խճուղի,** (шоссе), **ձիաքարշ** կամ **քարշակ, թերթոն, բանասիրական** (ֆիլիետոն). բառգրքում կա **բանասիրական** (գրականական ?) любословный, филологическій. ռուսերենը ճիշդ թարգմանություն հին նշանակության, իսկ նորը ինքն է ավելացրել, և ինչպես է հասկանում՝ Աստված գիտե: **Գործօն** նոր նշանակությամբ = ֆակտոր, կամ **պահոն** (ավելի արևմտյան բարբառում), **գեղարուեստ, շանթարգել, զեղծումն,** կամ **զեղծ** = нарушеніе, **գործադուլ** = стачка, **գրագէտ** ( литераторъ) (բառգրքում = ученый?), **միջավայր** = среда, **հաւատարմատար** (երդուեալ) = повѣренный (присяжный), **շրջահար** = револьверъ, մատուցարան = подносъ **հնչակ**, **ամսաթերթ, ամսագիր, սիրահարիլ, վիճակագրութիւն, տպաւորագրութիւն, իրավասու** կամ **ձայնաւոր** (гласный), **հականեխիչ, ապանեխիչ** (дезинфекц) **հիասթափուել** կամ **հմայաթափել** (արևմտյան բարբառում) **հենակէտ** (точка опоры) **ազգայնական** = націоналистическій, націоналистъ (չկա մինչև իսկ ազգություն): Թող մի շարք բնագիտական տերմիններ՝ **ածխածին, թթուածին, ջրածին, հնոց** = фокусъ նշանակությամբ (և նույն-

պես горнило) **գիտական** (բառգիրքը չի որոշում գիտական = научный, և գիտնական = ученый զանազանությունը), **արտածական, արտածութիւն,** дедукція, **մակածութիւն** (индукція) (բառգր. = заключеніе, рѣшеніе?) **արտադրող** և **սպառող** իբրև գիտական տերմիններ (производитель, потребитель) այսուհետև պիտի գրավեն իրենց արժանավոր տեղը բառգրքում: Քնարերգության բանաստեղծական բառեր՝ ծաղկավառ, զարնանավառ, շուշանազեղ, հրայրք (=пылъ), **խանդ** = ревность, խանդահարել = ревновать և այլն:

Այս հանգամանքը իրավունք է տալիս զգուշությամբ վերաբերելու 2000 առասպելական թվին, թեպետև, ով գիտե, պարոնի թվաբանությունը, ինչպես երևում է, քիչ տարբեր է սովորականից, նորա հաշվով բառգրքում 36.750 (?) բառ կա: Ներողամտությամբ իրեն ենք թողնում ստուգելու, երկրորդ տպագրությունը պատրաստելիս: «Զանազան դժվարությանց (ի՞նչ, դժվարի՞ն է արտագրել) հաղթելով լույս աշխարհ հանեցինք»: Հեղինակը գրքի առաջաբանում ասում է. «...թերություններ ունի մեր բառգիրքը, բայց ներողամիտ լինելու է որպեսզի երկրորդ տպագրության ավելի կատարյալ անելու քաջալերվիմք: Գինը... շատ աժան՝ այսինքն ճիշտ մեզի նստած ծախքը՝ 5 րուբլի նշանակեցինք, հուսալով, որ շուտով երկրորդ տպագրությունը կանենք և քիչ շատ այն ժամանակ միայն նյութապես կվարձատրվենք»: Շատ քաղաքագետ մարդ է (տե՛ս իր բառգիրք = человѣкъ, умѣющій толково вести свои дѣла) (7):



**ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ - ՆՈՐ ՀԱՅԵՐԵՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ**

(D. **Art. Abeghian**, Neuarmenische Grammatik, 1936)

Ստվար աշխատություն է, մոտ երեք հարյուր էջ: Ոչ միայն քերականություն է, այլև ընթերցարան իր բառարանով: Միայն քերական մասը բռնում է հարյուր յոթանասուն էջ: Շատ շատ է: Քերական ձեռնարկը որքան և մանրակրկիտ լինի չի կարող սպառել իր նյութը և մեկնել լեզվի բոլոր նրբությունները: Մանկավարժական տեսակետից ևս նախադասելի է՝ տալ լեզվի ընդհանուր կերտվածը իր հիմնական գծերով: Մանրամասնությունները, անգամ երբ կանոնների են վերածված, շփոթում են ուսանողներին և ավելի վնասություն են բերում, քան խրախուսում: Մյուս կողմից, կան մանրամասնություններ, որ տակավին տարտամ վիճակի մեջ են և վաղաժամ է թերևս ընտրություն անել մրցակից երևույթների մեջ: Հարկավ, այս դիտողությունս բնավ նպատակ չունի որևէ կերպ նսեմացնելու Ա. Աբեղյանի գեղեցիկ գործը:

Գովելի է, որ Ա. Աբեղյանը տվել է միաժամանակ երկու գրական լեզուների քերականությունը, կցելով նաև գրաբարի աղոտ ուրվագիծը: Արևելյան լեզվի նկատմամբ հետևել է Մ. Աբեղյանի քերականության (1), իսկ արևմտյանի՝ Հ. Ասատուրի (2): Գոնե ինձ այսպես է թվում: Ոչ մի փորձ չի եղած հաշտեցնելու երկու գրական լեզուները և շրջելու նրանց դեպի զարգացման ընդհանուր և համերաշխ ուղի: Ա. Աբեղյանն ևս հեռու է այդպիսի մտադրությունից: Նա բավականացել է դնել դեմ առ դեմ երկու լեզուներում ընդունված քերական ձևերը առանց դատավորի և քննադատի պաշտոն ստանձնելու: Արձանագրել է ամենայն բարեխղճությամբ բառերի, բայերի և դրանց քերական տարազի շեղումները, ձեռնպահ մնալով որևէ միջամտությունից, այս կամ այն ձևին առավելություն տալու որևէ թելադրանքից: Մինչդեռ նյութը պարտադրում է որոշ քննադատական դիրք հանդեպ քերական ճյուղավորվող, կանոնավոր թե զարտուղի, երևույթների, նրանց բնավորությունը լուսաբանելու համար, որով և հնարավոր կլինի հարթելու երկու գրական լեզուների տարաձայնությունները կամ համերաշխության բերելու:

Այս փափկանկատ վերապահությունն է պատճառը, որ հեղինակը կցելով հանդերձ գրաբարի համառոտ գծագրությունը, զլացել է օգտվել նրա լույսից իր աշխատության ընթացքին: Օրինակ, պ. Աբեղյան նկատելով, որ **-ն-** և **- թ -** հնչյուններից հետո միջակները թավանում են, ավելացնում է առանձին հատվածում, որ կան դեպքեր և համեմատաբար սակավ, ուր միջակները մնում են միջակ և չեն փոխվում թավի: Ուրեմն օրենքի

հակառակ մի երևույթ: Սակայն ավելի ճշմարիտ կլիներ ասել, որ գրաբարից առնված բառերը չեն ենթարկվում նույն օրենքին հասկանալի պատճառով: Այն բառերը, որոնք պահվել են ժողովրդի բերանում արտասանում ենք նաև գրական լեզվում ինչպես ժողովուրդն է արտասանում, իսկ գրաբարից փոխ առած բառերը հնչում ենք ինչպես գրված են: **Արջ** արտասանվում է **արչ**, **որձը**՝ **որց**, **կարգը**՝ **կարք**, բայց **որջ** մնում է **որջ**, նույնպես **ամորձիք**, **հարգ**, **զորք** և ոչ **ամորցիք**, **հարք**, **զորք**:

Աշխարհաբարը հին լեզվի հարազատ ծնունդն է. իր առանձնահատկությունները անգամ ծագում են հին արմատից: Հարկավ, դասագիրքը կազմողից չի պահանջվում լեզվի պատմականը տալ: Սակայն առանց անդրադառնալու անցյալին դժվար է շատ անգամ ոչ միայն մեկնել, այլև նորաստեղծ ձևերի և կազմությունների ոգին ըմբռնել: Առնենք հոլովումը, օրինակի համար: Ինչո՞ւ մի գրականում ազգ, ազգ-**է** է, իսկ մյուսում՝ ազգ-**ից**. մեկում՝ ազգեր-**ի**, մյուսում՝ ազգեր**ու** և երկուսումն էլ՝ ազգ**ով**, ազգ**եր**, ազգ**երից** և ազգ**երուց**: Երբ դիմենք հին լեզվին, կտեսնենք, որ այս ըստ երևույթին խառնակ դրությունը ներկայացնում է իրապես մի հրաշալի ներդաշնակություն՝ որպես համադրական արդյունք լեզվական առաջդիմության կրկնակի ջանքերի՝ պարզել լեզուն առանց մոռնալու հինը, կամ նոր շենք կառուցանել հին նյութերից: Արդարև, գրաբարն ունի չորս ձայնավոր. հոլով. - **ի** (բանի), -**ոյ** (գլխոյ), -**ու** (հաւու), -**այ** (որդւոյ): Տակավին միջին դարերում **որդւոյ** դառնում է որդոյ և այդպես էլ գրվում, այսինքն՝ **ւոյ** հոլովակերտը նույնանում է -**ոյ**-ի հետ: Հետո **ոյ** շրջվում է **ու**-ի (ինչպես ասելոյ = ասելու): Այսպիսով ստացվում է երկու հոլովակերտ իրար մրցակից, -**ի**, և -**ու**: Բառերի մի մասը հոլովվում է **ի**-ով, մյուսը՝ **ու**-ով: Մրցությունը երևում է հոգնակիում՝ մի տեղ հաղթանակում է -**եր**-ի բոլոր հոլովների համար, մի ուրիշ տեղ՝ -**եր**-ու: Եզակի թվում հաղթում է **ի**-ի բացառականը՝ **է**, իսկ հոգնակի -**ից**, -**ուց** հոլովակերտները պահում են իրենց ուժը բացառականի համար և անցնում եզակի թիվը ըստ նմանության: Հին -**ոյ** հոլովը չի կորչում անհիշատակ, այլ պարտադրում է իր գործիականը՝ -**ով** երկու հաղթականներին հավասարապես: Գոյության պայքարն իշխում է նաև լեզվի մեջ և մրցակից տարրերը պահում են այս կամ այն կերպ իրենց իրավունքը: Կռիվը չէ վերջացած: Կարևորը մնում է դեռ: Ո՞ր բառերը պիտի հոլովվին **ի**-ով, և ո՞րը՝ **ու**-ով: Առաջին հոլովիչը, այսինքն -**ի** ավելի զորավոր է, քան -**ու**. վերջինս կարողանում է յուրացնել հատկապես այն բառերը, որոնք վերջանում են -**ի**-ով (հոգի, հոգու և այլն): Մյուս գրական շրջանում, **ու**-ն գրավում է այն բառերը գլխավորապես, որոնք վերջանում են հնչակից ւ-ով՝ **հաւ**, **հաւու**, **կով**, **սով**, **հով**, **արև**: Սակայն **ի** հոլովիչը հետզհետե զորանում է և արդեն տիրացել է ոչ միայն **ի** վերջահանգ բառերին, այլև այն



բառերին, որոնք խմբված են Աբեղյանի մոտ երրորդ հոլով անվան տակ (**զառի** փոխ. **զառան**, **մուկի** փոխ. **մկան** և այն): Կան գրողներ, որոնք հոլովում են անգամ **շուն**, **շունի**, **տուն**, **տունի**: Մի խոսքով լեզուն ձգտում է դեպի մի հոլով ունենալու պարզության: Թվում է, թե մամուլն ու գրագիտությունը տրամադիր են խրախուսելու այս երևույթը: Ահա այստեղ է, որ քերականը պարտք ունի միջամտելու որպես դիտող, մանավանդ որ ներկա պայմաններում գրագիտությունը մեծ զործոն է լեզվի զարգացման գործում, ավելի քան երբեք: Կուզեմ ասել, որ լեզուն այլևս կույր մեքենա չէ, ինչպես է անգրագետ ժողովուրդների մեջ, այլ գիտակցությունը խոշոր դեր ունի: Լեզուն ձգտում է պարզության՝ աշխատելով ստեղծել միահոլով սիստեմ: Ձգտումը գովելի է, որովհետև պարզությունը դյուրություն է, իսկ դյուրությունը գանձ է: Սակայն պարզությունը ցանկալի է պայմանով, որ միօրինակ չլինի, որովհետև նախ՝ միօրինակությունը տաղտկալի է, աննպաստ բարեհնչության և նվազայնության, և երկրորդ՝ միօրինակությունն անհրաժեշտ պայման չէ պարզության կամ դյուրության: Պարզ և դյուրին է այն, որ ենթարկվում է որոշ օրենքի կամ կանոնի: **Ի**- հանգով բառերը ընդունում են սեռականում -**ու**, օրենք է. -ւ հանգող միավանկ բառերը հետևում են նույն հոլովման, դարձյալ գրեթե օրենք է և ուրեմն երկու դեպքում էլ բարդության կամ դժվարության խնդիր չկա: Ազգ**երի** թե ազգ**երու**, ազգ**է** թե ազգ**ից** կրկնակի ձևերը օրենքի հաստատություն ունենալով չեն կարող և չպետք է նկատվին լեզուն անջրպետող, այլ համազոր և համերաշխ երևույթներ միևնույն ականջի և գրչի համար: Նման թելադրություններ թե նկատողություններ պետք է տեղ ունենան քերական ձեռնարկների մեջ որպեսզի գեթ արթուն և զգաստ պահեն լեզվական գործոն միտքը ընդդեմ այն մոլոր կարծիքի, որ լեզուն անգիտակից ինքնաշարժ մեքենա է:

Առնենք խոնարհումները: Որպիսի մեծ ջանք է թափել աշխարհաբարը թեթևացնելու նաև հին լեզվի բայագիտական մասը: Այստեղ ևս պ. Աբեղյան, հավատարիմ իր ընտրած մեթոդին, կարգել է իրար դեմ երկու լեզուների խոնարհումները առանց փորձելու դրանց տարբերությունները համերաշխության շավիղի վրա դնելու: Բացատրել նոր ձևերի ծագումը՝ նշանակում է գրեթե երևան հանել այն կամուրջը, որ պիտի միացնե երկու լեզուները:

Արևելյան ներկայի դեմ (**կարդում եմ**) պետք չէ դնել արևմտյան ներկան (**կը կարդամ**), այլ նշանակել չիք: Խոնարհումը մասն է ձևաբանության և իրար դեմ պետք է դնել նման ձևերը, ինչ նշանակություն և ունենան: Արևելյան ապառնին (**կը կարդամ**) համապատասխանում է ձևաբանորեն արևմտյան ներկային և այդպես էլ պետք է նշանակել: **Պիտի կարդամ**-ը մնում է նույնն և արևելյան լեզվում:

Աշխարհաբարը ջնջել է հին ստորադասական ներկան և տեղը դրել

սահմանականը: Հին լեզուն չուներ ստորադասական անցյալ անկատար ժամանակը և փոխարենը կիրարկվում էր սահմանական եղանակի անկատարը: Այսպես՝ ասում էին՝ եթէ **կարդայցեմ**, բայց չէր կարելի ասել օրինակ՝ եթէ **կարդայցէի**, այլ՝ եթէ **կարդայի**. և սրանից ծագում է հետևությամբ՝ **եթէ կարդամ** նոր ձևը: Այս կերպ հին սահմանականը դառնում է ստորադասական և լեզուն ստիպված է ստեղծել նոր ձևի սահմանական: Արդի բարբառները վկայում են, թե որպիսի որոնումներ են տեղի ունեցել: Վերջապես ընդհանրացել է **կը կարդամ** ձևը և գրական բարձրության հասել շնորհիվ կիլիկյան քաղաքակրթության:

Նկատելու է, որ **կը կարդամ** ունի իր մեջ նաև ապագայի իմաստի սաղմը: Հին զգացումով **կարդամ** սահմանական ներկա է, և **կը** պահում է նրա ներկա լինելու դիրքը: Բայց երբ **կարդամ** ստորադասական է դառնում և նույն մասնիկը տալիս է նրան ապառնի ժամանակի նշանակություն: Հին ապառնին նույնքան ծանրալուր էր, ինչպես հին ստորադասականը և ինքն արդեն կատարյալի ստորադասական ձևն է, ստացած ապառնի իմաստ: Ստորադասականի կորուստով ապառնին ևս պիտի չքանար: Ա. Աբեղյան կարծում է, որ **կը** կամ **կու** մասնիկը ծագում է հին **գոյ** բայից, իսկ Մ. Աբեղյանի ենթադրությամբ հին ձևն է **կոյ**, որ ոչ այլ ինչ է, եթե ոչ ցուցական մասնիկ **ահա** նշանակությամբ: Երկու կարծիքն էլ սխալ ենք համարում: **Գոյ** բայը հնում անգամ այնքան քիչ է գործ ածվում, որ հետագայում չէր կարող մեծ ծավալ ստանալ: **Կոյ** մասնիկը կապ չունի **կը**-ի հետ և հին -**կ** (այսորիկ, էսիկ, ասիկա, ասիկակ) ցուցականն է: Հ[այր] Ա. Այտընյանի մեկնությունը (3) միակ հնարավորն է, որ **կը, կու** հին **կայ** **ու**-ի սղումն է: Եղած առարկությունները հիմնավոր չեն: **Կայ ու** կարող է դառնալ **կու**, ինչպես երեխայ, երեխայ-ություն, սղվում է երեխություն, տղայ, տղություն և այլն: Հնագույն հիշատակությունը **կու** է և ոչ **կոյ**: **Կայ մնայ** կամ **կայ ու մնայ** քերականորեն միևնույն կարգի երևույթ է ինչպես պիտի մնամ փոխանակ պիտիմ մնամ, կամ ասեսեմ **էր**, ասեսես **էր**, և այլն: Կա ու մնա (մնա հին սահմանակ. իմաստով) ունի ներկայի նշանակություն, իսկ կա ու մնա (մնա, նոր իմաստով որպես ստորադասական, մոտավորապես՝ կա (<որ>) մնա) կդառնա ապառնի: Հայ քերական միտքը գործել է հրաշալի հետևողականությամբ: Հին սահմանական ներկան՝ **կարդամ** դարձրել է ստորադասական և ստեղծել նոր ներկա՝ **կը կարդամ**. ապա և այս ներկան շրջել է ապառնի, այսպիսով թոթափել է երկու հին թանձրալուր և դժվարակազմ ձևերից՝ **կարդայցեմ, կարդացից**: Այնուհետև կերտել է նոր ներկան՝ **կարդում եմ** և սրանով լրացրել նոր խոնարհումը: Արդ, երբ հասնի ժամանակը և կյանքի պայմանները ներեն մտածելու երկու գրական լեզուների միության մասին, դյուրին կլինի հասկանալ, որ **կարդում եմ** և **կկարդամ** մրցակիցներ



չեն, այսինքն մեկը չի սպառնում մյուսի գոյության, այլ աշխատակիցներ են. կկարդամ դառնալով միմիայն ապառնի ոչինչ չի կորցնի՝ ոչ ինքը իր հնչական արժեքից և ոչ լեզուն՝ իր հարստությունից: Նման խորհրդածության նյութ են նաև կրավորական բայերի խոնարհման և մանավանդ հնչաբանական սիստեմի անջատական երևույթները երկու լեզուներում: Քննության և հոգածության պետք ունին, որպեսզի միմյանցից հեռանալու ձգտումը չխրախուսվի: Լավագույն դատավորը լեզուն ինքն է, իր ճիգերը, իր հակումները, որոնք լուսավորում են իր զարգացման ուղին և հիմ են տալիս շտկել վրիպումներն ու շեղումները բարգավաճման մի հունի մեջ պահելու համար գրական լեզուն:

Նպատակ չունենք սպառելու բոլոր այն բազմաթիվ խնդիրները, որոնք լուրջ հետազոտության նյութ պետք է լինեն համեմատական քերականության մեջ, որպեսզի լեզուն, կանգնած պատմական հողի վրա, առաջանա անարգել իր իսկ մշակած սկզբունքներով և ոչ հնի և նորի վրա հիմնված, հակասական կանոններով: Պ[արոն] Աբեղյան կատարել է այն, ինչ որ սպասելի էր վաղուց: Քննելի նյութերն այժմ դասավորված են դեմ հանդիման և՛ մատչելի լեզվի միության և՛ մաքրության նախանձախնդիրներին:

Պետք է զգուշանալ սակայն և չկարծել, որ արևելյան և արևմտյան գրական լեզուներին վերագրած ձևերը անանցանելի խրամատով են բաժանված: Արևելյանը գերադասում է -**ից** բացառականը, բայց այդ չէ նշանակում, որ նրան խորթ է -**է** բացառականը: Նույնը և արևմտյանի համար: Մամուլի ղեկավարները պարտք են համարում, հանուն բարբառների մաքրության, ուղղել արևելյանը ըստ արևելյանի և արևմտյանը՝ ըստ արևմտյանի: Այս չէ տանում դեպի մի գրական լեզու ունենալու բաղձալի տենչանքին: Ողբացյալ Օհան Կարոն (4) զանգատվում էր, որ ընկերակիցներն իրեն հանդիմանում են, որ կրավորականի -**ուեցաւ** վերջավորության փոխարեն գործ էր ածում: -**ուեց**: Եթե գավառական գրողների ձայնը այսպես պիտի խեղդվի ի նպաստ դասագրքերում ավանդված քերական կանոնների, գրական լեզուն կշարունակե մնալ իր կիլիկյան հին ձորձի մեջ: Դպրոցական քերական ձեռնարկները պետք է լինեն առաջնորդներ և ոչ բռնակալներ հանդեպ մի լեզվի, որի ձևաբանական հեղաշրջումը դեռ իր լրումն չէ ստացել և մանավանդ պետք է խրախուսեն այն հակումները, որոնք տանում են դեպի գրական լեզուների միություն:

Պ[արոն] Ա. Աբեղյանի աշխատությունը զգալի թերություն չունի, եթե այդպիսին չհամարենք ճապաղությունը և մանր-մունր սխալները: Կան ավելորդաբանություններ: Հաճախ հիշում է գավառական կամ գռեհիկ ձևեր, որ ներելի է միմիայն այն դեպքում, երբ ծառայում են որևէ բացատրության,

պարզաբանության: Երբեմն առաջարկում է կանոններ, որ անհիմն են և նյութն էլ չէ պահանջում: Օրինակ՝ **զ, ս, շ** սովորաբար հնչում են բառերի միջերում մեր՝ **ըզ, ըս, ըշ**, ինչպես զգալի, սքանչելի, շտեմարան, մերթ՝ **զը, սը, շը**, որպես զլանալ, սրահ, շքեղ: Աբեղյանի կարծիքով, առաջին հնչումը բացատրելու է նրանով, որ հիշյալ տառերը դրված են փակածո (verschlus-slaute) կոչված բաղաձայնների առաջ, իսկ երկրորդ դեպքում՝ ոչ փակածոների: Սակայն **ք** փակաձայն է և շքեղ-ի մեջ արտասանվում է շըքեղ և ոչ ըշքեղ, նույնպես **պ**, սըփռել, սըպրտել, սըպաս, սըքեմ և այլն բառերի մեջ, ինչպես և **կ**, սըկեմ: Հետևապես կանոնը սխալ է, և մի՞թե պետք կա պարտադրելու որ **ըզ** կամ **զը** հնչեն, իսկ եթե մեկն արտասանե առանց ը-ի, ***skanceli, shtemaran,*** արդյո՞ք հանցանք գործած կլինի: Ոչ. մեր նախնիք հնչում էին **սքանչելի** առանց ը-ի որպես եռավանկ բառ, ինչպես երևում է **«Խորհուրդ մեծ եւ սքանչելի»** շարականից: Հայցականի զ-ն կարդում ենք **ըզ**, բայց Ձայնքաղ շարականների մեջ նշանակված է հաճախ **զընա**, որ թերևս ավելի հին արտասանություն է, եթե իրոք **զ** ստուգաբանորեն կապ ունի սլավ ***za*** նախդիրի հետ, այսինքն զ- ունեցել է ձայնավոր, որ սղվել է՝ ը-ի: Եթե հների բերանում **զ, ս, շ**, հիշած դիրքում շեշտված լինեին **ըզ, ըս, ըշ**, կամ **զը, սը, շը** արտաբերումը, այդպես էլ կգրեին: Երևում է շատ խուլ ձայն է եղել, ուստի և կարիք չկա պնդելու, որ **ըսկսել** արտասանենք և ոչ ***sksel:***

Ավելի կարևոր է **ե** և **ո** ձայների վիճակը բառերի սկզբում: Հայ բարբառներում ընդունված է ամենուրեք արտասանել *e* և *o*, կամ սղված *i* և *u* երես = ***eres*** կամ ***ires,*** բայց ոչ ***yeres:*** Լավագույն ապացույցն է, որ եկավ արտասանում ենք չեկավ և ոչ *չ-yekav:* Դպրոցական ավանդությունն աղավաղել է բուն արտասանությունը և գրական պատվի հասցրել: Թյուր արտասանության ցավալի հետևանքն եղավ այն բարբարոս ուղղագրությունը, որի հայրն է Մ. Աբեղյանի պես բանասերը, որ համառորեն շարունակում է զգվել իր ապօրինի զավակը (5):

Ա. Աբեղյան հարկավոր է գտել հայտարարելու իր դասագրքում որ **է** ձայնը, ինչպես **սէր** արտասանվում է *sâr:* Կան բարբառներ, ուր լսելի է այդպիսի հնչյուն: Բայց ստուգությունն այն է, որ ծագում է հին երկբարբառից, ինչպես **օ** հին **աւ**-ից և ուրեմն կիրարկելի են միմիայն զուտ հայ բառերում և ոչ օտար, *e* և *o* տառերի տեղ: Մխիթարյան հայրերը ամենայն իրավունքով գրել են Ոդիսական, և ոչ Օդիսական և միայն անպատրաստ ուսուցիչներն են, որ ստիպում են կարդալ *vodisakan:*

Բառակազմության գլուխը ևս ծանրաբեռնված է ավելորդ բաժանումներով: Պ[արոն] Աբեղյան դասավորել է բաղադրյալ և ածանցյալ բառերը ըստ իմաստի, որ գործնական չէ և մանավանդ անպատեհ է ի նկատի ունենալով, որ կան գրաբարյան կազմություններ, որ յուրացրել են նոր գրական լե-



զուները հաճախ հակառակ աշխարհաբարի քերական և հնչական օրենքների: Հարկավ, լավ կլիներ զատել այն բաղադրիչ և կազմիչ միջոցները, որոնք տակավին կենդանի են աշխարհաբարում և չխառնել հնի հետ, որ երբեմն մեռած, կամ քարացած կերպարանք ունին նոր լեզվում: Ավելի պարզ և օգտակար սիստեմ կլիներ մի մի ածանցիչ մասնիկները, հոդերը լուսաբանել համապատասխան օրինակներով: Այս դեպքում կարելի էր խուսափել անպատեհ դասավորումներից, ինչպես օրինակ, **պահակ, ռազմիկ, մարտիկ, ակնոց** և այլն Աբեղյան դրել է մի խմբում, իսկ **ոստանիկ, դաշտեցի, թիֆլիսեցի**, մի ուրիշ, մինչդեռ **իկ** մասնիկը միևնույն իմաստն ունի և **ռազմիկ** և **ոստանիկ** բառերում, համազորական մասնիկի: Կամ՝ օր. կարծում է, որ **թղթավաճառ** և **որմնադիր** գոյական են, իսկ **շատախոս** և **լավատես**՝ ածական, ուստի և զատել է միմյանցից և զետեղել տարբեր դասերում: Քերականորեն միևնույն կազմությունն ունին և ածական են, և գործ են ածվում որպես ածական և գոյական:

Մյուս բաժինները ևս նման նկատողությանց տեղիք ունեն: Սակայն հարկ չկա երկարել: Կուզեի կնքել խոսքս մի վերջին նկատողությամբ, որ հեղինակը հատուկ ուշադրություն չէ դարձրել շեշտի և նրա ազդեցության վրա, առանց որի անբացատրելի կմնա ձայնավորների սղումը **քաղքի, մոռնալ, սովրիլ, ճեզնից-ճեզնէ** (լավ քան ճեզմէ) և նման բառերի մեջ: Այս և նման մանր թերիներ և ուրիշ աննշան սխալներ, վստահ ենք, որ հեղինակն ինքն կուղղե իր գործի վերահրատարակության ընթացքին:

Ավելորդ չէ շեշտել, որ մեր նկատողությունները չեն նվազեցնում պ. Աբեղյանի գործի արժեքը, որովհետև նրանք վերաբերում են ըստ էության և մեծ մասով ոչ միայն նրա, այլ բոլոր դասագրքերին: Պ[արոն] Աբեղյան հավատարիմ է միանգամայն գրականության և քերական ձեռնարկների մեջ տիրող ավանդների:

## ՏԵՂԵԿԱԳԻՐ Ն. ԱԴՈՆՑԻ. «ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԵՐԵՆ ԼԵԶՎԻ» ԳՈՐԾԻՆ

***Ամենապատիվ Պատրիարք Հոր Տ. Թորգոմ արքեպիսկոպոսին, Երուսաղեմ***

Հա՛յր Սրբազան,

Ցավում եմ, որ ավելի կանուխ կատարել Ձեր հանձնարարությունը հնարավոր չեղավ, որքան և հաճելի և քաղցր պարտականություն կնկատեմ ինձ համար շուտափույթ ընդառաջել Ձեր բոլոր ձեռնարկներին: Այժմ էլ գրում եմ տողերս այնպիսի վիճակում, որ հուսամ ներողամիտ պիտի լինիք, եթե չկարենամ լիովին գոհություն տալ Ձեզ (1):

Կարդացի Հ. Աճառյանի նոր գործը և ահա՛ տպավորություններս քանի մը տողով: Չգիտեմ, պետք կա՞ հայտնելու սկզբեն և եթ, որ Սրբազնությանդ ընտրությունը միանգամայն հաջողակ է և գործը արժանի այն վարձատրության կամ պարգևատրության որ ի նկատի ունիք (2):

«Հայոց լեզվի պատմություն»-ը մի համադրական փորձ է, մի ամփոփումն այն գիտական հանգումների, որ հին և նոր հետազոտությունները արձանագրել են ցարդ որպես ստույգ և կամ հավանական այս կամ այն չափով: Հեղինակը կատարել է այս փորձը ամենայն ձեռնհասությամբ և հավատարիմ այն սկզբունքներին և ղեկավար մեթոդներին, որոնցով ձեռք են բերված ամփոփելի նյութերը: Շնորհիվ ներկա աշխատության, ունինք այժմ մեր առջև հայ լեզվի պատմական հասակը իր զարգացման և կամ կյանքի բոլոր շրջաններում, և բնականաբար դյուրին պիտի լինի այսուհետև լրացնել պակասը կամ հապավել ավելորդը և ճոխացնել գիտության նորանոր բերքերով և փոփոխել փոփոխելին: Հեղինակը փույթ է ունեցել ներկայացնել լեզվի կրած փոփոխությունները քաղաքական պատմության համապատասխան շրջանակների մեջ, և հանել է այն եզրակացությունները, որոնք ծառայում են ուրվագծելու և մեր քաղաքակրթության հարահոլով պատկերը:

Գործի մի խոշոր մասը նվիրված է լեզվական **բառամթերքին**: Հայ լեզվի բնիկ ատաղձը կազմում են, ըստ հեղինակի, 600 բառ. հաջորդ շերտերն են փոխառյալ բառեր - իրանական՝ 750 բառ, հունական՝ 776, արաբական կամ արաբ-պարսիկ՝ 801 և այլն: Այս վիճակագրական թվերն այն տպավորություն են թողնում, որ կարծես հեղինակը վերջնական և անվերաքննելի



է համարում այն, ինչ որ ցարդ կատարված է, մինչդեռ խոհեմությունը պահանջում է ձեռնպահ մնալ թվական սահմանափակումներից (3): Ամեն մի նոր հետազոտություն կարող է խանգարել այդ ժամանակավոր հաշիվները: Մեզ թվում է, որ բացեր կան գրեթե բոլոր բառախմբերում: Առանց որևէ ջանքի, աչքիս ընկավ, որ բնիկ հայ բառերի թվում պակասում են՝ **աղեղն, թամբ, պտուղ**. իրանական խմբի մեջ չգտա՝ **հրամատար** (**framatar**) (ոչ հրամանատար), **խորասարան**, որպէս թե նշանակում է սպարապետական ատիճան, մինչդեռ պահլ. ar(a)varàn բառն է և նշանակում է արևմուտք. վիրական բաժնում պակաս է՝ **սեփծուղ**. հունական՝ զառախս «պատկերագործ» (Ստեփանոս Օրբելյան) = հ. *Ζωγράφος*, կամ տելիարխ (Ուռհայեցի), որ Բուզանդ. **ետերիարխ** կամ **հետերիարխ** *έταιρειαρχής*, բառի աղճատումն է, չկա նաև **էմպոհոն** (բշխ.): Ասորերեն՝ Թշրին և Իլոզի կից մոռացել է հիշել **թովք** (Տիմ.), **իյար, փռալի, փիքոն** («Գիրք թղթոց»). արաբերեն՝ չտեսա **ճալատ, տառայպուլա** (Թլկուրանցիի բառերը): Այլ չեմ հիշում, որ **բոկեղ** դնում է որպես թե փոխառյալ վրացերեն, մինչդեռ *Βουκέλλος* = կլոր հաց, հունարեն բյուզանդական բառն է. սահմի, հոռի, ոչ մի կապ չունին վրացերեն, **օրի և սամի**, «երկու, երեք» բառերի հետ, ինչպես ենթադրել է Ք. Պատկանյան և ընդունել Հ. Աճառյան: Իմ կարծիքով հին ասոր. Airu, Simanu երկրորդ և երրորդ ամիսների անունն է: Այնտեղե է ծագում իրանական և մեր տոմարը: Վրաց ամիսները հայտնի են, և այնտեղ ո՛չ օրի և ո՛չ սամի հետքեր չկան: **Գալատոս** «որմնադիր» բառը ևս վրացի ծագում չունի, այլ պարզապես **Գաղատացի** է նշանակում. ինչպես երևում է, հնում հայտնի են եղել Գաղատացիք որմնադրության արհեստում: Այս ավելի, քան թռուցիկ օրինակները բավ են ցույց տալու համար, թե որքան հանձնաբարելի չեն թվական սահմանագծումները: Մի քանի տարի առաջ առիթ ունեցա ծանոթանալու Հ. Ա. Նիբերգ պահլավագետին, որ հայտնեց ինձ, ի միջի այլոց, որ ավելի քան հազար իրանական նոր փոխառություններ է գտել հայերենում պահլավիկ մատենագրության հիշատակարանները վերծանելիս (4):

Մի ուրիշ հանգամանք: Հ. Աճառյան նպատակ ունի ներկայացնել լեզուն որպես քաղաքակրթության հայտարար: Այս դեպքում անհրաժեշտ է խստիվ պատնեշ քաշել երկու կարգի օտարամուտ բառերի միջև, այն է փոխառությունների (**Lehnwörter**) և օտար բառերի (**Fremdwörter**): Մեկը կազմում է լեզվի բաղկացուցիչ մասը, ձուլվում է և, այս դեպքում, հայանում, մյուսը մնում է իր օտարության մեջ ի բնե մեռած տարր լեզվի համար և անարժեք քաղաքակրթության պատմության համար: Հ. Աճառյան, հարկավ, քաջ գիտե այս զանազանությունը և գործի ընթացքին ստիպված է եղել անջատել որևէ կերպ հիշած երկու տարրերը: Ավելի լավ կլիներ

անտարակույս հենց սկզբից անտես անել օտար բառերը ի նպաստ հարցի պարզության և առանց ավելորդ բեռն դնելու լեզվի վերա:

Հեղինակը լայնորեն է գծել իր աշխատանքը, բաժին հանելով ընդհանուր լեզվագիտության: Կանգ է առել միջերկրական քաղաքակրթության ազդեցության լեզվական հետքերի վրա հունականում: Բայց զարմանալի է, որ հազիվ մի քանի բառ է գրավել նրա ուշադրությունը, այն բառերը, որ հիշել է Ա. Մեյեն իր մի աշխատության մեջ: Սակայն նորագույն գործերը հաշվում են այդպիսի փոխառություններ հարյուրավոր բառերով, թված օրինակի համար[1]:

Հայ-փռյուգական առնչության նայող վերջին հետազոտությունները անծանոթ են մնացել մեր հեղինակին[2], դրանք միանգամայն նոր տեսություն առաջ բերին, որ փռյուգ. լեզուն ոչ թե **saten**, այլա **centum** լեզվախմբին է պատկանում: Այսու կարծես հայի և փռյուգ. անջատը ավելի մեծանում է, բայց մյուս կողմից պարզվում է, որ հնչաբանական մեծ օղակով կապվում են երկու լեզուները (մանավանդ **mutaiter consonantique**, այսինքն՝ միջակների լերկացումը): Հայերենը կապվում է նաև թուխարերենի հետ, և այս կարևոր է: Ինձ թվում է, որ այս նոր կապը մեզ հասկանալի պիտի դարձնե **Թուխարք** բերդի կոչումը Տայքում, ինչպես և **Տուհ** կոչված ժողովուրդի ինքնությունը և թերևս մի նոր վարկածի դուռ պիտի բաց անե Մամիկոնյանների ծագման ավանդության:

Հ. Աճառյան շատ անգամ դուրս է եկել Հ. Հյուբշմանի զգուշավոր սահմաններից, ընդունելով ստուգաբանություններ, որ նա ժխտել է կամ կասկածելի է համարել: Շատ խնդիրներում աշխատել է ուրույն տեսակետ ունենալ և միշտ չէ հաջողած: Սակայն նման երևույթները չեն վնասում գործի ընդհանուր պատկերին: Մասնավորապես աչքի է ընկնում այն մեծ բաժինը, որ Աճառյան հատկացրել է վրացի և խալդական փոխառությանց, հակառակ Հյուբշմանի դրականորեն հայտնած տրամադրության: Հայ-վիրական լեզվական աղերսին հատկացրած գլուխը, կարելի է ասել, գործի տկարագույն էջերն են: Մեր հեղինակը թվում է, թե հաստատապես որդեգրել է այն համոզումը, որ բոլոր այն տարրերը, որ ո՛չ իրանական են, ո՛չ սեմական, ո՛չ զուտ հայկական, ծագում են խալդական լեզվից: Չափազանցություն է և ըստ էության առանձին կարևորություն չունի, քանի որ լեզվագիտությունը ոչինչ չի շահում, անհայտը մի ուրիշ անհայտի է վերածում: Բացի սրանից, նախահայ բնիկների լեզուն միայն խալդերենը չէր: Խալդերի նման տասնյակ ցեղեր կային, որոնց փոխադարձ լեզվական կապը մնում է անհայտ: Ավելի խոհեմ կլիներ հայ բառարանի տակավին անվերծանելի

[1] G. Glotz, La Civilisadion Égéenne, p. 441.

[2] R. Meister, Ind. For. 25, p. 312, նաև՝ E. Hermann (K. Z., 50).



մթերքը համարել մի շտեմարան, ուր առնելիք ունի և՛ զուտ հայկականը, և՛ իրանականը, և՛ անծանոթ նախաբնիկ լեզուները (5):

Բառամթերքի քննությունից հետո Հ. Ա[ճառյան] անցնում է գրական լեզվի ծագման և ընթերակից հարցերի: Տեղ-տեղ հեղինակի գրիչը սայթաքում է դեպի հակասություններ, որ պետք է բացատրել անուշադիր կամ շտապ գրությամբ: Հին **pater** ձևը, հեղինակի կարծիքով, «շատ ուշ և այն V դարում է **միայն** եղել հայր» (էջ 32): Հաջորդ էջում կարդում ենք, որ **հայր** ձևը գոյություն ունի Ք. հ. 200 թվից: Երկու վկայություններն էլ հավասարապես սխալ են: Հ. Ա[ճառյան] երկար ու բարակ քննում է, թե գրաբարը խոսակցակա՞ն լեզու էր, թե արվեստական և գալիս է այն եզրակացության, որ գրաբարը V դարում «ճշգիվ ժողովրդի խոսակցության լեզուն է» (էջ 244): Հետևյալ գլխում, ոսկեդարյան հեղինակների մոտ եղած բազմաթիվ անհարթությունները և սխալները ուզում է բացատրել նրանով, որ հեղինակները գործ են ածել «արվեստական լեզու և ոչ ժողովրդի բառը» (էջ 268): Այս ակներև հակասությունը հասկանալի կդառնա, եթե ընդունենք, որ հեղինակը ճշգրտորեն չի արտահայտել իր միտքը: Ամեն մի լեզու որ արձանանում է գրով՝ արդեն դառնում է արվեստական համեմատությամբ կենդանի և շրջուն լեզվի: Բայց այս չէ նշանակում բնավ, որ գրականը այնքան է հեռանում, կամ V դ. այնքան էր հեռացել իր ծննդյան տարիքեն, որ ժողովրդյան հասկանալի չէր: Հ. Ա[ճառյան] սակայն պետք է զգացել շեշտելու չափից ավելի գրաբարի ժողովրդական լինելը, որպեսզի առաջ տանի իր մյուս կարծիքը, որ V դարում հայ լեզուն բարբառներ չուներ և պատրաստ է ժխտելու Ստեփանոս Սյունեցու բացահայտ վկայությունը աղավաղ և անհիմն մեկնաբանությամբ (6): Եթե Հ. Ա[ճառյան] այն դրությունը պաշտպաներ, որ բարբառների բացատը մեծ չէր V դարում, ինչպես հետագայում, կարելի է համաձայնել: Բայց հիմնովին բացասել, ոչ մի բանավոր հիմք: Նույնիսկ իր բերած քաղվածներում նկատվում են աշխարհաբարի հետքերը, ինչպես ստորադասականի զեղչը և ներկայի գործածությունը ստորադասականի իմաստով «(եթէ գայ ինձ)», «ես ոչ սպանանեմ»): Ինչպես և մեկնենք բարբառների ծագումը, պետք է ընդունինք, որ այս խնդրում առաջնակարգ դեր են ունեցել այլացեղ բնիկները: Եթե հայ զանգվածը բավական ուժ է ունեցել հարկադրելու իր լեզուն երկրի կենտրոնական մասերում, ուր հոծ մեծամասնություն է կազմել, նրա ազդեցությունը համեմատաբար տկար պետք է լիներ ծայրագավառներում, ուր բնակչությունն ավելի խառն էր: Այս հանգամանքը արդարացնում է հիմնովին եզերական բարբառների գոյությունը: Հ. Ա[ճառյանը] հնարավորություն ունի դիտելու, թե ինչպես Երևանի բարբառը հետզհետե և գրեթե աստիճանաբար փոխվում է Ղարաբաղի (Արցախի) բարբառին,

անցնելով Սիսիանի բարբառից դեպի Տաթև և այնտեղից դեպի Շուշի:
Նորագույն բարբառների մասին նույնպես Հ. Ա[ճառյանը] այն կարծիքն
է հայտնում, որ նրանք ոչ առաջ, քան IX-XII դարեր են ծագել: Բայց
դժբախտաբար չի բացատրում, թե որոնք էին այն նոր ազդակները, որոնք
հանկարծ ծվատեցին նախկին միապաղաղ լեզվին զանազան բարբառների:
IX-XII դար համեմատաբար պայծառ շրջան է Հայոց պատմական
անցյալում, երբ փոքր նախարարական տները միանում են խոշոր կենտ-
րոններ ստեղծելու և իրանք անհետանում մեծ միության մեջ: Հ. Ա[ճառ-
յանի] տեսակետը այս խնդրում անհատական է, գոնե մերը չէ. և այն փաս-
տարանությունը, որ բերում է ի նպաստ իր տեսության, ի վիճակի է որոշելու
բարբառների **Terminus ad quem**, բայց ոչ **a quo**:

Բարբառների գոյությունը ժխտելուց հետո, երբ անցնում է Նորայրի
տեսության ոսկեդարյան չորս կարգի հեղինակության վերաբերյալ, և
արդարացի քննության է ենթարկում և Նորայրի տեսությունը (7), նրա
դիտած տարբերությունները վերածելով պարզ ոճաբանական խտրության,
հանկարծ նահանջում է բռնած շավղից և ընդունում, որ կային **Եզնիկյան** և
**Կորյունյան** բարբառներ: Այս ևս մեր տեսակետը չէ:

Աշխատության այն մասը, որ նվիրված է ժամանակակից բարբառների
նկարագրության և դասավորության, շատ ավելի պետք է բարձրացնեին
աշխատության արժեքը, եթե ավելի մանրամասն լինեին: Հ. Աճառյան այս
կալվածում, կատարյալ տեր և տիրական է: Ոչ ոք չգիտե նրա նման մեր
բարբառները: Ո՛րքան ցանկալի կլինեին, որ այս մասը ավելի ճոխ լիներ,
ստորաբաժանումները լիովին թված հանդերձ հնչաբանական և
ձևաբանական հատկություններով, քանի որ բարբառները կորստյան
վտանգի առաջ են կանգնած և հետագային անհնարին պիտի դառնա
նրանց ուսումնասիրությունը:

Չերկարեմ այլևս: Նկատողություններս ցույց են տալիս, որ Հ. Ա[ճառ-
յանի] երկը իրապես կարևոր է և արժանի Չերդ Սրբազնության քա-
ջալերության և գնահատման: Չեմ կարծում, որ հայտնածս կարծիքները
օտարոտի թվին Ձեզ, վստահ եմ, որ նույնանման տպավորություն է գործել
նաև Սրբազնությանդ վրա:

Մնամ սպասավոր պատրաստակամ Ամենապատիվ Հայրությանդ,
հարգալիր ողջունիվ

միշտ անձնվեր
Ն. ԱԴՈՆՑ



# ԱԲԳԱՐ ՊԱՅԱՋԱՏԻ «ԽԱԼԴԵՐԵՆ ԼԵԶՎԻ ԲԱՆԱԼԻՆ»

Ահա կատարում եմ խնդիրդ, պատվական խմբագիր (1): Ասացիք, որ գործը լուրջ է և վկայված և ինձ պարտավորեցիք զբաղիլ մի հարցով, որ ներկայումս դուրս է հետաքրքրությանս շրջանեն: Գրքի վերնագիրն արդարև պարտիչ է: Ժամանակով Էջմիածնի միաբան և հայտնի բանասեր Գալուստ Տեր-Մկրտչյանը, Ճեմարանի սաներեն մեկից լսելով ուտի լեզվի **-այի** վերջավորությամբ բայաձևը, այն միտքն էր հայտնել, որ ուտիերենը խնամություն ունի ուրարտական կամ խալդ լեզվի հետ (2): Ողբացյալ Ն. Մառը հերքեց ուտի **այի**-ի և խալդական **այի**- ածորդի ենթադրյալ նույնությունը առանց ժխտելու, որ սեպագիր անծանոթ լեզուն կարող է, և պետք է, որ կովկասյան լեզվախմբի հետ մերձավոր առնչություն ունենա: Մի ենթադրություն, որ գործնական արդյունք տալ չէր կարող, նախքան կովկասյան լեզվական առեղծվածը չլուծվեր: Խալդագիտությունը այժմ բավականին հառաջացել է, իր դիվանն ունի, ուրույն բառամթերքը, քերականական ինչ-ինչ կանոններ երևան հանած: Կովկասյան առեղծվածը թեև մնում է տակավին իր նախկին վիճակի մեջ, բայց հայտնի է, որ այլևս հույս չկա բնավ կապելու խալդերենը վրացերենի հետ, ինչ որ երազում էր խալդագիտության հիմնադիրը՝ Ա. Սեյսը (3): Վրացերենը լավագույն ներկայացուցիչն է կովկասյան լեզվախմբի՝ այն մտքով, որ անցյալում հայտնի է, դարավոր գիր ու գրականություն ունի և ուրեմն համեմատության համար նպաստավոր պայմաններից զուրկ չէ: Սորա անհաջողությունը հուսադրիչ երևույթ չէ մյուս հարևան լեզուների հավակնության նկատմամբ: Նրանց թվում և ուտիերենի:

Հասկանալի է թե ինչո՞ւ «Խալդերենի բանալին» մեզ մեծ հավատ չի ներշնչում: Գիրքը տեսնելուն պես ավելի ևս սաստկացավ մեր թերահավատությունը: Արտաքին տեսքն արդեն հուսահատիչ է: Խոսքս թղթի մասին չէ և ոչ տիպի, այլ գրության մեքենայի, որ հատուկ է ամեն մի գիտական աշխատության:

Սակայն պարոն Հ. Աճառյան իր հանձնարարական առաջաբանում (4) մեծապես դրվատում է պ. Պայազատի գործը: «Նորակերտ նորանշան չնաշխարհիկ գործ» է անվանում և «ոչ վայրապար, այլ զուշակ կամիմ լինել, -ասում է նա,- զի այս գործ լինելոց է գլուխ անկեան նորոգ բեւեռա-

գիտութեան»: Նույն առաջաբանը ավետում է որ պ. Պայազատը գտել է ուտիերենի մայրենի լեզվի մեջ 49 բառ, որ հար և նման են խալդերենին թե՛ հնչումով և թե՛ իմաստով և, որ այս պարազան մի կատարյալ «սքանչանք» է: Եվ որպեսզի իր վկայությունը անխոհեմություն չհամարվի, օրինակ է բերում **sidiistuni** բառը, որ խալդերեն է և որին որպես թե համազոր է ուտիերեն **sidas-tune** բառը և երկուսն էլ նշանակում են **«կառոյց, շինեաց»**: Հայտարարությունը հանդուգն է և անհավատալի. այսպիսի մի երկար և դժվարահնչյուն բառ անփոփոխ մնալ յոթերորդ դարից Ն. Ք. մինչև քսաներորդ դարը Ք. հ., իրոք լեզվագիտական հրաշք է: Բնական է, որ ցանկանայինք ամենից առաջ ստուգել այս նմուշը:

Ահա ի՞նչ է ասում հեղինակը այս առթիվ. **sidustuni** բայը «կազմված է երկու բայարմատից և **tesun** օժանդակից. sid, us, tesun. Ներկա ուտիերեն լեզուն ունի դրանցից կազմված հետևյալ բայերը. sid-besun= քանդել, sid-phesun = քրքրել, us-besun = փայտեղեն շինել, փայտ անել, us-tesun = փայտել, շենքը փայտով կառուցանել: Հետևաբար նշանակում է քանդվածը փայտով կառուցանել: **Sidust** բայը՝ լեզուն **մոռացության** է տվել» (էջ 20):

Ռուսերեն բաժնում նույն բառին անդրադառնալով տալիս է հետևյալ մեկնությունը, որ թարգմանում ենք հարազատորեն՝ անտեսելով բնագրի լեզվական թերությունները. «Sidiistuni բայ է և ձևով անցյալ կատարյալ եզակի երրորդ դեմք: Այս բայը մոռացված է կենդանի լեզվում, բայց իր կազմից երևում է, որ բուն աղվաներեն բառ է, որովհետև sid-besun բայը, որ այժմ գործածական է կենդանի լեզվում. նշանակում է **փորել և անել**՝ շենքերի վերաբերմամբ, այսինքն՝ կառուցանել: Sidiistubi կազմված է երեք բառից, sid = փոր(ումն), iis = գործ, besun = անել՝ կենդանի լեզվում, as = գործ, աշխատանք, tu = դերանուն երրորդ դեմք, bi-անցյալ կատարյալ besun բայի» (էջ 81):

Հասկանանք թե ի՞նչ է ուզում ասել իր կրկնակի մեկնաբանությամբ պ. Պայազատը: Խալդական արձանագրությանց մեջ մի բառ կա, որ կարդացվում է **Si-di-i-is-tu-u-ni** և որի ենթադրական իմաստն է՝ **շինեց, կարգի բերեց**: Պ[արոն] Պայազատ սխալմամբ, թե դիտմամբ գրում է հայերեն բաժնում՝ **sidustuni**, փոխանակ **sidiistuni-ի**. իսկ ռուսերենում ուղղում է իր սխալը: Առաջին դեպքում բառի մեջ տեսնում է ուտիերեն sid, որ միայնակ ոչինչ չի նշանակում, բայց **si** օժանդակ բայի հետ՝ **sid = besun** = քանդել իմաստն ունի, և **us**, որ դարձյալ օժանդակ բայի հետ՝ **us-besun** կամ **us-tesun**, նշանակում է փայտ կամ փայտեղեն անել!: Երկուսը միասին, ուրեմն **sid-us**, որ համազոր է համարում խալդական **sid-ust-uni** և պետք է որ նշանակե նրա հաշվով, քանդվածը փայտով կառուցանել!!: Ավելի անհեթեթ բան դժվար է երևակայել: Սակայն հեղինակը նկատել է, որ քննելի բառը sidust-չէ, այլ sidi-



istuni, այսինքն՝ երկրորդ վանկը՝ **-us-** չէ, այլ **-iis**. ուստի առանց հիշելու, որ սխալվել է, մի այլ գյուտ է անում, իբրև թե այս **iis-ը** ուրիշ բան չէ, քան ուտիերեն **us-ը**՝ գործ, աշխատանք:

Հետևապես կստացվի sid-iis = **քանդ + գործ**, նույնքան անհեթեթ կազմություն, որչափ քանդ - փայտ: Հայերեն բաժնում չէր բացատրել բառի վերջին մասը՝ **-tuni**, այժմ լրացնում է պակասը, հայտարարելով, որ **-tu-** դերանուն է երկրորդ դեմք: Իսկ **-ni** ի՞նչ է, եթե **tu-** դերանուն է. պատասխան չկա: Այնուհետև մեկնում է **sidiistu = bi** բայի վերջին վանկը, ասելով որ **besun** ուտիերեն բայի անցյալ կատարյալն է. ուզում է ասել կատարյալի ընդունելություն: **Sidiistubi= sid** (= քանդ) **-iis** (= գործ) **-tu** (=նա) **-bi** (= արած), նշանակում է վերջ ի վերջո՝ «շինեց»: Սա բայի երրորդ դեմքն է, առաջին դեմքը կլինի՝ **sid-iist-zu-bi** = շինեցի, երկրորդ դեմքը՝ **sid-iist-un-bi=** շինեցիր: Այսպես **-tu**, որ երրորդ դեմքի հայտարար էր, մնում է նաև երկրորդ և առաջին դեմքերում, առանց պատճառելու հեղինակին որևէ մտահոգություն:

Օրինակը պերճախոս է և լավ վկա, թե ի՞նչպես է դիտում, մտածում և դատում ուտիացի լեզվագետը: Որպեսզի ավելի հասկանալի լինին նորա թյուր մտքերը, պետք է գիտենալ հետևյալը: Ուտիերենում, ինչպես հայերենում՝ մանավանդ ժողովրդական լեզվում, սովորական է **անել = besun** բայի գործածությունը. **խաղ անել, վար անել, պատիվ անել**, անգամ օտար բառերի հետ՝ **քոմակ անել, հյուրմաթ անել** և այլն: Առնենք **քոմակ անել =** ուտիերեն **komag besun** [ժողովուրդը արտասանում է «քոմագ», ուստի ուտիերենում ևս **komag**]. Ներկան արտահայտելու համար առնվում է՝ **komag+zu** = ես + **desa** (= ներկայի ընդունելությունը= հայերեն **անող**) այսինքն՝ թե արտահայտենք հայերեն՝ **քոմակ ես անող**, որ նշանակում է **ես քոմակ եմ անում: Դու քոմակ ես անում = komag+un** (= դու) + **besa,** նա քոմակ է անում - komag **e** (= նա) **besa**, և այսպես հոգնակին, տեղը դնելով՝ **մենք, դուք, նոքա** դերանունները:

Նույն կերպ արտահայտվում է և անցյալ կատարյալը, միայն իհարկե առնվում է կատարյալի ընդունելությունը, որ է **bi,** նույն **besun** բայի:

Հետևաբար՝ *քոմակ արի* = komag-zu- bi

*քոմակ արիր* = komag-un- bi

*քոմակ արավ*= komag-e-bi և այլն:

Իսկ իսկական բայերը, այսինքն՝ որոնք խոնարհվում են առանց **besun-ի** նման օժանդակների, օրինակ **նստել = artsesun**, կազմված են ներկան ավելցնելով բայարմատին դերանվանական հոդերը: Այսպես՝

Artsi-zu *(= նիստ+ ես)* = նստում եմ.

artsi-n *(= նիստ + դու)* = նստում ես.

artsi-ne *(= նիստ + նա)* = նստում է. և այլն:

Խալդական սեպագիր արձանագրության մեջ հաճախ պատահում են **-ubi et uni** հանգող բանաձևեր, որոնցից -ubi համարվում է առաջին դեմք և **-uni** երկրորդ դեմք՝ անցյալ կատարյալի: Այսպես՝

| | |
|---|---|
| sidiistu-bi = *շինեցի* | sidiistu-ni = *շինեց* |
| hau-bi = *նվաճեցի* | hau-ni = *նվաճեց* |
| zadu-bi = *կառուցի* | zadu-ni = *կառուց* |
| teru-bi = *զետեղեցի* | teru-ni = *զետեղեց* |
| nahu-bi = *տարի* | nahi-ni = *տարավ* և այլն: |

Խալդերենում հայտնի չեն ո՛չ եզակի երկրորդ և ո՛չ հոգնակի առաջին և երկրորդ դեմքերը, երրորդը՝ վիճելի է: Չնայելով այս հանգամանքին՝ պ. Պայազատը հնարավոր է գտել համեմատության դնել և այս անծանոթ դեմքերը ուտիերենի հետ: Նա համոզված է, նախքան ապացուցանելը, որ ուտիերենը հին աղվաներենն է, և սա՝ հին խալդականը: Ուտիերենը նրա համար նոր խալդերեն է, իսկ խալդերենը՝ հին ուտիերեն, մեկը՝ կենդանի, մյուսը՝ մեռած լեզու:

Հիշելով ուտիերենի **komag-zu-bi**, և այլն, **artsi-ne** բայերի վերջին **-bi** և **-ne**, փորձել է նույնացնել խալդական **u-bi** և **u-ni** վերջավորությունների հետ, առանց ուշ դնելու որևէ օրենքի: Տեսանք որ -**bi** ընդունելություն է **besun** բայի, նշանակում է **արած** և կիրարկելի է բոլոր դեմքերի համար՝ եզակի և հոգնակի: Մինչդեռ խալդական **-bi** **թե ubi** նշան է եզակի առաջին դեմքի և ծագումը տակավին հայտնի չէ: Կան ոմանք, որ կարծում են, որ երբեմն և երրորդ դեմքի նշանակություն ունի. բայց հավաստի չէ: Պ[արոն] Պայազատը կարծում է, որ խալդերեն **ubi** ոչ թե առաջին, այլ երկրորդ դեմքն է, որին համապատասխանում է ուտիերեն **e-bi**՝ **komag-e-bi** բայում: Ուստի և իրավունք է համարում վերականգնել խալդերենի առաջին և երկրորդ դեմքերը՝ հետևողությամբ ուտիերենի:

| | |
|---|---|
| sidiis-zu-bi? | komag-zu-bi |
| sidiist-un-bi? | komag-un-bi |
| sidiist-u-bi | komag-e-bi. |

Այսպես էլ **zadubi, terubi,** և այլ բայերը խոնարհել է ուտիերենի վրա և դեմ առ դեմ ուտիերեն ձևերի, այնպես, որ անփորձ ընթերցողը կկարծե, թե խալդական բայի խոնարհումը իսկական է և սեպագրի համաձայն և ո՛չ ուտիացի Պայազատի երևակայության, թե ստեղծագործության արդյունք: Ամբողջ էջեր բռնած են, այս անիմաստ կամ, ինչպես ինքն է ասում, «ենթադրական» խոնարհումները:

Նույնը և **-uni** հանգի վերաբերմամբ: Այս անգամ օրինակ է ծառայել



**artsi-zu** = **նստում** է: Սրա հետևողությամբ կերտել է.

«Sidiistu-zu»? = artsi-zu
«sidiistu-un »? = artsi-n
sidiistu-ni = artsi-ne

Իհարկե պ. Պայազատի համար, արժեք չունի, որ խալդերեն **sidiistu-ni** անցյալ կատարյալ է, իսկ **artsi-ne** ներկա: Նմանությունն էլ լոկ մի տառի մեջ է:

Ոչ միայն քերականական ձևերը, այլ ամենեն առաջ բառերը, դրանց ստուգաբանությունը և համեմատությունը շատ ստոր են գիտական մակերևույթից: Ստուգաբանական փորձերը ժողովրդական կոչված մեկնություններից այն կողմ չեն անցնում: Ո՛չ **sidiistene** և ոչ **sidastene** բայ գոյություն չունի ուտիերենում, այլ պ[արոն] Պայազատի հնա[րա]գիտության արդյունք է: **Sid** ի՞նչ կնշանակե, ինքն էլ որոշակի չգիտե, **քանդե՞լ, թե փորել**. իսկ **as** = **գործ**, հավանորեն թուրքերեն *is* = **գործ** բառն է, որ ուտիերենում դարձել է՝ **ըը՛շ**, **ի** ձայնի խուլ հնչման հետևանքով: Հարևան ցախուր բարբառում, **is gaas** = **գործ անել**, ուր **gass** = **besun** ուտիերենի: Ամեն պարագային, ենթադրելով անգամ որ **as** բուն ուտիական ինչք է, **sid** + **as** + **te** = **«քանդելով շինել»** բացարձակ անհեթեթություն է, եթե չասենք ավելին:

Կասկածելի է նաև **arhiuruliani** = **ընտանիք**, և ուտիերեն **arhiur-ulux** = **«ցեղնումեղը»** համեմատությունը: Հավանական է, որ վերջին տարրը՝ -ulux թուրք՝ **ուլուխ** = **ընտանիք** բառն է, առաջինը՝ **arhiur** թերևս արաբական **ohl** = ուտիական **-ur** հոգնակի նշանով:

Ուտիերենը, ինչպես կովկասյան մյուս լեզուները, հաշվելով նաև հայերենը, անհամար փոխառություններ ունի արաբ-պարս-թուրք լեզուներից: Կան նաև հայերեն շատ և երբեմն հին՝ բառեր ուտիերենի մեջ, նաև վրացերեն և դրացի լեռնական լեզուներից: Մեծ զգուշություն է հարկավոր, ուրեմն, չշփոթելու համար օտար բառերը բուն ուտիերենի հետ: Պ[արոն] Պայազատը այս մասին չի մտածում, այնքան որ պատրաստ է նույնիսկ **vartanli**, **yaghubli** և նման ակներև նոր թրքական **lu** հանգը հին խալդերեն համարել (էջ 13): Խալդ. **Kirani**, ուտ. **kirami**, որ **աղյուս** է նշանակում և հունարեն **keramos**, որից եվրոպական **céramique**. **Sirabo** խալդերեն բառը ուղղում է **zirabo**, որ համեմատի ուտիերեն **zorabu** կամ **zirobu**, որ որպես թե Ղարաբաղի [բարբառի] **zer** = **խոշոր, հսկայ**:

Այնինչ **zoraba** է պարս. **zorba** = **ուժեղ**, և **zer** = ժողովրդական **զոռ** (էջ 51): Խալդ. usmasini, որ նշանակում է **բարձր** կամ թերևս **կարողությամբ**, ինչպես վերջերս մեկնեցին, պ. Պայազատ իր սեփական խիզախ կարծիքը ունի: **Xaldinini usmasini**, պետք է կարդալ, նրա կարծիքով, **Xaldini ni us ma si ni**, ուրեմն հինգ բառ՝ **nius** = **մատաղ, զոհ**, **ma**= **ուր**, **si** = **նա**, **ni**= **է**, իմաստը՝ **«Խալդ (Աստված) ես մատաղ, ուր որ նա լինի»**:

Այսպիսի անդամահատություններ առատորեն սփռված են գրքում, որոնց վրա կանգ առնել ժամավաճառություն է: Հայ գեղջուկ սրամտությունը իր ստուգաբանական գյուտերն ունի. օր. մինիստր **ministre** բառը ռուսները առել են հայերից. մինիստր նշանակում է՝ մի՛ նստիր, որովհետև մինիստրը իրավունք չունի նստել թագավորի առաջ: Ցավելով պիտի նկատենք, որ պ. Պայազատի ստուգաբանությունները այս կարգի գյուտեր են: **Vili** և **patara** բառերը մասնավորապես հետաքրքրական են, որովհետև այն հազվագյուտ տարրերեն են, որոնց նշանակությունը կասկածից դուրս է: Առաջնի մասին պ. Պայազատ նկատում է, որ բառը այժմյան կենդանի բարբառում գոյություն չունի, բայց Վարդաշեն գյուղում այդպիսի ազգանուն կա, որ այդպես կոչվել է, ջրաբաշխական գործի հետ կապ ունենալու պատճառով, ինչպես հայերեն Ջրպետյան: Իսկ **patara** մնացել է ուտիերենում և նշանակում է նախ՝ **մաս, կտոր** և ապա՝ **հավաքավայր առևտրի:** Այսպիսի մեկնություններ կարդալուց հետո, այլևս հույս չի լինում լրջության որևէ նշույլ գտնել ուտիացի խալղագետի աշխատության մեջ: Պատմական հայտարարությունները Խալղերի և Աղվանների անցյալի, կամ նրանց չինական ծագման վերաբերյալ, հեղինակի անձնական կնիքն են կրում և ավելի արժեք չունին, քան իր լեզվագիտական արկածախնդրությունները:

Ո՛չ ցանկություն և ո՛չ իրավունք ունինք պ. Պայազատին խորհուրդ թելադրելու: Կուզեինք միայն որևէ կերպ պիտանի լինել եթե ոչ իրեն, գեթ հայ գրին: Մեզ թվում է, որ խալղական հարցին լրջորեն մոտենալու համար անհրաժեշտ է ամենից առաջ ասորագետ լինել, ընդհանուր գիտական պատրաստություն ունենալուց հետո, ավելի ճիշտ սեպագրագետ: Առանձնահատուկ գրականություն է, իր կարգ ու կանոնն ունի արտաքին ձևի և մտքերի էության և արտահայտության եղանակի մեջ: Այս բանին տեղյակ գիտունը, երբ ենթադրությանց է դիմում, պահում է չափ ու սահմանը, համակերպվելով սեպագիր գրականության ոգուն և ոչ թե ջրից օդ ցատկելով: Այդպիսին երբեք թույլ չի տա մտածել թե **alsusine** մակդիրը կարելի է հասկանալ՝ **al-su-si-ne՝ վերին գիշերվա-ն տեր-ին** իմաստով:

Մյուս կողմից ուտի լեզուն որևէ բանալի համարելուց առաջ՝ կարևոր է նախ և առաջ հիմնովին ուսումնասիրել լեզուն. բավական չէ ուտիացու գիտությունը, այլ հարկավոր է այդ գիտությունը անցնել լեզվագիտական հնոցով, որոշել օտարամուտ տարրերը, և կազմել զուտ ուտիական բառամթերքը իր քերականական ձևերով հանդերձ: Ոչ մի կասկած չունինք, որ պ. Պայազատը քաջ գիտե ուտի լեզուն. ինչպես որ մի հայ գյուղացի գիտե իր բարբառը վարպետորեն: Այս բնավ բավական չէ լեզվագիտական և մանավանդ ստուգաբանական դաշտում արշավներ կատարելու: Մի բան ևս հարկավոր է, որը սակայն դյուրությամբ ձեռք չէ բերվում, և լավ է թողնել, և



անել ինչ որ հնարավոր է: Ուտիերենի և ընդհանրապես լեռնականների լեզուների ուսումնասիրությունը անվիճելի է, եթե ոչ հեռավոր խալղագիտության, գոնե հայերենի ուսումնասիրության տեսակետից: Կարիք չկա ուտիերենը համեմատել հին աղվան անծանոթ լեզվի հետ, ինչպես անօգուտ է գրավաստակ լինել խալդերենին մոտեցնելու խնդրանքով: Ուտիերենը ազգակից է իր մերձավոր հարևաններին, օր. Ցախուրի, Ագուլի, Արչինի, Վայկուն (5): Շատ հավանական է, որ Արցախ, Ագուլիս, Հարճղավնի, Վայկուն աշխարհագրական անունները պահելու են երբեմն Հին Ուտիքի շրջանում ապրող երեք ցեղերի հիշատակը: Արցախի և Ցախուրի կապը մեզ շատ հավանական է թվում: Նաև Աղահեճ որ անտարակույս Լահիճ անունով հայտնի ցեղն է: Եթե հիշածս ցեղերի լեզուն լուրջ ուսումնասիրության նյութ եղած լիներ, թերևս մի դիպող առիթ կունենայինք Ղարաբաղի բարբառի անհատական գծերի ծագումը լուսաբանել, որ և խրատական կլիներ և ուրիշ գավառաբարբառների լուսաբանության համար (6):

Անտարակույս, պ. Պայազատ ավելի արդյունավետ գործ կատարած կլիներ, եթե իր եռանդը և ուսումնականի ծարավը նվիրեր ամբողջովին ուտի լեզվին և հետամուտ լիներ հավաքելու և հրատարակելու բոլոր այն նյութերը, որոնք պետք են նույն լեզվի ուսումնասիրությունը գիտական հողի վերա դնելու համար: Գրի առնել զրույցներ, պատմություններ, հավաքել բառամթերք, դարձվածներ, քերականական ձևեր՝ առանց ջանք գործելու մեկնաբանել, ահա՛ մի աշխատանք, որի համար երախտապարտ կմնա գիտությունը և որը պ. Պայազատի ձեռնհասության սահմաններումն է:

Պարիսի Ազգային գրադարանում կա մի ձեռագիր քերականություն ուտի լեզվի, որի հեղինակն է Կարապետ դպիր Ղահրամանյան-Ավքանտիլյան, և սա կատարել է իր աշխատությունը Հարություն արքեպիսկոպոս Սանահնեցու պատվերով: Պրուսայի առաջնորդ Գեորգ արքեպիսկոպոս (7) հետաքրքրվել է այդ գործով և ոմն Ղազար քահանայի ձեռքով ընդօրինակված մի օրինակ ստացել: Ինչպես երևում է այս օրինակից է արտագրված Պարիսի ձեռագիրը՝ 1859 թվին: Գործը շատ համառոտ է, բայց հետաքրքրական: Ինչ որ զարմանալի է, **-պի** հանգը ձայնափոխված է **փի**-ով և ոչ **բի**-ով. հեղինակն իրեն անվանում է Տաշբուլաղցի: Պ[արոն] Պայազատը կարող է հայթայթել մի օրինակ և այս գործից իր աշխատության համար:

# ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ԳՐԵԼ «ԱՄԵՆ» ԵՎ «ՉԵԶՈՔ» ԲԱՌԵՐԸ

## Ուղղագրական խնդիրներ

«Հայրենիք» ամսագրի խմբագրությունը հարկավոր էր համարել **չեզոք** և **ամեն** բառերում **ե** տառը փոխել **է**-ի «Մամիկոնյան իշխանուհի» հոդվածիս մեջ (1):

Ուղղագրական խնդիրները ինձ պակաս չեն հետաքրքրում և զբաղեցնում, քան պատվական խմբագրությանը, ուստի ես էլ իմ կողմից պետք եմ տեսնում տալ հետևյալ բացատրությունը:

Արևմտյան գրականության մեջ ընդունված է գրել **չէզոք** և **ամէն**, մինչդեռ արևելյանում սովորական է չեզոք և ամեն գրությունը: Վերջերս հ. Ղազիկյանը (2) սաստեց, որ անպատճառ **է**-ով գրեն և ոչ **ե**-ով և այժմ հայ թերթերը գրեթե անվրեպ հետևում են այս պատվերին: Հ[այր] Ղազիկյանը հավատարիմ է Մխիթարյան ավանդության, որի հիմնական աղբյուրն է «Հայկազյան բառարան»-ը:

Մխիթարյանները կարծել են, որ **չեզոք** բառը կազմված է **չէ** և **զոք** բառերից և ուրեմն պետք է գրել **է**-ով, որ էական բայի երրորդ դեմքն է: Բացարձակ մոլորություն:

Նախ չի կարելի ասել **չէ զոք**, ինչպես անհնարելի է ասել **չէ զմարդ**: «Հ[այկազյան] բառարան»-ը հարյուր տարեկան պատկառելի ծերունի է և, ինչ որ ներելի էր նրան, անթույլատրելի է մեզ, նրա թոռների համար:

**Չեզոք** բառը ելած է հունական դպրոցի արհեստանոցից: Առաջին անգամ երևան է գալիս Դիոնիսիոս Թրակացու քերականության թարգմանության մեջ: Այս թարգմանությունը հրատարակված է այստեղ 1826 թվին [Հ.] Ցահան-Զրպետ[յան]ի ձեռքով (3) և վերստին հրատարակել է տողերիս գրողը հայ մեկնիչների գործերի հետ միասին 1915 թվին՝ «Արուեստ Դիոնեսեայ քերականի եւ հայ մեկնութիւնք նորին», հրատ. Կայս[երական] Գիտությանց ճեմարանի, Պետրոգրադ, ընդարձակ հետազոտությամբ, ռուսերեն լեզվով (4):

Այս գործի մեջ **չեզոք** բառը համապատասխանում է հունական **oude**teros-ին: Վերջինս կազմված է **oude** և **eteros** բառերից. առաջինը բացասական մասնիկ է, երկրորդը նշանակում է՝ ոչ մին յերկուց (երկուսից և ոչ մեկը): Երկուսն են արական և իգական սեռերը, իսկ **oudeteros**, ուրեմն, ո՛չ մեկն է և ո՛չ մյուսը: Լատինացիք այս բառը թարգմանել են տառացի **ne-uter**: Մերոնք թարգմանել են չեզոք: Ի՞նչ է սրա կազմությունը:

Նույն գործի մեջ հույներեն **hen ti** հայը թարգմանել է՝ **եզ ինչ**, ուրիշ անգամ՝ **մի՝ ինչ**. հունարեն **oudamos** թարգմանել է **ոչ եզով իւիք**, ուրիշ անգամ՝ **ոչ մի իւիք**: Ասել է թե թարգմանիչը գործ է ածում մի սովորական բառի տեղ **եզ** որպես հոմանիշ, փոխանակ ասելու մի անգամ՝ ասում է **եզ** անգամ, եզով վանգիւ և այլն:

Ահա այս **եզ** բառն է, որ մտնում է նաև **չեզոք**-ի մեջ. **եզ-ոք** նշանակում է **մի-ոք, չ-եզ-ոք= ոչ-մի-ոք**: Լրիվ ձևը կլիներ ոչ-եզ-ոք, ինչպես ոչ-եզ-իք՝ ոչ եզով իւիք:

Այս վերլուծումը ցույց է տալիս, որ **է** տառը տեղ չունի չեզոք բառի մեջ:

Հները գրում էին չեզոք, ինչպես վկայում են ձեռագիրները: Բազմաթիվ օրինակներ եմ համեմատել հիշածս երկի հրատարակության ժամանակ և պետք է ասեմ, որ ոչ մի տեղ չեմ հանդիպել չէզոք գրության: «Հայկազյան բառարան»-ը, անշուշտ, մեղանչել է բանասիրության դեմ, երբ ընդունել է **չէզոք** գրությունը թյուր ստուգաբանության ճնշումով, այն ինչ պարտավոր էր հետևիլ ձեռագրական ավանդության:

Արդ՝ հակառակ հին և նոր Մխիթարյանների և համաձայն մեր նախնիքների ավանդի պետք է գրել անշեղ և անվրեպ **չեզոք** և երբե՛ք **չէզոք**:

* * *

Անցնենք մյուս բառին: Ինչպե՞ս պիտի գրել՝ **ամե՞ն** թե **ամէն**:

Եթե չեմ սխալվում հ. Ղազիկյանը կարծում է, որ այս բառը նույնն է, ինչ որ **մէն**, մի **այր** շալակին: Բառերը ի զուր տեղը ծանրություն չեն վերցնում: Այսպիսի ստուգաբանությունները միանգամայն աններելի են արդի լեզվագիտության տեսակետից:

Քննելի բառը առանձին չէ պատահում հին մատենագիրների մոտ: Նրա փոխարեն գործածական է **ամենայն**: Ծանոթ են նաև **ամենևին**, և **ամեն**-ով կազմված բառեր: Ագաթանգեղոսը Գ պրակում տալիս է այդպիսիների մի-մի շարան. «այդ ամենարարն, ամենաստեղծն, ամենահաստիչն, ամենահիմաստն, ամենատէրն, ամենակալն, ամենագիտն, ամենարժիշկն խրատեաց զձեզ»[1]:

---

[1] **Ագաթանգեղոս**, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 396:

**Ամեն-այն** բառը կազմված է այնպես ինչպես **մի-այն**, **համ-այն**: Եթե դասական մատենագրությունը չէ պահել **ամեն** բառը, տակավին չէ նշանակում, որ այդպիսին չի եղել: Գրականության մեջ մտել է հետագայում խառն լեզվից, կամ ինչպես ասում են, ռամկորենից:

Իսկ ի՞նչ է եղել **ամեն-այն**, **ամեն-ևին**, **ամենակալ** և նման բարդության մեջ առաջին տարրի` **ամեն**-ի նախնի ձևը:

Գիտենալով գրաբարի հնչական օրենքները, կարելի է վերականգնել բառի ինքնություն ձևը: Մխիթարյան հայրերը ենթադրել են, որ այդպիսի ձևն է **ամէն**, և սեռականը` ամեն-ի: Այստեղ մի թյուրիմացություն կա:

Հայտնի է, որ **է** հնչյունը, շեշտը կորցնելով, աղվում է **ի**-ի, օրինակ` պարտէզ, պարտիզի և այլն, ընդհանուր և հաստատուն օրենք է:

Քերականները սիրում են շեշտել, որ մի քանի բառերի մեջ **է** ձայնը նույն պայմաններում շրջվում է **ե**-ի, ինչպես աղուէս աղուեսու, աղէտ աղետի:

Այս դեպքերը նախ` շատ տարակուսական են: Աղուէսի և աղէտի հնագույն գրությունն է **աղուես**, **աղետ**, ուստի և աղուեսու, աղետի: Հետագայում **-էս** և **-էտ** վերջացող բառերի հետևությամբ սկսվել է գրվել աղուէս, աղէտ և ենթարկվելով ընդհանուր օրենքին դարձել շեղ հոլովներում` աղուիսու, աղիտի:

Սակայն, չհեռանանք մեր անմիջական խնդրից: Ենթադրենք անգամ, որ հիշյալ օրինակները ստույգ են: Ամեն պարագայում նրանք չեն ժխտում ընդհանուր օրենքը, քանի որ աղուէս աղուէսու ձևի կից կա նաև աղուէս աղուիսու ձևը:

Արդ` եթե ամէն բառը ևս պատկաներ նույն բացառիկ օրինակների թվին, այսինքն` հոլովվեր` ամէն, ամենի, ապա իրավունք ունեինք սպասելու նաև ամէն ամինի, կամ ամենայն և ամինայն: Այդպիսի ձևեր հայտնի չեն բնավ: Հետևապես և **ամէն** գրությունը սխալ է, և **ամեն-այն** բառի մեջ առաջին տարրը սղումն չէ **ամէն** ձևի:

Ռամկորենի մեջ ևս հայտնի է ըմեն, զըմեն, բայց երբե՛ք ըմին, որ սպասելու էր եթե սկզբնական ձևը լիներ ամէն:

Ի՞նչ է, ուրեմն, որոնելի ամենի ձևը: Ամե՞ն: Ոչ: Ամեն-ի մեջ արմատական է **ամ**- և մասնիկը` **են**: **Ամ**- զուտ հայացի ձևն է **համ**-ի, որ պարսիկ փոխառություն է, հավանորեն, քան նույն արմատի մի ուրիշ հայ ձևը: - **Են** մասնիկը չէ կարող նախնական լինել, ապա թե ոչ պիտի հնչեր -**ին** հին լեզվի հնչական օրենքով: Պետք չկա կանգ առնել այս երևույթի վրա:

- **Են** մասնիկը այլ բան չէ և չէ կարող լինել, եթե ոչ սղումն -**եան** մասնիկի: **Ամեն**-ի հնագույն ձևը պետք լինի **ամեան** (հմմտ. **ամենեքեան**): Թե որքան ճշմարիտ է մեր վերականգնումը, վկայում է ղարաբաղցին, որ արտասանում է` **ամյան օր** (ամեն օր), ճիշտ այնպես, ինչպես ասում է` երկոքան: Երկոքան



= հին երկոք-եան, ուրեմն ամյան պետք է հնչեր հնում **ամեան**: Ինչպես որ հին **ցորեան** դառնում է **ցորեն**, այնպես էլ հին ամեան դառնալու էր **ամեն**:

Արևմտյան բարբառում գործածական է **առեն** բառը ժամանակի մտքով: Սա ուրիշ բան չէ, եթե ոչ սղումն հին **առեան** բառի: Եթե այս բառը ևս մեզ հասած չլիներ իր սկզբնական ձևով, այլ ծանոթ լիներ միայն առենական, առենակալ և նման ածանցումներով, երևի արևմտյան գրագետները այսօր էլ կգրեին **առեն** և ոչ **առեան**, ինչպես որ գրում են **ամէն** փոխանակ **ամեն**-ի:

Այս բոլորից հետևում է, որ **ամեն** բառը պետք է գրել **ամեն** և ոչ **ամէն**: Սրանով մենք մեղանչած չենք լինի գրաբարի դեմ, քանի որ գրաբարում այդ բառը չկա, և ընդհակառակը մեղանչած կլինեինք աշխարհաբարի դեմ, եթե գրեինք **ամէն**: Գրել` ամէն, հետո ամենայն, ամենատես, կատարյալ անհետևողականություն է արդի գրական լեզվի տեսակետից, թողենք գրաբարը:

Կա ևս մի ուրիշ հանգամանք: Պարզությունը և միօրինակությունը հիմն և նպատակ է ուղղագրական արվեստի: Երբ լծորդ հնչյուններ և տառեր ընդհարվում են, ուղղագրական շահը պահանջում է լուծել վեճը ի նպաստ ավելի տարածված հնչյունի թե տառի:

Այս տեսակետից բոլոր այն դեպքերում ուր կարելի է և խոտելի չէ **ե** գրել փոխանակ է-ի, միշտ ողջունելի է: Երկու թե երեք բառ կա հայերենում, որ է-ով են սկսվում: Բառամիջի է-երը ևս բազմաթիվ չեն և մեծ մասամբ պարսիկ և հույն փոխառություններ են: Մինչդեռ հարյուրավոր բառեր կան **ե**-ով սկսվող և հազարավոր, որ **ե**-ն ունեն իրենց մեջ: Պարզության, ուրեմն և դյուրության նկատումով ցանկալի է հապավել է-ի թիվը և ոչ թե աճեցնել:

Մեր նախնիք գրում էին հնում` **թե**, **եթե**, **ասեի**, **ասեիր** և այլն: Արդի գրական լեզուն ավելի իրավունք ունի այդպես գրելու: Նա կարող էր նաև հրամայականը գրել` **երգե՛** (և ոչ **երգէ՛**), **խոսե՛** (և ոչ **խոսէ՛**) և այլն: Հին երգեա՛ սղմվելով տալիս է երգէ՛, ինչպես գրում ենք կարդա՛ (և ո՛չ կարդա՛յ):

Այս բոլորը նայում են ապագային և լավ օրերին: Այժմ շեշտում եմ միայն սկզբունքը, որ է-ի կիրառությունը պետք է նվազեցնել հօգուտ **ե**-ի, ինչպես և **օ**-ի գործածությունը` հօգուտ **ո**-ի:

Թերևս առիթ ունենամ ուրիշ անգամ անդրադառնալու այս հարցերին (5): Ներկայիս գոհ կլինեի, եթե ճշմարտությունը գեթ այս երկու բառերում, **չեզոք** և **ամեն**, արժազանք գտնե այնտեղ, ուր ընդունակություն կա զատելու ստույգը սխալից: Իսկ եթե ամեն ոք ուզում է պահել իր ազատությունը և գրել ինչպես հարմար է գտնում, ապա թո՛ղ ազնվամիտ խմբագրությունները չրնանան ինձ վրա և թույլ տան ինձ վարվել այնպես, որպես թելադրում են բազմամյա դեգերումներս (6):

# ՆՈՐԻՑ «ՉԵԶՈՔ» ԵՎ «ԱՄԵՆ» ԳՐՈՒԹՅԱՆՑ ՄԱՍԻՆ

«Հայրենիք»-ի ընթերցողները, թերևս, կհիշեն մեր նկատողությունը այս երկու բառերի վերաբերյալ, ուր առաջարկում էինք չեզոք և ամեն: Վենետիկի հայրերից մեկը, հ[այր] Ա. Ղազիկյան, հանդես է եկել «Բազմավեպ»-ի վերջին թվում հերքելու մեր բացատրությունները և ապացուցանելու, որ ուղիղ գրությունն է չէզոք և ամէն (1):

Ցավով պետք է նկատենք, որ պատվական հայր սուրբը գրում է այնպիսի ոգով և ոճով, որ վայել չէ ո՛չ իր կոչման, ո՛չ այն մեծ միաբանության, որին պատկանելու պատիվն ունի, և ո՛չ մանավանդ հայ բանասիրության: Ուղղագրական խնդիրները բնավ այն կնճիռներից չեն, ուր տեղն ունին կիրքն ու բուռն զգացումները: Բանասիրությունը խաղաղ և խոհուն մտքի, հանգիստ և կշռված խոսքի դաշտ է: Մինչդեռ հ[այր] Ա. Ղազիկյան Ս. Ղազարի անդորր մենաստանից իջնում է այն դաշտը այնպիսի թափով և սանձարձակ լեզվով, որ ուռնահար է անում ո՛չ միայն գիտության, այլ և քաղաքավարության բարի քաղցրերը:

Հասկանում ենք, ի հարկե, որ բիրտ խոսքը, կոպիտ գրիչը գուցե և պետք է երբեմն,- այդ ճաշակի և կրթության խնդիր է,- սակայն, մի անհրաժեշտ պայմանով, որ նրանք բերեն մեզ ճշմարտության մի նշույլ կամ արդարության մի շող:

Հ[այր] Ա. Ղազիկյանը գուցե հայկաբան է, բայց բանասեր չէ և ո՛չ լեզվագետ: Ուստի խսպառ անծանոթ է այն մեթոդներին, որոնցով լուծվում են լեզվական և բանասիրական վեճերը, հաստատվում կամ հերքվում նրանց հակ կարծիքները: Տկար է նաև քերական արվեստի մեջ. քերականության հիմը կազմող տրամաբանական գաղափարները խուսափում են նրա հասկացողությունից: Բանասիրական հարցերում նա պակասավոր է:

## I

Վեճի նյութը երկու չարաբախտ բառերի ուղղագրությունն է: Առնենք նախ առաջինը՝



## ՉԷԶՈՔ ԹԵ ՉԵԶՈՔ

Հ[այր] Ա. Ղազիկյան պնդում է, որ պետք է գրել չէզոք, որովհետև բառը ստուգաբանորեն նշանակում է (նա)-չ-է-զոր:

Մենք առարկում ենք, որ սա ժողովրդական կոչված ստուգաբանություններից է և ավելի արժեք չունի, քան թե ասենք **լիճ** նշանակում է **լի ջրով**, կամ **մինիստր** նշանակում է **մի՛ նստիր**: Չի կարելի ասել նա **չէ զօր**, ինչպես անհնար է ասել նա է **զմարդ**: Ոչ մի մտածությամբ, ոչ մի քերականությամբ և ոչ մի լեզվով, կարելի չէ այդպիսի նախադասություն կազմել: Անկարելի է:

Վենետիկի հայկաբանը համառ է և ասում է կարելի է. և փորձում է հիմնավորել: Երկու բան է առաջարկում. մեկը՝ «ընդհանուր մեկնություն է», մյուսը՝ «անձնական մեկնություն»:

Առաջինի համար նախ փորձում է օգնության կոչել Ա. Բագրատունու «Ջարգացելոց»-ը (2) և միանգամայն անհաջող: Բաց արեք հայր Ղազիկյանի ցույց տված էջը՝ 663 (և ո՛չ 665, ինչպես Ղազիկյանի մոտ է, որ այնքան խստապահանջ է ուրիշների վրիպակների վերաբերյալ): Այստեղ խոսքը կապերի մասին է: Հ[այր] Բագրատունին թվելով այն հնչյունները, որ իր կարծիքով հոյակապ են, հիշում է նաև, որ բառերը կապվում են նմանապես նախդիրներով, ինչպես՝ ափ **ի** բերան, խիտ **առ** խիտ, գիրկ **ընդ** խառն, օր **ըստ** օրէ, գոյն **զ** գույն, թել **զ** թել, երբեմն շաղկապով՝ ինչպես պարտուպատշաճ, այրուձի և այլն:

Հ[այր] Բագրատունին չի հիշում սրանց թվում չեզոք բառը, բայց հ[այր] Ղազիկյանը իրավունք է համարում իր կողմից ավելցնել. «այսպես նաև չէզոք», կցելով անմիջապես «հմմտ. Ջարգացելոց, էջ 665 (?)», որով միամիտ ընթերցողը կկարծեր, թե հ[այր] Բագրատունին համակարծիք է հ[այր] Ղազիկյանին, թե չէզոք բառին մեջ զ-ն նախդիր է:

Այս գյուտը պատկանում է միմիայն հ[այր] Ղազիկյանին, որ կարծում է, թե զ գրված է չեզոքի մեջ «բառի հնչյունը քաղցրացնելու և միանգամայն ուժ տալու»: Եվ որովհետև զգում է **գոյնզգոյն** և **թելզթել** բառերը կաղապար չեն կարող ծառայել չէզոք-ին, ոչ իրենց զ-ով և ոչ իրենց ծագումով՝ դասական բառեր չեն, այլ ժողովրդական, շտապում է բերել մի ուրիշ օրինակ իր կարծիքը հաստատելու համար: Օրինակը ոսկեՋօծ բառն է, որ մեր պատվարժան հայկաբանի ենթադրությամբ «նոյն ոճով է շինուած», ինչպես չէզոք բառը: Քա՛վ լիցի: Ոսկեզօծ բառը կազմված է ոսկի և զօծանել արմատից **ա** կապի միջոցով ոսկի-ա-զօծ, որից ոսկեազօծ և հետո ոսկեզօծ

(և ոչ ոսկէզօծ): Անշուշտ հակաճառելու փութկոտության պետք է վերագրել այս կոպիտ սխալը, որ ավելի lapsus է, քան սխալ:

Բայց ով գիտե, հ[այր] Ղազիկյան գուցե իսկույն նայե «Հայկազեան բառարան»-ը և այնտեղ չգտնելով զօծանեմ բայը, կշտամբե մեր տգիտությունը: Ուստի բարվոք է հառաջուց զգուշացնել պատվական հորը, որ զօծանեմ կազմված է օծանեմ-ից այնպես [ինչպես] զօղեմ-ը՝ յօղեմ-ից, կամ զիջանեմ-ը՝ իջանիմ-ից և այլն: Եվ որ զօծանեմ բառը գոյություն է ունեցել, անսուտ վկան է ոսկեզօծ բառը: Բարդությանց մեջ հաճախ պատահում են բառեր, որ առանձին չեն պահված, կամ գուցե ցայժմ չեն երևացել հրատարակված երկերի մեջ (ինչպես օրինակ՝ հետազոտել):

Այսպիսով՝ «ընդհանուր մեկնությունը» հօդս ցնդեց, մնաց հ[այր] Ղազիկյանի «անձնական մեկնությունը»:

Ահա այդ մեկնությունը, որ անհեթեթության գլուխ-գործոց է.

«Էական բայերը հունական ոճով կառնեն նաև հայցական հոլով՝ բնության խնդիր», - պատգամում է մեր հայկաբանը և ավելացնում է, որ «այս ոճը կա նաև ուրիշ եվրոպական լեզուներու մեջ»: Եվ օրինակ է բերում՝ monsieur, etes-vous le pere de cet enfant: Oui, je le suis և այլն: Այստեղ le հայցական հոլով է,- բացականչում է հայր Ղազիկյան ինքնարավ շեշտով:

Ո՛չ, վարդապետ, բերած օրինակում, ինչպես և մյուսներում, le, la, les ոչ մի կերպ հայցական հոլով չեն: Ո՞ր բարբարոս քերականությունից եք հանել այդ գիտությունը: Je le (= le) suis նախադասության մեջ le ստորոգելի է և ոչ խնդիր: Փոխանակ ասելու՝ je suis le pere, ասում է՝ je le suis, և le նույն դերն ունի, ինչ որ le pere, այսինքն՝ ստորոգելի է (peredicat) և այն հոլովն ունի ինչ որ ենթական (sujet): Էական բայը le-ի թե le pere-ի մոտ համարվում է կապ (copula) և երբեմն բոլորովին բաց է թողնվում, ինչպես ռուսերեն լեզվում: Մենք ևս ասում ենք՝«ես ծառա եմ՝ դու՝ իշխան (փոխանակ՝ դու իշխան ես): Կարիք չկա ֆրանսերենին դիմելու, հայերենում և ընդհանրապես բոլոր լեզուներում նույն գործածությունը կա: Այսպես՝ «դու այն մարդն ե՞ս, որին ծանոթացա անցյալ երեկո», «այո՛, ես այն եմ» (=je le suis). ոչ մի կերպ չի կարելի ասել՝ ես զայն եմ»:

Թվում է, թե հ[այր] Ղազիկյանը շփոթել է je le connais-ի հետ, ուր le հայցական է, որովհետև՝ ներգործական բայի լրացումն է կամ ըստ Բագրատունու սեռի խնդիր:

Սակայն, ի զուր է մեր կողմից այս փրկարար ենթադրությունը: Երբ հ[այր] Ղազիկյան օտար լեզուներից անցնում է հայերենին, այլևս կասկած չի մնում որ նրա մոլորությունը պատահական սայթաքում չէ, այլ բխում է



քերական անհասկացողությունից, եթե չասենք ավելին:

Պատվական հայրը ոչ միայն համոզված է, այլ և ճգնում է ապացուցանել և ուրիշներին համոզել, որ էական բայը հայոց լեզվում «կառնե նաև հայցական հոլով՝ բնության խնդիր» (!): Եվ օրինակներ է շարում իրար ետևից:

Օրինակները քաղված են Բագրատունու «Ձարգացելոց»-ից: Այս մասին մեր հակառակորդը հիշատակություն չի անում: Ինչո՞ւ: Որովհետև հայր Բագրատունին նույն օրինակների առթիվ նկատում է. «առ աներոշ դերբայիւ յոգնակի ուղղական խնդիր դնի սովորաբար ս յանգիւ»[1]: Ասել է, թե Բագրատունին հայցական հոլով չէ համարում այն, ինչ որ հայր Ղազիկյանի կարծիքով հայցական է, այլ համարում է հոգնակի ուղղական ս յանգի:

Դարձյալ՝ ուրիշ օրինակների մասին, որ արտագրում է հ[այր] Ղազիկյան, նույն Բագրատունին ասում է. հայցական հոլովը «քստինքեան ոչ պատշաճի էական բայից, բայց առնուն ի տեղի ուղղականի»[2]:

Այս նկատողությունները ցույց են տալիս, որ հ[այր] Բագրատունին զգացել է, որ էական բայի մոտ հայցականի ներկայությունը քերականական անհեթեթություն է, բայց չի կարողացել պարզել գործի էությունը:

Հ[այր] Ղազիկյան, որ պահանջում է. «աշխարհիս բոլոր պրոֆեսորներից գլուխ ծռել խոնարհությամբ հայր Բագրատունու առջև» (3), միայն իրեն է վերապահում բացառիկ արտոնություն ընդվզելու նույն Բագրատունու դեմ ամեն անգամ, երբ հարմար է գտնում և չի ընդունում օրինակ՝ այս դեպքում նրա կարծիքը, որ էականի մոտ դրված հայցականները ուղղական են ս հանգով և ոչ հայցական:

II

Տարաբախտաբար հ[այր] Ղազիկյանը շեղվում է իր մեծ վարդապետից ոչ թե նրա տարակուսանքը լուծելու և կամ սխալը ուղղելու համար, այլ որ նորանոր ավերումներ գործե քերական արվեստի մեջ:

Իրավ է, որ էականի մոտի հայցականները հայցական են, բայց դրանք չեն վերաբերում էական բային, այլ ենթարկվում են ուրիշ բայի: Այն օրինակները, որ շփոթության և մոլորության մեջ են ձգել երկու հ[այր] Արսեններին (4) արդյունք են մեծ մասամբ հունարեն accusativus cum infinitivo [հայցական աներոշ դերբայով] դարձվածքի:

Հայտնի է, որ այդ դարձվածքը գործ է ածվում verba dicendi կոչված բայերից հետո, այսինքն՝ այնպիսի բայերից, որոնք նշանակում են՝ ասել,

[1] Ա. Բագրատունի, Ձարգացելոց, էջ 600:

[2] Նույնը, էջ 618:

խոսել, կարծել, կամենալ և այլն: Օրինակ՝ ասեն **զՎարդան** լինել **քաջ**, ասեն **զնախարարս** հայոց լինել **քաջս**: **Քաջ** և **քաջս** – հայցական են և անգիտակ մարդը կարող է կարծել, որ **լինել** պահանջում է հայցական հոլով, ինչպես անում է հ[այր] Ղազիկյան, մինչդեռ **քաջ** և **քաջս** վերաբերում են քերականորեն **զՎարդան** և **զնախարարս** հայցականներին, որոնք կախում ունին **ասեն** բայից:

Ահա հ[այր] Ղազիկյանի օրինակներից՝ «ընտրեաց **զմեզ** լինել **սուրբս** եւ **անարատս**»: Ընտրեաց է verbum dicendi և պահանջում է acc. cum infinitivo: Հայր Ա. Բագրատունին հետևելով իմաստին կարծել է, որ **սուրբս** և **անարատս** ուղղական հոլովներ են – **ս** հանգով, իսկ հայր Ղազիկյան, արհամարհելով քերականական օրենքը, կարծում է, որ այս հայցականները վերաբերում են **լինել** բային, մինչդեռ քերականորեն **սուրբս** և **անարատս** կապված են **զմեզ**-ի հետ և կախում ունին **ընտրեաց** բայից:

Սույն կարգի են և հաջորդ օրինակները՝ «լինել հեթանոսաց ժառանգակիցս և մարմնակիցս», և «ծերոց զգաստս լինել, պարկեշտս, ցածունս»: Այս նախադասությունները թերի են, բաց է թողած գլխավոր բայը, որից կախում ունին:

Հայր Ղազիկյանը արտագրելով հայր Բագրատունու թված օրինակները պետք չի զգացել կամ չի ուզեցել նեղություն կրել՝ ստուգելու, թե որտեղից են առնված: Այդ հոգնությունը մեզ է թողել: Երբ ստուգեր, կտեսներ, որ առաջինը քաղած է Եփես. Գ, 6, և գլխավոր բայը, որից կախված է բերած օրինակը, է **յայտնեցաւ**, իսկ երկրորդը՝ Տիտ. Բ, 1, ուր գլխավոր բայն է **խօսեաց**: Երկուսն էլ պահանջում են հիշյալ դարձվածքը և այդպես էլ թարգմանել են մերոնք (չնկատելով, որ առաջինը nominativus cum Acc. [ուղղականն անորոշ դերբայով]):

Հունարան գրողները թե թարգմանները մեզանում հետևել են հունական ոճին ստրկորեն, իսկ հայացի թարգմանիչներն աշխատել են հայացնել, որքան կարելի է:

Այսպես՝ Մատ. ԺԶ, 13, հույն նախադասությունը (tina me legousin և այլն) որ մի acc. cum int. է, հունարան հայը թարգմանել է՝ «Զո զիս ասեն մարդիկ գոլ, զորդի մարդոյ»[1], իսկ հայացի թարգմանիչը՝ «Զո՞ ոք ասեն զինէն մարդիկն թէ իցէ որդի մարդոյ»:

Հ[այր] Ղազիկյան բերում է սույն նախադասությունը, հետևելով հայր Բագրատունուն (էջ 618), ըստ Ղուկ. Թ, 20. «իսկ դուք զո՞ ոք ասէք զինէն թէ իցեմ. պատասխանի ետ Պետրոս եւ ասէ. «Քրիստոսն Աստուծոյ». և միամտորեն կարծում է, որ զո՞ ոք և **զՔրիստոսն** Աստուծոյ հայցականները

[1] **Տիմոթէոս Կուզ**, էջ 97:



**իցեմ** բայի բնության խնդիրն են: Ամենևին ոչ: **Զո՛ ոք – ասէք** բայի խնդիրն է, որ ըստ պահանջի acc. cum int. ոճի, ուր մյուս հայցականը հայը դարձրել է **զինէն**: Պետրոսի պատասխանը հակիրճ է, բաց է թողած տնօրէն բայը, որ նույն **ասեմք**-ն է. («ասեմք) զՔրիստոսն Աստուծոյ (զքէն եթէ իցէք) – ապա լրիվ պատասխանը համաձայն հարցին՝ «զո ոք ասէք զինէն եթէ իցեմ»:

Մատ., ԺԶ, 13, նույն հարցին Պետրոսը պատասխանում է անկախ նախադասությունով՝ «Դու **ես Քրիստոսն**» (եւ ո՛չ **զՔրիստոսն**), նմանապես Գործք Առաք. ԺԳ, 25, Հովհաննես Մկրտիչը պատասխանում է իրեն ուղղած նմանօրինակ հարցին՝ «չեմ **ես այն**» (և **ո՛չ զայն**): Ինչո՞ւ, որովհետև անկախ նախադասություններ են և չեն ենթարկվում որևէ verbum dicendi, ինչպես Պետրոսի պատասխանը՝ «զՔրիստոսն Աստուծոյ»:

Հ[այր] Ղազիկյանին շփոթեցրել է նաև «հարկ է գոլ զոմն» և նման օրինակները: Հունարենում dei (= հարկ է, պարտ է) դիմազուրկ բայը պահանջում է acc. cum inf. ուստի և **զոմն** չէ վերաբերում **գոլ** բային, այլ կախում ունի **հարկէ**-ից:

Սակայն, այն՝ ինչ որ գայթակղության իսկական քար է Ղազիկյանների համար, այդ Հովհան Օձնեցուց բերված վկայությունն է. «Զոր էրն ոչ ի բաց թողլով, եղեւ **զոր, ոչն էր**»: Անհաստատ մտքերի համար կատարյալ որոգայթ է:

Դժբախտաբար հ[այր] Ղազիկյան սովորություն չունի տնտղելու, ստուգելու ըստ աղբյուրների այն երևույթները, որ արձանագրել է հայր Բագրատունին գրեթե մի դար առաջ:

Արդ՝ հիշյալ նախադասությունը պոկված է Օձնեցու «Ընդդէմ երեւութականաց» ճառի մի մեծ պարբերությունից: Ճառի լեզուն թույլ չի տալիս ենթադրելու, որ հեղինակը կարող էր լեզվական կոպիտ սխալ անել: Պատճառը ուրիշ տեղ է որոնելու: «**Եղեւ զոր** ոչն էր» այլ բան չէ, քան անվարժ ընդօրինակողի սխալանք փոխանակ «**եղեալ որ** ոչ էր»: Սխալ ընթերցումը ծագել է նրանից, որ **ա**-ի տեղն հաջորդ լ-ի հետ թվացել է **զ**, և մնացյալը (**եղես** - կարդացվել **եղեւ**: Նախադասության ելևէջը նույն է վկայում. «զի թէեւ **ասեմք** «մի բնութիւն բանին մարմնացելոյ»՝ ո՛չ այդպես խելահեղ և ջախջախ (տպ. ջաղջախ) մտածութեամբ, որպէս «թէ միոյն և միւսմէն ի **բաց բարձեալ** և կամ լուծեալք ի միմեանց որպէս խոնաւուտ բնութեանցն, յորմէ լինի և ոչ մի բնութիւն, այլ զոր էրն ոչ ի բաց թողլով, **եղեալ որ** ոչն էր (տպ. **եղեւ զոր** ոչն էր)»: Նախադասության շեշտն է՝ «**ասեմք** ... ոչ ի բաց **բարձեալ** եւ կամ **լուծեալք** ... **այլ եղեալ**»: Նույն ճառի մեջ քիչ առաջ գտնում ենք. «զի որպէս արդիւնք եղիցի **որք ոչն են**»:

Եթե արդարև ընդօրինակողը ընդունակ էր նման սխալի, ապացույց մի ուրիշ սխալ հետևյալ նախադասության մեջ. «եթէ յիւրումն մնալով՝ զերեւութական միայն զձեւն զինքեամբ **արկաւ**(?), առ աչօք եւ ձեւով եւեթ **ցուցեալ** զմերն ի կուսէ» և այլն:

**Արկաւ** ուղղելի է **արկեալ**-ի, որովհետև չի կարելի ասել զձևն ... արկաւ – ենթական՝ հայցականում, այլ զձևն ... էարկ, կամ **արկեալ**, ինչպես պահանջում է նախադասության էջքը, նման **ցուցեալ**-ի: Հասկանալի է, որ նման վիրավոր օրինակներով չի կարելի հաստատել, թե էական բայը հայցական խնդիր է առնում և ուրեմն հնարավոր է ասել «նա չէ **զոք**»: Քերականական ծայրաստիճան անհեթեթություն:

Ասել էինք մեր հակառակորդին բան հասկացնելու համար, թե չի կարելի ասել «սա չէ **զմարդ**»: Ուրախ ենք, որ այս բանը հասկացել է, բայց տակավին չի հասկացել, որ անհնարին է ասել նաև «**նա չէ զոք**»: Եվ դեռ նկրտում է մեզ բացատրել, թե ինչո՞ւ մեկը չի կարելի ասել, բայց մյուսը կարելի է: «Պատճառն այն է, որ **մարդ** գոյական է և **ոք** դերանուն», - ասում է այդ զարմանալի քերականը: «Դու **զո՞** առնես զքեզ» - հոս զայ դրուեցաւ,- շարունակում է նույն քերականը. «զանձն **քո** Աստուած առնես» - հոս չդրուեցաւ, որովհետև Աստուած գոյական է»:

Ճշմարիտն ասած, չենք հասկանում, ի՞նչ կապ կա այս «գիտելիքի» և վիճելի խնդրի մեջ: **Առնել** պատկանում է այն բայերի դասին, որ երկու հայցական են վերցնում: Սակայն էական բայը չի պատկանում այդ բայերի թվին և չի կարող առնել ոչ թե երկու հայցական, այլ անգամ մի հայցական:

Ինչո՞ւ համար է այս առենախոսությունը: Վեճը այն չէ, թե **ոք**-ի հայցականը միշտ **զոք** է, այլ այն, թե կարելի՞ է արդյոք որևէ հայցական կապել էական բայի վզին: Եվ այս գիտության և տրամաբանության տեր մարդը դեռ մեզ է արգահատում, որ ասում ենք, թե կարելի չէ ասել «նա չէ զոք»: Beata inscientia! [Երանելի՜ տգիտություն]: Իրոք, արգահատելի է դրությունս, որ չեմ կարողացել հասկացնել Վենետիկի նշանավոր հայկաբանին այն տարրական քերականական ճշմարտությունը, որ անվիճելի սեփականություն է ամեն մի դպրոցականի:

III

Հ[այր] Ղազիկյան գերազանցում է ինքն իրեն, երբ ճգնում է հերքել մեր առաջարկած ուղղագրությունը: Մի բան որ ձեռք է բերվում որոշ մեթոդով, կարելի է ջրել ոչ այլապես քան կիրարկելով նման մեթոդ: Մեր մեթոդը շատ հստակ է: Չեզոք բառը իր կազմով հավասարազոր է հույն oudeteros-ին: Դիոնիսիոս Քերականի գործի հայ թարգմանչությունը, ուր պատահում ենք առաջին անգամ վիճելի բառը, բնավին նյութական է, բառացի: Արդ՝ հույն oudeteros բառի մեջ էական = esti բայը չկա, որպեսզի հայ թարգմանության մեջ որոնենք և գտնենք **Է** բայը: Հույն բառի սկզբի տարրը ժխտական մասնիկ է, ուրեմն իրավունք ունենք ասելու, որ հայ բառի մեջ ևս առաջին հնչյունը բացասական մասնիկ է, որ է չ: Հայ բառի վերջի տարրը հայտնի



է, այդ **ոք** դերանունն է: Հետևապես, մնում է խնդրական միջին **-եզ-** տարրը՝ **չ-եզ-ոք**:

Ի՞նչ կարող է լինել, **եզ** թէ **էզ**: Վերլուծումը հասկանալի է:

Արդ **էզ** ոչինչ չի նշանակում հայերեն, ընդհակառակը **եզ** մի բառ է, որ նույն երկի մեջ ընդունված է և գործ է ածվում համազոր **մի** բառի:

Այսպես հույն բնագրի hen ti ունի իր դեմ միանգամ **եզ ինչ**, մյուս անգամ՝ մի տող ստորև՝ **մի ինչ**. հույն ex henos = **ն-եզէ**, ուր **ն** նախդիր է. **եզ առ մու** = henos pros hena, այլև **եզ անգամ եզ ձայն, եզով վանգիւ**, և վերջապես՝ **ոչ եզով իւիք**: oudamos և **մի՛ եզով իւիք** = medamos: Այս վերջին ընթերցումի փոխարեն, որ պահվել է միայն մի քանի մեկնությանց մեջ, ինչպես Համամի, Դիոնիսիոսի մեզ հասած ձեռագիրները ունին՝ **մի՛ միով իւիք** (մեր հոդվածում տպված է վրիպակով մի՛ իւիք և այս անմեղ վրիպակը, հասկանալի ինքնըստինքյան, առատ և մեղապարտ նյութ է տվել հայկաբան հակաճառողիս մտքին): Հիշենք նաև **եզական** = henikos շատ սահեպ գործ ածված:

Արդ՝ այս բոլորը ցույց են տալիս որ **եզ** բառը պատահական չէ Դիոնիսիոսի թարգմանի մոտ, այլ սովորական, սահեպ գործածված բառ: Եվ ուրեմն ոչ մի անպատեհություն չկա, որ նույն **եզ**-ը նստած լինի **չ-եզ-ոք**-ի մեջ, ոչ մի անպատեհություն, որ **եզ**-ը որոնենք և գտնենք այնտեղ, քանի որ ուրիշ **եզ** հայտնի չէ:

Եթե հ[այր] Ղազիկյանի սողոմոնյան դատաստանին հետևելով կիսենք **եզ**-ը և **ի-ն է** շինելով տանք չ-ին, որպեսզի ստացվի չէ, ապա ո՞ւր խոթենք մինակ մնացած զ, հաջորդ **ոք**-ը, ինչպես տեսանք, բացե բաց մերժում է ընդունել սարսափելով չէ-ից: Պարզ է:

Ասել ենք, **եզով իւիք** գործիական հոլով է, ուղղականը կլինի **եզ ոք** = մի **ոք**, ժխտական մասնիկով **չ-եզ-ոք** = **ոչ մի ոք**: Արդյո՞ք անօրինակ և խորթ կազմություն է հայերենի տեսակետից. երբե՛ք: Բավական է հիշել **ինչ** և ոչ-ինչ, կամ **չնչին** (= չ-ինչ-ին) կամ **չնչեան** (չ-ինչ-եան), **իք** և **չ-իք**: Իմաստի կողմից ևս անխոցելի է: Դիոնիսիոսի քերականության կից պահված է հին բառարան, ուր ասված է. չեզոք = ո՛չ արու և ո՛չ էգ, ճիշտ այս է արտահայտում չեզոք-ը իր կազմով, ասում ենք՝ **ոչ ոք, ոչ մի ոք**, մեր հեղինակը **մի**-ն փոխարինել է ձայնավոր սկսվող նույնանիշ **եզ** բառով:

Ի՞նչ կարելի է ասել սրա դեմ:

Հ[այր] Ղազիկյան երկու առարկություն է անում, մեկը՝ ներողամիտ նազով, մյուսը՝ աղմկոտ սազով, մեկը մյուսից «եղերական»:

Առաջին առարկությունն է թե **եզով իւիք**-ի ուղղականը կլինի որպես թե **եզ իք** և ոչ եզ ոք:

Գիտուն վարդապետը սխալվում է: **Ոք** բառը գործիական չունի, ուստի և

փոխ է առնված **իւիք**-ը, որի ուղղականը՝ **իք** յայտնի է դասական մատենագիրների մոտ միմիայն **չիք** ձևով. իք առանձին գործածական չէ:

Պերի-Արմենիասի թարգմանիչն (5) է առաջին անգամ փորձել մտցնել գրականության մեջ **իք**, որ անշուշտ գոյություն ուներ ռամկերենում, ինչպես այժմ: Կարևորն այն է, որ Դիոնիսիոսի թարգմանիչը ևս գործ չէ ածում -**իք** ուղղականում, բայց գործ է ածում ոք: Արդ բնական է ընդունել, որ եզով իւիք-ի ուղղականը **եզ ոք** է և ոչ եզ իք: Հ[այր] Ղազիկյանը տակավին պետք ունի սերտելու Չարզացելոց-ը նախ քան մեզ վեհանձնորեն հայերենի դասեր տալը:

Մյուս առարկությունն երկճղանի է: Ներողամտորեն ընդունում է, որ **եզ ոք** կարող է գոյություն ունենալ, բայց անիմաստ է գտնում, որովհետև «թվական ածական են երկուքն ալ»: Ո՛չ, վարդապետ, **ոք** գոյական է, և կարող է ածականաբար էլ գործ ածվել, ինչպես ուրիշ գոյականներ: **Մի ոք**, **եզ ոք**, ոչ մեկը և ոչ մյուս երկու ածականներից չեն կազմված:

Այնուհետև առարկում է, որ **ոչ մի ոք** կարելի է ասել, բայց ոչ **եզ ոք** «ըսվածը չկա» և եթե լինի էլ, թվական ածականի վերա տեսնված չէ չ ժխտականը: Սակայն ո՞րն է այն ավետարանը, որտեղից լեզվական պատգամներ է հանում Հ[այր] Ղազիկյան, թե այս կարելի է և այն չէ կարելի:

**Ոչ մի ոք** սովորական է, իսկ **ոչ եզ ոք** կարելի այն հեղինակի կողմեն, որը հնարավոր է գտել ասել՝ **եզ** անգամ (= մի անգամ), **եզ** վանգիւ (= մի վանգիւ), այսինքն որ **մի**-ի տեղ գործ է ածում նաև **եզ**:

Գալով այն թերմտության, թե թվականները ժխտական չեն վերցնում, պետք է նկատենք, որ խոսքը ընդհանրապես թվականների մասին չէ, և ոչ նույնիսկ մի թվականի, այլ **մի ոք** կամ **եզ ոք** դերանվանական գոյականի մասին: **Մի ոք** կարող է ժխտական վերցնել ինչպես մի ինչ. ասում ենք՝ **ոք** և **ոչ ոք**, **ինչ** և **ոչ ինչ**, ինչպես և **մի ոք** և **ոչ մի ոք**, **մի ինչ** և **ոչ մի ինչ**. ասում ենք՝ **ինչ**, **ոչինչ** և **չինչ**-ին, **իք** և **չ-իք**: Ուրեմն ինչ անպատեհություն, որ մեր հեղինակը կազմեր **չ-եզ-ոք**: Ո՛չ մի անպատեհություն:

Այսօրինակ թյուր և թերմիտ առարկություններից հետո Հ[այր] Ղազիկյան փորձում է մի նոր նեցուկ բերել ի նպաստ իր պաշտպանած ստուգաբանության, հիշելով «օրինակներ նման բարդությանց, որոնց մեջը կա է բայը»: Օրինակ՝ «որպիսիինչէն, ի զինչէումն, զինչէն»[1]:

Նոր և սոսկալի մոլորություն: Որպիսիինչէ բառի զույգ **ի**-երը արդեն նշան են, որ բարդության մասին խոսք լինել չի կարող: Եթե Հ[այր] Ղազիկյան սովորություն ունենար բնագրներ ուսումնասիրելու, նախ քան նրանց օգնության դիմելը և այս դեպքում կարդար «Սահմանք իմաստասիրու-

[1] «Սահմանք իմաստասիրութեան», էջ 122:



թեան»-ը սկզբից, կգտներ այն չորս հարցերը, որ պարտավոր է համարում նրան փիլիսոփան ամեն մի հետազոտության համար և այժմ էլ պարտավոր է նաև Հ[այր] Ղազիկյանի համար: Ահա չորս հարցերը. **եթէ է և զինչ է, և որպիսի ինչ է և վասն էր**[1]:

Սրանցից և ոչ մեկը բարդություն չէ, այլ նախադասություններ են սովորական: Այսօր էլ կարող ենք ասել՝ **որպիսի ինչէ**-ից հետո կանգնեմ **վասն է՞ր**-ին: **Չեզոք** ոչ մի նմանություն չունի սրանց հետ: Ավելի մեծ նախադասություններ կարող են նույն կերպ գործածվել, օրինակ «ի վերայ եւծ զ'եւ ահա եսն ընդ ձեզ եմ»[2]: Այս բառ չէ, այլ նախադասություն:

Այսպիսով Հ[այր] Ղազիկյանի հոխորտ հայկաբանության մեջ միայն վերքեր ենք տեսնում և ոչ մի առողջ և մխիթարական կետ:

* * *

Նույն անմխիթար պատկերն է ներկայացնում և իր բանասիրական պատրաստությունը:

«Հայկազյան բառգիրք»-ը հյուրընկալել է միմիայն **չէզոք** գրությունը, պետք չի տեսել գոնե հիշել նաև **չեզոք**-ը: «Բառգիրք»-ը ընդհանրապես լայնասիրտ և՛ ներող է ուղղագրական խնդիրներում, ուստի և աչքի է զարկում այս խիստ վերաբերումը չեզոքին: Նույնչափ զարմանալի, որ Դիոնիսիոսի ձեռագրերը գիտեն այդ բառը եչ-ով, այն երկի ձեռագրերը, ուր առաջին անգամ երևան է գալիս այդ բառը և հավանորեն նորա թարգմանչի ստեղծագործություն է:

«Հայկազյան»-ի ընտրությունը պետք է բացատրել կամ բառի կեղծ ստուգաբանության ազդեցությամբ և կամ նրանով, որ բառարանի հեղինակները չեն տրամադրել այն ձեռագրերը, որոնց մասին է խոսքս: Երկրորդ ենթադրությունս անհիմն է, որովհետև 1830 թվին, ուրեմն բառարանի հրատարակվելուց յոթ տարի առաջ, Փարիզում լույս էր տեսել Դիոնիսիոսի գործը Ցահան-Չրպետ[յան]ի ջանքով և Փարիզի Ազգային գրադարանի երկու ձեռագրերի հիման վրա, և այդ հրատարակության մեջ տեսնում ենք ամենուրեք **չեզոք**:

Մնում է առաջին ենթադրությունը, այսինքն՝ ստուգաբանության թելադրանքը: Աչքը շատ անգամ տեսնում է այն ինչ որ շշնջում է միտքը իրավ, թե անիրավ: Ձեռագրերի հետ գործ ունեցողը գիտե, թե որքան դժվար է երբեմն զատել **է** տառը **ե**-ից, այնքան նման են դրվում բոլորագիր և շղագիր գրությանց մեջ: Երբ պատահում ենք անլուր սխալագրության, օրինակ՝

[1] «Սահմանք իմաստասիրութեան», էջ 121:

[2] Տիմոթէոս Կուզ, էջ 233:

**երգե, ասե, որպես**, մեր աչքը սահում է վերայից առանց նկատելու սխալը: Այնքան սովոր ենք՝ **երգէ, ասէ և որպէս** գրության: Էջմիածնի գեղեցկագիր ձեռագիրներից մեկը, մի Նարեկ, գրված 1283 թվին, ճիշտ հիշածս ուղղագրությունն ունի և դիպվածով միայն ուշքի եմ գալիս և նկատում, որ ամենուրեք **ե** և ոչ **է**, ինչպես թվացել է:

Արդ՝ երբ մեկը համոզված է, որ **չեզոք**-ը չէ+ զոք է, նա կարող է չնկատել և եթե նկատել է, կոպիտ սխալ համարել և անուշադիր թողնել: Այս կերպ ենք ուզեցել մեկնել «Հայկազեան բառգրքի» զանցառությունը քննելի բառի նկատմամբ:

Ի՞նչ է ասում սրա դեմ «Հայկազեան բառգրքի» անկոչ պաշտպանը:

Հ[այր] Ղազիկյան գտել է, որ Մխիթար Աբբահայրը և նրանից առաջ Ստեփաննոս Լեհացին 1730 թվին կազմած իր բառգրքի մեջ (6) նույն բացատրություն է տալիս չեզոք բառին, ինչ որ «Հայկազեան բառգիրք»-ը: Ո՞վ է և ի՞նչ հեղինակություն է Ստեփաննոս Լեհացին, որ նորա կարծիքը հիմ ծառայե և կամ փաստ լուծելու լեզվական մի խնդիր, մի բառի ուղղագրություն և ստուգաբանություն, երբ այդ բառը մեզ ծանոթ է իր սկզբնական աղբյուրում ինչպես հստակ ջուրը իր ակունքում: Այսպիսի փաստարկություն բանասիրություն չէ:

Այնուհետև հ[այր] Ղազիկյանը բաց է անում մի պատահական ձեռագիր, Երզնկացու քերականության մի օրինակ, Պերիարմենիասը, Լամբրոնացին, Աստղիկ, տեսնում է որ չէզոք է-ով է գրված և տպված և այս հիմամբ գոչում է մեծ թնդյունով, թե «մեր ունեցած բոլոր ձեռագիրները է-ով են»: Ծայրահեղ անխոհեմություն:

Հ[այր] Ղազիկյանը կանգ չի առել այն հարցի առաջ, թե որ ձեռագիրները ի՞նչ արժեք ունեն և կամ կարող են ունենալ վեճի առթիվ: Երզնկացու ձեռագիրը, որ իր ձեռքն է, գրված 1332 թվին. այս հեղինակի իսկական երկ չէ, այլ նրա ընդարձակ գործի համառոտությունը: Այն հանգամանքը, որ այստեղ չեզոք բառը գրված **չէ զոք**, այսինքն՝ անջատ, արդեն նշան է, որ գրիչը չի կարող դատավոր նկատվել այս խնդրում:

Հ[այր] Ղազիկյան պետք է գոնե դիմեր Երզնկացու գործի լավագույն և բուն օրինակին, որ գրված է 1292 թվին իր աշակերտ Թորոսի ձեռքով և պահվում է իրենց ձեռագրատան, համար 306. պետք է համեմատեր մյուս օրինակների հետ, №№ 1736, 957, 289. այլ և պիտի բարձրանար մինչև Երզնկացու բուն աղբյուրը և քրքրեր Դիոնիսիոսի ձեռագիրները՝ №№ 1104, 875, 1317, 174, 294, 39 և այլն: Այս բոլոր նյութերը պետք է միմյանց հետ համեմատեր, օգտվելով նաև Դավթի, Անանիայի, Մովսեսի, Ստեփաննոսի, Համամի և Մագիստրոսի մեկնություններից, ուր բերված են Դիոնիսիոսի խոսքերը, որպեսզի կարենար իրազեկ լինել խնդրի իսկության՝ բանասիրական լապտերը ձեռքին: Պետք է ուշի ուշով դիտեր և զններ, ո՛ր



ձեռագրում ինչպես է գրվում **է** և **ե**, որովհետև, ինչպես ասացինք, բոլորագիր գրիչների մոտ հաճախ դժվար է միանգամեն որոշել միմյանցից այդ երկու տառերը: Միայն այն ժամանակ, այս կերպ վարած աշխատանքի արդյունքը կշիռ կունենար:

Հ[այր] Ղազիկյան իրավունք կունենար խոսել «բոլոր ձեռագիրների» անունից: Գուցե և կգտներ, որ գրիչներից ոմանք, Ստեփաննոս Լեհացու, Աբբահոր, «Հայկազեան բառարան»-ի և հ[այր] Ղազիկյանի նման, չեզոքի մեջ տեսել են չէ և գրել չէ զոք, իսկ ուրիշները առանց ստուգաբանական փորձերի արտագրել են ինչ որ գտել են իրենց կաղապարում և այդպես պահել են հին և բուն ավանդը: Շահան-Ջրպետ[յան]ը 1830 թվին, և նվաստս 1915 թվին հրատարակած գործում համերաշխ ենք, որ Դիոնիսիոսի իսկական գրություն է **չեզոք**, և որ այս գրությունը հաստատվում է իր ստուգաբանությամբ, որպես **չ-եզ-ոք** = oudeheteros, ուր էական բայ չկա: Այս է բանասիրական աշխատանքի շիտակ ուղին և ոչ այն ուղին, որ ընտրել է հ[այր] Ղազիկյան, «Ջարգացեալոց»-ից անցնել «Հայկազեան բառարան»-ին, այստեղից Աբբահոր, հետո Ստեփաննոս Ռոշքյանի բառարաններին, հեղինակություններ որոնել և նրանց արևով երդվել:

## IV

**Նույն թերությունները լեզվագիտական և բանասիրական նկատվում են նաև ամեն բառի քննության մեջ՝**

## ԱՄԷՆ ԹԷ ԱՄԵՆ

Հ[այր] Ղազիկյան, ինչպես միշտ, նոր բան չունի ասելու, այլ կրկնում է այն, ինչ որ ասել է հ[այր] Ա. Բագրատունին 1852 թվին: Սակայն նորեն կրկնում ենք, որ ինչ ներելի էր և հասկանալի անցյալ դարվան կեսին, աններելի է այժմս 80 տարի հետո: Հ[այր] Բագրատունու օրով համեմատական լեզվագիտության վարդապետությունն իր խանձարուրքի մեջ էր, իսկ հայ լեզվագիտությունը տակավին ծնված չէր: Այն հեղափոխությունը, որ առաջ բերեց հայ լեզվի ուսումնասիրության մեջ Հյուբշմանը և իր ստեղծած դպրոցը, կարծես գոյություն չունի հ[այր] Ղազիկյանի համար և իրոք, անծանոթ է նրան: Սրանով պետք է բացատրել նրա անզգաստ և անխոհեմ քամահրանքը արդի լեզվագիտության հասցեին:

Հ[այր] Ա. Բագրատունին կարծել էր, թե **ամէն** բառը կապ ունի **մէն**-ի հետ, բայց ավելի հավանական էր համարել, որ նույն է **համայն**-ի հետ[1]: Երկու համեմատությունները էլ անընդունելի են: **Մէն** այլ բան չէ, քան աղուսն

[1] **Ա. Բագրատունի**, Ջարգացեալոց, էջ 1470 և 1420:

միայն-ի, ուրեմն ավելի նոր է, քան **ամէն** - ին բառը. և որպես այդպիսին չի կարող նրա ծնողը լինել:

**Համ**-այն կազմված է որպես մի-այն, սակ-այն, միանգամ-այն, և հիմնական տարրը՝ **համ**-իրանական փոխառություն է և հետևապես ավելի երիտասարդ, քան քնիկ հայ **ամեն**-ը: Բացի դրանից եթե **ամէն**-ը լիներ սեռմ ձևը **համայն**-ի, շեղ հոլովներում և բարդությանց մեջ անշեշտ **է** պիտի փոխվեր **ի**-ի, **ամինի**, **ամինայն**, և այլն, համաձայն հայ լեզվի հնչափոխության օրենքին:

Մեր վեճը հ[այր] Բագրատունու հետ չէ: Նրա ժամանակ **ակամայ**, **ապախտ** համարվում էին հայերեն բառեր, և թերևս հասկանալի էր կարծել, որ **ամէն**-ը ծագում է **մէն**-ից **ա** ժխտականի հավելումով: Բայց այժմ գիտենք շնորհիվ Հյուբշմանի աշխատության, որ **ակամայ**, **ապուխտ** փոխ են առնված իրանական լեզվից և չեն կարող համեմատվել զուտ հայ **ամէն** բառի հետ: Ահա ինչու ներելի չէ հ[այր] Ղազիկյանին ներկայումս կոչ անել նույն բառերին և պնդել սխալ ստուգաբանության վրա, հենվելով նույն Բագրատունու թված՝ **ածուղ** կամ **ածուխ** իբր **անձուխ** և կամ Հովհան Մամիկոնյանի՝ **Աստք** և **ստք** և նման օրինակների, որ ուրիշ բան չեն, քան ժողովրդական բառախաղեր:

Հ[այր] Բագրատունին նկատել է նմանապես, որ **ա** երբեմն թողնում է իմաստը անփոփոխ, ինչպես՝ **պատ, ապատ, կումբ, ակումբ, նոթի, անոթի**[1]: Հ[այր] Ղազիկյան սրանց վրա ավելացնում է իր կողմից **ախոյեան** և **խոյանամ** և պարսկերեն մի քանի բառ՝ **առատ, առասան, ասպար**, ցույց տալու համար, որ բառերը երբեմն **ա** են առնում իրենց շալակը հակառակ մեր կարծիքին:

Մխիթարյան հայկաբանը սխալվում է. **պատ** կապ չունի **ապատ**-ի հետ, կումբ՝ **ակումբ**-ի հետ, **անօթի**-ի մեջ **ա** սկզբնական է և ոչ հավելածոյ, **ախոյեան** բնավ կապ չունի **խոյանամ**-ի հետ: Ինչ վերաբերում է պարսիկ բառերին, հայտնի է, որ մեր հին լեզուն **ռ**, **ր** տառերով սկսվող բառ չունի, ուստի և սկզբից ավելացնում է կամ **ա** կամ **ե**, առասան կամ երասան, արագ կամ երագ և այլն: Այս երևույթը ոչ մի առնչություն չունի **ամէն**-ի **ա**-ի հետ, և ոչ ասպար-ի **ա** -ի հետ. ասպար և սպար, երկուսն էլ առնված են իրանականից[2]:

Այսպիսով **ա-մէն**-ի **ա** բացատրելու ճիգը միանգամայն ապարդյուն է և որոնման ուղին՝ մոլար: Ջուր են նաև **ամէն**-ը համայն-ից հանելու ջանքերը:

Հ[այր] Ղազիկյան նախապես մի փորձ է անում հերքելու մեր դիտողությունը, որ **ամէն** չի պատահում առանձնակի հին մատենագիրների

¹ **Ա. Բագրատունի**, Չարգացելոց, էջ 1470:

² Հմմտ. պարս. **Sipar et ispar**:



մոտ: Նորեն դիմում է «Հայկազեան բառարան»-ին և «Չարգացելոց»-ին և արտագրում հետևյալ օրինակները. «զամէն մնացեալսն յանձն առնէր շնորհացն աստուծոյ. Կորիւն. Յամէն արարածոց. Զ. (?) ստէպ: Ամէնն առանց գործելոյ անկատար է. Ա(?)»:

Բերում է նաև օրինակներ Արիստոտելի «Յաղագս մեկնութեան» թարգմանությունից, համարելով այն V դարու գործ: Այս տեղեկությունը, որ ծագում է Գ. Զարբհանալյանի աշխատությունից, գրված 1860-ական թվականներին, շատ է հինացած (7): «Յաղագս մեկնութեան» և նման հելլենական գործերը V դարու չեն համարվում և ո՛չ դասական մատենագրության: Ուստի կարող ենք հանգիստ թողնել այս երկը և կանգ առնել առաջին օրինակների վրա:

Մեզնից գաղտնիք չէր , որ Կորյունի մոտ պատահում է մի անգամ **զամէն** ձևը, որը ցույց է տված «Հայկազյան բառարան»-ում, ծանոթ են և ուրիշ դեպքեր, որ մտած չեն նույն բառարանը: Սակայն մենք համարել ենք և համարում ենք **զամէն** սոսկ վրիպակ, գրչի սխալ Կորյունի մոտ: Արդարև, Կորյունի փոքր երկի մեջ գրեթե ամեն երեսում պատահում է, երբեմն կրկին անգամ, **ամենայն** բառը զանազան հոլովներով և զանազան հոլովների հետ. օրինակ՝ ամենայն կրթութեամբ, էջ 7, վասն ամենայն հոգւոց, էջ 8, զամ ընտրութիւնս, էջ 10, ամենայն իւրայիւրն, նույն էջ, առ ամենայն ազգս, էջ 11 և այլն: Այս պարագան կասկածելի է դարձնում **զամէն**-ի եզակի երևույթը: Կորյունի ոճը ճարտասանական է և բարձրաթռիչ, խուսափող ռամիկ տարրերից, որպիսիք կարելի է գտնել Փավստոսի և Փարպեցու մոտ:

Մյուս կողմից՝ Կորյունը խնամություն ունի Ագաթանգեղոսի հետ և այստեղ ևս չի պատահում **ամէն** բառը: Իրավունք ունենք, հետևապես, ժխտելու այդ ընթերցվածը: Ավելին կասեմ: Մոտեն քննելով Կորյունի բնագիրը, կարելի է համոզվել, որ այդ նախադասությունը, ուր գտնվում է **զամէն**, աղավաղված է և պակասավոր:

Կորյունի երկը մեզ հասել է շատ վատ վիճակի մեջ և երկու խմբագրությամբ: Համառոտը երբեմն նպաստում է ուղղելու ընդարձակը: Ս. Սահակի մահվան առթիվ կարդում ենք Մեծ Կորյունի մոտ. «Ապսպարեալ զանձն եւ զմնացեալսն ամենապահ շնորհացն այ, զոր եւ առել վաղվաղակի ամ հանդերձելովք»*...[1]. Փոքր Կորյուն ունի. «Ապսպարեալ զանձն եւ զմնացեալսն (զիւր հօտն)» ամենապահ շնորհացն Աստուծոյ յանձնարարել, **այնպէս փոխեցաւ յաշխարհէս**: Զոր առեալ վաղվաղակի»[2]: Ընդգծած բառերս բաց են թողնված մեծի մեջ և պետք է լրացնել:

¹ **Կորիւն**, Պատմութիւն վարուց և մահուան Սրբոյն Մեսրոպայ, Վենետիկ, 1894, էջ 25:

* «այ», «առել» և «ամ», «նց» պատիվ նշաններ ունին: «Հայրենիք»-ի տողաշարը չունենալով այդ նշանները, անոնք զանց առնված են (**ծան. «Հայրենիք»-ի - Պ. Հ.**):

² «Սոփերք Հայկականք», ԺԱ, էջ 28:

Մաշտոց մեռնելիս «նստաւ ի ժողովոյն միջի եւ համբարձեալ զձեռսն հանապազատարած յերկինս **զամէն մնացեալսն յանձն առնէր շնորհացն այ**, վասն նոցա օգնականութիւն հայցէր»[1]: Փոքր Կորյուն ունի «Նստաւ ի ժողովոյն միջի եւ համբարձեալ զձեռսն հանապազատարած յերկինս զամենասուրբ զերրորդութիւնն օրհնէր և յանձն առնէր զաշակերտեալսն ամենապահ շնորհացն աստուծոյ»...[2]:

Այս համեմատությունից հետևում է, որ Մեծ Կորյունի տողերը պակասավոր են, աղավաղված են և հավանորեն **զամէնն ամենասուրբ** բառի առաջին մասն է: **Ամենապահ**-ի կրկնությունն ևս հարազատ է: Աղվանից աշխարհից հեռանալուս Մաշտոց հրաժեշտ տվեց իր աշակերտներին «յանձն առնելով զնոսա եւ զանձն ամենապահ շնորհացն այ»[3]: Եթե Փոքր Կորյունի միջոցով վերականգնենք Մեծի թերին, զամէնն կասկածելի բառը կվերանա և նրա հետ կվերանա ռամկաբանության միակ բիծը Կորյունի բնագրից:

Հ[այր] Ղազիկյանի մյուս երկու օրինակները կրում են Զ և Ա անհասկանալի տառերը: Պետք է որոշակի նշանակել, թե ո՞րտեղից, ո՞ր հեղինակից և կամ ո՞ր դարու գրությունից են քաղած: Ամեն մի վեճի, մանավանդ բանասիրական, տարրական պահանջն է՝ ճշգրիտ լինել փաստերի և ապացույց ծառայող օրինակների վերաբերմամբ: Այլապես բանասիրությունը կդառնա բանաստեղծություն և վեճը կկորցնե ամեն իմաստ:

Առաջին օրինակը գտնում ենք հ[այր] Բագրատունու քերականության մեջ, ուր ուրիշ օրինակների թվում կարդում ենք՝ «յամեն արարածոց»[4]: Ուրեմն Զ նշանակում է «Զարգացեալց», ի՞նչ արժեք ունի այս օրինակը: Ոչ մի:

Երկրորդ օրինակը «Հայկազյան բառարան»-ից է, և առնված է Փիլոնից, «վասնզի ամենեն առանց գործելու անկատար է»[5]:

Ուշադրության արժանի է, որ երկու օրինակներում էլ մեզ զբաղեցնող բառը գրված է **ամեն**, յամեն, **ե**-ով, բայց հ[այր] Ղազիկյան իրավունք է համարել **է**-ով, ամէն, յամէն: Այս պատահական վրիպակ չէ, որովհետև նա քաջավարժ է ընդօրինակության արվեստի մեջ, այլ գիտակցական շեղում: Հանձնարարելի վարմունք չէ և կեղծիքի չափ մոլորեցուցիչ: Վեճի նյութն այն է, թե **ամեն**-այն-ի մեջ ի՞նչ է ներկայացնում **ամեն**-ը արդյո՞ք **ամէն**, ինչպես կարծում է հ[այր] Ղազիկյան: Հետևապես պետք է ցույց տալ - և մեր պրպտումների նպատակն այդ է - թե **ամէն** ձևը գոյություն ունի՞ հին մատենագիրների մեջ, այսինքն՝ սկզբնական է, թե չէ:

[1] **Կորիւն**, էջ 26:
[2] «Սոփերք Հայկականք», ԺԱ, էջ 32:
[3] **Կորիւն**, էջ 19:
[4] **Ա. Բագրատունի**, Զարգացեալց, էջ 808:
[5] **Եղբ Բ**, 110:



Եղած օրինակները գրված են **ամեն**, ուրեմն **ամէն**-ը մնում է չապացուցված: Ահա ինչո՞ւ հ[այր] Ղազիկյանի սխալ արտագրությունը ներելի չէ:

Մենք գիտենք և ուրիշ օրինակներ. օրինակ՝ Աղեքսանդրի վարքի մեջ՝ «Ամենից ազին մարդկան»[1], կամ Տիմոթեոս Կուզի մոտ «Գեր **ամեն** անուն»[2], այսինքն՝ «ի վեր քան զամենայն անուն», նույն էջում՝ «**զի** եւ **ամեն** ծունր կորանալ»:

Թե՛ վերևի և թե՛ այս օրինակները վստահելի չեն և, հավանորեն «ամ» գրության ռամկորեն ընթերցվածներ են: Բայց անգամ եթե համարենք հարազատ ընթերցվածներ, այստեղից կհետևի, որ սկզբնական ձևն է **ամեն** և ոչ **ամէն**, և այդ **ամենն** է, որ երևում է բարդությանց մեջ, ինչպես ամենակալ, ամեն-ի -մաստ:

Հ[այր] Բագրատունին և «Հայկազեան բառարան»-ը ընդունում են հավասարապես **ամեն** և **ամէն**: Իսկ հայր Ղազիկյան այս կետում ևս ուզում է շեղվել իր ուսուցիչներից և պնդում է, որ մենք ազետ ենք և անտեղյակ հայ լեզվի օրենքին, որ բարդությանց մեջ ամեն-ը ծագում է ամէն-ից: Ո՞րն է օրենքը: Այն, որ բարդելի բառը, եթե բաղաձայնով է սկսվում, **ամեն** է գրվում, իսկ եթե ձայնավորով՝ ամէն մնում է անփոփոխ: Ինչպե՞ս է ապացուցանում այս օրենքը: Թողնում է և Բագրատունու «Զարգացեալց»-ը և «Հայկազեան բառարան»-ը և դիմում Ստեփանոս Ռոշքյանի բառագրքին և այնտեղից քաղում մի շարք բարդություններ, ամէն-ով սկսվող: Դժբախտաբար չի բացատրում թե ինչո՞ւ Ստեփանոսի ուղղագրությունն այդքան ծանրակշիռ է, ո՛ր մատենագիրներից քաղած, ո՛ր դարու, ո՛ր դասի հեղինակություններից:

Այս բանասիրություն չէ: Ռոշքյանին դիմելուց առաջ, ավելի լավ կլիներ սերտել «Հայկազեան»-ը, ուր հիշատակված են միևնույն օրինակները: Հ[այր] Ղազիկյան կամավ, գիտակցությամբ է հեռանում «Հայկազեան»-ից, որովհետև այնտեղ պարզ ասված է, որ ամէն-ով բարդությունները ռամկական են. այնտեղ ասված է, որ ամէն-ով բարդությունները թեև նշանակում ենք, բայց «ըստ հինքեան ուղիղ է ամեն, քան զամէն որ է առաւել ռամկական, թող զի հոլով սորա է ամենի, ամենից»:

V

Հակառակ «Հայկազեան բառարան»-ի հեղինակության և նրա վրա հիմնված Մխիթարյան ավանդության, որը մեր դեմ պաշտպանելու զովական ջանքն է հանձն առել հ[այր] Ղազիկյան, ինքը հայտնում է, որ **ամէն**-իմաստ «ավելի շնորհալի է», քան **ամեն**-ի-մաստ, առանց հաճելու բացատրելու մեզ այս շնորհալիության պատճառը կամ էությունը:

[1] «Վարք Աղեքսանդրի», էջ 136:
[2] **Տիմոթէոս Կուզ**, էջ 312:

Անուրանալի փաստ է սակայն որ բոլոր ընտիր հեղինակների մոտ **ամեն**-ով բարդությունները գիտեն **ամեն** և ոչ ամէն: Հ[այր] Ղազիկյան բերում է Ղազար Փարպեցուց մի բառ՝ ամէնախտալից, առնելով իհարկե «Հայկազեան»-ից և առանց ցույց տալու տեղը: Եթե սովորություն ունենար ստուգելու քաղվածները, կտեսներ, որ այդ բառը Փարպեցու նոր և քննական հրատարակության մեջ, սրբագրված է **ամենախտալից**[1], անշուշտ, այն արդարացի հիմամբ, որ նույն հեղինակի մոտ կա՝ գրված՝ **ամենողորմ**[2], նման Ազաթանգեղոսի՝ **ամենիմաստին** և այլոց:

Հնչյունափոխության ազդակը շեշտն է. **շէ՛ն** դառնում է **շին**-ական և շինարար, շինություն, որովհետև **է** կորցնում է շեշտը և փոխվում է **ի**-ի, հաջորդ վանկի բաղաձայն կամ ձայնավոր ունենալը արժեք չունի: Եթե իրոք ամէն բառ գոյություն ունենար, և անշեշտ **է**-ն **ե**-ի փոխանցելու օրենքը ևս գոյություն ունենար, միակերպ պիտի գրվեր ամենակալ և ամենիմաստ: Տարբերություն դնել և կախում ենթադրել հաջորդող ձայնավորի և բաղաձայնի հանգամանքից՝ ոչ մի հիմք չկա:

Ամենազլխավորն է որ **է**-ի **ե** փոխանցվելու օրենքը մտացածին է: Ասել ենք և պնդում ենք, որ հայերենում շեշտազուրկ **է** փոխվում է **ի**-ի և ոչ **ե**-ի:

Հ[այր] Ղազիկյանը այստեղ ևս մեզ տգետ է համարում և պատգամում է, որ երբեմն **է**-ն փոխվում է **ի**-ի, իսկ երբեմն **ե**-ի: Չի բացատրում, թե ինչո՞ւ է այդ տարբերությունը, ի՞նչ է պատճառը, որ հնչական օրենքը երկու դեմք ունի: Հնչական օրենքները կանգուն են բնախոսական հիմերի վրա և չեն սիրում կամայականություն: Ուրեմն ինչո՞ւ պիտի **է** փոխվի և՛ **ի**-ի և՛ **ե**-ի:

Հ[այր] Ղազիկյան, որ օրենքի մասին թյուր ըմբռնում ունի, հայտարարում է, որ -**էն** վերջացող բառերն են, որ փոխում են իրենց **է** հնչյունը **ե**-ի: Եվ մոռացության տալով հողեղեն, մարմնեղեն, օդեղեն, -եղեն վերջացող բառերի ճոխ կարավանը, որ հերքում են իր հնարածո կանոնը, բերում է, որպես ապացույց այդ կանոնի, երեք բառ՝ պարէն, հեղէն և հայերէն, այլ և Գուրգէն, Զաւէն, Փառէն և նման ձևի հատուկ անուններ: Սրանց թվին է դասում և չարատանջ **ամէն**-ը:

Կնճիռը լուծած կարծելով հ[այր] Ղազիկյան բացականչում է նախատինքով. «հայ գիրը գտնվելեն ի վեր Գուրգինի, Արսինի, Խորինի, պարինի, հեղինի գրված չեն երբե՛ք. որով չեն կրնար գրվիլ նաև ամինի, ամինայն»:

Առնվազն անխոհեմություն է վարդապետի կողմից այս փքուն և բերանբաց հայտարարությունը: Թո՛ղ բարեհաճե բաց անել Փավստոս Բուզանդը և էջ 332-ում կկարդա միևնույն գլխում երկու անգամ՝ Զաւինայ,

[1] **Ղազար Փարպեցի**, Տփղիս, 1904, էջ 21:

[2] Անդ, էջ 20:



յաջորդ էջում՝ երրորդ անգամ Զաւինայ: Թո՛ղ շրջե թերթը և էջ 334-ում կտեսնե՝ Փառինայ: Թո՛ղ բաց անե վերջապես հայր Բազրատունու «Զարգացելոց»-ը, իր գիտության հիմնական աղբյուրը և էջ 12-ում կկարդա լույսի պես պարզ գրված՝ Գուրգէն, Գուրգենայ կամ Գուրգինայ: Ահա՛ նմանապես Վաղինակ անունը որ կազմված է Վաղէն և -ակ նվազականից: Որ արդարև կարելի է և պետք է հոլովել Գուրգէն, Գուրգինայ, երևում է պարսկերենից ուր gurgin է, և բառի ստուգաբանությունից: Գուրգէն-ի հին ձևն է **վրկէն**, ծանոթ Փավստոսից[1] և ծագում է vrkaina (= vrkan-ya) բառից և այլ բան չի նշանակում, քան Վրկանցի:

Անզգուշություն է նաև պնդել, որ հիշած կարգի անունները բոլորն էլ գրվում են **էն**-ով: Փավստոսից հայտնի է Մեհեն անունը[2], Բարկենի ժողովին 505 թ. ներկա էին ի միջի այլոց Մանգեն Ամատունին և Բաշխեն Վահևունի[3]: Այս -**են** ուրիշ ծագում ունի և է սղումն հին **եան** մասնիկի, որ տեսնում ենք **խոռեան, ծապեան** (Փարպեցու մոտ) և կամ Գուգվռամիան[4] պարսիկ անունների մեջ, և որ կազմված է **ի** ստացական և **ան** հայրանուն (patronomica) մասնիկներից: Սրանց կարգին է պատկանում և Խորէն, Բարզէն, սա՛ ստույգ գրությունն է Խորեն (նույն, ինչ որ Փարպեցու՝ Խոռեան, Սեբեոսի՝ **խոռեամ** եւ հույն մի պատմագրի xorianes (Theophilactus Simocatta): Սրանց սեռականը պիտի լինի՝ Մանգենայ, Բարզենայ և այլն:

Տարբեր ստուգաբանական ծագում ունեցող անունները ենթարկվել են հետագայում ուղղագրական միակերպության, երբեմն պահելով շեղ հոլովներում իրենց ծագումի հետքը, հաճախ կրելով փոխադարձ ազդեցություն:

Կարիք չկա հնչաբանական հավաստի օրենքների անհամերաշխ երևույթները բացատրելու համար հնարել ad hoc մտացածին և անիմաստ կանոններ: **Է**-ի փոխանցումը **ի**-ի հաստատուն օրենք է, այնքան համատարած, որ եթե որևէ բառ որևէ երևույթով չի արդարանում կամ արդարացնում այս օրենքը, բառի այդ երևույթը ինքնին կասկածի տակ է ընկնում: Եթե սեռակա՛նը՝ աղուեսու է, ուղղականը պետք է լինի՝ աղուես: Եթե ապացուցվի, որ աղուէս է սկիզբը, սեռականը իրավունք ունեինք սպառելու աղուիսու ձևով: Աղէտ կարող է և պետք է տա՝ աղիտի, իսկ եթե աղետի է սեռականը՝ ուղղական պետք է լինի՝ աղետ և այլն: Բանասիրական պրպտումներին է վերապահված լուծել այսօրինակ երկդիմի կնճիռները:

[1] **Փավստոս Բուզանդ**, Դ, ժա:

[2] Անդ:

[3] «Գիրք թղթոց», էջ 42:

[4] Անդ:

Ամեն պարագայում կարելի չէ զուտ հայ բառը որպիսին է **ամեն-այն**, չափել և դատել ըստ հեղինեղուկ ձևերի օտարամուտ հատուկ անունների:

Այսպիսով մենք մնում ենք մեր կարծիքին, որ **ամէն** գրությունը անհիմն է և ստույգ է **ամեն**, ծագած հնագույն **ամեան**-ից: Եթե Տիմոթեոս Կուզի **ամեն**-ը հարազատ է, նշանակում է բառի սղումը իրողություն էր տակավին VI դարի կեսերին: Փավստոսի՝ Գնել հատուկ անունը հայտնի է գնեալ ձևով: Այսպես էր կոչվում Գնունյաց մի իշխան, որ ապրում էր VI դարի առաջին կեսին[1]: Եթե և այս ընթերցվածը վստահելի է, ապա Գնել անունն ևս ընդունելու ենք նոր ձև հին գնեալի (նման ամեն, ամեան-ի):

Մեր վերլուծությունը կարծես թե արդարանում է, ինչպես ասել ենք, Ղարաբաղի բարբառով, ուր ամեն հնչվում է **աման**: Այս բարբառի հատկանիշներից մեկն է եա երկվանկի սղումը ա-ի, օրինակ՝ **եկեալ, մեռեալ** և այլ դերբայները տալիս են **եկալ, մեռալ** (և ոչ եկել, մեռել): Երկոքեան դարձել է երկոքան: Իրավունք ունենք կարծելու, որ **աման**-ը նույն կերպ ծագում է հին ամեան-ից: Սրա դեմ հ[այր] Ղազիկյան նկատում է, որ ժողովուրդը **մայրը** շինում է մար, հայրը՝ հար, ուստի և Ղարաբաղի **ամանը** ավելի համապատասխան է իր ենթադրած ստուգաբանության և գալիս է **համայն**-ից:

Անիրազեկ առարկություն է: Ամեն մի բարբառ իրենով պետք է դատել և ոչ թե ընդհանրապես ժողովրդի ասածով: Ղարաբաղի բարբառում **այ** ձայնը աղվում է **է**-ի և ոչ **ա**-ի. և այդ կերպով ստացած **է** հնչվում է քմային **ա**-ի նման (Umlaut, մոտ **է**-ի): **Հայր**-ի այ արտասանվում է այնպես ինչպես **մէջ**-ի **է**-ն, **հար, մաչ** (= ang. much-ի նման), ուր **ա** է-ի և ա-ի միջև ծփող հնչյուն է:

Աշխարհաբարի ուղղագրությունը դյուրացնելու և կամ պարզելու համար ասել էինք, որ հրամայականները կարելի է գրել **ե**-ով, երգե՛ (փոխանակ **երգէ**-ի) ինչպես գրում ենք կարդա՛ (և ո՛չ կարդայ):

Հ[այր] Ղազիկյան շտապում է մեզ տգետ անվանել և բացատրում է, որ **կարդա՛** և **երգեա՛** ծագում են **կարդաց** և **երգեաց** ձևերից և որ **ց** ընկնում է, մնում **կարդա՛** և **երգեա՛**, իսկ երգեա՛յ աշխարհաբարում դառնում է **երգէ՛**: Հրամայականի ծագումը մեզ ևս հայտնի է, ինչպես ամեն մի դպրոցականի: Բայց ինձ հայտնի չէ, որ երկբարբառ **եա՛** դառնար **է**: Երբ հ[այր] Ղազիկյան խոստովանում է, որ բառամիջում **եա** դառնում է **ե**, բայց ավելացնում է, որ բառավերջում փոխվում է **է**-ի, այստեղ նույն սխալն է գործում, ինչ որ **է**-ի կրկնակի փոխանցման խնդրում: Ոչ մի հիմ չկա, որ վերջահանգ **եա՛** դավաճանե իր բնության և դառնա **է**, փոխանակ **ե**-ի: Աշտեայ = աշտէ, հրեայ = հրէի և նման բառերի հետ համեմատելը սխալ է: Աշտեայ պետք է **է** տա,

[1] «Գիրք թղթոց», 74: Նույն անձը կոչվում է և Գնէլ՝ «Գիրք թղթոց», 42:



որովհետև **եա**+ յ հավասար է **ե** + յ = **է**: Իսկ երբ սեաւ դառնում է սև, լեառդը՝ լերդ, զիարդը՝ զերդ, արգելք չկա որ **երգեա՛** չդառնա **երգե՛**: **Է** գրելու սովորությունը մի զիջում է գրաբարյան պաշտոնական ուղղագրության:

Կանգ առնել չենք ուզում այս խնդրի վերա: Ուղղագրական վերանորոգությունների մասին հազիվ թե կարելի է արդյունավետ զրույց ունենալ հ[այր] Ղազիկյանի պես իր գիտության մեջ նախապաշարված անձի հետ:

Վեճը **չեզոք** և **ամեն** բառերի մասին էր: Մեր տեսությունը, որ պարզել էինք նախորդ նկատողության մեջ, մնում է իր ուժի մեջ և եղած առարկությունները անզոր են խախտելու մեր վերլուծությունը, որ հենված է Հյուբշմանի, հայ արդի լեզվագիտության հիմնադրի և իր աշակերտ Կարստի, Կիլիկյան բարբառի նշանավոր հետազոտողի (8), մի վարկածի[1]:

* * *

Քայլ առ քայլ հետևեցինք մեր խրոխտ հակառակորդի ընդդիմախոսության և գուցե ավելի ուշադրություն նվիրեցինք նրան, քան արժանի էր: Զրախոսություն չէր մեր կողմից, երբ մեր նախաբանում հայտնեցինք, որ հ[այր] Ղազիկյանի մեջ չենք տեսնում ո՛չ բանասերը և ո՛չ լեզվագետը: Բանասեր չէ, որովհետև չէ զբաղվում բնագիրներով, չէ սիրում կորանալ նրանց վրա հաճախակի ընթերցանության և ուսումնասիրության տենչով: Լեզվագետ չէ, վասնզի քամահարում է արդի լեզվագիտության մշակած սկզբունքները և այդ սկզբունքները կիրարկելու միջոցները, մեթոդները: (Բավական է հիշել, որ **եզ** բառը նույնն է համարում ինչ որ յոյն **eis**!):

Որպես վերջաբանություն կուզեինք մի քանի խոսք ասել հ[այր] Ղազիկյանի, որպես Մխիթարյան միաբանության անդամի, հոդվածի առթիվ: Պարտքս կատարած չէի լինի, եթե լռությամբ անցնեի՝ ինչ որ պետք է ասել:

Մեզ զբաղեցնող հոդվածը այն արժանիքը չուներ, որ դրա վրա այսքան ծանրանայինք: Եթե արինք, պատճառն այն հարգանքն է, որ ունեցել ենք և ունինք դեպի Մխիթարյան անունը, որ կրում է հոդվածի հեղինակը, դեպի Մխիթարյան վերարկուն, որ նրա ուսերին է: Ինչ որ գործում է ամեն մի Մխիթարյան, բնականորեն, անդրադառնում է հասարակական գիտակցության մեջ համայն Միաբանության: Ինչ որ գրվում է «Բազմավեպ»-ում, պատասխանատու է ամբողջ Միաբանությունը: Ուստի ծայրահեղ զգուշություն է հարկավոր և արթնություն՝ աջ ձեռքը պահել մշտապես գլխին և ձախը՝ բերանին:

Արդ, որպես Միաբանության անվան նախանձախնդիր ոչ պակաս, քան

[1] Arm. Gram., p. 416. Historische Gramm. des Kilikisharmenisch, p. 248.

հայր Ղազիկյան, գտնում եմ ցավալի և միանգամայն դատապարտելի այն մտածելու և արտահայտվելու եղանակը և ձևերը, որ յուրացրել է հիշյալ վարդապետը: Մենք սովոր ենք տեսնել Մխիթարի հոգևոր զավակներին հեզ և խոնարհ և գերազանցորեն քաղաքավարի: Հասկանալի է: Մխիթարյանը նախ վանական է և ապա գրական: Վանականը պիտի հարգե իր կոչումը, և նրա համաձայն կշռե իր խոսքը, շարժե իր գրիչը և բարի օրինակ լինի դուրսը, կրքերի մեջ թավալուն աշխարհիկներին: Ի՞նչ պիտի սովորե ընթերցող հասարակությունը, աճող անտիրական սերունդը հասակավոր և քաղաքավարի մի հոր վատակիրթ և հոռի գրականությունից: Թառեր ուղղելը գովելի ջանք է, բայց պայման, որ գրական բարքերը չխաթարվեն, որովհետև բարքը վեր է բառից:

Եվ ինչո՞ւ պիտի մի Մխիթարյան վիրավորե, ոտի տակ տա Մաշտոցի չքնաղ գյուտը: Ս. Ղազարի վանքը պաշարված չէ կատաղի թշնամուց, որ վանական գրիչը փոխվի քրդական մզրախի և անմիտ ավերումներ գործե: Եվ ի՞նչ է նշանակում, օրինակ, այն ծանրորակելի քրքիջը արևելահայ բանասերների, «գնում է, գալիս ըստղների ամբողջ ճետի» հասցեին (9): Այս խոսքերը մի՞թե վայել են հայ մարդու, էլ չասենք, բանասերի, չասենք եկեղեցու պաշտոնյայի: «Քրէիքուր ոճիրը» ահա՛ որտեղ է (10). տառերը և բառերը չեն ոճրագործը...: Որքան էլ հարվածենք Մխիթարյանների պաշտած է-երը և ե-չերը, հարվածենք անգամ մեծ բառարաններ, երբե՛ք, երբեք չենք կարող ստվերը ձգել վանքի անվան վրա, որքան որ ընդունակ է ձգելու և ձգում է հ[այր] Ղազիկյան իր անպատշաճ բառերով (11): Նման հոդվածներ պատիվ չեն բերում Մխիթարեանական միությանը, բիծ են դնում հայ բանասիրության անդրանիկ հանդեսի, ալևոր «Բազմավեպ»-ի խորշոմած ճակատին:



# [«ԳԵՐԵԶՄԱՆ» ԲԱՌԻ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ]

## «Արձագանք» [լրագրի] խմբագրությանը

Պարոն Խ. Հովհաննիսյանի (1) «Մյուլլերի հետազոտությունները» հոդվածում (2), որ զետեղված էր «Արձագանքիդ» վերջին համարներից մեկում (3), ասված է, ի միջի այլոց, որ «գերեզման» բառի ստուգաբանությունն անվերածելի է մնում մինչև այժմ: Ավելորդ չենք համարում առաջ բերել մի կարծիք այս մասին, որ պատկանում է Շուշվա թեմական դպրոցի ուսուցիչ պ[արոն] Գյուլզադյանին (4): Արգո պարոնի կարծիքով «գերեզման» բառը կազմված է հետևյալ երեք բառից.

| | |
|---|---|
| գահ | նշանակում է բարձր տեղ, օրինակ՝ գահավիժել |
| բեզ կամ բոյզ, | որ պահպանվել է հայոց լեզվում նաև «ասպարէզ» բառի մեջ: Համազոր է «արձակել», «ձգել» բայերին (ասպարէզ - ձիարձակ): Այս բառի հայկական տառադարձությունն է իսկապես «լոյծլուծանել =քանդել, արձակել»: |

Իսկ վերջին լծորդը՝

| | |
|---|---|
| ման | = է մարդ, ման-ուկ: |

Այսպիսով, «գերեզման» կամ «գահրեզման» նշանակում է բարձրից ձգել մարդուն, կամ տեղ, ուր ձգում են բարձրից մարդուն: Այս բացատրությունը պարոնը հաստատում է և մի արիական սովորությամբ, որով մեռելներին աշտարակներից ձգում էին ցած, փոսի մեջ...

Հարգելի ուսուցիչը շատ հմուտ է հայոց, պարսից և արաբական լեզուներին, այլ և քաջ ծանոթ է նոցա պատմության, հին ավանդություններին, սովորություններին, Նազի միջնադարյան ժողովրդական բանաստեղծության՝ մի հանգամանք, որ այնքա՜ն կարևոր է մեր հին

մատենագրության ուսումնասիրության համար: Այս է պատճառը, որ պ[արոն] Գյուլզադյանը երբեմն շատ հետաքրքիր և հավանական վերլուծություններ է առաջարկում մեր հին անգիր բանահյուսությունից մնացած այն կտորներին, որոնք Խորենացու Պատմության միջոցով հասել են մեզ: Սակայն զարմանալին այն է, որ լրագիրներում խոսք է բացվում այդ մասին մինչ այն աստիճան, որ ուրիշները ստիպված են լինում հայտարար լինել նորա կարծիքներին այս կամ այն ձևով (5):



# ՎԱՂ ՇՐՋԱՆԻ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀԱՅԵՐԵՆՈՒՄ

Հայերենում, որը հնդեվրոպական լեզու է, ինչպես նաև մյուս հնդեվրոպական լեզուներում, գոյություն ունի անհայտ ծագումով ներթաշերտ: Այդ ներթաշերտը, անշուշտ, նույնասեռ չէ և բաղկացած է այլազան տարրերից: Զարմանալի չի լինի իմանալ, որ հայոց լեզվի այնքան սովորական մի քանի բառեր ծագում են շատ վաղ ժամանակաշրջանից: Դա չի նշանակում, անշուշտ, որ փոխառությունը կատարվել է այդ դարաշրջանում: Այդ կարգի տարրերը, հավանաբար, թափանցել են հայերենի մեջ հայերի Հայաստան անցնելու ընթացքում, և կամ երկիր գալուց հետո ժառանգվել են տեղական հին բնակչությունից:

Ք. ա. երրորդ հազարամյակի կեսերին ակկադցի Սարգոնը (1) արշավանք է ձեռնարկում Փոքր Ասիա՝ պաշտպանելու համար Կեսարիայի շրջանում տեղավորված սեմական վաճառականների գաղութի շահերը, որոնք դժգոհում էին տեղական իշխանությունների ճնշումից: Դրան վերաբերող արձանագրությունը հրապարակվել է Է. Վայդների կողմից[1] և մեկնաբանվել Է. Դորմի կողմից[2]:

Սարգոնը վաճառականների գործը կարգավորում է այնպես, ինչպես կամենում է: Մեզ հետաքրքրում է այն հանգամանքը, որ նախքան վերադառնալը նա կարգադրել է մի քանի բույսեր վերցնել իրենց հետ, որոնք անծանոթ էին իր երկրում:

Այդ բույսերն անվանվում են՝

**ḫasḫuru, tittu,** šimiššala (տող 29),
**tittu, šallura**, karanu, buttu, **s irdu** (տող 25):

Ընդգծված բառերը քննարկում ենք ստորև:

### 1. **Ḫasḫuru «խնձոր»**

Այս բառը գտնում ենք ḫarra - ḫubullum կոչված բառահավաքում, որտեղ այն համապատասխանում է սումերական giš-ma-gunu-ին, բառացի՝ «խնշոր բուզ»[3]: Ֆ. Հոմմելը **ḫasḫuru**-ն նույնացրել է արամեական ḫuzra, սառ-

[1] Boghazköi-Studien, 6 Heft, 1922.
[2] «Revue biblique», t. XXXIII (1924), էջ 22:
[3] **B. Meissner**, Mitteilungen der vorderasiatischen Gesellschaft, XVIII (=1913), 2, էջ 33:

րական ḫazzùra «խնձոր»-ի հետ, և ḫazzùra -ի մեջ ճանաչել են հայերեն խնձորը[1]: Պոլ դը Լագարդը, որն առաջինը քննեց հայերեն և ասորերեն բառերի նմանությունը, ենթադրում էր, որ ասորերենը կախում ուներ հայերենից[2]: Հ. Հյուբշմանը, թեպետ այն տեղավորել է ասորերենից փոխառված հայերեն բառերի մեջ, բայց այդ նույն կարծիքն է գերադասում[3]:

Այժմ, երբ մեզ հայտնի է **ḫasḫuru**-ի գոյությունը, ավելի հիմնավոր կլինի պատկերացնել **խնձոր**-ը և **ḫazzùra**-ն ավելի շուտ որպես անկախ փոխառություններ: Միջագետքի աշխարհը խնձորենու հետ առաջին անգամ ծանոթացել է Սարգոնի դարաշրջանում և նրա շնորհիվ: Հետևաբար, խնձորի **ḫasḫuru** անունը չի կարող սումերական կամ սեմական ծագում ունենալ: Դա այն բառն է, որ գործածում էին Կեսարիայի շրջանում, այսինքն՝ նախախեթական բառ է: Դա անվիճելի է:

Հնարավոր է, որ **ḫasḫuru**-ն հայերենի մեջ է թափանցել այն ժամանակներում, երբ հայերը դեռևս Եփրատը չէին անցել և ապրում էին Փոքր Հայքում, Կեսարիայի շրջանի մոտերքում, այսինքն՝ մոտավորապես VIII-VII դարերում:

Իհարկե, դժվար է ճշգրտել հնչյունական աղերսը երկու այնպիսի բառերի միջև, որոնք միմյանցից բաժանված են երեք հազարամյակի անջրպետով: Սակայն աղերսը կասկածից դուրս է, և դա է կարևորը:

Իհարկե, կարելի է նաև ընդունել, որ վիճելի բառը ուրարտական ծառանգություն լինի, որը հայերը վերցրած լինեն այդ երկրի այլ մշակութային հարստությունների հետ միասին: Դրանով ըստ էության ոչինչ չի փոխվում:

Շատ հետաքրքիր է, որ **ḫasḫuru**-ն, համարյա իր նախնական ձևով, պահպանվել է մինչև մեր օրերը կովկասյան լեզուներում: Լազերն ու մինգրելները խնձորն անվանում են **ušk'uri**[4], սվանները՝ **vusgv** կամ **vusk**[5]: Վերջինը, ինչպես նաև վրացերեն **vašli**-ն (խնձոր), սոսկ նույն **ušk'uri**-ից ծագած ձևեր են ներկայացնում: **Vašli**-ի մեջ **š**-ն գալիս է մինգրելերեն **šk**-ից. **švidi**-ն (յոթ) համապատասխանում է մինգրելերենի **škvit'i**-ին, **švili**-ն «որդի»՝ մինգրելերենի **sk'ua** ***sk'uali**-ին: Այնուհետև, վրացերենի -li վերջավորությունը համազոր է մինգրելերենի **-ri**-ին. **jal-li**-ն «շուն» մինգրելերենում **jo-tori** ձևն ունի. ուրեմն, **vaš-li**-ն կանոնավոր է մինգրելերենի **ušk'u-ri**-ի դիմաց: Սվաներենը **jat-li** փոխարեն ունի **zel** «շուն», ինչպես նաև **vaš-li**-ի փոխարեն՝ **vusk**, այսինքն՝ նա կորցրել է **-li** վերջավորությունը: Մինգրելերենը նույնպես զեղչում է վերջավորության -li-ն, օրինակ՝ **xe** (**xe-li**-ի փոխարեն) «**ձեռք**», կամ **sk'ua** «**որդի, երեխա**» (= վրաց. švi-li), բայց -li-ն երևան է գալիս եռզնակիում՝ **xe-lep'i**, **sk'ua-lep'i** և այլն: Մինգրելերենը, թվում է թե, տարբերում է **-li** վերջավորությունը **-ri** վերջավորությունից, որը վրացերենում, նույնպես դառնում է **-li**: Սվաներենը նույն ձևով է վարվում **-li**-ի և **-ri**-ի հետ: Այսպիսով, **vašli**-ն և **vusk**-ը գալիս են **vaškuri**-ից, որ նույնն է, ինչ որ **ušk'uri**-ն: **va** սկզբնավորման հերթագայումը **u**-ի հետ ոչ մի դժվարություն չի ներկայացնում[1]:

Խնձոր անունն անցել է Կովկասի նաև այլ լեզուներին: Այն կա Դաղստանի բազմաթիվ լեզուներում և շատ այլազան ու փոփոխված ձևերով, այն աստիճան, որ դրանք անճանաչելի են դարձել. օրինակ՝ **haš-hač**, **veš-več**, **yeš-yeč**, **eš-eč** և այլն: Այս լեզուներից մի քանիսը (ինչպես՝ վարկուն, կուրաճ, լեկ) գործածում են՝ **hinče-hinze**, **xinč-xinj**[2]:

Այս միավանկ ձևերը հիմնված են **ušk'uri**-ի վրա (առանց վերջին տարրի), ուրեմն՝ ավելի շուտ **vusk**-ի վրա: **xinj** ձևը հայերեն **խնձորի** հետ նմանություն ունի, և դա ևս մի փաստ է, որ հայերենն ասորերենի **ḫazùrra**-ից կախում չունի:

Գալով **ušk'uri**-ի և **խնձորի** միջև եղած հարաբերությանը, դա բխում է ḫasḫura ընդհանուր ակունքից: Մինգրելերենը սղել է սկզբնատառ ḫ-ն և խլացրել միջին -ḫ-ն, մինչդեռ հայերենը առաջին ḫ-ն պահպանել է, իսկ երկրորդը անհետացրել: Խնձորն առաջ է գալիս **xunjor** կամ **xinjor**-ից, երկրորդային ն-ն շչականից առաջ, կարծում ենք, օտար չէ հայկական հնչյունաբանությանը՝ **ինձ** անձնական դերանունը՝ տրական հոլովով՝ **եզ**-ի (հմմտ. մեզ, քեզ) փոխարեն նույնանման դեպք է ներկայացնում: Նույնպես «**կորիզ**»-ը, որ բարբառային ձևով «կորինձ» է արտասանվում, Մ(ու) զուր = Մ(ու)նձուր:

Եթե ասորերեն **ḫazùrra**-ն կախում ունի հայերենից, ապա փոխառությունը կատարվել է -ն-ի հավելումից առաջ, երբ խնձորը **xuzur** տեսքն ուներ:

Խնձոր անվան այսքան լայն տարածումը չի՞ նշանակում արդյոք, որ այս մրգի մշակումը ծագում է Փոքր Ասիայի նախախեթական միջավայրից և այնտեղից է, որ տարածվել ու մեկ կողմից հասել Կովկասի լեռները, իսկ մյուս կողմից՝ Միջագետքի աշխարհը[3]:

---

[1] **F. Hommel**, Aufsätze und Abhandlungen, 1892, էջ 167:

[2] **Paul de Lagarde**, Armenischen Studien, 1877, էջ 67, նույնպես «Zur Urgeschichte der Armenier», Berlin, 1854, էջ 30:

[3] Armenische Grammatik, II, էջ 305:

[4] **И. Кипшидзе**, Грамматика мингрельского языка, էջ 333:

[5] **U. Vardrop**, English-Suanetian Vocabulary, JRAS, 1911, էջ 592:



[1] Հայերեն վախճան բառը վրացերեն արտասանվում է oxčan (օխճան): Նույնիսկ ռուսերեն водка-ն մինգրելերեն արտասանվում է отка:

[2] **R. von Erckert**, Die Sprachen des Kaukasischen Stammes, էջ 42:

[3] Այն սակավաթիվ տեղեկությունները, որ ունենք նախախեթերի և նրանց լեզվի մասին, թույլ չեն տալիս ներկայումս խոսել կովկասյան ժողովուրդների և Փոքր Ասիայի հին բնակիչների էթնիկական ազգակցության մասին:

## 2. Tittu «Թուզ»

Հունարեն *τῦχον* կամ *σῦχον*, լատիներեն **ficus** և հայերեն **թուզ** բառերի ազգակցությունը ցույց է տվել Ա. Մեյեն, որը դրանց մեջ տեսնում էր միջերկրական աշխարհից կատարված անկախ փոխառություններ[1]:

Այժմ, երբ մեզ հայտնի է **tuttu** «թուզ»-ի գոյությունն այնքան հեռավոր անցյալում, բնական կլինի նրա հետ կապել քննարկվող բառերի ծագումը: Հայերեն **թին**-ը (խաղողի կորիզ) և արաբերեն **tîz**-ը («**թուզ**»), անտարակույս, պատկանում են այդ նույն խմբին:

Բոլոր այս բառերը **tittu**-ի հետ միասին ունեն առաջին վանկը **tu** : **ti**, բայց տարբերվում են երկրորդով՝ **ko** : **gho** (հայերեն դարձել է զ՝ ու-ից հետո, իսկ սառերեն ներկայացված է **pag-ga**-ով, արաբ. **figg-ով**[2] ) և **no**-: Սակայն կա մի բառ, որը լավ է ներկայացնում **tuttu**-ն, դա «**թութ**» բառն է, որն ամբողջ Մերձավոր Արևելքում նշանակում է «**թութ**»: Սանսկրիտում կա **tula** «հնդկական թութ»[3]:

Աստվածաշնչում (Ամովս Է, 14) հայերեն **թութ**-ը հունարեն տեքստում *συκάμινα* է, իսկ վերջինը, ըստ Հեսիքիոսի, նույնանում է հունարեն *μόρον* կամ *μῶρα*-ի (թութ) հետ: Հունարեն *συκομορέα*-ն, որ մեզ առանձնապես է հետաքրքրում, հայերեն թարգմանված է **ժանտաթզենի** (**Ղուկաս ԺԹ**, 4), «ժանտ» (իրանական **janta** ներկայի դերբայ gan-ից), «կծու, դառն» և «**թ**(ու)զ-ենի» (թզենի) բառերից: Սիկոմորը (մի տեսակ թզենի) այլ է, քան *βάτος* -ը, որը հայերեն թարգմանված է **մորենի** (**Ղուկաս Զ**, 44): Այս բառը հունարեն *μόρον* բառի փոխառությունը չէ, քանի որ հունարենի պես թթի իմաստը չունի, այլ նշանակում է «**մորենի, եղակ**»: Եթե այն փոխառություն լիներ, ապա հունարեն *συκομορέα*-ն կթարգմանեին **թզամորենի** և ոչ թե **ժանտաթզենի**:

*Συκομορέα* կազմությունը ցույց է տալիս, որ տեղի թե անտեղի որոշ նմանություն են գտել երկու մրգերի՝ թզի և թթի միջև: Գուցե այդպիսի ըմբռնումի հետևանքով է, որ դրանք հայերեն էլ նման անուններ են կրում՝ **թուզ** և **թութ**: Մյուս կողմից, խաղողի կորիզները հիշեցնում են թզի կորիզները, այստեղից էլ նրանց անունների նմանությունը՝[4] **թին**-ը Աստվածաշնչում (**Թուոց Զ**, 4) համապատասխանում է հունարեն *γίγαρτον* -ին (խաղողի կուտ) և արաբերեն tîn-ին (թուզ):

---

[1] **A. Meillet**, Mémoires de la Société de linguistique, XV (= 1908-1909), էջ 163:

[2] **Hehn**, Kulturpflanzen, էջ 100:

[3] **P. de Lagarde**, Arm. Studien, էջ 59 և Zur Urgeschichte der Armenier, էջ 30:

[4] **Պլինիոս**, XIII, 56՝ ficus moro similis. **Hehn**, Kulturpflanzen, էջ 386:



Այսպիսով, հանգում ենք այն եզրակացության, որ բոլոր այս բառերը նախախեթական **tutti**-ի հետ ընդհանուր ծագում ունեն և կազմվել են **ti-tu** մասնիկից **-to**, **-ko**, **-gho**, **-no** (միգուցե = սանսկրիտ. **-lo**-ին) ածանցների օգնությամբ:

## 3. Šalluru «սալոր»

Դա մի ծառ է, ինչպես հաստատում է **giš** գաղափարանիշը, բայց ի՞նչ ծառ է, հայտնի չէ: Որքան մեզ հայտնի է, ոչ մի նույնացում դեռևս չի կատարվել: Մեր կարծիքով, կարելի է այդ բառի մեջ տեսնել հայերեն **սալորը**, գավառաբարբառ՝ **շլոր**: Բառի այդչափ հարազատ տեսքը, պահպանված հազարամյակների ընթացքում, չպետք է մեզ զարմացնի, նույն դեպքը տեղի է ունեցել նաև մինգրելերենում՝ **ušk'u-ri** փխ. ḫasḫuru: -uru կամ **-ru** վերջին տարրը **ḫasḫuru** -ի մեջ երևան է գալիս նաև ḫasḫuru-ի մեջ: Գուցե, դա վերջածանց կամ նվազ էական մի տարր է, որը սվաներենում վերացել է՝ vušk= ušk'uri: salu- սեղմ ձևը կարո՞ղ է հանգել իրանական **ālu** ***halū**-ին (սալոր), որտեղից և՝ **gau-alu** (մի տեսակ սալոր), **šaft-alu** (դեղձ): Փոքրացուցիչ ձևը՝ **alū-ča** (քրդ. **alūk**)՝ ավելի տարածված է: Վրացերեն **k'lisvi** կարծես ***k'viali** լինի = **gaualu** (հմմտ. **ak'lemi**= *κάμηλος*): Դաղստանի լեզուներում մեկ ուրիշ նշանակալից բառ կա, որ ներկայանում է ծփուն հնչմամբ՝ **kukom, kakan, kakin, kukan**[1] և մտածել տալիս հունարեն *κοκκυμῆλον*-ի (սալոր) մասին, բարբարոսական բառ և, անշուշտ, կովկասյան բառերին նույնական: Ինչպես որ լազերեն ombri, omvri-ն հիշեցնում է հունարեն *βράβ*-υλον-ը (սալոր):

## 4. Sîrdu

Այս բույսը դեռևս որոշված չէ: Հիշենք հայերեն «**ցիրդ**» բառը, որը հունարեն թարգմանվում է *στοιβή* Աստվածաշնչի նախադասությունների մեջ՝ *ἀντὶ τῆς στοιβῆς ἀναβήσεται κυπαρίσσος* (**Եսայի Ե**, 13):

Ներկա դեպքում այս անունը ցույց է տալիս մի տեսակ մացառ կամ փշատերև բույսերի ընտանիքին պատկանող, ցածր բուն ունեցող, համարյա մշտադալար ծառ: Սարդոնը տարել է ոչ միայն թերքատու ծառեր, այլև զարդարանքի ծառեր իր պարտեզների համար: Հայերեն **ցիրդ**, **ցիրդ-ն**, **ցիրդ-ենին** շատ հարմար է այդ նպատակի համար, մի բան, որ հավանական է դարձնում մեր ենթադրությունը, որքան էլ վերապահումներով մոտենանք նրան:

---

[1] **R. von Erckert**, նշվ. աշխ., էջ 113:

## 5. Šušu

Ḫarra-ḫubullum սալիկները հիշատակում են **šušu** անունով մի ծառ, որը չի կարող անջատվել արաբերեն (ավելի շուտ՝ պարսկերեն) **sūs** «կաղամախի» և հայերեն **սոսի** «սպիտակ կաղամախի»-ից: Հայ պատմիչ Մովսես Խորենացին պատմում է, որ Շամիրամի հետապնդման զոհ դարձած Հայոց թագավոր Արայի որդին Անուշավան էր կոչվում և կրում էր Սոսանվեր (սոսիին նվիրված) մականունը, որովհետև նա նվիրված էր **սոսի** ծառերի պաշտամունքին՝ Արմավիրում[1]: Արդ, այն բլրի ստորոտում, ուր տեղավորված էր Հայաստանի հին մայրաքաղաք Արմավիրի միջնաբերդը, պատսպարված է մի գյուղ, որը մեր օրերում դեռևս հիացնում է իր հրաշալի սպիտակ սոսիներով:

## 6. Ḫallūru «ոլոռն»

Ըստ Բրունո Մայսների, այս ասուրական բառը նշանակում է «ոլոռն»[2]: Անմիջապես մտածում ենք հունարեն *ὄλυρα* -ի և հայերեն **ոլոռնի** մասին: Աստվածաշնչում (Բ **Թագավորաց** ԺԷ, 28) *κύαμον καὶ φακόν*-ը հայերեն թարգմանել են «ոլոռն և ոսպն»: Ուրեմն, **ոլոռն** նշանակում է *κύαμος* «բակլա»: Աստվածաշնչում (**Եզեկ**. Դ, 9) *κύαμον καὶ φακὸν καὶ κέγχρον καὶ ὄλυραν* = «ոլոռն և ոսպն (ոչ թե «ոսպն և ոլոռն», ինչպես տպագիր տեքստում է) և կորեակ և հաճար»: Այստեղ ևս *κύαμος* -ը համապատասխանում է **ոլոռնին**: Ուշադրություն է գրավում *ὄλυρα* -ն, որը հայերեն թարգմանվել է «հաճար» այդ նույն նախադասության մեջ: Ուրեմն, իմաստային տարբերություն կա *ὄλυρα*-ի, և **ոլոռնի** միջև՝ մեկը նշանակում է «հաճար», մյուսը՝ «բակլա»: Այդ տարբերությունը ապացուցում է, որ հայերեն տերմինը հունարենից փոխառված չէ և ոչ էլ հունարենը՝ հայերենից: Արդ, հունարեն բառը հնդեվրոպական ստույգ ստուգաբանություն չունի, և հայերեն **ոլոռնը** նույնպես: Նրանց նմանությունը ասուրական բառի հետ պատահական չէ: Պետք է ընդունել, որ նրանք բխում են **ḫallūru**-ից: **Ոլոռն** հայցական է, որ դարձել է ուղղական, ինչպես **ոտ**-ն. հին ձևը **օլոռ** է: Նշենք, որ այստեղ, ինչպես **խնձորում** և **սալորում**, **ḫallūru**-ի վերջին վանկը դարձել է **-որ**:

Անշուշտ, **ḫallūru**-ն սեմական չէ, այլ ավելի շուտ՝ ասիանիկ փոխառություն:

[1] **Մովսես Խորենացի**, I, գլ. 20:

[2] **B. Meissner**, Babylonien und Assyrien, I, էջ 199:



## 7. Kudurru «կոթող»

Այսպես են կոչվել այն կոթողները, որ կանգնեցնում էին Ք. ա. XVIII դարից՝ կասսիտական դինաստիայի ժամանակներից սկսած, որոշ արտոնություններով օժտված կալվածներում և նրանց վրա փորագրում շնորհված արտոնությունները[1]: **Kudurru**-ն, ուրեմն, կասսիտական բառ է: Կասսիտական դինաստիան ծագումով սեմական չէր (2): Մեր կարծիքով, **kudurru**-ի և հայերեն **«կոթողի»**-ի կամ վրացերեն **godoli**-ի միջև ազգակցություն կա:

«**Կոթող**»-ը գալիս է հնուց: Նա համապատասխանում է *σκόπος*-ին (Ղևտ. ԻԶ, 1)՝ *οὐδε λίθον σκοπὸν θήσετε ἐν τῇ γῇ ὑμῶν*: **Դ Թագավորաց** ԻԳ, 17, տալիս է *σκόπελος*: **Եսայի** Լ, 17 տողը թարգմանված է՝ *ὡς σημαίαν φέρων ἐπὶ βουνοῦ* **իբրև կոթող կանգնեալ**: Վերջապես, **Եզեկ**. ԺԶ, 31-ի մեջ կարդում ենք՝ **կոթողս կոթողէիր** = *τήν βάσιν σου ἐποίησας*: Այսպիսով, **կոթողը** հունարեն չորս բառի տեղ է գործածվում՝ *σκόπος*, *σκόπελος*, *σημαία*, և *βάσις*: Սոլմսենն իրավունք ունի պնդելու, որ *σκόπος* նշանակում է ոչ թե «դիտման վայր», այլ «տաշած քար»[2]: *Λίθος σκόπος* համենայն դեպս նշանակում է «քար կամ պատկերներով զարդարված կոթող»: *Σκόπελος* -ը վերոհիշյալ տողում «գերեզմանաքարի» իմաստն ունի, ուրեմն՝ կոթողի: *Σημαία* -ն մի քար է, որը որպես նշան է ծառայում, իսկ *βάσις*-ը նշանակում է «պատվանդան»: Այս բոլոր նշանակությունները հարմարվում են **կոթողին**, որն այնքան սովորական տերմին է դարձել, որ նրանից կազմել են **կոթողել** բայը՝ «հուշարձան կանգնեցնել»:

Վրացերեն godoli-ն նույնքան հին է, որքան հայերեն **կոթողը**. նա արդեն կա Աստվածաշնչում, որտեղ նրանով թարգմանված է հունական տեքստի *βάρεις*-ը և հայկական տեքստի **աշտարակը** (**Սաղմ**. ԽԸ, 12): Հունարեն *πυργοβάρεις* (**Սաղմ**. ՃԻԲ, 7) նույնպես թարգմանված է **godol-t'a** (հոգն. **godoli**-ից)[3]:

Ուրեմն, godoli նշանակում է «աշտարակ»: Հայերենից փոխառված չի թվում: Godoli-ի և **կոթողի** միջև հնչյունական ու իմաստային խոտորումներ

[1] **B. Meissner**, նշվ. աշխ., էջ 127: **G. Contenau**, Manuel d'archéologie orientale, III, էջ 1167: **E. Dhorme**, L'évolution religieuse d'Israël, I, էջ 163, մոտեցնում է **kudurru**-ն հրեաների **-maṣṣēbhāh**-ին (կոթող):

[2] **Em. Boisacq**, Dictionnaire Etymologique grec, էջ 878:

[3] **Թիֆլիսի թանգարանի ձեռագրի համաձայն. տե՛ս R. V. Blake, Khanmeti Palimpsest Fragments of the Old Georgian Version of Jeremiah, table p. 255:**

կան, բայց նմանությունը այնպիսին է, որ դժվար է նրանց միմյանցից անջատել: Նրանք միևնույն ծագումն ունեն և կասսիտական **kudurru**-ին ազգակից են: Հայերենը պահպանել է խուլ սկզբնատառ պայթական բաղաձայնը, վրացերենը՝ ներքին հնչեղ պայթական բաղաձայնը. երկուսն էլ վերջին -l հնչյունը հակադրում են կասսիտական -r հնչյունին: Արդյո՞ք նրանք ազգակիցներ են, արդյո՞ք նրանց նախատիպարը **kudurru**-ն է: (Հիշենք նաև, որ վրացերեն **kilde**-ն, գուցե, բխել է ***kdle**-ից, որ նշանակում է «ժայռ»): Ըստ F. Steinmetzer-ի, սահմանաքարերի վավերագրերի օրինականությունը անվանվում է kanda և kunukku[1]: Արդ, վերջին բառը (kunukku) հայերենում նույնպես պահպանված է՝ «կնիք»[2]:

### 8. Burgn «աշտարակ»

Վերը հիշատակված *πυργοβάρεις*-ը հայերեն թարգմանված է **«բրգաւն ամուրս»** (աշտարակներ, բերդեր), որտեղ առաջին բառը համապատասխանում է *πύργος*-ին, երկրորդը՝ *βάρεις*-ին:

**Ա Մակաբ.** ԺԳ, 28, նույն burgn բառով թարգմանված է *πύραμις*: Շատ հաճախ է արծարծվել *πύργος*-ի, գոթ. baurgs-ի, լատին. **burgus**-ի ծագման խնդիրը, առանց, սակայն, անառարկելի լուծման հանգելու: Նույն կարգի հայերեն **բուրգն** բառը Հյուբշմանի կողմից դասված է անհայտ ծագում ունեցող բառերի շարքում:

Անսպասելի մի լույս եկավ պարզաբանելու հարցը: Ուրարտական սեպագիր արձանագրությունները Հայաստանում հիշատակում են burgana, որ նշանակում է «դղյակ», «պալատ»: Իշպուինի թագավորը (մոտ 820 թ.) Վանի մոտ Արալեզքի արձանագրության մեջ նշում է այն[3]: Հայերեն **բուրգն**, սեռ. **բուրգան**, զուգադիպում է այդ ուրարտական տերմինի հետ: Դժվար է ժխտել նրանց ազգակցությունը: Կարելի է, ուրեմն, կռահել, որ բառը ծագումով ասիանիկ է և անցել է Ուրարտու (ինչպես, օրինակ, **patara** քաղաք բառը) ու միևնույն ժամանակ ճանապարհորդել է հունական ոլորտում՝ *πύργος* ձևի ներքո, ապա հասել է Իտալիա, գուցե՝ էտրուսկների միջոցով, **burgus** ձևով:

[1] Die Babylonische Kudurru (Grenzsteine), էջ 100, Studien zur Geschichte der Kultur des Altertums. **Dr. Drerup**, 1, XI, Heft 4-5.

[2] Հմմտ. **A. Meillet**, Esquisse d'une grammaire comparée de l'arménien classique, 2-րդ հրատ. (Vienne, 1936), էջ 143:

[3] **C. F. Lehmann-Haupt**, Corpus Inscriptionum Chaldicarum, I, № 10 = **A. H. Sayce**, JRAS, XIV (= 1882), № 111, տե՛ս նաև **M. Tsérétheli**, Etudes Ourartéennes:



### 9. Udru «ուղտ»

Հայերեն **ուղտ**, սեռ. **ուղտու**, կախում չունի իրանական **uštra**-ից (որը հանդիպում է ištrmut-ի մեջ, իրանական **ušturmurg** «ջայլամ», նաև **štr-palank'**= **šuturpalang** *καμηλοπάρδαλις*-ում), այլ հնչյունական տեսակետով կանոնավոր կերպով համապատասխանում է ասուրական **udru**-ին, ինչպես **արտ**-ը՝ *ἄρδα*-ին, ինչպես *Χάλδιοι*-ն՝ **Խաղտի-ք**-ին: Իրանական **uštra**-ն նույնպես ծագում է ասուրական **udru**-ից[1]:

### 10. Maksu «մաքսատան հարկ»

**Մաքսն** *τέλος* (մաքսավոր՝ *τελώνης*, մաքսապետ՝ *ἀρχιτελώνης*, մաքսել՝ *τελωνίζω* և այլն) անմիջական հարաբերության մեջ չէ ասորական **maxsā**-ի հետ, այլ ծագում է ուղղակի ասուրական **maksu**-ից:

### 11. Kumru «քուրմ»

Հայերենը պահպանել է նաև ասուրական այդ բառը մի տառափոխությամբ՝ **քուրմ** k'urm: Ասորերենից փոխառված չէ (3), որովհետև ասորերեն **kumra** հայերեն կլիներ **քումրայ** կամ **քուրմայ**, ինչպես **kahna**-ն տվել է **քահանայ**: Հայերենը կախում չունի նաև արամեերեն **kômer**-ից, որը kemarîm ձևով երևան է գալիս **Բ Թագ**. ԻԳ, 5-ի մեջ, *τοῦς χωμαρείμ*, որը համապատասխանում է հայերեն **քրմարիմ**-ին:

### 12. Kupru «կուպր»

Հայերեն **կուպրի** նմանությունը ասուրերեն բառի հետ բացահայտ է: Աստվածաշնչում **կուպր** հունարեն դառնում է *ἄσφαλτος* (**Ծննդ.** ԺԱ, 3): Ո՛չ ասորերեն **kufrà**-ն, ո՛չ արաբերեն **kufr**-ը և ոչ էլ եբր. **kôfer** -ը չեն կարող հայերեն բառի աղբյուրը լինել: Այն ուղղակի ասուրերեն **kupru**-ից է բխում: Նրանից կազմվել է **կուպր-ան** բառը, որ նշանակում է «տիկ»՝ ներսից կուպրով ծածկված:

[1] **A. Meillet**, նշվ. աշխ. էջ 143:

### 13. Ḫuradu «ռազմիկ»

Ուրարտացիների մոտ այս բառը նշանակում է «ռազմիկ»՝ **ameluḫuradi-nase**[1]: Սա հիշեցնում է վրացերեն **m-xedari** «ռազմիկ», **m-xedroba** «բանակ», **m-xedr-eba** «զինել», **m-xedr-uli** «զինվորական» և «քաղաքացիական» զրույթյուն: **M-xedar**-ը տառափոխությամբ ծագում է **m-xerad**-ից (հմմտ. **t'ut'xmeti t'xut'meti**-ից - «տասնհինգ»). **m**-ն վրացերեն նախածանց է:

### 14. Kukru «եղերդ» (ցիկորի)

Հունարեն *κίχορα* «եղերդ»՝ անշուշտ ասուրական բառի ազգակից է[2], որը, հավանաբար, ծագումով Փոքր Ասիայից է:

### 15. Puglu «բողկ»

Վարանում եմ համեմատել հայերեն **բողկի** և վրացերեն **boloki**-ի հետ: Նմանությունը զրավիչ է, բայց **բողկը** կարող է հունարեն *βόλβος* -ի՝ «սոխ», լիտ. **bumbulŷs**-ի՝ «կարմիր բողկ», հետ ընդհանուր ծագում ունենալ:

* * *

Սրանք են այն բառերը, որոնք գալիս են վաղ հնությունից, և որոնք հայերը, մեր կարծիքով, հավաքել են մասամբ Հայաստանը գրավելուց առաջ և մասամբ հետո: Նրանց նոր հայրենիքն անապատ չէր: Մի մեծ պետություն էր ծաղկում այնտեղ՝ սկսած IX դարից մինչև VI դարը, դա Ուրարտու պետությունն էր, որն ուներ իր լեզուն, իր սեպագիր գրականությունը և առաջադեմ քաղաքակրթությունը: Նրա առաջնորդները բավական ուժեղ էին Ասորեստանի հզոր միապետների հետ չափվելու համար: Ուրարտական պետության հիմնադիր Արամե թագավորի հիշատակը հավերժացել է հայկական ավանդության մեջ: Դեռ ավելին. հայերը նրան դարձրել են իրենց նախնիներից մեկը: Արդ, լոկ այդ նշանակալից փաստն արդեն ապացուցում է, որ հայերը, որոնք, գուցե, նպաստել են Ուրարտուի կործանմանը, չեն խորշել նրա մշակույթից, ուրեմն և բնական է ընդունել, որ նրանց ստացած ժառանգության մեջ կա ուրարտական բառապաշարի որոշակի ֆոնդ (4):

[1] **C. F. Lehmann-Haupt**, Corpus Inscriptionum Chaldicarum, № 19. **M. Tseretheli**, Die Neuen ḫaldischen Inschriften König Sardurs, «Sitzungsberichte der Heidelberger Ak. d. Wiss., Phil. Klasse», 1927-1928, 5, abt.

[2] **Kukru** և **puglu**, տե՛ս **B. Meissner**, նշվ. աշխ., I, էջ 210-211:

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐԵՎԵԼՔԻ ՌԱԶՄԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԵԶՐԵՐՈՒՄ

### Հուսարներ, տրապաններ, տեսնակներ

## I

### Հուսար <χωσάριος.

Քանի որ պ[արոն] Եվգենի Դարկոն վերջերս՝ մի «քանիմաց» հոդվածագրախոսականում, որը նա տրամադրել էր «Byzantinische Zeitschrift»-ին, ինչ-որ տեղ հավերժացնում է այն առասպելը, որի համաձայն «հուսար» (hussard) բառը ստուգաբանվում է *κουρσάριος*-ով, ես գտնում եմ, որ հարկ է մի քանի տողով այստեղ ամփոփել այն հոդվածը, որը տպագրության եմ հանձնել «Melanges Boisacq» ամսագրին՝ «Ի՞նչ է «հուսարը», կամ ժամանակակից հունարենի օգտակարության մասին» [Qu'est ce qu'un hussard? Ou de l'utilité du grec moderne] վերնագրով: Այդտեղ կտեսնեք, որ «բանդիտ» կամ «ավազակ» նշանակող՝ սլավոններեն «հուսարը» (husar) հունգարերեն «հուզար»-ի (huszár, որը ոչ մի առնչություն չունի husz-ի՝ «քսանի» հետ) ուղղակի ստուգաբանումն է: Այդտեղ ես նաև նշում եմ, որ սլավոններեն այս բառը ծագում է ոչ թե գերմաներեն hansa-ից, ինչպես այդ կարծում էր պ[արոն] Ա. Բրյուկները, այլ պարզապես բյուզանդական (և ժամանակակից) հունարեն *χωσάριος, χωσιάρος, χωνσιάρος*-ից, որը հայտնի է իմ հղած զանազան բնագրերից, որոնցից գլխավորները, ինչպես նաև ամենավաղեմիները Ռ. Վարիի հրատարակված՝ X դարի «Scriptor incertus de re militari» [«Անհայտ հեղինակը ռազմական գործի մասին»] և Կեկավմենոսի (XI դար) «Strategikon» [«Ռազմավարական ձեռնարկ»] աշխատություններն են: *χωσάριος*-ի հունարեն ստուգաբանությունը թափանցիկ է: Դա ընդամենը *χωσιά*-ի՝ «ծուղակ», ածանցավոր բառն է, մի արտահայտություն, որն այսօր դեռևս խիստ գործածական է և ծագում է *χώνω*՝ «մտցնել» բայից, ինչպես *ἁρματωσία*-ն՝ «զենք, հանդերձանք» *ἀρματώνω*՝ «զինել, հանդերձանել, զարդարել» [բայից]:

Կոստանտին Սաթասը նախկինում հիանալիորեն բացատրել էր

[1] «Byzantinische Zeitschrif», t. XXXVIII (1938), fasc. 1, p. 284.

[2] «Mélanges Boisacq», տե՛ս Annuaire de l'nstitut de Philologie et d'Histoire Orientale et Slaves, t. V, 1937, p. 443-451.



«հուսար» (hussard) բառի ծագումը, սակայն neograeca non leguntur [նոր հունարենը չի ընթերցվում] (1), հատկապես սլավոնագետների կողմից: Ամենանշանավոր հունգար բյուզանդագետներից մեկը, ես նկատի ունեմ պ[արոն] Ե. Դարկոյին, ակնհայտորեն շատ ավելի քիչ է արժանի ներման: Սլավոներեն բառը (արդյո՞ք հարկը կա այն ասելու) չի ծագում և չի կարող ծագել *κουρσάριος*-ից: Հավաստի է, որ այն խաչաձևվել է այս բառի հետ՝ նշանակությունների նույնանմանության հիման վրա:

## II

### τραπεζίτης. «Դարբենդների կամ կլիսուրների մարդիկ»

Երբ *χωσάριος*-ի ստուգաբանությունն արդեն պարզորոշ էր Կոստանտին Սաթասի համար, և երբ մենք հարկն ունեցանք միայն այն մեկ անգամ ևս բացահայտելու, ապա՝ *τραπεζίτης*-ի՝ համանման նշանակություն ունեցող տերմինի ստուգաբանությունը, մինչ այսօր մնում էր մշուշապատ: Մեր իմացության սահմաններում՝ *τραπεζίτης* կարդացվում է միայն X դարի երկու զինվորական հեղինակների՝ Ռ. Վարիի [հրատարակած] Անանունի, որին մենք հենց նոր հղեցինք և Նիկեփոր Փոկասի «De velitatione bellica» [«Ռազմական ընդհարումների մասին»] գրքում (որը կարելի է թարգմանել իբրև «Պարտիզանի ձեռնարկ»): Ահա մի հատված Վարիի [հրատարակած] Անանունից[1]: Այն քաղված է *Περὶ δουκατώρων καὶ κατασκόπων*՝ «Ուղեցույցների և լրտեսների մասին» խորագիրը կրող գլխից. *ἔστωσαν δὲ καὶ χωσάριοι πλεῖστοι καὶ επιτήδειοι παρὰ τῷ τῆς ἀνατολῆς λαῷ καλούμενοι τραπεζῖται καὶ συνεχῶς ἄλλοι ἀλλαχόθι τῆς χώρας εἰσίτωσαν πρὸς τὸ αἰχμαλωτίζειν ἀνθρώπους* [«թող լինեն և հուսարներ՝ որքան հնարավոր է շատ, և հավատարիմ մարդիկ, որ Արևելքի ժողովուրդը անվանում է տրապեզիտներ, և այլք՝ թող անընդհատ մտնեն երկրի այլ կողմերը գերիներ վերցնելու համար»]: Համատեքստը խիստ ուսանելի է: Այս անցքերը տեղի են ունենում կլիսուրների, բյուզանդա-արաբական սահմանի կիրճերի տարածաշրջանում: Ուղեցույցները, իրոք որ, նրանք են, ովքեր ի վիճակի են հավուր պատշաճի ուղեկցելու բանակին, *καλῶς κυβερνῆσαι τὸ στρατοπέδον εἰς τὴν τῶν κλεισουρῶν διέλευσιν* [«լավ վարել բանակը, որպեսզի այն անցնի կլիսուրների միջով»]: Տրապեզիտներն ինչ-որ չափով նմանվում են *χωσάριοι*-ին: Նրանք ամենևին թիկունքայիններ չեն, այլ լրտեսներ են, որոնք դարան են մտնում՝ թշնամու

[1] Incertus Scriptor Byzantinus saeculi X, De Re militari, edidit R. Vari (Bibliotheca Teubneriana), chap. XVIII, p. 29.

շարժումներին ավելի լավ հետևելու կամ նրա փոքրաքանակ ստորաբաժանումներին անակնկալի բերելու և գերիներ ձեռք բերելու համար: Եվ տրապեզիտները զինվորագրվում են սահմանի՝ ռազմական սահմանեզրերի բնակչության թվից: Հմմտ. De velitatione bellica, cap. III, p. 189D. *ἀπὸ τῶν ἀποστελλομένων κατασκόπων χρὴ τὰς κινήσεως τῶν φωσσάτων ἀναμανθάνειν, καὶ τραπεζίτας ἐπιλέγεσθαι γενναίους καὶ ἀνδρείους, οὓς οἱ 'Αρμένιοι τασιναρίους καλοῦσι* [«ուղարկվող լրտեսներից պետք է իմանալ, թե ինչպես են տեղաշարժվում ստորաբաժանումները և զորագրել տրապեզիտներին՝ ազնիվ և խիզախ [մարդկանց], որոնց հայերը կոչում են *տասինարներ*»]՝ և ստորև՝ cap. VII, p. 196D, *ἐν τῷ τοιούτῳ τοίνυν καιρῷ ὅτε ἡ συνάθροισις τοῦ φωσσάτου τῶν πολεμίων μέλλει γίνεσθαι συνεχέστερον τοὺς τραπεζίτας ἀποστέλλειν ἤτοι τὰ τασινάκια* [«այն ժամանակ, երբ թշնամին մտադրություն է ունենում հավաքել ստորաբաժանումը, պետք է նորից և նորից ուղարկել տրապեզիտներին, այսինքն՝ *տասինակներին*»]:

Ո՞վ չի տեսնում, որ *τραπεζίτης*-ը, անտարակույս, օտար բառի, ինչ որ չափով հումորիստական, հունականացումն է, որը որևէ առնչություն չի կարող ունենալ ո՛չ սեղանի և ո՛չ բանկի հետ (2): Նույնանմանությունների պակասը չկա: [Կոստանդին] Ծիրանածինը մեզ հաղորդում է Խարսիանոնի բանակաթեմի տուրմայի մասին, որ կոչվում էր *Κυμβαλαιός* և գտնվում էր *Συμπόσιον* անապատի հարևանությամբ: Ինչպես այդ մասին արդեն նշեցի[1], *Κυμβαλαιός*-ը և *Συμπόσιον*-ը «ակնհայտորեն տեղական անուններ են՝ հունարենի տեսք ընդունած, *ἐπὶ τὸ ἑλληνικώτερον*, [հնարավորին չափ հելլենացված], երկու պարագայում՝ հանրատարած, *գրքային* ստուգաբանությամբ, եթե կարելի է այդպես ասել»: Նմանապես, *Τιροποιόν* կամ *Τιροποιεῖο* ամրոցը, «պանրագործարանը» կամ առավել ևս *Τρυπία*-ները, այն է՝ «անցքերը», երկու հունարեն տառադարձումներ են, որոնք երկուսն էլ ներշնչվել են օտար բառին փոքրիշատե արտահայտիչ իմաստ տալու ցանկությամբ՝ արաբերենի (ալ)- Դուրուբ (Durūb)՝ «դռներ» կամ «կիրճեր» հոգնակիից[2]: Այս վերջին օրինակը մեզ մատնացույց կանի *τραπεζίτης*-ի մեկնաբանության գոհացուցիչ ուղին: Տրապեզիտները պարզապես կիրճերի (պարսկերեն՝ *darband* կամ *darbend*, թուրքերեն՝ *der-bend*)[3] մարդիկ են: *Darbend*-ից ստացել են *τραπεζ-ίτης*՝ *ἀκρ-ίτης*,

1 «Byzantion», VIII (1933), pp. 85 sqq.

2 «Byzantion», X (1935), p. 255.

3 Ֆ. Միկլոշիչն, անկասկած, իրավացի էր միևնույն բառից կազմավորելու համար սլավոններեն drabant բառը (գերմաներեն՝ trabant, ֆրանսերեն՝ traban): Բայց մենք վերստին կանդրադառնանք այս quaestio vexata-ին [ծեծված հարցին]:



*Χαρσιαν-ίτης*, *'Αραβ-ίτης* բառերին բնորոշ ածանցի միջոցով և darbend-ից՝ *τραπε(ν)ζ* (*ζ*-ն խիստ մոտ է *ծ*-ին )՝ աննշանակալից, սակայն սրամիտ մերձստուգաբանական փոփոխությամբ: *τραπεζίτης*, ինչպես տեսանք, մեկնաբանվում է իբրև *τασινάριοι, τασινάκια*: Պ[արոն] Ն. Ադոնցը մեզ համար կբացահայտի այս վերջին բառի ծագումը:

Բրյուսել
**Անրի Գրեգուար**

## III

## τασινάριοι, τασινάκια Ξ **հայերեն տեսնակ**

Հայերը *τραπεζῖται*՝ «տրապեզիտներին» անվանում են *τασινάριοι* կամ *τασινάκια*՝ «տեսնակ»: Հ. Գելցերը[1] գերադասել է *τασινάκια* տարընթերցումը և ցանկացել այս բառը մեկնաբանել իբրև հայերեն **տասնեակ**, ինչն անհնար է, քանզի հայերեն բառն ունի *τραπεζίτης*-ին կամ *κατάσκοπος*-ին համարժեք նշանակություն: Հիմք ընդունելով այս վերջին բառը, կարելի է ածանցել *τασινάκια* հայերեն *տեսանել* բայից, որի հիմքը *տես*-ն է: Հայերեն *ուն* ածանցի հետ մեկտեղ կարելի է ունենալ **տեսուն**-ը, «նա, ով տեսնում է» (կամ «նա, որին տեսնում են»), այնպես, ինչպես ունենք **խաւսուն**-ը՝ «նա, ով խոսում է»՝ «խոսել» բայից, ինչպես նաև **մնայուն**-ը՝ «այն, ինչը մնացել է», **կայուն**-ը՝ «այն, ինչը գոյություն ունի» և այլն:

Կարելի է կարծել, որ **տեսուն**-*άκια*-ում ածանցը հունարեն է: Սակայն ավելի հավանական է, որ մենք գործ ունենք հայերեն **-ակ** ածանցի հետ. *տեսուն+ակ* (**տեսունակ**) = տեսն-*ակ* (**տեսնակ** = *κατάσκοπος*, ինչպես խաւս-*նակ*-ը՝ խաւս-*ուն*-*ակ*-ից՝ «խոսող», «միջնորդ», ինչպես նաև «աքաղաղ կամ սոխակ»):

Հայերենում շեշտին նախորդող «ու» ձայնավորը, վերածվելով «ը»-ի (ը-ն գրեթե համապատասխանում է ֆրանսերենի համր e-ին), *τασινάκια*

1 H. Gelzer, Die Genesis der byzantinischen Themenverfassung. [«Բանակաթեմ» հաստատության ծագումը] - XVIII^er Band der Abhandlungen der philologisch-historischen Classe der Kgl. Sächstschen Gesellschaft der Wissenschaften, N V, p. 107, note 1. Das Wort fehlt in den armenischen Lexicis; es wird տասնարք oder տասնարիք oder, wenn die zweite Lesart das richtige trifft, տասնցկիք sein. Also die zehn Männer oder die «zenhfach Tapfern» oder endlich die «Zehnäugigen» [«Բառը չկա հայերեն բառարաններում. այն պետք է լինի «տասնարք» կամ «տասնարիք» կամ «տասնակիք», այսինքն՝ «տասն այր» կամ «տասը քաջեր» կամ «տասնականիներ»]:

բառում արտահայտված է i-ով: Ինչ վերաբերում է *τα* [վանկին]՝ *τε*-ի փոխարեն, ապա այդ հարկ է մեկնաբանել որպես հունարեն *τά* հոդի ազդեցություն:

*τασινάριος* ձևը (եթե միայն այն *τασινάκιος*-ի սխալ տարընթերցում չէ) պետք է, որ լինի *χωσάριος*-ից, *σχολάριος*-ից և համանման բազմաթիվ բառերից ծնունդ առած հունարեն կազմավորում:

Բրյուսել
Ն. Ադոնց



## ՀԱՅԵՐԵՆ ՄԻ ՔԱՆԻ ԲԱՌԵՐԻ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ (1)

### *1. «Կառք» նշանակող անունների առթիվ*

Հոբ. Թ, 9 Աստվածաշնչյան տողը՝ *ὁ ποιῶν Πλειάδα καὶ Ἕσπερον καὶ Ἀρκτοῦρον καὶ ταμίεια νότου* հայերեն է թարգմանվել «որ արար զբազմաստեղսն եւ զգիշերավարն եւ զսայլն եւ զշտեմարանս հարաւոյ», որտեղ *Ἀρκτοῦρος* = «Մեծ Արջ»-ի փոխարեն (2) դրված է «սայլ» բառը, այն է՝ Կառավար համաստեղությունը: [E.]Liden «սայլ» բառը համեմատում է հունարեն *σάτιλλα*-ին, որը, ըստ Հեսյուքիոսի [բառգրքի], նշանակում է *πλειὰς τὸ ἄστρον* «Բազումք» համաստեղություն[1], ակնհայտորեն թյուրիմացաբար՝ «Կառավար»-ի փոխարեն: Հազվադեպ *σατίνη* ([հոգնակի] սեռական՝ *σατινέων*)[2]՝ «ռազմակառք» ապացուցում է, որ *σάτιλλα*-ն իրոք կարող է նշանակել «կառք», դրանով իսկ *σάτιλλα* (*satilia) և «սայլ» բառերի փոխառնչությունը դառնում է ավելի զոհացուցիչ:

Վրացերենում կա etli (*etili)՝ «սայլ» և «համաստեղություն», երկու նշանակություն ունեցող մի բառ, որը, թվում է, համապատասխանում է մեզ հետաքրքրող եզրին: Սուլխան [Սաբա] Օրբելիանիի «Բառգրքի» համաձայն, etli-ն՝ արևից կամարաձև վաչով (kamarousiani) ծածկված սայլի տեսակ էր, հատկացված ազնվականների համար: Մյուս կողմից, բանաստեղծ Շոթա Ռուսթավելին, «Նա ո՞ր համաստեղության տակ է ծնվել» ասելով, գործածում է etli բառը:

Թվում է, որ «սայլ» և etli նշանակում էին Կշեռքի համաստեղությունը՝ երկու համաստեղության ձևերի միջև որոշակի նմանության պատճառով:

Վրացերեն etli<etili դրսևորում է շատ ավելի մերձ ցեղակցություն [հունարեն] *σάτιλλα*-ին, քան [հայերեն] «սայլ»-ը, ինչն ուշագրավ է: Ստուգաբանությունը որոնելիս, հարկավոր է նկատի առնել վրացերեն ձևը, որի շնորհիվ երևան է գալիս բառասկզբի –s հնչյունի առանձին մասնիկ լինելը: Սա մի հետաքրքիր դեպք է, որը հիշեցնում է նմանօրինակ մի առնչակցություն երկու՝ ևս «կառք» նշանակող *ἀπήνη* և *καπήνη* բառերի

[1] Commentarius philologicus in honorem J.Paulson, Göteborg, 1905; Em. Boisacq, Dictionnaire étymologique [de la langue] grecque. [Etudiée dans ses rapport avec les autres langues indo-européennes], Heidelberg-Paris, 1923], p.854.
[2] Hymnus homericus ad Aphroditen, 13; Euripidi Helene, 1311; Anacreon, fr. 21,12.

միջև: Առաջինը քաջ վկայված է Հոմերոսի ժամանակներից ի վեր, երկրորդն ավելի շուտ թեսալական է, գործածված Քսենարքոս բանաստեղծի կողմից: *ἀπήνη* բառը հայտնվում է միայն մեկ անգամ, բայց վաղեմի և ընտիր հայերեն բնագրում «յոպնակ» ձևով. «ընդէ՞ր մեծամտիցես, ով դու. զի ի կառս բարձում նստիցիս եւ լուծք ջորեաց ձգիցեն. նա եւ զքար այնպէս կրեն սայլիւք կամ յոպնակաւք»[1]:

Ընդհանրապես *ἀπήνη* համադրում են լատիներեն pannus<pānus (կերպասի կտոր, ծվեն), հունարեն *πῆνος, πήνη* (հյուսվածք), հին սլավոներեն o-pona (վարագույր) բառերին, ընդ որում *ἀ*-ն բխեցնում են *sm̥–ից: Ուստի *ἀπήνη* պետք է լինի ծածկույթով, վաչով կառք: Հետևաբար հիմքեր կան նաև *κ*-(*ἀπήνη*)-ի *κ*-ում ճանաչել ինչ-որ զուգիչ մասնիկ, հավանաբար co-, որ հավասար է լատիներեն com=cum[2]: Ինչ վերաբերում է հայերեն «յոպնակ»-ին, ապա հնարավոր է, որ այն աղավաղված «յապնակ» է, «*յապինակ>յապենակ»-ից, կամ, ավելի շուտ, այն համապատասխանում է սլավ. o-pona-ին, որը հայերենում պետք է դառնար *opuna>opna, քանի որ o, e [հնչյունները] n-ից առաջ վերածվելու էին u, i-ին և զեղչվելու էին շեշտի անհետանալու պատճառով: Ռուսերեն po-pona բառը (ձիու ծածկույթ, տապճակ) նույն ծագումն ունի:

Շատ հավանական է, որ «յոպնակ»-ը զինվորական նորամուծություն է: Հայ-իրանական կերպարանքը, որ բառը ստացել է *-ակ* վերջածանցի շնորհիվ, ևս նպաստում է այս ենթադրության: Նմանօրինակ աղճատման է ենթարկվել նաև *κάπηλος* («գինեպան») բառը. բացի «կապեղայ»՝ *καπηλεία*, որն, ի դեպ, հայերեն է անցել ասորերենի միջոցով (=qapela), հայերենում հայտնի է ևս մի ձև՝ «կրպակ»[3], «կուղբակ», փոխառված պարսկերենից (=*kurba<kurbak և *kulba<kulbak, որտեղից արաբերեն kurbağ). իրանական ձևը բացատրվում է միջին վանկի դրափոխությամբ՝ pel/lep (գինետուն, խանութ): Արևմուտքն Արևելքից փոխառել է magazin բառը, փոխարենը նվիրելով նրան *κάπηλος*= kulpak:

Ուրեմն, բնավ զարմանալի չէ, եթե «յոպնակ»-ը նույնպես փոխառված լիներ հռոմեական բանակից՝ ճիշտ այնպես, ինչպես և «կառք»-ը՝ լատիներեն carrus[4]: Ի դեպ, Հեսյուքիոսը նշում է. *καραρύες· οἱ σκυθικοὶ οἶκοι, ἔνιοι*

[1] Յովհաննէս Ոսկեբերան, Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի, հատ. Ա, Վենետիկ, 1826, էջ 377:

[2] Հմմտ. A. Ernout, A. Meillet, Dictionnaire étymologique [de la langue] latin. [Histoire de mots, Paris, 1932], pp. 231-232:

[3] H. Hübschmann, Armenische Grammatik, II Theil, Leipig, 1897, SS. 173 und 355, թվում է, թե առանձնացնում է այս բառերը:

[4] A. Walde (J. Hofmann), Lateinisches Etymologisches Wörterbuch, Heidelberg, 3. Aufl., 1938, S. 174, A. Meillet, [Hypothéses sur quelques emprunts de l'ancien arménien au latin], M[émoirs de la] S[ociété de].L[inguistique de Paris], t. XVIII [(1913)], p.349.



*δὲ τὰς κατήρεις, ἅμαξας* [«կարարյուներ». սկյութական տներ, իսկ ոմանք [ասում են]՝ սարքավորված կառքեր]: Հեսյուքիոսի նշումը պետք է հասկանալ այն իմաստով, որ ծածկված կառքերը սկյութացի քոչվորներին ծառայել են իբրև տներ: Հայերեն «կառուցանեմ» բառը, եթե այն բխեցնել «կառք» (սեռական՝ «կառուց») բառից, մտածել է տալիս «կառք»-ի սկյութական ծագման մասին: Այդ դեպքում նույնը կարելի է ենթադրել «յոպնակ»-ի և satilla-ի վերաբերյալ:

Այս զուգադիպությունը, սակայն, պատահական է թվում: «Կառուցանել» բայը, հավանաբար, կապված է այլ բառախմբի հետ. «կառչիմ», «կռիւ» կամ «կռուան», կամ նույն «կռիւ»-ը՝ «պայքար»-ի իմաստով:

*Σάτιλλα, σατίνη* և et(i)li բառերի միջև համապատասխանությունն ակներև է, սակայն դժվար բացատրելի: Բառասկզբի *σ-* թվում է, թե նույն կարգի մասնիկ է, ինչ և *κ*-ն *καπήνη* բառի մեջ՝ *ἀπήνη*-ի համեմատ. թերևս սա նույն k<$k_1$=so, ճիշտ այնպես, ինչպես ά<*sm̥m *ἅμαξα*-ի մեջ: Ուստի այն փոխառված է եղել satem լեզվից, ինչը թույլ է տալիս մտածելու սկյութացիների մասին: Այնուհանդերձ *-ιλλα, -ινη* ածանցները հիշեցնում են լիտվերեն rit-ula, rit-inis, լեհերեն rit-ulis, ritens-ը (կառք), հմմտ. լատիներեն rota, rotula (կառք)[1]:

## *2. Երինջ*

Գերմաներեն Rind (ցուլ) բառը չունի վստահելի ստուգաբանություն: F. Klüge[2] իրավամբ մերժում է դրա՝ *κέρας* բառին ազգակից լինելու մասին ենթադրությունը: Մեզ թվում է, որ այն կարող է առնչվել հայերեն «երինջ» բառին, որը ենթադրել է տալիս *rendhyo, ինչպես «մեծ»՝ *medyo: Հունարեն *ῥαίνω* («սրսկել, ոռոգել»), *ῥανίς, ίδος* («կաթիլ») և *ῥαθαμίγξ* («ջրի կաթիլ») հիմնվում են հնդեվրոպական *wren- և *wrendh- արմատների վրա: Սլավոներեն roniti («վայր գցել») երևան է հանում ևս մի հնդեվրոպական ձև՝ *ren, և թույլ է տալիս հաստատելու հնդեվրոպական ընդլայնված *rendh ձևը՝ *wrendh-ի համեմատ[3]: Հայերեն *երինջ* հնչյունաբանորեն համապատասխանում է *rendhyo-ին՝ «բեղմնավորող, արգասավորող»: Rind բառը՝ գոթերեն *hrimþis նույնպես մատնացույց են անում *rendhyo հիմքը:

Այս ենթադրությունը հաստատելու համար դիմենք նմանօրինակ դեպքին՝ հնդեվրոպական *ren/ *wren արմատների հարաբերությանը: Հունարեն *ἀρήν* («գառնուկ»), սանսկրիտերեն varša-ḥ («ցուլ»), varša-ḥ («անձրև»),

[1] A. Walde, Lat. Etym. Wört. 2. Aufl., Heidelberg 1910, S. 659.

[2] Etymologisches Wörterbuch der deutchen Sprache, 2. Aufl., S. 482.

[3] Em. Boisacq, Dict. étym. gr., p. 833.

հունարեն *ἔρση* («ցող»), լատիներեն verres («վարազ»), հայերեն *գառն* համապատասխանում են հնդեվրոպական *wren/*wres-ին: Սակայն հունարեն *ἄρσην* կամ *ἄρρην* («արու», «արգասավորող»), սանսկրիտերեն rşaba-ի («ցուլ»), arşati («հոսել», «ծորել»), ավեստական aršan («մարդ»), հայերեն *առն* («ոչխար», «խոյ» իմաստով), լատիներեն ros («ցող») ծագում են հնդեվրոպական *ren/*res-ից: Արդ, ինչպես *wren-ը, ընդլայնվելով, վերածվում է *wrendh-ին (*ῥαθαμίγξ*), ճիշտ այդպես և *ren-ի ընդլայնումը կարող է լինել *rendh-:

### *3. Գայլ («լկամ, սանձ»)*

Այս հայերեն բառը համապատասխանում է սանսկրիտերեն valga- («սանձ»), լետերեն walgs («չվան») և թերևս լատիներեն valgus («ծուռ թուր») բառերին = հնդեվրոպական *wlg: Ինչպես հնդեվրոպական *luq-wos/*wḷgwos, *λύκος*, lupus հայերենում տալիս է *գայլ* [կենդանի][1], այդպես և *walg/*wḷg պետք է հանգեցներ նույն *գայլ* ձևին: Այն կապված է հունարեն *λυγίζω* («ծռել», «ծալել») բառին: Վերջինը մերձեցվում է հայերեն *լուծանեմ* բառին, սակայն այս բառը արտածված լինելով *լոյծ*<$leug_1$-ից, ավելի շուտ համապատասխան է լատիներեն lugeo («ողբալ», «վշտանալ»), հունարեն *λευγαλέος*, *λυγρός* («տխուր», «անդուր»), սանսկրիտերեն rujati («կոտրել»), լիտվերեն laużyti («կոտրել») և այլն:

### *4. Լոյտ, լուտամ («կշտամբել», «նախատել»)*

Կարելի է մտածել լատիներեն ludus («խաղ», «մրցույթ») ձևի մասին, եթե այս առնչության չհակասեր բառի ձայնավորական կերպարը: Հնչյունաբանորեն *լոյտ*-ը համապատասխանում է լատիներեն plaudo («թխկթխկացնել, ծափահարել, ի նշան անախորժության աղմկել»). հնդեվրոպական *pleud- հայերենում տվել է *լոյտ* (p-ն զեղչվել է l-ից առաջ, հմմտ. «լիր»՝ *πλήρης*): Իմաստը դրան չի խանգարում՝ հայերենում « թխկթխկացնել» կամ «ծափահարել, աղմկել» ձեռք է բերել բացասական իմաստ՝ «նախատել», և ոչ «հավանություն տալ»: [Հայերեն հոմանիշ *բամբասեմ* բառը ոչ մի կերպ չի առնչվում *բասրեմ* բառին, այլ ծագում է *բամ* («ասեմ»)/*բաս* («ասես») ձևերից, հմմտ. արդի հայերենի *ասե կասե*, այսինքն՝ «չարաբանություն, զրպարտություն»]:

[1] Em. Boisacq, ibid., pp. 590-591.



### *5. Բեղուն (3)*

*Բեղուն, բեղնաւոր, բեղմնաւոր* բառերն ազգակցություն են դրսևորում հունարեն *φαλλός, φάλης* «առնական մարմին», սանսկրիտերեն buli-ի՝ «վուլվա», գերմաներեն Bulle՝ «ցուլ» և այլն՝ այսինքն հնդեվրոպական *bhel(e)-ին՝ «փչել, ուռցնել»[1]: *φαλλός< *φαλ-νος* = հայերեն *բեղն*, որտեղից *բեղն-աւոր*, իսկ *–մեն* ածանցով՝ *բեղմ(ե)ն*, որտեղից՝ *բեղմն-աւոր*. *φάλης* = *բեղ* (*բել*-ի փոխարեն) այլ ձևերի ազդեցության ներքո:

### *6. Ձեղուն*

Այս բառը երկու իմաստ ունի՝ «քիմք» և «առաստաղ»: Հարկ է զանազանել այս բառի *–ուն* ածանցն այն *ուն*-ից, որ հանդիպում է, օրինակ, *բեղուն* բառի մեջ՝ *ձեղուն*, սեռական՝ *ձեղուան*, մինչդեռ *բեղուն*, սեռական *բեղնոյ*: Բացի դրանից, -*ու*- չի զեղչվում՝ *ձեղուանամ* և այլն, և ոչ *ձեղնանամ*: Առաջինը հիմնված է -mno ածանցի վրա՝ *ձեղոմն*, սեռական **ձեղոման>ձեղովան*, իսկ երկրորդը՝ սլավոնական *–ուն* ածանցն է, որ հանդիպում է vorkun կամ vorčun («փնթփնթող, քրթմնջացող տղամարդ»), boltun («շատախոս, շաղակրատ մարդ») և այլ բառերում: Ես կկապեի *ձեղուն*-ը *χελύνη, χεῖλος, χέλλος* «շրթունք, ծնոտ» բառերին: *χέλλος<χελ-νος* թույլ է տալիս ենթադրելու, որ *–ղ*-ն ծագում է **ձեղն* (ինչպես *բեղն*) ձևից: Պետք է լինեն նաև **ձեղմն*, որի միակ հայտնի ձևը գործիականն է՝ *ձեղմամբ*. ուրեմն *ձեղուն*-ը քմային *–ղ* բաղաձայնով պարտական է այլ ձևերին:

### *7. Հաղ*

*Հաղ*՝ «անգամ», *միահաղ-ոյն* «մի անգամից», հունարեն *ἁπλόος* («պարզ, մեկական»), *δίπλοος* («կրկնակի»), լատիներեն sim-plus («պարզ, մեկական»), du-plus («կրկնակի»), հնդեվրոպական «ծալել»՝ *pḷ, *միահաղոյն* «միահամուռ, միասին» թույլ է տալիս ընկալել «հաղ-որդ» բառի իմաստը:

### *8. Ամոլ*

Այսպես է կոչվում գութանին լծված եզների առաջին զույգը, առաջին լուծքը, երկու լծակիցները: *Ամոլ*-ը լավ համապատասխանում է հունարեն

[1] Em. Boisacq, ibid., p. 1013.

*ὁμαλός* («հարթ, հավասար, միջին, միջակ») և ավելի լավ՝ լատիներեն simul («մեկտեղ»)<semol՝ *sm̥m և lo- ածանցից[1]:

### *9. Օծիք*

Հունարեն *αὐχήν, -ένος* («վիզ, ծոծրակ, կոկորդ») և *αὐχή* («գոռոզություն») բառերի ստուգաբանությունը հայտնի չէ[2]: Կարծում եմ, որ այն առնչվում է հայերեն *աւծի*-ք, սեռական՝ *աւծեաց* բառերից (բառացի՝ «այն, ինչ վերաբերում է *օծ*-ին»): Այս *աւծ*-ը հնում նշանակում էր, հավանաբար, «վիզ, կոկորդ» և հնչյունաբանորեն համապատասխան է հունարեն *αὐχήν*<aug$_1$h-: *ὑφ-αυχενέω* («գլուխը բարձրացնել, գոռոզանալ»), *ὑφ-αυχέω* («պարծենալ, գլուխը գովել, հպարտ լինել»), *ὑφ-αυχένος* («պարծենկոտ») ապացուցում են, որ *αὐχή* («գոռոզություն») կապված է *αὐχήν* («վիզ») բառին: Էոլերեն *ἄμφην* կամ *ἄυφην* («ծոծրակ») անկասկած ծագում է *αὐχήν*-ից, թեև դրանում փորձում են տեսնել հայերեն *գանգ*-ը՝ *ἄμφην*< հնդեվրոպական *wanwgen[3]:

### *10. Արձա-գանգ, գանգ-իւն*

Հունարեն *ἠχή, ὀχά* (*Ϝαχα)՝ «աղմուկ, ձայն» բառին մերձեցումն անառարկելի է: *Արձա-գանգ* (բառացի՝ վերադարձող ձայն), *գանգ, գանգիւն* («աղմուկ, ձայն») նույն բառն է, ինչ և *վանգ* («ձայն, վանկ»), սակայն այս վերջինն իրանական փոխառություն է և համապատասխանում է պահլավերեն vāng՝ «աղաղակ, ձայն»[4]: *ἠχή*<*wagh, սանսկրիտերեն vagnu-ḥ՝ «ձայն, կանչ»[5]:

### *11. Մատ*

Հունարեն *ἄχρι, μέ-χρι* («մինչև») և հայերեն *մերձ* բառերը, կարծում եմ, կազմված են *me- (*ἀ*<*m̥-) մասնիկից, համակցված մի բառին, որը ոչ այլ ինչ է, եթե ոչ *χείρ* («ձեռք») բառի հնագույն, թերևս ներգոյական կամ տրական ձևը: Իմաստը պետք է լինի «ձեռքին մերձ», որտեղից և «մոտիկ»: Այսպիսի իմաստային արտածման հնարավոր լինելու ապացույցը գտնում

[1] **A. Ernout, A. Meillet**, Dict. étym. lat., p. 901.

[2] [Իմաստի առումով հմմտ. նոր հունարեն *καμάρα, καμάρι, καμαρώνω* («վիզը ճկել»՝ ձիու մասին, «սնապարծել») – *ծան. Ա. Գրեգուարի*]:

[3] **Em. Boisacq**, Dict. étym. gr., p. 58.

[4] Հմմտ. **H. S. Nyberg**, Hilfsbuch der Pehlewi, [Uppsala-Leipzig, 1931], t.II, S.232.

[5] **Em. Boisacq**, Dict. étym. gr., p. 331.



ենք *ἐγγύς* («մոտ, կողք»), *ἐγγύθι* («մոտ, մերձ»), *ἔγγυθεν* («մոտիկից») և այլ ձևերում: Բազմաթիվ ենթադրությունները, որ արվել են այս բառերի առթիվ, չեն հանգեցրել որևէ վերջնական արդյունքի[1]: կարելի է պարզապես դիտել այն իբրև *g$_1$u - «ձեռք» բառը. *ἐγγυή* «գրավ, երաշխիք» = «այն, ինչ ձեռքին է դրվում», *ὑπόγυος* «այն, ինչ ձեռքի տակ է» վկայում են, որ *γυ-* նշանակում է «ձեռք» և համապատասխանում է ավեստերեն gau-/gave- «ձեռք»<*gu/geu. *ἐγγυάω* («գրավ դնել», «երաշխավոր լինել»), *ἐγγυαλίζω* («հանձնել», «փոխանցել») նույն իմաստն ունեն, ինչ և *ἐγχειρίζω* («փոխանցել», «վստահել», «մատնել»):

Այս ամենն ինձ հուշում է *մատ* բառի մի ստուգաբանություն, որը և առաջարկում եմ մեծ վերապահությամբ: Կարծում եմ, որ այն պարունակում է *ped՝ «ոտք» բառը, այսինքն, այն համակցված է me-/ma- մասնիկից և ներգոյական *podi կամ *pdi ձևերից: *ma-podi>*ma-w(o)ti, *ma-pdi>*ma-wti (հմմտ. *ἐπί-βδαι*՝ «տոնի հաջորդ օրը», ավեստերեն frābda՝ «առջևի ոտք», «ոտքի հասանելիության սահմանում» (հմմտ. առ ոտս [=ad pedem], «մերձ»): *Մատչիմ / մատի-չիմ*՝ *մատ* և *մատի* արմատների առնչությունը պարզորոշ չէ, ինչը, հավանաբար, պետք է բացատրել շեշտադրությամբ. *մատի-չիմ* բայի մեջ շեշտակիր *ի*-ն պահվել է, ինչը հանգեցրեց – վյունի անկման (հմմտ. *հայր, πατρός* և հոգնակի սեռական *հար-անց, հայր-անց*-ի[2] փոխարեն): Եթե առաջին տարրը me- է (*μέ-χρι, με-τα, μέ-σος*), ապա սպասելի է *mewt: Սակայն գոյություն ունեն ma- և նույնիսկ mā- ՝ *μέν* մասնիկի հետ միասին գոյություն ունի *μήν*՝ Հոմերոսի վեպերում՝ *μάν*.

### *12. Լկնիմ*

Աչք է զարնում *լկնիմ, լկնութիւն* բառերի նմանությունը հունարեն *λάγνος, λάγνης* («շվայտ»), *λαχνεύω* («սեռական մտերմություն անել») ձևերին: Եթե ոչ *լիրբ* և նույնիմաստ *լ(ի)պիրշ*-ը, ապա *լկտի, լկտամ, լկտենամ* հաստատ պատկանում են *լկնիմ*-ի բառախմբին: Հունարենում հայտնի են բազմաթիվ բառեր, որ սկսվում են *λι-, λαι-* կապակցություններով և նշանակում են «լկտիություն», ինչպես *λαιδρός* («անամոթ»), *λοιμός* («անպատկառ»), *λιρός* («լպիրշ»), *λαικάς* («պոռնիկ»), *λήκω* և *λιλάομαι* («սեռական մտերմություն անել»): Միայն ձայնավոր կերպարանքը թույլ չի տալիս նույնացնել *լկնիմ* և *λάγνος*-ը: Սակայն *λωγάς πόρνη* (Հեսյուքիոս) դյուրացնում է այս մերձեցումը: Այն նաև երևան է հանում λάγνος-ի ազգակցությունը անգլո-սաքսոնական slaec, հին վերին գերմաներեն slah («փափուկ,

[1] **Em. Boisacq**, p. 212.

[2] Հմմտ. **A. Meillet**, Esquisse d'une grammaire comparée de l'arménien classique, Viénne, 1936, 2 éd., pp. 81-82:

հեղգ»), լատիներեն legéns («թույլ, հեղգ, փափուկ»): Սա թույլ է տալիս արտածել այս ազգակից բառերը հնդեվրոպական *(s)ləg-/*(s)lōg[1]-ից: Հայերեն *լկ-նիմ, լկ-տի* ձևերի հիմքում ընկած է *lōg՝ *լուկ-ն-իմ, *լուկ-տի, իսկ հունարենի՝ *lag-ը:

### *13. Ամուրի*

Ա. Մեյեն[2] ցույց է տվել, որ հայերեն «ամուլ» բառը ծագում է *an+polo (հմմտ. *πῶλος*, «մտրուկ»): Հետևելով այս օրինաչափությանը, *ամուրի* կարելի է տարրալուծել որպես *an-potro-iyo («նա, ով չունի զավակ», այսինքն՝ «նա, ով զավակ չի ծնել»), ճիշտ այնպես, ինչպես *ամայի*< *an-pat-iyo (*πατέομαι* «սնվել», pasco «արածել»), այսինքն՝ «անխոտ տեղ»:

### *14. –որդ*

-*որդ* վերջածանցը ճանապարհ-*որդ, նավ-որդ, առաջն-որդ* բառերում ոչ այլ ինչ է, եթե ոչ *հորդ*՝ *հորդեմ* բայի արմատը («հորդեցէք զճանապարհ»): Այն բուն իմաստով վերջածանց չէ, այլ ածանցի վերածված գոյական: Բարդումների մեջ *հ* բառասկիզբը զեղչվում է, ինչպես *հատանեմ/զատանեմ, հետ/յետ, ձեռ-ատ<*ձեռ-հատ*: Հայերեն *հորդ*-ը համապատասխանում է լատիներեն porta («անցք»)< հնդեվրոպական *per-, ինչպես դա ցույց է տվել Schefftelowitz-ը[3]: Այլ համակցություններում, օրինակ՝ *երր-որդ, քառ-որդ, հաղ-որդ, լծ-որդ* («*συ-(ζυγής)*») խնդրո առարկա ածանցը պետք է որ ունենա այլ իմաստ և այլ ծագում: Այս բառերում –*որդ* համապատասխանում է լատիներեն pars, portio («մաս, բաժնեմաս») բառերին: Հետաքրքիր է, որ հնդեվրոպական *per - «մասնակցել», որից ծագում է լատիներեն pars, մերձեցնում են *per- «առաջ մղել»՝ *περάω, πείρω*, որտեղից լատիներեն porta՝ «անցք»: Հայերեն –*որդ*-ի կրկնակի իմաստը՝ «մղող» և «մասնակից» ապացուցում է, որ porta և pars իսկապես նույն ծագում ունեն: Թեպետ, «մասնակից» իմաստով հայերեն –*որդ*-ը կարող է ներկայացնել նաև լատիներեն sors, sort-is «բաժին, վիճակ» ձևերի զուգահեռը[4]:

---

[1] **Em. Boisacq**, p. 548.

[2] [Sur le sort du *w* géminé en arménien], M[émoirs de la] S[ociété de].L[inguistique de Paris], t. XXII (1920), p.55.

[3] **A. Walde**, Lat.etym. Wört. 2. Aufl., p. 602.

[4] Այլ կարծիքը տե՛ս **H. Pedersen**, Kuhns Zeitschrift [հմմ՝ "Zeitschrift für vergleichende Sprachforschung auf dem Gebiete der Indogermanischen Sprachen", begründet von A.Kuhn, Berlin, Göttingen], t. XXXIX, SS. 360-361:



## ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ ԵՎ ՏԱՌԵՐԻ ԲԱՐԵՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ (1)

***Մեծարգոյ նախագահին (2),***

Որպես պատասխան պատվական Հանձնաժողովիդ դիմումի, պատիվ ունեմ ղրկելու Ձեզ կից համեստ նպաստս ուղղագրական և տառերի վայելչության խնդրին: Ցանկամ հաջողություն:

Ընդունեցեք հարգալից ողջույններս:

**Ն. ԱԴՈՆՑ**

18 ապրիլի 1927, Փարիզ

15, rue Henri Martin 15, Paris 16e

### ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ ԵՎ ՏԱՌԵՐԻ ԲԱՐԵՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

Ստացա աղյուսակդ: Այս առթիվ պարտք եմ համարում ասել հետևյալը: **Խորք, նորալուր ուղղագրությունը, որ քննելու է կոչված Հանձնաժողովդ, խորշելի է ամենեն առաջ նորանով, որ մի մեծ և անտեղի խրամատ է բաց անում, հին և նոր գրական ճյուղը կտրում է իր բնից և վտանգում նրա գոյությունը** (3): Ուղղագրությունը մեկեն ավելի պահանջներ ունի իր առաջ, որոնց բոլորին պարտավոր է գոհացնել: Բացի հնչական հավատարմությունը, որ պահանջում է լեզվագիտությունը, բացի միակերպությունը, որ կարևոր է մանկավարժական տեսակետից, կա և այլ հանգամանք, որ հաճախ մոռացվում է վերանորոգիչների կողմից. այն է՝ լեզվապատմական պահանջ, որի հիմամբ գիրը պետք է պատկերացնե լեզվի ամբողջությունը գեթ այն չափով, որքան արգելք չեն հարուցանում մյուս հիշյալ պահանջները:

Նոր գրական լեզուն կապված է սերտորեն գրաբարի և աշխարհաբար բարբառների հետ: Երկու դայակներից մեկը գրեթե զոհ գնաց քաղաքական ձախողանքի, և կենդանի բարբառների մնացորդները այսօր անտուն, անտեր թափառում են կորստյան և աղավաղման ճանապարհների վերա:

Մնում է հին լեզուն, որպես մայր և սնուցիչ նորի: Մոտիկ անցյալի վեճերը գրական լեզվի զարգացման շավիղների շուրջը չարդարացրին նրանց

հեղինակների գուշակությունները: Գրական լեզուն, պահելով հանդերձ իր ինքնուրույնությունը, բնավ պետք չտեսավ հրաժարվելու իր պատմական ժառանգությունից և լայնարձակ շահավետեց հին լեզուն: Արդի լեզուն կիսով չափ գրաբար դարձավ, և հին շտեմարանը դեռ սպառված չէ նոր գրականի համար:

Այս նկատումով խոտելի է այն ամենը, ինչ որ խտրոց է ծառայում հնի և նորի մեջ:

Եթե աշխարհաբարը սեփական ուղղագրություն մշակե, որպիսին է այժմյան պաշտոնական նորաձև ուղղագրությունը, բնական է, որ արտաքուստ պիտի անջատվի իր մորից, պիտի դժվարեցնե հնի ուսուցումը, որով ամենից առաջ և մեծապես վնասելու է աշխարհաբարի շահերին:

Ահա ինչու համար չի կարելի բարեկամ լինել այն ուղղագրական հեղաշրջումների, որոնք այլ բան չեն, եթե ոչ լեզվական բռնություն:

Ինչ և լինին հայ գրի թերիքները, ամեն դեպքում նա այն սակավաթիվ օրինակներից է իր հասակակիցների թվում, որ կարիք չունին արմատական փոփոխության: Քաղաքակիրթ լեզուների գրեթե բոլորի մեջ վաղուց բացված է անանցանելի խորխորատ գրի և հնչյունի միջև: Թեպետ դյուրության մասին սրտացավները պակաս չեն, քան մեզանում, դարձյալ չեն նկրտում ուղղագրական բուռն խիզախումների, պահում են հին՝ շատ դեպքերում գրեթե գաղափարագիր դարձած գրությունը, որպեսզի չեղծեն լեզվի պատմական պատկերը և մոռացության չտան այդ լեզվով ամբարված դարավոր հարստությունը, անցյալի ճոխ գրականությունը, վնասելով նրա մատչելության:

Եթե զորավոր լեզուներն այսքան զգույշ են և սիրում են մնալ կառչած իրենց անցյալին, որքան ավելի իրավունք ունի մեր տկար և անպաշտպան լեզուն նույնն անելու, մանավանդ, որ իր գոյության համար ուրիշ ավելի զորեղ և վստահելի խարիսխ չունի, քան իր անցյալը:

Կասկած չունիմ և ուրախ եմ, որ ճիշտ այս տեսակետն ունի և պատվական Հանձնաժողովը, որի հետևանքով և վերաքննության գործը դրված է պատմական և ավանդական հողի վերա: Հանձնաժողովը ջանացել է և հաջողել վերականգնել Մեսրոպյան ուղղագրությունը ընդդեմ նորամոլ ոտնձգությունների, ինչպես կարելի է տեսնել Համադրական աղյուսակից: Սակայն այստեղ, այս խնամքով մշակված գործի մեջ, կան սայթաքումներ, որ թվում է, թե մի տեսակ զիջումն են նոր ուղղագրության, և չէի կամենալ անձամբ թողնել առանց ուշադրության: Խոցելի եմ համարում ամենից առաջ 14 և 15-րդ կետերը:

14-րդ կետը առավելություն է տալիս վ (վևին) ընդդեմ ւ (ւյունի) և ու-ի:

Միանգամայն ապօրինի եմ համարում այս աչառու վևասիրությունը: Երեք գրերի գործածությունը հին և նոր գրական լեզուներում այնքան պարզ



և որոշ է, որ թյուրիմացության տեղիք չէ տալիս: Հյունի v հնչյունը նույնքան հին է, որքան և վևի: Այն հանգամանքը, որ հյունը կազմում է ու՛ ձայնավորը և ֆւ երկբարբառը, բնավ հիմ չէ, որ նա զրկվե իր հինավուրց v ձայնից: Այս որոշումը զարմանալի է, մանավանդ որ Հանձնաժողովը հնարավոր է գտնում ու և ֆւ փոխարինել միատառով ըստ 23-րդ կետի:

Ասել է, թե հյունը վտարվում է հայ այբբենարանից: Անարդար հալածանք: Վևի գործածությունը շատ սահմանափակ է: Մի քանի տասնյակ բառեր, այն էլ մեծ մասամբ իրանական փոխառություններ, որ ունին սկզբում վ-, հետո -ով վանկը, կազմում են սույն տառի ամբողջ հաշվեկշիռը: Մինչդեռ հազարավոր բառեր կան ւ-ով: Թողնենք այլ նկատումները, առնենք միայն թվական պարագան. ի՞նչ կարիք կա այլայլելու հիմնովին մեր գրության պատկերը, բազմաթիվ ւ-երը վեր ածելով վ-ի, այսինքն՝ մեծամասնությունը զոհելով փոքրամասնության: Արդարամիտ դատաստան չէ և ոչ հաշվետես քաղաքականություն:

Ոչ միայն հյունը, այլ անգամ ու-ի v հնչյունը՝ ձայնավորի նախադաս, փոխել վևի անընդունելի է:

Անցյալներում ուրիշների թվում ես ևս կարելի էի գտնում ձայնավորից նախադաս ու-ն սղել ւ-ի:

Անգամ այս թեթև նորաձևությունը, որ գեթ տնտեսական արժեք ուներ, ժողովրդականություն չգտավ և նախկին ու-ն պահեց իր դիրքը: Հանրության հոտառությունը նաև ուղղագրական խնդիրներում անտես առնելու չէ: Ու-երի սղումը ւ-երի կարծես խճողում է լեզուն նոր բաղաձայնով և վնասում նվազայնության: Մեր լեզվի թերություններից մեկը հենց բաղաձայնների կուտակումն է և նրանց թիվը նորեն զորացնել՝ ցանկալի չէ: Թվում է, թե մի երանգ կա հատված կամ հատւած և հատուած արտասանության մեջ. մեկը՝ ակամայից պիտի հնչվի հատված, հատ-ւած, հա-տը-ված, կամ հա-տը-ւած, մյուսը՝ հա-տուած, աս-տուած, այսինքն՝ t'wo ռուսերեն՝ ТВО և ոչ Т-ը-ВО, ինչպես արտասանում են հայերից շատերը:

Համենայն դեպս հատւած գերադասելի է, քան հատված, եթե միայն ստիպված ենք թողնել պապենական հատուածը:

Վերջապես մոռանալու չէ մանավանդ Հանձնաժողովը, որ շահագրգռված է նաև տառերի վայելչության խնդրով, որ ամփոփ հյունը անհամեմատ ավելի հարազատ է հայ գրերի ոճին, քան երկարաձիգ վևը:

Այսպես v- հնչյունի եռակի գրությունը -վ՝ բառերի սկզբում և ով վանկում, ու՝ բաղաձայնի և ձայնավորի մեջ (լեզուի, հատուած) և ւ՝ մյուս դեպքերում, մանավանդ ձայնավորների մեջ (հրաւէր= hra vaeδa, Արշաւիր = vira), ահա մեկուկես հազար տարի է, որ ոչ մի անպատեհություն չեն հարուցել, խաղաղ ապրել են իրար կից և այժմ էլ լեզուն բողոք չունի նրանց դեմ: Չենք

այրուբենը նույն երեք գիրն ունի՝ , = u, ու, „ = v, ւ, ℎ = -վ, որ է նույն կրկնակի „ + պոչ՝ Ψ: Տառերի բարեփոխության ժամանակ կարելի է վկի գծագրությունը մոտեցնել կրկնակի ւ, կարճելով նրա ոտները և նրա դեմ հալածանքը կմեղմանա:

(Իսկ եթե բուռն բաղձանք կա տառերի թիվը կրճատելու, զոհը պիտի լինի վևը, որովհետև ամենեն քիչ գործածությունն ունի: Այն ատեն բառասկզբում ու գրելու է ւ, իսկ ո-ից հետո ώ, ինչպես ֆր. aî և ai:

Սակայն դժվար թե ստիպողական պետք այս անտեսության):

15-րդ կետը նմանապես խոտելի եմ համարում, ուր առաջարկվում է ոյ երկձայնը ընդլայնել ույ:

Հայտնի է, որ աշխարհիկ բարբառներից և ոչ մին չէ խնայել հին երկձայնները՝ այ, եա, իւ և ոյ: Սրանց փոխարեն ունի պարզ ձայնավորներ՝ է, ե, ի, ու (կամ ώ - ֆրանս. u):

Գրական լեզուն հետևելով գրաբարին վերակենդանացրել է հին երկբարբառները և յուրացրել հին լոյս = loys հնչյունը փոխանակ աշխարհիկ լիս կամ լուս, լոՄս ձևերի: Արդ ի՞նչ բանավոր հիմք կա հին լոյսը փոխել լույսի և ինչ առավելություն: Եթե առաջարկվեր վերականգնել աշխարհաբարի իրավունքը և ամենուրեք հին երկբարբառը դարձնել ու պարզ ձայնավորի և գրել՝ լուս, ճկուք, երևուք, բուք (փոխանակ՝ լոյս, ճկոյք, երևոյք, բոյք), այս հասկանալի կլիներ, գուցե և հավանելի: Բայց պահել հին հնչյունը և փոխել նրա սրբագործված գիրը, նշանակում է ավելորդ շփոթ հարուցանել և զատել միմյանցից հին և նոր գրական լեզուները: Ենթադրյալ դյուրությունն էլ կասկածելի է, և մանավանդ պարզությունը: Դժվար է համոզել, որ երեք տառ ույ հաճելի է, քան երկտառ ոյ:

Այս հեղաշրջումն անշուշտ այն նպատակն ունի, որ ոյ-ին վերապահի oy հնչյունը: Բայց արդյո՞ք պետք կա այս հնչման: Ամբողջ հայ բառարանում մի հատ բառ կա oy հնչումով՝ խոյ, գուցե և կասկածելի կոյ (փոխանակ կու-ի): Մի բառի համար հեղհեղել հին ուղղագրությունը, նշանակում է դարձյալ նույն սխալն անել, ինչ որ ւ-ի և վ-ի նկատմամբ, այսինքն՝ մեծամասնության շահերը զոհել: Սա շինարարական գործ չէ:

Հայ լեզուն հնուց խուսափում է ույ գրությունից. այսպես գրաբարի անցյալ անկատարի երրորդ դեմքը հեղուլ, զենուլ և նման բայերի՝ (զենուի, զենուիր) զենու-յ-ր գրվում է զենոյր, երբեք զենույր: Այստեղից երևում է նաև, որ հին -ոյ շատոնց հնչվում էր uy. պահել այժմ էլ հին գրությունը և արտասանությունը ոչ մի անպատեհություն չի ներկայացնում: Նոր հունարենը պահում է հին, ι, υ, υι, αι գրությունը, թեև արտասանում է միակերպ i հնչյունով: Խոսքը և գիրը շատ հին և համերաշխ դաշնակիցներ են. և ոչ միայն ականջը, այլև աչքն իր իրավունքներն ունի գրության մեջ և



ուզում է այն պահել և այնտեղ ավելի բան տեսնել, քան ականջն է լսում:

10-րդ և 18-րդ կետերը առաջարկում են զեղչել բառերի վերջում -յ գիրը, ուրեմն գրել՝ վկա, Սարո:

19-րդ կետում նախատեսվում է նաև հապավել -յ- ա և ի ձայնավորների միջև: Միայն ոչինչ չէ ասված, արդյո՞ք ո և ի ձայնավորների մեջ -յ- ևս զեղչելու է. վկա, վկաի, իսկ սարո, սարոի, թե՞ սարոյի: Ենթադրվում է որ ա և ո, ա և ու, ա և է ձայնավորների միջև -յ- պահվում է: Այս առաջարկով գրելու է՝ վկա, վկաի, հավանորեն և Սարո, Սարոի, բայց վկայով, վկայում, վկայէ, սարոյով, սարոյում, սարոյէ:

Այս կանոնը հետևողական չէ և ոչ էլ համաձայն հայ հնչաբանության, որ չէ հանդուրժում ձայնական հորանջ (hiatus) ընդհանրապես: Բացառական հոլովի երկու ձևերից մեկը գրել առանց -յ-ի, մյուսը՝ յ-ով՝ վկաից և վկայէն, չի նշանակում դյուրացնել ուղղագրությունը: Ինչպես ասացի, հայը չէ կարող արտասանել երկու կից ձայնավորը առանց միջնորդ յ-ի կամ ւ-ի, նայելով երկրորդ ձայնավորին. ճիշտ այնպես, ինչպես անընդունակ է երկու կից բաղաձայն հնչել առանց միջանկյալ ը-ի: Այս հիմնական օրենքը հայ հնչաբանության հարկադրում է հրաժարել 19-րդ կետից՝ և գրել՝ վկայի, վկայով, վկայէն, սարոյի, սարոյէն կամ ազգային և այլն:

Ընդունելի է յ-ի հապավումը լոկ ուղղականում եզակի և հոգնակի՝ վկա, վկաներ, սարո, սարոներ:

Այս խնդրի հետ կապ ունի իսկապես 3 կետը, որը հանձնարարում է վերջահանգ e հնչյունը գրել է: Պետք է հուսալ, որ հետևողականության աղագավ առաջարկվեր գրել վերջին e ոչ թե է ինչպես ընդունված է գրաբարում, այլ ե, զեղչելով է (= ե + յ)-ի յ որպես վկա-, սարո, փոխան հին վկայ, սարոյ = հաճոյ: Հետևապես պետք էր գրել՝ բազե, նանե, մարգարե: Հետևությամբ վկա, վկայի, սարո, սարոյի, թեք հոլովներում գրելու էր բազեյի, բազեյով, որ է բազէի, բազէով (է= եյ): Այս դեպքում մնում է ուղղականում ևս գրել բազէ և ոչ բազե, հանուն միօրինակության:

Եթե անգամ ընդունելու լինենք, որ ե չէ խուսափում hiatus-ից և ուրեմն ներելի է գրել՝ բազեի, մարգարեով, մարգարեական (համաձայն գրաբարի սիրեի, սիրեիր, սիրեաք, սիրեիք հին գրության), այն ժամանակ ե՛ո (= էո), ե՛ա (= էա) հնչյունները պիտի շփոթի տեղիք տային, քանի որ եա= ya ըստ 21 կետի և եո= yo ըստ 22-րդի:

Միակ լուծումն է հաշտվել ավանդական ուղղագրության հետ համաձայն 2-րդ և 3-րդ կետերի:

5-րդ կետը պաշտպանում է հակառակ 4-րդ կետի է-երը բայերի -էր, էք վանկերում: Գրաբարի -էր և -էք ստուգաբանական հիմն ունին՝ սիր-էր < սիրե - *t-ro, աղայր<*a-t-ro: Աշխարհաբարն ունի՝ աղամ, աղաս, աղար և ոչ

ադայր. հետևապես և սիրեմ, սիրես, սիրեր և ոչ սիրեյր = սիրէր: Նմանապես ադայր, սիրէք փոխված է աշխարհաբարում՝ աղաք, ուրեմն սիրեք: Ասել է թե աշխարհաբարը յ գեղչում է, որով և սիրեր, աղար, սիրեք, աղաք՝ գրությունն արդարացվում է ստուգաբանորեն: Եթե հներին հետևելով թույլ տայինք hiatus եչի վերաբերյալ, կունենայինք նրանց նման՝ սիրեի, սիրեիր և (փոխանակ սիրէր ձևի) սիրեր, սիրեիք և այլն: Ներկայում ևս՝ սիրեմ, սիրես, սիրե, սիրենք, սիրեք, որպես՝ աղամ, աղաս, աղա, աղանք, աղաք: Որոշ չէ, արդյոք աղա գրությունը առանց յ-ի մտնում է 18-րդ կանոնի մեջ թե յ թողնվում է գրել ըստ հին ուղղագրության: Եթե հանձնարարվում է գրել աղա, ապա պետք է գրել և սիրե (փոխան սիրէ) հակառակ 3-րդ կետի:

Է-երի խնդիրը, մանավանդ վերջահանգ է-երի պետք ունի վերաքննության:

4-րդ կետի տրամադրությունը միայն ընդունելի է, որ որքան հնար է կրճատել է-երի գործածությունը, բայց ոչ այնպես կտրուկ, ինչպես ձևակերպված է կանոնը, այն աստիճան, որ շփոթե սեր և սէր, գէտ և գետ և նման բառեր: Մի շարք բառեր կան, որ բարվոք է ե-ով գրել, ինչպես երբեք, մեկ (<միակ>), հեք, աղետ, թերևս բայերի մեջ և այլն:

11-րդ կետը ծանր վճիռ է կայացնում խեղճ և մի հատիկ ով դերանվան հանդեպ, բաժանում է նրան իր զուգորդ ո-ից և զոհում օտար բառերի հաճույքին, որպիսին է օվրեստես: Քանի որ ով բացարձակ եզակի է, նրա գրության փոփոխությամբ հայ ուղղագրությունը ոչինչ չէ շահում, այլ միայն հրաժարվում է հին անմեղ ավանդից: Օտար բառերի մասին ստորև:

23-րդ կետի նախագծված միատառ գրերը ու, իւ, եւ հնչյունների համար ավելորդ եմ գտնում, ինչպես և բնավ ցանկալի չէ և փակագրի գործածությունը ըստ 14-րդ կետի ծանոթության: Տպագրության մեջ լավ կլինի և փոխարինել եւ-ի: Գրաշարի գզրոցների թիվը շատացնել ավելորդ փակագիր տառով, նշանակում է ծանրացնել շարելու գործը: Հայ այբուբենը առանց էն էլ բազմատառ է:

Գրքեք բոլոր կետերին, գլխավոր կանոններին անդրադարձա: Իմ հայացքներս չեն տանում դեպի արմատական փոփոխությունների կողմը: Ոչ թե նրա համար, որ բնական խորշանք կամ նախապաշարում ունիմ նորամոլության հանդիման: Ոչ զուտ լեզվագիտական, ոչ մանկավարժական և ոչ անգամ գործնական որևէ լուրջ հիմ չեմ տեսնում շեղվելու ավանդական ուղղագրության սկզբունքներից: Եթե արդի մանուկ լեզվի շահը պահանջեր, կանցնեի առանց տատանվելու բոլոր հիշյալ կամուրջները: Սակայն հենց այդ շահի գիտակցությունն է, որ հակառակն է թելադրում: Պահել, պահպանել ամեն կարգի կապեր մայր լեզվի, հին գրական լեզվի հետ՝ աշխարհիկ լեզվի կենսական շահերից էականն է: Նոր



գրականում չկա ոչ մի հնչական տարր, որ անծանոթ լինի գրաբարին: Այս մի հաստատուն հիմ է ուղղագրական համերաշխության: Անգամ կրավորական բայերը, որ թվում է թե հատուկ են միմիայն աշխարհաբարին, ունեն իրենց նախատիպը գրաբարի՝ հատուած, յօդուած և նման ձևերում: Իսկ գրաբարի՝ հոգւոյ, գինւոյ գրությունը արդարացնում է աշխարհաբարի՝ հանվում եմ, ասվում է ուղղագրությունը: Իմ եզրակացությունս այն է, որ արդի ուղղագրության մեջ ներելի են այնպիսի սրբագրություններ և զուցե հարկավոր, որոնք ընդունելի են նաև գրաբարի տեսակետից, այնպիսի սրբագրություններ, այնպիսի մասնակի ուղղումներ, որոնք չեն խախտում, չեն կտրում նորը հնի հետ կապող օղակները: Միայն ծայրահեղ ստիպողական հարկը կարող է արդարացնել այս սկզբունքի խաթարումը:

Ինչպես ամեն լեզվում, մանավանդ զառամյալ լեզուներում, գրաբարի մեջ ևս կան անհարթություններ, շեղումներ, ուղղագրական կանոններից: Նրանցից շատերն են անցել աշխարհաբարին: Չզտել կոկել ամեն մի անհարթություն, որ իր պատմական նստվածքն ունի, վտարել այն, ինչ որ խոչընդոտ է թվում, նշանակում է կենդանի լեզուն հասցնել արհեստական վոլապյուկի տափակության: Ցանկալի է միակերպությունը, բայց արհամարհելի չէ բնավ և պեսպեսությունը: Ամեն բան իր չափն ունի և միօրինակությունն էլ պետք է ազատ պահել տարտամ շաբլոններից: Ց-երի գեղչը կամ փոխարինումը հ-ով, որ նախատեսում են 16-րդ և 17-րդ կետերը, ինչպես և սեր և սէր, հոտ և հօտ և նման հոմանունների հավասարեցումը համաձայն 4-րդ և 9-րդ կետերի - սրանք թելադրանք են այն շեշտակի շաբլոնականության, ուր իմաստն անգամ զոհվում է ձևին: Եվ ցավալին այն է, որ շաբլոնը ձևակերպված է թվում երբեմն օտար բառերի ազդեցության տակ:

## ՕՏԱՐ ԲԱՌԵՐԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

I

Մտադիր չեմ եկամուտ բառերին տալ այն պատիվը, որին արժանացրել է Հանձնաժողովդ ծայրահեղ ներողամտությամբ: Ուղղագրական ցուցակի մեջ օտար բառերը վայելում են համաքաղաքացիական հավասար իրավունք և հարգի տեղ են բռնում հայրենի աքռոների վերա: Հարազատ ով դերանունը նստած է այնտեղ, ուր անծանոթ օվրեստը, էգ բառը ընկեր է **Էքսպերտ**, և **Էդիսոն** անուններին, ոյ երկբարբառը դառնում է ույ օտար oy-ի դրդմամբ: Հայ բառերն են, որ խոնարհվում են եկվորների առաջ, որ նրանց հաճույքով միևնույն գիրն ստանան:

Հաճելի չեն ցուցակի վերնագիրները՝ **«Եվրոպական»** այս կամ այն հնչյունը, որ կարող է կարծել տալ, իբր թե վերաքննությունը նպատակ ունի համակերպել, հարմարացնել հայ այբուբենը եվրոպական հնչյուններին:

Մինչդեռ կուզեմ հուսալ, որ հարցը լատին տառերով արտահայտված հնչյունների մասին է և քննելի նյութը եվրոպական հնչյունները չեն, այլ հայ հնչյունների և դրանց գրերի փոխհարաբերությունը:

Յուրաքանչյուր լեզու ուղղագրական ներդաշնակ սիստեմ կարող է մշակել միայն իր սեփական բառամթերքի հնչական շրջանում, որովհետև սրանք միևնույն պատմական ճանապարհն անցած լինելով՝ ենթարկվեն համերաշխ օրենքներին: Օտարամուտ բառերը եթե միջամտեն ուղղագրական կանոններ մշակելիս, առաջ կբերեն շփոթ, քանի որ ծագում են ուրիշ լեզվական և հնչական մթնոլորտից և իրենց հատկությամբ կարող են հաճախ անմարսելի լինել հյուրընկալող լեզվի համար:

Ուրիշ ազգեր բնավ հոգս չեն անում օտար բառերը ճշգրտորեն արտասանելու, այլ հնչում են այնպես, որպես ներում է իրենց սեփական լեզվի կարողությունը:

Մեզանում ևս փոխառյալ բառերը, եթե միայն պատահական անցորդներ չեն, այլ ընդունվում են որպես մնայուն բնակիչներ մեր լեզվի շենքի մեջ, պետք է համակերպվեն և ենթարկվեն մեր լեզվի օրենքներին, այսինքն հայանան: Երբ որ օտար բառը ժողովրդի բերանից է անցնում գրական լեզուն, նա իրոք նախապես տաշվում է և հայտնվում, ինչպես եկեղեցի, հույն *ἐκκλησία* բառը, որ դասական օրինակ է օտարի հայացման: Բայց եթե միջնորդը գրականությունն է, օտարը մնում է անձեռնմխելի իր տարազի մեջ: Շատ անգամ արդեն հայացած բառը նորեն օտարանում է գրականի գրչի տակ կամ բերանում. Գրիգորը դառնում է Գրիգորիոս, Գրիգորիս, նույնիսկ Արիստակը՝ Արիստակէս: Կարծում եմ, այսօրինակ բծախնդրությունը բոլորովին խորշելի է: Ֆրանսիացին կարող է արտասանել ռուս-հայ չ, ց տառը, բայց գերադասում է նեղություն չտալ իր լեզվի կապանքներին և Черновец արտասանում է Շերնովից: Բայց մենք ուզում ենք, որ ռուսերեն Горький հայն արտասանե Գորկիյ, ծամածռելով իր լեզուն, մինչդեռ եվրոպացիք բավականանում են՝ Gorki ձևով, որ և հարմար է մեր լեզվին:

Ինձ թվում է, որ օտար բառերը ուղղագրության մեջ առանձին գլուխ պիտի կազմեն, ուր մշակելու է տառադարձի կանոնները, հարմարեցնելով, որքան հնարավոր է, հայ հնչման և գրի ոգուն: Ուստի կուզեի զատել օտար բառերի գրության հարցը և քննել առանձին այն չափով, որքան շոշափված է Հանձնաժողովիդ աղյուսակի մեջ:

Ամենակարևորը o և e գրերի տառադարձի խնդիրն է, որ կատարյալ քմահաճույքի նյութ է դարձել գրողների գրչի տակ: Շատերը խաբվելով օտար o-ի և հայերեն օ (=աւ)-ի նմանությունից, գրում են ամեն տեղ օ: Ուրիշները կարծելով, որ ե-ի հնչյունն է ye, օտար e ամեն տեղ դարձնում են է:



Հանձնաժողովդ սահմանում է գրել՝ բառամիջում **ո** և **ե** ըստ 4-րդ և 9-րդ կետերի, բառավերջում **ո** և **է** ըստ 19-րդ և 3-րդ կետերի և բառասկզբում **օ** և **է** ըստ 1-ին և 7-րդ կետերի: Այս կանոնը շատ որոշ է և ընդունակ է վերջ դնելու խառնակ գրություններին: Եթե հայ բառերի վերաբերմամբ այս կանոնը վիճելի է ինչ ինչ կետերում, օտար բառերի համար անխոցելի է: Թեև սկզբի **ե** և **ո**, ինչպես և վերջի **է** կարող են առարկության նյութ լինել: Որպեսզի **է** և **օ** գրերը, որ զուտ հայկական ծագում ունին, կարելի լինի պահել սահմանափակ շրջանում, համաձայն Հանձնաժողովիդ անթաքույց տրամադրության, արդյո՞ք ներելի չէ օտար բառերում ամենուրեք **ե** և **ո** գրել, անգամ բառի սկզբում:

Ռուս լեզուն մի կետում նման է մեզ. սկզբի e արտասանվում է ye, մի հատիկ բառ ունի э-ով это. ոչ միայն սլավոներենում, այլև մոտիկ անցյալ ռուսերենում ընդունված էր հունական *ε* արտահայտել e-ով: Ցայժմ էլ գրում են **епархия, Евлогий, епископ, Евламий, Евграфий,** սլավոն լեզվի ազդեցությամբ, առաջները գրում էին **Ератосфен, Евклид, Епаминоид, Епикур.** այժմ եվրոպական, գլխավորապես գերմաներենի հետևությամբ փոխել են՝ **Эратосфен, Эвклид** և այլն:

Մեր նախնիք էլ գրում էին եկեղեցի, եպարքոս, եպիսկոպոս, Եդեսա, Եղիսէ, Եփեսոս, Եւտիքէս, Եւլամպիա և այլն: Հանձնաժողովդ պատվիրում է այժմ գրել Էվտիքէս, Էվլամպիոս, Էվրիպիտ, կամ եթե վևի տեղ ւ գրենք՝ Էւրիպիդ, Էւկլիդ:

Թվում է թե անպատեհություն չկա բառասկզբում ևս գրել **ե**, կանոն դնելով, որ օտար բառերում սկզբի **ե** հնչվում է որպես **է**, առանց, խորշելու, եթե ոմանք կարտասանեն **ye**: Այժմ անհարմարություն չեն զգում վերև բերած բառերի հին արտասանությունից՝ եպիսկոպոս, փոխ. էպիսկոպոս, Եդեսա փոխ. Էդեսա:

Չպետք է մոռանալ, որ ե-ի **ye** արտասանությունը գրական պատվաստ է և հատուկ է գրական լեզվին, ինչպես և **ո**-ի **vo** հնչյունը: Կենդանի բարբառները ավելի ազատ են և ընդհանուր առմամբ շատ ավելի խուսափում են **ye**-ից և **vo**-ից, քան սիրում: Կան բառեր, որոնք այս կամ այն բարբառում արտասանում են **ye, vo**, բայց գրեթե չկա մի բառ, որ բոլոր բարբառների մեջ ունենա **ye** կամ **vo** հնչյունը անպայման: Անգամ **ես** դերանունը Թիֆլիսի բարբառում՝ **իս** է: Երես, երեք, երեկ, երազ, երանի, երդում, երկաթ, երկանք արտասանվում են՝ էրես կամ իրես, իրեք, էրեկ, արազ, հրենակ (= երանեակ), öրդում-էրդում, արկաթ, արկանք և այլն: Նմանապես՝ ոսկի, Թիֆլիսը՝ օսկի, ողորմի, օղորմի կամ ղորմի, այլև ըղորմի, ոչխար = օչխար, որբ = հորբ, ոսպն = հոսպը, ոջիլ = հö̈շիլ, ոլորեմ = հոլորեմ, ոզնի = կոզնի և այլն:

Դպրոցի և գրականության շնորհիվ է, որ չարաբախտ **ye** և **vo** հնչյունները ընդհանրացել են: Կարծում եմ, հմուտ և բանիբուն ուսուցիչները վերջ պիտի տան դպրոցական բռնության և թողնելու են աշակերտներին իրենց անհատական արտասանությունը:

Եթե մայրենի բառերում **ե** և **ո** կարող են հնչվել ըստ ցանկության, **է** և **օ** կամ **ye** և **vo**, կարծում եմ, որ օտարոտի չպիտի թվա նաև օտար բառերում սկիզբը գրել՝ **ե** և **ո**, երկկերպ արտասանությունը հավասարապես ընդունելի համարելով. ուրեմն եկսպերտ, Եդմոնդ, Ետրուսկ, Որմիզդ, Ոդիսևս, Որիգեն, Որեստ կամ Ովրեստ, Որիոն կամ Ովրիոն, ինչպես և Որդան, ոպերաց(իա), կո-(ո)պերաց(իա) և այլն:

Այս հանգամանքը, որի վերա պնդել չեմ ուզում, այն առավելությունն ունի, որ կրճատում է **օ** և **է** գրերի գործածությունը և նախապատրաստում նրանց վտարումը և հայերեն բառերից, որոնց քանակը մեծ չէ: Երկուսից մեկը՝ կամ հայ գրագետը չի կարող արտասանել բառերի սկզբում հստակ **օ** և **է**, այլ **vo** և **ye**, այն ժամանակ այդպես պիտի վարվի և օտար բառերի հետ կամ կարող է արտասանել, ապա կարիք չկա կանոն դնելու, որ **ո** և **ե** բառասկզբում դառնում են **vo** և **ye**:

Այս բացատրություններից հետո պարտքս լիովին կատարած չէի լինի Հանձնաժողովին հանդեպ, եթե լռությամբ անցնեի նաև այլ կարգի մի հանգամանք:

Արևմտյան հայությունը միշտ պահպանողական է եղել լեզվի խնդրում և ավանդապահ: Ներկա ցան և ցրիվ գաղութները, որ նրա բեկորներն են, պահում են իրենց նախկին տրամադրությունները: Այնքան կորուստներից և տապալումներից հետո, հայրենազուրկ հայությունը սարսռով է նայում ամեն մի փոփոխության, որ շոշափում է լեզուն, եկեղեցին և մյուս ավանդները:

Նոր ուղղագրությունը համակրության նշույլ անգամ չգտավ սահմանից դուրս և անգամ անհատական հետևողներ չունեցավ: Կասկած չկա, որ Հանձնաժողովի աշխատանքը իր շեղումներով նույն բախտին է արժանանալու: Հրամաններն ու սաստերը այս դեպքում անզոր են և անհետևանք:

Խորապես ցավելու է, եթե այն պահին, երբ հայրենիքն իր կառավարչական և հասարակական ուժերով ջանալու է իրեն քաշել աշխարհալած զավակները, ուղղագրության խնդիրը նոր անջրպետ հանդիսանար և փոխանակ մերձեցնելու երկու գրական լեզուները, ուղղագրական սեպով ընդլայներ եղած պառակտումը:

Հայ գրական աշխարհի երկփեղկումը ավելի մեծ աղետ է, քան ուղղագրության խոստացած բարիքը: Ուղղագրությունը ի վերջո պայմանական



խնդիր է և ամեն ուղղագրություն ընդունելի է, եթե հանրության կարծիքն ու հավանությունը շահած է:

Հասարակական պայմանները պարտադրում են ուղղագրական հարցը հրապարակ հանել առանձին զգուշությամբ:

1) Նորալուր ուղղագրությունը, **որի վերա ծանրանում է պետական կնիքը** (4), ջնջելու է իսպառ և վերականգնելու ավանդականը: Այս անկասկած է:

2) Հանձնաժողովի վերաքննության վերջնական արդյունքը, ինչ և լինի, չպիտի ունենա ստիպողական հանգամանք: Պետությունը ևս իր հեղինակությունը անխոց պահելու համար ձեռնպահ պիտի մնա վաղաժամ միջամտությունից: Հանձնաժողովի աշխատանքը պետք է հայտարարվի իբրև ուսումնական գործ, պատրաստված հեղինակավոր մարմնի կողմից, որպես հանձնարարելի սրբագրություն ավանդական ուղղագրության: Գրական աշխարհին է թողնելու վերջնական վճիռը: Ուղղագրությունը միայն մասնագետների գործ չէ, այլև համայն մտավորականության, ընթերցող և գրող հասարակության: Սա է իսկական սպառողը մշակած նյութի: Հանրության վերաբերմունքը կորոշե գործի ելքը և հաջողության թե ձախողանքի չափը:

3) Որպեսզի հասարակությունը գիտակցորեն վերաբերե Հանձնաժողովի աշխատանքին, անհրաժեշտ է հրատարակել մի ժողովածուի մեջ բոլոր այն զեկուցումները և թերևս կարծիքները, որոնք արտահայտված են հարցի շուրջը և մանավանդ այն հիմքերը, որ բերել են Հանձնաժողովին որոշ եզրակացության:

## ՏԱՌԵՐԻ ՁԵՎԻ ԲԱՐԵՓՈԽՈՒԹՅՈՒՆ

Կուզեի մի քանի խոսք ասել նաև այս հարցի մասին:

Տառերի վայելչության խնդիրը ինձ զբաղեցնում էր վաղուց: Հետաքրքրությունս միայն տեսական չէ եղել: Գործնական քայլեր էր արված և փայփայած ծրագիրս մարմնանալու վրա էր, երբ քաղաքական հորիզոնները մթագնեցին և իմ գործս զոհ գնաց անհայտության:

Ողբացյալ բարեկամս, հայտնի նկարիչ Վարդգես Սուրենյանցն էր համակիր և անձնվեր աշխատակիցս: Նոր տառերն արդեն պատրաստ էին և հանձնված մայրաքաղաքի (5) ձուլարաններից մեկին՝ մայրեր կտրելու համար: Մի բարի մարդ հանձնառու էր եղել հոգալու բոլոր ծախսերը և անմիջապես վճարել էր մոտ ութ հազար ռուբլի առհավատչեք:

Տառերի մեծագույն մասը արդեն ձուլված էր: Բոլոր ջանքերն իզուր անցան:

Ի՞նչ էր իմ հայացքս տառերի ձևափոխության մասին: Մեր գրերի գլխավոր թերությունը եվրոպականի հետ համեմատած այն է, որ բավականին մարմնեղ չեն, փոքր իրան ունեն և երկայն վերջավորություններ:

Հին գիրը, որ անվանում ենք երկաթագիր, այլ նկարագիր ուներ: Հույն և լատին տպագիրը շատ ավելի հարազատ է իր երկաթագրին, քան մեր բոլորգիրը (որ և մեր տպագիրն է)՝ մեր երկաթագրին: Էական զանազանությունն այն է, որ լատին և հույն գրերը, հին թե նոր, ամփոփվում են երկու զուգահեռ տողերի մեջ, ընդհանուր առմամբ: Միայն մի քանի տառեր դուրս են գալիս տողից վեր կամ վար:

Հակառակ ոճն ունի արաբական գիրը, որ շարվում է մի տողի վերա: Հայերեն տառերը բռնում են միջին տեղը, ոչ գեր են ինչպես լատին և հույնը և ոչ նիհար և վտիտ արաբականի նման, այլ միջին իրանով և երկար ոտ ու ձեռով տառեր են: Այսպես՝

| | | |
|---|---|---|
| հույնը՝ | ΜΑΚΡΟΒΙΩΤΑΤΟΣ | μακροβιώτατος |
| լատինը՝ | LIBERTAS | libertas |
| հայը՝ | ԲԱՐԵԿԱՄ | բարեկամ |
| արաբը՝ | السلم عليكم | السلم عليكم |

Մեր հին բոլորգիրը շատ ավելի մարմնեղ էր և մոտ լատինական ոճի, քան հետագա դարերի գիրը: Ձեռագիրների համեմատությունը այն տպավորությունն է թողել վրաս, որ Արևելյան Հայաստանի, մասնավորապես Այրարատյան վանքերի գիրը զգալի զանազանություն ուներ Կիլիկյան գրությունից: Արևելյան տառերը **գեր** են և **խոշոր, ոլորուն** գծերով, մինչդեռ Կիլիկյան ձեռագիրները սիրում են ընդհանրապես **փոքրադիր** և **ուղղանկյուն** տառեր:

Ափսոս որ ձեռքիս տակ չունեմ գեթ Գարեգին վարդապետի հրատարակած նմուշները (6), որ օրինակներով պարզեմ միտքս: Գուցե հետևյալ փորձը մի թեթև հասկացողություն տա շեշտած տարբերության մասին:

Արևելյան գիր՝ փառք Հաւր եւ որ-
դւոյ եւ Հոգւոյն սրբոյ

Կիլիկյան՝ փառք Հաւր և որդւոյ և Հոգւոյն
սրբոյ ամէն

Այս մանր բոլորգրից զարգանում է հետագայում նոտրգիրը, անշուշտ մուսուլման գրի ազդեցության տակ՝

փառք Հաւր և որդւոյ և Հո-
գւոյն սրբոյ ամէն.



Հայ անդրանիկ տպագիր տառերը, որ կտրվեցին Եվրոպայում, թվում է թե ավելի մոտ էին Արևելյան բոլորգրին: Մխիթարյան տպարանները գերադասություն տվին Կիլիկյան ոճին և ժողովրդականացրին:

Արդ զոնե իմ ծրագրած ձևափոխությունը մոտենում էր Արևելյան բոլորգրի ոճին, մինչ այսօրվա ընդունված տպագիրը հավատարիմ է Կիլիկյան ոճին:

Մեծացնելով տառերի իրանը, մեծանում է նաև նրանց ծավալը, որ ցանկալի չէ: Ամբողջ դժվարությունը կայանում է նրանում, որ տառերը բարեփոխել այնպես, որ այս ներհակ պահանջներին գոհացում տա - խոշոր իրանով, բայց ոչ մեծ ծավալով և հավատարիմ ավանդական գծագրության:

Նկարիչ Վ. Սուրենյանցին տրված էր հետևյալ հրահանգները, որով պիտի առաջնորդվեր նոր տառեր գծելու համար:

1. Նախ տառերը պիտի լինեն ուղղաձիգ, նման եվրոպականին և ոչ թեք, ինչպես ընդունված է մեզանում, որ ցանկալի չէ ամենից առաջ աչքի առողջապահ տեսակետից:

2. Տառերը պետք է լինեն փորավոր, մարմնեղ, բայց կարճ պոչերով:

3. Գծերը՝ նուրբ և բաց, նման եվրոպական տպագրին, և ոչ սև, հաստ, ինչպես ընդունված է մեզանում:

4. Գծերը պետք է միանան ոչ ուղղանկյունով և ոչ կամարով, այլ միայն կոր անցումով:

| | | | | |
|---|---|---|---|---|
| Այսինքն ոչ՝ | ա | ո | ե | ղ |
| և ոչ կլոր՝ | ա | ո | ե | ղ |
| այլ միայն՝ | ա | ո | ե | ղ |

5. Տառերի ծավալը. բռնած տեղը աշխատելու է, որ հավասար լինին, ուստի առանձին հոգ տանելու՝ վ, զ, խ, դ, պ, ա և նման լայնանիստ տառերի

գծագրությունը բարեփոխելու, առանց վնասելու դրանց ավանդական պատկերին:

Ալյակա՝ Ե Բ Ր Ո ո 1

Կ ա Վ տ 1½

Այս պահանջներից շատերը նախատեսված են Արամյան և Այտընյան կոչված նոր (moderne) տառերի գծագրության մեջ: Բայց սրանց թերությունն այն է, որ շղագիր բնավորություն ունին (курсив) իրենց մազային գծերով: Նաև տառերի ձևը բավականին գեղեցիկ չեն:

Հանգուցյալ Վ. Սուրենյանցը ամբողջ տարի աշխատեց այս գործի վերա, բազմաթիվ տախտակներ պատրաստեց մեծ դիրքով և հետո լուսանկարում էր ավելի փոքր և պեսպես մեծությամբ: Փորձերը քննում էինք միասին և մտցնում ուղղումներ:

Վերջապես հաջողեցինք. նորակերտ տառերը բոլոր եղած պահանջների լիակատար մարմնացումն էին: Վարդգեսի տաղանդը այն հատկությունն ուներ, որ ողողված էր անհուն սիրով և կարոտով դեպի ամեն ինչ, որ հայրենի էր: Շնորհիվ այս հանգամանքի նա իրոք հրաշալի գործ արեց: Ինչպես ասացի, ները արդեն ձուլարանին էր, և հույս ունեինք, որ շուտով ծրագրած հրատարակչական մեծ ձեռնարկը իրագործել կկսենք:

Պատրաստել էինք «Հազարան բլբուլը». բնագիրը ինչ-ինչ մշակման ենթարկել, սրբագրել լեզվի և բովանդակության կողմից, հարմարեցնելով մանկական ընթերցանության: Հանգուցյալը պատրաստել էր զարդանկարներ, որոնք ընդհանուր ցուցահանդեսում անգամ գովեստի արժանացան:

«Հազարան բլբուլը» նորակերտ տառերով, աննման գեղարվեստական պատկերներով պիտի լիներ մեր հրատարակության երախայրիքը: «Բայց ափսոս, որ երազ էր»: Կա մի անողոք բան, որ ծանրանում է մեր բոլոր տենչանքների և գործերի վերա, հետապնդում և ճախողում մեծը, թե փոքրը, կարևորը, թե չնչինը, թողնելով անփարատելի կսկիծ:



## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԴԻՈՆԻՍԻՈՍ ԹՐԱԿԱՑԻՆ ԵՎ ՀԱՅ ՄԵԿՆԻՉՆԵՐԸ

(էջ 1)

Գրված է 1910-1915 թթ. Պետրոգրադում: Որպես «Bibliotheca Armeno-Georgica» մատենաշարի չորրորդ գիրք լույս է տեսել 1915 թ. Պետրոգրադում, իսկ 1916 թ. որպես դոկտորական ատենախոսություն պաշտպանվել Գիտությունների կայսերական ակադեմիայում:

Հայերեն սույն թարգմանությունը կատարել է փիլիսոփայական գիտությունների թեկնածու Օլգա Վարդազարյանը, որին են պատկանում նաև թարգմանության հանգամանքներին ու առանձնահատկություններին նվիրված ստորև ներկայացվող նկատումներն ու ծանոթագրությունները:

* * *

Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստի» առաջին գիտական հրատարակությունն իրականացրել է Փարիզի Արքայական գրադարանին առընթեր Արևելյան լեզուների դպրոցի դասախոս Հակոբ Շահան-Ջրպետյանը[1]: Հայերեն բնագիրը կազմելիս, նա հենվել է Փարիզի Արքայական գրադարանում հայտնաբերված երկու գրչագրերի վրա: Առաջինը՝

[1] Հ. Շահան-Ջրպետյանի ուսումնասիրությունը լույս է տեսել երեք անգամ. նախ՝ 1824 թ., «Journal Asiatique» հանդեսում (Grammaire de Denys de Thrace: extraite de deux manuscrits arméniens de la Bibliothèque du Roi, et publiée en Grec, en Arménien et en Français; avec notes et éclaircissements par J.-Ch. Cirbied, professor d'arménien etc): Երկրորդ անգամ այն տպագրվել է 1830 թ. առանձին գրքույկով «Ֆրանսիայի և այլ երկրների լեզուների, գավառաբարբառների և խոսվածքների հետազոտություններ» մատենաշարով (Mémoire sur les langues, dialects et patois, tant de la France que des autres pays)՝ Grammaire de Denys de Thrace, tirée de deux manuscripts arméniens de la Bibliothèque du Roi, publiée en Grec, en Arménien et en Français, et précédée de considerations générales sur la formation progressive de la science glossologique chez les anciens, et de quelques détails historiques sur Denys, sur son ouvrage et sur ses commentateurs, par M.Cirbied, membre résident. Վերջապես, 1889 թ. այն վերահրատարակվել է Վենետիկում՝ «Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց» շարքում՝ «Քերականութիւն Դիոնիսիոսի Թրակացւոյ հանեալ ի քաղաքական գրատանէ Փարիզոյ եւ լոյս ընծայեալ ի յոյն, ի հայ եւ ի գաղղիացի լեզու, հանդերձ ծանօթութեամբք եւ բացատրութեամբք ի Յակովբայ Շահանջրպետեան Եղեսացւոյ, ի դասատու վարժապետէ հայկական բարբառոյ յարքունական դպրոցի արեւելեան լեզուաց քաղաքական գրատան» խորագրով:

№ 124[1] (գրության ժամանակն ու տեղն անհայտ են), 24-էջանոց ձեռագիր է, որ պարունակում է «Արվեստի» պակասավոր բնագիրը: Երկրորդ՝ № 127[2] մատյանում Դիոնիսիոսի բնագրին հաջորդում է Հովհաննես Երզնկացի Պլուզի «Հավաքումն մեկնութեան Քերականի» բանաքաղությունը[3]:

Հայերեն բնագրին զուգադրվել է հունարենը, որն արտատպվել է Ի.-Ա. Ֆաբրիցիուսի 1715 թ. կատարած առաջին տպագրությունից[4]: Նշելի է, որ այն Չահան-Ջրպետյանի օրոք արդեն հնացած էր, քանզի 1816 թ. Ի. Բեկկերը իրականացրել էր նոր, ձեռագրային շատ ավելի հարուստ հիմք ունեցող հրատարակությունը[5]: Նկատելով, որ հայերեն բնագիրն ավելի ծավալուն է, քան հունարենը, Հ. Չահան-Ջրպետյանը միաժամանակ նշում է, որ Ֆաբրիցիուսը զանց է առել Դիոնիսիոսի «Քերականության» այն մասերը, որոնք դեռևս միջնադարում ճանաչվել են իբրև անվավեր, և այդ հանգամանքը ստիպում է առկախ թողնել այդ հատվածների և հայերեն բնագրի վերջնամասի նույնության հարցը[6]: Հետևելով նույն Ֆաբրիցիուսին, որը թվարկում է Դիոնիսիոսի երկի հույն մեկնիչներին, Հ. Չահան-Ջրպետյանը բերում է «Արվեստի» հայ մեկնիչների ցուցակը. «Մովսէս Խորենացի, Դաւիթ Ներգինացի մականուանեալ Անյաղթ փիլիսոփայ, Բարսեղ վարդապետ մականուանեալ Ճոն, Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեաց, Համամ Արևելցի, Գրիգոր Մագիստրոս իշխան Պահլաւունի, Արիստակէս գրիչ, Գէորգ Սսեցի, ոմն իմաստասէր անանուն, երեք այլ անանուն մեկնիչք»[7]: Այս ցանկի հեղի-

[1] Այժմ՝ Ֆրանսիայի Ազգային գրադարանի հայկական ձեռագրերի ֆոնդի № 269 (տե՛ս **R. H. Kévorkian, A. Ter-Stépanian,** Manuscrits arméniens de la Bibliothèque Nationale de France, Catalogue, Paris, 1998, p. 838): Հ. Չահան-Ջրպետյանի կարծիքով, ձեռագիրը կարելի է թվագրել XV դարով:

[2] Այժմ՝ հիշյալ գրադարանի № 270 (տե՛ս **R. H. Kévorkian, A. Ter-Stépanian**, p. 839-840), XVI դ. վերջ (Հ. Չահան-Ջրպետյանի կարծիքով՝ XIV-XV դդ.), գրիչ՝ Կարապետ Չաք, գրության վայրը՝ Վարագա Սուրբ Նշան վանքը, Վասպուրական: Նույն ֆոնդում պահպանվում է «Արվեստին» կցված «Բառք»-ի պատառիկը, որը Հ. Չահան-Ջրպետյանին հայտնի չէր (№ 271/1692 թ. ձեռագրի կազմում. **R. H. Kévorkian, A. Ter-Stépanian**, p. 841):

[3] **J.-Ch. Cirbied**, 1830, p. XXVII. Հրատարակչին հայտնի է եղել ևս մի գրչագիր, որ պահպանվել է Վենետիկի Մխիթարյան միաբանության մատենադարանի ձեռագրերում, որից նա, սակայն, չի օգտվել:

[4] Bibliotheca Graeca, VII, 629-643.

[5] Anecdota Graeca, II, 629-643.

[6] **J.-Ch. Cirbied**, 1830, p. XIII-XIV.

[7] Op.cit., pp. XXVIII-XXIX. Իր «Հայերենի քերականության» մեջ (**J.-Ch. Cirbied**, Grammaire de la langue Arménienne, Paris, 1823, p.24-29) Հ. Չահան-Ջրպետյանը տալիս է հայ քերականների շատ ավելի ծավալուն ցանկը: Դիոնիսիոսի գրվածքի թարգմանության և դրա հայ մեկնությունների մասին սուղ տեղեկություններ հրատարակել են Ա. Սուքրյանը («Սկիզբն հայկական լեզուի և Դիոնիսիոսի Թրակացւոյ քերականութիւն», «Բազմավէպ», 1877, էջ 97-109), Ղ. Ալիշանը («Յուշիկք հայրենեաց Հայոց», հատ. Բ, Վենետիկ, 1870; վերահրատ., 1921, էջ 422), Գ. Զարբհանալյանը («Հայկական թարգմանութիւնք նախնեաց», Վենետիկ, 1889, էջ 394-397. հմմտ. նույնի՝ «Հայկական հին դպրութիւն», Վենետիկ, 1897, էջ 582-583, 754-761):



նակները միայն անուններով էին ծանոթ Հ. Չահան-Ջրպետյանին: Միակը, որի աշխատությունը նա իր աչքի առաջ է ունեցել, Հովհաննես Երզնկացի Պլուզն է, թեև Հ. Չահան-Ջրպետյանը, հավանաբար շփոթելով Հովհաննես Երզնկացի Ծործորեցու հետ, նրան թվագրում է XIV դարով[1]:

«Արվեստի» հայերեն բնագիրն օժտվեց նաև ֆրանսերեն թարգմանությամբ, որը մատչելի դարձրեց հայկական նյութը եվրոպացի բանասերների համար:

Հ. Չահան-Ջրպետյանի հետքերով գերմանացի արևելագետ Ադալբերտ Մերքսը ներկայացրել է Դիոնսիոսի «Արվեստի» հայերեն բնագիրը Գ. Ուլիգի հրատարակած «Հույն քերականներ» մատենաշարի առաջին հատորում, նշելով հատկապես քերականական եզրույթների թարգմանության «սարկությունը»՝ այս անհաջող արտահայտությամբ, անշուշտ, նշանակելով բառապատճենման թարգմանական մեթոդը[2]:

Այսպիսիք էին Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստի» հայերեն բնագրի մասին գիտելիքները, երբ Ն. Մառի առաջարկությամբ դրա ուսումնասիրությունն ու վերահրատարակումը ստանձնեց Ն. Ադոնցը: Հարց է ծագում՝ ինչպե՞ս պատահեց, որ «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» երկի հեղինակը, արդեն կայացած՝ ինքնուրույն և խոստումնալից պատմաբանը, անսպասելիորեն փոխեց հետազոտության ոլորտը և զբաղվեց իր համար արտաքնապես անսովոր՝ զուտ բանասիրական խնդիրներով: Այս հարցի պատասխանը, թվում է, տալիս է ինքը՝ Ադոնցը. «Քերականական գրականությունը, ինչպես և հայոց դպրության յուրաքանչյուր այլ բնագավառ, կազմված լինելով բյուզանդական քրիստոնեական մշակույթի ոլորտում, կարելի է և պետք է լուսաբանել իր բյուզանդական սկզբնաղբյուրների կապակցությամբ»[3]: Ըստ էության, Ն. Ադոնցը սևեռվում է նույն խնդրի վրա՝ եթե միջնադարյան Հայաստանի *քաղաքական կացությունը* մեծապես պայմանավորված էր Բյուզանդիայի հետ քաղաքական հարաբերություններով, ապա հայ միջնադարյան *մտավոր կյանքի* սկզբնավորման շրջանում առանցքային դեր էին խաղում հունական դպրությունը և կրթությունը, իսկ դրանց ամենամերձ աղբյուրը նույն Բյուզանդիան էր: Հզորագույն այս ազդեցության արդյունքների, մասնավորապես՝ «հունաբան դպրոցի» ամբողջական պատկերը կազմելու համար հարկավոր էր նախևառաջ ուսումնասիրել աղբյուրները. մինչդեռ հին հայ մա-

[1] **J.-Ch. Cirbied**, pp.XXIX-XXXI.

[2] **A. Merx**, De artis Dionysianae interpretatione Armeniaca, in: Grammatici Graeci, Pars I, vol.1: Dionysii Thracis ars grammatica, qualem exemplaria vetusissima exhibent, subsciptis discrepantiis et testimoniis, quae in codicibus recentioribus scholiis erotematis apud alios scriptores et interpretem Armenium reperiuntur, Leipzig, 1883, pp. LXIII-LXXIII.

[3] Տե՛ս սատ, էջ CXVI:

տենագրական (նաև թարգմանական) հուշարձանների մեծ մասը չէր հրատարակվել պատշաճ ձևով, չէին կազմվել դրանց *քննական* բնագրերը: Այս հանգամանքից բխում էր առաջին պահանջը՝ հնարավորին չափ լայնացնել «Արվեստի» ձեռագրային հենքը, ցույց տալ օգտագործված գրչագրերի հարաբերակցությունները և բնագրի ձեռագրային պատմությունը: Հետազոտության երկրորդ պահանջը առաջանում էր, թերևս, երկու հանգամանքներից. նախ, «Արվեստի» հայ մեկնիչների ցանկը, որն իր աշխատության մեջ բերել էր Հ. Տաշեան-Ջրպետյանը և որոշ չափով լրացրել էին ուրիշները, կարոտ էր ճշտման, իսկ դա հնարավոր էր անել միայն թվարկված մեկնությունների բնագրերին ծանոթանալու միջոցով: Մյուս կողմից, հաճախ Դիոնիսիոսի բնագիրն ինքը կամ ամբողջապես կցված էր որևէ մեկնության, կամ տրոհված վիճակում ամփոփված էր դրա մեջ իբրև մեկնվող բնաբան՝ բառացի մեջբերմամբ կամ վերաշարադրված ձևով: Ուստի և «Արվեստի» բնագրի մշակումն ինքնին բերում էր դրա շուրջ զարգացած մեկնողական գրականության ուսումնասիրությանը: Դժբախտաբար, դարաշրջանի ցնցումներն արգելեցին Ն. Ադոնցին ամբողջությամբ հրատարակել հավաքված և ուսումնասիրված նյութը: Փոխարենը, սակայն, ստացվեց մի հետազոտություն, որը կարելի է անվանել աղբյուրագիտական հրաշագործություն: Գրիգոր Մագիստրոսի և Հովհաննես Երզնկացի Պլուզի բանաքաղությունները բաղդատելիս, Ն. Ադոնցին հաջողվեց վերականգնել առաջին հայ քերականների՝ Դավթի, Անանունի, Մովսեսի, Ստեփանոս Սյունեցու և Համամ Արևելցու մեկնությունները: Թե որքան ճշգրիտ էին այս վերականգնումները, պարզվելու էր մոտ քառասուն տարի անց: Առայժմ Ն. Ադոնցը ապացուցում է, որ մեկնիչներից ավագը՝ Դավիթը, քաջատեղյակ և տեղ-տեղ պարզապես կախված է Դիոնիսիոսի «Արվեստի» հունարեն լուծմունքներից. մյուս կողմից, նրա մեկնությունն ունի բազմաթիվ ընդհանուր բնութագծեր հունաբան թարգմանությունների հետ: Քանի որ հին ուսումնական ավանդությունը առաջին քերականական աշխատությունը վերագրում է «Դավիթ Անհաղթ փիլիսոփային», իսկ նույն անունը կրող փիլիսոփայական երկերի թարգմանությունը նույնպես հունաբան միտվածության վառ դրսևորումն է, ապա ինքնըստինքյան հարց է ծագում երկու Դավիթների փոխառնչության վերաբերյալ: Ինչպես պարզում է Ադոնցը, գաղափարական տարաձայնությունները թույլ չեն տալիս նույնացնելու փիլիսոփային և քերականին, եթե անգամ ենթադրենք, որ «Քերականության մեկնությունը» նույնպես սկզբից գրվել է հունարեն, և հետո միայն հայերեն է թարգմանվել: Բայց այս հանգամանքով դեռ չի բացառվում Դավիթ փիլիսոփայի երկերի՝ Դավիթ քերականի կողմից թարգմանվելու հնարավորությունը: Այս մասնավոր հարցը, իր հերթին, հետազոտողին բերում է շատ ավելի ծավալուն խնդրի առաջա-



դրման. ինչպե՞ս առհասարակ կարելի է խմբավորել և թվագրել հունաբան հուշարձանները: Մտադրություն չունենալով սպառել խնդիրը, Ն. Ադոնցը, այնուհանդերձ, պնդում է, որ զուտ լեզվական տվյալներն այս պարագայում անօգուտ են. շատ ավելի շահավետ է նկատել այն պահերը, երբ միևնույն արտահայտությունը տարբեր հուշարձաններում թարգմանվում է մի դեպքում՝ անսխալ, մյուս դեպքում՝ իմաստի վրիպմամբ: Այս մեթոդի օգնությամբ գիտնականը փորձում է ապացուցել, որ Դավիթ Անհաղթի «Սահմանք»-ի թարգմանությունը և Դավիթ Քերականի «Մեկնությունը»՝ տարբեր անձանց ստեղծագործություններ են: Երկու Դավիթներից զանազանվում է նաև «Արվեստի» թարգմանիչը:

Կապելով Դավիթ Քերականին բյուզանդական քերականների միջավայրին, ինչպես և տարանջատելով նրան Դավիթ Անհաղթից, Ն. Ադոնցը ստանում է այն ելակետը, որը նպաստում է վաղ շրջանի հայ քերականների ժամանակագրական սանդղակի կառուցմանը: Այն, հեղինակի համոզմամբ, պետք է դյուրացնի հունաբան բնագրերի թվագրումը:

Եթե ճիշտ է Ն. Ադոնցի աշխատության ներքին տրամաբանության մեր ըմբռնումը, ապա այն, պտույտ կատարելով, հանգում է իր մեկնակետին՝ հայ-բյուզանդական մշակութային փոխհարաբերությունների և «հունաբան դպրոցի» խնդիրներին:

Ն. Ադոնցի մենագրությունը գնահատվեց Ն. Մառի[1] և Ս. Ժերևլի[2] գրախոսականներով: Հիացմունք հայտնելով հանդերձ, գիտնականները նշեցին գրքի որոշ թերություններ, որոնց մեծ մասը կարելի է այսօր վերագրել այն տխուր իրողության, որ այսչափ բարդ աշխատանքը լույս էր ընծայվել առանց գիտական խմբագրի օժանդակության: Այսպես, օրինակ, Ն. Մառը նկատում է գրքի «հասցեատիրոջ» անորոշությունը. մի կողմից, ուսումնասիրության բաժնի հայկական նյութը հաճախ մնում է առանց թարգմանության, ուստի և անմատչելի է ոչ հայագետներին, և հակառակը՝ բնագրերի քննական ապարատի լատիներեն նշումները դժվարացնում են նյութի ըմբռնումը հայ բանասիրության մասնագետների համար: Եղել են, սակայն, և էական դիտողություններ: Ն. Մառին չի բավարարել այն հանգամանքը, որ Ադոնցն իր հետազոտության մեջ սահմանափակվել էր միայն հայհունական առնչություններով, զանց առնելով այն հնարավորությունները,

[1] "Христианский Восток", т. V (1916), с. 52-66, արտատպվել է Н. Я. Марр, Кавказский культурный мир и Армения, Ереван 1995 ժողովածուում (с. 309-323):

[2] "ХВ", т. V (1916), с. 67-72: Գրքին անդրադարձել են և այլ գրախոսներ, որոնցից կառանձնացնեինք Ա. Մեյեի ("Bulletin de la Société de Linguistique de Paris", t. XX, Paris, 1916, pp. 158-159, տե՛ս նաև հայերեն թարգմանությունը՝ Ա. Մեյե, Հայագիտական ուսումնասիրություններ, Երևան, 1978, էջ 616) և Ա. Մաքսուդյանցի («Արարատ», 1917, № 9-12, էջ 827-832) մատենախոսականները:

որ ուսումնասիրվող նյութը տրամադրում է հայ-վրացական, կամ, դիցուք, հայ-ասորական զուգադրությունների առումով: Ն. Մառի երկրորդ դիտողությունն այն էր, որ ցանկալի կլիներ «հունաբան» ուղղության մեջ զատորոշել սկզբնական «հեղափոխական» և հետագա՝ «պահպանողական» շերտերը («ճակատամարտ, որից Ն. Ադոնցը խուսափել է»[1]):

Ս. Ժերեևի դիտողությունները առավելապես վերաբերում են Ն. Ադոնցի երկասիրության IV գլխին և հիմնականում խմբագրական բնույթի են: Դրանց հետ մեկտեղ Ս. Ժերեևը նկատում է, որ Ն. Ադոնցը չի հստակեցրել հունարեն լուծմունքների միջև եղած հարաբերակցությունները, այլ պարզապես հղել է Grammatici Graeci մատենաշարի երրորդ հատորի ծանրածանր և խճճված առաջաբանին: Դրա փոխարեն ճիշտ կլիներ դիմել Լ. Կոնի շատ ավելի դյուրըմբռնելի հոդվածին[2], կամ ներկայացնել նյութի սեփական շարադրությունը, հատկապես նշելով, թե հունարեն մեկնությունների որ խմբերին է հարում Դավիթը[3]: Ս. Ժերեևի ներկայացրած պահանջի իմաստն այն է, որ հույն քերականների գրվածքները ցրված են VI մինչև VIII դարը, և Դավթին հարակցող խմբի հստակեցումը կնպաստեր «Մեկնության» ավելի ստույգ թվագրմանը: Ուշագրավ է նաև Դավթի՝ հույն աղբյուրները մշակելու *սկզբունքների* մասին հարցադրումը[4]:

1917 և 1919 թթ. Ն. Ադոնցի մենագրությանը հակիրճ, բայց հանգամանալից գրախոսականներով արձագանքեց Ն. Աղբալյանը[5]: Բնութագրելով Ադոնցի աշխատությունն իբրև «ստվար և խիստ արժեքավոր»[6], Աղբալյանը իր երկրորդ գրախոսականի առաջին մասում նշում է Ն. Ադոնցի գրքի՝ վրիպակների ցանկում չարտացոլված տարակուսալի ընթերցվածները, որոնք հավասարապես կարելի է վերագրել թե՛ սրբագրչի անուշադրությանը, և թե՛ մեջբերվող աղբյուրի վիճակին: «Պնդումներ անբավարար հիմունքով» բաժնում Ն. Աղբալյանը մատնացույց է անում իր կարծիքով՝ Ն. Ադոնցի թույլ տված մի քանի տրամաբանական և փաստական անհարիրություններ: Վերջապես, գրախոսականի երրորդ մասում նա որոշ կռահումներ է անում «Արվեստի» թարգմանության վայրի և ժամանակի վերաբերյալ: Դիտելով, թե թարգմանիչն ինչպիսի հայերեն համարժեքներ է գտնում հունարեն օրինակների փոխարեն, Ն. Աղբալյանը եզրակացնում է. «Կարելի է մակաբերել, որ թարգմանիչն ապրում է մի երկրում, ուր ձյան հյուս կա, որք, ընկուզեներ, այգիներ (կթոց), Տարոնն ու Ցրոնքը, Մամիկոնյան տան անունները, այս ամենը, մեզ թվում է, կարող են հիմք լինել կռահելու, թե թարգմանությունը եղած է Տարոնում: Ու եթե նկատի ունենանք, որ Մուշի մոտ է Առաքելոց վանքը, որի հետ ավանդությունը կապում է թարգմանիչներին և նրանց գործունեությունը – մեր կռահումը համարյա մոտենում է հավանական ենթադրության: Հետաքրքրական է, որ Մովսես Քերթողը, երբ բերում է հայրանվան օրինակներ, Թրակացու թարգմանչի՝ Համազասպյան Մանուելի փոխարեն դնում է «ի հաւրէ Սահակայ՝ Սահակեան» (էջ 176): Քերթողահա՞յրն է արդյոք, որ չի մոռանում իր մեկենասին...»[1]:

Ն. Աղբալյանի ենթադրությունը գրկաբաց ընդունվեց Հ. Մանանդյանի[2] և հատուկ ցնծությամբ՝ Ն. Ակինյանի կողմից: Վերջինս դիտեց հիշյալ վարկածն իբրև սեփական տեսության ապացույց՝ տեսություն, որի համաձայն, «հունաբան դպրոցը» սկիզբ է առել Կոստանդնուպոլսում, 572 թ. Դվինի ապստամբությունից հետո այստեղ ապաստան գտած Կրտսեր Վարդան Մամիկոնյանի շրջապատում[3]: Ավելի կարևոր է, սակայն, որ երկու հայագետները (առավելապես Հ. Մանանդյանը) Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստի» նյութն օգտագործեցին հունաբան թարգմանությունների խմբի ներսում համեմատական թվագրումը հստակեցնելու համար: Այսուհետ բազմաթիվ վիճարկելի խնդիրներ արծարծող «հունաբան» ուսումնասիրությունների բնագավառում անառարկելի են համարվում Հ. Մանանդյանի ստացած արդյունքները. ա) Թրակացու «Քերականության», Փիլոն Ալեքսանդրացու երկերի և Պիտոյից գրքի սահմանումների թարգմանությունը կազմում է հունաբան թարգմանությունների հնագույն շերտը. բ) Թրակացու բնագիրը նշված խմբի առաջին թարգմանությունն է[4]:

Հետևաբար, «Քերականական արվեստի» թարգմանության ժամանակի որոշումը կախված է ամբողջ խմբի թվագրումից: Հ. Մանանդյանը ենթադրել

---

[1] Н. Я. Марр, с. 314.

[2] Paulys Realencyclopaedie der classischen Altertumswissenschaft. Neue Bearbeitung begonnen von G.Wissowa unter Mitwirkung zahlreicher Fachgenossen (այսուհետ՝ PWRE), hrsg. von W.Kroll, Erste Reihe, 9.Halbband, Stuttgart, 1903, SS. 977-983.

[3] "Христианский Восток", т.V, с. 69.

[4] Ibidem, с. 70.

[5] Տե՛ս «Գործ», ամսագիր, Բաքու, 1917, № 2, Բ մաս, էջ 115-119: Տե՛ս նաև նույնի՝ «Դիտողություններ Ն. Ադոնցի նոր գրքի վրա», «Արարատ», 1919, հունվար-դեկտեմբեր, էջ 65-71:

[6] «Արարատ», 1919, էջ 65:



---

[1] Ն. Աղբալյան, նշվ. աշխ., էջ 70-71:

[2] Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928, էջ 227-228:

[3] Ն. Ակինյան, «Հունաբան դպրոցը (572-603)», տե՛ս «Հանդես Ամսօրյա», 1932, էջ 271-292, նաև «Դասական հայերենը և Վիեննայի Մխիթարյան դպրոցը», Վիեննա, 1932, էջ 108-109:

[4] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 105-124: Այս խմբին են պատկանում նաև Իրինեոսի երկերի թարգմանությունները (տե՛ս F. C. Conybeare, The Age of the old Armenian Version of Irenaeus, «Յուշարձան: գրական ժողովածոյ առթիւ 100-ամեայ յոբելինի հաստատման Մխիթարեան միաբանութեան ի Վիեննա (1811-1891)», Վիեննա, 1911, էջ 193-202; Ա. Վարդանյան, «Լեզվական նմանություններ Փիլոնի և Իրենիոսի հայ թարգմանությունների մեջ», տե՛ս «Հանդես Ամսօրյա», 1921, էջ 449-458):

է, որ հունաբան թարգմանությունների առաջին խումբը ստեղծվել է Տիմոթեոս Կուզի «Հակաճառություն»-ից առաջ։ Մինչդեռ «Հակաճառության» թվագրումն ինքն անստույգ է՝ ձեռագրային ընթերցվածների տարաձայնության պատճառով, ուստի և դրան նախորդող թարգմանությունները կարելի է վերագրել և VI դ. երկրորդ կեսին, ինչպես դա արել է Հ. Մանանդյանը[1], բայց նաև՝ V դ. 50-70-ական թվականներին, ինչպես որոշեցին, հիմք ունենալով Գ. Տեր-Մկրտչյանի հաշվառումները[2], խնդրի հետագա ուսումնասիրողները[3]։

Ն. Ադոնցի հրատարակած բնագրերի ուսումնասիրությունները վերսկսվեցին 1950-ական թվականներին Գ. Բ. Ջահուկյանի «Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում» մենագրությամբ[4], որում լեզվաբանության պատմության տեսակետից քննության էր առնվում «Արվեստի» հայերեն թարգմանությունը և դրա քերականական մեկնությունները։ Դա անշուշտ նորություն էր։ Այնուամենայնիվ, բարձր գնահատելով իր նախորդի աշխատանքը, Գ. Ջահուկյանը միաժամանակ դժգոհություն է հայտնում, որ «Ադոնցը մի կողմից՝ տեքստերին մոտեցել է միայն բանասիրական տեսանկյունից՝ դրանք համարելով հունաբան դպրոցի հարցերի պարզաբանման մի միջոց, մյուս կողմից՝ ունեցել է որոշ կանխակալ կարծիք՝ փաստորեն հանգելով ամեն մի ինքնուրույնության ժխտման»[5]։ Այս հանդիմանությունը կարմիր թելով է անցնում մենագրության առաջին մասում։ Գ. Ջահուկյանը սկսում է նրանից, որ կիսում է Թրակացու թարգմանության V դ. թվագրված լինելու կարծիքը, կրկնում է Ն. Աղբալյանի առարկությունները Ն. Ադոնցի՝ Դավիթ Փիլիսոփայի և Դավիթ Քերականի տարբերելու փորձի դեմ[6], ինչպես նաև ինքն աշխատում է ապացուցել «Արվեստի» թարգմանչի և Դավթի նույնությունը։ Ապա նա փորձում է ցուցադրել, որ այն դեպքում, երբ Թրակացու բնագրի թարգմանությունը շեղվում է հունարեն սկզբնօրինակից, դա պայմանավորված է թարգմանչի՝ հայերենի լեզվական իրողությունները արտացոլելու ցանկությամբ։ Անցնելով մեկնիչների և մեկնությունների խնդրին, Գ. Ջահուկյանը ևս վերադառնում է ավանդական պատկերացումներին, հավանական համարելով մեկնիչ Մովսեսի և Մովսես Խորենացու, ինչպես և Անանունի և

[1] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 107, 223-226։

[2] Գ. Տեր-Մկրտչյան, Հայ մատենագրության հնագույն թվականները. տե՛ս Գ. Տեր-Մկրտչյան, Հայագիտական ուսումնասիրություններ, Երևան, գիրք Ա, 1979, էջ 388-395 ։

[3] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հ. Ա, Երևան, 1944, էջ 101-102։ Խնդրի հանգամանալից տեսությունը տե՛ս С. С. **Аревшатян**, Формирование философской науки в древней Армении (V-VI вв.), Ереван, 1979, с. 76-111:

[4] **Գ. Ջահուկյան**, Երևան, 1954։

[5] Նշվ. աշխ., էջ 4-5։

[6] Ն. Աղբալյան, Դիտողություններ Ն. Ադոնցի նոր գրքի վրա, էջ 68։



Մամբրեի նույնությունը։ Նա խոցելի է հայտարարում Ն. Ադոնցի կառուցած՝ մեկնիչների հաջորդականությունը, թեև չի հավակնում զարգացնելու հարցի սեփական տեսությունը[1]։

Բայց այս ամենը բնավ չխանգարեց գիտնականին ներկայացնել մեկնիչների հայացքները, հենվելով բացառապես Ն. Ադոնցի մշակած նյութի վրա։ Դեռ ավելին՝ գրքի առաջաբանում հեղինակն ուրախությամբ հայտնում է, որ մենագրությունն արդեն հրատարակության հանձնելիս, նրան հաջողվեց հայտնաբերել Դավթի «Մեկնության» ամբողջական բնագիրը՝ այն մեկնության, որ ժամանակին Մագիստրոսի և Երզնկացու բանաքաղությունների բաղդատության միջոցով վերականգնել էր Ն. Ադոնցը[2]։ Շուտով հաջորդեց հարություն առած բնագրի հրապարակումը[3], որից պարզվեց, որ «Մեկնության» երեք գրչագրերից և ոչ մեկը չի կրում Դավթի անունը, և դրա ճանաչումը հնարավոր եղավ միմիայն այն Ն. Ադոնցի վերականգնած բնագրի հետ համեմատելու շնորհիվ։

1970 թ. լույս է տեսնում Ն. Ադոնցի երկասիրության՝ Ռենե Օտերբեկի ֆրանսերեն թարգմանությունը՝ բնագրերի լուսատիպ վերարտադրմամբ։ Հավելվածում հրատարակիչները հարկ էին համարել զետեղել Դավիթ Քերականի «Մեկնության» բնագիրը՝ Գ. Ջահուկյանի ուսումնասիրության ֆրանսերեն ամփոփմամբ հանդերձ, որ պատրաստել էր Բրյուսելի համալսարանի դասախոս Աքպագ Մխիթարյանը[4]։

1971 թ. Ա. Ն. Մուրադյանը հրատարակեց «Հունաբան դպրոցին» նվիր-

[1] Երբ Գ. Ջահուկյանը փորձում է հիմնավորել իր տարաձայնությունները Ն. Ադոնցի հետ, և երբեմն, հատկապես՝ լեզվաբանության բնագավառում բավական համոզիչ փաստարկներ է բերում, ապա դա ամենևին չի կարելի ասել Ա. Ա. Ադամյանի՝ չհիմնավորված հայտարարությունների մասին (**А. А. Адамян**, Эстетические воззрения средневековой Армении, Ереван, 1955, վերատպվել է **А. А. Адамян**, Вопросы эстетики и теории искусства, Ереван, 1978, сс. 199-298): Ահա թե ինչպես է գնահատում վերջինս Ն. Ադոնցի աղբյուրագիտական մանրակրկիտ և տաժանակիր աշխատանքը. «...իր աշխատության հիմքում նա դրել է այն կեղծ գաղափարը, թե իբր հայ քերականները այլ նպատակ չունեին, եթե ոչ, հույների հետ մրցակցելով, մեկնաբանել հույն Դիոնիսիոս Թրակացու ուսմունքը։ Յուրացնելով այս թյուր հայացքը, Ադոնցը ամենայն բծախնդրությամբ փնտրում էր. արդյո՞ք «հաջողվեց» հայ «աշակերտներին» հավատարիմ մնալ իրենց «ուսուցիչներին», չնահանջեցի՞ն նրանք թեկուզ ինչ-որ բանում Դիոնիսիոս Թրակացուց, Մելամպոդեսից, Հելիոդորոսից, Պտղոմեոս Ճեմականից։ Իսկ եթե նահանջեցին, ապա ինչի՞ հետևանքով, ո՞ր բառի ոչ ճշգրիտ ըմբռնման պատճառով և այլն» (**А. А. Адамян**, Вопросы эстетики и теории искусства, с. 262): Ինչպես ասվում է, մեկնաբանությունն ավելորդ է:

[2] **Գ. Ջահուկյան**, նշվ. աշխ., էջ 7:

[3] **Գ. Ջահուկյան**, Դավթի քերականական աշխատության նորահայտ ամբողջական ձեռագիր տեքստը, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 9, 1956, էջ 241-264:

[4] **Nicolas Adontz**, Denys de Thrace et les commentateurs arméniens. Réedition de l'édition de 1915 (St.Petersbourg), avec traduction de l'introducion en français par René Hotterbeck. Preface M. Leroy, Louvain, 1970. Տե՛ս նաև այս հրատարակության Մ. Ճանաշյանի մատենախոսականը («Բազմավեպ», 1972, էջ 149) :

ված իր արժեքավոր մենագրությունը[1]: Ի մի բերելով «հունաբան» խնդրակարգի զարգացման մեկ դարուց ավել տևող պատմությունը, Ա. Մուրադյանը ոչ միայն քննում է քերականական եզրույթների կերտման հնարները, որոնց դիմում էին «հունաբան» հեղինակները, և առաջին հերթին՝ Դիոնիսիոսի «Արվեստի» թարգմանիչը, այլև մանրամասն ներկայացնում «հունաբան» տերմինաբանության հետագա ճակատագիրը, ապացուցելով, որ արդի հայերենում գործածվող եզրերի զգալի մասը «հունաբան» ծագում ունեցող գոյացություններ են:

1970-1990-ական թվականներին «Արվեստի» հայերեն թարգմանությունը մի քանի անգամ վկայակոչվել է որոշ մասնավոր հարցերի լուսաբանման կապակցությամբ[2]: Սոսկ վերջերս «Արվեստի» թարգմանության տեխնիկային երեք հոդված նվիրեց իտալացի բանասեր Ռոմանո Սգարբին[3]:

Հայոց միջնադարյան քերականական ավանդության տեքստաբանական ուսումնասիրությունների ուղղությունն իր շարունակությունը ստացավ Լ. Գ. Խաչերյանի աշխատություններում: 1950-1987 թթ. Լ. Խաչերյանը մշակեց և լույս ընծայեց Ն. Ադոնցից արծարծված մեկնությունների բոլոր բնագրերը՝ քննական ապարատով և ծավալուն ուսումնասիրություններով հանդերձ: 1962 թ. Երևանում լույս է տեսնում «Գրչության արվեստի լեզվական-քերականական տեսությունը միջնադարյան Հայաստանում» մենագրությունը, որի հավելվածում զետեղվել են Արիստակես Գրչի, Գևորգ Սկևռացու, Գրիգոր Տաթևացու քերականական աշխատությունների և մի քանի նույնաբնույթ պատառիկների համահավաք բնագրերը: Այնուհետև

[1] Ա. Ն. Մուրադյան, Հունաբան դպրոցը և նրա դերը հայերենի քերականական տերմինաբանության ստեղծման գործում, Երևան, 1971:

[2] Հ. Վ. Հովհաննիսյան, Ողբերգության որպես գրական տեսակի ըմբռնումը Դիոնիսիոս Թրակացու մեկնություններում, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 10, 1971, էջ 21-42: Լ. Խ. Խաչերյան, Դիոնիսիոս Թրակացու բարձրաձայն ընթերցանության հարցադրումները [ΠΕΡΙ ΑΝΑΓΝΩΣΕΩΣ. Ցաղագս վերծանութեան] և քնարերգության տեսակների սահմանումները հայ քերականների մեկնաբանմամբ, տե՛ս «Հանդես Ամսօրյա», 1987, էջ 527-554: Գ. Բ. Ջահուկյան, Հունաբան դպրոցի հայերենը և նրա մշակած նախածանցների համակարգը, տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1993, № 1-2, էջ 7-14:

[3] **R. Sgarbi**, Tecnica dei calchi nella versione armena della *γραμματικὴ τέχνη* attributa a Dionisio Trace [Բառապատճենման տեխնիկան Դիոնիսիոս Թրակացուն վերագրվող «Քերականական արվեստի» հայերեն թարգմանության մեջ], տե՛ս Memorie dell Instituto Lombardo – Accademia di scienze e lettere, classe di lettere – scienze morali e storiche, vol. XXXIX, fasc.4, Milano, 1990; Idem, Studio contrastivo sull' additamento strutturale armeno della Techne Dionisiana [Դիոնիսիոսի «Արվեստի» հայերեն կառուցվածքային հավելումների կոնտրաստիվ ուսումնասիրությունը], ibidem, fasc.7 ; Idem, Problemi lessicali legati alla terminologia della versione armena dell' 'Ars dionisiana' [Դիոնիսիոսի «Արվեստի» հայերեն թարգմանության տերմինաբանության հետ կապված բառագիտական խնդիրները]. - Բնագիրք յիշատակաց՝ Documenta memoriae, Dall' Italia e dall' Armenia. Studi in onore di Gabriella Uluhogian, Bologna, 2004, pp. 349-357: Այս տեղեկությունների համար մեր երախտագիտությունն ենք հայտնում «հունաբան» թարգմանությունների հմուտ հետազոտող Գ. Ս. Մուրադյանին:



հրապարակվել են Եսայի Նչեցու[1], Վարդան Արևելցու[2], Առաքել Սյունեցու[3], Հովհաննես Երզնկացի Պլուզի[4], Հովհաննես Ծործորեցու[5], Գրիգոր Մագիստրոսի[6] «Քերականի» մեկնությունները: Վերջապես, որպես նախորդ աշխատությունների ամփոփում, 1992 թ. լույս է տեսնում Լ. Խաչերյանի ծավալուն երկհատորյակը[7]:

Միշտ չէ, որ կարելի է համաձայնել Լ. Խաչերյանի պնդումներին՝ ինչպես և ինքը չէր նեղվում Ն. Ադոնցի, Գ. Ջահուկյանի և այլ գիտնականների հետ վիճելուց, սակայն ակներև է, որ բնագրերի նոր հրատարակություններն առաջադրում են նոր խնդիրներ: Այսպես, օրինակ, ունենալով Մագիստրոսի և Երզնկացու բանաքաղների քննական բնագրերը, մենք կարող ենք ճշտել Ն. Ադոնցի վերականգնած հին մեկնիչների հատվածների սահմանները, ինչին կնպաստի նաև Դավթի մեկնության առկայությունը: Կարելի է նաև ավելի ճշգրիտ գնահատել մեկնիչների՝ աղբյուրները մեջբերելու եղանակները և այլն: Փոփոխության ենթակա են նաև ուշ դարաշրջանի քերականական մեկնությունների փոխառնչության մասին պատկերացումները: Մի խոսքով, Լ. Խաչերյանի հրապարակումները չեն նշանավորում հետազոտությունների վերջնակետը, այլ բարձրացնում են դրանք մեթոդական նոր մակարդակի:

Այսօր, այսպիսի հարուստ պատմություն ունեցող բնագիր հրատարակելիս, անշուշտ պետք է հաշվի առնել նախորդ քննությունների արդյունքները: Ամենաէական դիտողությունները մենք փորձելու ենք արտացոլել ծանոթագրություններում, ավելացնելով դրանց անհրաժեշտ տեղեկություններ այս կամ այն մասնավոր խնդրի ուսումնասիրության արդի վիճակի վեբերյալ: «Առաջաբանի» հայերեն թարգմանության շնորհիվ վերացվեց, համենայնդեպս հայագետների համար, գրաբարյան մեջբերումների ըմբռնման խնդիրը, բայց կարիք եղավ ծանոթագրությունների բաժին տեղափոխել մի քանի հատվածներ, որոնք ուղղված էին ռուս ընթերցողին և իմաստավորված էին գրքի միայն ռուսերեն բնագրում: Հունարեն մեջբերումները նույնպես թարգմանված են և բերվում են հունարեն հատվածներից առաջ՝ քառակուսի փակագծերում: Ռուսերեն թարգմանությամբ մեջբերված հայ մեկնիչների հատվածները փոխարինվել են դրանց գրաբարյան բնագրերով: Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստի» և դրա հայ մեկ-

[1] Եսայի Նչեցի, Վերլուծութիւն քերականութեան, Երևան, 1966:

[2] Վարդան Արևելցի, Մեկնութիւն Քերականի, Երևան, 1972:

[3] Առաքել Սիւնեցի, Յաղագս Քերականութեան համառատ լուծմունք, Լոս Անճելըս, 1982:

[4] Յովհաննէս Երզնկացի, Հաւաքումն մեկնութեան Քերականի, Լոս Անճելըս, 1988:

[5] Յովհաննէս Ծործորեցի, Համառատ տեսութիւն Քերականի, Լոս Անճելըս, 1984:

[6] Գրիգորի Մագիստրոսի Մեկնութիւն Քերականի, տե՛ս Լ. Գ. Խաչերյան, Գրիգոր Պահլավունի Մագիստրոս. Կյանքն ու գործունեությունը, Լոս Անճելըս, 1987, էջ 357- 464:

[7] Լ. Գ. Խաչերյան, Հայ լեզվաբանության առաջացման պատմությունը և քերականագիտական միտքը V-XVI դարերում, հատ.1-2, Լիզպոն, 1992:

նիշների բնագրերը լուսանկարված են 1915 թ. հրատարակությունից՝ հատկապես Ն. Ադոնցի մեջբերման համակարգը և քննական ապարատը ճշտությամբ պահպանելու նպատակով: Ցավոք, մենք ստիպված էինք հրաժարվել քննական ապարատի լատիներեն նշումները թարգմանելու մտադրությունից, քանի որ դա շատ էր բարդացնում հատորի կառուցվածքը[1]: Մեր նպատակից դուրս էր նաև Ադոնցի հրատարակած բնագրերի վերստին քննությունը. դա առանձին ուսումնասիրության խնդիր է, որի լուծումը հնարավոր չէ ակնկալել մոտ ապագայում:

1. Դավթի «Մեկնության» հայտնաբերված բնագրի մասին տե՛ս ստ, էջ 433: - Էջ XIII:

2. Խոսքն, անշուշտ, բերված շարքի՝ միայն վերջին երկու հեղինակների հարաբերության մասին է: - Անդ:

3. "Схолия" բառը թարգմանելիս մենք օգտագործեցինք հին հայկական մատենագրության մեջ ընդունված «լուծմունք» բառը՝ ուսումնական, դպրոցական մեկնությունը մեկնողական այլ ժանրերից տարբերելու նպատակով: Լուծմունքների հեղինակը հայ միջնադարյան աղբյուրներում կոչվում էր «վերլուծող» (տե՛ս, օրինակ, Վենետիկի թիվ 1334 ձեռագրի հիշատակարանը), սակայն մենք ստիպված էինք հրաժարվել այս անվանումից՝ հնարավոր թյուրիմացություններից խուսափելու համար: Այնուամենայնիվ, կարծում ենք, դրա հիման վրա կարելի է ստեղծել «վերլուծագրություն» (схолиография) եզրույթը՝ համապատասխան գործունեությունը և լուծմունքների ամբողջ զանգվածը անվանելու համար: - Էջ XIV:

4. Իհարկե, «պատվի», և ո՛չ ժամանակագրական իմաստով: Դիոնիսիոսից շատ առաջ էլ եղել են բազմաթիվ «քերականներ», այսինքն՝ բանասերներ, որոնք ուսանողների համար մեկնում էին դպրոցական կանոնում պարփակված դասական բնագրերը, առաջին հերթին՝ Հոմերոսի վեպերը: Այս աշխատանքի շնորհիվ կուտակվել էին պահելի քանակությամբ լեզվական և տեքստաբանական-գրականագիտական դիտարկումներ, որոնք հետզհետե սկիզբ տվեցին տարբեր տեսությունների, մասնավորապես՝ խոսքի մասերի մասին ուսմունքի: Դիոնիսիոսն իր նախորդներից տարբերվում է նրանով, որ նա առաջինը համակարգված քննության ենթարկեց ոչ թե երևույթները, այլ մասնագիտական հասկացությունները, իհարկե, մտքում իբրև հացեատեր ունենալով բացառապես հույն ընթերցողին: Սակայն ինքը սկզբունքը (ըստ էության, «ներածականի» սկզբունքը) այնքան հաջող էր ընտրված, որ ձեռնարկը, համապատասխան փոփոխումներով, ընդունվեց նաև օտար մի-

[1] Ն. Ադոնցի հրատարակած Մովսեսի և Անանուն, ինչպես և Գ. Ջահուկյանի հայտնաբերած Դավթի մեկնությունների բնագրերը 2005 թ. վերատպվեցին «Մատենագիրք Հայոց» մատենաշարում (հատ. Ե, Անթիլիաս-Լիբանան, 2005, էջ 1165-1187, 1195-1208, 1219-1238)՝ Լ. Հովհաննիսյանի «Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստի» («Արուեստ Դիոնիսեայ Քերականի») առաջին մեկնիչները» նախաբանով (էջ 1163-1165): Մովսեսի և Անանունի բնագրերի՝ Ն. Ադոնցի կազմած քննական ապարատը վերարտադրված է ամբողջությամբ, նույնպես առանց լատիներեն նշումների թարգմանության:



ջավայրում (տե՛ս L. Kohn, Διονύσιος ὁ Θρᾷξ, **PWRE**, **Erste Reihe**, 9. **Halbband**, Stuttgart, 1903, S. 977-983): - Էջ XV:

5. Խորագիրը, թերևս, հեղինակայինը չէ (L. Kohn, ibidem): - Անդ:

6. Ն. Ադոնցի մոտ սխալմամբ «Պոլեմոն»: Սխալը նկատել է Ս. Ժերեևը: - Անդ:

7. «Ստուգաբանություն» բառն այստեղ պետք է հասկանալ իր հին իմաստով՝ իբրև «ձևաբանություն»: - Անդ :

8. Δύσκολος նշանակում է «դժվար», «խրթին»: - Անդ :

9. Գ. Ուլիգի մշակած բնագիրը հրատարակվել է չորս մասից բաղկացած Grammatici Graeci վեցհատորյակի կազմում (Leipzig, Teubner, 1867-1910): Նոր ժամանակներում հավաքածուն մի քանի անգամ վերահրատարակվել է, վերջին հրատարակությունը տե՛ս Grammatici Graeci, recogniti et apparato critico instructi, Hildesheim, Georg Olms Verlag, 1979: I,1 – Dionysii Thracis Ars grammatica, ed. G.Uhlig; (I,2 – լույս չի տեսել ); I,3 – Scholia in Dionysii Thracis Artem grammaticam rec. A. Hilgard; II, 1-3 – Apollonii Dyscoli quae supersunt rec. R.Schneider et G.Uhlig; III, 1-2 – Herodiani Technici reliquiae coll. A.Lentz; IV,1-2 – Theodosii Alexandrini Canones, Georgii Choerobosci Scholia, Sophronii Alexandrini Excerpta rec. A. Hilgard:- Անդ:

10. Դիոնիսիոսի աշխատությունը իսկապես մեծ ազդեցություն գործեց ոչ միայն հնում, այլև իր նշանակությունը պահպանեց ընդհուպ մինչև նոր եվրոպական լեզուների ուսումնական քերականությունների ձևավորումը: Սակայն «Քերականական արվեստի»՝ բուն իմաստով թարգմանությունը վկայված է, բացի հայկականից, միայն ասորական մատենագրության մեջ: Այս թարգմանությունից պահպանված հատվածը երեք գրչագրերի հիման վրա, լատիներեն թարգմանությամբ և հունարեն նախագաղափար օրինակի վերականգնմամբ հրատարակեց Ա. Մերքսը (**A. Merx**, Historia artis grammaticae apud Syros, Leipzig, 1889 [Abhandlungen für die Kunde des Morgenlandes hrsg. Von der Deutschen Morgenlandischen Gesellschaft, IX Bd., № 2], Cap. II: Interpretatio antiquissimae grammaticae syriacae ex graeco Dionysii libro confectae, SS. 9-28): Ի դեպ, ձեռագրերից մեկում (Cod. Berolinensis Sachau, 226), թարգմանությունը վերագրվում է Հովսեփ Հուզայային, Մծբնի հռչակավոր դպրոցի առաջին դպրապետ՝ Նարսեհի կրտսեր ժամանակակցին և գործակցին (**A. Vööbus**, History of the School of Nisibis, Louvain, 1965 [CSCO, vol. 266, Subsidia, t. 26], pp. 160-161): Եթե դա այդպես էր (Ա. Վըըբուսը պնդում է, որ դա միայն արևելյան ասորիների ավանդություն է, որը արևմտյաններին կողմից չի հաստատվում), ապա ասորերեն թարգմանությունը գրեթե ժամանակակից է հայերենին:

Եվրոպական քերականության, հատկապես նոր լեզուների քերականական ավանդության համար վճռորոշ եղավ այն ազդեցությունը, որ կրել են Դիոնիսիոսից հռոմեացի քերականները: Այսպես, Վարրոնը փոխ էր առնում նրա սահմանումները, «Արվեստին» ծանոթ լինելու բազմաթիվ հետքեր են նկատվում մի շարք քերականների, այդ թվում նաև Ռեմմիոս Պալայմոնի և Դոնատոսի գործերում, վերջապես Պրիսկիանոսը թարգմանաբար մեջբերում է Դիոնիսիոսից ամբողջ դրվագներ (**L. Kohn**, Ibidem): - Էջ XVI:

11. Հարցի պատմության ակնարկը տե՛ս Ա. Ն. **Մուրադյան**, Հունաբան դպրոցը..., էջ 17-28: Արդի պատկերացումները «հունաբան» հոսանքի մասին ներկա-

յացված են Գ. Ս. Մուրադյանի աշխատություններում. «Գիրք պիտոյից», Երևան, 1993, էջ 9-14; «Հունաբենի ազդեցությունը դասական շրջանի թարգմանություններում», ՊԲՀ, 2005, № 2, էջ 189-209 և «Հունաբան դպրոցի խնդիրներ», ատենախոս. բան. գիտ. դոկտ. , Երևան, 2005, Առաջաբան: - Էջ XVII:

12. Այս թարգմանություններին նվիրված է ստվարածավալ գրականություն, որի վերջին տեսությունը տե՛ս О. С. Вардазарян, Филон Александрийский в восприятии армянского средневековья. К вопросу об истоках традиции. Ереван: Издательский дом "Лусабац", 2006: - Անդ:

13. Խոսքը հատկապես Եղիշեի, Ղազար Փարպեցու և Մովսես Խորենացու մասին է: «Հունաբան» լեզվի նմանակման երևույթը հանգամանորեն նկարագրել է Գ. Ս. Մուրադյանը («Պիտոյից գրքի» ոչ թարգմանական մասերի լեզուն և հայ հեղինակների հունաբանությունները, տե՛ս «Աշտանակ». հայագիտական պարբերագիրք, Գ, Երևան, 2000, էջ 99-122 ): - Անդ:

14. Այժմ Մաշտոցյան Մատենադարան (=ՄՄ) 2382, որում, այլ նյութերի հետ մեկտեղ, զետեղված են Դավթի «Յաղագս հասարակաց շաղաշարաց» և Մամբրե Վերծանողի «Դատումն քերդածաց» հատվածները: - Էջ XVIII:

15. Այժմ՝ ՄՄ 2380, գրության թվականը՝ 1635.: - Էջ XX:

16. Այժմ՝ ՄՄ 2381, գրության թվականը՝ 1631: - Էջ XXI:

17. Այժմ՝ Վենետիկի 1369: - Էջ XXVI:

18. Այժմ՝ Վենետիկի 1074, ԺԴ դար կամ ավելի հին: - Էջ XXVII:

19. Այժմ՝ Վենետիկի 1233, ԺԵ դար: - Անդ:

20. Այժմ ՄՄ 3917: - Էջ XXIX:

21. Այժմ՝ Վենետիկի 1334, ԺԷ դար: - Անդ:

22. Այժմ՝ Վենետիկի 1388, 1293 թ.: Հիշատակարանը հրատարակել է նաև Ա. Ս. Մաթևոսյանը (Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԳ դար, Երևան, 1984, էջ 709-713): - Էջ XXX:

23. Համաձայն իր նախորդների սխալ պատկերացմանը՝ Ն. Աղոնցը չի տարբերում Հովհաննես Երզնկացի Պլուզին Հովհաննես Երզնկացի Ծործորեցուց: Մինչդեռ նրանք տարբեր քերականական մեկնությունների, այլ ոչ թե միևնույն երկի ընդարձակ և համառոտ տարբերակների հեղինակներն են: - Անդ:

24. Ակնարկվում է 1289-1293 թթ. ընթացքում Եգիպտոսի սուլթանի՝ դեպի Կիլիկիա կատարած արշավանքներն ու ավերածությունները: - Էջ XXXI:

25. Աղավաղված «տամպլիեր» («տաճարական») և «ոսպիտալիեր» («հյուրընկալ ասպետ»):- Էջ XXXII:

26. Խոսքը 1291 թ. մայիսի 18-ին մամլյուկների կողմից խաչակրաց ռազմական նշանավոր հենակետ Աքայի գրավման մասին է: - Անդ:

27. Այժմ՝ Վենետիկի 1394, ԺԶ դար: - Էջ XXXIV:



28. Այժմ՝ Վենետիկի 1256, 1654-1656 թ., բազմաթիվ քերականական նյութեր պարունակող ժողովածու: - Էջ XXXV:

29. Այժմ՝ Վենետիկի 1396: - Անդ:

30. Այժմ՝ Վենետիկի 1389: - Անդ:

31. Այժմ՝ Վենետիկի 1391, ԺԴ-ԺԵ դարեր: - Էջ XXXVI:

32. Այժմ՝ Վենետիկի 1395: - Անդ:

33. ԺԳ-ԺԴ դարեր, Մաշտոց: - Անդ:

34. Այժմ՝ Վենետիկի 1406, ԺԴ դար: Ն. Ադոնցի Առաջաբանում սխալմամբ՝ Վենետիկի 294, որը պարունակում է Գրիգոր Նյուսացու երկերը: - Անդ:

35. Այժմ՝ Վենետիկի 1407, 1350-1415 թթ.: - Էջ XXXVII:

36. Այժմ՝ Վենետիկի 1408, ԺԵ դար: - Անդ:

37. Այժմ՝ Վենետիկի 1599, ԺԸ դար: - Անդ:

38. Այժմ՝ Վենետիկի 206, Ճառընտիր: - Էջ XXXVIII:

39. Տե՛ս Յովհաննէս Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 147-158: Վերահրատարակվել է՝ Վենետիկ, 1953, էջ 171-183 և «Մատենագիրք Հայոց» մատենաշարում, հատ. Ե, էջ 1243-1249: - Անդ:

40. Իրականում այս մատյանն ընդօրինակվել է XIX դ.՝ այժմ անհայտ 1725 թ. ձեռագրից: - Անդ:

41. Բնագիրը վերահրատարակել է Մ. (Է.) Շիրինյանը (տե՛ս «Էջմիածին», 2004, հուլիս-օգոստոս, էջ 89-91) ՄՄ 1879, թթ. 281ր-284ր գրչագրի հիման վրա: Տարընթերցումները նշում ենք ստորև: Զարմանալի է, որ Ն. Ադոնցը ծանոթ չէր «Գիրք պատճառաց»-ի այս օրինակին. դեռևս 1902 թ. այն նկարագրվել է Մ. Տեր-Մովսիսյանի կողմից (М. Тер-Мовсесян, История перевода Библии на армянский язык, СПб., 1902, с. 225-238, особ. 226): - Անդ:

42. *յերեւել* : - Էջ XXXIX:

43. *+ [առաքելոց]:* - Անդ:

44. *աշխարհ*: - Անդ:

45. *Մեսրովր:* - Անդ:

46. *միաբանութիւն*: - Անդ:

47. *այնպէս:* - Անդ:

48. *յօղատր էր:* - Անդ:

49. *առնլոյն:* - Անդ:

50. *Մեսրովբայ:* - Անդ:

51. *ժողովեալ:* - Անդ:

52. *ղնեն:* - Անդ:

53. *Մեսրովբ:* - Էջ XL:

54. + [*սկսեալ յՍռակացն Սողոմոնի, զՀին և զՆոր կտակարանս*]: - Անդ:

55. չիք: - Անդ:

56. *Եզնկանն:* - Անդ:

57. *հարկաւորի:* - Անդ:

58. + *և:* - Անդ:

59. + [*և զխաչին լոկ ի զաւրութենէ Աստուածն բանի դաւղանցէին*]: - Անդ:

60. *զսքանչելի:* - Անդ:

61. *մինչ:* - Անդ:

62. *պատասխան:* - Անդ:

63. *յաստուածուստ:* - Անդ:

64. *գործնառութեան:* - *Էջ* XLI:

65. *սարսեմ:* - Անդ:

66. *Հեթևն:* - Անդ:

67. *Մովսէսի:* - Անդ:

68. *յասելն:* - Անդ:

69. *իմաստութիւնն:* - Անդ:

70. *աստուածարանն:* - Անդ:

71. *կտակարանքս:* - Անդ:

72. *որպէս:* - Անդ:

73. *զաստուածն:* - Անդ:

74. Այժմ՝ Վենետիկի 1231, ԺԵ դար: - Էջ XLIII:

75. Այժմ՝ Վենետիկի 879: - Էջ XLIV:

76. Այժմ՝ Վենետիկի 1413: - Էջ XLV:

77. Այժմ՝ Վենետիկի 1220, ԺԳ դար: - Անդ:

78. Այս տեսակի գրվածքների մասին տե՛ս Պ. Մ. Պողոսյան, Դավիթ Անհաղթի «Եօթնազրեանքի» գիտական և պատմական արժեքը, տե՛ս «Դավիթ Անհաղթը՝ Հին Հայաստանի մեծ փիլիսոփան», ժողովածու, Երևան, 1983, էջ 534-549: - Էջ XLVI:



79. Այժմ՝ Վենետիկի 1260, ԺԷ դար: - Էջ XLVII:

80. Այժմ՝ Վենետիկի 1248, 1617 թ.: - Անդ:

81. Այժմ՝ Վենետիկի 1256, 1654-1656 (ՌՃԳ-ՌՃԵ) թթ.: - Էջ XLIX:

82. Խոսքը, թերևս, այժմյան ՄՄ 4066 ձեռագրի մասին է (1283 թ., գրության վայրը՝ Անավարզա, գրիչ՝ Կոստանդին, Ստեփանոս, անանուններ): - Անդ:

83. Տե՛ս վերը՝ ծան. 22: - Էջ LI:

84. Խոսքը Մխիթար Այրիվանեցու ինքնագիր՝ ճոխ բովանդակություն ունեցող Ճառընտրի մասին է (այժմ՝ ՄՄ 1500): - Էջ LII, ծան. 1:

85. Հողի իգական սեռի եզակի թվի հայցական հոլովն է: - Էջ LIII:

86. Բացականչական մասնիկ է, որ գործածվում է կոչական հոլովի հետ: - Անդ:

87. Որքան մեզ հայտնի է, այս բնագիրն առայժմ չի հրապարակվել: - Էջ LVII:

88. Խոսքը Հովհաննես Երզնկացի Պլուզի «Հավաքման» մասին է: - Էջ LXIII:

89. Այժմ՝ ՄՄ 866, ԺԴ դար: - Էջ LXIV, ծան. 1:

90. Խոսքը Հովհաննես Երզնկացի Ծործորեցու «Համառօտ լուծմունք»-ի մասին է (տե՛ս ծան. 22): - Էջ LXV:

91. Անշուշտ, վրիպում է. Գլաձորի դպրոցի կամ վարդապետարանի հիմնադիրը Եսայիի ուսուցիչ Ներսես Մշեցին էր: - Անդ:

92. Միջին հայերենի՝ արաբական ծագում ունեցող այս բառը նշանակում է «զրույց, զրուսանք, մանր գիտելիք», տե՛ս Հր. Աճառյան, Արմատական բառարան, հատ. Բ, էջ 231, նաև Փ. Անթաբյան, Վարդան Արևելցի, գիրք Ա, Երևան, 1987, էջ 110: - Էջ LXVI:

93. Հիշատակարանը բերվում է ըստ Ս. Ճեմճեմյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց մատենադարանի Մխիթարյանց ի Վենետիկ, հատ. 5, Վենետիկ, 1996, ս. 136 (№ 1220): - Էջ LXVIII:

94. Խոսքը Հեթումյան արքայատոհմի հիմնադիր Հեթում I-ի (1226-1269) մասին է: - Էջ LXIX:

95. Այժմ՝ Վենետիկի 1231, ԺԵ դար: - Էջ LXX:

96. Այս «պատճառն», ամենայն հավանականությամբ, պետք է վերագրել Դավթին, բայց ոչ Անհաղթին, այլ պատճառագիրներից մեկին՝ կամ Դավիթ Քոբայրեցուն և կամ Հակոբ Կլայեցու ավագ աշխատակցին (կամ նույնիսկ ուսուցչին)՝ Դավիթ Խլմշածին: - Էջ LXXII:

97. Ն. Արոնցի բնագրում թյուրիմացաբար՝ «*առաջին* դեմքի»: - Էջ LXXIV:

98. *οι* - *υ* անցումը հունարենում պայմանավորված էր իտացիզմի (ձայնավորների նեղացման) ընթացքով, որը պետք է զուգորդվեր նաև *η* - *ι* տեղաշարժով: Դա նշանակում է, որ իբրև անմիջական փոխառություն կենդանի հունարենից,

*ποιητικῶς* բառը կհնչեր, եթե ընդունենք Ն. Ադոնցի ենթադրությունը, իբրև «պիտի-կոս», և ո՛չ «պետիկոս»: - Էջ LXXVI, ծան. 1:

99. *ἱστορία* բառը, որ օգտագործում է իր սահմանման մեջ ($1_{14\text{-}15}$) Դիոնիսիոս Թրակացին, հին հունարենում նշանակում էր ոչ միայն «պատմություն» արդի իմաստով, այլև առհասարակ «հետազոտություն», «հետազոտության արդյունքների շարադրություն», «երկասիրություն», և որպես այդպիսին, իր իմաստով մերձենում էր *արժակ* հասկացությանը՝ ի հակադրություն բանաստեղծության: - Էջ LXXVII:

100. Տե՛ս ծան. 7: - Էջ LXXVIII:

101. Մերոդիոսի բնագրի հետ համեմատությունը պայմանավորված է նրանով, որ այն աղբյուր է ծառայել Եզնիկի մեջբերված տեղիի համար: - Նույն, ծան. 1:

102. *ոյն*-ը համապատասխանում է «հատկություն, ունակություն» նշանակող *ἕξις* բառին: - Էջ LXXXII:

103. Տե՛ս Նեմեսիոսի փիլիսոփայի Եմեսացւոյ Յաղագս բնութեան մարդոյ, Վենետիկ, 1889: - Էջ LXXXV, ծան. 1:

104. Դավիթ Հռոմեացու և Դավիթ հյուպատոսի նույնացման խնդիրը կարոտ է լուրջ հիմնավորման: - Էջ LXXXVI:

105. Բնագիրը հրատարակվում է այնպես, ինչպես այն բերվել է Ն. Ադոնցի գրքում: Դրա քննական հրատարակությունը տե՛ս Յովհաննէս Երզնկացի, Հաւաքումն, էջ 81-86: - Էջ LXXXVII:

106. Խոսքը Սեպուհ լեռան մոտ (Երզնկայից ոչ հեռու) գտնվող Սուրբ Մինաս ճգնարանի մասին է (տե՛ս Գ. Խ. Ստեփանյան, Երզնկա. հնագույն դարերից մինչև մեր օրերը, Երևան, 2005, էջ 220): - Էջ LXXXVIII:

107. Վարդան Արևելցու մեկնությունների այս նույն առանձնահատկությունից հետագայում օգտվեց Լ. Ս. Խաչիկյանը՝ Եղիշեի «Արարածոց մեկնության» բնագիրը վերականգնելու համար (տե՛ս Լ. Ս. Խաչիկյան, Եղիշեի «Արարածոց» մեկնությունը, Երևան, 1992): - Էջ XCII:

108. Թեև կարելի է ենթադրել, որ Քերականը (ինչպես և Հռոմը Դավթի մեկնությունում) ինքը Դիոնիսիոսն է: - Էջ XCIV:

109. Տե՛ս սատ, էջ 425-427: - Նույն, ծան. 2:

110. Տե՛ս Յովհաննէս Երզնկացի, Հաւաքումն մեկնութեան Քերականի, էջ 222-223: - Էջ XCVII:

111. Ըստ հայտնաբերված Դավթի մեկնության, կատակերգության սահմանումը հնչում է իբրև *«Իսկ կատակերգութիւնք, որ են արարուածք քերդողացն ռմանց յանդիմանութիւն և [ռմանց] յաւժարութիւն, որ և պրաաս բազում ունի յինքեան. աշխարհաւրէնն՝ զի ամենեցուն յայտնի լինիցի»* (Մեկնութիւն Քերականի, էջ 248): - Էջ CII:



112. Հայ մշակույթի անխոնջ հովանավոր պարոն Հովհաննեսի մասին տե՛ս Գ. Խ. Ստեփանյան, նշվ. աշխ., էջ 144-148: - Էջ CIX:

113. Տե՛ս ծան. 9 : - Էջ CXVI:

114. Ռուսերեն բնագրում «Հելիոդորոս» անունը Ն. Ադոնցը ծանոթագրում է հետևյալ կերպ. «Հունարեն անունների և բառերի ռուսերեն տառադարձությունը աչքի է ընկնում զարմանալի անհետևողականությամբ, որը գալիս է նախևառաջ ըն-թերցման երկու համակարգերից՝ մի կողմից, հին ռուսական դպրության մեջ ընդուն-ված բյուզանդական և մյուս կողմից՝ արևմտաեվրոպական կամ էրազմյան: Այսպես, օրինակ, *Ἡλιόδωρος* ըստ բյուզանդական ընթերցման հնչելու է որպես Илиодор, իսկ ըստ Էրազմի՝ Гелиодор, եթե բանձր հագագն արտահայտել «г»-ի միջոցով, այլ ոչ զեղչել, ինչն ավելի ճիշտ կլիներ: Լատինական ձևերը կարող էին հաշտեցնող հիմք ծառայել տառադարձության ընդհանուր կանոնը մշակելու համար: Մենք, սակայն, ստիպված ենք ենթարկվել քիչ թե շատ ընդունված, թեև անհետևողական, իսկ երբեմն նույնիսկ սխալ տառադարձություններին»: Ն. Ադոնցի նշված անհետևո-ղականությունը պայմանավորված է նրանով, որ ռուսերենը փոխառություններ է կա-տարել հունարենից տարբեր ժամանակներում և տարբեր աղբյուրներից: Հնագույն փոխառյալ նյութը՝ որ ռուսերեն է ներթափանցել անմիջապես կենդանի հունարենից, իր վրա է կրում բյուզանդական և արդի հունարենի արտասանության կնիքը (դասա-կան բանասիրության մեջ արտասանության այս ոճը ընդունված է անվանել «ռեյխ-լինյան», դրա կողմնակից՝ հոլանդացի բանասեր Իոհաննես Ռեյխլինի անունով): Մինչդեռ արևմտաեվրոպական գիտությամբ միջնորդված փոխառությունները հնչում են այնպես, ինչպես ենթադրաբար դրանք պետք է արտասանվեին դասական դարաշրջանի հունարենում (այս արտասանության տեսակը կրում է իր մշակողի՝ Էրազմ Ռոտտերդամցու անունը): - Նույն:

115. Ինչպես իրավացիորեն նկատում է Ս. Ժերեյևը, *καταλείπω* բայից ա-ծանցված գոյականը կլիներ *κατάλειψις*. Դա այդպես է դասական հունարենի հա-մար: Սակայն «կոյնե» և միջնադարյան հունարենում «իտացիզմի» (ձայնավորների նեղացման) հետևանքով *κατάληψις* և *κατάλειψις* ձևերը հավասարապես կար-տասանվեին «կատալիփսիս»: Հետևաբար, կխախտվեր և բառերի ուղղագրությունը՝ այնպես, որ դրանք շփոթելու հնարավորություն կառաջանար: - Էջ CXVIII:

116. Ռուսերենում հաջորդում է. «կախարդության տարբեր տեսակները»: - Էջ CXIX:

117. «Գլուխ»՝ *κεφάλαιον* ասելով, հույն մեկնիչները հասկանում էին և՛ ներա-ծությունների, որպես մեկնողական տեսակի, պարտադիր լուսաբանվող կետեր, և՛ այդպիսի լուսաբանման արդյունքում ստացած՝ բնագրի թեմատիկ միավորներ: - Էջ CXX:

118. Ինչպես շտկում է Ս. Ժերեյևը՝ ոչ թե «օդը», այլ «ձայնը»: - Էջ CXXIII:

119. Ս. Ժերեյևը նկատում է, որ այստեղ ոչ մի հակասություն չկա՝ Բյուզանդիոն քաղաքը գտնվում էր հին Թրակիայի տարածքում: - Նույն:

120. Տե՛ս Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն Եկեղեցւոյ յեղեալ յասորւոյն ի հայս, պարզաբանեալ նոր թարգմանութեամբ ի յոյն բնագրէն ի ձեռն Հ. Աբրահամ վ. Ճարեան ի Մխիթարեանց, ի Վենետիկ, 1877:- Անդ, ծան. 1:

121. Հունարեն բնագիրը տե՛ս **Ad. Busse**, Davidis Prolegomena et in Porphyrii Isagogen commentarium (Commentaria in Aristotelem Graeca, Bd. XVIII, T.II, Berlin, 1904, pp. 80-219): Ն. Ադոնցի օգտագործած հայերեն բնագիրն էր՝ Կորիւն Վարդապետ, Մամբրէ Վերծանող, Դաւիթ Անյաղթ, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833: - Էջ CXXV, ծան.:

122. Ռուսերեն բնագրում ավելացված է «բառացի թարգմանությամբ»: - Էջ CXXVI:

123. Այստեղ Ն. Ադոնցը թույլ է տալիս անհարիրություն, որն առաջին անգամ նկատել է Ն. Աղբալյանը («Արարատ», 1919, էջ 68). անպայման չէ, որ թարգմանիչը համամիտ լինի թարգմանվող հեղինակի հետ: 5-րդ գլխում, սակայն, Ն. Ադոնցը նրբացնում է իր կշռադատության տրամաբանությունը: - Էջ CXXVII:

124. *Վերծանութիւն*՝ հունարեն *ἀνάγνωσις* բառի բառապատճենումն է. *ἀνά* = *վեր*, իսկ *γνῶσις* բառի համար վերցվել է «ծանել», այսինքն «ճանաչել» բայի արմատից ածանցված «ծանութիւն» ձևը: Այս ստուգաբանությունն է, որ ակնարկում է Դավիթը, բացատրելով այն իբրև «վերստին ճանաչում»: - Էջ CXXVIII:

125. Նոննոսի Լուծմունքի հրատարակությունը տե՛ս A. Manandian, Die Scholien zu fünf Reden des Gregor von Nazianz, Zeitschrift für armenischen Philologie, I, 1903, SS. 220-300, Marburg, 1903: - Էջ CXXIX, ծան.1:

126. Բառացի՝ *մաշված*: - Էջ CXXXI:

127. «Հոմերոս» և «ընկեր» բառերը հունարենում պատկանում են թերման միևնույն տեսակին: - Էջ CXXXII:

128. Ռուսերեն բնագրում ավելացված է ՝ «ճշգրիտ թարգմանությամբ»: - Էջ CXXXIII:

129. Ավելի հավանական է հակառակը. «քերդող» ասելով, Դավիթն իր մտքում ունի *ποιητής* («բանաստեղծ»), իսկ «չարագիր» ասելով՝ *συγγραφεύς* («արձակագիր»): Խոսքն այն մասին է, որ հույները կրթությունը սկսում էին բանաստեղծների, առաջին հերթին՝ Հոմերոսի ընթերցմամբ, իսկ Դիոնիսիոսը, ինչպես և նրա ուսուցիչ Արիստարքոսը, հայտնի էր իբրև Հոմերոսի մեկնիչ: - Անդ:

130. Այս պնդումը համոզիչ չէ: Խոսքը պարզապես տարբեր տեսակի բանաստեղծություններ կարդալու տարբեր եղանակների մասին է: - Էջ CXXXV:

131. Ն. Ադոնցի մոտ սխալմամբ՝ «Դիոնիսիոս». սխալը նկատել է Ս. Ժերելևը: - Էջ CXXXVI:

132. Ս. Ժերելևը առարկում է Դավթի առավելությունը հույն մեկնիչների համեմատ, վկայակոչելով իր համոզմամբ ավելի հեղինակավոր միջնադարյան աղբյուրը (Etymologicum Magnum), որը տալիս է «ողբերգության» և «նոխազերգության»



փոխառնչության հետևյալ բացատրություն. «Շատ հաճախ երգչախմբերը կազմված էին սատիրներից, որոնց «նոխազներ» էին անվանում»: - Անդ:

133. Դավթի «Մեկնության» ամբողջական բնագրում սույն տեղին նույնպես բավարար իմաստ չի տալիս. «Իսկ խանդաղատականն կամ առ սիրելիս երևի և ծնողաց՝ առ մանկունս և այսպես ընդ նմին, եթէ նոյնպիսի տեղի ինչ դիպեսցի յընթեռնուլն» (Դաւիթ Քերական, Մեկնութիւն Քերականի, էջ 249): - Էջ CXXXVIII:

134. Սույն տեղին անավարտ հատվածի տպավորություն է թողնում: Եթե առաջին համեմատությունը ցույց է տալիս արտահայտության նույնությունը, ապա երկրորդի դեպքում հույն մեկնիչը փորձում է մեկնաբանել *ἕξεις*՝ «հատկություններ», «ունակություններ» բառի կիրառությունը տվյալ համատեքստում: Դիոնիսիոսի հայերեն բնագիրը նույն բառը փոխադրում է «ոյնք» ձևով: Ըստ երևույթին, Ն. Ադոնցը պետք է ենթադրեր, որ Դավիթը, իր մեկնության մեջ փոխարինելով այս բառը «ունակացեալ արուեստն» կամ «ունակութեան արուեստն» (տե՛ս Դաւիթ Քերական, էջ 249) արտահայտությամբ, ևս մտնում է իր՝ հունարեն լուծմունքների հետ ծանոթությունը: - Անդ:

135. Կ. Կոստանյանց, Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910: - Էջ CXLII, ծան. 1:

136. Մեջբերվում է ըստ «Փիլոնի Եբրայեցւոյ Ճառք թարգմանեալք ի նախնեաց մերոց, որոց հելլէն բնագիրք հասին առ մեզ», Վենետիկ, 1892: - Էջ CXLV, ծան. 1:

137. Ռուսերեն բնագրում ավելացված է «և մենք այդպես էլ թարգմանում ենք»: - Էջ CXLVII, ծան.1:

138. Հունարեն առոգանաբանության համաձայն՝ խոսքի տևողությունը չափվում է նվազագույն՝ կարճ ձայնավորի տևողությամբ, որ կոչվում է «ժամանակ»՝ *χρόνος:* Սակայն, թարգմանության մեջ հնարավոր թյուրիմացությունից խուսափելու համար, նախընտրում ենք օգտագործել գրաբարյան «ամանակ» նույնիմաստ եզրույթը: - Էջ CXLIX:

139. Գ. Ջահուկյանի հայտնաբերած բնագիրը հաստատում է այս հատվածի՝ Դավթին պատկանելը, բայց փոքր-ինչ այլ խմբագրությամբ. *«Տի նա և նա<յ>ի* [հրատարակված է *նա ի ի*] *բնութիւն իմանի իբր թէ խոնաւացոյն, և արուեստ ունի զհամբառնալն և զնուազեալն, իբր թէ հողմն՝ յեղեզանէ»*: Այս մեկնաբանումը չի առնչվում ո՛չ Ն. Ադոնցի մեջբերած Աստվածաշնչյան տեղիին, ո՛չ էլ որևէ քերականական օրինակների: Խոսքը «նայ» ձայնավորների՝ երաժշտական տոնն ընդունելու և փոխելու հատկության մասին է, ինչով դրանք նմանվում են շնչին՝ «հողմին», որ փչվում է սրինգի կամ շվիի, կամ այլ փողային գործիքի միջով: - Էջ CL:

140. Առաջին, Հ. Զոհրապի հրատարակությունը տե՛ս «Մովսիսի Քերթողահաւր Նախակրթութիւն հռետորական ասացեալ Գիրք պիտոյից», Վենետիկ, 1796: Ն. Ադոնցը, սակայն, հավանաբար օգտվել է հետևյալ հրատարակությունից՝ «Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք», Վենետիկ, 1843, կամ 1865: Վերջին քննական հրատարակությունը տե՛ս «Գիրք պիտոյից», աշխատ. Գ. Ս. Մուրադյանի, Երևան, 1993: - Անդ, ծան. 1:

141. Այս հատվածը, ըստ Գ. Ջահուկյանի հրատարակած «Մեկնության», պատկանում է Դավթին: - Էջ CLI:

142. Ռուսերեն բնագրում ավելացված է. «որ նշանակում է "վանկ"»: - Էջ CLII:

143. «Փաղ-առութիւն» բառը կազմվել է իբրև հունարեն *συλ-λαβή*-ի բառապատճենում. *συν* նախածանցի (*συλ*-ը դրա առնմանված տարբերակն է) համարժեք ընտրվել է «փաղ»՝ «փաղել» («փակել, շրջափակել, շրջապատել, ամփոփել, պարփակել») բայի արմատը, իսկ *λαμβάνω*՝ «վերցնել, ստանալ» բայի *λαβ* արմատն, իր հերթին, թարգմանվել է համապատասխան՝ «առնել» բայի «առ» արմատով: - Անդ:

144. Տե՛ս Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ Ժամանակականք երկմասնեայ, աշխատասիրութեամբ Հ. Մկրտիչ վրդ. Աւգերեանց, մասն Ա, Ժամանակագրութիւն պատմական, մասն Բ, Քրոնիկոն Կանոն, Վենետիկ, 1818: - Անդ, ծան. 2:

145. J.Karst, Die Chronik des Eusebius aus dem armenischen übersetzt [GCS, 20], Leipzig, 1911: - Անդ, ծան. 2:

146. Այս դեպքում սեռը՝ գոյականի ձևի անփոփոխ մնալու պարագայում որոշվում է միայն արական (*ό*) կամ իգական (*ή*) սեռի հոդով: - Էջ CLVII:

147. Դավթի «Մեկնության» մեջ ասված է. *«Բայց* տրականդ *լսի* թխբական *և զի ոչ լսի հաւաստի ի մերումս, որ և ի Հռոմին յայտնի, տրական ձայնիւ յայսմ անուան առաքեալ. յորոց* ցուցականն *յառաքականէն ըստ երկուս դիմաց. յորժամ առաքեսցի ոք առ ոք յումեքէ, զհեռաւորն նշանաւոր բանիւ ցուցանել և զմաւտաւորն երկին տեսութեամբ»* (Մեկնութիւն Քերականին, էջ 257): Թեև դրվագի իմաստն այդքան էլ պարզ չէ, այնուամենայնիվ կարելի է տեսնել, որ «ցուցականն» այստեղ կարող է և չնշանակել որևէ հոլովի անվանում: - Էջ CLIX:

148. Ն. Ադոնցի մոտ սխալմամբ՝ «հոմանիշը»: - Էջ CLXII:

149. [Այնոցիկ, որ ի] Լինելութիւն խնդրոց և լուծմանց գիրք, տե՛ս «Փիլոնի Եբրայեցւոյ Մնացորդք ի Հայս», աշխատասիրությամբ Հ. Մկրտիչ վրդ. Ավգերյանց, Վենետիկ, 1826: - Էջ CLXIII:

150. Ի դեպ, հոլանդացի գիտնական Յո. Վայտենբերգը, ելնելով հունարենի և հայերենի պատմական հնչյունաբանությունից, փորձում է ապացուցել, որ այս բառը իր վկայված հնչյունական տեսքով չէր կարող հայտնվել աղբյուրներում VI դ. վերջից վաղ (տե՛ս **Jos J. S. Weitenberg,** Chronology of the Armenian դալապր "sword" in Dionysius Thrax, տե՛ս «Աշտանակ». հայագիտական պարբերագիրք, Գ, Երևան, 2000): - Անդ:

151. *μετοχή* «դերբայ» գոյականը հունարենում առաջացել է *μετέχω* բայից, որը նշանակում է «մասնակից, հաղորդ լինել»: - Էջ CLXVI:

152. Առաջին ձևը՝ ուղղական հոլով է, համապատասխան՝ արական սեռի հոդով, երկրորդը՝ կոչական է, օ՜ կամ ո՜վ բացականչությամբ: - Էջ CLXVII:

153. «Ներում» ձևը հանդիպում է նաև Թեոնի «Նախակրթությունների» հունարեն չպահպանված վերջնամասում. «եւ առ սակաւ սակաւ յառաջ անցանելով



այսպէս՝ զամենայն ճառեցելոցն բուռն հարցուք. համանգամայն սպասեալ զգուշասցուք եւ զասացեալ զգիտս եւ զմեկնութիւնս ըստ քանի յեղանակս *ներում* յաղագս վերծանութեան, որպէս յառաջագոյն ասացի» («Թեովնեայ Յաղագս ճարտասանական կրթութեան», աշխ. Հ. Մանանդյանի, Երևան, 1938, էջ 179): Մ. Պատիյոնը և Ջ. Բոլոնյեզին (Aelius Théon, Progymnasmata, Texte établi par M. Patillon, avec l' assistance pour l'Arménien de G. Bolognesi, Paris, 1977, p.106) վերականգնում են ἐνῆν՝ անդեմ ἔνεστι կամ ἔνι («հնարավոր է») բայի անցյալ անկատարը: Նույն կերպ, թերևս, պետք է հասկանալ սույն ձևի կիրառությունը Տիմոթեոս Կուզի «Հակաճառության» թարգմանությունում: - Էջ CLXVIII:

154. Տե՛ս ծան. 121: - Էջ CLXXIII:

155. Ն. Ադոնցը օգտվել է հայերեն բնագրի առաջին հրատարակությունից՝ «Կորիւն վարդապետ, Մամբրէ Վերծանող, Դաւիթ Անյաղթ, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833»: Քննական բնագիրը կազմվել է Երևանի Մատենադարանի հինգ գրչագրերի հիման վրա, որոնցից հնագույնները՝ XIII դարի են, տե՛ս «Սահմանք իմաստասիրութեան». համահավաք քննական բնագիր. թարգմ. ռուսերեն, առաջաբանը և ծանոթագր.՝ Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1960: Նույն բնագիրը առանց քննական ապարատի վերահրատարակվեց «Մատենագիրք Հայոց» մատենաշարում (հատ. Գ, Անթիլիաս-Լիբանան, 2004, էջ 147-196), Ս. Ս. Արևշատյանի նախաբանով: Հունարեն բնագրին հայերենը համեմատել և անհրաժեշտ շտկումներ է մտցրել Գ. Ս. Մուրադյանը, որի սիրալիր բանավոր տեղեկության համաձայն, «Սահմանքի» հայերեն թարգմանությունն՝ հունարեն բնագրի համեմատ իրոք պակասավոր է և ցույց է տալիս բազմաթիվ այլ տարբերություններ: - Անդ:

156. Ն. Մառը իրավամբ առարկում է «դասական» և «ասորաբան» հայերենի՝ նախածանցով բառեր կազմելու օգտին. «Ն. Ադոնցն, անշուշտ, չի կարող մտածել, որ *ապիկար, ընթեռնում, ապականեմ, պատերազմ, պատուաստ* և մի քանի տասնյակ այլ բառեր գոյացել են հունարենի ազդեցության ներքո», (տե՛ս Н. Марр, նշվ. գրախոսականը, էջ 318): - Էջ CLXXIV:

157. Ն. Ադոնցը չի տարբերում նախդիր/նախադրությունը, որն առանձին խոսքի մաս է, և նախածանցը, որը ձևույթ է: Հունարեն քերականությունը տալիս է որոշ առիթներ այդպիսի շփոթության համար, քանի որ նախդիրների և նախածանցների ձևերը համընկնում են: - Անդ:

158. Н. Марр, Иоанн Петрицонский, грузинский неоплатоник XI-XII века (ЗВО, т. XIX, СПб., 1909, сс. 53-113), в сб.: Н. Я. Марр, Кавказский культурный мир и Армения, Ереван, 1995. - էջ CLXXVI, ծան. 1:

159. Ն. Ադոնցի այս տեսակետին դժվար է համաձայնել: Ավելի հավանական է, որ թարգմանության «նյութականության» աստիճանը պայմանավորված է թարգմանվող բնագրի բարդությամբ՝ մասնագիտական եզրերով և բանաձևերով հագեցած լինելով, և այս տեսակետից Դավիթ փիլիսոփայի գրվածքների թարգմանությունները իրենց «նյութականությամբ» չեն զիջում մեկնվող՝ Արիստոտելի կամ Պորփյուրի բնագրերին: - Էջ CLXXVII:

160. Այս կշռադատության տրամաբանական գիծը հստակեցման կարիք ունի: Եթե «մեծ հեղինակության» երկը «նյութական» սկզբունքով թարգմանվեր հայերեն,

և հետո միայն, հայկական հողի վրա, օժտվեր մեկնություններով, ապա կարելի կլիներ ենթադրել, որ թարգմանությունը «ճյութական» էր, հայ մեկնիչների ազատությունը չսահմանափակելու համար: Տվյալ դեպքում, սակայն, և մեկնվող, և մեկնող բնագիրը թարգմանական են, և՝ թարգմանված միևնույն մեթոդով: - Անդ:

161. Աստ, էջ CXVIII: - Էջ CLXXVIII:

162. Տե՛ս ծան. 115: - Անդ:

163. Խոսքը սահմանումների կամ տեսական հրահանգների մասին է (տե՛ս Գիրք Պիտոյից, աշխատ. Գ. Ս. Մուրադյանի, Երևան, 1993, էջ 13): - Էջ CLXXX:

164. Անանիայի Շիրակացւոյ Մնացորդք բանից, աշխ. Ք. Պատկանյան, ՍՊբ., 1877: - Անդ, ծան. 1:

165. Հ. Հ. Մանանդյան, Դավիթ Անհաղթի խնդիրը նոր լուսաբանությամբ, Վաղարշապատ, 1904: - Էջ CLXXXII, ծան. 1:

## ԳՐԱԿԱՆ ՆՇՄԱՐՆԵՐ

Լեզվական - ուղղագրական

(էջ 307)

Գրված է 1904 թ. Ս. Պետերբուրգում: Առաջին անգամ տպագրվել է իր իսկ՝ Աղոնցի կողմից հրատարակված «Բանբեր գրականության և արվեստի» հանդեսում (Գիրք Բ, Ս. Պետերբուրգ, 1904, էջ 129-154): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Հոդվածը գրված է նշանավոր գրող, մանկավարժ, լեզվաբան Ղազարոս Աղայանի (1840-1911) գրական-մանկավարժական գործունեության 40-ամյակի առթիվ, որի հանդիսությունները տեղի են ունեցել 1902 թ. մայիսին: - Էջ 307:

2. Ակնարկում է այն իրողությունը, որ Անտոն Գարագաշյանն իր աշխատությունները գրում էր գրաբարախառն արևմտահայերենով: Դրա լավագույն օրինակը Գարագաշյանի «Քննական պատմութիւն Հայոց» բառահատորյակն է (Թիֆլիս, 1895): - Էջ 309:

3. Ղ. Աղայանը հեղինակ է նաև լեզվաբանական ու քերականագիտական բազմաթիվ հոդվածների, տառադարձությանն ու ուղղագրությանը նվիրված ակնարկների, ինչպես օրինակ՝ «Հայկական հնչյունների մասին», «Հայոց լեզու», «Սուրբ լեզու», «Հայոց գրերի մասին», «Երկբարբառները մեր լեզվում» և այլն, ինչպես նաև «Ուսումն մայրենի լեզվի» առաջինից չորրորդ տարվա դասագրքերի (ունեցել են տասնյակ վերահրատարակություններ):



Նմանատիպ այդ աշխատությունները ամփոփված են Ղ. Աղայանի Երկերի քառահատոր ժողովածուում (Երևան, 1962-1963): - Էջ 330:

4. Լ. Շանթ, Ես-ի մարդը. դրամա հինգ արարով, տե՛ս «Բանբեր գրականության և արվեստի», Գիրք Բ, 1904, էջ 1-48: - Էջ 332:

## Գրախոսություն - Հ. ՏԵՐ-ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, ՆՈՐ ԲԱՌԳԻՐՔ ՀԱՅԵՐԵՆ ԳՐԱԲԱՐԵ՝ ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԼԵԶՎԻ, ՌՈՒՍԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ: ՌՈՍՏՈՎ, 1898, 575 էջ

(էջ 333)

Գրված է 1898 թ. Վիեննայում: Լույս է տեսել «Հանդես ամսօրյա»-ում (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1898, № 10-11, էջ 323-327): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Տպագրիչ, գրող, խմբագիր Հ. Տեր-Աբրահամյանը (Հովհաննես դպիր Տեր-Աբրահամյան Տեր-Հովհաննիսյանց, Հովհան Տեր-Աբրահամյան) իր ժամանակին հայտնի էր հատկապես «Տեղագրութիւն Անի քաղաքին հանդերձ տեսարանացոյց պատկերօք» (Թեոդոսիա, 1863, 1867), «Պատմութիւն Խրիմու» (մասն 1-2, Թեոդոսիա, 1865), «Համառօտ պատմութիւն Հայոց» (Թեոդոսիա, 1870, 1874, 1880) աշխատություններով: - Էջ 333:

2. Նկատի ունի Գաբրիել Երեցփոխյանցի (Ирицпухов) "Русско-армянский словарь" (Թիֆլիս, 1854; տե՛ս նաև երկրորդ հրատարակությունը՝ Թիֆլիս, 1876) երկասիրությունը: - Անդ:

3. Տե՛ս «Առձեռն բառարան հայկազեան լեզուի», Վենետիկ, 1846, 2-րդ տպագրություն՝ Վենետիկ, 1865: - Էջ 334:

4. Տե՛ս Աղեքսանդր Խուդաբաշյան, Բառարան ի հայկական լեզուէ ի ռուսաց բարբառ, հատ. 1-2, Մոսկվա, 1838, տե՛ս նաև Բ տպագրությունը, Երևան, 1986, 1987: - Անդ:

5. Ն. Աղոնցի թարգմանությունը ևս անհաջող է: Բառը պատճենում է հունարեն *εὐκρασία* եզրը, որը ռուսերենում ունի միայն հնատճ համարժեք՝ благорастворение (воздухов): - Էջ 337:

6. Ընդգծված բացատրությունները հավանաբար վերաբերում են բուն շարադրանքում բաց թողնված բառերի: - Էջ 338:

7. Գրախոսությունում ռուսերենի ուղղագրական սխալները Հ. Տեր-Աբրահամյանինն են: - Էջ 340:

## Գրախոսություն – ՆՈՐ ՀԱՅԵՐԵՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**(D. ART. ABEGHIAN, Neuarmenische grammatik, 1936)**

**(էջ 341)**

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Վեմ» ամսագրում (տե՛ս «Վեմ», Փարիզ, 1936, № 4, էջ 46-51): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Մանուկ Աբեղյանը աշխարհաբարի քերականությանն ու ուղղագրությանը նվիրված բազմաթիվ աշխատությունների հեղինակ է: Այդ աշխատանքներն ամփոփված են նրա «Հայոց լեզվի տեսություն» (Երևան, 1931) արժեքավոր ուսումնասիրության մեջ: Հավանաբար, Ն. Ադոնցն այստեղ նկատի ունի հենց այս աշխատությունը: - Էջ 341:

2. Ակնարկում է Հրանտ Ասատուրի «Աշխարհաբարի գործնական քերականություն» դասագիրքը: - Անդ:

3. Նկատի ունի Արսեն Այտընյանի «Քննական քերականություն աշխարհաբառ կամ արդի հայերեն լեզվի» աշխատությունը (Վիեննա,1866: Բ. տպագրություն, Երևան, 1987), որը մասնագետների կարծիքով, հայոց ժամանակակից լեզվի ուսումնասիրության հիմքն է կազմում (Էդ. Աղայան): - Էջ 344:

4. Խոսքը գրող, մանկավարժ, հասարակական գործիչ Օհան Կարոյի [Հովհաննես Կարապետյան (1890-1933)] մասին է: - Էջ 345:

5. «Մ. Աբեղյանի ապօրինի զավակը» - Ն. Ադոնցը վճռականորեն հանդես է եկել Մ. Աբեղյանի ուղղագրական այն բարեփոխումների դեմ, որոնք 1922 թ. սկսյալ քաղաքացիության իրավունք ստացան Խորհրդային Հայաստանում: Աբեղյանական ուղղագրության վերաբերյալ Ն. Ադոնցի կարծիքը տե՛ս աստ (էջ 411-424): - Էջ 346:

## ՏԵՂԵԿԱԳԻՐ Ն. ԱԴՈՆՑԻ. «ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԵՐԵՆ ԼԵԶՎԻ» ԳՈՐԾԻՆ

(էջ 348)

Գրված է 1934 թ. օգոստոսի 23-ին Բրյուսելում: Գրությունը պատասխանն է Ադոնցին հղված Երուսաղեմի Հայոց պատրիարք Թորգոմ արքեպ. Գուշակյանի նամակի, որով պատրիարքը խնդրել է գիտնականի կարծիքը Հր. Աճառյանի «Պատմություն հայերեն լեզվի», աշխատությունը «Սրբոց թարգմանչաց-Դուրյան» գրական մրցանակի ներկայացնելու վերաբերյալ: Լույս է տեսել «Սիոն»-ում (տե՛ս «Սիոն», 1934, № 12, դեկտեմբեր, էջ 382-385): Արտատպվում է այս հրատարակությունից:



1. 1934 թվականը Ադոնցի ստեղծագործական ու անձնական կյանքի ամենածանր տարիներից էր: Առիթը կնոջ՝ Օլգա Ադոնց-Հովնաթանյանի երկարատև ու հոգսաշատ հիվանդությունն էր: Ադոնցը չափազանց ծանրորեն է տարել այս իրողությունը՝ պատճառ հոգեկան ու բարոյական անասելի տվայտանքների: «Շատ ծանր օրեր եմ անցնում,- գրում է նա Թորգոմ պատրիարքին,- տարին բոլորեցի գրեթե կոշմարի մեջ: ...Կինս հիվանդ է ... Ես մենակ եմ, ամբողջ հոգսը վրաս է, որ մեծ արգելք է զբաղումներիս... Մնացած եմ շվարած, բեկված հոգով և մոլորած գլխով» (տե՛ս Պ. Հ. Հովհաննիսյան, Թորգոմ պատրիարք Գուշակյան և պրոֆեսոր Նիկողայոս Ադոնց, «Հասկ», հայագիտական տարեգիրք. Նոր շրջան. Է-Ը տարի, 1995-1996, Անթիլիաս, 1997, էջ 472, ծան. 22): - Էջ 348:

2. Խոսքը Հր. Աճառյանի «Հայոց լեզվի պատմություն» ուսումնասիրության մասին է: 1934 թ. հոկտեմբերի 28-ին Երուսաղեմի Հայոց պատրիարքարանի Գրական հանձնաժողովը, ի նկատի ունենալով Աճառյանի երկասիրության անուրանալի արժեքը, ինչպես նաև «բազմահմուտ քննիչ, մեծանուն բանասեր պրոֆ. Ն. Ադոնցի երաշխավորությունը», միաձայն որոշում է ընդունել 1934 թ. համար «Սրբոց թարգմանչաց-Դուրյան» գրական մրցանակը (120 պաղեստինյան ոսկի լիրա) հատկացնել Հր. Աճառյանի աշխատությանը (տե՛ս «Սիոն», 1934, նոյեմբեր, էջ 360): Հր. Աճառյանի այդ աշխատությունը լույս տեսավ ավելի ուշ՝ Երևանում՝ երկու հատորով (տե՛ս Հր. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, հատ. 1-2, Երևան, 1940, 1951: - Անդ:

3. Հայոց լեզվի հետագա ուսումնասիրությունը փայլուն կերպով ապացուցեց Ն. Ադոնցի այս հիանալի կռահումը: Հր. Աճառյանի կողմից փոխառություններ հռչակված շատ բառեր այժմ համարվում են բնիկ հայ բառեր, իսկ մի մասն էլ՝ ընդհանուր փոխառություններ: - Էջ 349:

4. Հ. Ս. Նիբերգի պահլավագիտական ուսումնասիրություններն ամփոփված են «Hilfsbuch des Pehlevi. Pehleviwörter und Glossar» ուսումնասիրությունում (Uppsala, 1931): - Անդ:

5. Հին հայերենի և շրջակա ու հեռու լեզուների ուսումնասիրության, դրանց համադրման ու բաղդատման ուղղությամբ հատկապես արժեքավոր են Գ. Բ. Ջահուկյանի ուսումնասիրությունները [տե՛ս «Хайасский язык и его отношение к индоевропейским языкам» (Ереван, 1964), «Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները» (Երևան, 1970), «Հայոց լեզվի պատմություն. նախագրային շրջան» (Երևան, 1987) և այլն]: - Էջ 351:

6. Ստեփանոս Սյունեցու այս հույժ կարևոր վկայությունը պահպանվել է նրա «Մեկնութիւն քերականին» երկում, որ հրատարակել է Ն. Ադոնցը. «Եւ դարձեալ զքո լեզուիդ գիտելն զրովանդակ զբառսն զեզերականս, որպէս զԿորճայն եւ զՏայեցին եւ զԽութայինն եւ զՉորրորդ Հայեցին եւ զՍպերացին եւ զՍիւնին եւ զԱրցախայինն. այլ մի՛ միայն զմիջերկրեայսն եւ զոստանիկսն, այլեւ ազատակարք ի պատմութիւնսն, զի մի՛ վրիպեսցի անընդել գոլով լեզուացն» (տե՛ս աստ, էջ 187): - Անդ:

7. Տե՛ս Նորայր Բյուզանդացի, Կորյուն վարդապետ և նորին թարգմանությունք, Տփղիս, 1900, էջ 16-35: - Էջ 352:

# ԱԲԳԱՐ ՊԱՅԱՋԱՏԻ «ԽԱԼԴԵՐԵՆ ԼԵԶՎԻ ԲԱՆԱԼԻՆ»

(էջ 353)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Անահիտ» հանդեսում (տե՛ս «Անահիտ», Փարիզ, 1936, սեպտեմբեր-հոկտեմբեր, № 5, էջ 3-7):

Գրության շարժառիթ է ծառայել Աղոնցին ուղղված Ա. Չոպանյանի թղթակցությունը՝ կարծիք հայտնելու Աբգար Պայազատի «Խալդերեն լեզվի բանալին» (Երևան, 1935) գրքի վերաբերյալ: Ստորև ներկայացնում ենք Չոպանյանի այդ գրությունը, որը կարող է պատկերացում տալ, թե ինչու Աղոնցի նման բազմազբաղ ու գիտական հստակ սկզբունքներ ունեցող պատմաբանը անդրադարձել է նման մի գրքի արժեվորմանը.

«Պարոն Աբգար Պայազատ, զոր վերջին անգամ Երևան գտնված միջոցիս անձամբ ճանչնալու հաճույքն ունեցա, աշխարհիս ամենեն համակրելի մարդերեն մեկն է: Ուտիացի (Աղվանից երկրի) հայ մըն է, որ, բացի «Խալդերեն լեզվի բանալին» տիտղոսով բանասիրական աշխատութենեն, հրատարակած ունի նաև ու կշարունակե ցարդ հրատարակել սիրուն պատմըվածքներ: Իրեն հետ ունեցած տեսակցությանս միջոցին, ան ինծի խոսեցավ ուտիերեն լեզվին վրա, որ հայերենեն բոլորովին տարբեր լեզու մըն է (ինչպես է, օրինակի համար, պասքերու լեզուն Ֆրանսայի մեջ), և ըստ իրեն՝ չինարենի կամ ճարոներենի հետ որոշ կապ ունի (?). ըսավ թե այդ լեզվի քերականության, համաձայնության, բառամթերքին վրա ընդարձակ աշխատություն մը պատրաստելու վրա է, և ցույց տվավ ինծի բավական ստվար ձեռագիր մը զոր ավարտելու համար դեռ հավելվածական ջանքի մը պետք ուներ: Անկից ի վեր, խալդական արձանագրությանց ինչ-ինչ ընթերցումներն քիչ շատ ծանոթանալով նախահայկական այդ հին լեզվին, կարծեր է նույնություն գտնել այդ լեզվի և ուտիերենի միջև, և այդ թեզն է, որ պաշտպաներ է «Խալդերեն լեզվի բանալին» գրքույկին մեջ, որ, հայերեն և ռուսերեն շարադրված, լույս տեսավ քանի մը ամիս առաջ: Այս աշխատությունը, ոչ մասնագետի մը, այլ «սիրող» բանասերի մը գործն ըլլալով, անշուշտ իր թերությունններն ունի. բայց հայտնի լեզվաբան Հրաչյա Աճառյան, որ առաջաբանը գրած է, անոր թերություններեն մեկ քանին մատնանշելով հանդերձ, անոր հիմնական գաղափարը ճիշդ կհռչակե և այդ գաղափարը կհամարե կարևոր գյուտ մը: Հարցը ունենալով զուտ մասնագիտական բնույթ, և ես ըլլալով հեթանոս մը այդ մարզին մեջ, խնդրեցի հմուտ բարեկամես՝ պրոֆ. Ն. Ադոնցեն՝ որ հաճի «Անահիտ»-ին համար գրադատական մը գրել այս աշխատության մասին, զոր՝ հիմնվելով Հր. Աճառյանի հեղինակավոր կարծիքին վրա՝ կներկայացնեի իրեն իբր շահեկան և արժեքավոր գործ մը: Ուզեցի Ադոնցի պես ներհուն բանասերի մը կարծիքն ևս ունենալ այս հարցին վրա և միամտորեն կ'ենթադրեի, որ այդ կարծիքն ալ նպաստավոր պիտի ըլլար, պարունակելով հանդերձ անշուշտ քննադատական մասեր: Շնորհակալությամբ ստացա իր հոդվածը, որ սակայն բոլորովին աննպաստ



կարծիք մը կհայտնե: Առաջին անգամ չէ, որ երկու կարող բանասերներ միևնույն նյութին վրա տարբեր կարծիք կհայտնեն: Խալդերենի և ուտիերենի առնչության հարցը՝ այսպիսով՝ ավելի ևս շահեկան կդառնա, գիտական հրատապ այժմեականության երևույթ մը կստանա: Պ[արոն] Պայազատի գրքեն կարտատպեմ այստեղ,- որպեսզի «Անահիտ»-ի ընթերցողները կարենան համեմատել Ադոնցի կարծիքին հետ,- Աճառյանի գրաբար շարադրված առաջաբանին էական հատվածին աշխարհաբար թարգմանությունը՝

«... Ուտիացի Աբգար Պայազատը, միաժամանակ հմուտ և գիտակ ուտիերեն լեզվի և ոչ էլ անտեղյակ խալդերենի, միանգամայն անկախ կերպով, սույն աշխատության մեջ, մի բոլորովին նոր միտք է երևան հանում, ցույց տալով, որ խալդերեն լեզուն ուտիերենն է: Եվ այս բանը ոչ թե հարևանցի կերպով, այլ չափազանց հավաստի և ճշգրիտ հաստատությամբ ապացուցում է: Իր ենթադրության ստուգությունը ապացուցում են օրինակ այն ստուգությունները՝ 10-14, 57-64-րդ էջերում, խալդերենը և ուտիերենը դեմ առ դեմ: Այս բառերի թիվը 50 հատ է, որոնցից յոթը [**garbi, sidauri** (Այստեղ, ինչպես և Աղոնցի հոդվածին մեջ հիշատակված խալդերեն բառերեն ոմանց s-ը սովորական s-են զանազանելու (շ-ի պես հնչվելու) համար՝ նշան մը ունի վերևը. այդ ձևով s չունենալով, այդ զանազանությունը կուտանք շեղագիր s-ով միայն - Ա. Չ.), **parubi, alsusini, targini, kalubi, ipkulie**]» ինձ թվում են կասկածելի, որովհետև տարբեր են և կամ նշանակությունը անծանոթ է մեզ, իսկ մնացած 49 բառերը երբ միմյանց հետ համեմատվեն, իրար բոլորովին համապատասխան դուրս կգան: Ոչ միայն երկու լեզուների բառերի նմանությունն և իմաստի նույնությունն է, որ զարմանք և սքանչանք է պատճառում մեզ, որովհետև դա դեռ զարմանալի չէ, երբ մեկը մանրակրկիտ կերպով ուշադրության առնի և բառերի կազմությունը քննի, կտեսնվի, որ բայերի բոլոր խոնարհումները նույնն են երկու լեզուներում, ինչպես խալդ. **sidiistuni** կառուցեց և ուրարտ. **sidastene** կառուցեց, շինեց: Արդարև անկարելի է ասել, որ այս բոլորը պատահական է միայն, կամ փոխ է առնված մեկի կամ մյուսի կողմից: Նույնպես շատ կետեր կան, որ անկարելի է մեկնել խալդերենով, բայց մեկնում են ստույգ կերպով ուտիերեն լեզվով, ինչպես խալդ. **arxiuruliani** - ընտանիք կրկնական, որին համապատասխանում է ուտիերեն լեզվով **arxa** - ընտանիք, տոհմ, որից էլ կրկնությամբ **arxiurulux** ցեղն ու մեղը, ազգն ու մազգը:

«Այս բոլորը տեսնելով ու քննելով, համարձակվում եմ անվանել Պայազատի գործը «նորակերտ նորանշան չնաշխարհիկ գործ», ինչպես մեր նախնիքներից մեկն ասել է. և այս ոչ թե վայրապար եմ ասում, այլ գուշակ եմ ուզում լինել, որ իր այս գործը նոր բնեռագիտության անկյունաքարը պիտի լինի»:

Թելադրությունը զոր իր հոդվածին մեջ Ադոնց կներկայացնե պ. Պայազատին, արդեն՝ ինչպես ըսի վերև՝ իրագործված է այս վերջինույն կողմե քանի մը տարիե ի վեր: Պ[արոն] Պայազատի խալդերեն լեզվին նվիրված

մանրամասն աշխատությունը արդեն հանձնված է, ինչպես իմացանք Երևանի թերթերեն, Մելքոնյան հանձնաժողովին, որ զայն պիտի հրատարակե ի մոտո:

Ցանկալի է, որ ուտիերենի և խալդերենի առնչության թեզին վրա, որ շատ հետաքրքրական թեզ մըն է, ուրիշ հայ գիտուններ ալ արտահայտեին իրենց կարծիքը» (Ա. Չ.), տե՛ս «Անահիտ», 1936, № 5, էջ 1-2:

Աղոնցի գրությունն արտատպվում է «Անահիտ»-ի հրատարակությունից:

1. Դիմում է «Անահիտ»-ի խմբագիր Արշակ Չոպանյանին: - Էջ 353:

2. Ուտիերենի և ուրարտերենի հնարավոր խնամության մասին մանրամասն տե՛ս Գ. Տեր-Մկրտչյանի հետևյալ ուսումնասիրությունը՝ «Ուրարտյան բևեռագրերի լեզուն» [«Արարատ», 1893, № 11, էջ 923-934 («Միաբան» ստորագրությամբ), տե՛ս նաև առանձին գրքույկով (Վաղարշապատ, 1893), նաև «Հայագիտական ուսումնասիրություններ», հատ. Ա, Երևան, 1979, էջ 410-419]: - Անդ:

3. Ա. Հ. Սեյսը (1845-1933) առաջիններից էր, որ զբաղվեց ուրարտական սեպագրերի վերծանությամբ: Դեռևս 1882 թ. նա հրատարակեց այն ժամանակներում հայտնի ուրարտական բոլոր 57 արձանագրությունները (տե՛ս A. H. Sayce, The cuneiform Inscriptions of Van, deciphered and translated, London, 1882, տե՛ս նաև սույն դիվանի լրացումները՝ «Journal of the Royal Asiatic Society», London, 1886, vol. XIV; 1894, vol. XX; 1906, vol. XXV; 1911, vol. XXVI): - Անդ:

4. Հր. Աճառյան, Կարծիք իմ (գրաբար), տե՛ս Արգար Պայազատ, Խալդերեն լեզվի բանալին, Երևան, 1935, էջ 5-8: - Անդ:

5. Այժմ վերջնականապես ապացուցված է, որ ուտիերենը պատկանում է իբերակովկասյան լեզվաընտանիքի դաղստանյան ճյուղի լեզգիական խմբին: Ոչ պաշտոնական տվյալներով ուտիերեն խոսողների թիվը տատանվում է 6-7 հազարի միջև (1987 թ.): - Էջ 359:

6. Ղարաբաղի բարբառի ուսումնասիրության ուղղությամբ հատկապես մեծ է Հր. Աճառյանի ավանդը (տե՛ս Հր. Աճառյան, Քննություն Ղարաբաղի բարբառի, Վաղարշապատ, 1901): Ավելի ուշ այդ բնագավառը հատուկ քննության առարկա է դարձել Կ. Դավթյանի համար (տե՛ս Կ. Դավթյան, Լեռնային Ղարաբաղի բարբառային քարտեզը, Երևան, 1966): - Անդ:

7. Նկատի ունի ապագա Ամենայն Հայոց կաթողիկոս Գևորգ Դ Կոստանդնուպոլսեցի Քերեստեճյանին (1813-1882), որը 1844-1858 թթ. եղել է Բուրսայի հայոց հոգևոր թեմի առաջնորդ: - Անդ:



## ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ԳՐԵԼ «ԱՄԵՆ» ԵՎ «ՉԵՂՈՔ» ԲԱՌԵՐԸ

### Ուղղագրական խնդիրներ

(էջ 360)

Գրված է 1930 թ. հունիսի 15-ին Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» օրաթերթի արխիվում: Առաջին անգամ լույս է տեսել «Հայրենիք» օրաթերթում (տե՛ս «Հայրենիք», օրաթերթ, Բոստոն, 1930, 12 հուլիսի, № 5531, էջ 1, 3): Երկրորդ անգամ հրատարակվել է Ստամբուլի «Ազդարար» օրաթերթում («Ազդարար», Ստամբուլ, 1930, 29 հուլիսի, № 1141, էջ 2; 30 հուլիսի, № 1142, էջ 2):

Արտատպվում է առաջին հրատարակությունից:

1. Նկատի ունի իր «Մամիկոնյան իշխանուհին բյուզանդական գահի վրա» ուսումնասիրությունը (տե՛ս «Հայրենիք», ամսագիր, Բոստոն, 1930, №№ 5-8, 10; տե՛ս նաև Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, Երևան, 2006, էջ 281-366): - Էջ 360:

2. Ա. Ղազիկյանը հայերենի ուղղագրությանը նվիրված բազմաթիվ հոդվածներ է տպագրել 1920-1930-ական թվականներին «Բազմավեպ»-ի էջերում: - Անդ:

3. Տպագրական վրիպակ է, պետք է լինի 1824 թ.՝ «Քերականութիւն Դիոնիսիոսի Թրակացւոյ», հանդերձ ծանօթութեամբք եւ բացատրութեամբք ի Յակովբայ Շահանջրպետեան յԵղեսացւոյ, Փարիզ, 1824: Տե՛ս նաև սույնի երկրորդ հրատարակությունը՝ բնագիրը հունարեն, հայերեն և ֆրանսերեն, առաջաբանը և ծանոթագրությունները՝ ֆրանսերեն (Paris, 1830): - Անդ:

4. Տե՛ս աստ, էջ 1-305: - Անդ:

5. Որքան որ մեզ հայտնի է, Ն. Ադոնցն այլևս չի անդրադարձել այս հարցին: - Էջ 363:

6. Ակնարկում է «Հայրենիք» ամսագրի խմբագրության անհարկի միջամտությունը՝ վերը հիշատակված իր հոդվածի ուղղագրությանը: Ադոնցի այս գրության վերաբերյալ տե՛ս նաև հետևյալ գրախոսականը՝ X, Ամէն թե Ամեն. «է»-ով թե «ե»-ով, «Ազդարար», օրաթերթ, Ստամբուլ, 1930, 20 օգոստոսի, №1160: - Անդ:

## ՆՈՐԻՑ «ՉԵՂՈՔ» ԵՎ «ԱՄԵՆ» ԳՐՈՒԹՅԱՆՑ ՄԱՍԻՆ

(էջ 364)

Գրված է 1930 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» օրաթերթի արխիվում: Լույս է տեսել «Հայրենիք» օրաթերթում (տե՛ս «Հայրենիք» օրաթերթ, Բոստոն, 1930, 5 դեկտեմբերի, № 5653, էջ 1, 2; 6

դեկտեմբերի, № 5654, էջ 1, 2; 7 դեկտեմբերի, № 5655, էջ 1, 3; 9 դեկտեմբերի, № 5656, էջ 1, 2; 10 դեկտեմբերի, № 5657, էջ 1, 2): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Տե՛ս Ա. Ղազիկյան, Ո՞րն մեզ է գրել «Չեզոք» և «Ամեն», «Բազմավեպ», 1930, № 9, էջ 357-367: - Էջ 364:

2. Նկատի ունի Ա. Բագրատունու «Հայերէն քերականութիւն ի պէտս զարգացելոց» գիրքը (Վենետիկ, 1852): - Էջ 365:

3. Ակնարկում է Ա. Ղազիկյանի անպատշաճ խոսքերն ուղղված իրեն՝ [«Բագրատունին, Այտընյան, Նորայր (գլխավորները միայն հիշելով), որոնց առջև աշխարհի բոլոր պրոֆեսորները, ընդ որս և պրոֆ. Առոնց, պետք է գլուխ ծռեն խոնարհությամբ և հարգանոք» («Բազմավեպ», 1930, № 9, էջ 360)]: - Էջ 367:

4. Այսինքն՝ հայր Արսեն Բագրատունուն և հայր Արսեն Ղազիկյանին: - Անդ:

5. Նկատի ունի Դավիթ Անհաղթին (տե՛ս Դաւիթ Անհաղթ, Մեկնութիւն Պէրիարմէնիաս գրոցն)՝ Կորիւն վարդապետ, Մամբրէ Վերծանող, Դաւիթ Անյաղթ, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833): - Էջ 372:

6. Նկատի ունի Ստեփանոս Ռոշքյանին (Լեհացի, Ստեփանյան): 30 տարվա (1700-1730) աշխատանքի արդյունք է նրա մեծածավալ «Գանձարան Հայոց լեզվի կամ Բառգիրք Ստեփանյան» հայերեն-լատիներեն անտիպ աշխատությունը, որի ընդօրինակությունները պահվում են Վենետիկի և Վիեննայի մատենադարաններում: - Էջ 374:

7. Խոսքը Գ. Զարբհանալյանի «Պատմութիւն հայերէն դպրութեանց. ի պէտս ուսման ազգային վարժարանաց, Ա. Հին մատենագրութիւն» աշխատության մասին է (Վենետիկ, 1865): - Էջ 377:

8. Խոսքը Յոզեֆ Կարստի (1871-1942) մասին է: Առանձնակի արժեք ունեն նրա «Aussprache und Vocalismus des Kilikisch-Armenischen» (Ստրասբուրգ, 1899) և «Historische Grammatik des Kilikisch-Armenischen» (Ստրասբուրգ, 1901) ուսումնասիրությունները, թեև նաև վերջինիս հայերեն թարգմանությունը (Երևան, 2002): - Էջ 383:

9. Ակնարկում է Ղազիկյանի արհամարհական, մերժողական վերաբերմունքը արևելահայ բանասերների նկատմամբ «Արևելահայ և... ուղղագրություն ... Ո՞րքան տարօրինակ, ո՞րքան հակոտնյա՝ ողնդծնյա բան. մեր լեզվին վրա ո՛չ շնորհք թողուցին և ո՛չ ուղղություն այդ արևելահայք, և մեր պրոֆ[եսոր]ը (այսինքն՝ Ն. Առոնցը - Պ. Հ.) մի ի նոցանե՝ ուղղագրության մասին հոդված գրելու կ'ելլե: Խոսքս մոտավոր ախուր անցյալին վրա չէ. հի՞նը ի՞նչ է որ ... Չէ՞ որ Աղայանցներ, Մալխասյանցներ, Աբեղյանցներ նույն նման այլանդակեցին, անճանաչելի դարձուցին մեր սքանչելի լեզուն. ճիշդ նույն շավղին է, որ կհետևի և մեր պրոֆ. Առոնցը» («Բազմավեպ», 1930, № 9, էջ 357):

Սեկ այլ կապակցությամբ, Ղազիկյանը ավելի անպարկեշտ տոնով խորհուրդ է տալիս «Իսկ մենք վերջակետը դնելե առաջ պիտի հորդորեինք՝ եթե ներե պրոֆ. Առոնցը, որ լավ կ' ըլլա՝ երբեք ուղղագրության մասին խոսք չընեն, ոչ ինքը, և ոչ ալ



«գնում է, գալիս է» ըսողներուն ամբողջ ճետը (այսինքն՝ սերունդը - Պ. Հ.), կրավե մեր զմայլելի լեզվին քաշածն իրենց կործանարար, քանդիչ ձեռքերեն (անդ, էջ 367): - Էջ 384:

10. Ա. Ղազիկյանի տերմինաշինական հնարքներից է՝ «ՉԵԶՈՔ բառ գոյություն չունի, և չի կրնար ունենալ: Գրել ՉԵԶՈՔ քըէիքուր ոճիր է, և մոլորության գերադրականը» (անդ, էջ 363): - Անդ:

11. Այս ընդդիմախոսականում Ա. Ղազիկյանը շարունակ անվանարկում է Առոնցին, վիրավորում նրա գիտական, մարդկային ու բարոյական արժանապատվությունը, անվայելուչ բառեր օգտագործում նրա հասցեին, ինչպես օրինակ՝ «տգետ», «զրպարտող», «արգահատելի», «անիրավ», «անհմուտ հայերենի մեջ», «Հայկազյանի (նկատի ունի բառարանը - Պ. Հ.) խորթ բառ», իսկ նրա տեսությունն էլ պիտակավորում՝ «անգիտություն», «խառնափնդոր», «թանձր մոլորություն», «դատարկաբանություն», «թանձր տգիտություն» և նման այլ անպատիվ որակումներով:

Հակառակ Ա. Ղազիկյանի՝ բանավեճելու նման ցածր կուլտուրայի, նկատելի է, թե որքան Առոնցի խոսքը զուսպ է, մտավորական, պարկեշտ ու խոհեմ: Հնարավոր է, որ այս հանգամանքը ազդել է Ա. Ղազիկյանի հետագա կեցվածքի վրա: Առոնցի «Նորից «Չեզոք» և «Ամեն» գրության մասին» հոդվածի առթիվ գրված իր պատասխան խոսքում [«Վերջին խոսքս «Չէզոք» և «ամէն» բառերուն շուրջ» («Բազմավեպ», 1931, № 1, էջ 21-25)] Ղազիկյանը որդեգրել է քիչ ավելի զուսպ ու չափավոր դիմելաձև: - Անդ:

## [«ԳԵՐԵԶՄԱՆ» ԲԱՌԻ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ]

(էջ 385)

Գրված է 1893 թ. Թիֆլիսում: Լույս է տեսել «Արձագանք» օրաթերթում («Արձագանք», Թիֆլիս, 1893, 6 հունվարի, № 3, էջ 2):

Հոդվածը հատկանշական է նրանով, որ այն 22-ամյա Նիկողայոս Առոնցի (Թիֆլիսի ռուսական 2-րդ դասական գիմնազիայի սան) առաջին հրապարակումն է, նրա մուտքը հայագիտության ասպարեզ: Հետաքրքիր է նաև «Առոնց» ազգանվան ձևը: Հայտնի է, որ նա գիմնազիայում է հրաժարվել իր ազգանվան՝ Տեր-Ավետիքով, ռուսականացված ձևից և ստորագրել սկսել որպես Առոնց:

Արտատպվում է այս առաջին հրատարակությունից:

1. Խոսքը հայագետ, Լազարյան ճեմարանի հայոց լեզվի դասախոս Խաչատուր (Քյուչյուկ) Հովհաննիսյանի (1853-1920) մասին է: - Էջ 385:

2. Նկատի ունի ավստրիացի հայագետ, Վիեննայի համալսարանի պրոֆեսոր Ֆր. Մյուլլերի «Kleine Mittheilungen» (տե՛ս «Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes», Band V, Heft 3, Wien, 1891) ուսումնասիրությունը: - Անդ:

3. Տե՛ս «Արձագանք», 1892, 11 դեկտեմբերի, № 144, էջ 3: - Անդ:

4 Խոսքը մանկավարժ, գրող Սամվել Գյուլզադյանի (1830-1912) մասին է: - Անդ:

5. Խ. Հովհաննիսյանը հարկ է համարել առանձին հոդվածով անդրադառնալ Ադոնցի այս թռուցիկ ճկատողությանը և հայտնել իր անհամաձայնությունը [տե՛ս Խ. Հովհաննիսյան, «Գերեզման» բառի ստուգաբանությունը (պատասխան պ[ա-րոն] Ադոնցին), «Արձագանք», 1893, 29 հունվարի, № 12, էջ 12]: Հետաքրքիր է, որ Խ. Հովհաննիսյանին տարօրինակ է թվացել անծանոթ հոդվածագրի ազգանունը և ստիպված է տարակուսել՝ «Ադոնց» թե՞ «Ազոնց»: - Էջ 386:

# ՎԱՂ ՇՐՋԱՆԻ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀԱՅԵՐԵՆՈՒՄ

(էջ 387)

Գրված է 1938 թ. Բրյուսելում: Առաջին անգամ լույս է տեսել «Revue des Études Indo-Européennes» հանդեսում (տե՛ս N. Adontz, Emprunts de haute époque en Arménien, «Revue des Études Indo-Européenne». Bulletin trimestriel publié sous la direction de Vlad Bănăteanu, t. I, pasc, 1, Bucarest, 1938, p. 457-467): Այնուհետև վերահրատարակվել է Ն. Ադոնցի «Histoire d'Arménie» գրքում (Paris, 1946, p. 395-405): Լույս է տեսել նաև հայերեն թարգմանությամբ (Վ. Պ. Սեդրոսյան), որը զետեղվել է Ն. Ադոնցի «Հայաստանի պատմությունը» գրքում (Երևան, 1972, էջ 382-392):

Արտատպվում է այս վերջին հրատարակությունից:

1. Խոսքը վերաբերում է Սարգոն I Աքադացուն (2316-2261): Հայտնի են 2306 թ. Եփրատի հոսանքով վեր՝ դեպի հյուսիս, նրա կատարած արշավանքի մանրամասները, իսկ դեպի Փոքր Ասիա կատարած արշավանքի վերաբերյալ տեղեկությունները կցկտուր են: Սարգոն Աքադացու տերության աշխարհագրական նկարագրությունը վերջերս լույս է տեսել նաև հայերեն թարգմանությամբ (տե՛ս «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», հատ. 1, Երևան, 2007, էջ 50-52): - Էջ 387:

2. Այժմ պատմագիտության մեջ տիրապետում է այն տեսակետը, որ կասիտները լեռնային անասնապահական ցեղեր էին որոնք անհիշելի ժամանակներից ի վեր բնակվում էին Զագրոսի լեռնաշղթայի կենտրոնական հատվածում: Ք. ա. XVIII դարի երկրորդ կեսին նրանք թափանցելով Հյուսիսային Միջագետք՝ 1742 թ. Խաբուր գետի ակունքներից ոչ հեռու ստեղծեցին իրենց թագավորությունը: 1595 թ. նրանք գրավեցին Բաբելոնը և այն հռչակեցին մայրաքաղաք: Կասսիտական հարստությունը գոյատևեց մինչև Ք. ա. 1155 թվականը: - Էջ 393:

3. Հր. Աճառյանը («Արմատական բառարան», հատ. 4, Երևան, 1979, էջ 596) բառը համարում է սարքական փոխառություն: - Էջ 395:



4. Այսօր ապացուցված է, որ ուրարտերենը սեպագիր արձանագրություններում վկայված խուռիերենին մերձավոր ազգակից լեզու է: Սեպագիր ուրարտերենի և հայերենի հետ նրա աղերսակցության մասին տե՛ս Ռ. Իշխանյան, Բնիկ հայերեն բառեր և հնագույն փոխառություններ, Երևան, 1989: Г. Джаукян, Взаимоотношение индоевропейских, хуррито-урартских и кавказских языков, Ереван, 1967, М. Хачикян, Хурритский и урартский языки, Ереван, 1985, և այլ ուսումնասիրություններ: - Էջ 397:

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐԵՎԵԼՔԻ ՌԱԶՄԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԵԶՐԵՐՈՒՄ

## Հուսարներ, տրաբաններ, տեսնակներ

(էջ 398)

Գրված է 1938 թ. Բրյուսելում: Առաջին երկու հասկացությունների՝ «Հուսարներ» և «Տրաբաններ» ստուգաբանությունը պատկանում է Անրի Գրեգուարին, իսկ երրորդինը («Տեսնակներ»)՝ Ն. Ադոնցին: Որոշեցինք Ա.Գրեգուարի ստուգաբանությունը հրատարակել Ադոնցի ճկատողության հետ, նկատի ունենալով այն հանգամանքը, որ դրանք լույս են տեսել միասին՝ մեկ ընդհանուր խորագրի ներքո և բովանդակության առումով աղերսվում են միմյանց:

Հոդվածը լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս H. Grégoire, N. Adontz, Aux confins militaires de L'Orient Byzantin. Hussards, Trabans, Tasnaks, «Byzantion», Bruxelles, 1938, t. XIII, fasc. 1, p. 279-282): Հայերեն թարգմանությունը (Վ. Պողոսյան) կատարվել է այս առաջին տպագրությունից:

1. «Նոր հունարենը չի ընթերցվում» - Ա. Գրեգուարն ակնարկում է միջնադարյան լատինական արտահայտությունը. «Graeca non leguntur» («Հունարեն է՝ անընթեռնելի է»): Քանի որ լատինական արևմուտքում հունարենի իմացությունը միջնադարում նվազել էր, վերծանողները, ընթերցվող ձեռագրերում հանդիպելով հունարեն հատվածին, այսպես էին զգուշացնում ունկնդրողներին և պարզապես բաց թողնում հատվածը: - Էջ 399:

2. Ե՛վ «սեղան» և՛ «բանկ» իմաստները հունարենում արտահայտվում են նույն *τράπεζα* բառով, որից և ածանցվել է *τραπεζίτης*՝ «բանկիր», «դրամափոխ» (ինչպես այս, այնպես էլ նախորդ պարզաբանումը պատկանում է Օ. Վարդազարյանին): - Էջ 400:

# ՀԱՅԵՐԵՆ ՄԻ ՔԱՆԻ ԲԱՌԵՐԻ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(էջ 403)

Գրված է 1937 թ. Բրյուսելում: Լույս է տեսել տեղի Ազատ համալսարանի տեղեկագրում (տե՛ս N. Adontz, Quelques étymologies arméniennes, «Annuaire de L'Institut de philologie et d'Histoire orientales et slaves», tome V, Bruxelles, 1937, p. 5-12): Արևմտահայերեն թարգմանությամբ (Հ. Ապատյան) հրատարակվել է «Սիոն»-ում (տե՛ս «Սիոն», 1938, № 10, էջ 313-316): Տարօրինակ է Ն. Ադոնցի հոդվածի Ապատյանի թարգմանության մեջ տողատակի գիտական ապարատի իսպառ բացակայությունը: Սույն հատորում զետեղել ենք հոդվածի արևելահայերեն թարգմանությունը (Օ. Վարդազարյան), որը կատարվել է բնագրի հիման վրա:

1. Ինչպես նշեցինք (էջ VII-VIII) Ն. Ադոնցի թղթոնում առկա է բազմաթիվ բացակա էջերով մի ընդարձակածավալ ֆրանսերեն «Հայերեն ստուգաբանական բառարան»: Վարանում ենք պնդել, թե բառարանն ամբողջությամբ չի պահպանվել, անհրաժեշտ է առավել ուշադրությամբ ուսումնասիրել առկա նյութը: Այն ինչին մենք կարողացանք ծանոթանալ՝ սերտ աղերս ունի «Հայերեն մի քանի բառերի ստուգաբանություններ» հոդվածում ներկայացված նյութի հետ: Անկասկած է, որ մի ընդհանուր աշխատանքի հատվածներ են, որում կարելի է համոզվել ստորև ընթերցողի ուշադրությանը ներկայացվող ստուգաբանությունների հրապարակումը (թարգմանությունը ֆրանսերենից՝ Օլգա Վարդազարյանի): - Էջ 403:

62. Վրոյր, Պարոյր

Հատուկ անուններ են, որոնց երկրորդ տարրը՝ ավեստերեն raoδa՝ «աճ, հասակ, կեցվածք», պարթևերեն՝ *royr, պարսկերեն՝ rōi՝ «կերպարան, կեցվածք»: Vroyr<*vi-ro-royr ՝ «տղամարդու կեցվածք [ունեցող]» (հմմտ. «առնադէմ»), «քաջ», «խիզախ»: Paroyr<*para-raoδa, որտեղ para նախածանց է կամ para-h՝ «լի», որ հաղորդում է [բարդման] «լիուլի, լիառատ» իմաստը (հմմտ. parō-arejaśtara՝ «ամենաթանկագին»):

63. Արզաւան

Մի հավատացյալի հատուկ անուն է, ավեստերեն՝ arejavan (Jt. 13, 117). areja<*arəg[?], արգ, յ-արգ՝ «պատվավոր, թանկ»:

64. Տաճատ

Հատուկ անուն < *tacat-vohu՝ «արյուն հեղող»:

65. Ռահ

Ինչ-որ գետի՝ հավանաբար Արաքսի անվանում, ավեստերեն raɦha, առասպելական գետ, սանսկրիտերեն rasa՝ ինչ-որ գետի անվանում, հմմտ. 'Ρα, պարսկերեն arang:



66. Արտագերք

Ամրոցի անուն՝ 'Αρταγῆρας<*arta+gēr, gēr<garay, սանսկրիտերեն girai, ավեստերեն gairi՝ «լեռ»:

67. Հոռի

68. Սահմի

Հոռի, Սահմի՝ հայկական տարվա երկրորդ և երրորդ ամիսներն են: Կարծում եմ, որ դրանք բաբելոնական ծագում ունեն՝ [փոխառված լինելով հայերեն], հավանաբար, իրանցիների միջոցով: Իրանական տոմարը, նախ քան դառնալ արեգակնային, լուսնային էր և հենվում էր բաբելոնական հաշվարկին: Փոխառելով տոմարը, պարսիկները փոխարինեցին բաբելոնյան ամիսների անունները սեփական անվանումներով, սակայն չէին կարող հավակնել արմատախիլ անելու բաբելոնյան ամիսների [անունների] գործածումը [ամբողջ] կայսրությունում: Ավելի ուշ տոմարը կրել է մեծ բարեփոխում: Վաղեմի ամիսները վերացվեցին, և դրանց փոխարեն ներմուծվեցին [ամիսներ] Ավեստայի դիցությունների անուններով: Հայերը (և կայսրության հյուսիս-արևելյան այլ հեռավոր մարզերը) խուսափեցին այս տեսակի փոփոխություններից, քանի որ հավանաբար իրենց տոմարը համարում էին ավելի հին, քան Սասանյանների բարեփոխվածը: Ուստի հայերենը պահպանել է մի քանի վաղեմի անուններ, ինչպիսիք են և մեր խնդրո առարկաները: Դրանք ներկայացնում են իրանական տոմարի ամենահին դիմագծերը: Հոռի և Սահմի՝ 2-րդ և 3-րդ ամիսները համապատասխանում են Airu և Samu>sima-nu, բաբելոնական՝ նույնպես 2-րդ և 3-րդ ամիսներին: Իրանական լեզուն պետք է airu արտասաներ իբրև a$^{u}$ru>oru և samu>samu [այսպես Ն. Ադոնցի ինքնագրում – Օ. Վ.]. հայերենում oru դարձել է or>hoŗ և samu>sa$^{h}$m (նույնիսկ այսօր պարսկերեն šāno հայերեն արտասանվում է «շահնա»՝ «սանր»): *Հոռ*-ի սեռական հոլովը *հոռի* է, իսկ *սահմ*-ինը՝ *սահմի*:

69. Արաց

*Արաց*՝ հայկական տոմարի 6-րդ ամիսը, համապատասխանում է բաբելոնական ululu (կամ alalu) 6-րդ ամսին: Բաբելոներեն անունը ոչ այլ ինչ է, եթե ոչ «ուրախության ճիչ»՝ Թամմուզի հարության առթիվ և ի հիշատակ [այս իրադարձության]: Քանի որ հայերի մոտ Թամմուզի հավասարազորը *Արան* էր (կամ *Էրը*, ինչպես [նրան հիշատակում է] Պլատոնը), դա թույլ է տալիս *արաց*-ի մեջ որոնելու *Արա* անունը: Սակայն դժվարություն է հարուցում *արաց*-ի հոգնակի թիվը: (Բաբելոներեն ulula կամ alalu իրանցիներենում պետք է հանգեցներ arara ձևին. արդյո՞ք *արաց*-ը ar(ar)-ի հոգնակիաթիվը չէ:)

70. Արէգ

*Արէգ*-ը՝ 8-րդ ամիսն է: Բաբելոնական տոմարի 8-րդ ամիսը եղել է arax-šamna՝ «ութերորդ ամիս»: Թերևս *արէգ*-ը arax-ն է, ձևափոխված *Արէգ*՝ «արև»-ին (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան Թ/Ա-8):

2. *Ἀρκτοῦρος* ոչ թե «Մեծ Արջ»-ն է, այլ «Արջեպան»՝ «Կառավար» համաստեղության ամենապայծառ աստղը: - Անդ:

3. «Բեղուն» բառի ստուգաբանությունը բացակայում է Ապառյանի թարգմանությունում, որի հետևանքով 14 բառի փոխարեն ներկայացվել է 13 բառի ստուգաբանություն: - Էջ 407:

## ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ ԵՎ ՏԱՌԵՐԻ ԲԱՐԵՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

(էջ 410)

Գրված է 1927 թ. ապրիլի 18-ին Փարիզում: Բնագիրը պահվում է Ե. Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարանի Ստ. Մալխասյանցի ֆոնդում: Առաջին անգամ, խմբագրական երկու ոչ մեծ կրճատումով լույս է տեսել Պ. Հ. Հակոբյանի աշխատասիրությամբ (տե՛ս Պ. Հ. Հակոբյան, Ն. Ադոնցի դիտողությունները հայերենի ուղղագրության և տառերի վայելչության վերաբերյալ, «Պատմա-բանասիրական հանդես», 1967, № 4, էջ 157-168): Երկրորդ անգամ լույս է տեսել Ն. Ադոնցի՝ «Հայաստանի ոսկեհանքը. Փոքր ուսումնասիրություններ» ժողովածուում (կազմել և ներածությունը գրել է Պ. Հ. Հովհաննիսյանը, Երևան, 2006, էջ 145-157):

Գրության շարժառիթ է ծառայել հետևյալը: Հայերենի ուղղագրության ռեֆորմը, որն իրականացվեց 1922 թվականին, տեղիք տվեց զգալի վիճաբանությունների: Խորհրդային Հայաստանի կառավարությունը Գիտության և արվեստի ինստիտուտին հանձնարարեց ստեղծել հատուկ հանձնաժողով՝ հայոց լեզվի ուղղագրության և տառերի ձևի բարեփոխման վերաբերյալ վերջնական նախագիծ պատրաստելու համար:

Հանձնաժողովի կազմած համադրական աղյուսակը (տե՛ս «Տեղեկագիր», ՀՍԽՀ Գիտության և արվեստի ինստիտուտի, Երևան, 1927, էջ 94-96) 1927 թ. փետրվարին ուղարկվեց մի շարք նշանավոր հայագետների, այդ թվում և Ն. Ադոնցին:

Ն. Ադոնցի այս գրվածքը պատասխանն է իրեն ուղղված հանձնաժողովի հրավերի:

Տպագրվում է ինքնագրից:

1. Ուղղագրության և տառերի բարեփոխման հանձնաժողովի կազմում էին Հր. Աճառյանը, Հ. Մանանդյանը, Լեոն, Ստ. Մալխասյանցը, Ա. Խաչատրյանը, Գր. Ղափանցյանը, Ալ. Շիրվանզադեն և ուրիշներ: Հանձնաժողովի գործունեության մանրամասները տե՛ս «Տեղեկագիր Հ. Ս. Խ. Հ. Գիտության և արվեստի ինստիտուտի ուղղագրության և տառերի ձևի բարեփոխության հանձնաժողովի», Երևան, 1927: - Էջ 411:



2. Հանձնաժողովի նախագահն էր Հ. Հ. Մանանդյանը: - Անդ:

3. Ընդգծված ամբողջ հատվածը դուրս է մնացել «Պատմա-բանասիրական հանդեսի» հրապարակումից, կրճատումը պատկանում է խմբագրությանը: - Անդ:

4. Ընդգծվածը դուրս է մնացել առաջին հրատարակությունից: Այս և նախորդ իրողությունների վրա մեր ուշադրությունը հրավիրել է Ա. Գ. Մադոյանը (տե՛ս նրա «Հայագիտության դասականները միասնական ուղղագրության մասին» գրքույկը, Երևան, 2005): - Էջ 421:

5. Այսինքն՝ Ս. Պետերբուրգի: - Անդ:

6. Նկատի ունի Գ. Հովսեփյանցի «Քարտեզ հայ հնագրության» ուսումնասիրությունը (հատ. Գ, Վաղարշապատ, 1913): - Էջ 422:

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԲՆԱԳՐԵՐ

**ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ**

**ԵՐԿԵՐ**

**ՀԱՏՈՐ Գ**

**ՀԱՅԵՐԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ**

Կազմի ձևավորումը՝ **Գ. Վ. Մարիկյանի**
Տեխ. խմբագիր՝ **Վ. Ջ. Բոզոյան**

Սրբագրիչ՝ **Վ. Վ. Դերձյան**
Համ. շարվածքը՝ **Ս. Գասպարյանի**
Համ. ձևավորումը՝ **Ս. Գասպարյանի**
**Ա. Աղուզումցյանի**
**Գ. Գասպարյանի**

Չափսը՝ 60x84 1/6: Թուղթ՝ օֆսեթ: Տպագրություն՝ օֆսեթ:
Հրատ. 38.2 մամուլ, տպագր. 43.0 մամուլ + 1 ներդիր = 40.0 պայմ. մամուլի:
Տպաքանակ՝ 500: Պատվեր՝ 9:

**ԵՊՀ հրատարակչություն, Երևան, Ալ. Մանուկյան 1**

---

**ԵՊՀ տպագրատուն, Երևան, Արովյան 52**

**Գալուստ Կյուլպենկյան հիմնարկության հովանավորությամբ**
**Երևանի համալսարանի հրատարակչությունը**
**լույս է ընծայել հետևյալ գրքերը**

1. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 3, 1998:
2. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 4, 1998:
3. **Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան** - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 5, 2001: (Բառարանը 2002 թ. արժանացել է ՀՀ Նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»):
4. **Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ** - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Վ. Վարդանյանը), 2000 թ.:
5. **Հրաչյա Գաբրիելյան** - Հայկական լեռնաշխարհը, 2000 թ.:
6. **Ալեքսանդր Մարգարյան** - Հայերենի հոլովները, 2000 թ.:
7. Նահապետ Քուչակի բանաստեղծական աշխարհը, աշխատասիրությամբ ակադեմիկոս Հրանտ Թամրազյանի, Եր., 2001 թ.:
8. Շարական (ժողովածու) - Աշխարհաբարի վերածեցին **Ա. Մադոյանը և Գ. Մադոյանը**, 2001 թ.:
9. **Հրաչյա Միրզոյան** - Հովհաննես Մրքուզ Ջուղայեցի, 2001 թ.:
10. **Ռուբեն Ղազարյան** - Միջին գրական հայերենի բառապաշարը, 2001 թ.:
11. **Բաբկեն Հարությունյան** - Մեծ Հայքի վարչա-քաղաքական բաժանման համակարգը ըստ «Աշխարհացոյցի», 2001 թ.:
12. **Վարդան Արևելցի** - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Գ. Թոսունյանը), 2001 թ.:

13. **Գևորգ Մադոյան** - Գրիգոր Անավարզեցին շարականագիր, 2001 թ.:
14. **Գևորգ Աբգարյան** - Հայ տպագրության նախապատմություն, 2001 թ.:
15. **Փայլակ Անթապյան** - Հովհաննես սարկավագ Իմաստասեր, 2001 թ.:
16. **Յոզեֆ Կարստ** - Կիլիկյան հայերենի պատմական քերականություն, 2001 թ.:
17. **Ռաֆայել Սաթնոսյան** - Կուբան ապագայի որոնումներում. իրադարձություններ և դասեր, 2001 թ.:
18. **Խաչիկ Բադիկյան** - Ուսումնական դարձվածաբանական բառարան, 2002 թ.:
19. **Հրաչյա Գաբրիելյան** - Հայոց բնաշխարհը (դասագիրք), 2002 թ.:
20. **Էդուարդ Աղայան** - Լեզվաբանական հետազոտություններ, 2003 թ.:
21. **Արտակ Մովսիսյան** - Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր մշակույթը, 2003 թ.:
22. **Հրաչյա Աճառյան** - Քննություն Կիլիկիայի բարբառի, 2003 թ.:
23. **Պիոն Հակոբյան** - Գիտական ուսումնասիրություններ, 2003 թ.:
24. **Աշոտ Սուքիասյան** - Հայոց լեզվի հոմանիշների բացատրական բառարան (2004 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»), 2003 թ.:
25. **Երջանիկ Գևորգյան** - Հայոց շարժումային լեզվի բացատրական բառարան (Շարժութարան), 2003 թ.:
26. **Հայնրիխ Հյուբշման** - Հայերենի քերականություն, առաջին մաս, Հայերենի ստուգաբանություն, 2003 թ.:
27. **Հայնրիխ Հյուբշման** - Հայագիտական ուսումնասիրություններ, 2004 թ.:
28. **Ալեքսանդր Մարգարյան** - Հայոց լեզվի քերականություն (Ձևաբանություն) 2004 թ.:
29. **Ռամազ Գորգաձե** - Հայերեն-վրացերեն զրուցարան, 2004 թ.:
30. «Ժուռնալ Ազիատիկ» հանդեսի հայագիտական նյութերի ծանոթագրված մատենագիտություն, 2004 թ. (ռուսերեն):
31. **Հրաչյա Աճառյան** - Հայոց պատմություն, հյուսված ընդհանուր պատմության հետ, 2004 թ.:
32. **Յովհաննէս Սարկաւագ Իմաստասէր** - Լուծմունք «Սահմանաց գրոց», 2004 թ.:
33. **Սանդրո Սարդարյան** - Հայաստանը քաղաքակրթության օրրան, 2004 թ.:
34. **Կարէն Իւզբաշեան** - Աւարայրի ճակատամարտից դէպի Նուարսակի պայմանադրութիւնը, 2005 թ.:
35. **Հարություն Դելլալյան** - Ժողովածու, 2005 թ.:
36. **Բախտիար Հովակիմյան** - Հայոց ծածկանունների բառարան, 2005 թ.:
37. **Գառնիկ Անանյան** - Ակնարկներ հայոց հին և միջնադարյան իրապարակախոսության, 2005 թ.:
38. **Վահան Տեր–Ղևոնդյան** – Կիլիկյան Հայաստանը և Մերձավոր Արևելքի արաբական երկրները (1145-1226 թթ.), 2005 թ. (ֆրանսերեն):
39. **Գառնիկ Ստեփանյան** – Երզնկա (Հնագույն դարերից մինչև մեր օրերը), 2005 թ.:
40. **Հրաչյա Աճառյան** - Լիակատար քերականություն հայոց լեզվի համեմատությամբ 562 լեզուների. Իմաստաբանություն, Բառաքննություն, Շարահյուսություն, 2005 թ.:
41. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. 16-րդ հատոր: Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր: Ներածությունը և բնագրերից թարգմանությունները **Արամ Տեր-Ղևոնդյանի**, 2005 թ.:
42. **Սահակ Բազյան** - Խաչատուր Աբովյանը առակախոս-բանաստեղծ և դրամատուրգ, 2005 թ.:
43. **Ռամազ Գորգաձե** - Վրացերեն-հայերեն բառարան, 2005 թ.:
44. **Պավել Շարաբխանյան** - Հանգաբանություն, 2005 թ.:
45. **Ռուբէն Ղազարեան** - Գրաբարի հոմանիշների բառարան, 2006 թ.:
46. Գրիգոր Զօհրապը ժամանակակիցների յուշերում եւ վկայութիւններում: Աշխատասիրութեամբ **Ալբերտ Շարուրեանի**, 2006 թ.:
47. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր, հինգ հատորով, հատոր Ա, Պատմագիտական ուսումնասիրություններ, 2006 թ:
48. **Հ. Պօղոս Գոճանեան** - Ուղեցոյց դասական ուղղագրութեան, 2006 թ.:
49. **Հայկազ Ժամկոչյան** - Հայ ժողովրդի պատմություն, 2006 թ.:
50. Հայ իմայական և ժողովրդական աղոթքներ: Աշխատությամբ **Ս. Հարությունյանի**, 2006 թ.:
51. **Սաթենիկ Գեջյան** - Անի: Մատենագիտություն, 2006 թ.:

52. **Հարություն Մ. Վենետիկյան, Ջերալդ Ա. Ռոսֆիլդ** - Համաշխարհային առևտրի ֆինանսավորում, 2006 թ.:
53. **Շահէ Արքեպիսկոպոս Աճէմեան,** Հայերէն Աստուածաշունչը, 2006 թ.:
54. LA MINIATURE ARMENIENNE - Collection du Matenadaran, 2006 թ., «Նաիրի» հրատարակչության հետ համատեղ
55. Արևելագիտության հարցեր (Հոդվածների ժողովածու, հատոր VI), 2006 թ.:
56. **Հակոբ Սիմոնյան** - Վերին նավեր, գիրք Ա, (1976-1990 թթ. պեղումների արդյունքները), 2006 թ.:
57. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր, հինգ հատորով, հատոր Բ, Պատմա-բանասիրական ուսումնասիրություններ, 2006 թ.:
58. **Լիլիթ Զաքարյան** - Աղջոց սուրբ Ստեփանոս, 2007 թ.:
59. **Ալբերտ Խառատյան** - Կոստանդնուպոլսի հայ գաղթօջախը (XV-XVII դարեր), 2007 թ.:
60. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Զ հատոր, Ը դար, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
61. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Է հատոր, Ը դար, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
62. Մատենագիրք Հայոց, մատենաշար, Ը հատոր, Շարական, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
63. Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա (Հնագույն ժամանակներից մինչև Ք. հ. 298 թվականը), հատ. 1, 2007 թ.:
64. **Ռուբեն Ղազարեան, Հենրիկ Ավետիսեան** - Նորայայտ բառեր գրաբարում, 2007 թ.:
65. **Ֆելիքս Հայրապետյան** - Ֆենոլոգիայի հայերեն-ռուսերեն-անգլերեն բացատրական բառարան, 2007 թ.:
66. **Արմէն Մալխասեան** (կազմող) - Ցուցակ ձեռագրաց Մաշտոցի անուան Մատենադարանի, հատոր Գ, 2007 թ.:
67. **Դենի դը Ռուժմոն** - Սերը և Արևմուտքը (թարգմ. Ալ. Թոփչյանի), 2007 թ.
68. **Սերոբ Ղազարյան** - Հայոց լեզվի պատմություն, 2007 թ.:
69. **Լաւրենտի Յովհաննիսեան** - Հայ թարգմանական գրականութեան բառապաշարը (V դար), Ազգային Մատենադարան, h. Մխ, 2007 թ.:
70. **Համաստեղ** - Մոռացված էջեր, հատոր Դ, 2007 թ.:
71. **Գրիգոր Միքայելյան** - Կիլիկիայի հայկական պետության պատմություն, 2007 թ.:
72. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր, հինգ հատորով, հատոր Գ, Հայերենագիտական ուսումնասիրություններ, 2008 թ: